

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ

•

ՏԵՂԱԳՐԱԿԱՆ, ՊԱՏՄԱԿԱՆ ԵՒ ԱԶԳԱԳՐԱԿԱՆ

•

ՀԱՄԱԴՐԵՑ՝

ԱՐՇԱԿ ԱԼՊՈՅԱՃԵԱՆ

1961

ՏՊ. ՍԵՒԱՆ

ՊԷՅՐՈՒԹ

A PUBLICATION OF
EDUCATIONAL SOCIETY OF MAŁATIA

# HISTORY
# OF THE ARMENIANS IN MALATIA

With Topographical, Historical and Ethnographical Information

Edited by
**ARSHAG ALBOYADJIAN**

Printed by
**SEVAN PRESS**
P. O. Box 2669
BEIRUT (Lebanon)




Էջ

ՅԱՌԱՋԱԲԱՆ ԺԱ

ՑԱՆԿ ՆԻՒԹԵՐՈՒ ԺԷ


# Ա. ՄԱՍ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ


Ա. Մալաթիա եւ շրջակայքը իբրեւ աշխարհամաս 1
Բ. Աշխարհագրական դիրք 2
Գ. Երկրաբանութիւն 4
Դ. Լեռնագրութիւն 5
Ե. Ջրագրութիւն 6
Մելաս–Մելոս (թրք. Թոխմա) գետ 11
Սուլթան Սու (գետակ) 12
Զ. Բուսականութիւն 19
Է. Կենդանական հարստութիւն եւ անասնապահութիւն 26
Ը. Հանքային հարստութիւն 29
Թ. Կլիմայ 32
Ժ. Հաղորդակցութեան միջոցներ 36
ԺԱ. Վարչական բաժանումներ 46
ԺԲ. Հնութիւններ եւ պատմական յիշատակարաններ 56
Այրեր եւ նշանաւոր վայրեր 62
Անշարժ հնութիւններ, խաներ եւայլն 63
Նուիրական հնութիւններ (կործանած կամ կանգուն) 63
Հին Մալաթիա քաղաքին հնութիւնները 73
Ասլան Թեփէ 74
Մրցորդ քրիստոնէութեան 82

# Բ. ՄԱՍ

# ՊԱՏՄԱԿԱՆ ԱՆՑԵԱԼ

•

## ՄԱԼԱԹԻՈՅ ՀՆԱԽՕՍԱԿԱՆՆ ՈՒ ՊԱՏՄԱԿԱՆԸ՝ ՔԱՐԱՅԻՆ ՇՐՋԱՆԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՍԼԱՄԱԿԱՆ ԴՐԱՒՈՒՄԸ

Գրեց՝ ԵՂԻԱ Ս. ՔԱՍՈՒՆԻ

Էջ

Ա. Փոքր Ասիոյ նախապատմութիւնը 85
Բ. Մալաթիա հին հաթեանց օրով 92
Գ. Անցումն Հաթեան շրջանէն դէպի Ասորեստանեանը 97
Դ. Մալաթիա բնիկ թագաւորաց ներքեւ 108
Ե. Մելիտինէ Ասորեստանեայց նահանգ 126
Զ. Հատեան Մալաթիոյ մշակոյթը 142
Քանդակագործութիւն 145
Մալդիյայի խմբանկար քանդակը 147
Մալդիյա եւ Ուրարտու 148
Մելիտինէի նոր–Հաթեան մշակոյթին նշանակութիւնը 149
Է. Կատաւոնիա եւ Մելիտինէ՝ Պարսկական եւ Յունական շրջաններուն 154
Ը. Մելիտինէ Հռովմայեցւոց օրով.— Քրիստոնէութիւնը Մելիտինէի մէջ 161
Թ. Մալաթիա Արաբական շրջանին 176
Ժ. Արաբներու եւ Բիւզանդացիներու համար Մելիտինէի մասնաւոր կարեւորութիւնը 208
ԺԱ. Ասիական բարբարոսները Մելիտինէի շուրջ 213
ԺԲ. Մելիտինէ՝ Փիլարտոսի իշխանապետութեան մաս 222
ԺԳ. Մալաթիոյ նորտ իշխանները եւ Գաբրիէլ «Յոյն»ը 227
ԺԴ. Քեսունի իշխանութիւնը եւ այլ մանրապետութիւնք Եփրատացւոց մէջ 241
ԺԵ. Մալաթիա Դանիշմենտեանց իշխանութեանց տակ (1124–1178) 253
ԺԶ. Մալաթիա Ռումի Սելճուկ տիրապետութեան տակ (1178–1315) 263
ԺԷ. Մալաթիա Թիւրքմէն կէս–անկախ իշխանութեան տակ (1315–1516) 277
ԺԸ. Մալաթիա Օսմանեան տիրապետութեան տակ 289

# Գ. ՄԱՍ

# ՀԱՅԵՐԸ ՄԵԼԻՏԻՆԷԻ ՄԷՋ

## (ՀԻՆ ՕՐԵՐԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ)

Էջ

Ա. Հնագոյն ժամանակներէն մինչեւ Ալեքսանդր 307
Բ. Ալեքսանդրի աշխարհակալութենէն մինչեւ Հռոմէական տիրապետութիւն 309
Գ. Հռոմէական տիրապետութեան տակ 310
Դ. Բիւզանդական շրջան 315
Ե. Արաբական շրջանի Մելիտինէի Հայերը (Է—ԺԱ. դար) 325
Զ. Ասիական բարբարոսներու արշաւանքները մինչեւ Օսմանեան տիրապետութիւն 336
Հայերու թիւը 341
Կրօնի ազատութիւն և հոգեւոր վարչութեան կազմակերպութիւն 345
Հայ տարրը եւ իր դերը այս շրջանին 351
Հայ արուեստներու դերը 355
Է. Մալաթիոյ Հայերը Օսմանեան Թիւրքերու տիրապետութեան տակ 366

# Դ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻԱ ԵՒ ԹԵՄԻՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

## Ա

### ՄԱԼԱԹԻԱ ՔԱՂԱՔԸ

Ա. Քաղաքին վայրը եւ դիրքը 381
Բ. Քաղաքին անունը, անցեալին մէջ ունեցած վիճակները եւ տեղափոխութիւնները 398
Տեղափոխութիւն կամ փոփոխութիւն հին եւ նոր քաղաքի 402
Գ. «Արկածք եւ Պատահարք» 436
Դ. Բնակչութիւնը եւ Հայոց թիւը 446

## Բ.

### ՄԱԼԱԹԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԵԱՆ ՀԱՅԱԲՆԱԿ ՎԱՅՐԵՐԸ

Ա. Մալաթիա գաւառ 463
1. Օրտուզի կամ Հորտէօզ 467

Էջ
2· Հին Մելիտինէ կամ Էսքի Շեհիր 470
Բ· Աղնա Տաղ գաւառը 471
Գ· Պեսնի — Պահեստին 481
Դ· Հիւսնի—Մանսուր կամ Ատիեաման 491
Ե· Քեախդա – Գաղթոյ – Քեախդէ 506

# Ե· ՄԱՍ
# ՀԱՄԱՅՆՔԱՅԻՆ ԿԵԱՆՔ
## Ա·
### ԿՐՕՆԱԿԱՆ ԿԵԱՆՔ ԵՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

Ա· Եկեղեցիներ եւ պղօթատեղիներ 523
1· Ս· Աստուածածին Եկեղեցի 528
2· Ս· Երրորդութիւն Եկեղեցի 531
3· Ս· Յարութեան Եկեղեցի 533
4· Անծանօթ Սրբավայրեր 537
Բ· Առաջնորդութիւն 538
1· Իր հաստատութիւնը 538
2· Իր դիրքը Հայ Եկեղեցւոյ նուիրապետութեան մէջ 543
Գ· Թեմագրութիւն 545
Դ· Իր յարաբերութիւնները բարձրագոյն աթոռներու հետ 555
Ե· Գաւազան առաջնորդներու 555
ՄԱՂԱԹԻԱ 556
Զ· Յարակից թեմեր 583
Է· Հայ վանքեր 591
ա· Սուրբ Փրկիչ վանք 592
բ· Ս· Լուսաւորիչ վանք 603
գ· Անարծաթ բժիշկի վանք 616
դ· Կարմիր վանք (Ս· Կարապետ) 623
ե· Աhարոնի վանք 624
զ· Թէոդորոսի կամ Ս· Թորոսի վանք Գերձկի 624
է· Ս· Սարգիս վանք 626
ը· Ս· Գէորգ վանք 627
թ· Ծ· Մարտիրոս վանք 627
ժ· Ս· Կոնոնոս վանք 628
ժա· Ս· Օհան վանք 628
ժբ· Ս· Օհան Հեքիմխանի 629

Էջ
ԺԳ. Ս. Աստուածածին վանք Հեքիմ խանի 630
ԺԴ. Կարկառի Ս. Տիմոթէոսի վանք 632
ԺԵ. Քեսունի Կարմիր վանքը 636

Բ.

ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷՆԵՐԸ 640
Առաջնորդները 641
Հայ-կաթոլիկ կրթ. հաստատութիւններ 646
Թեմօրայք 648
Լատիններ 649

Գ.

ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅ-ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆՆԵՐԸ 651
Հովիւները 663
Մալաթիոյ գաւառին Հայ-Աւետարանականները 666
Հայ Աւետարանական դպրոցներ 669
Աղանդաւորական շարժումներ 672

# Զ. ՄԱՍ

# ԻՄԱՑԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ԿԵԱՆՔ

1

Ա. Մալաթիա իբր վայր մտաւորական շարժման 673
Բ. Առանձնական ուսուցում 679
Գ. Ընթերցում եւ գրչութիւն 681
Դ. Հայ դպրոցներ 690
1. Սահակեան մայր վարժարան 707
2. Ներսէսեան վարժարան 713
3. Աստղիկ Ընկերութեան վարժարան 714
4. Արամեան վարժարան 714
5. Կրթասիրաց վարժարան 715
6. Գայեանեան վարժարան 716
7. Սանդխտեան վարժարան 717
8. . . . . . 718
9. Հռիփսիմեանց վարժարան 718
10. Մանկապարտէզ 718
11. Ազգային Որբանոց 720

Զ

ՅԱՐԱՆՈՒԱՆԱԿԱՆ ԵՒ ՕՏԱՐ ԿՐԹԱԿԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐ

Ա.

ՀԱՅ ԿԱԹՈԼԻԿ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐ


1. Խաչատուրեան վարժարան 721
2. Որբանոց 724
3. Լատին վարժարանը 725
4. Լատին որբանոց 726


Բ.

ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐ


1. Համայնքային դպրոցներ 726
2. Ամերիկեան որբանոց 731
3. Գերմանական որբանոց 732

Ե. Կրթական մշակներ 733

Զ. Վիճակային վարժարաններ 768

Առաջնորդական վիճակ Մալաթիոյ (տախտակ) 771

Է. Կրթական, մշակութային եւ բարեգործական ընկերութիւններ 772

Աստղիկ ընկերութիւն 782
Ներսէսեան ընկերութիւն 783
Կրթասիրաց ընկերութիւն (1880—1895) 783
Գայեանեան խնամակալուհիներու ընկերութիւն 785
Ընթերցասիրաց սանուց ընկերութիւն 785
Կրթասիրաց Երիտասարդաց ընկերութիւն 785
Ծիածան Մելիտինէի ընկերութիւն 786
Մալաթիոյ կրթասիրաց ընկերութիւն 787
Կրթասիրաց ընկերութիւն 788
Մասեաց ընկերութիւն 789
Ընթերցասիրաց ընկերութիւն 790
Զմշուտ ընկերութիւն (1908) 790
. . . . . ընկերութիւն (1896—1898) 790
Բանասիրաց ընկերութիւն 791
Մանկական ընկերութիւն 791
Մելիտինէի միութիւն (1925) 792
Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւն 793
Արամեան ընկերութիւն Հիւսնի Մանսուրի 794

Էջ

Բարեգործական ընկերութիւն Հիւսնի Մանսուրի 794
Ը. Լսարաններ 794
Կիրակնօրեայ լսարան 794
Թ. Մամուլ եւ տպագրութիւն 796
Մատենադարան 798
Թատրոն 798

## Է. ՄԱՍ

## ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա. Ազգային հաստատութեանց մատակարարութիւն 800
Բ. Կարօտեալներու հոգածութիւն 806
Գ. Կուսակցական պայքարներ 812

## Ը. ՄԱՍ

## ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա. Մալաթիոյ մէջ Հայ եւ Թուրք յարաբերութիւնները մինչեւ ԺԹ. դարուն կէսերը 818
Բ. Հայ եւ Թուրք յարաբերութեանց վատթարացումը 828
Գ. Հայերու անբաղձալի վիճակը եւ ազդեցիկ Հայերու կատարած դերը 836
Դ. Պերլինի վեհաժողովին ծախող արդիւնքը եւ Հայ յեղափոխական կուսակցութեանց կազմութիւնը 851
Ե. Հարստահարութիւններ Մալաթիոյ եւ շրջակայից մէջ 856
Զ. Յեղափոխական կուսակցութիւններու գործունէութիւնը Մալաթիոյ մէջ 862
Է. Մալաթիոյ 1895–ի ջարդը եւ Հայոց ինքնապաշտպանութիւնը 881
1895–Ի ՄԱԼԱԹԻՈՅ ԿՈՏՈՐԱԾԸ, *Գրեց՝* ԽՈՍՐՈՎ ՊՈՆԱՓԱՐԹԵԱՆ 885
*Ծանօթութիւններ* 894
Ը. 1915–ի Հայաջինջ աղէտը 912
Թ. Մալաթիոյ Հայոց ջարդը եւ տարագրութիւնը 928
Ժ. Տարագրութենէն ետք Մալաթիոյ Հայ բեկորները 958

## Թ. ՄԱՍ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

Ա. Մալաթիա իբր առեւտրական կեդրոն 970
Բ. Մալաթիոյ տնտեսական կեանքին մէջ Հայոց դերը 985

Էջ
Տնտեսական վիճակ (արհեստ եւ վաճառականութիւն) 986
Արտածութիւն եւ ներածութիւն 987
Հեռաւորութիւն շրջակայ քաղաքներու 987
Արտածութիւն 987
Ներածութիւն 988
Նիւթական վիճակ եւ կացութիւն 989
Գ. Տնտեսական պայքար Հայոց դէմ 991
Դ. Հողային արդիւնաբերութեանց մէջ Հայերու դերը 997
Ե. Հայոց վաճառականութիւնը 999
Զ. Հայ ճարտարարուեստականները 1002
Է. Հայ արհեստաւորները 1004
Ը. Արհեստակցական միութիւններ 1008
Թ. Ներկայ Մալաթիոյ տնտեսական կեանքը 1019

## Ժ. ՄԱՍ

# ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ

Ա. Մալաթիացին 1023
Բ. Մալաթիոյ Հայոց լեզուն 1027
Ուրուագիծ կամ քերականութիւն 1033
Գործածական դերանուններ 1035
Բայ 1035
Ածանցմունք եւ բարդութիւնք 1036
Բառարան Մալաթիոյ գաւառաբարբառին 1038
Մանկական լեզու 1091
Արկօղեան բարբառ 1092
Հայերէնէ փոխառեալ բառեր թուրքերէնի մէջ 1093
Գ. Նիստ ու կաց
ա. Տուն տեղ 1097
բ. Հագուստ կապուստ 1099
գ. Ուտելիք խմելիք 1103
*Քանի մը միրգերու եւ քաղցուեղեններու պատրաստութիւնը* 1104
Դ. Ընտանիք
ա. Տունը 1106
բ. Ընտանեկան անդամներու հեղինակութիւնը եւ փոխադարձ յարաբերութիւնները 1107
գ. Փոքրերու խնամածութիւնը եւ դաստիարակութիւնը 1108
դ. Ընտանեկան զուարճութիւններ 1110

Էջ

Ե. Սովորոյթներ
ա. Ամուսնական սովորութիւններ 1110
բ. Հարսանիք 1114
*Տան եւ Հինգ* 1120
*Մէրէնց տունը լաթ հագցնելու ատեն* 1121
*Աղջկան բերնէն* 1122
գ. Ծնունդ եւ մկրտութիւն 1123
դ. Մահուան եւ յուղարկաւորութեան սովորութիւններ 1127
Զ. Ժողովրդային բժշկութիւն
(Հիւանդութիւններ եւ ժողովրդային դեղեր) 1129
Է. Հաւատք
ա. Քրիստոնէական հաւատքի ըմբռնումը 1131
բ. Կրօնական պարտականութիւններ եւ տօնակատարութիւններ 1135
գ. Պառաւաշունչ (նախապաշարումներ եւ աւելորդապաշտութիւններ) 1148

## ԺԱ. ՄԱՍ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

Ա. Հաւաքական ստեղծագործութիւն 1152
ՀԱՒԱՔԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ԱՏԱՂՁՆԵՐԸ
ա. Առակներ 1156
*Էշ, եզ եւ մշակ* 1157
բ. Առածներ կամ ասացուածքներ 1160
գ. Հանելուկներ 1181
դ. Մանրավէպեր 1182
Չորս խուլերը 1183
Անսուրական մանրավէպեր 1187
Անէծքներ 1189
Երդումներ 1191
Օրհնութիւնք 1192
Բարեւել եւ ուրիշ բարեմաղթութիւններ 1193
Աղօթքներ 1194
Օրօրներ 1197
Մանկական երգեր 1199
Սիրահարական երգեր 1201
Եղերերգ 1202
Վիճակներ 1203

Էջ

Անհատական ստեղծագործութիւններ 1206
Աշուղներ 1207

## ԺԲ. ՄԱՍ

## ՀԱՅ ԳՐՉԱԳԻՐՆԵՐ 1209

## ԺԳ. ՄԱՍ

## ՄԱԼԱԹԻՈՅ
## ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԷՄՔԵՐԸ 1235

Եկեղեցականներ 1236
Կառավարական պաշտօնեայք 1239
Հայ առաջնորդներ, արհեստաւորներ, մտաւորականներ եւ
կուսակցական գործիչներ 1243
Հայ բժիշկներ 1248
Դեղագործներ 1252
Եփրատ գոլէճ (շրջանաւարտներ) 1253
Սանասարեան վարժարանի Մալաթիացի շրջանաւարտները 1255
Խարբերդի փրանսական գոլէճի Մալաթիացի շրջանաւարտները 1256
Այնթապի Ամերիկեան գոլէճէն շրջանաւարտ Մալաթիացի 1256
Վենետիկ Ռափայէլեան վարժարանէն շրջանաւարտ Մալաթիացի 1256

## ԺԴ. ՄԱՍ

## ՄԱԼԱԹԻԱՑԻՔ ՄԱԼԱԹԻԱՅԷ ԴՈՒՐՍ

*Ընդհանուր ծանօթութիւն* 1257
Պետական պաշտօնատարներ 1264
Էրմէնի Սիւլէյման փաշա 1264
Եկեղեցականներ 1267
ա. Հայ Առաքելական եկեղեցիի պատկանողներ 1267
բ. Հայ կաթողիկէ նուիրապետութեան պատկանողներ 1269
Մտաւորականներ եւ արուեստագէտներ 1270
Հասարակական դէմքեր 1278

Էջ

# ՅԻՍՆԱՄԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ


*Աշխատասիրեց՝ ԻՍՐԱՅԷԼ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ* 1283
Զօն 1285
ՍԿԶԲՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ 1287
Մալաթիացիները Ամերիկայի մէջ 1290
Ցանկ 1895–էն առաջ Ամերիկա եկող մալաթիացիներու եւ Մալաթիա վերադարձող եւ հոն մեռնող կամ զոհ եղողները 1294
ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ 1298
Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը 1299
Ընկերութեան կազմութեան պարագաները եւ ունեցած գործունէութիւնը 1302
Առաջին Պատգամաւորական ժողով 1310
Երկրորդ Պատգամաւորական ժողով 1312
Երրորդ Պատգամաւորական ժողով 1313
Չորրորդ Պատգամաւորական ժողով 1315
ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ 1317
Հինգերորդ Պատգամաւորական ժողով 1318
Վեցերորդ Պատգամաւորական ժողով 1319
Եօթներորդ Պատգամաւորական ժողով 1320
Ութերորդ Պատգամաւորական ժողով 1322
Իններորդ Պատգամաւորական ժողով 1323
Տասներորդ Պատգամաւորական ժողով 1324
Տասնեւմէկերորդ Պատգամաւորական ժողով 1325
Տասներկուերորդ Պատգամաւորական ժողով 1330
Տասներեքերորդ Պատգամաւորական ժողով 1332
Տասնչորրորդ Պատգամաւորական ժողով 1337
Տասնհինգերորդ Պատգամաւորական ժողով 1339
Տասնվեցերորդ Պատգամաւորական ժողով 1340
Տասնեօթներորդ Պատգամաւորական ժողով 1342
Տասնութերորդ Պատգամաւորական ժողով 1344
Տասնիններորդ Պատգամաւորական ժողով 1345
Քսաներորդ Պատգամաւորական ժողով 1346
ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ 1383
Քսանմէկերորդ Պատգամաւորական ժողով 1383
Քսաներկուերորդ Պատգամաւորական ժողով 1355
Քսաներեքերորդ Պատգամաւորական ժողով 1357

Լ


| | Էջ |
|---|---|
| Քսանչորրորդ Պատգամաւորական ժողով | 1360 |
| Քսանհինգերորդ Պատգամաւորական ժողով | 1362 |
| Քսանվեցերորդ Պատգամաւորական ժողով | 1365 |
| Քսանեօթներորդ Պատգամաւորական ժողով | 1367 |
| Քսանութերորդ Պատգամաւորական ժողով | 1368 |
| Քսանիններորդ Պատգամաւորական ժողով | 1371 |
| Երեսուներորդ Պատգամաւորական ժողով | 1373 |
| Երեսունմէկերորդ Պատգամաւորական ժողով | 1376 |
| Երեսուներկուերորդ Պատգամաւորական ժողով | 1378 |
| Երեսուներեքերորդ Պատգամաւորական ժողով | 1381 |
| Երեսունչորրորդ Պատգամաւորական ժողով | 1383 |
| Երեսունհինգերորդ Պատգամաւորական ժողով | 1385 |
| Երեսունվեցերորդ Պատգամաւորական ժողով | 1386 |
| Երեսունեօթներորդ Պատգամաւորական ժողով | 1388 |
| Երեսունութերորդ Պատգամաւորական ժողով | 1389 |
| Երեսունիններորդ Պատգամաւորական ժողով | 1390 |
| Քառասուներորդ Պատգամաւորական ժողով | 1391 |
| Քառասունմէկերորդ Պատգամաւորական ժողով | 1392 |
| Քառասուներկուերորդ Պատգամաւորական ժողով | 1394 |
| Քառասուներեքերորդ Պատգամաւորական ժողով | 1396 |
| Քառասունչորսերորդ Պատգամաւորական ժողով | 1398 |
| Քառասունհինգերորդ Պատգամաւորական ժողով | 1400 |
| Քառասունվեցերորդ Պատգամաւորական ժողով | 1401 |
| Քառասունեօթներորդ Պատգամաւորական ժողով | 1404 |
| Քառասունութերորդ Պատգամաւորական ժողով | 1406 |
| Քառասունիններորդ Պատգամաւորական ժողով | 1408 |
| Յիսուներորդ Պատգամաւորական ժողով | 1410 |
| Յիսունմէկերորդ Պատգամաւորական ժողով | 1414 |
| Յիսուներկուերորդ Պատգամաւորական ժողով | 1417 |
| Յիսուներեքերորդ Պատգամաւորական ժողով | 1420 |
| Յիսունչորսերորդ Պատգամաւորական ժողով | 1424 |
| Յիսունհինգերորդ Պատգամաւորական ժողով | 1430 |
| ՀԱՇՈՒԵՏՈՒՈՒԹԻՒՆ | 1437 |
| «ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ» Պարբերաթերթը | 1441 |
| ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ | 1443 |
| Նիւ Եորքի մասնաճիւղ | 1445 |
| Ֆիլատելֆիոյ մասնաճիւղ | 1448 |

էջ

Ուստրի մասնաճիւղ 1454
Քլիվլենտի մասնաճիւղ 1458
Պոսթոնի մասնաճիւղ 1464
Փրաւիտենսի մասնաճիւղ 1468
Ֆրեզնօի մասնաճիւղ 1471
Նորթ Աթլպորոյի մասնաճիւղ 1472
Վոքեկընի եւ Շիքակոյի մասնաճիւղերը 1472
Կրանիթ Սիթիի մասնաճիւղ 1475
Լոս Անճելէսի մասնաճիւղ 1477
Տիթրոյթի մասնաճիւղ 1478
Ֆիչպուրկի մասնաճիւղ 1480
Ֆրեզնոյի մասնաճիւղ 1481
Պրաքթընի մասնաճիւղ 1482
Հէյվըրհիլի մասնաճիւղ 1485
Լարենսի մասնաճիւղ 1485
Նիւպրիփորթի մասնաճիւղ 1485
Լովելի մասնաճիւղ 1485
Հաւանայի (Քուպա) մասնաճիւղ 1486
ՖՐԱՆՍԱՅԻ ՇՐՋԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐԸ 1490
Լիոնի մասնաճիւղ 1491
Ռոմանի մասնաճիւղ 1497
Վալանսի մասնաճիւղ 1500
Սէն Շամոնի մասնաճիւղ 1504
Պէյրութի մասնաճիւղ 1514
Հալէպի մասնաճիւղ 1517
Շնորհակալութեան եւ գնահատանքի քանի մը խօսք 1527
Ցանկ նկարներու 1531





## Ժ. ՄԱՍ

# ԱԶԳԱԳՐՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ

## Ա.

## ՄԱԼԱԹԻԱՑԻՆ

Մալաթիոյ եւ իր հրջակայ վայրերուն մէջ ապրող Հայերու անցեալը, իրենց կեանքի ելեւէջները, իրենց բարդուած եւ դժբախտ օրերը ներկայացնելէ ետք կարծեմ պէտք է նաեւ խօսիլ Մալաթիացի Հայերուն առանձնայատուկ նկարագրին, լեզուին, ապրելու եղանակին, նիստուկացին, սովորութիւններուն, աւանդութիւններուն, նախապաշարումներուն, առածներուն, առակներուն, ասացուածքներուն, օրհնութիւններուն, հայհոյանքներուն, մէկ խօսքով ազգագրութեան վրայ, պատկերը ամբողջական ըլլալու համար:

Ինչպէս ուրիշ գաւառի մը մասին խօսելու ատեն ըսած եմ (տես ՊԱՏՄ. **ԵՒԴՈԿԻՈՅ ՀԱՅՈՑ**, էջ 1349), շատ դժուար է, առանց վայրը տեսնելու, առանց հոն կամ դուրսը ապրող տեղացիներու մէջ ապրած, անոնցմէ կարեւոր խումբի մը հետ յարաբերութիւն ունեցած ըլլալու, խօսիլ անոնց նկարագիրին վրայ եւ արդար դատաստան մը ըսել:

Մէկ հատ Մալաթիացի մօտէն չեմ ճանչցած եւ ոչ ալ Մալաթիացիի մը հետ գործ ու յարաբերութիւն ունեցած եմ. հետեւաբար գիտակցաբար կարծիք յայտնելու ի վիճակի չեմ:

Ուստի դժնդակ դիրքի մը մէջ եմ հանդէպ Մալաթիացիներու, քանի որ ներկայացնելու պէտք է փորձեմ ոեւէ Մալաթիացի Հայուն նկարագիրը:

Սեպհական կարծիք կազմելու անկարողութիւնը դարմանելու համար պիտի դիմեմ ուրեմն ուրիշներու կարծիքին: Բայց դժբախտաբար հազիւ քանի մը անձեր գտնուած են, որ արտայայտուած են Մալաթիացիներու մասին: Մալաթիոյ եւ Մալաթիացիներու մասին գրողները մեծ մասամբ տեղացիներ են. կը վախնամ թէ տկարութիւններ ցոյց տուած ըլլան հանդէպ իրենց հայրենակիցներուն եւ միայն անոնց լաւ կողմերը տեսած ըլլան:

Մալաթիացի Հայերը շատ բնական է որ կը նմանին, գլխաւոր գիծերով Հայկական ընդհանուր տիպարին, թէ՛ ֆիզիքապէս եւ թէ՛ բարոյապէս, հետեւաբար իրենց ֆիզիքական կազմով առհասարակ Մալաթիացի հայ մար-

գը, ինչպէս նաեւ տեղացի Թուրքը, կազմուածքով խոշոր են, երիտասարդները կայտառ եւ ուժեղ, կիները ջղուտ։ Զգայարանքներու տիրող տկարութիւններ չկան։

Սովորական հիւանդութիւններն են հարբուխ, թիֆօ եւ տենդ (դող)։

Երիտասարդութեան վրայ նայելով մարդ կը խորհի թէ անոնք խոր ծերութեան պիտի հասնին, բայց այնպէս չէ. 70էն վեր ծեր գտնել դժուար է։

Կ'ըսուի թէ հին քաղաքէն նոր չտեղափոխուած (գաւառի բարբառով ՂԿՍՁՈՒԱԾ) 80, 90 եւ 100 տարեկան մարդեր տեսնել անսովոր բան չէ եղեր (տես Փրոֆ. Մկրտիչ Ս. Որբերեան, ՄԱԼԱԹԻԱ, Բիւրակն, 1900, էջ 115)։

Ըստ Մ. Ս. Որբերեանի «Մարմինին սպառնացող մոլութիւնը օղին է»։ Պէտք է աւելցնել նաեւ Մալաթիոյ ճահճային կլիման եւ ոչ-առողջապահիկ պայմանները, որոնց Մալաթիացի Հայերը, ինչպէս նաեւ այլ ազգիները, Փիզիքականէն՝ բարոյականին եւ հոգեկանին անցնելով, ինչ ինչ տուեալներու վրայ հիմնուած կարելի է ըսել թէ հակառակ Մալաթիոյ դաշտային միջավայրի՝ լեռնցիի նկարագիր ունին եւ քաջարար կռուիլ գիտեն։ Ուրիշ գաւառներու Հայերուն պէս, որոնք ընդհանուր հայկական նկարագիրէն զատ, իրենց մասնաւոր յատկութիւններն ալ ունին, քիչ տարբերութիւններով, Մալաթիացիք ալ Հայեր են նուազ յղկուած եւ լեռնականի նկարագրով։ Փրոֆ. Մկրտիչ Ս. Որբերեանի վկայութեամբ (տես Բիւրակն, 1900, էջ 100) «շատ գործունեայ են, վհատութիւնը ուշ կրնայ յաղթել։ Արագ կը շարժին ու կը քալեն։

Եթէ քիչ մը կրթութիւնը բանայ մտքերնին, զարգացման ընդունակ են։

Սակաւապէտ են յաւէտ՝ քան բազմապահանջ։ Իրենց բարքերն ու լեզուն շուտ կրնան փոխել, եթէ օտարին հետ շփուին կամ պանդխտանան։ Հոս շահադիտական գործակցութիւններու շատ գլուխ չունին, անհատը ձեռքովը կը բանի, բերնովը կ'ուտէ։ Օտարականին վրայ ծուռ աչքով ալ չեն նայիր, թէեւ իրենց ընելիք շահը ան ընէ։

Հաց կերցնելը հաճոյք կ'առթէ։Մեծ բանակռիւներ կ'ընեն Թաղականութեան, կառավարական պաշտօնէութեան եւ աղայութեան վրայ։

Աթենացւոց նման, մեծ բաղձանք ունին լսելու։ Եթէ երկու ժամ բեմբասաց մը խօսի, երես չեն դարձներ։

Իրարու հանդէպ բամբասանքներ, զրպարտութիւններ եւ անարգանքներ շատ շուտ կը գոյանան։ Իրարու քով եղբայր, իրարմէ հեռու ընկերատեաց կ'երեւին։

Եկեղեցիի ու դպրոցի համար կու տան, կ'աշխատին՝ եթէ ճարպիկ ու վստահելի առաջնորդող գտնուի։

Չորս հասարակութեան եւ Հայոց երեք Թաղերու ջուրերը մէկ առու չեն երթար։

Ըմպելիներու մէջէն ԽԱՀՎԷՆ ամենէն շատ կը սպառեն։ Գինիէն աւելի օղի կը գործածեն։ Ծխախոտին լաւը կը փնտռեն։

*Բախտախաղի հետ շատ քիչ յարաբերութիւն կամ բնաւ չունին։ Դրացիին համար հոգին կու տայ։ Իրարու շատ կ'այցելեն։*

*Ամէն անհատ իր երիտասարդութեանը, կնկանը հետ ՄԻԱՅՆ ուրախ կ'ըլլայ։»*

*Մալաթիացին ի բնէ կը թուի թէ կուլէ չվախցող եւ զայն փնտռող նըկարագիր ունեցող տարր մըն է, որ ուրախութիւնը կը սիրէ, ինչպէս Ս. Մ. Ծոցիկեան կը հաստատէ (տես ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, Նիւ-Եորք, էջ 379)։ Ան կ'ըսէ թէ.* «Անոնք ուրախութիւն ու զուարճութիւն ընել շատ կը սիրեն։ Եւ երբ ընտանեկան եւ ընկերական հաւաքոյթներու միջոցին, խմելու մէջ քիչ մը յառաջ կ'երթան, կը սկսին վիճաբանութեան, որ երբեմն ծայրայեղ աստիճաններու կը յանգի։ Եսի, արժանապատուութեան խնդիրներու մէջ, երբ մանաւանդ խմած կ'ըլլան, մէկ լուի համար վերմակ կ'այրեն։ Բայց ուրախ հարկերու միջոցներուն, երբեմն սիրոյ սրտագրաւ արտայայտութիւններ ալ կ'ընեն իրարու հանդէպ։ Այդ պարագաներուն, նաեւ իւրաքանչիւր ոք իր շընորհքը ցոյց տալու մարմաջ մը կ'ունենայ։ Երգել գիտցողը կ'երգէ, պարի ծանօթը կը պարէ, կատակասէրը կը կատակէ, գրոց-բրոցը կը ճառէ, բանաստեղծելու յարմարութիւն ունեցողը ոտանաւորներ կը շինէ եւ կ'արտասանէ»։

*Ինչպէս բոլոր Հայերը, որոնք իրենցմէ ռեւէ կերպով տկար եղողին հանդէպ արհամարհանք ունին, Մալաթիացիք ալ շատ հաւանած են ինքզինքնուն եւ կ'արհամարհեն իրենցմէ տկար եղողները։*

*Այսպէս,* «Մալաթիոյ Հայք, Եփրատի միւս կողմը, ջրէն անդին գտնուող քաղաքաց Հայերուն վրայ կը նային արհամարհանքով, առ հասարակ։ Մասնաւորապէս Խարբերդի Հայոց վրայ կը նային խեթի։ Զի Խարբերդցիք, ըստ Մալաթիացւոց ըմբռնումին, Մալաթիացիները կը դիտեն հեգնական կերպով։ Մալաթիացիք Խարբերդցւոց համար կ'ըսեն. «բանի չեն գար»։ Ասիկա տարօրինակ մտայնութիւն մըն է, զոր դեռ ցայսօր ալ Մալաթիացիներէ ոմանք կը կրեն եւ առիթը ներկայանալուն կ'արտայայտեն։ Այդպէս, Մալաթիացիք, ընդհանրապէս հպարտ են իրենց Մալաթիացիութեամբ եւ կը պարծին ամենուն առջեւ, այն տեսակ շեշտակի ոգիով մը, որով ըսել կ'ուզեն կարծես, թէ աշխարհի մէջ չկայ քաղաք մը այնքան գերազանց որքան Մալաթիան» *(Ս. Մ. Ծոցիկեան ԱՐԵՒՄՏԱՀԱՅ ԱՇԽԱՐՀ, էջ 381)*։

*Մալաթիա—Խարբերդ յարաբերութիւններու մէջ կ'երեւի թէ դեր ունի Ա. նախանձը և Բ. Խարբերդցիներու աւելի խաղաղ քաղաքացիական յատկութիւնները, որոնք Մալաթիացիներու արհամարհանքին առարկայ կ'ըլլային, մինչ Խարբերդ իբր մտաւորական կեդրոն փոխադարձաբար արհամարհանք ունէր համեմատաբար յետամնաց Մալաթիացիներուն նկատմամբ։*

*Ուրիշ կերպ մեկնութիւն մը կարելի չէ տալ։*

*Գալով Մալաթիացի հայ կնոջ, Փրոֆ. Մկրտիչ Որբերեանի պէս լուրջ անձնաւորութիւն մը կ'արտայայտուի շատ նպաստաւոր կերպով։*

*Ահա իր կարծիքը նոյնութեամբ.*

«Ընկերութեան այս դասը թէ՛ գնահատելի եւ թէ՛ ողորմելի կողմեր ունի: Մալաթիացի կինը զբօսանքի, պտոյտի, ժամանցքի համը առած չէ:

Արշալոյսին կ'ելլէ ճնճղուկներուն հետ, երկու ծունկ ժամ կ'ընէ եւ չաբը (բամպակ մանելու գործիք) կամ ըրդան եւ կարկտուքը առջեւ առնելով մոլտալէն կ'աշխատի, մինչեւ որ առաւօտեան նախաճաշը պատրաստելու ատեն գայ: Ճաշէն վերջ աղտուքն ու լուացուքը ընելով կրկին ձեռք կ'առնէ այս գործերէն մէկը եւ կը շարունակէ մինչեւ իրիկուն:

Տան անդամներուն ճերմակեղէնին համար միայն գործողչէքի ու բամպակի ստակ կու տայ: Կինը ինքը կ'աղնէ, կը մանէ, կտաւը կը ճերմկցնէ եւ կը կարէ: Տարեկան անուշեղէնները եւ ալրցուն իր ձեռքովը կը պատրաստէ: Անկողնի, բարձի եւ բազմոցի երեսները ինք կը նախշէ (ձեռագործ մը, որ հիմա Անգլիայի եւ Ամերիկայի մէջ շատ ընդունելութիւն գտած է): Բացարձակապէս հաւատարիմ է իր ամուսինին, մինչեւ իսկ հակառակ շատ մը դժբախտութեանց եւ երկար պանդխտութեանց (այս վերջինը հազուադէպ է), եթէ հազարներու մէջ հատ մըն ալ գտնուի, մատ մը միշտ կ'ընեն[1] ու կը խայտառակեն:

Զափահաս կիներ ջերմեռանդ երկիւղածութեամբ եկեղեցիները կը լեցնեն:

Հարսեր ու աղջիկներ միայն տաղաւարի ժամուորներ են: Այս վերջիններն այդ ուղղութեամբ շատ խորհելու բան չունին. ժամ, պատարագ, աղօթք չափահասներու գործ է. իրենք տիպար համեստութեամբ ու լուռ հնազանդութեամբ գործել գիտեն, սակայն բողոքականին ու կաթոլիկին համար տարբեր է. առնք ըլլան աղջիկ, հարս կամ կին, սովոր են աղօթատեղի յաճախել: Առհասարակ մտքի մշակում, ընթերցում, լայն տեսութիւններ, աշխարհային գործերու ծանօթութիւններ չունի կինը: Իր զաւակներուն վրան գլուխը եւ փորը հոգալէն զատ երբ որեւէ մարմնական տկարութիւն մը տեսնէ, գիտէ թէ ո՛ր սրբավայրը տանելու է, ո՛ր հողէն կերցնելու է, ո՛ր ջրէն լողցնելու է, ո՛ր օճախը տանելու է, ո՛ր պառաւը կանչելու է, ո՛ր թասէն ջուր խմցնելու է. առնցմէ դուրս գիտէ նաեւ կարգ մը քաղադրութիւններ՝ աչքի, ականջի, բերնի, փորի ցաւերու եւ գլխու, մարմնոյ վէրքերու համար իբր դեղ ու դարման:

ՆԷՄԷՀՐԱՄԸ քիչ կաշկանդած չէ զայն: Մերձաւոր ազգականներէ ու մտերիմներէ զատ, որեւէ այցելու կամ հիւր չի կրնար ազատաբար խօսիլ տան կնոջ հետ. կարեւոր խօսակցութեան մը պարագային, ներկայ եղող տղոցմէ մէկը կնոջ իբր միջնորդ պիտի ծառայէ:

Հայ կինը ընտանեկան յարկին տակ ոչ զարդարան է, ինչպէս քաղաքակիրթ երկիրներու շատ տուներու մէջ, եւ ոչ ալ գերի մը, ինչպէս վայրենի ու

---

(1) *ԲԻՒՐԱԿՆի խմբագրութիւնը այս բացատրութեան եղանակը մեկնաբանած է ըսելով թէ կ'երեւի թէ ոճ է եւ կը նշանակէ մատերնին կը փաթթեն (տես անդ, 1900, էջ 100):*

կիսավայրենի ժողովուրդներու քով, այլ իրաւամբ ճշմարիտ օգնական մըն է էրկանը:

Այր եւ կին բառին բուն նշանակութեամբ կ'ամբողջացընեն ընտանեկան կեանքը. կինը, հակառակ իր տանը բազմաթիւ գործերուն, շատ անգամ-ներ ալ էրկանը գործին կ'ընձեռնէ, արհեստաւորին կինը կէս արհեստաւոր է, վաճառականին՝ կէս վաճառական, հողագործին՝ կէս հողագործ է. հարկաւ չես խորհիր թէ շուկայի հրապարակը կ'ելլէ այս գործերը ընելու, ինչ որ տան մէջ կրնայ ընել էրկանը արուեստի համար, ան կ'ընէ:

Մալաթիացի կինը երբեք չի ձանձրանար երկար ժամանակ տալու կե-րակուրի մը պատրաստութեան համար: Կերպով մը դրկից տեսակցութեան ժամանց է կարգ մը կերակուրներու պատրաստութիւնը, որուն համար դրկից կիներ կը հաւաքուին ու այս միջոցին ձեռքերնին կը բանի եւ բերաննին լուրե-րու տուր և առը կը սկսի:Զափահասներ կը խրատեն նորահարսները թէ«էրիկ մարդը հեղեղ է, իսկ կինը թումբ». որով առհասարակ կիներ տնտեսագէտ հանգամանք մը կը կրեն:

Կնոջ ձեռքին եւ գործերուն վրայ փափուկ ու նուրբ ճաշակին յատկա-նիշները մի՛ փնտռեր:

Ամէն շաբաթ օր երեք արտասովոր գործ ունի ընելու, կէս գիշերին կ'ելլէ եւ մինչեւ առտու լուացքը կը լմնցնէ, մինչեւ կէսօր ալ հացը կ'եփէ եւ յետոյ բաղնիք կ'երթայ: Շատ առատաձեռն է. իր ոսկիներէն, զարդարանք-ներէն ու հանդերձեղէններէն բան չի խնայեր, երբ եկեղեցիի ու դպրոցի հա-մար դիմում մը կ'ըլլայ, ինչպէս նաեւ օրական որքան ալ մուրացկան գայ, պարապ չի ճամբեր:

Խմիչքի եւ ծխելիքի երբեք բարեկամ չէ: Օղին ու գինին կը պատրաստէ իր գլխաւորին համար: էրկանը «չկայ» բառը շատ աղէկ կը հասկնայ (*ԲԻԻ-ՐԱԿՆ*, 1900, *էջ* 100–101):

## Բ.

# ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒՆ

*Մալաթիա իր անմիջական շրջակայքով կը ներկայացնէ լեզուական տեսակէտով առանձին խմբաւորում մը եւ ունի իր յատուկ բարբառը, որ դժ-բախտաբար լրջօրէն չէ ուսումնասիրուած:*

*Հրաչեայ Աճառեան իր «ՀԱՅ ԲԱՐԲԱՌԱԳԻՏՈՒԹԻՒՆ» գործին մէջ (Մոսկուա,* 1911*), որ ընդհանուր տեսութիւն մըն է բոլոր բարբառներու վրայ, կը խօսի նաեւ Մալաթիոյ բարբառին վրայ, որ հայ բարբառներու ե-րեք ճիւղերէն* կը *ճիւղին մէջ կը դասէ: Մալաթիոյ բարբառին մասին իր տուած տեղեկութիւնները կ'արտագրեմ իբրեւ լուրջ լեզուաբանի մը եւ գի-տունի մը կարծիքը:*

«Այս բարբառը կը խօսուի Մալաթիա քաղաքին եւ իր շրջակայ գիւղերուն մէջ մինչեւ Ատիեաման կամ Հիւսնիմանսուր· իր գրաւած շրջանը կը բռնէ Տիգրանակերտի, Խարբերդի, Արաբկիրի եւ Կիլիկիոյ բարբառներուն մէջտեղը: Ասիկա ալ հայերէնի հարաւային սահմանապահներէն մէկն է, որովհետեւ Հիւսնիմանսուրէն հարաւ այլեւս հայերէն չկայ· քրդերէնը, թուրքերէնն ու արաբերէնը բռնած են իր ասպարէզը:

Մալաթիոյ բարբառին համար ունինք փոքրիկ ուրուագիծ մը իր ձայնական դրութեան վրայ՝ ԲԻՒՐԱԿՆ թերթին մէջ (1900, էջ 118) եւ երկու փոքրիկ անբաւական հատուածներ (ԲԻՒՐԱԿՆ, 1898, էջ 620 եւ 1899, էջ 772): Աւելի փոքրիկ բնագիր մ'ալ կայ Հիւսնիմանսուրէն (անդ, 1900, էջ 321): Հիմնուելով այս բոլորին վրայ կրնանք հետեւցնել թէ Մալաթիոյ բարբառը կը բռնէ Խարբերդի, Տիգրանակերտի և Կիլիկիոյ բարբառներուն մէջտեղ միջին դիրք մը: Եթէ համեմատենք առաջիններին հետ, կը տեսնենք որ Մալաթիոյ բարբառը շատ փոփոխուած է, իսկ եթէ Կիլիկիոյ, յատկապէս Մարաշի ենթաբարբառին հետ համեմատենք, Մալաթիոյ բարբառը բաւական մաքուր երեւոյթ մը կը ստանայ:

Բաղաձայններուն դրութիւնը նոյնն է Տիգրանակերտի բարբառին հետ, հին հայերէնի երեք աստիճանի ձայներէն երկուքը միայն կը մնան՝ թրթռուն եւ թաւ, թրթռուն եւ թաւ ձայները կը դառնան թաւ, իսկ խուլերը կը դառնան թրթռուն· օր· *փաղլայ*՝ բակլայ, *փարի*՝ բարի, *փարց*՝ բարձ, *փէրէլ*՝ բերել, *փանցըր*՝ բարձր, *քիրք*՝ գիրք, *թօռ*՝ դուռ, *թանագ*՝ դանակ եւ *թաս*՝ դաս[1]:

Ձայնաւորներուն եւ բաղաձայններուն մէջ Մալաթիոյ բարբառը հետեւեալ ձայնափոխութիւնները կ'ընծայէ[2]·

Ե=ա, ինչպէս *մանձ*՝ մեծ, *փառ*՝ բեռ, *սըառ*՝ սիսեռ, *լառ*՝ լեռ, *յափ*՝ երբ:

Ե=ի, ինչպէս *ցօրին*՝ ցորեն (ցորեան), *խիլք*՝ խելք, *ավետիրան*՝ աւետարան, *սիվ*՝ սեաւ (սեւ)[3]:

Ու=օ, ինչպէս *թօռ*՝ դուռն, *չօռ*՝ ջուր, *հօմ*՝ հում:

Այ=է, ինչպէս *մէր*՝ մայր, *էս*՝ այս, *փէտ*՝ փայտ, *էգի*՝ այգի, *էրիլ*՝ այրիլ:

---

(1) *Մկրտիչ Որբերեան* (Բիւրակն. *1900, էջ 118*) *մատնանիշ ըրած է բաղաձայններու ուրիշ փոփոխութիւններ, որոնք Աճառեան անտեսած է. օր.* ծաղկոծ—*ծաղկոց*, տանծ - *տանձ*, մէշք—*մէջք եւ ուրիշներ*:

(2) *Մ. Որբերեան իր յօդուածին մէջ* (Բիւրակն, *1900, էջ 118*) *ձայնաւորներու մի քանի ուրիշ փոփոխութիւններ ալ կը նշանակէ: Այսպէս.*

*ա* = *ը*, վարժըպետ՝ *վարժապետ*,
*իւ* = *ե*, եղ՝ *իւղ*,
*ու* = *ը*, ըռուբ՝ *ուռուպ*,
*ու* = *ե*, ուղունկ՝ *եղունգ*,

*որոնք կրնան աղաւաղումներ ալ ըլլալ:*

(3) *Մ. Որբերեան ունի իս՝ փոխան ես-ի:*

Այ=ա, ինչպէս *յան*՝ ձայն, *լան*՝ լայն:

Ոյ=օ, ինչպէս *քօր*՝ քոյր, *լօս*՝ լոյս, *փօն*՝ բոյն:

Իւ=ի, ինչպէս *ախիր*՝ աղբիւր, *հէրիր*՝ հարիւր, *էրին*՝ արիւն:

(Այս երկու ձայնափոխութիւնները յատուկ են նաեւ Խարբերդ–Երզնկա-յի բարբառին, բայց Տիգրանակերտի բարբառին մէջ գոյութիւն չունին):

Իւ=օ, ինչպէս *սօն*՝ սիւն:

Իւ=էօ, ինչպէս *ցէօն*՝ ձիւն:

Քերականութեան մէջ չկրցանք գտնել առանձին յատկանշական ձեւեր եւ եթէ հրատարակուած հատուածները ճիշդ են, կրնանք ըսել թէ Մալաթիոյ բարբառին քերականութիւնը առանձին նորութիւններ չունի» (*տես Հրաչեայ Աճառեան*, Հայ բարբառագիտութիւն, Ուրուագիծ եւ դասաւորութիւն հայ բարբառների, *Մոսկուա*, 1911, *էջ* 196–197):

*Հրաչեայ Աճառեան իր «ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ» գործին մէջ (Բ. հատոր, էջ* 345–346) *գրեթէ նոյն բաները կը կրկնէ Մալաթիայի բարբառին համար, միայն Քերականութեան մասին իր յայտնած այն կարծիքը թէ առանձին յատկանշական ձեւեր չունի այս բարբառը, պզտիկ փոփոխութեան մը ենթարկած է, յայտնելով թէ Մալաթիոյ բարբառին քերականութեան մէջ հետաքրքրական է Սահմանական ներկայի եւ անկատարի չարունակական ձեւը, որ կը կազմուի* ու *վերջաւորութեամբ եւ կը յարէ թէ իր կարծիքով ասիկա* ա–*ի կրճատումն է* (*ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ, Բ., էջ* 346):

*Այս բացատրութիւններէն վերջ Աճառեան կու տայ երկու փոքր նմոյշներ այս բարբառով, մին Մալաթիայէն եւ միւսը Ատիեամանէն, որոնք մենք ալ հոս կ՚արտագրենք.—*

## 1. ՄԱԼԱԹԻԱՅԷՆ

*Դէվլէն* ինզէր հօփը հօփը ցառէ թօղ չի տար:
Օղիլօզը կը քէրվի՝ անօթին *ղիման* գըյնի:
Հարսնէ դունը չը քըդէ, շէրէփն առիր գը վազէ:
*Ջարա* չունիս նէ ինչո՞ւ *ղուջանմիշ* գըլլիս:
Գաղուները քացին, մուզերուն ջանփա փացվեցավ:
Մէղավօրը ժամ չէ գէցիր, գայնիր է նէ մադը աչքն է մդիր:
Ջօրը (ջուրը) սանտը թիր՝ ծէծէ ծէծէ *վինէ* չօռ է:
Դանծը քէնց ծառը ծանտր է:
Ձեմ ուզիր ջէփս թրէք, չեմ զարքըվիր՝ ծոցս տվէք:
Ջօրը *բարդագը* տէսնէս, տէրտէրը խուցը:
Ուժը իշուն չի հասնիր, *փալանը* գը ծեծէ:
Շունը գը զէնէն տէ դիրուն մնեռէ գամչնան:
Ես գուզիմ շալզօղ Ասված գուդա շալգէլիք:
(*Անոուած ԲԻՒՐԱԿՆ*, 1899, *էջ* 772):

## 2. ԱՏԻԵԱՄԱՆԷՆ

Մուդ դդում․ էրին որջէս․ քէօռ ընծաս․ խանադ խարապ ըննա․ պատին տակը մննաս․ էրէսիդ հայող չննա․ *պէմուրատ* էրթաս․ պապուդ գանկը կողը չհանգչի․ Աստուծոյ *խըմին* երթաս․ *օղուլ ուշաղի* տէր չննաս․ կէտնին եօթը յատակը անցնիս․ տունիդ *պայխուշ* խօսա՝ աչգըներդ *փաթր փաթր փաթլամիշ* ըննա (*տես ԲԻՒՐԱԿՆ*, 1900, *էջ* 321)։

*Այս պզտիկ նմոյշները իսկ ցոյց կու տան թէ* «Մալաթիացիին լեզուն զուտ հայկական» *չէ, մինչ Յ. Ազատխանեան հակառակը կը պնդէ* (Նոր Մալաթիա, *Ը. տարի*, *Թ.* 2, 1947, *Յունուար*)։ *Ան կ'ըսէ թէ* «մեր լեզուի գաւառական գործածութեան մէջ ունինք հայ բառերու աղաւաղեալ ձեւերը ու օտարազգի բառեր, որոնք մեծ թիւ մը չեն կազմեր։ Մեր ոճը, նախադասութիւններու շարահիւսութիւնը իր պարզութեան մէջ հարազատօրէն հայկական են»։ *Ուրիշ մալաթիացի մը, Կ. Գ. Նաճարեան* (*տես* «Լեզու եւ բարբառ Մալաթիոյ» *ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Բ. տարի*, 1936, *Թ.* 4) *աւելի ազգայնական եւ աւելի մոլեռանդութեամբ իր ծննդավայրը սիրող մը ապահովաբար, կը գրէ թէ* «մեր բարբառի խառն երեւոյթը երբեք չի համապատասխաներ այն գրաւոր փաստերուն եւ լեզուին, որոնք արձանագրուած են Մելիտինէի մեր տապանաքարերուն վրայ աւելի քան հազար տարիներ առաջ», *ինչ որ երբեք չէ համապատասխաներ իրականութեան, քանի որ հազար տարուան տապանաքարեր վստահօրէն կրնանք ըսել թէ Մալաթիոյ մէջ չեն գտնուած եւ եթէ գտնուած ըլլային, գրոց լեզուով եւ ոչ թէ խօսուած լեզուով, մինչ գաւառաբարբառ մը խօսուած լեզուն է*։

*Իր տեսութիւնը, խախուտ եւ անապացուցանելի, ինքն իսկ կը քանդէ յարելով թէ* «կ'ընդունիմ որ մեր բարբառը խառն է եւ երբեմն բառերը կոշտ, սակայն եւ այնպէս ան ինքնայատուկ ձեւ է»։

*Նոյնպէս ինքն է որ կը յայտարարէ իրողութիւն մը, որ նոյնպէս իրեն դէմ է*։

«Մենք, *կ'ըսէ*, կը գործածենք երեսուն առ հարիւր օտար բառեր, որոնք երբեք կամաւոր չեն եղած, իշխող ազգեր դարերու ընթացքին պարտադրած են այդ մեր վրայ բռնի կերպով։ Միեւնոյն ատեն, երբ կը նկատենք մեր կրդզիացած հանգամանքը, հաղորդակցութեանց դժուարութիւնը, այն ատեն պէտք է հպարտ զգանք, որ հայերէն լեզուն իր խառն երեւոյթով իսկ անաղարտ պահելու քաջութիւնը ունեցած են մեր նախնիքները»։

*Այս բոլորը իրար կը հակասեն։ Միայն* 30 *առ հարիւր օտարացած լեզու մը շատ բան տուժած է արդէն իր հայկականութենէն եւ հայեցի դրոշմէն*։

*Չափաւորութիւնը եւ տրամաբանութիւնը աւելի պահած է* Կիլիկեցի (Սուրհանդակ *օրաթերթ*, *Պոլիս*, *Թ.* 1900), *որ եթէ ծննդեամբ չէ, գէթ երկարամեայ բնակութեամբ Մալաթիան շատ լաւ ճանչցող մը ըլլալ կը թուի*։ *Ան կը յայտնէ թէ* «Մալաթիոյ քաղաքին բնակչութիւնը ըստ բաւականի կոկիկ հայերէն մը կը խօսի, իսկ գիւղերու շատերը քրդախօս են» *մինչ Փրոֆ.*

*Մկրտիչ Որբերեան համաձայն չէ այս տեսութեան եւ շատ չի հաւնիր Մա-լաթիացիներու լեզուին, վասնզի կ՚ըսէ թէ (տես ԲԻՒՐԱԿՆ,* 1900, *էջ* 118) «Հայեր իրենց բոլոր նախադասութիւններուն մէջ տաճկերէն բառեր անխտիր կը գործածեն: Սա՝ գաւառացիին հանրացած մէկ սովորութիւնն է, կարելի է հոս չափազանց, որուն համար ալ զարմանալու չէ, երբ գիտցուի թէ Կիլիկիոյ մէջ Մալաթիան այն հազուագիւտ քաղաքներէն է, ուր հայերէն լեզուն պահ-ուած է: Առոգանութիւնները կը զանազանուին իրենց լայն ու կոկորդալիր հնչումներովը» (*նոյն*):

*Կարապետ քհնյ. Պէննէեան եւս կը հաստատէ Մալաթիացի Հայերու լեզուին խիստ* թանձր *եւ* կոկորդային *հանգամանքը, այլ նաեւ գոյութիւնը* «ոչ միայն թուրքերէնէ, պարսկերէնէ եւ արաբերէնէ մուտ գտած բառեր»*ու այլ եւ* «հին եւ նոր հայերէնին ալ աղաւաղեալ» *ըլլալը:*

*Արդարեւ փրոֆ. Մկրտիչ Որբերեան կը թուէ շարք մը բառեր, որոնք* աղաւաղումներ *են, որոնք իբր բառեր չեմ գիտեր թէ ո՞ր աստիճան արդարա-ցի է իբր Մալաթիոյ գաւառին յատուկ անոր գաւառաբարբառին բառարանը անցընել, ինչպէս ըրած է Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան:*

*Փրոֆ. Որբերեան այս դասակարգին մէջ կը դնէ հետեւեալ բառերը.*

*Միշնեկ — միջնեկ*
*Կող — կոյղ*
*Յօռ — ուր*
*Պատըփան — պատուհան*
*Յո՞մ — ո՞ւմ*
*Բխերիկ — բուխերիկ*
*Իշպէս — ինչպէս*
*Վավ — ով*
*Պզտի — պզտիկ*
*Առվու — առու*
*Ժաժք — շարժ*
*Ծանտր — ծանր*
*Մանտր — մանր*
*Շրփող — շարժող*
*Կարմուճ — կամուրջ*
*Անկաճ — ականջ*
*Քինթ — քիթ*
*Հաւէղ — խաղող*
*Արկայ — ակռայ*
*Սաւլեր — սալոր*
*Օրի՞ — է՞ր*
*Տէնէր — տանիք եւայլն:*

*Իրականութեան մէջ պէտք է խոստովանիլ թէ Մալաթիացիներու բեր-նին մէջ հայերէնը չափազանց աղճատուած, այլափոխուած, աղաւաղուած*

պէտք է եղած ըլլայ եւ կարելի չէր զայն նկատել, 30 առ հարիւր օտար բառամթերքով՝ զուտ հայեցի գաւառաբարբառ մը: Զարմանալի է որ այնքան ընտանի էին այդ օտար բառերը եւ այնպէս իւրացուած, որ իրենք այլեւս անոնց օտար հանգամանքն իսկ մոռցած են եւ իբրեւ իրենց գաւառաբարբառին հայ բառերը համարել սկսած են և իբր իրենց գաւառին բառամթերքին մաս կը ներկայացնեն, ինչպէս պիտի տեսնուի բառարանէն, որ կազմուած է երկու բաւական ճոխ եւ մի քանի մանր հաւաքումներու համադրութեամբ:

Այդ գործերուն առաջինն է Գրիգոր Խանձեանի «ՄԱԼԱԹԻՈՅ ԳԱՒԱՌԱԲԱՐԲԱՌ»ը աշխատասիրութիւնը, որ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան «Հարազատ» հաստուածին կեդրոնական վարչութեան կողմէ Պէյրութի մէջ հրատարակուած Տ. Կարապետ քհնյ. Պէննէեանին համառօտ աշխատասիրութեան իբր յաւելուած տպուած է եւ կը գրաւէ գիրքին 243–274 էջերը:

Այս աշխատութիւնը թուական ունի 16 մայիս 1899:

Երկրորդն է Տ. Կարապետ քհնյ. Պէննէեանի ընդարձակ ձեռագիրին մէջ Լեզու խորագիրով հատուածին մէջ (էջ 147–173) իր կազմած բառարանը, որուն իբր նախաբան սա տողերը գրած է նահատակ քահանան.

«Ինչպէս ամէն գաւառ, նոյնպէս Մալաթիա իր առանձին լեզուն ու արտասանութիւնն ունի: Անոնց լեզուն չըսենք կոշտ, խիստ թանձր եւ կոկորդային է եւ ոչ միայն թուրքերէնէ, պարսկերէնէ եւ արաբերէնէ մուտ գտած բառեր, այլեւ հին ու նոր հայերէնն ալ աղաւաղեալ է: Եւ ուստի գրերու հնչման եւ լեզուի արտասանութեան վրայ մանրամասն տեղեկագրել գործոյս ընթացքէն դուրս ըլլալուն համար, զանց առնելով, գաղափար մը տալու համար միայն կրճատեալ, տառադարձեալ, տառափոխեալ, աղաւաղեալ եւն. բառերէ հետեւեալ «հաւաքածոյ»ն մէջ կը բերենք»:

Հոգելոյս Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան շատ խոհեմ եղած է այս մասին, վասնզի ապահովաբար շատ մեծ դժուարութիւններու պիտի հանդիպէր, եթէ փորձէր գիտական պահանջներու համաձայն գրերու հնչման եւ լեզուի արտասանութեան վրայ մանրամասն տեղեկութիւններ տալ, վասնզի ատիկա ընելու համար յատուկ պատրաստութեան կը կարօտէր, ինչ որ չունէր հանգուցեալ քահանան, որուն պատմութեան եւ բանասիրութեան վրայ ունեցած ըմբռնումները շատ նախնական հանգամանք մը ունէին, ինչպէս կը տեսնուի իր գործին շատ մը մասերուն նոյնպէս այս գլուխին մէջ:

Իբր բանահաւաք հանգուցեալ Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան կատարած է իր դերը՝ եղածին պէս ներկայացնելով Մալաթիոյ գաւառաբարբառին մէջ գործածուած բառերը առանց նկատի առնելու թէ անոնք աղաւաղումներ կամ օտար բառեր են:

Գաւառաբարբառի մը բառարանը կազմելու համար նախամեծար էր լեզուին մէջ գտնուած, այլ սակայն աղաւաղուած բառերը, մանաւանդ օտար բառերը գաւառին բարբառին ինքնայատուկ բառամթերքը չհամարել, այլ միայն նշանակել այն բառերը, որոնք հայերէն են եւ յատուկ Մալաթիոյ Հայերուն:

*Բայց որպէսզի չըսուի թէ իր գործը աղճատած ենք իր համառօտ գործին մէջ (որ տպագրուած է) գտնուած բառարանը մէկ կողմ թողուցինք, նկատելով որ այդ գործը 9 մարտ 1899–ին աւարտած է, իսկ անոր կատարելագործեալը տասներեք տարի վերջ՝ 1912–ին, հետեւաբար աւելի ճոխ եւ լրացեալ:*

*Ուստի ձեռագիր բառարանը նկատի ունեցանք, անոր վրայ աւելցնելով Գրիգոր Խանձեանի կազմած բառարանին մէջ գտնուած այն բառերը, որոնք Պէննէեան քահանայ չունէր իր բառարանին մէջ: Իսկ մանր հաւաքումներէն օգտուեցանք Կարապետ Կէօզիւրեանի քանի մը տասնեակ բառերէն, որոնք հրատարակուած էին ՊԱՊ ՈՒԽՏԻ մէջ (Թիւ 64, 1950, Սեպտ.) իր մահէն քիչ առաջ: Անոնցմէ միւսներու մէջ պակասածները եւս առինք:*

*Հետեւաբար մեր կազմած բառարանին հիմը կը կազմէ Կարապետ քհնյ. Պէննէեանին 1912ին կազմած անտիպ բառարանը՝ Գրիգոր Խանձեանի, Կարապետ Կէօզիւրեանի, Մկրտիչ Որբերեանի եւ այլ յաւելումներով:*

*Գալով Մալաթիոյ բարբառին քերականութեան, թէեւ Հրաչեայ Աճառեան անոր համար կ'ըսէ թէ յատկանշական ձեւեր չունի, բայց Պէննէեան քհնյ. իր գործին անտիպ ընդարձակ ձեռագիրին մէջ ունի այս մասին համառօտ ծանօթութիւններ, որոնք նոյնութեամբ կ'արտագրեմ նախ քան բառարանը.—*

# ՈՒՐՈՒԱԳԻԾ

# ԿԱՄ

# ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Քերականութիւնն ալ իր անհրաժեշտ կարեւորութիւնը եւ տեղը ունի գաւառաբարբառի ծանօթացման մէջ: Զի առանց անոր չէ կարելի որոշ գաղափար կամ նկարագիր մը առնել լեզուի կամ բարբառի մասին:

Մալաթիոյ գաւառաբարբառի քերականութեան, սակայն, մինակ իբր ուրուագիծ, վերիվերոյ ծանօթութիւն մը տալ եւ կատարեալը նոյնպէս կարող եւ ձեռնհասներու թողլով՝ կը բաւականանանք հետեւեալներով.—

Հոլովներու ձեւեր. Հոլովման ընդհանուր ձեւը աս է:

1.— Քար, քարի, քարէ, քարով:

2.— Կով, կովու, կովէ, կովօք:[1] Այս հոլովման տակ կ'երթան.

Ա.— Միավանկ բառերու մեծ մասը, ինչպէս, հով, հովու, ցաւ, ցա–

(1) *Մալաթիոյ բարբառին քերականութիւնը եզակի գործիական հոլով չունի, ինչպէս մատ, մատօք, մուկ, մկօք, ջօռ, ջրօք, հող, հողօք, կատու, կատուօք:*

ւու, ժամ, ժամու (եկեղեցի), հորթ, հորթու, գող, գողու եւն.:

Բ.— Շատ մը *ի* վերջաւորող բառեր, ինչպէս հոգի, գինի, գօտի, ձի, թի, ջրի, ուռի, բարտի, օսկի եւն.:

Գ.— Գրաբարի եզակի սեռականի մէջ *ոյ* վերջաւորող բառերէն շատեր, ինչպէս ամիս, մարդ, գլուխ, որթ (որթ), օրթու եւն.:

Դ.— Գրեթէ բոլոր գիւղերու եւ քաղաքներու անուններն, ինչպէս, Օրտուզի, Խարբերդ, Սեւազ, Մարաշ, Պոլիս եւն.:

3.— Ձուկ, ձկան, ձկէ, ձկօք կամ ձուկօք: Այսը պէս կը հոլովուին.

Ա.— Մուկ, նուռ, բառ (բեռ) եւն.:

Բ.— *Ն* վերջաւորողներէն ոմանք, ինչպէս, տուն, շուն եւն.:

Գ.— *ին* վերջաւորողներէն ոմանք, ինչպէս կնիկ, էրիկ, եւն.:

Դ.— Բոլոր *թիւն* վերջաւորողներ, ինչպէս բարութիւն, նեղութիւն, փրկութիւն, եւն.:

Ե.— *Ում* վերջաւորողներ, ինչպէս խթում, թաղում եւն.:

Զ.— Բոլոր ժամանակ ցոյց տուող բառեր, ինչպէս օր, ցորեկ, գիշեր, ամիս, տարի, երէկ, վաղը, էսօր, կէսօր եւն.: Ասոնց բացառականը կ'ըլլայ *ընէ*, ինչպէս վաղուընէ. իսկ գործիականը *ընօք*, ինչպէս օր, օրւան, օրընէ, օրընօք:

Է.— Ասվածածին, Աստվածածնայ: Ասոր պէս կը հոլովուին Լուսաւորիչ, Ս. Փրկիչ, Ս. Արփէն եւ այլ շատ մը սրբոց եւ սրբավայրերու անուններն, ինչպէս նաեւ ժամանակ ցոյց տուող բոլոր բառերն եւ եկեղեցի բառը: Օր. գիշեր, գիշերուայ, ժամ, ժամուայ, եկեղեցի, եկեղեցուայ եւն.:

Ը.— Քոր, քրոջ, քրոջմէ — մէն, քրոջմօք, քրոջը հետ: Ասոր կը հետեւիններ, տալ, տէզր, աներ, կեսուր, կէսրեր, տէր, ընկեր եւն.:

Թ.— Մէր, մօր, մօրմէն— ըմէն, մէրօք: Ասոր պէս կը հոլովուին տիբէմէր, կնքամէր եւ եղբայր բառերն:

Ժ.— Կեսուր, կեսեր–ոջ, կեսրոջմէն, կեսրօք: Այսպէս ալ տագր, տաքեր:

Վերոգրեալները հոլովման եզակի ձեւերն են, որոնց յոգնակիներն՝ ընդհանուր ձեւին պէս, միավանկ բառերու համար՝ *եր* եւ բազմավանկներու համար ալ *ներ* մասնիկներ ըլլալէ զատ՝ կան այլ յոգնակերտ տարբեր մասնիկներ ալ, որոնք հոլովման ձեւերն ալ կը փոխեն, ինչպէս.

1.— Կնիկ, կնտէք, էրիկ, էրկտէք, տէզր, տէզրտէք:

Հոլովում.— Կնտէք, կնտոց, կնտոցմէ–մնէ, կնտոցմօք: Այսպէս կը հոլովուին ազգականութեան պարագայ ցուցնող բառեր:

2.— Աչք, աչւըներ. օտք, օտւըներ:

Հոլովում.— Աչքւըներ, աչքւըներու, աչքւըներէ, աչքւըներօք: Ասոր կը հետեւին մարմնոյ զոյգ անդամներն ձեռք, ականջ, յօնք, ոտք, մատ, ծունկ, եղունգ եւն.: Ու քանի մը ուրիշ բառեր՝ տուն, դուռ, շուն, տալ, քոյր, մայր եւն.:

3.— Ձի, ձիանք, դեւ, դիւանք:

Հոլովում. — Ձիանք, ձիանքներ, ձիանքների, ձիանքներոք: Դիւանք-ների, Դիւանքներոք:

4. — Տարի, տարետան:

Հոլովում. — Տարետաններ, տարետաններու, տարետանների, տա-րետաններոք, որուն կը հետեւին, մատնի, գօտի, խավլի, եւ տեղ ցուցնող բառերու մեծ մասը:

Բացի ատոնցմէ գործածական են գրաբարի մէջ անեզական համար-ուածները ու յոգնականացուցիչ ք-ով եւ ց-ով շինուած բառերն ալ, ինչպէս բաղնիք, բաղնից — հարսնիք, հարսնից — տարիք, տարէց — մօրուք, մօր-ուաց — ձառք, ձառաց — Շլլի, շլլից, — օտք, օտաց — աչք, աչից — մեղք, մեղաց — վարձք, վարձուց — վաղ, վաղուց — շատ, շատոնց — վլացք վլացուց եւն.:

## ԳՈՐԾԱԾԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒՆՆԵՐ

1. — Անձնական դերանուն իր հոլովման ձեւովը.

Եզ. — Իս, իմ, իս, ըզմէ, ըզմօք: Յզ. — Մեք, մեր, մեզ, մէք, մզմէ, մզմօք:

Եզ. — Դուն, քու, քեզ, քզմէ, քզմօք. Յզ. Դուք, ձեր, ձեզ, յէք, ձզմէ, ձզմօք:

Եզ. — Էն, էնուր, էնկից, էնօք. Յզ. Էնոնք, էնոնց, էնոնցմէ, էնոնցօք կամ էնոնքօք:

Եզ. — Հինք, հռէն, հռմէ, հռմօք. Յզ. Հռենք, հռենց, հռենցմէ, հռենցմօք:

Յզ. — Մէկզմէկու, մէկզմէկէ, մէկզմէկօք:

2. — Ցուցական դերանուն.

Եզ. — Էս-էսի, էսուր, էսկից, էսօք. Յզ. Էսոնք, էսոնց, էսոնցմէ, էսոնցմօք:

3. — Ստացական դերանուն.

Ա. դէմք. — Իմս, իմընուս, իմըէս, իմըօքս — իմըններս, իմըննե-րուս, իմըններէս, իմըններօքս:

Բ. դէմք. — Քուկդ, քուկինուտ, քուկնուտմէ, քուկինօքտ — քուկերտ, քուկինններուտ, քուկիններէտ, քուկիններոք:

Գ. դէմք. — Հռենը, հռենինուն, հռենինէն, հռենինօքը — հռենինները, հռենիններուն, հռենիններէն, հռենիններոք:

Մերը, միրունուն, մերերը, մերիններուն: Ձերը, ձէրինուն: Հռենցը, հռենցընուն, հռենցիները, հռենցիններուն:

4. — Անորոշ դերանուն.

վա՞վ, վարո՞ւն, յո՞ւմ, վարո՞ւնէն կամ յո՞ւմմէ, վարունօ՞ք:

## ԲԱՅ

Մալաթիոյ գաւառաբարբառը գրեթէ միայն երկու լծորդութիւն ունի, որովհետեւ Ա. լծորդութիւնն ալ Բ.ին պէս Ի կը վերջաւորուի. օր. Սիրեմ= սիրիմ. ուտեմ=ուտիմ եւն.: Իսկ Դ. լծորդութեանէն միմիակ «թողում»ը կայ:

Ուստի միենակ էական բայը խոնարհելով բաւականանք:
Սահմն. եղանակ.— Իմ, իս, է. իք, էք, էն:
Անկատար եղանակ.— էի, էիր, էր. էաք, էիք, էին:
Կատարեալ եղանակ.— էղայ, էղար, էղաւ. էղաք, էղաք, էղան:
Ապառնի եղանակ.—Պիտի կամ պիտ'ըլլիմ, պիտ'ըլլիս, պիտ'ըլլի, պիտ'ըլլիք, պիտ'ըլլեք, պիտ'ըլլեն:
Հրամայական եղանակ.— էղի'ր, մ'ըլլիր, էղէք, մ'ըլլէք:
Ստոր. եղանակ.—Ըլլիմ նէ, ըլլիս նէ, ըլլի նէ, ըլլիք նէ, ըլլեք նէ, ըլլին նէ:
Աներեւոյթ.— Ըլլիլ. ընդունելութիւն — էղող, էղած, ըլլելիք:

## ԱԾԱՆՑՄՈՒՆՔ ԵՒ ԲԱՐԴՈՒԹԻՒՆՔ

Ան.— Ածան, խածան, հազան, ուզան, վազան:
Անի.— Անուանի, լեզուանի, պիտանի:
Անք.— Ախպրանք, հօրքրանք, տալանք, քուրանք, բամբասանք, ապսպրանք, զօվասանք, դատանք:
Եղէն.— Արծթեղէն, բրդեղէն, խմորեղէն, մսեղէն:
Ենական.— Պապենական, տատենական:
Ենի.— Ինչենի, կովենի, վայրենի, հորթենի:
Ենք.— Ամուենք, Բարսեղենք, Մամենք, Փիլօենք:
է.— էրկթէ, հողէ, քարէ, օսկիէ:
էնք.— Մէրէնք:
Իկ.— Թաթիկ, մէյրիկ, հատիկ, պապիկ, տատիկ:
Իչ.— Մանիչ, մէրիչ, խոռվիչ, նետիչ:
Իք.— Առնելիք, խմելիք, ուտելիք, հագնելիք:
Լիկ.— Պզտլիկ, պճլիկ, սուրլիկ:
Կակ, կեկ.— Խոշորկեկ, հեստկեկ, մեծկակ, լանկեկ:
Կան.— Լալկան, ծծկան:
Կոտ.— Ամչկոտ, վախկոտ:
Մունք.— Հարցմունք, պատահմունք:
Նոց.— Ճննոց, յերդնոց, դրսնոց, ներսնոց, վարնոց:
Ող.— Ուզող, ուտող, բերող, գացող, տանող:
Ոտ.— Խենթոտ, բրդոտ, աղտոտ, ծրտոտ, քարոտ:
Ոց.— Խարտոց, ծամոց, թրչոց, սղոց, քերոց:
Ուկ.— Դնուկ, բանուկ, զողտուկ, էրուկ, նստուկ:
Ուաք.— Առնուաք, բռնուաք, զալուաք, դրուաք:
Ութուն (ութիւն).— Աղէկութուն, գէշութուն, չարութուն, բոզութուն:
Որդ.— Էնելորդ, աշնորդ, պակսորդ, մնացորդ, օղորդ:
Ում.— Բաժանում, հասնում, հատնում, թաղում:
Ուք.— Աւլուք, քերուք, կանուք, ժողվուք, հըյրուք:

Ուն·— Հասուն, մածուն, կակրդուն, էփուն:
Ուց·— Դեղնուց, կարմրուց, սեւուց, ճերմկուց, վաղուց, լեղուց, պտղուց:
Ուստան·— Իրաւուստան, սուտուստան:
Չէք·— կարողչէք, աւուրչէք, ճախշողչէք, քերողչէք:
Սքուն (ց–քուն=իվեր)·— Կիրակւանսքուն, հեւունէսքուն, Ասվածածնէնսքո·՞:
վար·— Հայեվար, տաճկեվար, դարվար:
վարի·— Մարդավարի, քաղաքավարի:
վերէ (իվեր)·— Առջօրւանվերէ, երէկւանվերէ, ըռընկվանվերէ:
Տուք·— Աւլտուք, ժողվտուք, քակտուք, սրբտուք:
Տէք·— Ամուտէք, ախպրտէք, քենիտէք, դրացնտէք:
Ցէ (պէս)·— Խացէ, էնցէ, էտցէ, սնցէ, տնցէ, ննցէ, հնցէ:
Ցի·— Գեղացի, տնեցի, հասկցի, քաղքցի, իզմիրցի:
Ցու·— Ապուրցու, փէտցու, տէրացու, տէրտէրցու:
Իոր·— Քաղքւոր, հարսնւոր, ժամւոր, բանւոր:
Իուն·— Ածլուն, բանւուն, գողցուն, կոփւուն:
Օնք·— Քեառօնք, տատօնք, բէրզօնք, հնքապապօնք:
Օրսէ (որ ըլլայ)·— Խաքօրսէ, վավօրսէ, յումօրսէ:
Օք·— Մէրօք, պապօք, աղէկօք, էվերօք, խելօք:



# ԲԱՌԱՐԱՆ
# ՄԱԼԱԹԻՈՅ ԳԱՒԱՌԱԲԱՐԲԱՌԻ

## Ա.

Ա–ը բառերու եւ բայերու ներկային վերջը յաւելեալ մասնիկ, իբր *կա*, *կը*, *կոր*, *ի*, *ը*, *նը*, ինչպէս ասա–ասալ, բաննա–բաննալ: Եթէ բառը կամ բայը ձայնաւոր գիրով վերջացած է, *ա*–էն առաջ *ե* մըն ալ կ'աւելնայ· օրինակ աս տարիեա — աս տարի ալ· կուզէեա — կ'ուզէ կոր: Յետադաս մասնիկ բայերու, որ խօսակցութեան մէջ կատարեալի կամ անմիջական զօրութիւն կու տայ: Զոր օրինակ· կ'երթամա՛, կու գամա՛ = Ահա կ'երթամ, ահա կու գամ: Երբեմն վերջնական պատասխան մը տալ կը նշանակէ· օրինակ, չիմ գարա՛ = երբեք պիտի չգամ:

Աքա — եղբայր բառի մանկականը
Աբէթ — Այրած կտաւի կտոր, աբէթի հոտ — մսելու հոտ
Աբլօ — Աբբլօ — Աբրահամ
Ագի — Պոչ, կետ
Անգահ — Ագահ, որկրամոլ
Ադամա–տարուան — Հին, դարաւոր
Ադլաս — Բեհեզ, մետաքսէ գործուած
Ազոխ — Չհասած խաղող
Ազլել — Ածիլել, սափրել
Ազօք աստղիկ — Գիսաւոր աստղ
Ադամամութ — Արշալոյսէն առաջ գոյացած խոր մթութիւն, որուն կը յաջորդէ արշալոյսը: Այն մթութիւնը, որ առտուան դէմ կը տիրէ: Կ'աւանդուի թէ նախամարդը դրախտի փառքէն զրկուած երբ իր բախտը կու լար, սատանան գալով առտուան դէմ կը պատրէ զինք, խոստանալով որ եթէ «ձեռագիր» մը տայ իրեն, ինք ալ անմիջապէս կը վերաբերէ լոյսը· ձեռագիրը կու տայ, բայց իր դարձեալ խաբուած ըլլալը կը հասկնայ, երբ նոյն օրուան ցերեկին կը յաջորդէ վաղուան գիշերը:
Ադըլել — Զգել, նետել, քար եւայլն արձակել: Ըստ Գր. Խանձեանի, աթըլել:
Աժնութիւն — Աժանութիւն, առատ տարի
Աժոխք — Արժէք
Աժոխչէք — Նոյն
Ալէմէնըս — Առատօրէն, խիստ շատ, բոլորիս
Ալ — Մերթ երեւելի եւ մերթ աներեւոյթ էակ, որ կ'երեւի ամուսնացեալներու քառասունքը չլմնցած, շիկահեր, սպիտակ, լողակով եւ նիհար:
Ալէմ — Աշխարհք· 1· ընդհ· տիեզերք, 2· ամէն մարդ, ինչպէս«Ալէմ աշխարք գըտէ հինքը» — ինք ամէն մարդու գիտցածն է:
Ալիզէր — Ներկարարի իւղ, դեղնորակ

**Ալիր** — Ալիւր
**Ալուճ** — Դեղնագոյն վայրի պտուղ, թթուահամ
**Ախճին** — Աղջիկ, դուստր (պատանի)
**Ախպրանուն** — Եղբայր-ա-նոյն — (նոյնին՝ փեսային եղբայրը), փեսեղբայր, կնքահայր (ըստ Կ. Կէզիւրեանի աղբըրանուն)։ Ամուսնութեան խաչ քռնող
**Ախպիր** — Աղբիւր
**Ախպրուկ** — Աչքին առաջնակողմեան անկիւնը
**Ախպուն** — Աղբ, աղբակոյտ
**Ակոբ** — Հայերէն չգիտցողի մը քով հաց կը նշանակէ։ Ակոբ մի տուր ու կորսուի, հաց մը տուր դրկէ
**Աղնծել** — Աղանձել, խանձել, խարկել, բոհրել սիսեռ, սուրճ եւայլն, մազերը այրել
**Աղնտէկ** — Աղեղն-տակ — Աղեղնած. գդած բամպակին այն մասը, զոր լպուտը կը զատէ ճպուտով մը պատրոյգի վերածելու համար։ Աղեղով մէկ անգամուան աղնուածը։
**Աղող** — 1. Լպուտի աղեղ, 2. ծուռ
**Աղտ կորուստ** — Աղտն ու կեղտը կորսնցնող, ցոյց չտուող — լաթէ նիւթ
**Աղօթկում** — Աղօթք-կողմ — Աղօթելու կողմ, արեւելք
**Աղօս** — Աղիւս
**Աճակաճ** — Եփելով աճելու եւ ուռելու յատկութիւն ունեցող — արմտիք —
**Աճուկ** — Բազմանալ
**Աճռտել** — Աճառ-տ-ել — լաթը լուալու ատեն ձեռքին մէջ աճառով շփել
**Աճռտըվել** — Ցաւին կամ վնասին սաստկութենէն խիստ կերպով զգածուիլ
**Ամելիկան** — 1. Ամերիկա, 2. Եւրոպական կտաւ
**Ամու Հայր** — Հօրեղբայր
**Ամպար** — Ամբար
**Ամպակ** — Անհամ
**Անբան** — Անգործ
**Անգէտ** — Տգէտ
**Անդուդին, Անդալեան** — Կորստեան վիհը, ուր երթողը ոչ կրնայ լուր դրկել, ոչ ետ գալ
**Անթափ** — Հաց եփած ատեն, թոնրին բարկ եղած ատեն շուտ թրծող հաց
**Անլեզու** — Անճարակ, ինքզինք արտայայտելու անկարող
**Անծուր** — Պահքի վերաբերեալ — ուտելիք —
**Անկաճ** — 1. Ականջ, 2. Շահրակին վրայ ինին ծայրը բռնող կաշիէ գործիք մը
**Անկաճկախութուն** — Անհոգութիւն
**Անհալօկ** — Ծոցուոր, ծնանելու մօտեցած, յղի — կին —
**Անհասկում** — Հասկացողութենէ զուրկ, անզգայ
**Անժուր** — Առանց իւղի պահոց կերակուր

Անկաճխուլ — Տզրուկի մեծութեամբ բազմոտանի եւ գորշ միջատ մը: Աս միջատը եթէ մարդու ականջը մտնէ, կը խլացնէ եղեր:
Անկաճկաշուկ — Մանկական խաղ մը: «Իրենց նետուած պտուղը, եւայլն առաջ խլողին ձեռքէն յափշտակելու համար միւսները անոր ականջը կը քաշեն ուժգին կերպով մինչեւ որ ձգէ»:
Անկար — Տեսնելու կարողութիւն չունեցող, կոյր
Անկճել — 1. Մտիկ ընել, ուշադրութիւն, 2. ետքինը մտածել
Անկճէ նետել — «Անկճել»ին հականիշը, կարեւորութիւն չտալ
Անկուտ — Առանց ստակի, անխելք
Անճարակ — Չքաւոր, աղքատ
Աննուխ — Անանուխ
Աննի — Առանց աղի, անլի, Աննի ապուր կլմանի — Անհամ մարդ
Անորգել — Հայհոյել
Անունն ելած — Անբարոյական, անպատիւ մարդ
Անուն Պակասութիւն — Անպատուութիւն, վատահամբաւութիւն
Անշահ — Անօգուտ
Անպակ — Ամպակ, անշնորհ, անհամ տղայ մըն է
Անպաշար — Անկարող, գործել պաճարել չգիտցող
Անխտար — Չափէն աւելի, այնչափ, այնքան
Անվարտի պարոն — 1. Վարտիկ չունեցող, 2. գձուձ աղքատ, տգէտ
Անվլայ — Ան-լուա — չլուացուած, անմաքուր — մարդ եւ իր
Անտազա — (թրք. էնտազէ) — կանգուն ձեւողներու. դերձակներու չափ մը, կանգունէ քիչ պակաս
Անտղան — Այնչափ, այնքան
Անպակ — Ամպակ — անհամ, անախորժ (ուտեստ)
Անդամօք (էլլալ) — Ամբողջութեամբ, բոլոր անդամներով արմատէն խախտիլ. ելլելը (ծառի, ակռայի) եւայլն
Աշել — Աշըկել — Աչել, հսկել, հերթապահութիւն, սպասել
Աշխիլ — Աւրուիլ, թթուիլ, ժողխիլ (կերակուրի)
Աշխարհք մտնել — Կարգուիլ, ամուսնանալ
Աշխըկօք (ըլլել) — Աշխարհ-կ-օկ) — Աշխարհի բոլոր բարիքներովը օժտըւած մէկու մը պէս ուրախ ըլլալ. շատ գոհ մնալ
Աշխըրքինը — խիստ շատ. տես եւ Ալէմինը
Աշկապուկ — Աչք-կապուկ խաղ
Աչուրիա — Աչնորիա, հսկել, պահապան, հերթապահ
Աշք — Աչք
Աշունք — Աշուն
Աշք տալ — Մէկուն չար նայուածք մը ուղղելով վնասել, հիւանդացնել
Աշղ — Բնական տաղանդի տէր, երգիչ բանաստեղծ
Աշք-Բերան (չունենալ) — Դիւրին եւ պարզ գործ. «ի՛նչ, թերզութո՞ւնն ա աշք-բերան մ'ունի»:

Աչէն — Մախաղ, պարկ

Աչից հուլում — Յուռութուլունք, կապոյտ ուլունք մը որ պզտիկ տղուն որ-եւէ մէկ տեղը կը կարեն աչքի չհանդիպելու համար:

Ապրիմ–չապրիմ — Երիցուկ ծաղիկը, որուն թերթիկները մէկիկ մէկիկ բըռ–ցընելով իրենց բախտը կը փորձեն տղաք:

Ապուր — Կերակուր

Ապուրցու, ապրցու — Ապրուստ, աղցուած ցաւար ու կորկոտ, որ աշունը միանգամայն կը պատրաստուի· «Ապրցուի շաղամք գացի՞ք: Ապրցուն շաղէեա՛ — Ապրցուն կը շաղէ

Առաքիա — Պահանք

Առ է — Եռալու վիճակին է

Առաջուց — Առաջուա՞է, կանխաւ

Առջօռ — Եռացած ջուր

Առեւուն — Աւրուած, ոչինչ, չքոտի, բանի չեկող: «Առեւուն–Գրողէն» էլլալ կ՚ըսուի երբ բանի մը տրուած աշխատութիւնը բոլորովին ոչինչը կ՚եր–թայ: «Արեւ», «Գրող» հին հաւատքէն բան մը ունի՞ն արդեօք:

Առկա — Ակռայ· «Առկան կոյտելիք մարդ է = Շատ խիստ վայրագ մարդ է

Առպա — Շիտակ չեղող, անհաւասարակշիռ

Առէջ — Ջուլհակին մանածը շտկելը, գործելու պատրաստ մանածը:

Առիք — Տանը վրան, առաստաղը

Առնալ Ջիտալ — 1· Ջհասկցնել, 2· Անտարբեր և պաղարիւն ըլլալ· «Մարդը հէչ առնալ չէ տվեր»

Առջնեկ — 1· Անդրանիկ, առաջին ծնունդ, 2· Նոր հարսին առջեւը կենա–լով՝ առաջնորդող կին· կնքամայր

Առնվել — «Առնալ չտալ»ին հականիշը — Սրդողիլ

Առջեւը (էլլալ) կամ ճամբան կտրել — Յուղկահարութիւն

Առցուաք — Մետաղները մանոյցով իրարու հետ միացնելու գործողութիւնը

Ասք–տակ — Ազգատոհմ, «Ասք–տակը բնտռենա»

Առք — Հաք, երկաթի կամ պղինձի խուք տալ

Առշետ — Խօսքը շուտ հասկցող· նախանձոտ

Առվու — Գետակ, գետ

Ասպ — Շրիցուած չուան, որով սանտրներու ատամները կը միացնեն:

Ասեղ — Ասեղ

Ասղ — Աստղիկ, բախտ· «Աստղը բանուկ է». բախտը յաջող է

Ասված — Աստուած

Ասվածած — (Աստուածածին), վերափոխումն Ս· Աստուածածնի

Ասղըտար — այսքան

Ատկտուք — Յատակը մնացած — դիրտ, մրուր, եւն.

Արվու — Առու

Արտը վարտկենել — Խայտառակել, առակ նշաւակի ընել

Ատորնալ — Արտորալ, աճապարել

**Ատո՛րք** — վերինին (Ատորնալի) հրամայական եղ. «Արտորցէ՛ք»
**Արալխի** — Օղի
**Արալխինին** — Ճերմակ կտաւէ շինուած գլխարկիկ, պարսկերէն «արագչին» բառէն
**Արայեղ** — Ջողաքարձ խեչ որթոյ. որթատունկին ճիւղերը վրան բարձրացընելու համար մասնաւոր շինութիւն. որթոց. (սամալըք)
**Արայիշել** — Պղնձեղէնի եւ այլ խորտուբորտ տեղերը մկրատել
**Արգակ** — Արեգակ, արեւ. Շագգըմ արգակ — բարկ, պայծառ արեւ
**Արգկել** — արեգակ–ել — Որեւէ բան չորցնելու համար արեւուն տակ փռել
**Արեւցաթ** — Արեւծագ. արեւուն ծագած, ցաթած կողմը
**Արնեւ** — Անձրեւ
**Արկայի աղտ** — Բոլորովին աննշան շահ
**Արկայէ (ըյնիլ)** — Արեւու տակ փռուած ցորենին չորցած ըլլալը հասկնալու համար երբ ակռայով կը փորձուի, զնուի, (արկայէ ընկեր է) կ'ըսուի. աղէկ չորցեր է
**Արմաղան** — Օտար երկիր՝ մասնաւորապէս Երուսաղէմ գացողներուն բերած նուէրները:
**Արպա** — Պարապ ամանին կշիռքը. թրք. տարա
**Արպանք** — Ապրանք
**Աւազան** — Եկեղեցւոյ Ս. Աւազանը
**Աւէլ (էվէլ)** — Դարձեալ, նորէն, կրկին անգամ: «Աւլէ եկաւ» — նորէն եկաւ
**Աւլուք, Աւլտուք** — 1. Աւելին հաւաքած աղտոտութիւնը, 2. Աւլելու գործողութիւնը
**Ափսոնել, թովել** — (Թրք. *էֆսունլէմէք*)
**Ասլը տակը** — Ազգատոհմը

## Բ.

**Բազմանալ** — Բարկանալ, զայրանալ, շատնալ
**Բաժնուիլ** — Եղբայր եղբօրմէ բաժնուիլ, զատուիլ
**Բանալիր** — Բանալ — ալիւր — Խմորը ձեռքին եւ թխակին չկպչելու համար գնտել եւ կողելու ատեն գործածուած ալիւր
**Բազմատ** — Բթամատ
**Բալչի** — Բանալի
**Բալավար** — Բարաւար, բարաւոր
**Բալուզայ** — Նաշիհէ շինուած մանկանց ապուր
**Բակ** — Աւերակ տուներու բաց գետինը, տեղը
**Բալըֆել** — Պահուել
**Բալըֆուկ** — Մանկական խաղ մը, պահուըտուք խաղ
**Բահիլ** — Գետինը բահով փորել
**Բահւոր** — Բահ բահող, մշակ

**Բաղադ** — խուլ, մաղաս
**Բաղարջ** — Լաւաշ
**Բաղլա** — բակլա
**Բանգտօս** — Բան-գիտ-ոց — Բանգէտ, բանիմաց — հեգնական առումով իմաստակ
**Բաննար** — Բանջար
**Բանուած** — Նկարուած, գործուած
**Բանուկ** — 1. Վարուն ճամբայ, բազմյաճախորդ փողոց, բաղնիք, կրպակ, խան, եւայլն: Շարունակ գործող. բանուկ ջաղացք — միշտ պարապ չկեցող, շահաւէտ ջաղացք
**Բան** — խօսքին մէջ պակսած բառին օժանդակը — (թրք. «շէյ»)— ինչպէս. «Բերիսնէ՝ բան երէ», բերելու որ ըլլաս··· ըրէ. — Տես եւ «իրք»
**Բանպակ** — 1. Բամպակ, 2. ներմակ՝ նմանողութիւն, ծառերը ներմակ բանպակ կտրեր են — ծաղկեր են
**Բանտ** — Կարժերու շղթայ եւ մանածէ շինուած բարակ կապ
**Բանտակ** — Կապոց. կէս բեռն փայտի. մէկ կողմի կապոցը
**Բանտեղ** — Գործատիրոջ տունը ուր վարպետները կ'աշխատին
**Բանտոտել** — Մեղմօրէն, հարեւանցի աշխատիլ
**Բանտուն** — Գործաւորին կամ արհեստաւորին իր տան մէջ բանելու յատուկ տեղ
**Բառ** — 1. Բեռ, 2. ծանրութիւն. «կոյքնին դմակը հռեն բառնէ»
**Բարակցաւ** — Հիւծախտ — (թրք. ինճէ մարազ)
**Բարեքօ** — Գոնէ (թրք. պարէ)
**Բարեւագիր** — Ընտանեկան, սովորական նամակ
**Բարեւըռնել** — Բարեւելու համար ձեռքը կուրծքը կապած կենալ
**Բարկ** — Սաստիկ վառած կրակ
**Բարկնալ** — Ինքզինք բանգէտի տեղ դնել
**Բարտի** — Ծառ — գաւազ —
**Բեղկ** — Բողկ
**Բէօղկ** — Բողկ
**Բերան** — Հեղ, անգամ. ինչպէս «քանի բերան թօթուեց»
**Բերանփոխ** — Իւղով կերակուր ուտելէ վերջ, երբեմն պահք կերակուր ուտելուն կ'ըսուի:
**Բերբեր** — 1. Փրփրեմ. անմեռուկ, 2. Արբշիռ. «խմեր, բերբեր եղեր է»
**Բերան պարպութուն** — Հայհոյութիւն — (թրք. *պօշ պօղազլըք*)
**Բերնդէկ** — Բերան-կապ — Խուրձերու, պարկերու բերանը կապել կամ կապելու կապ
**Բերնփոխ** — Սովորական ուտելիքներուն հետ կերուած որեւէ ուտելիք
**Բերնուկ** — Բերանէն դուրս տրուած պատառ
**Բերնի առիք** — Քիմք
**Բզեզ** — Իշամեղու

Բզքտել — Յօշոտել
Բըթ—Բըթ — Կաթելու ձայն (անձրեւի)
Բթակ — Ջաhրակին այն մասը ուսկից մանեղը անցնելով կը դարձնէ:
Բթակարան — կինեբու առեղծուածային խօսքեր որ չահը մանելու ատեն կ'ըսեն իրենց իրենց
Բթնեբը բռնուիլ — 1. խօսիլ կամ պատասխանելու ատեն տատամսիլ. անկարողութիւն ցոյց տալ. 2. Բարկանալ, զայրանալ
Բթիկ-Բթիկ (ըլլել) — Վերինին պէս
Բերօն — 1. Պատառաքաղ, 2. Կողուած հացին փայտէ նկարիլը
Բիլաւ — Պղղուրէ կամ բրինձէ շինուած կերակուր
Բլորուկ — Բոլոր–ուկ — Փայտի դէզ. խարոյկ, որուն շուրջը բոլորելով կը զուարճանան տղաք
Բին — Եղունգներուն տակ պատահած հիւանդութիւնը, որ վերնամաշկը պատռտելով կը ցցուի եւ կը ցաւցնէ. 2. Խառնածին, անհարազատ ծընունդ
Բխերիկ — Բուխերիկ, ծխնելոյզ, ծխհան
Բնակրել — Մակաբոյծ միջատներու բնակելու ձեւը. «լաթին մէջ օջիլ մը բնակրեր էեա»
Բշտատել — 1. Բշտիկները հանել. 2. Վէրքը պատառել, ծածկել
Բողող հեծնող — Վhուկ կին:
Բոհբոհը սիրող — Շողոմումէ եւ շաղփաղփութենէ ախորժող
Բոշա — Գնչուի բնութիւն ունեցող կին:
Բունկալ — Բոյնին մէջ մնայուն հաւկիթ, որուն վրայ նստելով կ'ածէ հաւը
Բորք — Բուլք համաստեղութիւնը (թրք. *Իւլկէր*)
Բորոտ — Բողոքական իմաստով գործածելի: Աղտոտ, վարակուած
Բուր — 1. Դդմենւոյ տունկին ցօղունը, 2. Եակուղ կեղեւ
Բուք — 1. Հով, 2. Արտաշնչեալ օդ, 3. Քուրայ
Բուլվառ — Բուրվառ, ծխանոց
Բուրդ–կախ — Ծուռ զաւազանիկ, որուն վրայ ներկուելիք բուրդը կծիկ դնելով կը կախէին կարասին մէջ:
Բուրդ–Զարբոց — Բուրդ զրզռելու մասնաւոր զաւազան
Բուրդ աղնել — Ակամայ նուագել: Երբ նուագածուներ անախորժ եղանակներ ածեն, կ'ըսեն «Բուրդ կ'աղնեն»
Բուրդ տալ — Տես «Մօրուքը խնդալ»
Բռնուկ — Յորեճին մէջ գտնուած ոսպի մեծութեամբ դառն հունտ մը (թրք. *տուլթալը*)
Բսնիլ — 1. Բուսնիլ, 2. Կատարուիլ: «Գործը բսաւ» գործը լմնցաւ, կատարուեցաւ
Բսոր — Մանրուք հողի, շաքարի
Բրդիկ — Կտրտած լաթի կտոր
Բրդխտել — Գզել, բզքտել

**Բրդոն** – Կտոր․ բրդոն բրդոն = բզիկ բզիկ
**Բրինծ** – Բրինձ
**Բրչէֆլի** – Ստեպղին
**Բողկ** – Ուտելիք կծու բանջար
**Բողող** – Բղուղ, հողէ աման – Կիւփ –
**Բթբթ** – Կորկոտ, ալիւրէ եփած կերակուր

## Գ.

**Գադա** – Ճերմակ ալիւրէ եւ իւղէ շինուած նաշխուն չոր, ամուսնացեալ օ-
բիորդֆ մարանց տունէն կը տանին կեսրոջ տունը, բաշխելու համար։
**Գադաղֆ** – Դագաղ
**Գալ** – Գայլ
**Գալիֆ** – Արկած, փորձանֆ, օր․ «Գալիֆ էկաւ», փորձութեան ենթարկուե-
ցան։
**Գաղանտ** – Գանգատ
**Գաղնտել, Գանտել** – Գանգատիլ
**Գանտ** – Գերեզման (Գազաթա՞ն արդեօֆ)
**Գարեկ** – Աչֆի կոպերուն վրայ երբեմն ելած մանր ուռոյց, որուն վրայ
բուպ կապելով կ'անցնի
**Գաւալակ** – Գրաւանակ, կերակուր ծածկելու յատուկ մեծ սակառ․ – թէկ,
միւֆէպպէ –։ Եղէգով շինուած խոշոր սէլէ։
**Գեղ** – Գիւղ
**Գեղացի** – Գիւղացի, ոչ կրթեալ
**Գետնազետին (ըլլել)** – Աօթահար ըլլալ, ամչնալ
**Գերեկնալ** – Գերի ըլլալ կամ իյնալ, գերիի պէս աղաչել, խնդրել
**Գերեզմեր** – Գերեզմանատուն
**Գէշնալ** – Գէշանալ․ գժտել
**Գերֆշտալ** – Զգայոել, ձգատել
**Գիր** – Նամակ, գրութիւն
**Գլխաւէր** – Էրիկ, այր, ամուսին
**Գլխիբաց** – Գլուխ – բաց – Գլուխը բաց, առանց ծածկոյթի
**Գլխիլ** – Զգլխել, լէննալ
**Գլխնոց** – Գլուխ–նոց – գլխարկ, փէս, թաղիկ
**Գլխվար** – Գլուխ–վար – Գլխահակ, գլուխը դէպի վար, հակառակ կողմը
հակած
**Գլխու ծեծանֆ** – Նախատինֆի, կշտամբանֆի առարկայ
**Գլօխ** – Գլուխ, կատար,․ բարձունֆ, գագաթ
**Գլօխ (էլլալ)** – 1․ Կատարել, լրացնել․ 2․ Լաւն ելլել
**Գլօխ չունենալ** – Ձախորժիլ, չսիրել
**Գլտրել** – Գլորել
**Գլտրպնիկ** – Մանկ․ խաղ մը։ Գետինին մէկ բարձր տեղէն կը գլորեն սալոր,

կաղին կամ ընկոյզ· միեւնոյն կէտէն վերջին գլորուողը ուղղակի **երբ** երթայ եւ առաջիններէն մէկուն կամ միւսին դպչի, խաղը **շահած** կ'ըլլայ

Գլօղը մեծնալ — Յանցաւոր եւ կասկածելի նկատուիլ, հպարտանալ

Գնաւք — Գնացք, ընթացք, վարկ, քարք եւայլն

Գոռ — · Բաղնիքի մէջ տաք ջուրի ընդունարան, ուր ջուրը լեցնելով կը ցօղուեն: 2· Սատակնոցի քար

Գոռգոռտատա — Ուրուական մը կամ երեւակայական տարեց մէկը որ ամպերուն վրայ նստած կը զօռզօռայ, կ'որոտայ:

Գովիլ — Գովեստ տալ: 2· Մեռելի վրայ լալ, կոծել

Գործելի — Ցրդիի ածուխ

Գուռ էրէս — Տխրադէմ եւ ժանտատեսիլ մարդ

Գութա — Վարունգի համով ճերմակ երկայն բանջարեղէն

Գրողը (հնդտալ) — Որեւէ պատճառաւ մէկուն անակնկալ ցնցումը տեսնելով կ'ըսեն «Գրողը հնդտաց»: Գրող — հոգի առնող

Գօռնոց — Այլազգիներու գերեզմանատուն

Գօնտալ առնալ — Այլագունիլ, գունափոխուիլ

Գօռալ — Մուրալ· գործածութեան ատեն «մուրալ»ը կը նախադասէ, ինչպէս «մուրայ զօռայէս»

Գօտի արձակ — Գօտի — արձակ, առանց գօտի կապելու, հականիշ «գօտեպինդ» են

Դ.

Դադրել — 1· Դադրել, 2· Դիմանալ, դիմադրել, 3· Սպառել

Դադրուկ — Տոկուն, դիմացկուն

Դաժա — Նոր, դոմդաժա — նոփզնոր

Դախդեղ — Տաքդեղ, կծու

Դախդեղել — 1· Կցուեցնել, 2· Վնասի ենթարկել

Դահեկ, Դայեկ — Դայեակ

Դահիճ — Ոխերիմ, չարախանձ, գլխատող

Դահնայ — Աման լուանալու ջնջոց, ձեռնսրբայ

Դանակ — Ջմելի

Դանկտել — Դանակոտ-ել — Դանակով զարնել, վիրաւորել

Դաշ — Կեանք, շունչ, կիները երբ մէկուն անէծք տան կ'ըսեն «**Ասված** դաշը կըյրէ»

Դաշնել — Բազմութեամբ ցրուիլ, արձակուիլ· օր. «Շէննիքը շուկայէն դաշնեցան»

Դաշոն — Տաշտ, խմոր շաղելիք աման

Դապլել — Տապլել, գլորել, կործանել

Դապլեցնել — Տապլել, միսը խղին մէջ եւ պտուղը շիրէին մէջ խառնելով յագեցնել

Դապլէ դապալ — Թաւալ գլոր
Դաս — Դաղձ, վայրի անանուխ
Դատ — Դատաւոր, տե՛ս եւ պէղատու
Դատանք — Աշխատութիւն
Դատանչօք — Աշխատաւէր, փութաջան
Դատաւոր — Աշխատաւէր, փութաջան
Դատել — Աշխատիլ, յոգնիլ. օր. դատեցաւ, դատեցաւ, քարը տեղէն չկըր-
ցաւ հանեց, յանցապարտ հանել
Դարպաս — Կառավարութեան պաշտօնատեղի
Դարտակ — 1. Պարապ, փուճ, 2. Եղէգէ փող, որուն վրայ գործուելու մա-
նածը կը փաթտեն
Դարտկել — 1. Պարպել, սնամէջ ըլլալ, 2. Քսակին, ամպարին տունին եւն.ի
մէջ բան չմնալ, աղքատանալ
Դարցըված — 1. Իսլամութիւնը ընդունող քրիստոնեայ, 2. Դարձուածք,
փոփոխութիւն
Դպչա — Հիւանդութիւն մը որ կապուտցնելով կը մեռցնէ իր զոհը — մանկիկ
Դգալնոց — Դգալ դրուելիք փայտէ կախ
Դդմել — Խորշումիլ
Դեղ — Ընչախոտ. քթախոտ (թրք. չնֆիյէ)
Դեղնուց — Հաւկիթին դեղին միջուկը
Դեղնութուն — Դեղինցնող հիւանդութիւն
Դիյավար — Դեւահար
Դերկ — Թոռիչին պարունակածին չափ թորելի
Դղասզան — Տղաձգան, նորածինին մայրը: Ըստ Գր. Խանձեանի դղանկէն:
Դերվեր (էնել) — Որոնել, առարկել, յուզել խնդիրը
Դպցնել — Նետը, գնդակը, քարը ճիշդ նպատակակէտին զարնել, դիպեցնել
Դողդողան — Դողդոջուն
Դոմդոս — Շիփշիտակ. «Գործը դոս է» — կարգին է
Դուղում — 1. Դդում, 2. Անկսոյ, անխելք
Դոն — Դուն
Դունչ — Կզակ, թուշ
Դունել — 1. Թեւրել, հարթել, 2. Ապաքինել
Դող — Տենդ, ջերմ
Դոռ — 1. Դուռ, 2. Տունտեղ: Դոռն կղպուի = դուռդ գոցուի, չքանաս
Դախտալ — Դղրդել
Դօռդա — Բակ, գաւիթ — ըստ Գր. Խանձեանի՝ դորդա
Դրսվորցի — Պանդուխտ, օտարական
Դօռդօռ (թօփել) — Դռնէ դուռ մուրալ, պտուղները ոչնչացնող որդեր հա-
ւաքել
Դօռս (էլլալ) — 1. Բնական կարիքը տեսնել, 2. Պանդխտանալ

## Ե.

Եար — Երբ, ինչ ատեն
Եաբու — Երբոր
Եառ — Ու, Երաստան, Նստոց տեղի
Եատ — Ետ: Եատկը, ետքը, յետոյ
Եաց — վեց: Օր. Եաց կեղեաց, առսունը եաց = վեց անգամ վեց, երեսունը վեց
Եացծու — *Թրք.* եաքսը — ննջման ժամ: Գիշերուան ժամ մէկուկէս
Եէրքեւ — Ներքեւ, տակ
Եէրկսեւ — Ներքսեւ, մարմնոյն ներքին մասը, սիրտ
Եէրեկ — Սաղմ: Եէրեկը բանիլ — Սաղմնառութիւն, երեկ
Եղրուք — Մսացուին իւղային մասը
Եու, Եուր, Եուք — Զայնաւոր գրերով վերջացած բառերէ ետք — որ. օր. կ'առնա եու, էսի եուր, քակէ եուք = կ'առնէ որ, ասիկա որ, քակէ որ
Եօթնախպար — Մեծ արջ համաստեղութիւնը
Եօթն օտար — Բնաւ ազգակցութիւն չունեցող, եօթը ճիւղէ կամ պորտէ դուրս եղող
Եէկին — Սատիկ
Ետքը — Վերջը

## Զ.

Զազար — Զազար
Զազաղաղա — Մեծ, խոշոր, տարիքոտ աղջիկներ
Զահնայի հանդպիլ — Արկածի, վնասի հանդիպիլ
Զաղլել — Ալրուիլ կերակուրի — տկարանալ մարդու
Զարզարդար — Ծաղկազարդ
Զրգռալ — Պառապ տեղը խօսիլ, անիմաստ խօսիլ
Զարփան — (թրք. *Սափրա*), մաղձ
Զէնել — Զարնել, ծեծել, սպաննել
Զէնէզէնէ — Կռիւ, բաղխումն — զէնքի
Զլաքել — Շտկել, յարդարել
Զլափվուն — Ողորկ, յղկուած, սրբատաշ — քար, եւն.
Զմփրի — Եղեամն
Զմնդոտել — Տե՛ս. կոմատոտել եւն.
Զուրցնել — խօսեցնել, հարցաքննել
Զուրցուել — 1. Բամբասուիլ, 2. Բանակռուիլ, 3. Համբաւուիլ, անուանաւորիլ
Զումզուղ — (թրք. եումրուզ) կռուփ
Զռալ — Իշուն զռալը
Զրգռալ — Պարապ տեղը խօսիլ, անիմաստ խօսիլ

Ձրբել — Սրբել, մաքրել
Ձըզա — Նիզ, պարզունակ, շաղակրատ
Ձրզել — Բռնկցնել, արծարծել — կրակը
Ձոքպա — Հաստ զաւազան, բիր
Ձօղնա — Սողնակ, նիգ — դրան
Ձօպի — Գիրուկ մարդ
Ձօմպա — Երկար զործիք կլոր սեպաձեւ, որ ծակուելիք բան մը խարազանով կամ զոմպայով կը ծակուի։
Ձօղնեկ — Նեղկեկ, անցուկ — տուն եւ դուռ
Հոմպըլամիշ (ընել) — Փարթամ կեանք վայլել

# Է.

էզի — 1. Այզի, 2. Պարտէզ, ծառաստան
էզմել — Ճզմել, տրորել (թրք. *էզմէկ*)
էլլալ — Ելնել, կայնիլ
էլլօր (օլլօր) — Օրօր
էհ — էհ։ էհ պէլքի էդպէս է = էհ, կարելի է այդպէս է
էնել — Ընել, վնասել։ էնողը կը գտնայ = Ընողը — չարիք եւն. — կը գտնէ կը վնասուի
էն — Անի, անի, անիկա
էնի — Ան, անի, անիկա
էնիկի — Ան, անի, անիկա
էղած — Բոլոր, համայն, ամէն, լմնցած
էն, էնկի, էնկիւ, էնկիւնի — է՛ն, գերիվեր։
էնպահըս — Անմիջապէս, ընդփոյթ
էխթել — 1. Յաղթել, 2. մէկու մը յանցանքը վրան հաստատել։ Ըստ Գր. Խանձեանի էխտել։
էմէ — Հասկցար։ Գնաւուքէկօ, էմէ = Գնա եւ եկուր, հասկցար։
էյնալ — Տես, ըյնել, իյնալ
էնդին, էնդիդին — 1. Միւս երեսը, կողմը, 2. Հանդերձեալին մէջ։ Ըստ Գր. Խանձեանի էնդիդէմ։
էշխէն — (թրք. *էշգըն*) խաւարծի, վայրի թթուաշ բոյս մը
էշկնտուռ — Ս. Սարգսի չորեքշաբթին էշերու մազը կտրելու սովորութիւն։ Այդ օրը կ՚ըսուի թէ Ս. Սարգիս իր քուռակը կնտած է
էշնալ — Իջնել, զիջանիլ
էնցէ, էտցէ, էսցէ — Այնպէս, այդպէս, այսպէս
էս, էսի, էսիկի — Աս, ասի, ասիկա
էջըցնել — 1. Իջեցնել, 2. Ձիջումն
էստին, էստիդին — 1. Այս կողմը, 2. Այս աշխարհը
էտինք — Թուրքերու կէսօրի եւ իրիկուան միջոցի աղօթքը

էնտկող — Լետ–ն–կող — Թոնիրին մէջէն ետքը կողուած, փակցուած — հաց: Ըստ Գր. Խանճեանի էտնկող
էւել — Աւել: Ըստ Գ. Խանճեանի էվիլ
էվել — Աւելի
էվեր — Աւեր, աւրուած, գէշ, աղէկին հականիշը
էտինք — կէսօրէն վերջ ժամը 3–5ի ժամանակները
էրեսջրկօք — Երեսի ջուրով, անեղծ, անաղարտ
էրեսկվար — (Երես–ք–ի-վեր) երեսը դէպի վար, երեսի վրայ, (թրքական *էկաղիւն դուլու*) անկատար թողուլ
էրէս ծածկուկ — Երես-ծածկ–ուկ — երեսի ծածկոց, քօղ
էրեսել — Լաթին նախ երեսի նիւթը կարել (թրք. *իւզլէմէք*)
էրես էլլալ — Ամօթն ու պատկառանքը թողուլ, ըմբոստանալ
էրիկնիկ — Այր կին
էրեսկրերք — Ըրղակն հինուելէն ետք, մէջ լեցնել կարով:
էրեսկրուք — Ոտնամանին կրունկին ետեւը
էրկաթ — Երկաթ
էրին թարախ — Հարստահարութեամբ դիզուած (հարստութիւն), յոգնութիւն
էրնտէր — (Արիւն–տէր) ոճրագործ, մարդասպան
էրվալ — Երեւնալ, յերեւան գալ
էրուկ — Այրուկ, այրող, տաք — կերակուր, ջուր եւն.
էրուկուլ — Բաղանեաց ջրամբարին առջեւի սալայատակը որուն տակէն կ՚անցնի հնոցին մուխը
էրին քար — կարմրագոյն հատաքար, պզտիկ տղաքը քար նետելէ զգուշացընելու համար, քարը ցոյց տալով կ՚ըսեն. «Ամա՛ն, քար չի նետես հա, մէջը էրին կայ»
էրեշտէ — Խմորէ շինուած տեսակ մը ժահր.
էրկան — Երկայն
էրկինք — Երկինք
էփ — Եփելու ատտիեան տաքցած — ջուր —
էփուն — 1. Փորձառու մարդ, 2. Դիւրաւ եփող — արմտիք —
էփել — Եփել, եռացնել
էքտի — Դատարկապորտ, սլնքոտ, լկտի
էրնէկ — Երանի

Ը.

Ըզմօք — Իմ միջոցաւս. ինձմով
Ըժօք — Ուժեղ, կարշնեղ, ժիր, եւն.
Ըմար — Համար, վասն, օր. Հոէն ըմար = իրեն համար
Ընկէզ, ընկոզ — Ընկոյզ, ընկուզենի

Ըղրկել — Ուղարկել, ղրկել
Ըղունկ — Եղունգ
Ըղուր — վասն, համար. օր. Ընծի ըղուր = ինծի համար
Ըմպեկ — Ըմպակ, թորանոց, թորիչ
Ըմպեկէն քաշուած — Թորիչէն հանուած բարկ — օղի
Ըյնիլ — 1. Իյնալ, 2. նուաղիլ, մարիլ
Ըռնկուն — Իրիկուն
Ըռնկւնոյ — Իրիկուն–ւ–նոյ, իրիկուան ճաշ, ընթրիք
Ըռդուել — Զետեղել, բովանդակել
Ըսլըպօք մը — Կամաց մը
Ըսկարա — Կասկարա, եփելու աման
Ըսուչ չըսուկ — Առանց առաջարկելու, հարկ, անհրաժեշտ
Ըստկել — Յստկել, մաքրել
Ըսմունք — Զրոյց, խօսք, ասացուածք, ուսում
Ըրղա — Ասեղնագործելիք — կարուած կտաւ —
Ըրըպկեր — Կարասին մէջ լուծուած լեղակի ջուրը չարունելու համար, տըր-
ուած կրակառն բուքի գործողութիւնը:

Թ.

Թագաւէր — Թագաւոր: Երկնաւոր թագաւէրս դոն հասնիս
Թակնել — 1. Թակողել, թակով ծեծել. 2. Սաստիկ ծեծել
Թակքար — Սալ — քար — մը որուն վրայ թակով կը ծեծեն
Թաքախ — Թաքաւ, տիղմ, — շատ անգամ — «մեզ–թաքախ»
Թախտայ — Հեռուներ
Թաղար — Ներկարարի կարաս
Թաղել — Անթեղել. օր. «Օճաղը կեսէրեցմէ թաղեցի»
Թանթող (թանթաղ) — Թաղանդ, մկանունք, կակուղ կարմիր միս
Թապիել — Թափուրով ցորենը քարէն եւ ուրիշ բաներէ զատել. (թրք. *Թէ–պիւրլէմէկ*)
Թարխանա — Կորկուտ: Ցորենի հատիկները մածունով չորցուած թանապուր
Թէփիլ — Թափիլ
Թեւաւորել — 1. Թեւ առնել, թռչելու ատինճանին գալ, 2. Ուժաւորիլ, կազ-
դուրուիլ
Թեւել — Կարժը թեւը անցնելով՝ լեցը կերցնելու համար վեր վար սրսկել
(թրք. *Գոլլամալ*)
Թերխաշ — Կէս եփած, խաշած — հաւկիթ —
Թեւը (քաղել) — Շոյել, բարկութիւնը իջեցնելու համար համոզական խօս-
քերով, մեղմիւ վերաբերուիլ հետը:
Թեւ–լաթ — Օրօրոցին մէջ երախային թեւերը կապելու լաթ:

Թժկռել – Թնճկռել, մազի, մանածի, մետաքսի թելերուն իրարու խառ-
նուիլը:

Թէզնիք – Տանտիկնոջ գործ տեսած ատեն թեւը անցուցած կտաւէ թեւնոց

Թէլ-թայ ընել – կարգի բերել, ամէն բան տեղը դնել

Թէլֆ – Թիրտ, մնացորդ

Թէրթիշ – Թարթիչ, արտեւանունք

Թէք – 1· Թաք, 2· 25–30 սանթիմ երկարութեամբ շինուած մասնաւոր փայտ մը, որով վարժապետը աշակերտը կը պատժէ ափերուն մէջ զարնելով· «փալախա»ին հետեւակը

Թէփել – 1· Թափիլ, կաթիլ, 2· Ակամայ դրամ վատնել, մսխել· օր· «Մար-
դը անկարեյի շատ ստակ թէփեց»

Թեքնիլ – Երես չտալ, նախատել

Թեւ – 1· Թեւ, 2· Փետուր, մազ, աղուամազ

Թեփուկ – 1· Թափող, թափթփող, բան մը պահել, ամփոփելու անկարող – կին –, որուն կ'ըսուի նաեւ «թէփուկ շուշան»: 2· Ամանէ եւ ձեռքէ ինկած հատիկ, փշրանք

Թթխմէր – Թթխմոր

Թիւ – Որովայնի (անձայն) փուք

Թիւրքի – Թուրքերէն խաղ, մանք

Թիփ – 1· Թիփ, 2· Ոյժ, Թիփթկըրի = ուժաթափ ըլլաս

Թմպլ – Կլորտիկ, աղուոր: Թմպլ թմպլ զաւակներ ունի = Կլորիկ սիրուն զաւակներ

Թլփիլ – Թուլնալ, մարիլ, նուաղիլ, ընդարմանալ

Թորթ – Աւելցուք, մրուր

Թոթվել – 1· Լափել, 2· Ուրիշին իրաւունքը իւրացնել բռնութեամբ եւ անի-
րաւութեամբ· օր· «Քրդուն հաքքը թոթվեց»

Թոլ – Թոյլ, մեղկ

Թոռթոռ – Թրթուր

Թոմիլ – Կծկտիլ մնալ

Թութ – Թթենի

Թուր-դանակ (խաղալ) – Սուրերով իրարու վրայ յարձակիլ

Թուլիկ – Փոքրիկ պարկ, մախաղ, Տոպրակ մը որ հին ատեններ դպրոցական տղաք իրենց պիտոյքը մէջը դնելով ուսընդանութ շեղակի կը կա-
խէին

Թունչ – Թուշ

Թնկր – Ուշ եփած մսի կամ բանջարի կ'ըսուի

Թումիլ – Թմրիլ, խամրիլ

Թսթսալ – Տկարութենէն թը'ս թը'ս ձայն հանել

Թսթան – Փուք արձակող, անարգ – մարդ –

Թոմպլաղ (դառնալ) – Գլխիվար թաւալիլ, ճախրել

Թոպկնալ — Բոպիկ–նալ — Բոկոտն ըլլալ
Թոփտիլ — Թոթվել, սրսկել
Թրիք — Կովու աղբ, քակոր
Թօռել — Որեւէ առարկայի խոնաւութեան ազդեցութեամբ ջրոտիլ, թրջիլը
Թրջոց (դնել) — Ընդեղէնները կակղացնել եւ լաթը աղտոտութիւնը դուրս տալու համար ջուրը դնել, թուրջ
Թոչել — Յանդիմանել

### Ժ.

Ժահրէ — Խմորէ շինուած մանր զարիի մեծութեամբ ցաւար,որ իւղով տապկելով, փիլաւի մէջ կը խառնուի — անուշահամ —
Ժանիք — Դէմք, երես
Ժանկ — Ժանգ, ժանկոտ = ժանգոտած:
Ժանկոչ — Ժամկոչ, տնտես
Ժանրա ժարժա — Թելահայս (*շայրիէ*)
Ժամըկայնել — Աղօթքի, ժամերգութեան սկսիլ
Ժաժք — Շարժ, երկրաշարժ
Ժառանգ — Վայելում,մեղօք պսակի համար կ'ըսուի:«Ժառանգ չեն առնուր»
Ժարմաղ — Շարմաղ, մաղերու էն մանրամաղը· ալիւր մաղելիք բարակ մաղ
Ժողվոլք — Ժողովել, հանգանակութիւն: Ըստ Գր· Խանճեանի՝ ժողվել

### Ի.

Իվիրտը մըտնալ — Համոզել
Իրաւուստան — Շիտակը (խօսիլ)
Իրքունպէս — Անոր պէս
Ի՞նչ է — Ինչո՞ւ, ի՞նչ բան է
Ինչըս — Ինչպէս
Իշպէս — Ինչպէս
Ի՛շնամ — Ինչ գիտ–նամ, ինչ գիտեմ, խելքս չի հասնիր
Իշու բրդոն — Անարգ, մակդիր, տխմար, յիմար եւայլն
Իշու հաւկիթ — Անարգ մակդիր, տխմար, յիմար եւայլն
Իշու հրեշտակ — Տգէտ, անկիրթ, յիմար
Էրկան անկան — Տգէտ, անկիրթ, յիմար
Իշուասք — 1· Իջուածք, իջնելու կերպը, 2· կաթուածք
Իշու դրախտ — Բանտ, զնդան
Իպոպոպ — Յոպոպ, (իպոպոպ քեառի սանտրըդ բաց···)
Իս — Ես, իս ու դուն = ես եւ դուն
Իրիսկին —Քահանայի կին, տիրուհի

**Իրկ** — Խօսքին մէջ պակսած բառին օժանդակ, տե՛ս «բան» եւ «էնի». (Թրք. *չէյ, մէտարը քէլամ*)

**Իրաւքան** — Պատշաճ, վայելուչ (Թրք. «*րէվան*»*էն*). իբր ասացուածք կ'ըսուի «Ասի հրէի իրաւաքա՞ն է»

## Լ.

**Լաքա** — Նոյր եւ դիւրամարս կերակուր որ խոցի կամ ուռոյցի վրայ կը դնեն
**Լալ** — 1. Լաց, լալումն. 2. լեցնել
**Լալլօ** — Խելքը շատ չեղող, չխօսող, համր
**Լակոտ** — Շան ձագ
**Լակ** — Կովու կերակուր, շիւղով թեփով խառն
**Լանկ** — Լայնութիւն, տարածութիւն
**Լանթակ** — Ալիւրի եւ բրինձի մանրուքի կերակուր
**Լանկա** — Վարունգի երկար տեսակ մը
**Լանկօ** — Տխմար, ապուշ
**Լառ** — Լեռ
**Լառվուն** — Լարուած, ձգուած կամուրջ, վրան
**Լեզուին (տալ)** — Քրդմնջել, տրտնջել
**Լեղին** — Խայթող խոտ մը, եղին
**Լեղուենալ** — Դառնանանալ, բարկանալ, բորբոքիլ
**Լեղակ** — Կապոյտ ներկ
**Լեղար** — Վեղար
**Լեղքի քար** — Լեղակը մէջը մալել. հարելու քարէ դաշտ մը:
**Լեղին** — Եղին
**Լեղուց** — 1. Վարունգին կոթունի կողմը, 2. Մաղձ, մաղձաման
**Լենկուկ, լենցուկ, լենցուն** — Լեցուն, լիք, լիառատ
**Լեսան** — Յեսան (պիլէկի)
**Լզակ** — Լծակ
**Լզուք** — (Լեզու-ուք) 1. լիզում, լիզել. 2. լեզուին կամ լիզումին հետքը. 3. լզուած առարկան
**Լինն** — Ջեփած խիւս, մալեղէն քաղցուին ալիւրի խառնուրդը
**Լէչէկ** — Տափակ առարկայ եռանկիւն
**Լէպլէպ** — Հիւսնի միջակ սղոց, երկու մարդով գործածելի
**Լէվլէվ** — Ապուշ, տխմար
**Լիտիր** — Լիտր — պաթման —
**Լովիկ** — Լուբիային հատիկ
**Լխմել, լխմըտել** — Ջարաչար կերպով ծեծել: Ձեռքով մէջը անոտել
**Լխկիլ** — 1. Տարիքին յառաջանալէն դողդողալ, 2. Մքիլ
**Լըխիլ** — Պտուղներու բոլորովին մգլչիլը

Լկել — 1· Լափել, լիզել, 2· Տաքին ազդեցութենէն սառոյցին լուծուիլը, ճակուիլը

Լճկիլ — լին–ակ–իլ — Կերակուրին կրակին վրայ շատ մնալով թանձրանալը խիւս դառնալը, եւ որմէ յառաջ եկած անհամութիւնը

Լէմլիկ — Շեղբ — դանակի

Լզուըրտել — Կերած ճաղցրեղէնին կամ մսեղէնին մատներու եւ պրկունքին վրայ պլրկածները լիզել — կատուի պէս

Լըկտի — Անառակ, սրիկայ

Լխլխալ — Զառամութենէն դողդողչել, երերալ

Լողճար — Լող, Ղուղան

Լողնալ — Լոգնալ

Լողփէտ — Երկնեղ փայտ մը որ լողին ծայրերու հորիզոնական ծակերէն անցընելով տանիքները կը լողեն

Լսառ — Ըստ Գրիգոր խանձեանի՝ *Լսար* — Լիսեռ: Հասարակ ժամացոյցնե-րու ապակիներու մեծութեամբ եւ նոյն ձեւով փայտ մը որ մանածը իլին վրայ փաթտելու ատեն չթողուր որ տարտղնի

Լուսնկան — 1· Լուսին, 1· Հաց եփած ատեն մանր տղոց համար եփուած շրջանակաձեւ չոր

Լովկի տերեւ — Լուբիայի տերեւով եփուած կերակուր

Լուսնի Տասնըհինգ — Լիալուսին

Լվըրցնել — Լպըրցնել, հարեւանցի խօսիլ

Լրթեւ (Լուրթ–ել) — Լափել, հատցնել անյագաբար

Լուսնկլոս — Լուսնկայի, Լուսնի լոյս

Լօ — Լու

Լօլիկ — Լճացում, տես՝ Կօլել: Զափազանց գինովցած

Լօլօկ — Մրգեղէն

Լօլօզ — Թրչաց թռիչի զունտ, որ տափակցնելով Գշկուր կը կոչեն

Լօս, Լէոս — Լոյս

Լօս, Բարի լօս — Բոլորովին լոյս, ալ գիշերի հետ չ՚երեւիր

Լօս–Ծակ — Տանիքներէն բացուածք, լուսանցք, լուսամուտ

Լօպուտ, լօպուտան — Լախտ, հաստ գաւազան

Լօշ — Շօթ, լաւաշ

Լօսպ — Պանիրի շերտ

Լօսպա = Լասպա — Լերթ, չամուրի զանգուած, հողի կոյտ

Լօռ — Մածնած, կտրած (կաթ)

Լփել — Տեսակ մը կար, որ նիւթը կը ժողվէ· խծպել

**Խ.**

Խաբել — Խաբել

Խազնել — Խածնել

խազվալ — Աձուխի մանրուք
խախդեմ — Տեղացը թուլցնել, երերցնել
խալէմ — Ջուրի դդում (թրք․ *սու գապագը*) օդապարիկի
խալըսել — 1․ Պրծիլ, ազատիլ․ 2․ Աւարտել, լրացնել։
խալըսում — փրկութիւն, ազատութիւն
խալի (թրք․ *խալի*) — Գորգ
խալխզոն — 1․ խալեզոն, խղունն, 2․ Մացուին ճարպը հալելէն յետոյ մը-
նացած մասը (թրք․ *կարրակ*) մսին իւղոտ մասին տապակածը
խաղցնելիք — խաղալիկ, նշաւակելի (մարդ)
խաղքկտոր, խաղք — խայտառակ
խաղ (էլլալ) — 1․ խաղալ, 2․ Ջայրոյթէն ցատկել, աոդին անդին վազվզել։
Օր․ խումար խաղալուն խապարը գալուն պէս, *խաղ էլաւ*
խաձուկ — Պտուղը խաձնելէն յետոյ բերանէն դուրս հանած մասը կամ խա-
ծած տեղը
խամ — Չհասուկ պտուղ
խամ–խաս — Թերահաս պտուղ
խանկէլ — Վիլակ, պզտիկ կառք
խաշել — Մանածը ամրցնելու համար գործածուած շրէշ
խաշլօք — 1․ Նոր գործուած, շրէշէն չլուացուած — կտաւ — 2․ Այլաբան-
օրէն կ'ըսուի նոր, չգործածուած, կոյս — աղջիկ
խաշխաշ — Մեկոնի, ափիոնի հունտ
խաշօն — Եռացած ջուր
խաշօն դնել — Լուացքի ատեն լաթերը խաշօն ջուրին մէջ լուալու գործողու-
թիւնը
խաշօն փէտ — Լուացքի ատեն լաթերը ջուրին մէջ թաղել եւ հանելու յատուկ
փայտ
խառնմխօռ — խառնիխուռն, իրարու խառնած
խառնակիչ — խռովարար, խռովայոյզ
խարապա — Երկաթէ ոլոնք, որոյ վրայ երկաթ կամ պղինձ կը ծակուի,
նաեւ քանդուած
խարկել — Կրակով խորովել — իւթմէք
խարդել — Լաթերու աղտին մէջ բոլորովին մաշիլը։ խարսք երթալ — խու-
ժել, արշաւել
խարուկ — Մաշած, կտրտած — ոտնաման
խարտել — խարտոցով յղել, փայլեցնել
խաչմէր էրկինք — խաչանիշ, որ խմոր թրողը թեւերը խաչաձեւելով կը նիշէ
խմորին եռեւը եւ ինքզինքը
խաւ — Ասուի կամ գլխարկի խաւ
խաւիզ — Ալիւրով եւ իւղով խիւս
խափան — Բամբակի հակերուն բերանը կարուած կտաւ, կշիռք
խափէնկ — Ծխանին տախտակէ փականքը որ ձգուելով ցուրտը ներս մտնելէ
կ'արգիլէ

խինդ — խենդ, յիմար
խեւ — խենդ
խզկել — խծկել, խցել, գոցել
խդխդուք — 1. խտտել, 2. Աչքի շլացում
խեւքը ջրել — Համոզել
խզէն — Մառան, ներքնատուն (թրք. *խըզնա*) «խզէն չունի» կ'ըսուի մէկուն, որ գաղտնապահ չէ
խզտել — խզել, պատռել
խզոր խզոր (էնէլ) — Ծուէն ծուէն, կտոր-կտոր պատռել — թուղթ,
խզտված — 1. խզուած, 2. Երես գտած, անպարկեշտ, համարձակ
խեր — Դալ, առաջին կաթ
խըլըմ խըլըմ ընել — Թալանել
խլլեր բլլեր — Լան, մանր. անչափահաս — տղաք
խլխլալ — Երերալ — ակռայի — թուլնալ
խլլինք — խլինք
խլխդել — խեղդել
խղդատուիլ — Ցասնոլ, զայրոյթէն կանչուըռտել
խզտել — խզել, պատռել
խղում — Կնէպէն չելած ցորեն եւ այլ արմտիք
խլաբբիլ — խեւքը վրայ գալ, յիշել
խլմշտել — խլել, թալլել, կողոպտել — որեւէ բան
խըլըմ խըլըմ ընել — Թալանել
խլփշտալ — խլըտել, խարխըլել, շարժել (թրք. *դըմաշմաք*)
խլդպել, խլթփել — (խեւք-դպ-ել) — խեւք-թափ-իլ — խելայեղ, խելաթափ Մարիլ, խելակորոյս, խելացնոր, խենդ, խեւ, եւն.
խշխշուկ խաղալ — Սրտանմլիկ եւ աղեկէզ կերպով լալ
խշխշցնել — Ցանիրաւի չարաչար լացնել, պատժել
խոխալ — Աչք չվերցնել, նախանձիլ
խոբշուք — խոշոր-ուկ — Ապուրցուին մաղուելով երեսը մնացած խոշոր մասը, ցաւարի, յարդի, կամ ալիւրի խոշորուք
խոտկուր — Երախային օրօրոցին մահիճը, որ չորցած խոտով կամ փայտի տաշեղով կը լեցուի
խմխիլ — խխում դառնալ, անձրեւէն եւ ջուրէն թրջիլ
խմեր (անեցնել) — խմորը թրեյէ առաջ, ամանին մէջ թթխմորը շաղցնել, ալիւրով եւ յետոյ տաշտին մէջ խառնել, որ յետոյ բոլորը կը խմորցընէ, կծկծուեցնէ, խմորը այս կերպ պատրաստելուն կ'ըսեն «անեցուած է»
խնծոր — խնձոր
խնկամանն — խունկ դնելիք տուփ
խոնենըրնթաք (խոնջան, Ընթացք) — Վարտիկին խոնջանը անցընելու տեղը (թրք. *ուչքուր եօլի*)

խոնչա — Հարսանեկան ծրար որ փեսային լաթերը կը պարունակէ
խնկածխիկ — խունկ ծխելիք աման
խնջել — Քիթի խլինքը մաքրել, խոզի պէս խռնչելով
խռչիկ — Գրգլակ, քուրջ, ցնցոտի, տես եւ բրդիկ
խռկալ — խրտչիլ
խռշրուք — Մարմնոյ վրայ երեւցած թեփի տեսակ խոցեր, հիւանդութիւն մը
խում — Ոգելից ըմպելի, խմիչք
խումխմող — Գինեմոլ, արբեցող մարդ, խման
խոտոտ — խոտաւետ մարգ
խուփ — 1. Փակուած, գոց, ամփոփ. 2. Սանի փայտէ կափարիչ
խուփ զօռ — Բաղնանեաց ներքին սրահին չորս կողմի ներսերը որ դռնէն կը մտնեն
խուփ զօռ կամ խուփ քէօր (ըլլել) — Սովորելիք նիւթը լաւ մը գոց ընել կոյրերուն պէս, որուն համար դպրոցական տղաք սնապարծութեամբ կ'ըսեն իրարու «էնպէս խուփ եղայ», «խուփ զօռ եմ կամ քէօռ եմ»։ Գոցուած, ծածկ
խոցատ — Հողէ կրակաման — արդեօք խեցա՞տ, կամ խեցեհատ — խեց, կտոր, մարմնի վրայ վէրքեր
խշխշուկ — Սրտի կտրտուկ
խռփել — խելքը կորսնցնել, զառանցել (թրք. *պունամաք*)
խռնճան — Վարտիկի կապ
խռնն, խռննէք — խոնչանք, յոգնութիւն
խռննենալ — Յոգնիլ
խռկալ — խրտչիլ (կենդանեաց)
խվնալ — խենդենալ
խորդ — խորթ մայր կամ եղբայր
խորվիլ — խորովիլ
խորդալ — Քնացած տեղը խըռ—խըռ ձայն հանել
խրզարուք — խեզարուք, խեզարին բերնէն ելած թեփ
խրշեկ — Փայտի նուրբ տաշեղ
խրիկ — խրիւ, չոր փայտ կամ որեւէ չորցած բան: Օր. էնպէս չորցեր է եու, խրիկ դարցեր է
Փրզար — Փայտ կտրելու գործիք
խրզել — խզարով կիսել, կտրել
խփել — Գոցել, փակել
խօթել — Մղել, մտցնել, մշտել, խթել
խօխալ — 1. Մախալ, 2. Պահպանել
խօլեռ խօլեռ (հայել) — խոժոռ խոժոռ նայիլ
խօտ (չենել) — Զզիջանիլ
խօստել — խոցոտել, խոցի ցաւ
խօստկոտել — խոստուկ, խիթ ունենալ, փորի ցաւ ունենալ

**Խօրոզ** խօսում — Գիշերուան այն պահը յորում աքաղաղը կը խօսայ
**Խօփպուր** — Փխրուն հող
**Խօսք** մէկ (ընել) — Դաշնակցիլ, միանալ

Ծ.

**Ծախ** հանել — Ծախելու համար շրջաբերութեան տալ
**Ծախք** — 1. Ծախս, 2. սպառում ապրանքի
**Ծալել** — Լաթեղէնները իրարու վրայ բերելով ծրարել
**Ծակաչք** — Ընչաքաղց, ագահ
**Ծաղէկ** — Ծաղիկ, ծաղիկի հիւանդութիւն
**Ծամոնց** — Ծամելու չով ճիւթ, մազտակ, ծամոց, պատառ
**Ծանտր** — Ծանր
**Ծառծակիչ** — Փայտփոր թռչունը
**Ծասկել** — Ծածկել, գոցել
**Ծատուկ** (ծէտուկ) — Ճանճի ճուիկ, որ կենդանին կը թափէ մսին մէջ
**Ծեծ** — 1. Ոստայնանկին առէջքի գուլազանձներուն խուրձը, 2. կռճին վրայ մէկ անգամէն ծեծուած միս. օր. «քիւֆթէի համար քանի՞ ծեծ միս ծեծեցիք»
**Ծեծգլօխ** — Գուլազանի խուրձին մէջի էն հաստը, որ առաջին գլուխը կը հաստատուի: Տե՛ս առածները
**Ծեծուած** միս — Տե՛ս Մատրուր
**Ծէլ** — Ծալք, պաստեղի ծալլուած մասը
**Ծեղ** — Ծղատ
**Ծեսքել** — Տեղատարափներու հողը պնդացնելը
**Ծլել** — 1. Ծել ծել ըլլալ: 2. Սորել, մեղրի, րուբի եւն.
**Ծէր** — Ծայր, «ծէրը ճոթը պէյլու չէ.» ծայրը յայտնի չէ
**Ծէր** տալ — 1. Նոր ծագելն արեւու 2. հեռուէն սպասուած որեւէ բանի ծայրը երեւնալ, 3. Ջուրը նոր պեղելու ատեն առաջին անգամ բղխիլը եւն.
**Ծխել** — Խունկ կամ ոեւէ վառելով ծխել
**Ծծկան** — Ծիծ տուող կին
**Ծրտոտ** — Բժոտ, կեղտոտ
**Ծնան** — Անծինին, ամուլին հականիշը
**Ծոմ** — Առանց ուտելիքի ծոմ պահել
**Ծրխած** — Տե՛ս մրխած

Կ.

**Կագկագ** — Տե՛ս կառկառ ընել
**Կախ** — Տրտում տխուր (երես)
**Կաթ** — 1. Վէգին մէկ կողմը, տով, 2. Ծալք, խաւ
**Կաթմրէ** վարդ — Ճերմակ վարդ

կաթով շորվա — կաթով բրինձով ապուր, կաթնապուր
կազիկ — կաթսայ, չայծղան
կաժ — Մանածի կապոց
կաժթափ — կծկուելիք կաժէն թնճկուիլը
կալպէ — 1· կարելի է, 2· կ՚երեւի թէ
կալմէջ ընել — Շրջապատել, բոլորել
կալնցնել (կալ–ն–ցն-ել) — Մետաղէղէններու ծակը մածոյցով գոցել, բռնել
կախ — Տանձի կամ խնձորի կիսուած չորցուածը
կախուկ — կաղանդի նախորդ օրը կախուկ կ՚ըսուի
կաղվենալ կեղեւ–ա–նալ — Ծառին կեղեւը բունէն զատուելու վիճակը: 2· ցուրտէն ձեռքերու կարկամիլը, 3· Ընկոյզին կանաչ փեճիկը թուլնալ
կալմէջ (էնել) — Մէկուն բոլորտիքը առնուլ, շուրջը հաւաքուիլ
կախանկաճ — Անհոգ, անտարբեր
կախարդ խարդախ, ջրի նայող մարդ
կալմել — (թրք· «գալէմ»էն) — փորագրել
կակակ — Հաւկիթ (բառ մանկական)
կակղնալ — կակղանալ, Սիրտը իջնել, խոնարհիլ
կաղնտ — կաղանդ, կաղնտճէք = կաղանդի օրը պզտիկներուն տրուած **ստակ** կամ այլ ինչ
կաղնտիլ — կաղանդի օրը մէկու մը նուէր տալ
կամտալ — Զգայ առնուլ (մտածել, խորհելու համար)
կամա — Թուր
կամար — Մահիկաձեւ, շրջանակաձեւ
կամկա — Փայտի տաշուք
կանչ — 1· Հոմանիշ ճիչին, 2· խաղ, աւաչ, 3· իսլամներու *էզանը*
կայնել = կենալ, չկայ առնուլ, կանգնել, ոտքի ելնել
կայնուկ — կանգուն, կեցած, տե՛ս եւ տնկուք
կանաչ կարմիր գօտի — Ծիածան, աղեղն, ծիրանի գօտի
կանչել — Երթալ տեղէն ետ դարձնել, ետ կանչել
կապ — 1· Զուան, 2· Ամուսնացողները զուգաւորութենէ արգիլող կախարդական կապ
կապայ — կապոյտ բեհեզէ շապիկ
կապանք — կանոն, օրէնք (եկեղեցական)
կապէտ, կապոտ — 1· կապոյտ, 2· Հաճար
կասի, կասուց — Անօյշ կուտ, վարունգի լեղուցին հականիշը:
կարաս — խոշոր բղուղ
կարգուկ (կամ կարգվուն) — կարգուած, ամուսնացած
կարգել — (Այլաբանօրէն) խաբել, կողոպտել (ուրիշը)
կառվել — Ղրկել, ուղարկել
կավար–կավար — Առու ուսկից ջուրը կը վազէ ակօսները

**կավուն** — կանգուն (ճարտարապետին)
**կաւղար** — Դարաւանդ մը, որուն պարունակութիւնը զօրշ կաւ մ'է, զոր կիները կը շաղեն եւ գունտի կը վերածեն իբրեւ օճառ քսուելու համար
**կաւ քսել** — կարեւորութիւն չտալ, զանց ընել
**կառկառ** (էնել) — Մանկական խաղ մը։ կարգ մը խաղերու մէջ խաղալ չգիտցող կամ յաղթուողը խայտառակելու համար, ձեռքերնուն մէջ քարերը իրարու զարնել եւ «կա'գ կա'գ կառկառ» կանչելով կը հալածեն
**կարագ** — Անլի իւղ
**կար կարկտուք** — Հին լաթերը կարկտել, հնակարկատութիւն
**կարժել** — Մանածը կարժառին վրայ առնել, կաժի վերածել
**կաքաւ** — Թռչուն
**կաքկրճալ** — Հաւուն կրկչալը, հաւկիթ շինելը
**կաֆ կտրել** — Սպառնալիք ընել
**կեղվել** — 1. կեղեւել, 2. կողոպտել, 3. կաշին հանել
**կեղւվուն** — կեղեւած, կողոպտուած
**կեառ** — 1. կեռ, 2. Քուրդ. օր. «կեառը էկաւ», անուս
**կեառշիշ** — Թոնիրէն հաց հանելու համար շինուած երկաթ–շիշ, որոնց մէկին ծայրը թռչունի կտուցին պէս կեռ է եւ միւսինը տափակ։ «Տե'ս «Շիշ շամփուր»
**կեառվըտալ** — Եռալ, եռք ունենալ, քորել
**կեառվտցնել** — 1. Քորել, Եռքին տեղը քերել, 2. խտտղել
**կերմուն** — կերցաւ, *Քանկրէ*, Քաղցկեղ
**կզկել** — 1. կծկել, 2. կծիկը դնել, փախչիլ
**կզղել** — (թրք. *քըզմաք*) Տաքնալ, բորբոքիլ
**կզվենալ** — (կծու–ա–նալ) կծուենալ, կզղել, աւրուիլ
**կզիկ** — Մանկան առաջին ատամները
**կզկտել, կզկտցնել** — կծկտիլ, ամքեցնել, ամփոփել
**կէզկիւրտուք** — կայծկլտուք, փայլատակում, փայլակ, կայծակ
**կէթիւք** — կաթիւք, կաթկթում
**կէօվլէկ** — կովին լակ տալու փայտէ աման (թրք. Քիւլէկ)
**կըժ** — Ծառերէն վազած խէժ (քիթրէ), խէժ, բիժ
**կթան** — կաթ տուող կով կամ այծ
**կթել** — 1. կով կթել, 2. Մէկը խաբելով ձեռքէն դրամ առնել
**կթնել** — 1. կտցահարուածի պէս ուտել, 2. կթել խաղին մէջ
**կժալ** — Ջուրին կամ կերակուրին եփած ատեն հանած ձայնը
**կթնոց** — կտոյց
**կթնցել** — կտցահարել, կտուցով զարնել
**կթտել** — կարկտանը խոշոր խոշոր կարել
**կթտուք** — Նորածին մանկանց ազգականները հաւաքուելով ոսկի կամ լաթեղէն կը նուիրեն, ասոր կ'ըսուի կթտուք. «կթտուքը ե՞րբ է»
**կժալ** — խժալ, խժլտուք, ջուրին եռալէն յառաջ եկած ձայն

կիսամաշք — Թերմաշ, կէս մաշած, հինցած լաթ
կիսնորդ — Ընկեր, զովող (օրթագ)
կըլմանի — 1. Կը նմանի, 2. Կարծեմ թէ
կիսնորդ — (կէս-ն-որդ) կիցնորդ, շահուն կցորդ (թրք. *օրթագ*)
կից — Զոյգ, դար
կլլա — Ստակ ձգելիք արկղիկ
կլլատել — Կլտատել, կլլել = կուլ տալ
կլորտիկ — Բոլորովին կլոր
կլոզ — Թաց աղբի կտոր
կլտատել — Կուլ-տատ-ել — Կլանել, կլնել, կուլ տալ, իւրացնել
կլտոզել — Շունին բնական կարիք տեսնելը, քաքնել
կկի — Ոչխարի եւ ուղտի քակոր, սպտուր
կղկղել — Ջամիչի եւ նման բաներու երեսէն խոշորները ժողվել ու զատելու գործողութիւնը
կղմիտ — Կղմինտր
կիլէկ — Կլայեկ, 1. Կլայեկով պղնձեղէն ամանները անագել, 2. Ծանր լուտանքներ ուղղել, օր. «Վերը վարը՝ աղկէկ մի կելէկից»
կծիկ — Դերձանի կլոր գունդ: Կզկել = կծիկ շինել
կծկտիլ — Պզտիկնալ, ամքիլ մնալ
կնեպ — Պղնձեղէնի վրայի կեղեւը
կմըլ (նետել) — Ցետին աստիճան աղքատանալ, չքաւորիլ, այնպէս որ ոջիլներու մէջ մնալ: Որ այդ կարգի մէկուն վրայ խօսելու ատեն կ'ըսուի, «Կըմըլ նետէ է»
կղպել — Գոցել, փակել, (դուռ, սնտուկ, եւն.)
կմկմալ — Թոթովելով, շուարած եւ ակամայ խօսիլ
կնտել — 1. Մազը վարսել (մկրատով), 2. Յոտել (այգին եւ ծառերու ճիւղերը), 3. Կթել
կոզ — Ողկոյզ
կոզկոզ (կախվել) — Պտուղներու խիտ ու ողկոյզներով ճիւղերէն վար կախուիլը
կողել — Հացը թոնրին վրայ կպցնել
կողվել — Ընկողմանել, կողին վրայ պառկիլ
կոճակ — Ճարմանդ
կոնծոտ — Աղտոտ, կեղտոտ (մարդ)
կոնչ — Կոտոշ, եղջիւր, կոնչել, խեթկել
կոշտըպլոշտ — 1. Այլանդակ, 2. Պլշտկած, թնճկամ
կոպ — Աչքի կոպերը (գաբագ)
կովլակ — Կովուն լակ տալիք փայտէ աման
կոր — Կարին
կորդ — Կար կարելու ատեն երկու կտաւին ծայրերը իրարու եկած տեղ
կորիզ — Բամպակի մէջի մանր հունտը

կուղպ, կուղպուկ — Կղպուած, փակուած
կուրտուիլ — Ծամածռել, ծեքծեքել
կուզ — Սապատ, սապատող
կուռթ զալ, նստիլ — Թխսել, կուռթ հաւ, թխսմայր
կուճայ-կուճայ — Գրկախառն
կուճուկ — Ճկոյթ (մատ), կոթը կարճ դգալ
կուստեկ — Կուրծ-ք-տաք, պատանքի այն մասը, որ կուրծքին տակէն կը կապեն
կուրկուր — Աղացու, դեռատի
կուրպան — Զոհ, մատաղ
կուտ ուտել — Տե՛ս առածներու մէջ
կոփել — Տաշել, յարդարել
կոփցուն — Կոփուած, տաշուած (քար եւ փայտ)
կսոդէ — Կէս առ կէս, շահակցութիւն
կսամաշկ — Հաւուն կիսատ ածած հաւկիթը
կստել — (կիսատել), կէս մը փակել (դուռը)
կռա-կռա — Ագռաւի մեծութեամբ գոյնզգոյն թռչուն
կռիճ — Կնճիռ
կռել — Խճողել
կռտել — Դժուար եփելով կծկտող միս եւ միրգ
կռուըտիլ — Կռուիլ
կռտիլ — Ջեփիլ (կերակուրը ընդեղէն կամ միս)
կսմել — Սեղմել, սխմել, կոխելով պնդացնել
կտոօք — Կոյտ, դէզ
կտոօվել — Կուտել, դիզուել, խռնել եւն.
կրել — Շալակով կամ ուսով բեռ տանիլ
կրինճ — Հողամաններու կոտրտուք
կրծան — Կրծկալ, կուրծքը կապելիք անձեռոց փոքր տղոց՝ կերակուրը չթափելու համար վրանին
կրծել — Ակռայով խածնել բան մը, վիրաւորել
կրթ (էնել) — Իրենը չեղած բանը վերցնել, իւրացնել գաղտնապէս
կրակսէր — Այն խմորը որ թոնիրին մէջ կրակին շատ կը դիմանայ առանց կարմրելու
կրակ տալ կամ վառել — Դիմացինը գրգռել, դրդել
կօղը — Կող
կօլել — 1. Լճանալ, 2. Ցնդել
կօլօզ — Տե՛ս լօլօզ
կօղլոզ — Կոթը կարճ, (զգեստ), դեղնած եւ կոկլոր վարունգ
կօթլիկ — Վերեւին պէս
կօնտ — Կնտակ, ճաղատ
կօմռտել — Գազանի եւ անասունի դիրքով նստիլ եւ պառկիլ

## Հ.

Հազնելիք — 1· Հագուստ, 2· Կշտամբանքի արժանի (մարդ)
Հազուգայ — Ազուգայք
Հարզէ — Դեռ, հիմա, տակաւին, ցարդ
Հալազել — Հեռանալ, երթալ, կորսուիլ
Հածան — Ածան, ածող (հաւ)
Համբա — Ընկեր, վիճակակից
Համպրիլ — Համրել, թուել
Համպրուք — Համրանք, համար
Համպրզօն — Համրանքով
Հայտեցուք — Օ՛ն, երթանք
Հայէվար — Հայերէն
Հայլիկ — Հայելի

Հայլեկ Ֆնճիկ — Մանկական խաղ մը, խաղացողներէն մէկը պզտիկ կոն քար մը տնկելով կէտի մը վրայ քովը կը կենայ: Միւսները ուրիշ կէտէ մը իրենց ձեռքի քարերը զատ–զատ կը նետեն յիշեալ կոնին: Տեղէն զարնելու յաջողողը կու գայ ոտքովը կը չափէ իր քարէն մինչեւ կոնը եւ միւս քարերուն միջոցները, որ երբ ոտքի համրանքը որոշեալ թուոյն հասցնէ, ինք կ'ելլէ խաղին մէջէն մինչեւ որ բոլորն ալ ոտքի համրանքը լրացնեն, որ յետոյ մէկիկ–մէկիկ կը հեծնեն էն ետ մնացողին շալակը:

Հանտէ — Համար, օր· յո՞ւմ հանտէ = որո՞ւ համար
Հանդէպք — 1· Դիպուած, պատահար, 2· Չար ոգիներու հովին զարնուած
Հանկոշտ — Հանգոյց, կնճիռ
Հառու, հառուն — Հեռի, հեռաւոր
Հասկում — Հասկացում, զգացում, հասկացողութիւն, հականիշը *Անհասկում*:
Հասուկ, հասաչափ — Հասակաւոր, չափահաս մանչ եւ աղջիկ
Հասուան — Հաստատուն, բամբակէ հիւսուած խոշոր սաւան, որուն վը–րայ արմտիք եւ պտուղ կը չորցնէին
Հատ–հատ — Հատընտիր
Հատած — 1· Մեռած, 2· Անստգիւտ, աննման, օր· «Գրելու համար վրան հատած»
Հարսառ մուտուն — Հարս բերուելիք տունը
Հարզէ — Մինչեւ որ
Հարզիւ — Անձրեւ
Հաւլէ — Իւղով, բուպով եւ նաշիհով շինուած անուշ
Հաւուն կաթը — Ամէնէն հազուագիւտ բանը: Միրէգին հաւուն կաթը կայ = Մրգեղէն եւայլն ամէն ինչ

Հարել — 1· Օրօրել, երկարաձգել (խնդիրը), 2· Ջուրի մէջ տրորել, մալել եւ լուծել (մածուն, բուք, եւն·)
Հարմեր — Տէրունական աղօթք, մասը ամբողջին տեղ
Հարզէ — Մինչեւ հիմա, մինչեւ որ
Հարսայ — Հայր, ծնող
Հարսնուկ — Հօրեղբօր եւ վարպետի կին։
Հարցուկ–փորձուկ — Հարցփորձ, հարցաքննութիւն
Հացկերուք — Հացկերոյթ, խնճոյք, կոչունք
Հացծվան — (Հաց–սուան) Հացի սաւան, հաստ սաւան, որ տեղական կտաւէ կը պատրաստուի անկողիններու տակ փռելու, վրան թութ թոթուելու եւն·ի համար
Հաւեղ — Խաղող
Հաւլոս — Առաւօտ, հաւախօս
Հաւկուր — Աչքի տկարութիւն մը, որ հաւերուն համար բնական է կ'ըսուի
Հաւսար — Հաւասար, վիճակակից
Հաւսրիլ — Հաւասարիլ, շտկիլ
Հաւտամ — Հաւատամ։ Հաւտում = հաւատարմութիւն
Հաւնիլ — Հաւանիլ
Հաւքաշ — Ջինակ, հաւուն երկճիւղ մէկ ոսկորը, որով «*եատէսմ*» գրաւադրական խաղը կը խաղան
Հափթար — Գափթարինէ։ Կատաղի գազան մը։ Այս գազանը, որուն համար կ'ըսեն թէ նոր մեռելները հանելով կ'ուտէ, Մալաթիոյ գաւառին մէջ չի տեսնուիր։
Հերու — Անցած տարի
Հերսոտիլ — Սրդողիլ, սրտաքեկիլ
Հերսայ — Հերիսայ, կերակուր
Հեմի — Հեղ մը, մէկ անգամ
Հէամի՞ — Ըսածս շիտակ չէ՞ մի
Հէանցքի — Երբոր
Հէմի — (թրք· հէ՛ մը) Քեզի կ'ըսեմ։ 2· Կինը էրիկը կանչելու ատեն փոխանակ անոր անունը կամ պատուանունը տալու կ'ըսէ· «Հէմի՛, քըզի կ'ըսեմա···» տե՛ս· եւ Հինկ։
Հենել — Մանածը շտկել, գործելու պատրաստել
Հէնց — 1· Աննպատակ, 2· Ցրի, 3· Այնպէս, 4· Ոչինչ
Հէօրէսէնկ — (Տառաշրջուած եւ վանկափոխուած) օրհասարակ, կէսօր, միջօրէ
Հէօրասակ — (Տառաշրջուած եւ վանկափոխուած) օրհասարակ, կէսօր, միջօրէ
Հէօրըս նոց — Կէսօրուան ճաշ, ուտելիք
Հերկեմէթ — Ըստ Գր· Խանձեանի՝ *Հերիկմար*։ Երկու մատ։ Երկրագործա–

կան գործիք մը, որ երկու ճիւղ կամ մատ ունի եւ չկամնուած խուր–
ձերը կը ժողվէ
Հէնք – Ջուլհակին շտկած մանածը, որ պիտի գործուի
Հէօրք, հուրք – Սաստկութիւն (կրակի)
Հըմմա – 1. Հիմա, դեռ նոր, 2. Բայց սակայն (թրք. *ամմա*)
Հըմմակուց – Հիմակուընէ, այժմէն
Հըմպա՞ – Հապա՞ ։ Այո, ըսածդ շիտակ է
Հըյրել – Ընտրել, զատել, որոշել, յստկել
Հըյրուք – Ցորենի եւն.ի մէջ գտնուած քար, հող եւ ուրիշ բաները զատելու
գործողութիւնը
Հիննէ – Հինա, հիննէ դնել = հինայել
Հնդտալ – Հոտուըտալ, հոտոտել
Հնցէ – Այնպէս, այնպէս մը
Հոէն – Իրեն
Հնընալ – Վշտակրիլ, մտածել
Հնընուք – Հնհնուք – վիշտ
Հնթտալ – Հոտոտել
Հնքնոէն – Ինքնիրեն, ինքնին, ինքնիրմէն
Հնքապապ – Կնքապապ, կնքահայր
Հոզալ – (Բանիւ ու զանիւ) պատժել, չելխել
Հոստեղ – հոստեղուկ = հոստեղ, հոս
Հոնտեղ – հոնտեղուկ = հոն
Հոդտեղ – հոդտեղուկ = այդտեղ, հոդ
Հոթտալ – Հոտոտել
Հովարել – Հովահարել, սփոփել, մխիթարել
Հողլաթ – Օրօրոցին մէջ երախային տակ դրուած հողը պարունակող պօղ,
լաթ։ Մանկանց ոտքերուն տակ դրուած լաթը, որ տաքցուած շոխողը
կը պարունակէ։
Հոտ–հոտրանք – Հոտ, զարշահոտութիւն
Հորունըութ – Թթուաշ, մանիշակագոյն թութ
Հոր–տուն – Ոստայնանկին գործատեղին, որ ընդհանրապէս իր տան մէջ
մասնաւոր տեղ մը կ՚ըլլայ
Հուանտ – Հիւանդ
Հուլում – Ոււլունք
Հուվնտնալ – Հիւանդանալ, տկարանալ
Հուսկէ, հոս, հոստեղէն հոս – Ուրկէ ուր
Հում – 1. Զեփած, 2. Անհանոյ խօսք
Հում (էլլալ) – Հում ելլել, մաքառիլ եւ մրցելով յաղթել, (թրք. *պաչա չըգմագ*)։
Հունան – Հոն, հոս, հոտ, այնտեղ, այստեղ, այդտեղ
Հուսան – Հոն, հոս, հոտ, այնտեղ, այստեղ, այդտեղ

Հուտան — Հոն, հոս, հոտ, այնտեղ, այստեղ, այդտեղ
Հունտուր հունտուր — Հատընտիր, յստակ, մաքուր եւ որոշ կերպով
Հրարել — 1. Արծարծել (կրակը), 2. Յուզել, գրգռել (մարդը)
Հրել — Մէկը նստած կամ կայնած տեղը հրել
Հրօք — Օրական, աւուրչէք
Հօմպլօզ — Սրածայր, կոնաձեւ
Հօրքալ (Հօրփալ) — Պոռթկալ, ցատկել, տրոփել եւն.
Հօփպալան — Մանուկը զբօսցնելու համար ոտքին ներբանը անոր փորին տալ եւ ձեռքերէն բռնելով բարձրացնել զայն
Հօսհօռանք — Ուրտեղուանք
Հօռտեղտան — Ուրկէ ուր

Ձ.

Ձայել — Ցորենին մէջի քարը մաքրել, ձեռքը տաշտին մէջ լուալով
Ձան — Ձայն: Ձայն ձուն մի հանէք = Լուռ կեցէք
Ձանձուորիլ — Անուն ստանալ, համբաւը տարածուիլ
Ձանօտել — Ձայն տալ, ձայն հանել, 2. Անունը համբաւուիլ, հռչակուիլ
Ձանցվորել — (փոխադարձ բայ) Իրարու ձայն տալ, տե՛ս եւ Ձանօտել
Ձառ — 1. Ձեռն, 2. Ծայք, համրանք (անկողնոյ), օր. Ձառ մի տեղեր
Ձառ, ձառւկ — Լոյծ կղկղանք, օր. «Ձառ կ'լմանի»
Ձառք (տալ) — (Բռել, բռւսկանանալ), (բրք. *էլ վէրմէկ*), օժանդակել
Ձառաց — Ձեռքէ, առձեռն, թերհաշիւ
Ձառաց ծռւթիւն — Գողութիւն, խարդախութիւն
Ձառքը բաց — Առատաձեռն, ողորմած
Ձառք զրքօց — Անձեռոց, ձեռն սրբոց
Ձթուկ ձիւթ–ուկ — Ձիւթի պէս առաձգական
Ձիթ — Ծամելիք ձիւթ (*սաքըզ*)
Ձախել — 1. Ծեծել, 2. Կտաւը կամ լաթը ներմկցնելու համար ձեռքին մէջ, ամփոփելով քարին զարնել
Ձխցըխտվող — Շլխտի, լկտի, լլկուող, վաւաշոտ (կին)
Ձըյնել — Գազաններու ծնիլը
Ձէն, ձօն, ձէօն — Ձիւն
Ձոր — Ջրհոտ տեղ ուր կնիկները կտաւ կը ներմկցնեն
Ձուածեղ — Ձուազեղ, հաւկիթով նօսր կերակուր
Ձուիք — Տան վրայի պատերուն ծածկոց, քիւ
Ձռել — Փորհարութիւն ունենալ (բրք. *իշալ*)
Ձնծաղ — Ձիւնախառն անձրեւ: Ձիւն եւ կարկուտ, սաստիկ պաղ նշանակող

Ճ.

Ճարթել — Ճարթիլ, փշրիլ
Ճակատն (առնալ) — Մրցիլ, մաքառիլ

ճաղճաղ — ճաճանչ
ճաղ — 1. Ել, 2. վանդակ, 3. Ճախարակի երկաթէ թելը մանած մանելիք
ճամբայ — ճանապարհ, միջոց
ճանկ բանալ — Ափ առնել, մուրալ
ճանկսադ — ճանկ, ճիրան, մագիլ եւն., ճանկատել, ցտել եւն.
ճանկիկ — ճանճիկ, մուիկ, մանր (ոջիլ)
ճանկել — 1. Ափը, բուռը լեցնել, 2. Ցտել, ճողել եւն.
ճանճոտիլ — Տե՛ս «կմլնետել» եւ «ճանճթառել», օր. «Ալ բերանը ճանճ թառեր է, ճանճոտեր է»
ճանչվորիլ — Ծանօթանալ
ճափճափ — 1. Ուտելու ատեն բերանին ձայնը, 2. Սուլիչ, որ սոխի պոպոքէն, խոտէ եւ բարդիի կեղեւէն կը շինեն
ճարապրտել — (ճար-ա-պրպտ-ել) միջոցը, հնարը փնտռել, գտնել, ճարել
ճարի — ժիր, գործունեայ, աչքը բաց
ճարնաճուճուր — Տապանց, կոճղ մը, որ կը դրուի բարձր պատուանդանի մը վրայ, ծայրերը կը նստին եւ վեր-վար կը շարժին:
ճերմակ մազ — Պառաւ կին, ալեհերին հականիշը
ճերմկեղէն — ճերմակեղէն, (վարտիկ-շապիկ)
ճերմկուց — Աչքի, հաւկիթի եւն.ի ճերմակ մասը
ճզճզ — Լալկան, չնչին բանի համար ճզճզալէն լացող
ճէրէտէ — Մէջը ներկի նշան չմնացած լեղակի ջուր
ճէրէտել — կտաւը կամ լաթը ձեռքին մէջ ամփոփելով կարասին կամ կաթսային մէջ թաղելու գործողութիւնը
ճէր-ճոթ չունի — Սկիզբ վերջ չունեցող
ճըբ-ճըբ — Կաթիլ կաթիլ իյնող ջուրի ձայն
ճընխ ճընխ — Աղացու, խեժակն
ճըռ-ճըռ — 1. Ճախարակի ձայն, 2. Բամպակի մեքենայ
ճըվր-ճըվր — Ճնճղուկի ձայն
ճլպան — (Ջուր-պան), Ջրպան, երկրագործին քով ջուր ջրող (ծառայ)
ճիրագ — Ճրագ
ճիւ — Բարձք, ագդր
ճմռել — Ճմռտել, լաթը կամ մազը լուալու համար ձեռքին մէջ շփել
ճնկըլ — Ճիռ, խաղողի մանր ողկոյզ
ճիճի պիճի — Սնափառ, ծեքծեքուն
ճիւշմարիտ — Ճշմարիտ, իրաւ որ
ճլճլալ, ճղճղալ — Երախային ճլվլիւնը
ճղայ — Մտաղ ճիւղ, մորչ
ճմռել — Լուանալիք բաները ձեռքով տրորել
ճուճ — Պզտիկներու առնանդամը
ճնկլտալ — Բոժոժի, ճոճանակի պէս ձայն հանել
ճընկըր ճընկըր (ընել) — Հաւասար վիճել

ճնտըլիկ – կարճկեկ, կարճահասակ (մարդ)
ճնկր-ճնկր – 1. Սաստիկ հովի ձայն, 2. մէկուն յանդգնութեամբ ուրիշին դէմ դնելը
ճննղուի-հացիկ – Բազմատերեւ ուտելու խոտ մը
ճրիկ (ջուր-իկ) – Ջրիկ, նուազ, ճրճրալով հոսող ջուր
ճպլել – ճմլել, ոլորը տեղէն խախտել
ճրդօն – (Ջուր-հորդ-ան) տուներու ձուիքին վրայ հաստատուած սնամէջ փայտ մը, ուսկից անձրեւի ջուրերը վար կը թափին
ճրդօն գնա – ճրդօնին հաստատուած տեղը, ջրէջք
ճրմիք – (Ջերմ-իկ) ընդորմեայ օճախին շուրջի գետինը
ճու ճու ճու – Հաւերը ներս կանչելու ձայն:
ճունճուղուկ – ճնճղուկ
ճուպար – Մէկու մը ցաւած տեղին կտաւով լաքա դնել
ճուվալ – Մազէ կամ բրդէ պարկ, *չուվալ*
ճուվալակ – 1. Ջուլհակ, կտաւագործ, 2. Սարդ, մամուկ
ճուտապա – Թարխան եփած ատեն պղինձին տակը փակած մասը
ճռպօտ, ճրպօտ – (ճարպոտ), աղտոտ, կեղտոտ, մաքուրին հականիշը
ճտկել – (ճիտ-կ-ել), որովայնը այնպէս պարարել, անյագաբար ուտել որ մինչեւ ճիտը, որկորը լեցուած ըլլայ
ճռագալ – Հողէ ամանէ շինուած իւղի լապտեր
ճրդէկ (կանչել) – 1. ճիչ, աղաղակ բառնալ, ճչել (այս բառը չկրցի ստուգաբանել)
ճրճրալ (զուր-ջուր-ալ) – Ջուրին նուազ եւ կաթիլ կաթիլ իջնելէն հանած ձայնը
ճօթ – Ծայր (եւ միշտ *ծայր* բառին հետ) Ծեր-ճօթ
ճօմպ – Որեւէ բանի առատ ջուրի մէջ իյնալէն յառաջ եկած ձայն
ճօրճօրալ – Երերալ, տատանիլ, որ քնատութենէ կ'ըլլայ
ճլլեզ – Նիհար, բարակ, մազանման (ճիւղ, ծղոտ)
ճիճի – 1. Որդի (ակռայի), 2. կիճ, խայթոց (մեղուի)
ճէնկէր – (ժանգ-առ) Բաց կանանչ գոյն, 2. Պղնձի ժանգ
ճրագկալ – ճրագկալ, փայտէ եռոտանի մը որուն վրայ կը դրուի ճրագը

## Մ.

Մագոգ – Ոստայնանկի գործիք, որ կտաւ գործած ատեն միջին թելերուն համար կը նետուի, կկոց
Մագ – Գաւառի կառավարիչ (Պրսկ. «Մարզպան»էն կրճատուած)
Մազման – Մազմանող եւ գործող
Մազկարօտ – Քարձ, ցանցառ մօրուք ունեցող (մարդ):
Մազկապ – Ծամակալ, վարսակալ, ժապաւէն մը որ մազերը չտարտղնուելու համար գլուխնին կը կապեն

**Մազմզուկ** — Աղուամազ, մազանման մանր բաներ
**Մաղել** — Մաղէ անցնել, ցորենը մաքրել
**Մաթ** (մնալ) — Յապուշ կրթիլ, զարմանալ, շուարիլ
**Մախիր** — Մոխիր
**Մախրէ պլօզ** — (Մանկ. խաղ մը) վէգը կը ծածկեն մոխիրին կամ հողին մէջ եւ որուն տիրանալու համար կոյտին գագաթին մէկ շունչով կը փչեն ու երեւան կը հանեն
**Մախրել** — 1. Կրակը չմարելու համար մոխիրով ծածկել, անթեղել. տե՛ս. եւ թաղել, 2. ամանները լուալ, մաքրելու համար մոխիր գործածել
**Մակրդվուն** — 1. Մարզուած (մարդ), 2. Ցղկուած, կերտուած, ողորկ (առարկայ)
**Մահծեծ** — Մահուան պատճառով սգաւոր, անմխիթար, օր. «էնոնց բան չըսուիր, տահա մահծեծ են»
Մահանա — Պատճառ, առարկութիւն
Մաղ — Ծածկ, յարկ (բրբ. *կէօղ*), օր. «նոր շինած տունը քանի՞ մաղ ունի»
Մաղել — Մաղէ անցնել, ցորենը մաքրել
Մաղմաղ — Կրակետղ կայծակաց, կրակով խառն մոխիր
Մաղմղուկ — 1. Մաղուած բանին մանրուքը, 2. Մաղմաղ
Մամլօզ — Մեղկ, ձեռքէն բան չեկող մարդ
Մամուխ — Վայրի սալոր
Մայլել — Զմայլել, հիանալ
Մայրէ մոյրէ — Մանր մունր
Մանկաշ — Մազխել, մազքաշող գործիք (պրսկ. *մույքէչ*)
Մանկուք — Պզտիկ տղայ, մանկտիք
Մանկօ — Անխելք, ապուշ
Մանծ — Մեծ. Մանծ մարդ = Երեւելի, մեծ մարդ
Մանծխնոց — Մանածի վաճառատեղի
Մանտրտիլ — Մեռնիլ: Մանուկ մանտրտիս = Չիզօրանաս
Մանուղ — Կատուի ձագ, լակոտ (բրբ. *մանըղ*)
Մանուշակ — Մանիշակ
Մանուխ — Կատուի ձագ
Մառնիլ — Մեռնիլ
Մայիս — Կովու աղբ, թրիք
**Մասուրա** — Մագոգի մէջ անցուած դարտակ մը, մանածով փաթթուած
**Մաստ աստեղ** — Հաստ ասեղ, որ վերմակ կարելու կը գործածուի
**Մատնել** — Ոտելիքը կամ բուքը ցուցամատով առնել ուտել
**Մատնոց** — Դերձակի մատը անցուցած պզտիկ մետաղէ գտակը: Մատնի = Մատանի
**Մառելնոց** — Մեռելոցի օր
**Մառ-մառոտ** — Պղնձեղէնի անհարթ տեղերը (*տամար*)
**Մառոն** — Ս. Միւռոն

Մաշկ — 1. Հաւուն կիսատ ձգած հաւկիթը, 2. ընդեղէն
Մանուկ մտնուկ — Ամէն գործի մտնող, աչքը բաց
Մարդակ — Տուն շինուած ատեն սիւներուն վրայ շարուած ցրդիի ճեղքուած կտորներ
Մարդանալ — Աճել, զարգանալ, զօրանալ եւն.
Մարդամօտ — Ազնիւ, բարի եւ ընտանի (մարդ)
Մարդասան — 1. Ասուն խօսուն, բանական (մարդ), 2. Մարդ բառին կրկնակը «մարդ-մարդասան». օր. «եազին հիչ մարդ մարդասան չիկայ»
Մարդկութիւն — 1. Մարդասիրութիւն, բարիք, 2. Առնական զօրութիւն, օր. «կնիկն ինչ էնէ հոէն քով մարդկութիւն չիկայ», կ'ըսուի մէկուն որուն կինը չի ծնիր
Մարխ — Եղեւինի տաշուք՝ իւղոտ մասը, որ պղինձ հալուած ատեն հնոցին մէջ կը ձգուի
Մարմնոց — Մորենի, մորմ
Մաւի — Երկնագոյն, կապոյտ (թրք. *մավի*)
Մեզվեր, — (Մեծ-ա-ւոր) Պարոն, գիւղապետ, աւատապետ
Մեղօք — Եկեղեցւոյ օրինաց հակառակ եղած խնամութիւն
Մէկ աչէն — Միականի, մէկ աչքէն զուրկ
Մէխք — Տօնական, Տէրունական (օր)
Մենծանալ — Հպարտանալ, կոկոզանալ
Մզեղ — Մազի պէս մանրուք, մզեղել, փայտը մանր մանր ջարդել
Մզմզալ — Ցուրտէն սարսռալ: Մզմզուք, սարսուռ
Մզմըզ — Սիլնքոր, թուլամորթ, դժուարահաճ
Մէյնել — (Մէկ-ն-ել) Փոել, սփռել, տարածել
Մէկտեղել — Միանալ անգամ մը բաժնուելէ ետքը:
Մէկտեղութիւն — Ընկերակցութիւն, շահակցութեամբ
Մէրել — Մարել, թալկանալ, նուաղիլ առանձին
Մէրիչ — Հնհնուքին կրկնակը, օր. հնհնուք մէրիչ
Մէրէնք — Մօր տունը
Մէհրէկ, մէրէկ — Մահակ, երկու մէթր երկարութեամբ փայտ մը որ ներկին ամանը կամ կտաւը խառնելու կը գործածուի
Մըռմըռալ — ինքնիրեն խօսիլ
Մթել — Առանց երեսի բարձ, վերմակ եւն.
Մթել (ըյնել) — խոնջէնքէն քունին մէջ ընկղմիլ
Մթնել — Տակաւ տակաւ մթնել, մթազնիլ, խաւարիլ
Մժել — Ալիւրը տաշտին մէջ ջրով խառնել
Մկլտէզ — Մողէս
Մկըլօ — Մուկի պէս ճարպիկ, խորամանկ տղայ
Մկնտօն — Մեծ պահոց առաջին երկուշաբթին տուները կը մաքրեն, կը թօթուեն և մկներուն ծակերը բոհրած ցորեն կը լեցնեն, կ'ըսուի թէ

այդ օրը մկներու տօնախմբութիւնն է
Մժղլել — Թուլնալ, ընդարմանալ
Մժղլուկ — Նուաղկոտ, թոյլ, թեթեւ (fուն եւ տենդ)
Միջել — Ձեւելիf նիւթը մէջտեղէն երկծալ տակել
Միշմիշ — Ծիրանի (*գերասլի*):
Մեջվանականէ — Մէջտեղէն, կէս առ կէս շահաբաժինով, տե'ս, եւ մէկտե-
    ղութիւն
Մխալ — 1· Մուխը ելլել, 2· Ցաւին կամ կորուստին սաստկութենէն կարի
    զգացուիլ
Մխել — 1· Գամել, բեւեռել, 2· Կռել, մղել, խճողել
Մկլտոզ (մէլտէզ) — Մողէս
Մնաւոր — (Մի–ն–ա–ւոր) Մինակ, անջատ, առանձին եւն·
Մխթել — Տե'ս Մխելին 2րդ առումը, հրել
Մլօն — Ջաղացպան
Մնալ — Մենամարտելով յաղթուիլ
Մնիկ — (Մի–ն–իկ) նուազ, մանկ· օր· «մազմնիկ» պզտիկ, բարակ, մազ մը
Մնկըլ — (թրf· մանղըր) դրամ, ստակ· կմըլին հականիշը
Մնտոտ — Մանր տղոց ամործիfը, կոկովը
Մնդիկ — Մանրեկ, մանրկեկ (սալոր)
Մշտոտ — Ցոռի, գէշ
Մութնուլուս — Առաւօտեան աղօտ լոյս
Մորչ — Ծառի մատաղ ճիւղ
Մորթել — կտրել, մարդ կամ ոչխար
Մութնուլուսուն — Առտուն, լուսնալու մօտ ատեն
Մուխ (տալ) — Դրդել, թելադրել
Մուխը (մէրէցնել) — Ծանր կերպով հարուածել, վնասել
Մուխը էփէն (գէնել) — Տե'ս մխալ
Մուղալ — Ծառերու առաջին պտուղը, երախայրիf
Մուսանտարա — Միրգ, միս եւն· պահելու տեղ (մառդարա°ն)
Մուկ — Խելօf, խորամանկ
Մուշակ — Մշակ, բանուոր
Մուր — Ածուխի կեղտ, արատ
Մուրջուն — Մրջիւն, մրջնոց
Մուրատ — Խնդիրf, իղձ, փափաf
Մուրասկան — Մուրացիկ, աղfատ
Մուռջաւմբօն — Մրջնոց, հիւանդութիւն մը որ ձեռfերու եւ երեսներու վը-
    րայ կ'ըլլայ, երեսի վրայ գոյացած խաւ մը
Մսիլ, պաղիլ — 1· Բամպակեղէնին կրակին մօտ զտնուելէն ազդուիլը եւ
    գոյնը, 2· Ցուրտին ազդեցութենէն ընդարմանալ
Մսմնակ — Մենաւոր, առանձին

Մտրուր — (Միս-տրոր) Աշխատութեան ծանրութենէն մկանունքը ցաւիլ
Մտարել — խորհիլ, մտածել
Մտմտալ, մտմտուք — Մտածում, մտահոգութիւն
Մարդպանուկ, մարդ չարդուկ — Մարդասպանութիւն, կռիւ ընել
Մտքօք — Մտացի, մտքին մէջ բան մը լաւ պահող
Մրեղ, մրխիկ — 1. Ջուանքէն նոր ելած ոջիլ, 2. մժեղ
Մրեղել — Մարել, մթագնել, օր. օնադը մրեղեր է
Մջիկ — Միջինք: Այս օրը ամէն տուն ընտանեաց թուոյն համեմատ մէկ մէկ հատ հակիրթանել քիւփթէ շինելով՝ ասոնց մէկուն մէջ մատնի մը կամ դրամ մը կը պահեն. պահուածը որու որ ելլէ, ա՛ն բախտաւոր է, կամ ընտանեաց «տէօվլէթ»ը այդ տարին անոր գլուխն է
Մըխած — Մուխին գոյնէն աղտոտած, մաշած, մգլոտած, մրոտած
Մրեղ — Մանր ոջիլ (փնտռելով մաքրել)
Մրկտել — Մկրատ-ել, մկրատով կտրել (մազ եւն.)
Մրսէ — Երնէկ, մրսէ գլխուդ = Երնէկ գլխուդ
Մօզը բռնել — Մժեղին կամ այդպիսի կենդանիի մը պաճարեղէններու ընդ-գունքը մտնելով՝ զայն գրգռել եւ փախցնելը: Քէն ընել եւ չխօսիլ
Մօրէ մերկ — Բոլորովին մերկ, ադամային մերկութիւն
Մօրուքը խնդալ — Ծաղրել, շաղակրատել, կեղծել

Յ.

Յար — Ափ, ձեռք
Յազուզայ — Ազուզա
Յերդ — Յարդ
Յերդնոց — 1. Յարդանոց, 2. Ծատակեր, որկրամոլ (մարդ)
Յեկիր (յէկիւր) — կիրք, հակառակութիւն
Յիցծուն — Յիսուն
Յիշէք — 1. Կաշառ, 2. զանձանակ որուն մէջ կը ձգեն եկեղեցին քահանային տրուած նուէրը
Յիշեսջիր — Յիշէք:
Յորտեղ — Ուրտեղ: Յորտե՞ղ էիր = Ո՞ւր էիր:
Յո՞ւմ — Ո՞ւմ, որո՞ւ
Յո՞ռ — Ո՞ւր, ուրտեղ
Յօռեղա՞ն — Ո՞ր տեղեր, ո՞ւր տեղուանք
Յօ՞ռկի — Ուսկից, ուրտեղէն
Յօռկից յօռ — Ուսկի՞ց ուր
Յօղն էլլալ — Դիւրագրգիռ ըլլալ, ցասնուլ եւն.

## Ն.

Նա — Այն (արական)
Նազ — Հաճոյանալու ձեւ մը, կոտրտուք
Նազուկ — Ճախարակ մը որուն վրայ կաժը անցնելով կը կծկեն
Նազուկ քար — Ճախարակին առանցքը, քար մը որուն վրայ կ'անցընեն ճախարակը, մանածը վրան փաթթելով վերջը կծկելու համար
Նախշ — 1. Նկար, 2. Ասղանկար, ասեղով նկարուած (կար)
Նախշար, նաշխար — Նշխար, մաս
Նախշուն — Նկարուն, գոյնզգոյն նախշուն մոմ: Մէկու մը եռեւէն՝ ներկայութենէն չախորժելով կ'ըսեն թէ «երեսը նախշուն մոմ դրնեցին կարծես, որ անմիջապէս եկաւ»
Նաճար — Հիւսն
Նամլիկ — Դանակին բերանը, երկաթէ մասը
Նեղանալ — Սրդողիլ, նեղուիլ (հոգւոյ), հոգիս շատ նեղանայ = հոգիս շատ կը նեղուի
Նեղուիլ — Նեղը մնալ, ստիպուիլ
Նեղուց — Նեղ, նեղտուն
Նետակ — Ջահրակին առանցքը, (թրք. օղ), նետքել = նետակը անցնել
Նետել — 1. Նետել, 2. էշ կամ ձի քուրակը ձգել
Նետիչ — Հրացան, ատրճանակ
Ներկել — 1. Կշտամբել, չեխել, 2. Այպանել, ամչցնել
Ներքուք — Մաղուած բանի մը մաղէն վար իջածը
Նէ — Այն (իգական)
Նէրկիզ — Նարկիզ, ծաղիկ մը
Նիշանծօնք — Նշանածին տունը
Նիշէ — Նաշիհ, անթեփ ցորենին միջուկը, նշայ
Նիշտէր — Նշդար: Նիշտէրել = Նշդարել
Նորելուկ — Նորահնար, նոր գտնուած, նոր ելած
Նորկանց — Նորէն, դարձեալ, կրկին անգամ եւն.
Նորըս նորկանց — Նորենորոյ, վերստին
Նորոգել — 1. Տե'ս, ներկել, 2. Հականիշը (նորոգելին)
Նստուկ — Նստած դիրքով
Նստկան — Գործը միշտ նստած տեսնել, օր. Սանաաթը նստկան է
Նոյնէ — Այնպէս, տե'ս, հնցէ
Նէ, նուի, նուիկի — Ան, անի, անիկա
Նուանք — Անոնք
Նէ — (Յտղր. մանկ.) 1. Որ, եթէ, օր. նստիմ նէ՝ որ նստիմ: 2. Օժանդակ մասնիկ մը որ խօսակցութեան մէջ յաջորդ նախադասութիւնը կը կանխէ. օր. «Գացաք, նստաք նէ, կայփէ եփեցին, խմեցաք նէ, լափը բացաք նէ...»:

## Ճ.

Ճալ — Ցփսի, պարսկական (զօտի) եւ եւրոպական (տես)

Ճալակ — Կռնակով տանելիք բեռ: Ըստ Կարապետ Կէզիրեանի՝ վիզէն վար երկու ուսերուն մէջտեղը:

Ճալլաւու — Նօսր (կտաւեղէնի համար)

Ճալտուարան — Ճատրուան

Ճահ — Օգուտ, վաստակ, շահաւորցնել = վաստըկեցնել

Ճահել — Աւելցած, անախորժ ուտելիքները ուտել, ընտանեաց անդամներուն հսկել, կառավարել

Ճամբուր — Հաց եփելու երկաթ ձող, գործիք

Ճան քաղնիք — Ջմեռ ատեն տղայք կրակարանը մէջտեղնին դնելով, վրանին հաստ սաւան կ'առնեն, որպէսզի ամէն տեղերնին հաւասար տաքնայ, (*ԻԹՀամամը*): Անտեղի աղմուկ

Ճանկարող — Զրաքանութիւն, շաղփաղփութիւն, շաղակրատ մարդու խօսք, ունայն խօսակցութիւն, պարապ խօսակցութիւն

Ճան սխտոր — Տեսակ մը սխտոր անպէտ, տեսակ մը բանջարեղէն

Ճառ — Ճէռ, մէզ

Ճառել — 1. Կշռել, 2. սիրաշահիլ

Ճառք — Կշիռք, ծանրութիւն

Ճատկեկ — Խիստ շատ, առատօրէն

Ճափշաղ — Ըմպանակ, երկար (թաս)

Ճափշաղնի — Ճաղփաղփ, դատարկաբան, շաղակրատ

Ճերեփ — Ճերեփ, ճերեփով խառնել = Խառնակութիւն ձգել, գործ հրահրել

Ճէթ — Անառակ, կռուասէր (տղայ)

Ճէյենք — Կշիռ

Ճէյենք շամփուր — Հայկ. կշիռ համաստեղութիւնը

Ճէնկ — Ճինուածք, ճինութիւն

Ճիլտէն — Ոչխարի ստամոքս

Ճիվ — 1. Պտուղները հատած ողկոյզ, ճրուանդ, 2. կերուած պտուղին մնացորդը:

Ճիվան — Ճիւան, ճիւռնք

Ճիվլիլ — Կովի եւ արջի պէս պտուղները անյագաբար ուտելով միմիայն ճըռուանդը, թողուլ

Ճիրէ — Թուրքի քամուած հիւթ

Ճիւ — Թուրքին քամուած ցամաք մասը

Ճիւռտ — Անուն անհրեւոյթ էակի, որ երբեմն մարդիկ խաբելով (ծանօթ մարդու կերպարանք մտնելով) հեռաւոր տեղեր կը տանի. այս միջոցին եթէ խաբուողը խելաբերելով «յանուն Յիսուս Քրիստոսի» բսէ՝ կ'ազատի վտանգէն, եթէ ոչ բարձր լերան գլուխը հանուելով վար կը ձգուի

Ճիփել — Ճփել, տրորել

Շլլի — վիզ
Շլխշըդ — Թիթեղէ կամ փայտէ շինուած մանկական խաղալիկ
Շլխպեկ (շաշլըխ) — Արծաթէ ծոպերով ծամակալ
Շղուա (ճըղա) — Մատաղ տունկ կամ ճիւղ
Շշտել — Կշտամբել, յանդիմանել եւն.
Շպել — Կտաւը պաղլեղի ջուրին մէջ թաղելու գործողութիւնը
Շպըդել — 1. Շաղախել, շպելու պէս ձեռքովը թաթխել, 2. ճմրել, շպրտել, ապխտել (պտուղը)
Շռան — Մգող, ներքեւը մգող
Շնդրկել — Շունի պէս պառկիլ, տե՛ս. կօմատոտել եւն.
Շնորհքը իջեցնել — Տե՛ս նորոգել, կարգի դնել
Շողար — Տաքութենէ յառաջ եկած հարսանիքի պէս հիւանդութիւն մը
Շող — Տաքութիւն, ջերմութիւն, շողվենալ = տաքնալ
Շողուք — Լորձունք
Շոր, շրթիկ — Աչքի քիժ: Աչքի ջուրը պնդանալով դեղնագոյն հիւթ եղած
Շորվա — Մածունով, կամ ոսպով կերակուր նօսր
Շուլլայ — Հարեւանցի կար, շուլլել. 1. Հարեւանցի կարել, 2. տե՛ս մխել
Շուշըռ — Միզելու պէս իջած ջուրի ձայն
Շռուք — (Շեռ-ուք) երախաներու տակ դրուած հողին թրջածը
Շռդպել — (Շեռ-դիպ-ել), 1. Շեռէն աղտեղել, 2. շըռդըպելին անարգական առումը
Շռվաթ, շռվաթ, ջրվաթ, ջրթափ — Շեռ, մէզ
Շռփեղ — (Շեռ-հող) երախային տակ դրուած հող:
Շրճել, սրճել — (Շուրջ-ել) Լաթին կամ կտաւին եզերքը խոշոր խոշոր կարել
Շրբիկ — Ցեխոտ ատեն լաթի վրայ ցայտող տիղմ
Շրիք — Պաղ ատեն քիթէն վազած ջուր
Շրթիկ — Ցաւած աչքի շոր, աչքի ջուր
Շրուք — Օրանի մանկանց մզուքը հողին մէջ
Շրթիկը վաթցնել — Տե՛ս, փոզլացութիւն
Շրշկռել — Ասդին անդին ջուր ցանել կամ սրսկել
Շքնոց — (Շուք-նոց), շքանոց, հովասուն տեղ
Շօշորդ — Հետք. նշան, (հիւանդութիւն եւն.)
Շօռվա — (թրք. *չորպա*) ապուր, թանապուր

**Ո.**

Ոխակալ (օ-ի պէս) — Քէն պահող, չարամիտ
Ու, ուր, ուք — Որ, օր. իս ուր = ես որ
Ոլորտիլ — Պտըտիլ, շրջագայիլ օ-ի հնչումով
Ութնել — Խաղին մէջ շահիլ (թրք. *ութմաք*)
Ուժր (պատել) — Ոյժ հասցնել, կարողութիւնը զօրել

Ուժակարող — Ոյժ ունեցող եւն.
Ուժօք — Ուժեղ, զօրաւոր
Ուխտիներ — Ուխտել, խոստանալ
Ունեւոր — Հարուստ, քարեկեցիկ, չունեւորին հականիշը
Ունտ — Հունտ, հաց համեմ, սեւ շուշմայ
Ուտել — 1. Ուտել, 2. Մէկուն ստակը չտալ
Ուտտեղ — Ամօթոյք, նստոյ տեղք
Ունք — Յօնք
Ուսնիլ — Սորվիլ, տեղեկանալ
Ուսցնել — Սորվեցնել
Ուսել — Հիւսել, պատել
Ուսվուն — Հիւսուած, պատուած
Ուրքաթ էրէս — Տժգոյն, դժբախտ
Ուրունկուն — Իրիկուն
Ունչ, օնչ — Ոչ, ունչ ես, օնչ դուն = Ոչ ես, ոչ դուն
Ուք — Տէ, մանիկի փոխան, էրթամուք զամ = երթամ տէ զամ
Ուփ — Ցաւ յայտնելու արտայայտում, ուփ մատս կոտրեցաւ

Չ.

Չաթ-չաթ — Պայթուցիկի ձայն
Չալել — 1. Չմշկել, 2. Սուլել, ածել, նուագել
Չախմել — 1. Մխել, գետինը հաստատել (ցից եւն.) 1. Ամբաստանել
Չախ-չախ — Խեղանդամ, կաղ
Չէթէ — Ոչ թէ
Չէեու, չէմիեու — Չէ որ, չէ մի որ
Չէմիչ — Չամիչ
Չէնէ, չէնէմ — Եթէ ոչ
Չի՛մ — Ո՛չ, չեմ ուզեր, չե՛մ
Չիմնա, չրմնար, չրմնարա — Ո՛չ, չե՛մ կրնար, կարո՛ղ չեմ
Չիննա, չիննար, չիննարա — Ո՛չ, չի՛ կրնար, կարո՛ղ չէ
Չիր — Ծիրանի կամ սալորի չորցածը
Չիսնա, չիսնար, չիսնարա — Ո՛չ, չե՛ս կրնար, կարող չես
Չիքն (ըյնել) — Չքաւորիլ, աղքատանալ
Չկալութիւն — Չքաւորութիւն
Չմչրմ — Ուտել եւ աշխատելու մէջ թոյլ, անփոյթ
Չմչրմալ — Բերանի պատառը առանց ախորժակի ծամծմել
Չոմչոմ — Լոգնալ (բառ մանկական)
Չորթան — Չորացած թան
Չորքնհար — Չոր-թան-հար, չորթան հարելու քարէ ամանն
Չորքար — Անկարեկիր, անխիղճ, քարսիրտ

Ջունեւոր – Ունեւորին հականիշը, խեղճ
Ջորսօտէն – Ջորքոտանի
Ջրչքնել – Ատեն ատեն ջուր ցանել կամ սրսկել
Ջրքի չուան – Գծալար
Ջօքել – 1. կքել, 2. ծնկածալ նստիլ
Ջօչօչը մնալ – Բոլորովին ոչնչանալ, աղքատանալ

## Պ.

Պագ – Համբոյր, պագնել = համբուրել
Պաքոտ – Խուղոտ, աղտոտ (ամանի), պաքոտել = խուղոտել
Պատըլել – Պարտկել
Պակասաւոր – Կին, կին մարդ (թրք. *էկսիկ էթէկ*), մօր որովայնը մարդոց– մէ պակաս մնալու համար
Պակսորդ – Պակսած, պակաս մնացած
Պակսութիւն – 1. Նուազութիւն, 2. թիւրութիւն, անուն պակասութիւն = անպատուութիւն
Պաղիլ – 1. Պաղիլ, 2. մտերմութենէ պաղիլ, դադրիլ
Պաղպնծել – 1. Պապանձիլ, 2. Պապակիլ, պասքել
Պաղսրտել – (Պաղ–սիրտ-ել) սէրը պաղեցնել, ուծանալ
Պայմալ, պահմալ, պայմլուկ – Պահ մը առաջ
Պայմի, պահմի – Ասկէ պահ մը առաջ, քիչ մը ետք
Պայմկուան, պահմկուան – Պահ մը առաջուան,
Պահառ – Անպարկեշտ, անհամեստ
Պաննել – Սպաննել, մեռցնել
Պաշարել, պաշարտել – Պաճարել, հնարել, հայթայթել
Պաչ, պաչիկ – Համբոյր (մնկ. բառ)
Պապ – Հայր
Պապա պապա – Մեծամեծ, ահագին, խոշոր
Պապենական – Հօրենական, հօրմէն մնացած (ժառանգ)
Պատկից -- Տանը մօտ դրացի
Պատնել – Պատանել, պատանքը կարել
Պառութ – Պառութայ, կերոն
Պառըգալ – (Պատրոյգ-ա-կալ), գզուած բամպակը պատրոյգի վերածող գաւազանիկ, գլանիկ
Պաստեղ – Թութին հիւթէ (շիրէ) շինուած նօսր կտաւի նման տեսակ մը անուշեղէն (պաստըղ)
Պարտկել – Յանցանքը գոցել, տեղաւորել
Պարկենք – Պատկեր
Պարկենք փախցնել – (Մանկ. խաղ մը), գրքերու մէջի պատկերները ու

արկղները իրարու հետ բաղդատելով, որու պատկերը որ շատ ըլլայ
եւ աւելնայ, ան կը շահի խաղը

Պար — 1. խաւ, 2. ժանգ, պար կապել = ժանգոտիլ

Պարվանիկ — Տեղը կապոյտ և ոսպնաձև ներմակով նաշխուն շապիկի անուն

Պարտապանաց — Տեսնելիք եւ պարտկելիք գործ, նիւթ: խոշոր, օր. «տահա
մանծ պարտապանացը տեղն է»

Պաքսիմաթ — Չորցած հաց նաւմբորդի համար

Պելսեր — Պելս, ընչացք

Պեհել կամ պէյել — Պահել

Պզտիկ-պզտիկ — Պզտիկ, փոքր

Պզտօ — Պզտիկ (հարս եւ ներ)

Պզտկուց — Ի մանկութենէ, պզտիկ եղած ատեն

Պէյրուզ — Պատրոյգ

Պէյրօսել — Պատրուսել, կտրած թելերը առանց հանգոյցի միացնել իրարու
հետ

Պետվանի — 1. Պիտանի, 2. պատուական

Պլապլա — կարմիր եւ մանր պտուղ մը

Պլապլա կամ կլապլա (թէփել) — 1. Բնական կարիքը խիստ դժուարութեամբ
տեսնել, 2. Այդ պատճառաւ տեղի ունեցած դժուարութեան պէս ուրիշ
բանէ նեղուիլ, օր. «Էնպէս նեղուեր է եու, փոռուն կլապլա թէփէեա»

Պըրկունք — Շրթունք

Պլէզ, պլօզ — Պինդ բակորի կտոր, տե՛ս եւ կլօզ

Պլլել — Պարուրել, փաթթել

Պլիկ — Բլիթ: Տղոց համար պատրաստուած (հաց եւ նշխար)

Պլլուիլ — Փաթթուիլ

Պլորուկ — 1. Որոմն, 2. Գինձի նման սեւ հունտ մը

Պլօք — Ոլոռն

Պլպլալ — Պզտիկներու համարձակութիւնը

Պխամէր — Եգիպտացորեն

Պխերիկ — Բուխերիկ

Պնլիկ — Պզտիկ (մնկ. բառ)

Պղինձ — 1. կաթսայ, ղայձղան, 2. բաղնից պղինձ, ջրամբար

Պնղնտել — (Պնեղ-ն-տ-ել), պտղել, հազափեպել (խաղող, չամիչ եւն.)

Պնլտալ, պնրտալ — խտղել, քորել, թեթեւ կերպով եռալ (վէրքին տեղը)

Պնրքել — 1. Պրպտել, խուզարկել 2. բերնին մէջ խօսք փնտռել

Պնկըլ պնկըլ (էփել) — Ջուրին տաքնալ եւ եռալը պղպջալէն

Պնկլտաղ — Մանկան գանկին առջեւի ոսկորը որ կակուղ ըլլալով, տղան
մինչեւ որ խօսիլ չսկսի, «քար» չըսէ, չի պնդանար

Պշկալ — Պժգալ, զզուիլ

Պոպոքելիք — կուրնալու (անէծք մը)

Պուլպուլուկ, պլպլուկ — 1. Բողբոջ, 2. չբացուած կոկոն, 3. աչքին բիբը

Պունկ — 1. Արգանդի բերան, 2. ծարաւ, 3. արտորանք
Պունկը դնել — 1. Յամառիլ, պնդել իր խօսքը յառաջ քշելու համար, 2. մանկան իր մօր արգանդին բերանը գալը
Պունկին բերանը մնալ — Արգանդահեղձ ըլլալ
Պուտ — 1. Ումպ, 2. (թրք. *պուտ*) Երբուծ
Պուրքայ — Պզտիկ լիսեռ մը որ ջահրին վրայ կ'անցուի
Պուրկունք — 1. Շրթունք, 2. առարկաներու եզերքը
Պամշել — Կամիթի պէս ճզմել մատներուն տակ
Պուրպուտ — Սաստիկ պաղ
Պտղուց — Բրդուճ, հազիւ պտուղի մեծութեամբ
Պըտլս — Կէտ, նշանախեց
Պտղել, պթխել — Կուրնալ, աչքը տեղէն դուրս ելլել
Պտոտ — Պտոյտ, ցորենը մաղելու մէկ կերպը, մաղը ոլորելով՝ խոշորուքը եւ աւելորդ մասը մէջտեղը կը ժողվէ
Պտոտել — 1. Պտոտի գործողութիւնը, 2. Պրպտել
Պտըր պտըր (էնել) — Քրթմնջել
Պրճել — Որեւէ գործ հարեւանցի տեսնել
Պրպուտ — Քառաքեղ ձմեռ, սառնամանիք
Պուրկունք չափել — Քամահրել, ծաղրել, վարի շրթունքը վերինէն դուրս հանելով
Պօնկլտալ — Կերակուրին պղպջալէն եփելով՝ հանած ձայնը
Պօք — Պոպոք, սոխին կեդրոնի ցողունը (թրք. *սօղան էրկէկի*)
Պօրքալ — Ցատկել

## Ջ.

Ջաղասք — Ջաղաց, ջրաղաց
Ջաղալա — Զհասած միրգ, սալոր, ծիրան եւն.
Ջաղարսք — Ջրաղաց
Ջառ — Ջահրակ, մանելու ճախարակ
Ջառչըղվան — Ձիւթապատ չուան, լար ու պուրկային եւ ճախարակին վրայէն միանգամայն կ'անցնի
Ջարուխ — Տրեխ
Ջինթեյան — 1. Կապոյտ վարտիկ, 2. միասայրի դաշոյն
Ջիր (չիլ) — Սալորի եւ ծիրանի չորցած կեղեւ, չոր պտուղ
Ջխուէր — 1. Ջրհոր, 2. հոր, խորունկ փոս
Ջումջում — Լոզանք (մնկ. բառ)
Ջրին համպրուկօքը — Անթիւ, անհամար, անհուն: Տե՛ս. մէկօք
Ջրդեկ — Իգանդամ, ծնծակ
Ջրեմ — 1. Ջուր խմցնել, 2. երկաթէ գործիքներ ջրել
Ջրիշուն — Կուղբ, միշտ լողանալ սիրող

Ջրուաք — Մէզ: Ջուաք ընել = միզել
Ջիջրանք — (Ջուր-ջուր-անք) — Շարաւ, թարախ, որ վէրքէն կը հոսի ջուրերու պէս
Ջրջքնել — (Ըստ Գր. Խանձեանի Ջրձգնիլ) — Ջուր սրսկել, ցանել, ցնցուղով կամ այլ ամանով
Ջօռ — 1. Ջուր, 2. ցաւ, հիւանդութիւն
Ջօռ (տալ) — 1. Ջրել գետինը եւ ցանքը, 2. դրժել, եղծել պայմանը
Ջօռ (չցամքցնել) — Առնելիք, պահանջքը մինչեւ որ զանձուի, անընդհատ եւ շարունակ երթալ, ձանձրացնել
Ջօռի — Ջրրի

## Ռ.

Ռէհէն — Րահան, հոտաւէտ ծաղիկ մը

## Ս.

Սազ — Նուագարան
Սազել — 1. Յարդարել, զարդարել, 2. Պատիւը անցնել, չար կիրքը յագեցընել
Սազուիլ — Վրան գլուխը զարդարել, հագուիլ
Սալ — Խաւիխաւ քար
Սալվոր — Սալոր
Սաղմէս — Սաղմոս
Սամի — Եզան վիզը կապելիք ծուռ ձողեր (սամը)
Սանտ — Սանդ
Սանդիձաոք — Սանդիտուն
Սանտըզեր — (Սանտ—եզր) Հրապարակներու մէջ հաստատուած քարափոր սանտերու եզերքը, շուրջը: Որոշ թաղ մըն է
Սասնել, սասենալ — Միրգերու եւ չոր պտուղներու համը կորսնցնել
Սահմնտել — (Սահման-տ-ել) կարգադրել, կանոնաւորել
Սառատ — Խարբալ, նօսր ծակերով (մաղ)
Սատկիլ — Զարաչար մեռնիլ
Սատուր — Սակուր: Միս կտրելու գործիք մը
Սարեկ — Սեկ, չորցած կաշի, որով բդուկներու բերանը կը ծածկեն
Սուսան — (Սա—հոս-ան), հոս, այստեղ, այսր
Սալորուկ — Սալորի պէս կլորակ (խոց):
Սեղանդեր — Փայտէ շինուած հացի եւ կերակուրի բոլորակ սեղան
Սեսուր — Սուսր, կարմիր ներկ մը
Սեւսիթ, սիւձիդ — (Սեւ—ձիւթ) կեւ, կուպր (թրք. *զարասագըզ*)

Սերոտել — 1· Կաթին երեսը բարակ սեր կապել, 2· Ջուրին երեսը սառոյց
Սեւուց — Աչքի եւ թոքի սեւ մասը
Սեւսեւսիթ — 1· Կեւ, կուպր, 2· Խառնակիչ, աներես, յամառ
Սեւճղէկ — (Սեւ, ճիւթ-ակ) ճիւթապատ կաշէկտոր մը որով ջահրակին չուանը կը ճիւթեն
Սըւի նըւի — Աս ան
Սէկ — Օրրանի մանկանց գիշերը ոտքին վրայ դրուելիք լաթ
Սէրպել — Արճակել, թողուլ, ճգել
Սիկ — Մոմլաթ մը որ օրօրոցին մէջ երախային պորտէն վար կը դրուի վրայի լաթերը չաղտեղելու համար
Սիկլիկ — Լաթի վրայ կարկտակին զարդարանք
Սիմ — Մետաղէ կեղծ սրմա (պրս· սիմքասէն)
Սիր — Սեր մածունի
Սիր, սեթել — Սիրտ, կուրծք
Սիւ գիր — 1· Գոյժ, 2· դժբաղդութիւն, ճակատագիր
Սիրտ (դնել, տալ) — Սրտապնդել, քաջալերութիւն
Սիրտը եատ գալ — Փսխել
Սիրտը քաշել — Հեծկլտալ, հեկեկալ
Սիւմպիւլ — Սմբուլ, խոտ
Սխտործեծ — Սխտորքուշ
Սորխանց, սոխրաց — Իւղին մէջ այրած, կարմրացած սոխ
Սղկել — Ցղկել, տրորել, մանրել (քարը եւն·)
Սոթտուիլ — Թեւերը սոթտել, պատրաստուիլ
Սոփսոփալ — Պարծենալ գիտցածին վրայ
Սուղծախ — Սուղ ծախող, թանկավաճառ
Սէապէքի — Համարեա թէ
Սմնտր — Պլղուրին մանր մասը
Սպաննախ — Խոտ, շոմին
Սմսռուկ — Թեթեւ կերպով ցրտացնող, սարսող ջերմ
Սմքիլ — Կծկտիլ մնալ
Ստկել — Ցորեն կամ այլ ինչ մաքրել, զատել
Սրբունճաղ — Սահուն (գետին), ողորկ, սրքատաշ (քար եւն·)
Սրջել — Շրջել, բանի մը միւս կողմը դարձնել
Սրտաքաց — Տեսարանը գեղեցիկ, հովասուն եւ զուարճալի (տուն եւ դաշտ)
Սրտանց — Ի սրտէ (թրք· *ճանուկէօնիւլտէն*)
Սրուլիկ — Սրածայր, կոնաձեւ, ցցուն
Սօքսօքանալ — (Սուրբ–սուրբ–ա-նալ) 1· Սրբանալ, արդարանալ, 2· Ինքզինք բանգէտ ներկայացնել կեղծաւորաբար, փիլիսոփայանալ
Սօղուկ — 1· Սողուն, 2· Ջրային գորշ եւ պզտիկ զեռուն մը
Սօն գլօխ — Թակաղաղ, սիւներու փաթի բաց միջոցը
Սօթտել, սօթտվարել — Քղանցքը, թեզանիքը ժողվել, ամփոփել

## Վ.

վանքաց — (վաղ-քաշ) Առաւօտ։ վանքաց կանչուղ, վաղնիկ
վաղնէք — Առաւօտէն առաջուան ժամանակ, օր. տահա վաղնէք է
վանտակ — վառելափայտի հակ, կապոց, (թրք. *բէնտէկ*)
վանտեկ չուան — Հակը կապելու հաստ չուան
վանքսնոց — Նախանաշ
վա՞ռ մի — Ո՞ր մէկը
վավ — Ո՞վ
վանքցուկ, վանըքանցուկ — Առաւօտէն ետք, արեւը ծագելէն քիչ առաջ
վաճառ — Միճակը չի գործածուիր
վասկ-վաճառ — (վաստակ-վաճառ), 1. Առ ու ծախ, 2. վարձք, ողորմու-
թիւն, առաքինութիւն
վար — Ցած, վարմարդ = ստորին մարդ
վարաղ — Նուրբ, բարակ տաղտուկ (պրս. *վարաղ*)
վարդըվառ — վարդավառի կիւրակէ
վարպետօրդի — խորագէտ, քանիմաց, խելօք, փորձառու
վերկա'ր — վէրկա'լ, վերցո'ւր, վերկացնել, վերցնել
վերէ — ի վեր, օր. վանքուվեր է — վաղուընէ ի վեր
վերկէ — Երկնեղ փայտ մը որ խըրզուելիք փայտի բունին ճակատը կը դրուի
վար չիյնալու համար
վերնքաշ — Բեռին վրայէն քաշելու հաստ չուան
վերք (էյնել) — Ահաբեկել, վախէն վեր ցատկել
վզեկ վզեկ (էնել) — վազվզել, ցատկրտել, ոստոստել
վեժօն — 1. խուժան, 2. խուժանի ձայն, աղմուկ
վըլվըլուկ — Իրար անցնիլ
վիլի վիլի (փրցնել) — Աղմկել, վլվլուկ հանել
վլանալ — Լուանալ, վլաւք = լուացք, լուալու գործողութիւն
վլաւք — Լաթ լուալ
վնել — 1. Հակառակել, 2. յանախել
վղըր վղըր (էնել) — վխտալ (ոջիլի եւն.)
վռվռալ — Քրթմնջել, տե'ս տռտռալ
վրայկար — կտաւին կամ լաթին երկու եզրերը իրարու վրայ տանելով կարել
վրանակ — 1. Բեռին վրայ դրուած, աւելցուած մասը, 2. Այր ամուսին
վրանոց — վրայէն հագուած լաթ. վերարկու
վրայ կեցո' — վերակացու, տնտես, ճարտարապետ, հսկիչ
վրայձգուկ — Գործը փոխանակ միութեամբ տեսնելու, իրարու վրայ ձգել
վրնքալ — Բեռ բեռցուած ատեն վրայէն քաշուած չուան, մալուխ

## Տ.

Տակ — Ճակընդեղ
Տաղտաղուկ, տաղտաղուն — 1. Մտահոգութիւն, տաղտուկ, 2. ցրուած, տարտղնուած (գործ)
Տախտար, տաղտաք — (Թրք. *օղատէր*) Այդքան, այդչափ
Տաղտրնել, տարտղնել — 1. Ցրուել, բաժնել, 2. քրքրել, քայքայել
Տան գալ — Բանի չսեպել, կարեւորութիւն չտալ
Տանծիկէն — Տանձին կիսուած չորացածը
Տանկազան — Երեւակայական հրէշ, օրօրոցի մանուկները անհանգիստ եղած կամ լացած ատեննին, «տանկազանը կու գայ» սպառնալիքը կ'ընեն, որպէսզի վախէն ձայներնին կտրի
Տանկալող — Բթամիտ
Տանկօ, տանկլօզ — Անխելք, ապուշ
Տապան տալ — Դիմանալ, տոկալ
Տապկել — Տապակել, խորովել
Տապկտվել — (Տապակ-տ-ւ-ել), Ցաւին, վշտին ազդեցութենէն զգացուիլ բուռն կերպով
Տառ — Աղմուկով փքարձակութիւն (պրս. *ղէրէթէ*)
Տատա — Տատ, մեծ հայր, պապ, հաւ
Տապկուիլ — 1. Խորովուիլ, 2. Վշտերէ կրծուիլ
Տատելս — Քալել, տատելս ըրէ = քալէ (մնկ. բառ)
Տասկել — Գոցել, ծածկել
Տաստափակ — Բոլորովին տափակ
Տասկուկ — 1. Ծածուկ, փակուած, գաղտնի, 2. Համեստ, ամօթխած, (հարս, աղջիկ)
Տարթ — Երախաներու գլխու մազերուն փաթ գոյացած (աղտ. թեփ)
Տարոս — Ամուսնացողի մը տարոսը եթէ մէկուն երթայ, ան ալ կը կարգուի
Տափան — Ցորենը ցանուելէն վերջը յարդարելու համար հաստ եւ ծանր փայտ (թափան)
Տարվենալ — Բախտախաղի մէջ կթուիլ, կորսնցունել
Տաքորպել — Ջերմ սիրով վերաբերիլ, պաղորպելին հականիշը
Տաքցնել ուտել — Անցած խնդիրները վերյուշել, կրկնել
Տզլիկ (նետել) — 1. Կայտռել, վազվզել, 2. Աքսորել
Տեղաւորիլ — Տեղ մը հաստատուիլ
Տեղեր — Անկողին (իր բոլոր կազմածքով)
Տեղեր տեղ — Ընդորմեայ կամ մասնաւոր շինուած պահարան (անկողնի)
Տեներ — Երդիք, տանիք
Տերբու — Աչքերը (միջոց) խոշոր խարտոց
Տեւ — Թեւ, հեքիաթներու մէջ պատմուած հրէշ
Տեսք — Դէմք, երեւոյթ, կերպարանք, տեսքօք = գեղադէմ, շքեղ

Տէ՛ — Տի՛, օն, օր․ տէ՛ կօ, տէ՛ եկո՛ւր

Տէ, տւի, տւիկի — Տա, ատ, ատի, ատիկա

Տէրվիլ, տէրվենալ — 1․ Փլել, կործել, 2․ Տարուիլ, կորսնցնել (*խաղը*)

Տէրվիտա — (Խաղ մը) խաղացողներ տանիքներուն վրայ հաւասար թիւով երկու կողմ կը զատուին՝ կեդրոնը կէտ մը որոշելով։ Մէկ կողմէն հատ մը կ'երթայ միւս կողմէն մէկին դպչելու «տէրվիտա» ըսելով, կը զարնէ ետ կը դառնայ։ Եթէ կեդրոնը չհասած իր շունչը կտրի եւ բռնեն զինքը, խաղէն կ'ելլէ ալ, իսկ եթէ ազատի, որո՛ւն որ դպած էր, ան կ'ելլէ։

Տիկիշ — Ծալք, փոթ

Տիյա, տիյանաք — Ահաւասիկ, ահա հող է

Տիլէք — Տէր ու պաշտպան ունեցող։ Պաշտպանեալ

Տլքիլ — Տքլիլ, ժողիլ, փտիլ ու մզլիլ (պտուղի, եւայլն)

Տկել — (Տակ–ել), տակը տալ, ծալլելը (կտաւը կամ լաթը)։ Ջուրը լափել

Տմպլիք — (Թմբուկ-իկ) — Մանր թմբուկ

Տղաքերք — Տղաքերութիւն, որդեծնութիւն

Տնկլիկ — Ճօճանակ, զանգակ։ Ըստ կարապետ կէօզիւբեանի՝ միակ մնացած, բացը մնացած, ծառի մը վրայ միս միակ նիւղ

Տնկլօզ — Ապուշ, տխմար

Տնմնայ — Տունը մնացած, հասակը տարիքը առած (աղջիկ)

Տնցէ — Այդպէս

Տորէն — Տունկ, որուն արմատը կարմիր ներկ է

Տորպակ — 1․ Տոպրակ, 2․ ամորձիք

Տուն (դնել) — Վէրքին մէջ շարաւին, թարախին կեդրոնանալը

Տուն (տալ) — 1․ Բնազդում, 2․ Ազդել եւ ազդուիլ

Տուր (թէփել) — Կիներու յատուկ հարսանիքի պէս հիւանդութեան մը ախտանիշը

Տաղպել — Լաթին աղտոտութենէ դեղնելով զալարիլը

Տուտել — 1․ Տոտռալ, 2․ քենոտիլ, ոխ պահել

Տոռտուն — 1․ Բուք արձակող, 2․ անարգ մակդիր, աշխոյժին հականիշը

Տորտուկ — Տես տառ։ Անճշան, խօսքին հաւատք չընծայուելիք անհատ

Տտիկ (առնալ) — Հանգչիլ, հանդարտ նստիլ

Տրփալ — Տրոփիւն, հոգեվարքի երակին զարկը

Տփոց — Ծեծ, հարուած, տփոցել, ծեծել

Տքալ — Հիւանդացած ատեն կոկորդէն ձայն հանել

Տքուն — Անքուն

Տքտքալ — Տքալ, հեծել բեռի տակ եւ հիւանդութեամբ

Տօրէն — Տորոն, ներկելու բոյսի մը արմատը

**Ց.**

Ցայել (ցորել) — Ցորենը հարեւանցի լուալ, մէջի աւելորդ նիւթերէն մաքրելու համար

Ցաթել — Ծագիլ արեւու եւ լուսնի
Ցախ — Առելի մարդու մօրուք նշանակող
Ցամաք — Լոկ, ցամաք հացի կտոր = լոկ չոր հացի կտոր
Ցած — Վատաբարոյ, շլխտի, եւայլն (կին), ցած արարած = վատասերած
Ցանել — 1. Ցանել, 2. խրատել, օգտակար խօսքեր ցանել: Ի՞նչ ցանիս նէ էն կը քաղիս
Ցրրդուկ — Կայծ
Ցիցերես — Լկտի, երես գտած (հարս, աղջիկ)
Ցնծաղ — Ծնծղայ, քշոց
Ցնդպիլ — 1. Ցնդածի պէս շարժիլ, 2. Անհամբերութիւն
Ցթնփիլ — Արտորալ, աճապարել
Ցամքոց — Ցամքեցնող լաթ, խաւլու
Ցնծալ — Դրամապէս տուժել
Ցնծում — Հոծ, խուռն բազմութիւն մարդկան
Ցնցն — Գձուձ, ագահ
Ցորմաղ — Ցորենի մաղ
Ցուցանք — 1. Հրէշ, ճիւաղ, 2. Ցասում, պատուհաս
Ցաղել, ցխել — Ջեռքով ամուր լուանալ, ճմրել
Ցրել — Ապականել, լուծում տալ
Ցօղել — Թեթեւ կերպով լուանալ բան մը

Փ.

Փախուկ — Խելքը ցնորած, փախած (մարդ)
Փախցնել — Առեւանգել
Փարփաթ — Տղոց խաղալիկ մը որ փափաթիայի հունտը ծակերու մէջ դնե-լով կը խաղան
Փակցորդ — Մարխ, խոփ կամ այլ դիւրավառ վառելանիւթ
Փամփալ — Գէր, կարշնեղ, մսուտ (մարդ)
Փաթտվուկ — 1. Փաթտուկ, 2. կռուփ
Փառաւօն — Պատիւ սիրող մարդ
Փառթ — Քաղիրթ, փորոտիք
Փարտիչ — Թոնիրին մրխածը լուալու ցնցոտի
Փարտոց — Թոնիրը կամ փուռը մաքրելու քուրջ
Փարտել — 1. Ման գալ, պտոյտ ընել, 2. Թոնիրը մաքրել քրջով
Փարս (խաղալ կամ խաղցնել) — Կաշառել
Փէզվէնկ — Գէշ կնկայ միջնորդ, կաւատ
Փէտ (կըյրել) — Ջթեքիլ, չծռիլ, դժուարաթեք
Փէտել — Փայտով ծեծել
Փէտտուն — Փայտ դնելու տեղ, փայտանոց
Փէտվոր — Փայտուոր, փայտ բերող ծախող

**Փէտատ** – (փայտ–հատ), բրիչ
**Փըլուրուկ** – Տաշտի մէջ կրակ վառելուն
**Փին** – Տես բիջ : Ապօրինի զաւակ
**Փնճակ** – (փունջ–ակ), լիաքուռն, բուռերով
**Փոզլացութիւն** – Բոզլացութիւն, կեղծ ու պատիր լաց, կոծ (անպարկեշտ կիներու)
**Փոխնիդ** – փոխինդ, ալղուրին մանր ալիւրը ռուպով խառնելով տեսակ մը ուտելիք կ'ըլլայ
**Փորնոց** – Թոք
**Փորոտել** – Փորը մեծնալ, անել, ուռճանալ (կաղամբի եւայլն)
**Փողվատ** – Շապկի կուրծքի բացուածքին տակ կարուած կտաւ
**Փորուց**, փորաձ – Փորով, որինակ, անօթի փորուց = անօթի փորով
**Փոր տալ** – Պատերուն ծռելէն դուրս ցցուիլը
**Փորօք** – Գէր, պարարտ, եւայլն
**Փոր զնայ** – Փորհարութիւն, կլապլայ թափելու հականիշը
**Փորքշուք** – Փորհարութիւն, կլապլայ թափելու հականիշը
**Փորու ցաւ** – Քէն, ոխ, ատելութիւն
**Փուն** – 1· Բուն, արմատ, ծագում, պատճառ, շարժառիթ· 2· Հնար, միջոց
**Փուրշունք** – 1· Փշրանք հացի, 2· տեսակ մը կերակուր
**Փչոք**, փչոքել – Փչելու կերպ մը : Ծեծած ցորենը թէփէն զատելու համար, թափուրին մէջ լեցնելով, վեր վար շարժել եւ մեկուսացած թեփը փըչել բերնով
**Փռընգտալ** – Փռնգտալ, փռնչել
**Փսոր** – 1· Փշուր, 2· Աղուամազ, խաւ
**Փսորել** – 1· Փշրել, քրքրելը խմորի, մածունի, հողի, 2· Խաւոտել
**Փփսալ** – Ականջին տակը ծանր խօսք խօսիլ
**Փփսուք** – 1· Լրութիւն, 2· գաղտնի, ականջի տակ եղած խօսակցութիւն
**Փսիկ** – Պզտիկ կատու
**Փօթռում** – Կռիւ, փոթորիկ

## Ք.

**Քա** – Կոչական մասնիկ, զոր սովորաբար կիները կը գործածեն
**Քաղել** – 1· Խոտ կամ պտուղ քաղել, 2· Պղնձեղէն նօսր ամաններու բերանը մուրճով կռել, թանձրացնելու համար
**Քաղքցի** – Քաղաքացի, կրթեալ նշանակող
**Քանոն** – Ընդորմեայ օջախին տակ, իբր պատուանդան դրուած սալաքար
**Քաշուք** – 1· Քաշուած, 2· Կտաւին եզերքէն մկրատով կտրուած երիզ, 3· ջիլ, շիղ (թրք· *սինիր*)
**Քաշկան** – Քաշող, շահաւէտ, շահը փնտռող (առեւտուրի մէջ)

Քար — 1. Քար, 2. խօսք, պատասխան: Քարը ծոցն է = Պատասխանը պատրաստ է

Քարհանկոշտ — Կնճիռն, կղթկապ

Քարղան — Տես, ըմպիկ

Քարաքտվուն — Քայքայուած, քրքրուած, քարուքանդ

Քարմաքուրան — Տես վերի բառը

Քասղել — (Քացախ-իլ) Քացխիլ, թթուիլ

Քարուց — Քարճիկ, թռչունի ստամոքս

Քերոց — Երկաթէ կամ փայտէ սուր գործիք

Քարուք — Արմտեաց քարոտ մասը, զոր ամանի մէջ լեցնելով կը ստկեն, կը մաքրեն

Քաքա — Կղկղանք (մնկ. բառ)

Քեառի — Քեռի, մօրեղբայր

Քենի — Կնկան քոյրը

Քեռքշտալ — Ձգայռիլ, ձգռտիլ

Քերճել — (Ըստ Գ. Խանճեանի *Քերճել*) — Եփած հացը թոնիրէն քաշելու ատեն մէկ մասը թոնիրին փակչիլ

Քերճած, քրդիկ — Հացին քաշուելու ատեն թոնիրին փակած մասը, քերդուկ

Քերուք (քերուկ) — Քերուած, կերակուրին ամանին յատակը մնացածին քերուածը

Քենծ-քանց — Բաղդատական մասնիկ

Քթմտալ — Տես, քինդին տալ

Քէծ — Քած, լկտի, վատաբարոյ (կին)

Քէմէս — Քամոց, պարզուտ, քէվկիր = պարզուտ

Քթուիլ — Գլուխը նայիլ, ոջիլ ստկել

Քինթը (ծռել) — Սրդողիլ, քենոտիլ

Քինթը (փչել) — Դրդել, գրգռել, զայրացնել, տես մուխ տալ

Քինթին (տալ) կամ քինդին չդնել — Ուտելիքին չհաւնիլ, չախորժիլ, ինչպէս կ'ընեն կենդանիները թուշերովնին ետ հրելով

Քինթին տալ — Ձաւարին կամ այլ բաներու մէջէն թեփը զատել ստկելու համար թափուրին եզերքը բերելու գործողութիւնը

Քինթ կախութիւն — Զինքը չսիրողներուն տունը երթալով երկար ատեն նըստիլ կերակուր ուտելու համար

Քիթլէնքիփ — Լիփ-լիք, լեփ լեցուն

Քինծ — Տունկ, որուն հունտը փոշիացնելով կերակուրի երեսը կը ցանեն

Քիրիզմիր — Բաղնեաց մէջ շատ պտըտողներու ոտքին տակը գոյացած կամ քսուած զէշ կաւ, որ ոտքերը սաստիկ կը ցաւցնէ

Քըտօզ — Շատ քիչ, փշուր մը

Քմմել — Լաթը լուալէն ետքը ցամքեցնել, սեղմել

Քումոց — Կռուասէր, անառակ

Քսքսուկ — Հեռուէ հեռու ազգական

Քսուիլ, քսքստուիլ – Սլքտուիլ

Քուլա – 1. Աղնուած բամպակի դէզ, 2. ճերմակ ամպ

Քմմված – Պճնասէր, ինքզինքը փափուկ ներկայացնող:

Քշպել, քշփել – Կշտամբել, ջեխել

Քրզմոտած – Շնորհքը փախած

Քրզմոտիլ – Նիհարնալ, շէնքը շնորհքը փախչիլ

Քրտինք ջրին մէջը մնալ – Տաժանելի աշխատութենէն առատ քրտինք հոսեցնել

Քրզմոտել – Խորշոմիլ, թարշամիլ դէմքի եւ պտուղներու

Քըրփըս – Տես փափուք

Քրդագեղանք – Գիւղեր, որոնց բնակիչները Քիւրտեր են

Քրման – Թէյաման, քարաման, մանելիք

## Օ.

Օգկալ – Ործկալ, զգայոիլ

Օլեր, օլերք – 1. Ոլոր, 2. ոլորուն եւ շեղած ճամբայ

Օլերքը (դառնալ կամ քակուիլ) – Խելայեղ, խելքը ցնորել

Օլորտել – Պտըտիլ, շրջագայել

Օլօռուկ (բոլորուկ) – 1. Ոլոր մոլոր (վայր), 2. կնճռոտ

Օհմել – Ահրնալ, ահաբեկիլ, վախնալ

Օհմօք – 1. Ահռելի, ահաբեկիչ, 2. Երկիւղալի վայր

Օղորմիս (հանել տալ) – Բարեգործութեամբ եւ առաքինութեամբ զինքը եւ իր ննջեցեալները դրուատել եւ գովել տալ

Օղորվիլ (լորողվիլ) – Տեղ մը սեղմուիլ

Օշ – Ուշ, անագան

Օշնել – Օրհնել

Օջիլկեր – Տիզէն կամ ոջիլէն կերուած արմտիք

Օջիլկեր – (Այլաբանօրէն) դժուարիմաց եւ երկդիմի խօսք: Օրինակ, Լափին մէջ *օջիլկեր* կայ

Օռան – Որրան, օրօրոց

Օռք – 1. Կաթսայի, տաշտի կամ այսպիսի բանի մը տակը, գետին զալիք կողմը. 2. Թթով մալէզ եփած ատեն պղինձին փակած թանձր մասը

Օստ – Ոստ, բունին վրայ ճիւղերուն վերջացած տեղը

Օտից – Ոտնաման, օտաց լաթ – ներքնալաթ, վարտիք, օտաց ճամբայ = Բնական կարիք եւ ճեմիշ, օտացվրի մարդ = սպասարկող եւ գռեհիկ (մարդ)

Օտնզնայ – Նոր ոտք ելլող (երախայ)

Օտքը ծանտր – Ծննդաբերութիւնը մօտ եղող (կին)

Օտքը (էրկնցնել) – Արգիլել, խոչընդոտ ըլլալ

Օտք (կոխել) – Դատախազ ըլլալ, իր դատը եւ իրաւունքը պաշտպանել

**Օրդնոտ** — 1. Նենգամիտ, խորամանկ, 2. Որդնակեր, թրթուրէն կերուած (միրգ եւ պտուղ)

**Օրեմոտ** — Որոմոտ, տե՛ս եւ օրդնոտ

**Օրթխտան** — Տե՛ս մէկտեղութիւն

**Օրի՞** — Է՞ր, ինչո՞ւ համար, օր. օրի՞ էկար = ինչո՞ւ եկար

**Օրզնել** — Օրհնել: Օրզնուած ջուր = Օրհնուած ջուր

**Օրհմիլ** — Բանէ մը մէկէն ի մէկ վախնալ, սարսռալ

**Օրնակ** — Օրինակ, ձեւ, կերպ, տեսակ

**Օրմի օրանց** — Օրերէն մէկը, ամենեւին, բնաւ երբեք

**Օրնօրը** կամ **օրնորը** — Ամէն օր, միշտ եւ հանապազ

**Օրսէ** — Որ ըլլայ, օր. Յուօրսէ = Ուր որ ըլլայ

**Օրսկապ** — (Օրօր-ոց-կապ) — Այն մասնաւոր լաթը որ օրրանի վրան կը կապեն երախան չիյնալու համար

**Օրձա** — Տե՛ս չաղաչաղա —

**Օրք** — Ոռք, տակ, յատակ (ամաններու)

**Օրէնքը** (պատռել) — Օրինազանցութիւն, ապօրինութիւն

**Օրողուել** — Պարունակուել, տեղաւորուիլ



## ՄԱՆԿԱԿԱՆ ԼԵԶՈՒ

Աբա — Եղբայր
Ախ (ընել) — Ծեծել
Ամմաճ — Ծեծել
Ա՛յ — Աղբ, աղտեղութիւն
Այ (ընել) — Ապականել
Աղիտաղի — Աչք
Ապու — Ապուր, կերակուր
Ապուճա — Ապուր, կերակուր
Բաթա — Հաց
Բահ — Աղտեղութիւն
Բահ (ընել) — Աղտեղել
Բըս, բըսի — Կատու
Բու — Տգեղ, գէշ
Գըթգըթ — Սիսռուկ
Գըխ — Տգեղ, աղտեղի
Գըխ (ընել) — Աղտեղել
Գլո — Գլուխ
Գլլոր — Օրորոց, օրրան
Ելլոր (օլլոր) ընել — Օրօրել
Թէթ, թէթի, թէթիկ — Ձուք
Լօլօ, լօլօկ — Միրգ եւ պտուղ
Լօլօխ — Անանդամ, ամորձիք
Խօխօ — Ուրուական
Ծըծի, ծըծիկ — Ծիծ, ստինք
Կակա, կական — Ընկոյզ, հաւկիթ
Կզիկ — Անուայ
Կզկզ (ընել) — Խածնել
Կտիկ — Ոչխար
Կրնտիկ — Գլուխ երեցնել
Կնտի կնտի — Գլուխ երերցնել
Կուն, կունա — Գրկել
Համհամ, համմա — Ուտելիք
Համմ (ընել) — Ուտել
Հափհափ — Շուն
Հափ (ընել) — Խածնել
Հացի, հացիկ — Հաց
Հօ՛փ — Ելի՛ր
Հօփ (ընել) — Ելլել, կայնել
Ճէթօ — Ճաթելիք
Ճուն — Անանդամ
Ճըսս — Կրակ
Ճըսս (ընել) — Այրել
Ճունուկ — Թռչուն
Մանի — Պանիր
Նինի — Խաղ
Չըլթ (ընել) — Կոտրել
Ուխ — Քուն
Ուխ (ընել) — Քնանալ
Ո՛ւշ — Զգուշութիւն
Չլթչըթ — Ընկոյզ
Չըլթ (ընել) — Կոտրել
Չըլս — Էշ
Պեխ, պէհ (ընել) — Պահել
Պայ, պանիկ (ընել) — Պառկիլ
Պուա, պում — Ջուր
Պաչ, պաչիկ — Համբոյր
Պաչ, պաչիկ (ընել) — Պագնել
Պէպէ — 1. Պատկեր, 2. Մանկիկ
Պըզ — Մէզ, պզպզ, նոյն
Պըզ (ընել) — Միզել
Պըխ պըխ (ընել) — Մորթել
Պիյ — Վէրք, խոց
Պիյ (ըլլել) — Վիրաւորել
Պիս — Միս
Պնիկ — Կով եւ հորթ
Պուպուկ — 1. Նոր լաթ, 2. Գեղեցիկ
Պուպուշ — 1. Նոր լաթ, 2. Գեղեցիկ
Պուպուկ հացիկ — Նշխար
Ջիշ — Շալակ
Ջիշ (ընել) — Շալկել
Վէվէ — Ուղտ
Տահտահ — Ձի եւ ջորի
Տանկաղ — Ուրուական
Տատախ (ընել) — Քալեցնել
Տըտիկ (ընել) — Նստիլ
Տըթ (ընել) — Փուք արձակել

Տոտիկ, տոտս — Ոտք
Փաթտ (ըլլել) — Իյնալ
Քաքա — Աղբ
Քէքէր — Շաքար
Օխ — Քուն
Օշօ — Շուն
Օճիկ — Ոչիլ
Օտօ — Ոտք

**ԱՐԿՕԴԵԱՆ ԲԱՌԲԱՌ**

Ազին թեթեւ — Ուլ
Ազին ծանտր — Գառն
Ակոռ — Հաց
Ակոռ կարդալ — Հաց ուտել
Ակօն տուն չիկայ — Ապուշ է
Արդար ակոռ — Ցորենի հաց
Արճին — Հրացան
Պզտիկ արճին — Ատրճանակ
Աչէն — Պարկ
Մանծաչէն — Խուրձ
Առջեւի փէշը կարճցեր է — Ծնանելը մօտ է
Բերանը վար — Շլխտի
Բերնհամ — Աղ
Բուրդ աղնող — Լպուտ
Բռնուած — Պղծուած (կին)
Գիր տվող — Դէնպետ
Գլօղ աճլող — Սափրիչ
Գլխնոց — Գլխարկ
Գլօխ ծեծք — Աղօթք
Դանկի կըյրած — Պանիր
Դերձան — Հեռագիր
Դերձան — Կատէյիփ
Եղ էրթաք — Գողութիւն
Ըրկաթ ծեծող — Երկաթագործ
Թեւը ծուռ — Ձեռնըծել
Թեւը նախշուն — Մահտեսի
Թումպ — Փիլաւ
Ճերմակ թումպ — Բրինձէ փիլաւ
Լեզուն ծուռ — Կակազ
Ծակ էրկաթ — Հրացան
Ծեծ — Պատերազմ
Ծաղկի ծէր — Վարունգ
Կլոր — Քիւֆթէ
Կլորուկ — Ոսկի
Կարմիր — Ոսկի
Կարմրուկ — Ոսկի
Կարդացող — 1. Թուրք խանմ, 2. էշ, աւանակ
Կեառ — Քիւրտ, գիւղացի
Կով — Կին
Կովմէզվեր — Տիկին
Կեղեւ — Լաթին աստառը
Կնեպ — Լաթին աստառը
Կոնակը կարէ՛ — Ուշադիր եղիր, զգուշութիւն
Կեր, կրծուք — Կաշառ
Կսկիծ — Սապոն, սոխ եւն.
Կտաւի վրէ քաշված — Պաստեղ
Հալեկիք — Իւղ
Հատ — Արմտիք
Արդար հատ — Ցորեն
Զանտտած — Ընկոյզ
Զառքը ծուռ — Գող
Ճանչ կայ — Զգուշութիւն ներկաներուն մէջ օտար մարդ կայ
Ճերմակ — Արծաթ մէճիտ
Ճերմակ ջօռ — Օղի
Ճերմակ փաթտոց — Խօնա
Ճնչան — Աքաղաղ
Մուխ — Ծխախոտ
Մուխ ծախող — Ծխավաճառ
Մուխ քանող — Մաքսանենգ
Մազ — Կառավարիչ
Մանծմազ — Կուսակալ
Մաղըս ծակ է — Մեր լեզուէն գիտէ
Միս մըռթող — Մսագործ
Մօրուքը — Մօրուք ունեցողը
Նօսր մօրուքը — Քարձը

Նօսուր — Թանապուր

Նեղլաք — Ջինուոր

Ներկ ներկող — Ներկարար

Ներքեւ մէյնելիք — Կապերտ

Ներքնակ — 1· Կին, 2· Երիվար

Շէնք շինող — Վարպետ

Պառկելիք — Անկողին

Պատ պատող — Որմնադիր

Պիղատոս — Դատաւոր

Սեւագլօխ — Վարդապետ

Սէփէթը բամպակ չիկայ — Անխելք, ապուշ է

Սեւջօռ — Սուրն

Վազան — 1· Սուրհանդակ, 2· ոջիլ

Վրանող — Վերմակ

Վօնեց — Վարտիկ

Վէզ — Ուխտավայր եւ ուխտաւոր Տանկաց

Տախտակը պակաս — Ապուշ

Տախտակը նօսր — Ապուշ

Տաքտուն — Բաղնիք

Տափակ — Հաց

Փէտ բռնող — Ոստիկան

Փչոց, փչելիք — Փող, շեփոր

Փէտ բերող — Փայտբեր ծառայ

Քաշոց — Խմիչք

Օսկեր — Կաշառ

Օսկեր կրծող — Կաշառակեր

Օսպը քարոտ է — Մեր լեզուէն գիտէ:

Ոտիցս ծակ է — Նոյն

Ոտից կարող — Կօշկակար

Քաղցր — Բուպ, մեղր, շաքար

Քարէ ծառ — Մինարէ

Քշկուր ծխել — Մխիթարանք

Քսոց — Նուագարան

## ՀԱՅԵՐԷՆԷ ՓՈԽԱՌՈՒԱԾ ԲԱՌԵՐ ԹՈՒՐՔԵՐԷՆԻ ՄԷՋ

*Ինչպէս յայտնի է, ունեցած ենք Թուրքիոյ մէջ, մանաւանդ անոր արեւմտեան մասերուն մէջ Թրքախօս գաւառներ, հետեւանք Թրքական բռնութեան (տես* ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ*, էջ* 1618—1619)*, որ կը սպառնար «Հայերէնախօս» լեզուները ծայրատել:*

*Բաբգէն կաթողիկոս (տես* ՏԱԹԵՒ *Տարեցոյց*, 1929, *էջ* 7) *կ՚ըսէ թէ* «Բարբարոսութիւնը գործադրուած է մանաւանդ Եէնիչէրիներու շրջակայ քաղաքներու մէջ, իսկ գաւառներուն ալ կեդրոններուն եւ ոչ թէ շըրջանին եւ գաւառներու մէջ, իսկ գաւառներուն ալ կեդրոններուն եւ ոչ թէ շըրջակայ գիւղերու մէջ: Այս է պատճառը, որ, զոր օրինակ, երբ Պրուսա, Էնկիւրիւ, Գայսէրի,Եոզկատ, եւ Կիլիկիոյ մէջ Ատանա, Այնթապ եւայլն, Թրքախօս են եղած, իրենց շրջակայքը գտնուող գիւղերը չեն մոռցած իրենց մայրենի լեզուն»:

*Այս երեւոյթը Բաբգէն կաթողիկոս կը բացատրէ (տես նոյն եւ* ՀԱՅ ԿԵՍԱՐԻԱ*, էջ* 1619)*, սակայն զարմանալի է որ բացառաբար մի քանի կեդրոն քաղաքներ, ինչպէս Սեբաստիա, Եւդոկիա եւ Մալաթիա մնացած են հայերէնախօս, եւ նոյնիսկ իրենց Թուրք դրացիներու լեզուին տուած են հայերէն բառեր:*

*Այսպէս Մալաթիոյ Թիւրքերը կը գործածէին հետեւեալ հայերէն բառերը, ըստ Կարապետ քհնյ· Պէննէեանի:*

| Տեղական | Հայերէն | Թուրքերէն |
| --- | --- | --- |
| Ալխօռ | Ալխոռ | Ալխըռ, ախուռ |
| Աճուկ | Ցայլք | Էճիւկ = Գաւըգ |
| Անաճ | Ան-աճ | Անաճ = խըրթ պէօյիւք |
| Անասում | Անասուն | Անասըն = մասըմ |
| Անըսօն | Անիսօն | Անըսըն |
| Աննուղ | Անանուխ | Աննըխ = նանէ |
| Առաստաղ | Արաստաղ | Առըստագ |
| Ափուռափուր | Աքեղցքեղ | Աքուրսըքքուր |
| Ալուճ | Ալոճ | Ալըճ = ճապան էլմասը |
| Ատամ | Ատամն | Ատամ = տիշլի |
| | | |
| Բալավար | Բարավար | Բէրէվեր = իւստէշեկ |
| Բաղլայ | Բաղլայ | Փագլա |
| Բակ | Բակ | Բէկ = հավլու |
| Բռինձ | Բրինձ | Բիրինճ |
| Բէօչիւկ | Պոչ-պոչուկ | Բէօչիւկ = գույրուք, էնքսէ |
| Բիւճ | Փուճ | Փեաճ = Պօղ, չիւրիւկ գօղ |
| Բօն, բէօն | Բոյն | Բին = քէօմէս |
| Բսար | Կեղեւ | Բիր = քապուգ |
| Բերքեր | Փրփրեմ | Բերքերիմ = սէմիզօթու |
| | | |
| Գոզվար | Գործ-վար | Քէօզպէր, վէր |
| Գոմ | Գոմ | Քէօմ = աղըլ |
| Գրաւ | Գրաւ | Կրաւ, կիրավ = րէհին |
| | | |
| Դղասկան | Տղաձգան | Թղէսկէն= նէվզատէ վալետէսի |
| Դարտակ | Դարտակ | Թէրտէկ = գամըշ |
| | | |
| Զինտան | Զնդան | Զինտան |
| Զօղնայ | Սօղնակ | Զօղնա, զողնիկա |
| | | |
| Էկիշ | Ակիշ | Էկիշ: էյիշա = *աթէշ քիւրէյի* |
| | | |
| Թափ | Թափ | Թափ = խըզ, հիւճմ |
| Թափոն | Թափան | Թափոն = թառլա տըրնաղը |
| Թէթիկ | Թաթիկ, բլթակ | Թէթիկ = մէմէ |
| Թօռ | Թոռն | Թոռուն |
| Թօռթօռ | Թրթուր | Թօրթօր, թըրթըր |
| Թումպ | Թումբ | Թումպ = պէնտ |

| | | |
|---|---|---|
| Ժամկոչ | Ժամակոչ | Զանկէօզ |
| Լողքօր | Լող, դուղօն | Լող |
| Լողտուր | Լող-տար | Լողտուր (աղաճը) |
| Լողփէտ | Լող-փայտ | Լող (քէշ) |
| | | |
| Խազ | Գիծ (Գլխու մազին) | Խազ = զըզըգ |
| Խաշիլ | Խաշիլ (Խօշել) | Խաշիլ |
| Խառմախօռ | Խառնիխուռն | Խարմախոր = գարմագարըշ |
| Խննիք | Խլինք | Խըննէք = Սիւմիւք |
| Խոզան | Խոզան | Խօզան |
| Խուրճ | Քուրձ | Խուրճ, չուալ |
| Խրզար | Խիզար | Խըրզար = պըչքը |
| | | |
| Կէպէն | Կապան | Կապան, կէպէն, կէվէն |
| Կապալ | Հապալ | Կապալ, կապալըը |
| Կավառ | Կաւառ | Կավար, կէվէր = պէնտ |
| | | |
| Հատիկ | Հատ-իկ | Հէտիկ = պուլղուր |
| Հեծան | Հեծան | Հեզան = Տերէք |
| Հետիկ | Հետիկ | Հետիկ |
| Հերիկ | Հերկ | Հերիկ, հերկ |
| Հիմ | Հիմ, հիմն | Հիմ = Թէմէլ |
| Հէվէնկ | Հէվիանք | Հէվէնկ |
| | | |
| Ճանեղ | Ժաժիկ | Ճանըղ |
| Ճաղ | Վանդակ | Ճաղիկ |
| Ճար | Ճար | Ճար = չարէ |
| Ճեղ | Ճիւղ, ճղալ | Ճըղա = տալ |
| Ճրդօն | Ջրհորդան | Ջօռթուն |
| Ճլպան | Ջրպան | Ճլպան |
| Ճռասոն | Ծուռ-ա-սիւն | Ճրասըն |
| Ճինի, ճնի | Ճնի | Ճինի = պէօնէկ, գուրտ |
| | | |
| Մազման | Մազման | Մազմանա = մուքաֆ |
| Մարդակ | Մարդակ | Մէրդէկ = տէրէկ |
| Մանանա | Մանանա | Մանանա = գուրրէթ հելվասը |
| Մանուղ | Մանուկ | Մանըղ = փեսիկ |
| | | |
| Նաճար | Նաճար | Նաճար |
| Նոխըր | Նախիր | Նախըռ = հարկէլէ |
| Նիշան | Նշան | Նըշան, նիշան |

| | | |
|---|---|---|
| Շողառ | Շողառ | Շօղար |
| Շիշէկ | Շիշակ | Շիշէ = տիշի գուզու |
| Շիւ | Շրուանդ , շէն | Շիվ = ճիպրէ , իւզիւմ չէօփիւ |
| Շիրէս | Շրէց , շրես , շրել | Չերիշ |
| Շալակ | Շալակ | Շէլէկ |
| Շիւան | Շիւանակ | Շիւան = եաս , փուս |
| Շողուկ | Շողիկ | Շօղուք = շօրեաք |
| Չէն | Չէչ | Չէն = կէօմէն |
| Պար | Պար , բորբոս | Պար = քիւֆ , փաս |
| Պատըփան | Պատուհան | Պատըփան = բէնճէրէ |
| Ջլտըրմ | Ջրկոտեմ | Ջրլտըրըմ = սութէրէսի |
| Ջախջախ | Ջախջախ | Չախչախ = խուրտուխաշ |
| Սէրբէնէ | Սարփինայ | Սէրբէնէ = սամա չարտաղը |
| Սանտ | Սանդ | Սէնտ = հաւան , սօգու |
| Սալքար | Սալ , սալաքար | Սալ |
| Սատուռ | Սակուր | Սաթըր = փալա |
| Սամի | Սամի , սամիք | Սամի = պօյունտուրուզ |
| Սամմիթ | Սամիթ | Սամութ = բէզէնէ |
| Սաւ | Յաւ | Սաւ = խասթէլիք |
| Վանք | Վանք | Վէնք = մանասթըր |
| Վա՛յ | Վա՛յ | Վա՛յ = հայըֆ |
| Տապաս | Տապաս , տէնդ | Տապաս |
| Յիք | Յու–իք , ձուիկ | Սիւիք |
| Փեթակ | Փեթակ | Փեթէկ = առը գովանը |
| Փուր | Փուր | Փուռ = այչը |
| Փողրանկ | Փողրակ | Բէօհրէնկ = Օլուզ |
| Փոս | Փոս , հոր | Բէօս = Գույու |
| Քէպէ | Կապա | Քէպէ |
| Քէօշկէր | Կօշկակար | Քէօշկէր = ճիզմէճի |
| Քէմիս | Քամիչ , քամոց | Քէմինէ = Սիւզկէճ |

## Գ.

# ՆԻՍՏ ՈՒ ԿԱՑ

## Ա.

## ՏՈՒՆ ՏԵՂ

*Մալաթիա, թէեւ հին քաղաք մըն է, կամ աւելի ճիշդ հին պատմութեան ծանօթ է այս անունով քաղաք մը, սակայն արդի Մալաթիան շատ նոր քաղաք մըն է, ինչպէս տեսնուեցաւ, հազիւ 110–120 տարի առաջ հաստատուած է արդի քաղաքը, վասնզի հին քաղաքին բնակիչները հարկադրուած են իրենց քաղաքէն փոխադրուիլ հիմակուան քաղաքը եւ հոն հաստատուիլ:*

*Այս փոխադրութիւնը պատճառ եղած է որ նոր քաղաքը շինուի նոր ճարտարապետութեամբ:*

*Ինչպէս ծանօթ է, Թուրքիոյ մէջ հին ատեն քրիստոնեաները իսլամական կեղեքումներէ զերծ մնալու համար միշտ ծածկուած ապրած են ըստ հնօրեայ առածին որ կ՚ըսէր* ԶԷՆՊԻԼ, ԻՉԻՆՏԷՔԻՆԻ ՍԷՆ ՊԻԼ *(զամբիւղ, մէջինը դուն գիտցիր):*

*Ասիկա նշանաբան մը եղած է մեր նախնիքներուն, որոնք իսլամին նախանձը եւ ընչաքաղցութիւը չգրգռելու համար շատ զգուշութիւններ ըրած են եւ փառաւոր տուներու մէջ բնակիլը վտանգաւոր նկատած: Այն քաղաքներուն մէջ, ուր իսլամները աւելի մոլեռանդ եւ կատաղի էին, Հայերու բնակարանները նոյնիսկ փողոցի վրայ նայող պատուհաններ չունէին, այլ բակի մը վրայ կը բացուէին տան սենեակները, ինչպէս Կեսարիոյ մէջ* (ՊԱՏՄ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, *էջ* 1672–1677):

*Հին Մալաթիոյ մէջ ալ թերեւս այս տեսակ տուներ գոյութիւն ունէին, սակայն նոր քաղաքը, որ հիմնուած էր Ենիչէրիներու ջնջուելէն* (1826) *եւ* ԹԱՆԶԻՄԱԹ*ի հրատարակութենէն* (1839) *ետքը, քրիստոնեաներու աւելի ազատ ու համարձակ կեանք մը ունենալու պատրանքը տուած մէկ պահուն, հետեւաբար հին ծածկուած ու թաքնուած ապրելու համար չէին շինուած, խորհելով թէ երկիւղով եւ զգուշութեամբ ապրելու օրերը անցած էին:*

*Անկէ զատ երկրորդ պատճառ մըն ալ կար: Նոր քաղաքը փոխադրուած էր հին քաղաքին այգիներուն վայրը, ուր քաղաքացիք ամառը կ՚անցընէին քաղաքէն եւ անոր իսլամ բնակչութեան աչքէն հեռու, շատ թեթեւ շինուած եւ կէս մը բացօթեայ տուներու մէջ, որոնք կորիզը կազմեցին նոր քաղաքին:*

*Այս պատճառով մինչեւ 1870ական թուականները շինուած տուները միայարկ եւ գեղջկական խրճիթներու ձեւն ու նմանութիւնը ունէին, բայց անկէ ետքը շինուածներուն բոլորն ալ արդի ճաշակի համեմատ եւ գլխաւոր*

*քաղաքներու չէնքերուն նման բարեփոխեալ, գեղեցիկ, երկյարկ եւ հոյակապ են:*

*Իւրաքանչիւր ընտանիք իր անհատական տունն ունէր, պարտէզով մը, մէկ եւ երկու յարկ աղիւսով եւ քարտիլ եւ կամ կաղնեփայտով շինուած: Ամէն տան մէջ կար սահուն խմելու ջուր աղբիւրով մը քարափոր* (Նոր Մալաթիա, *Գ. տարի, Թ. 2, էջ* 13):

*Յակոբ Պէննէեան կը գրէ թէ* «Մալաթիոյ Հայոց տուները ընդհանրապէս բազմասենեակ չըլլալով, միայն մին թէ՛ հիւրանոցի, թէ՛ ննջարանի եւ թէ՛ խոհանոցի տեղ կը ծառայէ, վառարանի մէջ փայտը լեցուն է, այնպէս որ կրակի բոցը չափէն աւելի կը սողոսկի բուխերիկին մէջ, տանտիկինը խոհարարի պաշտօնն ալ կը վարէ, տապակով իւղ հալած միջոցին ճազ–ճիւզ ձայներ կ'ելլեն, խնամին անուշեղէններ կ'եփէ» (Բիւրակն, 1899, *էջ* 120–121):

*Իսկ Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան իր ընդարձակ անտիպ Մալաթիոյ տեղագրութեան մէջ, ունի հատուած մը* «Բնակարան եւ կարասի» *խորագրով, ուր սապէս կ'արտայայտուի.*

«Արդէն վերը ըսինք թէ, Մալաթիոյ վերջին փոփոխութիւնը կամ փոխադրութիւնները 19րդ դարուն վերջին երեք քառորդի սկիզբը եղած է եւ արդի տեղւոյն շէնքերը անշուք եւ հասարակ խրճիթներ էին, բայց անոնց յաջորդած է շքաւոր (եթէ կրնայ ըսուիլ) եւ փառաւոր տուներ: Առաջինները քիչ ծածքով եւ միայարկ, իսկ հիմա՝ բազմածածկ եւ գոնէ երկյարկ: Տուները բոլորն ալ ունին յարակից ընդարձակ պարտէզներ, ցանկապատ եւ լայն գաւիթներ որմափակ: Գաւիթները սալայատակուած են, տանիքները ընդհանրապէս հողով ծածկուած են՝ ՇԻՐԵ փռել եւ պաշար չորցնելու համար: Կղմինտրով ծածկելու ընդհանրացումը 10–20 տարիներ հազիւ եղած է:[1]

Ամէն տուն, ինչպէս աղբիւր, նոյնպէս նեմիշ ունենալով զարշահոտութենէ եւ անմաքրութենէ զերծ է:

Տան յարկերուն գլխաւոր մասը կ'ըսուի «ձմռան տուն», հոդ է ընդորմեայ վառարան–օջախը: Ահա այս է շատերուն խոհանոցը, սեղանատունը, ննջարանը եւայլն: Արդ ճաշի ժամանակ, երբ կերակուրը եփուի, անմիջապէս սեղան լարելով՝ եթէ նոր հարս չկենայ, ընտանեաց բոլոր անդամները կը բոլորէն զայն ու կը ճաշեն, իսկ եթէ հարս ալ կայ, այր մարդիկը կշտանալէ յետոյ, սեղանը քիչ մը անդին տանելով, մօր համասեռները ալ կը նըստին սուս բուս:

Տան միւս ծածքերը կ'անուանեն, վարի ՍԷՖԻՒ, վերի ՍԷՖԻՒ, մէջ գետինք, խզէն, փէտտուն, յերդնոց, ախոռ, վլասքի եւ թոնիրի ԷՕՐԹՄԷ, բուն, տուն եւն.:

Տան կահ կարասին, սպասն ու կազմածը զատէն հաստատուն զգրոց, դարակ, թառ եւն.ը պատշաճապէս շինուած են: Տան մէջ կը գտնուի լաթի

(1) *Գրութեան թուականը 1912 ըլլալով՝ ըսել կ'ուզէ թէ 1890–1900 թուականներէն սկսած է կղմինտրի գործածութիւնը:*

եւ պտուղի համար խոշոր սնտուկներ: Պաշարի համար մասնաւոր տախտակէ շինուած ամպար, նոյնպէս թրծուն եւ հում կարասներ, բղրուկներ: Կարասներու հումը, ինչպէս նաեւ կրակարան եւ տոտիկ կիները իլիկ կը պատրաստեն փայտէ խոշոր ու մանր տուփեր, մաղքը իրենց տեսակովը, պղնձեղէն ամաններ, կաթսայ, կռնֆ, սան եւ ափսէ եւն.:

Աթոռ եւ ՍԷՏԻՐ շատ քիչ տուներու մէջ կան, բայց սփռոցներ, անկողին, գորգ, կապերտ ամէն տուն առատօրէն: Անկողինները սուղ եւ գովելի են: Անկողիններու, ինչպէս նաեւ մահճին եւ բարձին ու ՄԻՆՏԷՐԻՆ (բազմոց) երեսներն աղանկար են ընդհանրապէս: Անկողնոյ մը ՆԱԽՇԸ պատրաստելու համար հայ կինը 6 ամիս շարունակ ասեղ զարնելու է: Ձեռք մը անկողինը, իր կազմածքով հազիւ հինգհարիւր ղրուշի կը շինուի:

Տան կահուց ու կարասեաց մեծ մասը պղինձէ են: Ամէն տուն առնուազըն 100 օխա պղինձէ *սահան* ունէին» (հմմտ. Պէննէեան քհնյ., *Համառօտ*, էջ, 190):

Բ.

# ՀԱԳՈՒՍՏ—ԿԱՊՈՒՍՏ

*Քրիստոնեայք Թուրք իշխանութեան տակ հին ատեն ազատութիւն չունէին իրենց ուզած հագուստը հագնելու: Սուլթանները խիստ հրամաններ արձակած եւ սահմանած էին ոչ-իսլամներու տարազները, որոնք անպայման պէտք էր զանազանուէին մահմեդականներու հագուստ-կապուստէն:*

*Այս ծայրայեղ խստութիւնները, որոնք մինչեւ 1826 տեւած էն, 1839-էն եւ 1856էն ետքը հետզհետէ մեղմացան եւ ոչ-իսլամներն ալ սկսան քիչ-չատ ազատութիւն գտնել, գոնէ հագուստ-կապուստի համար, սակայն կանայք թէ' Թուրք եւ թէ հայ խիստ ՆԱՄԷՀՐԱՆՈՒՄ կը պահէին գրեթէ մինչեւ Համաշխարհային Ա. պատերազմ եւ ծածկեալ եւ անտեսանելի էին:*

*Իսկ այրերու զգեստը տեղական կապոյտ կտաւէ զպուն եւ ասուիէ վերարկու էր ընդհանրապէս: Շամի եւ Հալէպի կերպասներն ալ կը հագնէին, ամէնքն ալ պճղնաւոր: Մալաթիոյ մէջ եւրոպական զգեստը չէր ընդհանրացած դարուս սկիզբը: Միայն պաշտօնակալները եւ հարուստներն կը հագնէին զայն:*

*Առհասարակ այրերը կը հագնէին երկար ԷՆԹԱՐԻ (զպուն), բաճկոն (կարճ էնթարի), բաց կռնակ* (ելէկ, գօլըզ), *Թիկնոց* (միլթան *կամ* ճէմթան) *եւ ոմանք վերարկու (հմմտ. Պէննէեան քհնյ.*, Համառօտ, *էջ* 194):

*Կանանց զգեստը, բացի շապիկէն եւ շալվարներէն էրիկ մարդոց յար եւ նման է: Անոնց շապիկը ընդհանրապէս կա'մ կարմիր կա'մ կապոյտ է, որոնց երկայնութիւնը մինչեւ իր ճղերը կ'իջնէին, իսկ շալվարները զանազան տեսակ մանիսայէ, կերպասէ եւ սնդուսէ կ'ըլլային:*

*կանայք իրենց չալիկներուն առջեւը եռանկիւն ասեղնանկար մը կը բանին բազմերանգ թելերով, զոր հազիւ 4—5 ամիսէն կը լրացնէին (Նոյն, էջ 194)։ Կանայք իրենց գլուխը կը կրեն լոկ ֆէս, ֆէսին չուրջը սեւ եազմա եւ գագաթը ոէփէլեք ըսուած արծաթեայ եւ ոսկեայ զմրեթաւոր եւ ականա- կուռ թիթեղ մը կը կարեն, որոնց վրան ալ կը ձգեն կարապետ խզի կամ տե- ղական տոլաղ* (եազմա) (*Պէննէեան* Համառօտ, *էջ 195*)։

*Այս ընդհանուր հագուստ-կապուստէն կը տարբերէր միայն հարսերու եւ նոր փեսաներու հագուստ-կապուստը, զոր նկարագրած է Ա. Եաղուպեան սապէս․*

«Մազերը ճակատի մէջտեղէն երկու մասի բաժնելով, կարգ-կարգ հիւսուած դէպի ետ եւ արծաթ զարդեղէն եւ զարդոսկիով կախուած էր, նր- շանտուքի եւ խնամիտեսի երթալու ատեն ընծայ տարուած զարդոսկինները մասնայատուկ լաթի մը վրայ կարուած ճակատէն կ'երկարէին աջ ու ձախ ուղղութեամբ մինչեւ ականջները եւ վար կ'իջնէին կզակին երկարութեամբ, որոնք հարսին անհատական ստացուածքն էին եւ էին անձեռնմխելի։

«Հարսանութեան հագուստը մետաքսեայ՝ խարբերդ քաղաքի խօսքով Քիւրքճեանի մետաքսի գործատունը շինուած, գոց կապոյտ, կարմիր, կա- նանչ գծաւոր էր։

«Թեւերը եւ կուրծքը գոց մինչեւ ոտքի աշուղները երկայն, մէջքը կը կապէր, նաշխուն պարսկական ձեռնահիւս գօտի, ասոնց վրայ կար եւ ՋՈԽ- ԽԱ ՄԻԼԹԱՆ, բանուածքով, կ'երկարէր մինչեւ գօտին։ Այս հագուստները միայն այցելութեան ատեն կը գործածուէին, իսկ ներքնազգեստները փա- փուկ քթանէ շինուած հօր տունէն կը բերէր եւ կը կոչէին ԾԵՀԵՋ։

«Իսկ նոր փեսան կը հագնէր Հալէպէն ներածուած մետաքս, կարմիր եւ ճերմակ գծաւոր ՋՈՒՊՈՒՆ։ Նա եւս կը կապէր գօտի եւ կը հագնէր առանց բանուածքի չուխա ՄԻԼԹԱՆ»։

*Գալով տղայոց՝ ընդհանրապէս չալիկ թէ վարտիկ կապոյտ կ'ըլլային։*

*Հին ատեն երբ դեռ մանիսան մուտք գտած չէր Մալաթիա, զղուները առհասարակ տեղական սեւ կտաւէ կը պատրաստուէին։*

*Սակայն մանիսան մուտք գործելէ ետք՝ տեղական կտաւէ զղուոնը բոլորովին գործածութենէ ղադրած էր։*

*Հագուստներէն էնթարին ու թիկնոցը տարուան մէջ մէյ մէկ, իսկ ճեր- մակեղէնները երեք չորսական ձեռք կը շինէին։*

*Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան իր ընդարձակ անտիպ գործին մէջ* «Զգեստ եւ Զարդ» *խորագիրով տեղական հագուստ-կապուստին մասին սա տեղեկութիւնները կու տայ․*

«Մելիտինեցի հայ կնոջ հագուստ-կապուստը չէ այնքան աչքառու եւ հրապուրիչ։ 30—40 տարի առաջուան[1] սովորութեամբ նէ կը հագուէր, ՉԷՎԻՏ ՋՊՈՒՆ, այսինքն կապոյտ ներկուած տեղական կտաւէ առաջքը ճեղ-

(1) *Այսինքն՝ 1870—1880 թուականներուն։*

քուած եռաքղանցք երկար ԷՆԹԱՐԻ, որուն, ընդհանրապէս եզերքը կամ շուրջը ԿԱՅԹԷՆ քաշուած ըլլալու է: Ասիկա սնդուսէ, կերպասէ եւ ԱԼԱՃԱ ալ կ'ըլլայ: Ասոր տակէն միեւնոյն նիւթերէն էնթարի բոււած կարճ բանկոնը, իսկ վրան եթէ հարս կամ մանկամարդ կին է, ՍՐՄԱԼԻ, իսկ եթէ մեծ ու պառաւ՝ պարզ միլթան կը հագուի: Գուլպան մինակ ցուրտ եղանակի մէջ կը հագնի, կամ տեղ մը երթալու պարագային: Եթէ ոչ ոտքը միշտ բոպիկ է: Իբր ոտնաման ունի տեղական կօշիկ (դեղին ու կարմիր կամ սեւ), ԲԱՊՈՒՃ (մուճակ) եւ թացուտ, ցեխոտ օրերուն ԽԱՓԽԱՓ (փայտէ ոտնաման): Գլուխը ունի փէս մը՝ վրան տէփէլէկ բոււած արծաթեայ զմբեթարդ զարդը եւ փէսին եզերքը եազմա մը կապուած ու տակը ԿԸՏԸԽ մը կարած է, որ եթէ օղակ դունչին տակէն կ'անցընէ որ գլուխէն չելլէ: Իբր զարդ գլխուն առաջնակողմը մինչեւ քունքերը երկարող 7—8 սանթիմ լայնութեամբ արծաթապատ ԳԱՊԱՐԱՆ եւ ականջներուն առջեւը ուլունքնազարդ եռանկիւնաձեւ ՇՂՊԷՔը: Գլուխը կը ծածկէ սակայն տունէն ներս եազմա կամ ՏՕԼԱԽ, որ ԿԱՐՈՒՐՑ ԵԼԷ կամ ԱԼՄԱԼը անուններով ծանօթ են: (Հիմա ընդհանրապէս ԱԿՆԱՅ եազմա կամ տօլաղ է: Իսկ դուրսը՝ հարսնիք, քաղնիք, եկեղեցի եւն. տեղեր երթալու ատեն ճերմակ սաւան (եւրոպական ԽԱՍԱ): Մէջքը կը կապուի պարսկական եւ Լահորի ցփսէ ծայրերն ու եզերքը ՍԱՉԱԳԼԸ կապով: Կանանց ճերմակեղէններն (շապիկ, շապընկեր) նոյնպէս տեղական կտաւէ է, կարմիր ու կապոյտ ներկուած: Շապիկը, որ բեհեզէ եւ ճերմակ եղած ըլլայ, գոգը կը նկարեն զունաւոր մետաքսէ թելերով սուր եռանկիւնաձեւ մը կամ քղանցքներուն եզերքը երկարացէք ՆԱԽՇ մը, իբր զարդ հարսները ծամակալ մը կը կրեն իրենց մէջքին վրայ, որ մետաքսաթել ծոպերուն գլուխը արծաթեայ կոթուններ ունի: Նոյնպէս կանացի զարդեր են արծաթեայ ԲԷՇՎԱՆԴԻՆ ու Համայլին, որոնց տակէն ոսկի կամ արծաթ մանր դրամներ կախուած են:

«Հին տարիներու մէջ կիները կը դնէին արծաթեայ կամ պղնձեայ ԳԸՏԱԿԸ իրենց գլուխը, որ պարզ թագի մը ձեւն ունի: Նոյնպէս թեւերնին ԹԵԻՆՈՑ ու ոտքերնին ԽԱԼԽԱԼ: Բայց հիմա կանացի լաթերուն (զգեստ) նիւթը եւ տեսակն ու ձեւը փոխուած է բոլորովին: Հին ատեններ երբ մէկը շրջազգեստ հագներ, իբրեւ բոզ կը համբաւուէր, մինչդեռ վերջերս գրեթէ ընդհանրացած բան մ'է այն: Հիմա սաւանին յաջորդած է եւրոպական շալը, մուճակին յաջորդած է ԳՈՒՆՏՈՒՐԱՆ իր ամէն տեսակովը: Մելիտինեցի կինը իր ձեռքի մատներն մատանիներով, պարանոցը մանեակով զարդարեյուն պէս՝ ականջներն ալ կ'անցնէ արծաթ եւ ոսկի օղեր, այս վերջինները բարեփոխուած են՝ յարգանքի մինակ «Հալպու օղ»ին տալով: Զմռռնանք կանանց աւանդական կապան, որ հարսնութեան առաջին լաթն է եւ զոր բականաց... ցատրելու համար դարուս ՔԻԻՐՏ կնոջ տարազը տեսնելու պէտք կայ:

Մալաթիացի էրիկ մարդուն (արական սեռին) տարազն ալ բաւական մօտ է գեղեցիկ սեռինին: Կը տարբերի ճերմակեղէնը· գլուխը եւ ոտնամանը, ձեւով ու գոյնով: Մալաթիացի արդի երիտասարդը 80°/°ը գլուխը կը ծածկէ կարմիր փէսով մը եւ բիւսկիւլին վրայէն կը կապէ սեւ ու ՄՈՌ ծաղկեայ

եազման: Ոտքը կ'անցընէ ամառը սեւ ու կարմիր ԿԷՕԶԻՒՔԼԷ ԵԷՄԷՆԻՆ, եւ ձմեռը ԿՈՒՆՏՈՒՐԱ:

Միլթան վերարկու ընկերակցութեամբ կը ծածկեն ենթական: Եւրոպական զգեստը պաշտօնական մարմիններն ու իրենց լեզուով «Թանզտոս»-ները, զարգացեալ դասակարգը կը հագնի միայն, հասարակութեան հագածը սակայն սովորաբար երկար էնթարին, անկապ պնդուկնքով վարտիկը[1] եւ անթեզանիք շապիկն է[2]: Մէջքերնին կը կապեն շալ[3] եւ քէմէր գօտի (տեղական): Իբրեւ զգեստի նիւթ, ներկայիս մէջ են շատ գործածուածը Մանուսաեւ տպանոց է: Տարազի եւ նիւթի տեսակները հիմա շատ եւ շուտ կը փոխուին»:

*Մալաթիոյ մէջ ընդհանրացած էր ծոպաւոր ֆէսը, որ տիրող էր: Ծերունիները ֆէսը իր բնական ձեւովը կը դնէին եւ հաստկեկ ծոպ մը կը կախէին եւ ոմանք վրան եազմա, ոմանք ալ սեւ չղարչ* (փոշու) *կը կապէին* (*Հմմտ. Պէնէեան*, Համառօտ, *էջ* 194):

*Ոտնամաններու մասին աւելի մանրամասնուած կը խօսի Ա. Եաղուպեան* (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. *տարի*, *Թ.* 2), *որ հոս մէջ կը բերենք, աւելի գաղափար մը տալու համար*·

«Ամառուան եղանակին կը գործածէին տեղական կամ Այնթապէն ներածուած կարմիր կամ սեւ կաշիէ ոտնամաններ, կը կոչուէր ԵԷՄԷՆԻ· իսկ ձմրան Սեբաստիայէն բերուած տոկուն կօշիկներ, որ սեւ եւ աժան էին եւ զոր կը կոչէին ԳՈՒՆՏՈՒՐԱ· տեղական պատրաստուածները փափուկ եւ աւելի սուղ էին, քիչ թէ շատ բարեկեցիկները կրկնակօշիկներ կը հագնէին, որ Թուրքերու մէջ ընդհանրացած էր:

Կակուղ կաշիէ, այսինքն ոչխարի կամ այծի մորթէ պատրաստուած սեւ գոյնով ՄԵՍՏ կոչուած ոտքի հագնելիք մը եւս կար, որ կ'երկարէր աշուղներէն երկու մատնալայն վեր: Արք եւ կանայք կանոնաւորապէս կը հագնէին տունին մէջ: Տունի շէմքէն դուրս պարտէզ բնական պէտքի կամ ջուր բերելու համար ունէին ԽԱՊԽԱՊ կոչուած փայտաշէն չորսէն եօթ մատնալայնք բարձրութեամբ ոտնաման մը եւ որ դիւրագործածելի էր:

Գուլպաները սովորաբար կարճ, գունաւոր եւ ծաղկաւոր էին: Հաստ ճերմակ բուրդէ գուլպաներ Թրքուհիք կը պատրաստէին եւ խիստ աժան կը

(1) *Մելիտինեցի Հայուն սիրած գոյնն ալ «կապոյտ»ն է, որովհետեւ հինէն ի վեր անկողիններու բոլոր կողմածը գրեթէ, բացի բուրդէն, կիներու եւ պզտիկ աղոց զգեստները, մինչեւ իսկ չափահաս մարդոց շատերուն վարտիքները, կապոյտ ըլլալէ զատ,* 40—50 *տարի առաջ, երբ Հայը արժանի չէր կարմիր ֆէս եւ նոյն գոյնով ոտնաման հագնելու, գլուխի սուր քէչէին վրայ կը կապէր կապոյտ կտաւ, որմէ հետեւցնելով ըսած է Թուրք սիրաքանը·* «Սէնին պանա էթտիկին՝ կէօկ պաշըը կամ պաշը կէօկ կեավուր էթմէզ»:

(2) *Ճերմակեղէններն (շապիկ-վարտիք) երկար են, որոնց պճղունքն* (բաչա) *ու թեղանիքները կապէ ու ճարմանդէ զուրկ են, միայն շապիկին օձիքը մէյ մէկ ճարմանդ կը գտնուի:*

(3) *Եւրոպական, պարսկական կամ Կիւրինի ապրանք սովորաբար:*

գնուէր, սովորաբար բարեկեցիկները կը հագնէին: Ամառ տաքին գուլպայ շատ չէին հագնիր հին սերունդին պատկանողք»:

*Ինչպէս կը տեսնուի, Մալաթիացիք, ինչպէս տնական կարասիներու, նոյնպէս նաեւ հագուելու շատ համեստ եւ պարզ եղանակ մը ունէին, որ հեռու էր ճոխութենէ եւ պերճանքէն:*

Գ.

## ՈՒՏԵԼԻՔ - ԽՄԵԼԻՔ

*Մալաթիացիք ուտելիք–խմելիքի տեսակէտով առհասարակ հայաբնակ անատոլեան գաւառներու Հայերէն տարբերութիւն չեն ներկայացներ: Միայն կ'երեւի թէ խմիչքի համար աւելի տկար եղած են եւ շատ գործածած են, որչափ կը հասկցուի ինչ ինչ յիշատակութիւններէ:*

*Մալաթիացիներու սնունդին մէջ աւելի տեղ ունէին պտուղները, որոնք չափազանց առատ էին Մալաթիոյ մէջ, ինչպէս տեսնուեցաւ:*

*Գրեթէ ամէն տուն կաթնտու կով կը պահէր:*

*Պէննէեան քհնյ. իր ընդարձակ անտիպ տեղեկագրութեան մէջ ժողովուրդին ուտեստին վրայ սա տողերը ունի.*

«Մալաթիոյ բոլոր ժողովուրդը բացի կանանչեղէնէ, որեւէ ուտելիք օրը օրին գնելու սովորութիւն չունի: Ամէն տուն աշնանէ կը պատրաստէ իր տարեկան պարէնն ու պաշարը, որ հետեւեալ վիճակագրութեան համեմատ, մէն մի անհատի համար 30 գրիւ հատ, այսինքն՝ 5 գրիւ ՊՈՒՂԼՈՒՐ, 5 գրիւ ԿՈՐԿՈՏ, (աս երկուքը աղցուելէ յետոյ, մաղուելով մասնաւոր որակներ ու անուններով կ'առնեն, ինչպէս սմնտր, բըդ բըդ, քիւլ, ծծիկ, խորշուք եւն., որ բաղադրուելով ուրիշ նիւթերու, կը պատրաստուէին այլ եւ այլ կերակուրներ կամ ապուրներ), 15 գրիւ աղօն, մէյ մէկ գրիւ սեւ ու ճերմակ սիսեռ, 1 ու կէս գրիւ ԿԱՆՏԸՄԱ (ծեծած), 1 գրիւ ոսպ եւն.:

Ինչպէս արմտիք, նոյնպէս իւղ, պանիր, տոճորակ, ապուխտ, երշիկ, դդման, քաղցուեններներ, անուշեղէններ, խմիչքներ եւ միրգեր ու պտուղներ, կանխաւ կը պատրաստուին:

Կերակուր կ'եփեն, սովորաբար ճաշի եւ ընթրիքի համար ամէն օր: Իսկ հացը կ'եփուի ամառը 8 օրն, իսկ ձմեռը 15 օրն անգամ մը: Հոս հացը կ'եփուի թոնիրը եւ միշտ շաբաթ օրը:

Մալաթիոյ սովորական եւ ծանօթ կերակուրներն են *բերբեր*, *բըդբըդ*, *դարխանա*, *եահնի*, *լահանա*, (սոխօք, բրինձօք, թթուօք), *եափրաղ* (փաֆ եւ հասարակ), *լանդակ*, *լափա* (կորկոտէ եւ բրինձէ), *խնյար* ապուր, ծըծիկ, *կապուողա*, *կապախ պատի*, կուզուփոր, ձուազէղ, միս պալճան, մուսաքքա, մագնօք *չօրմա*, *չօրմա* (կաթով ոսպով, դափշէլով, խորշուքով, սալօրօք, քաղցր լէյլէկ շօրվասի եւն.), *հէյմա* ապուր (լիցք եւ շերտուած), պաստեղի տապկուած, պօլտիք պամեա, պուքլամա, (դդումով եւ չէրիշով), պաստեղի տապկուած, պօլտիք

ապուր, պօրանի, ջրվրայ (հաւկիթով) ջրթմա (դդումով), *չէլ* ապուր, սխտորջօռ, սարմա, սբանծեծ, սոխըզօրզօղ, սունկապուր, տփշէշ, տօլմա կամ քիւլահ–լիցք (պալճանի, խիյարի, դդումի), փըշունկ (բրինձօք, եու–խացօք), փիլաւ (բրինձէ, կորկոտէ, պուղլուրէ, սմնտրէ, օսպօք, ժահրայօք եւն.), քէլլէ (խաշ), փազզապուր, *քուֆթէ* (8—10 տեսակ), խմորեղէններ եւ անուշեղէն։

Հավլէ (հրուշակ) ալիւրով եւ նիշէյով, պանիրով, խօշափ *կաթմէր*, *պէօրէկ*, *թէրփօչ*, *սէնի* (կարկանդակ), սիւտլի, *կատայէֆ* եւն.։

Մալաթիացի տանտիկինը գիտէ ասոնք եղանակին եւ պարագային հա–մեմատ պատրաստել։

Թուրք բարեկեցիկ տուները կերակուրը Հայերէն աւելի աղէկ կը պատրաստեն։

Հարսանեաց կամ այլ կոչունքի ատեն պատրաստուած կերակուրներն են խոշոր քէիւֆթէ, կապուրխա (կամ փորլից), բրինձով լեցուած միս, բամիա, հայվա (բրինձով լեցուն սերկեւիլ), բրինձով լահնա, բրինձէ փի–լաւ, սիւտլի, մէկ–երկու տեսակ խմորեղէնք, պտուղներ եւ վերջապէս պա–նիր։

*Պէննէեան քէնյ. իր գործին մէջ կը բացատրէ.*

## ՔԱՆԻ ՄԸ ՄԻՐԳԵՐՈՒ ԵՒ ՔԱՂՑՈՒԵՆԻՆԵՐՈՒ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆԸ, ՀԵՏԵՒԵԱԼ ԿԵՐՊՈՎ

«1.— ՊԱՍՏԵՂ. բաց թուրը կաթսայի մէջ եփելէ յետոյ, մասնաւոր տոպրակով մը (մրուրի տոպրակ) քամելով, գոյացած քաղցուին համեմա–տութեամբ նշայ կամ ալիւր խառնած՝ լինն (խիւս) կ'ըլլայ։ Աս լինը նորէն եփելով կը խառնեն փայտով կամ ՔԷՖԿԻՐՈՎ, որ կ'ըլլայ մալէզ։ Մալէզը հանելով տանիքը՝ ճերմակ եւ նուրբ կտաւներու վրայ կը փռուի թուղթի թանձրութեամբ եւ կը մնայ մինչեւ հետեւեալ օրը։ Փռուած ատեն վրան կը ցանեն խաշխաշի հունտ եւ ծիրանի անոյշ կղամէջ։ Հետեւեալ օրը արեւուն շողադինը, տանիքը ելլելով՝ կտաւին հակառակ կողմը ջրով կը թրջեն որ խիւսը թուլնայ, եւ միւս կողմէն անզամ մը ծայրէն բռնելով պէս՝ կտաւին ամբողջութեամբը միակտուր կ'ելլէ բաստեղ կ'դառնայ, զոր մէկ երկու ժամ չուանններու եւ ձողերու վրայէն կախելէ յետոյ, կը կտրատեն հաստրակ թաշ–կինակներու մեծութեամբ եւ մէջը նաշէհ կամ ալիւր ցանելով կը ծալլեն ե–ռանկիւն ու քառանկիւն, եւ կը կոխեն թիթեղներու եւ բղուկներու մէջ։ Մէ–ջը ցանուած ալիւրը պաստեղին գոյն տալու եւ իրարու չփակչելու համար է, եւ պաստեղը որքան նուրբ ըլլայ, այնքան գունաւոր եւ փայլուն կ'երեւնայ։

Պաստեղը, ինչպէս ըսինք, թութէն կը պատրաստուի եւ «նիշէ» բառա–ծը յարգի է։ Վերջերս, խաղողէն եւ սալորէն ալ պաստեղ կը պատրաստուի, որ «Բէօփիւկ» պաստեղը կ'ըսուի։

2.— ՀԱՏԱՔԼԻԳ = *Քէսմէճէ*.— Ասիկա ալ, խիւսը պատրաստել եւ ե–

փելէ ետք, պղնձեղէն ամաններու մէջ կը լեցնեն մատի թանձրութեամբ եւ գիշեր մը կը թողուն որ պաղի ու թանձրանայ: Հետեւեալ առտուն տանիք հանելով՝ ամաններու մէջ դանակով կը հատակտրեն եւ կը փռեն սաւանի վրայ, ալիւրին պլլելով, երկու–երեք օր արեւուն տակ մնալով երբ բաւական ցամքի, ժողովելով նորէն ալիւրը կը փաթթեն եւ կը լեցնեն սնտուկի մէջ: Չմեռը մանաւանդ թէ՛ իբր միրգ եւ թէ հաւկիթով տապկուած իբր կերակուր կ'ուտեն:

3.— ՐԷՉԷԼ (կտապ).— Րէչէլը կը պատրաստուի սալորէ, խաղողէ, չումէ, ծիրանէ եւ դդումէ:

Ծիրանին, սալորին եւ չումին կուտերը մախաթով կը հանեն, եւ կեղեւը կամ չիրը կանխաւ եփուած թութի շիրէին մէջ խառնելով՝ ամանները կը փռեն արեւուն տակ, մինչեւ որ քաղցուն րուբանայ (թանձրանայ):

«Դդմէ րէչէլ»ը շինելու համար չորցած ջրդման (դդմաճ) առաջ ամաններու մէջ կը բաժնեն եւ քաղցուն վրան լեցնելով նոյնպէս մէկ քանի օր արեւուն տակ կը թողուն եւ յետոյ մէջը վարդի ջուր եւ կուտ խառնելով՝ կը լեցնեն թիթեղէ բղուկներու մէջ:

Սոյնպէս կը պատրաստեն ԲԷՐՎԷՐՏԷ բսուած մրգօղին սալորէ, խընձորէ, ծիրանէ, չումէ եւն.:

Նառտանը (թթու) սալորին թթու եւ խակ եղած ատեն կը պատրաստեն, որ արեւուն տակ կը թանձրանայ:

Րէչէլը ցամաք, բայց բէրվէնտէն ջուրի մէջ հալեւ մալելով՝ հացով կ'ուտեն, նառտանը կերակուրի կը խառնեն:

Մալաթիացի կինը աղուոր կերակուրներ շինելուն պէս՝ իր պատրաստած անուշեղէն ու քաղցուեններն եւ աղածներն անվնաս կը պահէ տարիներով:

Կերակուրներէն քէօֆթէ, լահանա, սարմա, աւելի եափրաղ փաթթելու եւ ժահրա թափելու համար՝ դրացի կիներ հաւաքելով կը պատրաստեն, որ ժամանակ խօսակցութեան առարկայ կ'ըլլան աղջիկներ ու հարսներ, կամ այս ու այն տան տնտեսական վիճակը, եւ ենթականերուն գաղտնիքները երեւան կ'ելլեն, տարէց կիներէն մէկը հեքիաթներ կը պատմէ եւ հանաքներ կ'ընէ ժամանցի համար»:

*Պէննէեան քհնյ. կը խօսի «ՄԱՄՆԱՒՈՐ ՕՐԵՐՈՒ ՅԱՏՈՒԿ ԿԵՐԱԿՈՒՐՆԵՐՈՒ» վրայ, որ հոս նոյնութեամբ կը ներկայացնեմ.—*

«Թէ՛ ուտիք եւ թէ պահք լուր օրերու յատուկ սովորական կերակուրներն են *քէօֆթէ, փիլաւ, չօռպա եւ եափրաղ*:

Կիրակի օրուան վանքացը մջօք քիւֆթէ, իրիկունը կապուրդա (փորլից) կամ փիլաւ:

Հարսնիքի կերակուրներն են հէյվա ապուր, կապախ պաստի, փագգապուր՝ կիներու համար, իսկ էրիկ մարդոց համար մջօք քիւֆթէ, բրինձ փիլաւ, հէյվա ապուր, բրինձօք լահանա եւն.:

Որեւէ կոչունքի ատեն՝ կապուրդա, քիւֆթէ, պօրանի, հէյվա ապուր կամ շիրապուր, լահանա, պամիա, բրինձէ փիլաւ, սիւտլի, խմորեղէն եւ

(եղանակին համաձայն) պտուղ ու պանիր եւն.։

Ամանորի կամ կաղանդի իրիկունը *բերբեր*։

Մեծպաքի երկուշաբթին լոպիկ ապուր[1] կամ թթուօք քիւֆթէ։ Մեծպահոց երկրորդ կիրակին «Հատիկ», Ս. Թորոսի աւանդական «կուլէքան», որ եօթը տունէ այդ հատիկին ուտելը վարձք կը սեպուի։

Մեծ պահոց միջինքի (միջին Դշ.) օրը մջօք քիւֆթէ կ՚եփուի։ Աս քիւֆթէներէն մէկուն մէջ կը դնեն դրամ կամ մատանի մը եւ այդ քիւֆթէն ընտանեաց անդամներէն որուն որ վիճակուի, բախտաւորը անիկա է։

Զատկի խթման իրիկունը կ՚եփեն «ճաճեղ», որ խաշած շոմինին վրայ մածուն-սխտոր խառնուած կերակուր մ՚է։ Այդ օրին համար «կեավուրլար ճաճըղը ետի» կ՚ըսեն, Թուրքերը։

Էտի (Աւագ) չորեքշաբթին անճուր թարխանա կ՚եփեն եւ կորը (կարիճ) զիրենք չխայթելու համար տան չորս պատերուն երեսները կը սրսկեն։ (Կ՚երեւի թէ կարիճները ատով կը կշտանեն, մինչդեռ նոր քաղաքին մէջ այդ կենդանիէն բնաւ չի տեսնուիր, օդին խոնաւութեան պատճառաւ)։

Աւագ հինգշաբթի միջօրէին «Քէշքէկ» կ՚եփեն, իբրեւ (հոգեւոր) հարսանեաց, բայց պահոց՝ «հերիսա»։

Վարդավառի, Աստուածածնի եւ խաչի նաւակատեաց օրերն ալ «Պուղլամա», դոխրացով դդում ապուր։

Դ.

# ԸՆՏԱՆԻՔ

## Ա.

## ՏՈՒՆԸ

*Հայ գաւառներու մէջ տիրող նահապետական բնոյթը պահուած էր նաեւ Մալաթիոյ մէջ։*

*Տունը, ինչպէս առհասարակ բոլոր Հայերու, նոյնպէս նաեւ Մալաթիոյ Հայերուն մէջ ունէր նուիրականութիւն մը։ Հոն մաքուր կենցաղով կ՚ապրէին բազմանդամ ընտանիքներ, տան նահապետին հեղինակաւոր իշխանութեան տակ։*

*Ընտանիքը, ինչպէս ուրիշ գաւառներու, նոյնպէս Մալաթիոյ մէջ գերծ մնացած էր սանձարձակութիւններէ, որոնք Եւրոպայէն կը փոխանցուէին։*

*Կեանքը կը քալէր առանց մեծ ելեւէջներու եւ խաղաղօրէն, վասնզի*

---

*(1) Մեծ պահոց երկուշաբթին՝ «մկնտօն» ալ կ՚ըսուի. ամէն տուն բաղլա կամ լոպիկ կ՚եփուէր, որով «բաղլախաւմ» կ՚ըսուէր։ Ուրեմն շիտակ է ըսել այդ օրուան «ՊԱՂԼԱԽՈՒՐԱՆ» եւ ոչ թէ փակեալ խորան. իսկ «մկնտօն»ը հին հաւատքի հետ կապ ունի՞ արդեօք։*

*այրերը եւ կիները կը համակերպէին իրենց ճակատագիրին եւ կը տանէին զայն անխօս։ Ամուսնական վէճեր եւ ամուսնալուծումներ գրեթէ գոյութիւն չունէին Մալաթիոյ մէջ։ Պատիւի գաղափարը եւ պարկեշտութեան ու ամուսնական ուխտի հաւատարիմ մնալու զօրաւոր կամքը, ինչպէս նաեւ հանրային կարծիքին ահարկու սարսափը, հայ կիները կը պահէր վեր բարոյական սայթաքումներէն, որքան որ ալ դժբախտ եղած ըլլային անոնք իրենց ամուսնական կեանքին մէջ։*

*Հարեմական կեանքը մասամբ կը շարունակուէր եւ այր եւ կին միասին չէին ճաշեր օրինակի համար։*

*Այս տեսակէտով կերպով մը Մալաթիացիք մասամբ աւելի յետամնաց էին բաղդատմամբ կարգ մը գաւառներու։*

*ՕՃԱԽին պաշտամունքը եւ ընտանիքին անունին արատ չբերելու ջանքը ընդհանուր էր եւ հինէն աւանդաբար կու գար։*

*Չափազանց զօրաւոր էր ընտանիքը մշտնջենաւորելու բնազդը։ Ասոր համար անպատճառ մանչ զաւակներ ունենալ կ՚ուզէին։*

*Այս պատճառով մանչ զաւակներու ծնունդը ուրախութեամբ կ՚ընդունէին եւ աղջիկներու ծնունդը, երբ մանաւանդ յաջորդական էր, տհաճութիւն կը պատճառէր, երբ մանաւանդ մանչ զաւակ չունէին դեռ այր եւ կին։*

*Մանչ զաւակները ընտանեկան օճախին կապուած անբաժանելի նկատուած են եւ ասոր համար տուն-փեսաներ գրեթէ չկային։*

*Ընտանիքները բազմանդամ էին, եւ թէեւ ըստ երեւոյթին շատ ներդաշնակ, սակայն հարս-կեսուրի, տալոջ-ներոջ անհամաձայնութիւններ գոյութիւն ունէին։ Կարելի է յայտարարել թէ հայ ազգին բարոյական ամբողջը եւ իր գոյութեան միջնաբերդը՝ ընտանիքը՝ կը մնար անաղարտ Մալաթիոյ մէջ։*

**Բ.**

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԱՆԴԱՄՆԵՐՈՒ ՀԵՂԻՆԱԿՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՓՈԽԱԴԱՐՁ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Ընտանիքին մէջ հեղինակութիւնը էրիկ մարդուն վերապահուած էր եւ այրերը միշտ յարգանքի առարկայ էին։ Մասնաւորապէս հայրական իշխանութիւնը չեշտուած էր, առանց անարգուած ըլլալու մայրականը, որ ունէր իր հեղինակութիւնը զաւակներուն վրայ։*

*Տուներու ներքին վարչութեան մէջ վարիչ ոյժը մեծ մայրերն էին, որոնք կը կառավարէին տունը, հրամայելով հարսերուն եւ աղջիկներուն։ Անոնց հրամանին տակն էր տան բոլոր մթերքը կամ պաշարը, եւ անոնք էին հարսերուն եւ աղջիկներուն աշխատութիւնները բաժնողը եւ անոնց դուրս ելլելուն հրաման տուողները։*

*կենցաղական իրերու մէջ կինը ստորադաս էր, Թրքական բարքերու ընդօրինակութեամբ, մինչ ընտանեկան կեանքի մէջ Թրքական բարքեր չէին մտած:*

*Ծերերը միշտ յարգուած են, իսկ ազգականական կապերը ամուր եղած են, ինչպէս բոլոր գաւառներու մէջ:Այնպէս որ առհասարակ ընտանեկան կեանքը նման էր բոլոր գաւառներու մէջ: Ասոր համար չեմ ծանրանար անոնց վրայ, ոեւէ գաւառի վրայ կատարուած քննասիրութիւն մը կարդալ բաւական պիտի ըլլայ ուրիշ գաւառներու վրայ ալ գաղափար մը կազմելու:*

*Ինչպէս ուրիշ տեղեր, Մալաթիոյ մէջ ալ կեսուր եւ կեսրայրէն առաջ հարսը անկողին չէր երթար, անոնց հագուստները հանելու եւ առաւօտուն կանուխ հագուեցնելու կ'օգնէր: Իր տագրերուն ձեռքերն ու երեսները լուալու ատեն ցամքոց բռնած կը սպասարկէր: Անոնց պզտիկները կը հագուեցնէին, հացին ծրարը եւ գիրքերը կը պատրաստէին եւ դպրոց կը ղրկէին եւ տունի մաքրութեան կը նայէին:*

*Ամուսնութենէն վերջ մանչ տղաք իրենց հօր տունէն չէին բաժնուիր, միեւնոյն յարկին տակ չորս հինգ հարսեր զաւակներով միատեղ ապրիլ թէեւ անհաճոյ, բայց բարեբախտութիւն կը համարէին, ըսելով թէ հայկական օրէնք էր:*

*Այնպէս որ նահապետական կեանքով կ'ապրէին Մալաթիացիք:*

## Գ.

## ՓՈՔՐԵՐՈՒ ԽՆԱՄԱԾՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹԻՒՆԸ

*Մալաթիացի կինը՝ բոլոր հայ կիներու պէս գուրգուրացող մայր մըն էր, պատրաստ իր զաւկին համար ամէն զոհողութեան, բնազդով քան դատողութեամբ:*

*Փոքրերու խնամածութեան եւ դաստիարակութեան մասին բարեբախտաբար Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան,* «Զարգացում եւ դաստիարակութիւն» *խորագրուած գլուխ մը ունի, որ նոյնութեամբ կ'արտագրենք հոս իբր տեղացի գիտակ անձի մը անժխտելի վկայութիւնը:*

*Ահա իր խօսքը.—*

«Կնունք կթուք վերջացան, կնիկներ իրենց ընտանեկան գործերով կը զբաղին այլեւս: Մեր նորածինն ալ զարգանալու պէտք ունի, իր մայրիկը ալ նոր հարս չէ, «ՆՈՐ» մակդիրը առնուած է վրայէն, ալ կնոջական նախնական շրջանին ոտք կոխած ըլլալուն համար: Հիմա իբրեւ կթոտ մայր հարսը կը գուրգուրայ իր սրտահատորին վրայ: Օրօրանին ամէն ԹԱԽԸՄԸ մեկնած՝ խանձարուրքէն հոն կը փոխադրէ զայն: Տէր պապային կապած խաչակիր նախշուն նարօտը կախելով օրրանին գլխուն վերեւ, կը ծծցնէ ամէն անգամ որ մանկիկը կու լայ եւ մեղմիկ ձայնով օրրերգով կ'օրօրէ ու կը քնացնէ մուշիկ-մուշիկ: Մանկիկին խանձարուրկի փաթաթուիլը մինչեւ քառասունքի

լրացումը եւ մինչեւ վեց ամիս իր մամենցը երթալու պարագային տեղի կ'ունենայ: Օրերու յառաջացումին հետ մանուկն ալ կը զօրանայ եւ կ'աճի: Կամաց-կամաց իր առաջատամները կը հանէ, չոր սոխ կու տան խածնելու որ լինտերը տեղի տան ատամներուն դիւրին բուսնելուն: Երբ ՏԱՏԻԻ (նոր ոտք ելլել) սկսի, իւղալից ծակ պլիկ մը (բլէթ) եփելով՝ ոտքը կ'անցընեն ու պզտիկ տղաքներ կանչելով ոտքէն խլել կու տան, մէկն ալ ձեռքը թաս մը ջուր առած կը սրսկէ խլմշտուք ընողներուն վրայ, որ ան ալ փախչիլ եւ քալելու ճար ընէ: Պզտիկը բառեր կը թոթովէ, ալ «մանի, հացի» (պանիր, հաց) կ'ուզէ մօրմէն, երթալ իր հասակակիցներուն հետ խաղալ եւ զբօսնելու, ալ ՇԸԽՇԸԽԸ (մանկական խաղալիք մը) մէկդի կը նետէ, փողոցներուն մէջ հողափոշին հաւաքելով՝ քաղնիք կը շինէ եւ շուրջանակի կամարաձեւ դռնակներ բանալով՝ ջուր կը կապէ լոգնալու համար, կամ շիւղեր եւ փայտիկներ ժողվելով տնակներ կը կանգնէ, եթէ մանչ տղայ մըն է, իսկ եթէ աղջիկ զաւակ, ՉԱՓՈՒԹՆԵՐ կը հաւաքէ իր համասեռներուն հետ պուպրիկ շինելու:

Ծնողքը, մանաւանդ մայրը, անտարբեր չէին զայն մտաւորապէս ալ զարգացնելու: Հայ մայրը խաչակնքել եւ ծնրադրել կը սորվեցնէ պզտիկ տղուն: Եւ արթնցնելով աստուածպաշտութեան գաղափարը՝ կ'ուսցնէ «Յիսուս Քրիստոսի եւ երրորդութեան» անունները, սակայն պզտիկը աւելի շուտ կը սորվի անզգալիօրէն այն հակաքարոյական մէն մի բաներն եւ կը պատկերացնէ իր վրայ քան միւսներէն, զորս իր ծնողքը բնականապէս եւ քաջալերելու համար իրենց պզտիկը միշտ կը խօսին ու կը կատարեն գործնականապէս, զոր օրինակ «Մարտիրոս, սա քարը նետէ անոր, փայտով զարկ, հայհոյէ, կնիկը, մէրը եւ քորը··· է»:

Ալ եօթը-ութը տարեկան է, դպրոց կը ղրկեն տղան: Կ'ուզեն որ մէկ տարուան մէջ շրջանաւարտ ըլլայ: Մէկերկու տարի կը շարունակէ դպրոցը, սակայն երբ մանչ մ'է ան, «ինչ ընեմ, բնաւ բան մը չի ուսիր, դպրոցներուն մէջ ալ հիմա հոգու փրկութեան վրայ բան մը չկայ: Պիւթիւն շունի, կատուի վրայ գրուած գիրքեր են» ըսելով կը հանէ տղան եւ արհեստի կը դնէ: Իսկ եթէ աղջիկ զաւակ է, մայրը կ'առնէ իր ծունկին առջեւ կը սորվեցնէ անոր տնական ամէն գործ, կար կարել եւ գուլպայ հիւսել եւն·: Ու կամաց-կամաց պատրաստել անոր հարսնութեանը համար պէտք եղած ճէհիզը: Զափահասութիւնը կու գայ, վաղը պիտի նշանուի: Մայրը կը սորվեցնէ ամէն պարագայի տակ լուրջ ըլլալ եւ խոհուն ու պարկեշտ, տնական ամէն գործ եւ աշխատութիւն պէտք է ստանձնէ, ինչպէս խմոր շաղել, լուացք ընել, աւլել, կարել եւն·:

Ներելի չէ առանձին քաղնիք, եկեղեցի եւ ուրիշ տեղեր երթալ: Ինչպէս հարսը, նոյնպէս աղջիկը որեւէ տեղ երթալու ատեն մայրը պէտք է ընկերանայ: Աղջիկը դուրսը գտնուած ատեն գլուխը եազմա մը ձգելու է, որ երբ տղամարդ մը հանդիպի եազմային մէկ ծայրը պրկունքներուն փաթ առնելով, դէմքը կիսով չափ ծածկէ: Կիներու ներկայութեան երբեք ներելի չէ իրեն խօսիլ կամ անոնց խօսքին խառնուիլ: Մեծ կիներու ձեռքերն համբուրելու է

յուր որ ալ համդիպին անոնք, որովհետեւ ինք, եթէ աղջիկ է, էլի պատի ծեփ է, զինքը չեն զովեր, ամէն տեղ մատ մի մեղր կ'էնեն ու կ'ըլլի «տնմնայ»:

**Դ.**

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԶՈՒԱՐՃՈՒԹԻՒՆՆԵՐ

*Մալաթիացիք, ինչպէս ըսինք, ՔԷՖԻ մարդիկ էին եւ կոնծել կը սիրէին, եւ ասոր համար կը հաւաքուէին տուները եւ ուտել-խմելով կը զուարճանային: Հետեւաբար պատրուակներ կը ստեղծուէին, տօնական օրերու եւ ընտանեկան կարեւոր անցքերու, նշանտուքի, հարսնիքի, կնունքի եւ անուան տարեդարձերու առթիւ:*

*Կիներու մասնակցութիւնը՝ հաւաքոյթներու երկրորդական հանգամանք մը ունէր: Անոնք գրեթէ սոսկ հանդիսատեսներ էին: Միայն այրերն էին որ կը պարէին եւ կ'երգէին, վասնզի կիներու պարելը ամօթ կը համարուէր, ինչպէս երգելը եւ նուագելը:*

*Երգերը, ինչպէս տեսնուեցաւ, բաւական ունէին: Պարն ալ արեւելեան ձեւով էր:*

*Տեղական երաժշտական գործիքները նախնական նուագարաններ էին:*

*Մալաթիացիք զբօսապտոյտներ ալ կը կատարէին քաղաքին չուրջը գտնուած աղբիւրներու կամ վանքերու քովերը, ուր կիրակի օրերը կ'երթային զբօսնուլ եւ ուտել-խմել, իրիկուան քաղաք դառնալով:*

**Ե.**

# ՍՈՎՈՐՈՅԹՆԵՐ

**Ա.**

## ԱՄՈՒՍՆԱԿԱՆ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ (*)

Մալաթիոյ մէջ Հայեր խնամութիւն կը կազմեն սովորաբար իրենց ՏԷՊՊԸ (հաւասար կարողութիւն) ընտանեաց հետ, (բացառութիւն համարե-

*(1) Ամուսնական սովորութիւններու, ինչպէս նաեւ ծննդեան եւ մկրտութեան եւ մահուան ու յուղարկաւորութեան սովորութիւններու մասին հետագայ երեք գլուխները առնուած են Տ. Կարապետ քհն. Պէննէեանի Երուսաղէմ պահուած ընդարձակ ձեռագրէն, որ՝ ինչպէս յիշուեցաւ՝ խմբագրուած է 1912-ին: Պէյրութ տպուած իր համառօտ գործէն աւելի կատարեալ ըլլալուն համար առի իր վերջին կատարելագործեալ գրութիւնը: Ամուսնական սովորութիւններու մասին 1899-ի ԲԻՒՐԱԿՆ հանդէսի մէջ (տես էջ 120-121, 246-247 եւ 424) Յակոբ Ա. Պէննէեան տորագրութեամբ յօդուածաշարք մը*

լով կալ, կոյր, ձեռնատ եղող աղջիկները եւ վերջերս ալ զինուորագրութեան պարագան) :

Նշանտուքը յաճախ կը կատարուի տղայութեան ատեն: Թողունք «*Պէշիք քէրթմէ*», որ դեռ տղան[1] ու աղջիկը չծնած իսկ՝ ոսկիներն նշան կը տրուին. հերիք է որ ծնողք երկուստէք համակիր եւ կը սիրեն զիրար: Թագաւորը ՊԻԼԷ (իսկ) ՄԱՆԻ չիննա ըլլիր: Կը բաւէ մանաւանդ որ ասոր միջնորդ եւ ԳՈՐԾԱԿԱՏԱՐԸ օղին է, ուրախութեանց պահուն: Խնդիր չէ թէ ծնելիքներ տարիքով եւ փիզիքապէս խոտոր համեմատին, եւ ապագային խնամութեան սիրոյ կապը խզուելով նիւթապէս թէ բարոյապէս իրարու վնասելու անդարմանելի դուռ կը բացուի:

Գալով օրինաւոր նշանտուքի՝ երբ ՍԸՄՕին տղան ու ՍՐԲՈՅին աղջիկը ալ չափահաս են, ծնողք կանուխէն փնտռտուք ընելով կ'ընտրեն եւ կ'որոշեն յարմար աղջիկ մը, եւ նախ կըյրող կապոկ կնիկ մը ղրկելով աղջկան մօրը անոր բերանը (միտքը, կամքը) կը հասկնան: Ան կինը կը բերէ իր հասկցածը: Հետեւեալ օրը ԱՅՐՃԻ մը (աղջկան հօրը մօտ խօսքը անցնելիք, ազդեցիկ մարդ) կը ղրկուի Աստուծու հրամանօքը աղջիկը ուզելու: Աղջկան ծնողքը եթէ կամք ունին իրենց աղջիկը տալ այդ ուզուած տեղը, կ'ըսեն որ բարի հազար բարի, մէքմէզի ՏԱՆՈՒՇՈՒՈՂ մի էնէքուք, վաղը ՃԷՎԱՊ մի կու տաք: Ասված գրեր է նէ վա՞վ ինչ ըսէ, եւ այնըհին կը ղրկեն: Խնդրուած ձեռքը տրուելու հաւանութիւնն առնուած է. պէտք է նշան օրհնել: Ուստի տղուն տունը կը հաւաքուին ազգական եւ ծանօթներ եւ կանչելով տանէրէց քահանան, պատրաստ երեկոյթը կ'ուտեն եւ կը խմեն բարեմաղթութիւններով, ապա խմբովին կ'երթան աղջկան տունը. հետերնին առնելով ծրարներով պտուղ «ԲՕԼԱՏ» ըսուած մրգազարդ ամանը: Հոն նախ ՍԱՏԷ ԿԱՅՖԷ մի հրամցուելէ յետոյ, հանդիսականներ պարագային յարմար հանաք ու անմեղ կատակներ կը փոխանակէն եւ քահանան խնդիրը պարզելով՝ նշան օրհնութիւն առաջարկը կ'ընէ, ու խունկ կրակ յիշեալ բօլատը եւ նշանը մէջտեղ բերելով՝ հանդիսաւորապէս կ'օրհնէ, եւ նշանը աղջկան ծնողքին կամ ( եթէ ծնողազուրկ է) մեծ եղբօրը եւ կամ մօտակայ ազգականներու մէկին կամ միւսին կը յանձնուի «աչքերնիդ լոյս» ըսելով: Իբր նշան օրհնուածը՝ զարդ ոսկիներ, ժամացոյց, թեւնոց եւն. է: Ըստ հին սովորութեան աղջկան ծնողքը իրենց խնամուն կ'առաջարկէին որ իր մօտ ազգականներուն առանձին մէյմէ զարդ ոսկի տանին[1], ինչու որ մինչեւ անոնց ալ կամքը չառնուի, նը-

*կայ, որ նոյն քահանային չի պատկանիր, անոր աշխարհական անունը Համբարձում ըլլալուն համար:*

*Հարսանիքի մասին գրած են նաեւ Ն. Բէփէնէկեան* (Պապ Ուխտի *թ. 24 էջ. 16–18): Իսկ Գէորգ Մելիտինեցի իր ՆԱԽՃԻՐՆԵՐ գործին մէջ* (*էջ 49 56*) *ընդհանուր կերպով խօսած է համառօտ հարսանեկան, մկրտութեան եւ մեռելական սովորութիւններու վրայ* (*արտատպուած կրկին* Պապ Ուխտի, *թ. 45, էջ 18—22*)

(1) *Միշտ «մանչ զաւակ» հաւնալու է:*

(2) *Տրուած ոսկիներն աղջկան կը վերաբերին, որն յետոյ բերելով կը յանձնեն:*

շանտուf եղած չ'ըլլար: Նշանօրհնութենէ վերջի խմիչքը պէտք է անոյշ ըլլայ, եթէ ոչ իր խնամին չսիրել կամ նշանտուքը ակամայ եղած կ'ըլլայ: Նըշանտուքի ատեն ոչ տղան եւ ոչ աղջիկը պէտք չէ ներկայ ըլլան, նշանուած տղուն համար ոչ թէ աղջկան տունը երթալ, այլ այն թաղէն իսկ անցնիլը ամօթ է: Նշանուած աղջիկը միշտ կը պահուի ու կը փախչի իր նշանածէն, անոր ծնողքէն եւ անոնց բոլոր պարագաներէն, բացառութիւն ըլլալով իրեն տալ ըլլալիք տարեկից աղջիկներն ու պզտիկ տղաքներն: Երկու խնամիներ սակայն յարաբերութիւնը կը տաքցնեն, մանաւանդ կիներ եթէ բաղնիքը կամ եկեղեցին զիրար տեսնեն, զոնէ խօսակցութեամբ պէտք է պատուասիրեն:

ԽՆԱՄՈՒ ՏՈՒՆ ԵՐԹԱԼ. — Մինչեւ հարսնիքի օրերը մօտենան, հինգ տաղաւարներուն, ամանորի կամ ուրիշ նշանաւոր օրերուն մէջ պէտք է «խնամու տուն» երթան, այսինքն՝ տղուն մայրը՝ իր բոլոր ազգականներու եւ ծանօթներու կիները մասնաւոր կերպով կը հրաւիրէ, որ հաւաքաբար աղջըկան տունն երթան: Անոնք ալ աղջկան վերաբերեալ լաթեղէն ընծաներ առած կու գան եւ հող մէկ-երկու տեսակ կերակուր ուտելէ յետոյ, բազմութեամբ (20, 30, 50 մինչեւ 100 կիներ) կ'երթան խնամիին տունը, հոն ալ ուտել խմելէ յետոյ, իրենց ընծաները աղջկան մօր յանձնելով, եւ «խնամի, շէն կեցիր, մեր պակսեցուցածը Աստուած լեցնէ» ըսելով կը մեկնին: Այդ իրիկունը մէկ-երկու այր մարդիկ ալ կ'երթան միեւնոյն կերպով, եւ հրաժեշտ առնելու ատեն՝ իրենց թաշկինակներուն ծայրը ծրարուած ոսկիները կը յանձնեն խնամիին կամ ուհոյն:

Այս ոսկիներու թիւը երբ շատնայ, հարսնցուն պէտք է կա՛մ գլուխը կարէ, կա՛մ երիզ (*չէրիտ*) ընելով կուրծքը կախէ: Եթէ չկարէ կամ չկախէ, զանոնք տուողներն անարգել կամ իր նշանածին չհաւանել ու անոր երթալու կամք չունենալու նշան է:

Աղջիկը իր հասակակից եւ բախտակից աղջիկներու հետ առանձին տեսնուելով՝ ամուսնութեան վերաբերեալ գաղափարներն կը փոխանակեն իրարու: Իսկ իր շուրջը գտնուած կիներն ու հարսներն սկսեալ 8—10 տարեկան հասակէն կ'արթնցնեն որեւէ սխալ գործ մը բռնել, եւ կամ չաշխատելու ըլլայ, իբրեւ յանկերգ միշտ կ'ըսեն. (անէծքն ալ հետը) «Աղջիկնիս, աղջրուխս, վաղը էլի դօռ պիտի երթաս... ի՞նչ կ'ըսեն խան կէօրմէմիշ խանատան, էօկիտ պլմամըշ անատան, ամօթ է: Մեք ա աղջինեաք, իս իշնամ, խօսք մի բէրընուն ելածին պէս, կը կատարէաք, օլորտելն ինչ է, շատ քնանալն ինչ է, չի գտէյաք, ինչ գործ ըլերն է՝ էրես դարձնել չի գիտէաք ու... այսպէս եւ ուրիշ կերպերով վերջապէս կը մարզեն մէն մի պարտականութեանց գաղափար:

Վերջին անգամ խնամու տուն երթալու ատեն կը տանին հարսնցուին ՁՊՈՒՆՑՈՒՆ ալ որ բօփ մը դեզակ, սնդուս կամ մետաքսէ էնթարի մըն է: Այդ օր «Լաթձեւելու» առաջարկը կ'ըլլայ, եւ օր մը որոշելով (միշտ իրիկունը)՝ տղուն ծնողքը, մէկ երկու բարեկամներ եւ դերձակը կ'երթան լաթ ձեւելու:

*Լաթձեւելն ալ խօսքով չ'ըլլար: Դերձակը կը կտրէ լաթի նիւթը աղ-*

*Ջրկան կողմին ուղած ձեւով*[1] *: Ապա սեղանը եւ օղին ՄԷՅՏԱՆ կու գան: Եւ ահա տղուն հայրը՝ օղիի գաւաթը բռնած, խնամիի աչքդ լոյս: Աստուած գըլօխ հասցնէ, շնորհակալիք: Սա հարսնեցը օրն ալ պէլլի էնիքնէ՝ աղէկ կ'ըլլի...»: Բայց հարսնեց օրը որոշելու դեռ ժամանակ շատ է, ուտել եւ խմելէ յետոյ, հարսունցուին վերաբերեալ ուզուելու պակաս բաները հասկնալով կը մեկնին: Աղջկան մայրը իրր նուէր դերձակին եւ միւսներուն մէյ մէկ թաշկինակ կու տայ երթալուատեննին:*

*Այս արարողութեան նկարագրութեան ատեն Յակոբ Պէննէեան (տես* Բիւրակն, 1899, *էջ* 120) *տան տիկնոջ եւ խնամիին միջեւ խօսակցութիւն մը մէջ կը բերէ·*

«Տան տիկինը խօսքը խնամիին ուղղելով կը յարէ·

— Է, աչկիս լուս խնամիս, էտոնք նէ իսէ ձեւուեցաւ, պաշխա ի՞նչ պիտ էնիս·

— Ինչ որ Աստուած լայըխ տեսեր է նէ, էն:

— Չէ, իս համպըրիմ ուք էնուր կէօրէ էրէք, 50 հատ աժնէս[2] ոսկի, Յը Մահմուտիէ թող ըլլին: Խարբէթու զէթերիյէ փիստան մալ, թեւը պուրմա (ապարանջան) ըլլին՝ կերտանըլըխ (մանեակ), ականջը՝ Հէլպու օղ (զուտ ոսկի ըլլալով կ'արժէ 150 դրուշ), օթկը փօթին–քալօշ կ'ուզեմ:

— Փէք էյի, կ'ըսէ խնամին կէս մը կմկմալէն, առանց իր դիտաւորութիւնը փոխելու»:

*Խնճոյքը ոգեւորութեամբ կը շարունակուի: Առաջին գաւաթը կը բարձրացնէր* «հոն գտնուողներէն մեծը լեցուն գաւաթը կլլելէ առաջ, իրենը դէպի տան տէրերուն կը յարէ·

— ... Աղա, խանմդ շէն, Աստուած խէյիրլի ընէ, բարձ փոխել չի տայ, հիմա (ալ) տանդ, էհրան ու մէօտան չընէ:

Բոլոր միաբերան՝

— Ամէն:

*Խառէնքեարը* ոգելից ըմպելիներէ զուրկ չի թողուր հիւրերը, ըմպելով մէկտեղ ջերմ բարեմաղթութիւններ ընել զլանար, ուրախութիւն ըսես՝ կատարեալ է, իւրաքանչիւր դէմքի ժպիտը կը ցոլար, խնդում, զուարճալի խօսքեր, քահքահներ պակաս չեն: Կերակուրը պատրաստ է, անձեռնոց, դըզալ, պատառաքաղ շարուած՝ անոնց առջեւ: Տան տէրը նախ կը հրամցնէ մսեղէն արգանակի, *կապուրղայի*, խնամին *քիպարութ*իւն կ'ընէ, դգալին ծայրովը կ'ուտէ, աղջկան մայրը դիտելով անոր այս շարժումն անհամբեր կը մօտենայ ու հետեւեալ խօսքերը կ'արտասանէ·

---

*(1) Որովհետեւ Մալաթիոյ նշանուած աղջիկներն երբեք չեն ներկայանար կեսրանցը կողմէ ոեւէ մէկը գտնուած տեղը. ուստի տանտիկինը ծրարով զաւկին զգեստները կը բերէր մէջտեղ որ անոնց վրայ ձեւուէր:*

*Դերձակը իր գործիքները հանելով «Աստուած* խէյիրլի *ընէ» կ'ըսէ ու կը չափէ կը կտրէ աւուրին կերպասը, շրջազգեստ, փոլքա կը շինէ (տես Բիւրակն, 1899, էջ 120):*

(2) *Էժնաս (ոսկիի տեսակներ):*

«*Ճանըմ*, էր ի՞նչ *չէլիր* ուտել է, ալ խնամի չինք, ճանճիկէր էղաք, *մայր* ըսես, գլխիս վերեւը նստիս, էկէլ տանդ պէս չուտես նէ: Անոր էրիկն արդէն ստիպեր էր, այս խօսքերէն ալ չզոհանալով՝ կը պնդէ որ իր դանդաղութիւնը վերցնէ, նա եւ առանց անսալու դգալին ընթրիքը կը շարունակէ: Ցիշեալ կերակուրներուն կը յաջորդեն քիւֆթէ,պամիա, բրինձէ բիլաւ, կարկանդակ, ձմերուկ, պանիր:

Կերակուրէն վերջ զուտ սուրճ մը կը խմեն ու կը մեկնին: Խնամին անոնցմէ քիչ մը ետք կենալով՝ տեղւոյն սովորութեան համեմատ ոսկին սեղմելով տանտիկնոջ ձեռքը՝ կը հեռանայ»:

Բ.

## ՀԱՐՍԱՆԻՔ

Հարսանեաց օրերը կը մօտենան: Ալ երիտասարդը 20—25 եւ աղջիկը 18—20 տարիները բոլորած են: Հոս, հազուադէպ է 20 տարին չհասած տղան եւ 12—15 տարեկան աղջիկը կարգել կամ հարսնացնել:

Հարսանիքէն մէկ երկու շաբաթ առաջ տղուն ծնողքը կամ ուրիշ մը կ'երթան խնամիին՝ հարսնիքի օրը որոշելու: Խնամին եթէ ջաղացք գացեր է, այսինքն եթէ այդ տարուան ՁԱԽՐԱՆ (պաշարը) պատրաստեր է, «Տատ աղէկ, եկէք այս ինչ օր տարէք» ըսելով կ'որոշէ օրը:

Կը մօտենան հարսնիքի օրերն, եւ երկու կողմէն կը պատրաստուին: Եթէ իրենք քիչ–շատ կարողութեան տէր են, օրեր առաջ հարսանեաց արթիւհացկերոյթ կու տան մասնաւորներու, ինչպէս կրօնականներու, ուսուցիչներու, շուկայի եւ տան հարեւաններու եւ բարեկամներու զատ–զատ: Նախ տղային տնէն կը հրաւիրուին խնամին իր բոլոր պարագաներով:

Հոս՝ սովորաբար հարսանիքները աշունը, եւ պսակը երկուշաբթի ցերեկին կ'ըլլայ: Անկէց 20—30 տարի առաջ կիրակի օրերը կը կատարուէր, եւ այն ատեն կէս օրին «Հինճէմուն, կամ հինճէմուտուն» (հինայում կամ հինայելու համար աղջկան տունը կ'երթային ու երկուշաբթի իրիկունը հարսառի կ'երթային:

*Յակոբ Պէննէեան* 1899–*ին գրած էր թէ* «Մալաթիացիք ընդհանրապէս հարսանիքին հանդէսը կիրակի եւ պսակը Երկուշաբթի կը կատարեն: Աղջկան տէրը շաբաթ մը առաջ հարսնցուին գլուխը կը դնէ, Հինգշաբթի անոր ազգական ու բարեկամ կիները մէկ մէկ նուէրներով (շապիկ, թաշկոն, սաւան, եւն․) *ճէհէզ* (օժիտ) ծալլել կու գան, զանազան տեսակ կերակուրներով փորերնին լեցնելէ յետոյ կը մեկնին, շաբաթ օրը ազգականներէն մին աղջիկը բաղնիք կը տանի, բերելէ վերջ ձեռքերն ու ոտքերը հինա քսել չեն մոռնար, սանիք հացէն զատ *գաթա* (իւղով հաց) կ'եփեն, որու մի մասը տղոց եւ աղջիկներու կը կերցնեն որ *տարըսը* իրենց ըլլայ: Աղջկան կողմին համար ալ ուրիշ նշանակութեան արժանի սովորութիւններ չկան:

Հարսնետէր կինը բոլոր ազգականներու եւ ծանօթներու հարսերն ու չափահաս աղջիկները «կօնաղ» (հիւր) բերել յետոյ, կիներու համար «դաhիկ» (հրաւիրակ կին) եւ մարդոց համար ալ յարմար մէկը որոշելով թաղերըն ու շուկան ղրկելով հարսանիք կը հրաւիրեն առ հասարակ[1] ։ Կեսուրը կամ դայիկը հրաւիրելու ատեն հետերնին ծրարով հաց կ'առնեն եւ պատշաճ դատած տուներնին մէկ մէկ հաց կու տան, հացով կանչուիլը մասնաւոր պատիւ մ'է հրաւիրեալներուն, ինչպէս որ մարդոց ալ հրաւիրագիրը։

Հրաւիրող կինը ամէն տուն մտնելով կ'ըսէ «Պանի․ Գ․․․էնց Բ․․․ խաթունը մախսուզ բարեւ ունի, հարսնիք էկէք, հարսըդ աղջիկըդ «կօնախ» ղրկէ, տէֆ ալ պիտի չալուի․․․»[2] ։

Հրաւիրեալ կիներ ու աղջիկներ հետզհետէ կը լեցուին հարսնետունը։ Մէկ կողմէն հացի խմոր կը թրեն տաշտերով, միւս կողմէն կաթսաներով կերակուր կը պատրաստեն ու կը լսուի թմբուկին թըմպ–թըմպը եւ ծափերուն շեփ-շեփըն եւ նուագներու ներդաշնակ ձայները։ Այսպէս չորս-հինգ օր շարունակուելէ յետոյ՝ երբ հարսնիքի օրուան առաւօտը կ'ըլլայ, «Ախպրռանուն» (փէս եղբայրը) կողմէն փեսան, *աղապաշիներն* ու 20—30 մարդիկ կը հրաւիրուին։ Բաղնիքէն գալերնուն պէս, սափրիչը գալով՝ փեսան իրենին–

(1) *Յակոբ Պէննէեան* (Բիւրակն, *1899, էջ 246*) *կը գրէ որ «պսակ ըլլալիք Երկուշաբթիէն ութ օրի չափ առաջ, Հացկերայթի Հրաւիրագիրներ կը ղրկեն. Երկուշաբթի կրօնական դասակարգին, Երեքշաբթի երեւելի անձերու, Հինգշաբթի ուսումնական կաճառի, Շաբաթ ազգականք եւ դրացիներու։ Վերոյիշեալ օրերուն մէջ Հրաւիրեալներ տանտիրոջմէն մեծ ընդունելութիւն կը գտնեն, գլանիկ, սուրճ եւեւ եւեւէ կը հանեն, նուագածուները, պատրաստ՝ հրամանի կը սպասեն երբ ամբոխը խանուի, նշան մը կը բաւէ անոնց, աշուղ տաւղահարը ունելիով տաւղի թելերուն կը զարնէ, ճպոտը ջութակին վրայ երթեւեկը կը շարունակէ, թմբուկը կը ձայնէ, առաջին անգամ մելամաղձիկ երգեցողութիւն կ'ընեն, ասոր կը յաջորդեն ներդաշնակ տոնաւորներ, յետոյ Աշըգ Քերէմի, Քէօրօղլուի պէս Թուրք շախրներու յօրինած երգերը ըսելով մեծ ազդեցութիւն կը ձգեն մտիկ ընողներուն վրայ։*

*«Վերջապէս օրին երեւան կ'ելլէ. մարդիկ սարոսը մնացածներուն ախպրանօղ (թագ. եղբօր) ըսելով կը կլլեն, կը խմեն ու կը խմեն, արբեցողները նուագածուներու դէմն անցած կը պարեն, ոչ մին կը մոմոայ, միւսը բերնէն ինչ ելածը չգիտնալով, կը ճչէ, ուրիշ մը Աղամայ պատառաքաղներով չոք-չոք կերակուր կ'ուտէ, արգանակը վրան կը թափէ, գլխարկը՝ գօտին ձգած ուր ըլլալը չի գիտեր, քղանցքը բացուեր, բաճկոնի կոճակները կտրած է, ասոնց մէջ եթէ օղի խմող չկայ, մսեղենի, տոլմաորրմայի քէյֆն ալ ան կ'ընէ»։*

(2) *Յակոբ Պէննէեան* (*Բիւրակն 1899. էջ 247*) *կը գրէ թէ «Շաբաթ առաւօտ դարձեալ տօներ կը տրուի ամէն անոնց, որոնք ծանօթ են հարսնիքի տէրերուն, յետոյ կիները հրաւիրելու համար դալլաք կը պտըտի, որ առաջ նոր հարսերէն, աղջիկներէն հիւր կը բերեն որ անոնց օգնութեամբ առատ հաց եփել կարենան. Կիրակին հրաւիրեալք հանդէսին մասնակցելով զայն միւսներուն կը մատուցանեն։ Իրիկունը նորէն հացկերոյթ, եւ այս կը տեւէ գիշերուան մինչեւ ժամը ինը եւ անկէ վերջը հայրը կը ժողվէ իր ամենասիրելի անձերը, փեսայի տան այրերը, աղապաշիները, նուագածուները բաղնիք կը տանի. թէ՛ եկած եւ թէ վերադարձած ատենին կ'երգեն, նմանապէս բաղնիքի մէջ ալ, արշալոյսի ժամանակ տուն կը վերադառնան։*

ներուն (աղապաշը[1], անձնուէր) մէջ նստեցուցած կ'ածիլէ, սափրիչը եթէ փորձառու մէկն է, օճառէ մօրուք մը կը շինէ փեսային երեսը, որ կը նշանակէ «փեսան ալեւորի օճառի պէս եւ երջանիկ օրեր տեսնէ իր կնոջ հետ», փեսայէն ետք կ'ածիլուին ախպրանուն ու աղապաշիներն ալ: Ինչպէս բաղնիքի, նոյնպէս ածիլուելու դրամը կու տայ, փոխարէն ընդունելով ոտնաման մը եւ քիչ անգամ *ղպուն* մ'ալ:

Փեսան մօտ տեղ մը կ'առանձնանայ, ի նշան ամօթխածութեան եւ քաղաքավարութեան: Հարսնեւորներն խռնուած են, քահանան կու գայ փեսան հագուեցնելու: Աղապպաշիներն կը բերեն փեսան ու փեսեղբայրը եւ անոնց նոր լաթերը: Քահանան կը սկսի «Արեգականն արդարութեան» շարականը. եւ երկու տղաք մին խնկածխիկը եւ միւսն մեղրամոմէ պառոթի[2] մը վառած կը կենան, եւ պաշտօնեաներ հանելով փեսայի եւ կնքահօր հին լաթերը նորը կը հագուեցնեն[3]: Իսկ հարսնիքի տղաքներն փեսային ափին մէջ նոր լաթը հագնելուն՝ բարձրաձայն կը կանչեն՝ «Թագաւորը լուսեղէն հանդերձ հագաւ, Աստուած շնորհաւոր արասցէ»: (Այս խօսքը չկրցեր էինք ստուգաբանել թէեւ, բայց շփում ունեցող կը կարծուի հարսանեկան հացին ու կերակուրին՝ «*Հերիսա*»ին հետ, քան թէ փեսայի փեսեղբայրներուն հետ): Յետոյ առաջնորդութիւնով փեսեղբօր խոնարհութեան յարգանքներ մատուցանելով բոլոր հանդիսականներուն զատ-զատ՝ կ'երթան կանանց կողմը:

ՀԱՐՍՆԱՄՈՒՏՈՒՆ ԵՐԹԱԼ.— Փեսան հագուեցնելէ անմիջապէս ետք կը պատրաստուին «Հարսամուն կամ հարսամուտուն» (հարսառ երթալ) բազմութեամբ, եւ այս բազմութիւնը կը բաղկանայ էգրիկ մարդիկներէ, տղաքներէ եւ 1—25 կիներէ: Այս վերջիններու թիւը միշտ կրնատ ըլլալու է, որ վերադարձին հարսն ալ հաշուելով զոյգ թիւ կազմեն, ի նշան այդ ամուսնութեան:

Կիները ձի կամ կառք հեծած կը հասնին աղջկան կողմը, ուր մէկ-մէկ սուրճ խմելէ յետոյ, քահանան «ՀԱԼԱՑ»ը կ'օրհնէ ու կը մեկնի, իսկ մարդիկը կը սպասեն լրումն կանանց սովորական արարողութեան: Կանանց արարողութիւնը, սակայն խօսքով չ'ըլլար, հարսնցուին անութներէն երկու հարս բռնած՝ մի քանիներ ալ մոմ ի ձեռին առջեւէն շարուած թափօրով կը տանին բազմութեան մէջտեղ դրուած բարձի մը մօտ. եւ բարձին շուրջ երեք անգամ դարձնելէ յետոյ, կը նստեցնեն եւ մոմազարդ ափսէի մը մէջէն շաղուած հին-

(1) *Փեսայի մտերիմ բարեկամներէն 2-3 հոգի, որ մինչեւ առագաստի իրիկունը հետը կը պտըտին:*

(2) *Տես բառամթերքին մէջ:*

(3) *Յակոբ Պէնճէեան 1899-ին այսպէս նկարագրած է (տես* Բիւրակն, *1899, էջ* 247).

*«Երկուշաբթի է, բոլոր կոչունքի հրաւիրեալները պարտք կը սեպեն ներկայ գտնուիլ պսակադրութեան Ս. խորհուրդին, կէս օրին քահանաները վարժապետներով մէկտեղ կու գան փեսին լաթը հագցնել: Եթէ դժբախտաբար անոր ծնողներէն մին մեռած է, հարսնիքի տան բնակիչները «Արեգակն Արդարութեան»ի ձայնը լսելնուն պէս հեծկլտալով եւ լացը կը բռնեն...»:*

նէ առնելով 1 դրուշնոց մէճիտի մ'ալ մէջը դրած ձեռքը կը հինայեն: Հարսընցուն ի նշան իր զօրութիւնը ցոյց տալու եւ ի խոնարհութիւն ձեռքերը քիչ մը գոցած ըլլալով՝ շատ դժուարութեամբ կը բանան: Յետոյ նոր լաթերը հագցնելով գլուխը կը կապեն, գօտին պզտիկ եղբայրը կը կապէ, մազերը կանխաւ հիւսուած են մօր տան կողմէն, մազի խոպոպները զոյգ կը թողուին դարձեալ ի նշան ներկայ ամուսնութեան, եւ հիւսուած ատեն մանչ զաւակ ծծցնող կնոջ մը կաթը կը կթեն վրան, որ սա ալ արու ծնի: Ուռենւոյ տերեւ կը դնեն ծոցը, որ կեսրոջ տան բոլոր անդամները այդ տերեւին պէս դողան ու գուրգուրան իր վրայ: Աղ կը ծրարեն թաշկինակին ծայրը եւ հաց կը դնեն ծոցը, որ բերելով փեսայի տան աղամանին եւ հացի սակառին մէջ դնէ որ համով-հոտով ըլլան իրարու հետ:

Հարսը հագուեցուցին, մայրը 8—10 հատ «զադայ» հարսնառ եկող կիներուն կու տայ եւ 2—3 հատ ալ իր աղջկան ծոցը կը դնէ որ կեսրոջ տունն իջնելուն պէս բաշխէ հանդիսականներուն (կիներուն աւելի): Հարսը կը հանեն դուրս եւ զարդարուած ձիու[1] վրայ կամ կառքի մէջ նստեցնելով եւ խընամիին «Շէն կեցիր, պապա, շնորհակալիք, Ասված հէմա էս դրանը *էհթաճ ու մէօհթաճ* չընէ» ըսելով խաղերով ու պարերով կու գան եկեղեցի: Հարսին հեծած ձին միշտ որձ պէտք է ըլլայ, նոյնպէս արու ծնանելու խորհրդով:

Հարսնեւորները դեռ չեկած՝ փեսան իրեններովը եկեղեցւոյն մէջ կը սպասէ յոտնկայս: Ձեռնտուութեան ատեն որ գլուխ գլխի կցելով կեցած են, նարպիկութիւն մ'ունին հոս ընելիք. այն է նոր ամոլը կ'աշխատի իրարու թթամատէն մատանին հանել եւ աջ ոտքը միւսին ձախ ոտքին վրայ կոխել որ ազդեցութիւն ունենայ իր կենակցոյն վրայ, ոմանք ալ (հարսնառ կիներն ու ազապաշիներ) մէյ մէկ զմելին բանալով կը բռնեն լրումն պսակադրութեան, չար հետեւանքներէ ազատ մնալու համար: Պսակը լրանալուն պէս, առանց հարսին եւ փեսային փոթէն մարդ անցնելու տեղի տալու քահանայք զանգակով եւ ծնծղայով կ'առաջնորդեն մինչեւ տաճարի դուռը եւ հոն «պահպանիչ» մը ըսելով հարսնետիրոջմէն մէյ մէկ նուէր կ'ընդունին: Նախորդ տարիներու մէջ «Պսակվէրացը» առագաստի իրիկունը փեսային տան մէջ կը կատարուէր, բայց հիմա եկեղեցւոյ մէջ կը վերջացնեն: Եկեղեցիէն ելլելու ատեն փեսին եւ հարսին փոթէն մարդ անցնել չտալն ալ խորհրդաւոր է, այդինքն զէշ հետեւանքէ զերծ պահելու համար:

Մինչեւ պսակադրութեան լրացումը, հարսնեւորներէն շատեր ալ դուրսը ԲԱԳՈՍԻ արարողութիւնը կատարած՝ հարսի ձիուն քով կը սկեն որ մի գուցէ հեծնելու ատեն տակէն մարդ անցնի կամ ապանդակէն քար անցընէ, նոյնպէս սոյն ամոլին իրարմէ պաղեցնելու չարամտութեան առջեւը առնելու համար:

Կ'ուղղուին դէպի տուն խաղերով ու պարերով, երբ տան բակին մէջ

(1) Դեռ 20-30 տարի առաջ որ կառք ալ չէր գտնուէր, Հարսը ձիու վրայ նըստեցնելով եղբայրները կամ ուրիշներ երկու քովերէն բռնած փեսային տունը կ'ընկերանային ու իրենց պա[illegible]ոիւնէր կ'ըլլային:

հարսը ձիէն վար պիտի իջեցնեն, կեսուրը տանիքէն կամ ՔԷՕՇԿԷՆ շուրս վար կը ձգէ կանանչ բղուկ մը, որ նոր հարսը վախնալով՝ միշտ հնազանդ ըլլայ իրեն:

Հարսնեւորները կը նստին՝ մէյ մէկ սուրճ ալ խմելով մեկնելու: Փեսան հոս ալ իւրաքանչիւրին ԹԷՄՄԷՆՆԱՀ[1] ընելով կը նստի մի քիչ կազդուրուելու: Նոյնպէս հարսը «Առջինեկ»ի (կնքամայր կամ առաջնորդող կին, որ ընդհանրապէս նոր հարս մը կ'ըլլայ) ծնկան վրայ գլուխը դնելով կը կազդուրուի: Այն ատեն կին մը հարսին ոտքէն կօշիկը հանելով՝ կեսրոջ կու տայ, կեսուրը կօշիկի աջ կռնակատին մէջ կորկոտ կամ կորեկ կը լեցնէ որ հարսը բազմածին ըլլայ: Ուրիշ մ'ալ պզտիկ տղայ մը կը նստեցնէ վրան, որպէսզի հարսն ալ մանչ զաւակ ծնանի: Հարսին ծոցէն գաղան հանելով՝ ծրաբր այն նստող տղուն կու տան եւ գաղան կը բաշխեն ներկաներուն: Կ'ելլէ հարսը եւ առջինեկի առաջնորդութեամբ բոլոր ներկաներու (բայց ոչ այր մարդոց) զատ-զատ ձեռքերնին կը համբուրէ, ձեռքը ձեռնընոնց (վարշամակ) մը եւ մինչեւ կէս մէջքը ծռելով, եւ այսպէս թէ՛ հարսը եւ թէ փեսան մինչեւ մէկ-երկու ժամ պէտք է ոտքի վրայ կենան:

Ալ հարսնեւոր չէ մնացած: Փեսան իրենիններով կ'երթայ ուրիշ տուն մը գիշերելու, որովհետեւ ներեւլի չէ փեսային մինչեւ առագաստի իրիկունը ո՛չ տուն մտնել եւ ոչ ալ հարսը տեսնել: Այդ երեք-չորս օրը հարսն ալ առջինեկին[2] ծոցը կը պառկի:

«ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԳԱԼ».— Հարսանեաց յաջորդ օրը «Երկուշաբթի» ըսուած հարստեսի արարողութիւնը կատարելու համար՝ հարսին մերենցը (մօր) տնէն բազմաթիւ կիներ կու գան, որոնց քանի մը տեսակ կերակուր պատրաստելէ յետոյ, կը բերեն հարսին ՃԷՀԻԶԸ (օժիտ կամ հանդերձեղէններ) ի տես եւ կը քրքրեն ներկաներուն առջեւ: ՃԷՀԻԶԸ կը պարունակէ կեսրոջ, կեսրոջ, տագեր ու տալոջ, փեսի եւ ախպրանոջ եւայլնի տրուելիք լաթեղէն ընծաներ, որ է անձեռոց, շապիկ, ծխախոտի եւ դրամի քսակ, առախջին (գտակ) եւն, զորս հարսը իր ձեռքովը պատրաստած է: Իբրեւ ՃԷՀԻԶ մօր տունէն օժիտ կը տրուի 10-էն մինչեւ 50—60 շապիկ, 1 զոյգ ոսկի կամ արծաթ ԹԵՒՆՈՑ (ապարանջան), 1 մանեակ (կերտանլըզ), մէկ քանի ձեռք բանկոն եւ զպուն, 1 ՍՐՄԱԼԸ թիկնոց (մեյթոն) եւ մէկ ձեռք «բաղնէց ՏԱԽԸՄ», այսինքն ԽԱՒԼՈՒ, թաս, ՔԷՍԷ, սանտր եւն.: Իսկ կեսրոջ տնէն 20—60 հատ էննաս ոսկի, 1—3 հատ մետաքսեայ զպուն, 1 թիկնոց, 1 ՀԻԼԱԼՊԱՇԸ բսուած եռանկիւնաձեւ եւ շղթայակիր զարդ, 1 զոյգ ոսկի կամ արծաթ օղ, մէկ զոյգ կօշիկ կամ մոյգ, մէկ պարսկական շալ եւն. եւն.: Վեր—

(1) Մինչեւ առագաստի իրիկունը փեսան պարտաւոր է ամէն հանդիպողի մինչեւ նոյն Թէմաննան ընել:

(2) Երիտասարդ, բայց ամուսնացած կին մը, որ նոր հարսին ուղղութիւն կու տայ, ըստ Գէորգ Մելիտինեցիի (Նախնիքներ, էջ 50: Երջանիկ ժամանակներ.. Հիմա այս տեսակ առաջնորդներու եւ ուսուցիչներու պէտք չէ մնացած...:

ջերս թիկնոցին տեղ եւրոպական ժԱՔԷԹ եւ տեղական մուճակին եւ կօշիկին տեղ՝ եւրոպականը կը տրուի:

Փեսան չորս հինգ օր կ'այցելէ բոլոր ծանօթներու, ազգականներու եւ դրացեաց տուները եւ ուր ուտել, խմել եւ զուարճանալէ զատ, ծրարներով պտուղ, միրգ եւայլն ալ կը հաւաքէ: Թէ՛ այս եւ թէ իրենց տրուած փեսա-հրաւէրի ատեն սեղանին մատռուակն եւ սպասաւորողը միշտ փեսան ու փե-սեղբայրն է. եթէ ուրիշներ փոխանորդեն, իրենք պէտք է յոտնկայս կենան մինչեւ ներկաներուն ցրուիլը: Փափաքելի է տեսնել այս ուրախութիւններու միջոցին գաւաթներու բախումը եւ լսել ներկաներու կարդացած բարեմաղ-թութիւնները: Ամէն մէկը խմելէ առաջ խօսքը փեսահօր ուղղելով «պապա, աչքդ լոս, աչքվընիս լոս, Աստուած շնորհաւոր ընէ, թագաւորը վաճառը շա-հէ, թուրը[1] կըյրուկ էնէ, մէկ հարսօք մէկ բարձօք զօքանայ, ՏԱՐՕՍԸ[2] ախպրնոջը[3], ՃԻՒՄԼԷ ԷՐԿԷՆՆԵՐՈՒՆ, ԿԸՆԱՄԻՇ ընողին տունը...» կ'ըսէ ու կը խմէ:

Մինչեւ առագաստի իրիկունը աղապպաշըներու եւ առաջինեկին միջեւ փոխադարձ հակառակութիւն մը կը սնուցուի, այսինքն ազապպաշըներն կ'աշխատին եւ կը հետամտին հարսին ու առջինեկներին ոտնամանները գող-նալ, անոնք ալ, կ'աշխատին փեսին եւ փեսեղբօր կօշիկներն գողնալ, յաջողո-ղը մասնաւոր փրկանքով մը (պտուղ, միրգ կամ հացկերոյթով) կ'ազատէ գողօնը:

Այսպիսի գողութիւն մըն ալ տեղի կ'ունենայ հարսառումի ատեն աղ-ջըկան տունը: Հարսի գացողներէն մէկը կը մոռնէ իրեն տրուած նուրբի գաւաթը եւ կը գրպանէ, եւ օր մը վերջ երբ աղջկան տնէն չփնտռուի, գաւա-թը տանելով ուրախութիւն մը կ'ընեն: Սակայն այս վերջինին շատ անգամ կը յաջորդեն կռիւն ու հայհոյութիւնը:

Նոր հարսը, ինչպէս ըսինք, կ'ունենայ ճեռնոց մը եւ երեսը քօղ մը: Այդ քօղը կը վերցուի առագաստի առաւօտը կեսրոջ կողմէ: Առագաստը կը շտկուի մասնաւոր առանձին յարկի մը տակ, ուր կը մտնէ փեսան իր ծնողաց ձեռքը համբուրելէ յետոյ, եւ ուր դեռ անկողին չմտած իրենց մօտ դրուած հրուշակը կ'ուտեն հարս ու փեսայ, զոր դրկած է զոքանչը, հարս ու փեսայ ատոր պէս իրարու հետ անուշ ըլլալու գաղափարով:

(1) Հին ատեններ փեսային մէջքը քսակ մը եւ գօտւոյն դեղանկար թաշկինակ մ'ալ կ'անցուէր:

(2) «Տարօս» թուրքերէն «տարըս» բառին աղաւաղեալն է, որ իբր բարեմաղթութիւն կը գործածուի: Տարը՝ կորեկ ըսել է, որ խորհրդաւոր ըլլալով, հին ատեններ հարսնեւորներուն եւ փեսային վրայ կը նետուէր բուռերով, ուսկից մնացած է տակաւին կօշիկի մէջ կորեկ լեցնելը:

(3) Ախպրանոջը միշտ ամուրի պատանի մը կ'ըլլայ:



# ՏԱՍՆ ԵՒ ՀԻՆԳ

Հարսանեաց տէրը դեռ ազատած չէ ծախքերէ, տակաւին «տասնեւ-հինգ»ը տեղն է: «Հարչէ տասնհինգը չըլլի, հարսը ՄԱԼ չ'ըլլիր» կ'ըսեն: Ուս-տի հարսանեաց հրաւիրակ կինը այս անգամ ալ բաղանիք կը հրաւիրէ բոլոր ազգականուհի կիները: Տասնհինգը տեղի կ'ունենայ հարսանիքէն 15 օր յե-տոյ: Հարսնետէրը եթէ բարեկեցիկ է, բաղնիքը «կապալ» կ'ընէ այդ օր: Իսկ եթէ աղքատ է, մինակ իր հրաւիրածներուն դրամը կը վճարէ:

Կնիկներու հարսանեկան արարողութեան պսակը հոս կը լրանայ: Հարս ու աղջիկներ հարսանեկան համազգեստով կեցած են բաղանիքի ներքին գաւիթը (հանուելու տեղ), երբ բոլոր հրաւիրեալները գան, ասոնց մէջ գտնուած նոր հարսերն ու բաղնեպաննուհիներ թափօր կազմած թմբուկով ու ծափերով նոր հարսը երեք անգամ կը դարձնեն շատրուանին շուրջը, եւ բաղ-նեպաննուհիներ իրենց զովանքներուն փոխարէն թէ' հարսէն եւ թէ հրաւիր-եալներէն կ'ընդունին դրամը՝ ճակատը եւ երեսի վրայ փակցնելով, իսկ լաթեղէնը ուսերուն վրայ ձգելով: Այս թափօրը կը յառաջանայ դէպի միջին սրահը, եւ ՆԷԼԻՆ ՍԷՐԻԻՍԻ բռուած աստիճանին վրայ, բաղնից լէկէնի մը հակառակ կողմին վրայ նստեցնելով լաթերը կը հանեն եւ մազի խոպոպները կը քակեն: Հարսը՝ ներս երթալուն պէս՝ բաղանեաց մէջ գտնուողներուն բո-լորին ալ ձեռքը կը համբուրէ եւ գոնէ պառաւ եւ միջակ կիները կը ՔԷՍԷՅԷ (յատուկ լաթով շփել) ու կը լոգցնէ, եւ ինք առանց շէնք շնորհք լոգնալու, ամենէն առաջ ելլել հագուելով կը պատրաստուի լոգուհիները հագուեցնելով վերջին անգամ մ'ալ ձեռքերնին համբուրելու:

Տասնեւհինգի յաջորդ օրը կեսուրը կամ մեծ ները նոր հարսը մէրենցը կը տանին, ուր այս առաջին անգամը միայն երեք օր կը մնայ եւ ի նշան ա-մօթխածութեան, մինչեւ որ ծնողքը կամ եղբարքը չստիպեն, իր երեսը չի բանար անոնց դէմ: Երեք օրէն յետոյ, նոյնպէս մայրը կամ եղբօրը կինը կը բերեն զինքը կեսրոջ տունը, երկրորդ եւ աւելի անգամներու համար տօնա-կան օրերու սպասելով՝ պզտիկ տղայոց հետ կ'երթայ ու կու գայ: Եւ այս վերջին անգամներուն մինչեւ ութ օր կը մնայ մօր տունը, բայց երբեւեկի միջոցը հետզհետէ կ'երկարի: Սոյնպէս փեսան զոքանչի տունը երթալու հա-մար առնուազն տարի մը անցնելու է, որ յետ այնու կամ փեսահրաւէր կը տրուի իրեն եւ ինքնին կ'երթայ մէկ քանի ընկերներով:

Դեռ ուրիշ նիւթի չսկսած հարկ կը սեպենք հարսանեաց առթիւ կնիկ-ներու երգած խաղերէն իբր նմոյշ հետեւեալ տողերը մէջ բերել, խնդրելով որ մեզմէ ալ ողջոյն խօսիք հայերէն բառի մը եթէ հանդիպիք: Որովհետեւ «Ամենայն գիշերս աշխատ եղաք եւ կալաք եւ ոչինչ»: — Կ'երեւի թէ դրացի ժողովրդեան բարքերուն հետ լեզուական ազդեցութիւնն ալ մեծ տեղ բռներ է մեր մէջ:

# ՄԷՐԷՆՑ ՏՈՒՆԸ ԼԱԹ ՀԱԳՑՆԵԼՈՒ ԱՏԵՆ

Եփւքսէկ էյվանլարտա պիւլպիւլլէր էօթէր·
Պիւլպիւլըն ֆիղանը ալեմէ եէթէր,
Սանա այըրըլըգ վար էօլիմտէն պէտթէր·
Կէլ անամ, կէլ պաճըմ, կէլին օլասըն,
Աղլամա, աղլամա, խաթուն օլասըն:

Իւչ եօլըն չաթընտա պէրպէր տիւքանը,
Անանտան մը էօյրէնտին սէն պու իֆղանը·
Պու էվի սօրարսան գըզլար մեքեանը·
Կէլ անամ, կէլ պաճըմ...

Սէնի կէչիրիրլէր տէլիքլի տաշտան,
Սէնի այըրըրլար էշտէն եօլտաշտան,
Կէօզլէրին տօլանագ գանիլէ եաշտան
Կէլ անամ, կէլ պաճըմ...

Էլինին կընասը չամուրտան մօ՛լա·
Կէօզիւնիւն սիւրմէսի քէօմիւրտէն մօ՛լա·
Շու գըզըն եիւրէկի տէմիրտէն մօ՛լա,
Կէլ անամ, կէլ պաճըմ...

Էլինին գընասը ալ կէրէք իտի·
Կէօզիւնին սիւրմէսի մօր կէրէկ իտի
Շու գըզըն պապասը սաղ կէրէք իտի
Աղլամա կէլին օլասըն...

Զամուրա տաղ աթման, պաթարտէ կիտէր,
Ղարիպէ գըզ վէրմէն, եիթէրտէ կիտէր,
Անայը պապայը թէրք էտէր կիտէր:
Կէլ անամ, կէլ պաճըմ...

*
**

Կէլինէ կէրէքտիր անա,
Աղլայայտը եանա եանա,
Իքի կէօզիւն պիրի անա,
Աղլամա, կէլին օլասըն
Սապր էյլէ խաթուն օլասըն:

Կելինէ կերէք պիր պապա·
Աղլայայտը գապա գապա,
Իքի կէօզիւն պիրի պապա,
Աղլամա, կելին օլասըն
Սապր էյլէ խաթուն օլասըն:

Կելինէ կերէք տիր պանը,
Աղլայայտը անը անը,
Իքի կէօզիւն պիրի պանը
Աղլամա, կելին օլասըն
Սապր էյլէ խաթուն օլասըն:
Կելին օլան պինէր աթա,

Ալ տօլաղը տութա տութա,
Կիտէր մահլէմիզտէն էօթէ,
Աղլամա, կելին օլասըն
Սապր էյլէ խաթուն օլասըն:

Թօրպայը տուզուզ գօյան գըզ,
Մահլէի ինզիզ գօյան գըզ,
Անայը գըզուզ գօյան գըզ,
Աղլամա, կելին օլասըն
Սապր էյլէ խաթուն օլասըն:

Կելին աղլար խաշը խաշը,
Կէթմէմ տէյի սալլար պաշը,
Կէթիրին աղա գարտաշը,
Աղլամա, կելին օլասըն
Սապր էյլէ խաթուն օլասըն·

## ԱՂՋԿԱՆ ԲԵՐՆԷՆ

Անապ անամ աշը պիշիրիր մօ՛լա,
Քիւփլէթի պաշընա տէվշիրիր մօ՛լա,
Պէնի տէ փիքրինէ տիւշիւրիւր մօ՛լա,
Կօ, կէյինէիմ այրըլըղըն տօնլարը,
Արարտէ պուլամամ պէն պու էվլէրի:

Անապ անամ համամա վարըր մօ՛լա,
Եունտունաղըմ երլէրի կէօրիւր մօ՛լա,
Գըզըմ նէրտէ՞ տէյի չաղըրըր մօ՛լա,
Կօ, կէյինէիմ այրըլըղըն տօնլարը,
Արարտէ պուլամամ պէն պու էվլէրի:

Անամ պէնի խանա խանա աղլասըն,
Ալընը չըգարըպ գարա պաղլասըն,
Պիր գըզը տահա վար պէնի նէյնէսին,
Կօ, կէյինէիմ այրըլըղըն տօնլարը,
Արարտէ պուլամամ պէն պու էվլէրի:

Դ.

## ԾՆՈՒՆԴ ԵՒ ՄԿՐՏՈՒԹԻՒՆ

Վերջացան թմբուկի ձայները ու պարերը: Ալ «Տանեւիինգ»ն ալ եղած է: Վերջապէս, ալ հարսը իրենց ՄԱԼ եղաւ, լաւ եւս է ըսել լուր ու մունջ գերուհոյ մը տիրացան: Որովհետեւ ներելի չէ նոր հարսին ո՛չ իր երեսը բանալ եւ ոչ ալ խօսիլ իր սեռէն չեղող, ընտանեկան թէ դուրսէն, եւ ոչ մէկուն հետ: Կեսրոջմէն, տալոջմէն եւ ներոջմէն եւ իր սեռէն եղողներուն բոլորին ալ իր երեսը կը բանայ, բայց խօսելու համար տարի մը համբերելու է: Բացառութիւն է մանր տղոց հետ խօսիլը, այն ալ առանձին ու ցած ձայնով: Ամուսնոյն հետ կը խօսակցի մինակ գիշերը եւ ոչ «Լօս աչքոք»: Տօլաղը կամ եազման, որ դէմքը վարագոյրն է, վայրկենապէս կը ձգէ, երբ որեւէ այր մարդ դիտէ կամ ներկայանայ: Շատերը զաւակներու ու թոռներու կը տիրանան ու դեռ չեն համարձակիր կեսրայրին ու տագեր հետ խօսիլ: Եթէ խօսին, երեսնին ծածկուած եւ ցած ձայնով պէտք է խօսին: Նոր հարսին համար լեզուն կը հասկցուի միշտ նշանացի եւ «Այո»ին տեղ «Հըփ» ու «Ոչ»ին տեղ «Ցըն» կը պատասխանէ: Նոր հարսը ընտանեաց անդամներուն եւ ուրիշներու ներկայութեանը փեսային ոչ ջուր, ոչ սուրճ եւ ոչ ալ ուրիշ բան չի տար, նոյնպէս ալ փեսան, փոխադարձաբար իրմէն բան մը չուզելուն պէս, իր հօր, մեծ եղբօր եւ անոնց տարեկիցներուն ներկայութեան չի կրնար սիրել իր զաւակը: Նոր հարսը կարելի չէ որ տան ոեւէ անդամներէն առաջ անկողին մտնէ, բոլորին ալ լաթերը հանելով պէտք է պառկեցնէ որ յետոյ ինք ճրագը մարելով պառկի: Պէտք է նոյնպէս առաւօտէն առաջ ելլել ու հագուեցնել զանոնք, լուացման ջուր պատրաստել եւ անձեռոց բռնել, կրակ վառել եւ կերակուրի ջուր տաքցնել, սուրճ եւ թէյ եփել եւն.: Այսպէս մեր նոր ու մունջ հարսը կը ստանձնէ առտնին մէն մի աշխատութիւն, կար, կերակուր եփել եւ խմոր շաղել ու լուացք ընել, միեւնոյն ատեն տոկալ աշխատութեան ծանրութիւններուն, բնաւ չտրտնջալ, դիմանալ տաքին ու ցուրտին սաստկութեան, իր վրայ փայլեցնել ամէն տեսակ պարկեշտութիւն եւ ամօթխածութիւն, հընազանդիլ մեծին ու պզտիկին ամէն մէկ հրամաններուն:

Կ'անցնին ամիսներ ու տարիներ ալ: Բնական է, Աստուած կու տայ որ մեր մունջ հարսը կը յղանայ, ոչ ինք եւ ոչ տնեցիները (կեսուրը եւ ները) չգիտնալով պատշաճ նախազգուշութիւնները, յաճախ տեղի կը տրուի վիժ–

մաՆ եւ այլ հիւանդութեան, մինչեւ իսկ մահուան: Որովհետեւ ենթական արդէն մունջ, չի կրնար ինքզինք յայտնել, միւսներուն համար ալ հոգ չէ թէ նէ միշտ հակառողջապահապէս կ'ընթանայ: Հերիք է որ նոր հարս մ'ունին, ուշ թէ կանուխ ծնունդ մը կ'ունենայ հարկաւ: Այլեւս ինք ալ մայր մ'է, թող հոգայ ինքզինք «Ասված ՏԵՐՏ տանէ, ՏԷՐՄԱՆՆ ալ ՊԱՐԱՊԱՐ կու տայ»: Սակայն մեր նպատակը առողջապահութիւն քարոզել չըլլալով՝ չշեղելու համար դառնանք մեր նամբան:

*
**

«Եւ եղեւ առաւօտ եւ եղեւ երեկոյ, եկաւ օր ծննդականի»: Երկունքի ցաւերէն կը տառապի նէ: Տնեցի այր մարդիկը, ինչպէս եւ ամուսինը, կը հեռացուին ծնանելու տեղէն: Ճամբորդը «պունկ կը դնէ» եւ դեռ դայեակը չժամանած «լոյս աշխարհ» կու գայ, դայեակը իր պարտականութիւնը կը կատարէ, այսինքն կը լուայ նորածինը, պորտը կը կապէ, կ'աղէ եւ կը փաթաթէ խանձարուրի մէջ: Տղաճգանը կ'երթայ անկողնոյն մէջ, քովը առնելով իր նորածինը: Բարձին վրայ կը դրուի մկրատի մը ծայրը մխուած չոր սոխ մը, որ Մեզմէ աղէկները կամ Ալը չյանդգնին գալ ու յափշտակել երախան: Սոխին մօտ կու գան շատ անգամ պատկերազարդ «Համայլի»ն եւ ԹԼՍՄԻ նախշուն թասը:

Դայեակը մինչեւ մկրտութեան օրը քանի մը հեղ գալով կը լոգցնէ երախան: Եւ քանի մը պտուղ տանելով կնքահօր՝ կը հրաւիրէ որոշեալ օրը եկեղեցի գալ եւ գրկելու երախան: Կնունքը ընդհանրապէս ծննդենէն ութ օր յետոյ կը կատարուի, եւ Կիրակիի հանդիպեցնելով մասնաւոր պատարագ ալ կը մատուցուի· խորհրդոյն հոգեւոր մատակարարութեան վրայ, իրենց հաւատքը պինդ է, բայց կնքահայրութիւնը սովորական բան մը եղած է, կորսնցնելով՝ յարգանքի եւ կրթելու աւագ եւ փոխադարձ պարտականութիւնները: Երախան կը մկրտուի միմիայն դայեակի եւ կնքահօր ներկայութեանը, կնքահայրը խանձարուրին վրայ կը ձգէ մէկ-երկու կանգուն տպածոյ, եւ մկրտութենէ յետոյ քահանային եւ դայեակին հետ կ'երթայ տղաճգանին տունը եւ հոն կը նաշէ, ուր ներկայ կ'ըլլան մօտակայ պարագաներէ մի քանի մարդիկ եւ կիներ ալ: Կիները, ինչպէս եկեղեցւոյ մէջ, նոյնպէս տունը կը համբուրեն երախան եւ կը խմեն մէյ մէկ ումպ միւռոնի ջուր: Կիները մկրրտութենէ առաջ, ինչպէս յետոյ ալ, տղաճգանին կը բերեն մասնաւոր կերակուրներ եւ իբրեւ «տղատես»ի եկող՝ պարտքերնին կատարած կը սեպեն: Բայց անդրանիկ ծննդեան կամ «կթտուք»ի պարագային շատ տարբեր է իրենց վերաբերումը:

ԿԹՏՈՒՔ.— «Կթտուք կամ կնկտուք»· առաջինն է «կթել»էն, իսկ երկրորդը կիներու բազմութենէն առնուած, ինչու որ «Կթտուքի օրը, որ տեղի կ'ունենայ անդրանիկ զաւկի մկրտութենէն մէկ երկու շաբաթ յետոյ, կանուխէն որոշելով կը հրաւիրուին ու կը հաւաքուին տղաճգանին բոլոր պարա-

գաները եւ կու գան «տղատես»ի, իրենց հետ բերելով յատուկ նուէրներ, նո-րածինին համար՝ միրգ, պտուղ, իսկ դրամ՝ կեսրոջ ու դայեակի համար: Կթտուքը կը կատարուի սապէս·

Կեսրոջ թէ զոքանչի կողմէն կիներու լեզէոն մը խռնուած է, բոլորն ալ պճնազգեստ եւ զարդարուած· նոր հարսեր փափուկ ու նազելիօրէն կը սպասաւորեն մէջ (միջակ) ու մեծ կիներուն: Սուրճին եւ օշարակին կը յաջորդեն ճոխ սեղաններ բազմատեսակ կերակուրներու: Վերի բարձը գրաւած է խնամին, որ կը մեծարուի իւղալից եւ համեղ պատառներով: Բայց խնամին պէտք է զգուշանայ, իր մատներու եւ դգալի երթեւեկը դիտողութեան ենթարկուած է, դգալը ծանր եւ պատառը մանր տարուբերելու է: Եւ ինք ուրիշներէն առաջ քաշուելու է սեղանէն:

Սեղանը վերցուեցաւ: Ներկաներու բերած բոլոր ընծաները ի տես ձգուած են մասնաւոր չուանի մը վրայ, կեսրոջ եւ զոքանչի կողմիններունը զատ-զատ: Նոյնպէս նշանուած աղջկան համար խնամիին բերածը:

Սեղանը վերցուելուն պէս՝ դայեակը երախան գիրկը առնելով կը ներկայանայ բոլոր հանդիսականներուն, որոնք կը համբուրեն երախան եւ «վարձք կատար» ըսելով իրեն ալ նուէրը կու տան:

Դայեակը տղաձգանի տնէն նուէր կ'ընդունի ուրիշ անգամներ ալ, մէկ մը «Պորտ կտրելուն» եւ մէկ մ'ալ երախան «միւռոնէն հանել»ուն համար[1], պորտ կտրելու ատեն մկրատը պորտին վրայ դրած կ'ըսէ· «Պորտ կըյրիմ», ներկաներն ալ կը պատասխանեն, «վարձք կատար», իսկ միւռոնէն կը հանէ հետեւեալ կերպով: — Այդ օր երախան լոգցնելով բաւական մը բամպակ կը փռէ տակը եւ թեւերէն ու ոտքերէն բռնած վերցնել ձգելով կ'ըսէ· «Տերնէն ըյնիս բամկի վրայ, մէրտիկնէս ըյնիս բամկի վրայ: Ուխտատեղ երթալն ԻՔԷՆ տարէն ըյնէս բամկի վրայ· ՔԷՕՇԿԷՆ ըյնիս բամկի վրայ, օլորտած տեղդ ըյնիս բամկի վրայ· բաղնից սէքիւէն ըյնիս բամկի վրայ, քայլած վազած տեղդ ըյնիս բամկի վրայ» եւն·:

Կթտուքի կամ տղատեսի այս սովորութեան «պղինձ կործում» կ'ըսեն տեղացիք, որ ինչպէս ըսինք խօսքով չ'ըլլար: Տնակործան սովորութիւն մ'է ասի· կթտուքի առթիւ կեսրայրին քսակը, իւղին բղուկը, բրինձին տոպրակը եւն·, բոլորովին կը պարպին դատարկ կ'ըլլան: Իսկ կթտուք չընելը մեծ մեղք է: Աւելորդ չեմ սեպեր այդ առթիւ տուներու մէջ շատ անգամ պատահած հետաքրքրական բանավէճը մէջբերել տեղական լեզուով·

Կեսուրը·— Քա մարդ, գալիք կիրէկի կթտուք ունիք· վաղը մէկալ օր ալ պէտք եղած բաները եավաշ եավաշ առէք ու հազր ընիք:

Կեսրայրը·— Կթտուքն էր պակաս, իմ հալիս հայից էնուր քէփին հայից· ի՞նչ պիտ առնայի:

— Մեխքս ուտքի, մարդ, հէչ էդպէս բան կ'ըլլի· ելը ալէմը մարդու

---

(1) Երախան միւռոնէն հանելու կարգը՝ քահանաներու ղանցառութեամբ՝ փոխանցուած է դայեակներուն:

ֆուլէշը կը թուքան:

— Էլն իշ կը խառնուի: Իս պարտքին տակը խըրըր խըրըր կէնիմա, պարտկանողը ճառքէն դօռս չիմնա էլլարա, օմուզ հեծեր հա փարա կսինա, չգէտիմքի ինչ էնիմուք հէրքէսին բերանը մէյ մէկ բան չէնիմ: Դուն էլիրիս «կթտուք»ը աշքս խօտիսա:

— Էնչ էնիմ հըմպա, չէնելօք կ'ըլլի. խնամի չունենայիրնէ հէր նէ իսէ. վաղը էնի գալիք ըլլիմնէ ինչ երես պիտի ունենաի: Տիյա տալանկս ալ չէրկնուի, աղջինը եատ էրին. կ'ուզեսայու...

— Տեղդ ծանր նըստիր, կընիկ, պէտք էլլամ կընըոցը քէ՞փը 'պիտի հացնիմ. խնամին չի գանէ վավ կու գայ թող գայ: Գալը բարի, չը գալը կէնց գալը բարի, քեզ ուզողը լեղի կայֆէյիտ ա կանահաթ կինէ կու գայ:

— Իս ինչ ճռն բերեմ գլխուս: Հերքէսին ետեւը մարդ կարվեր կան-չերիկ, կարված կաթերնին կաթմէրնին առեր էք. (քիչ մը լռելէ ետքը լալու ճեւով). Մա՛րդ, շունըդ ըլլիմ, եանըքի առաշքը քանի մի կրուշի բանէ, սա մէկ կառսամպօնա անցնէէուք, հէմա բան մի ըսիմնէ երկուք թող ըլլի:

— Օլմազ, կթտուք չպիտի ըլնի ըջլի իմ տունս, տընակն էվրած. կէ-րէկնուան ժամուն եասսաղը չը լսեցի՞ր. «Հէր հում տունը կթտուք ըլլինէ պիտի բանադրվէ» ըսաց տէրտէրը: Հէմ դուն... օղլուն ախջինը զէյէր. Պ...ին, Գ...ին կնիկնա չէիր էնոնք էնինէ՝ բան ըսողա չըլլիր. էնոնք դմա-կոքին դուն էնէլիք ըլնիս նէ կախքին մէջ խախկտոր կէնին: Հէմ «Հէր կէսը ընկողնէն կէօրէ օկկը կերկընճնէ»: կազին պիտի հայկմուք... պիտի խզտէմ:

— Տէրտրուն ծանուցումը հրէն ընթրօսին հմար էր. Հրենա դաժա հարսը չաղա բերեր է: Կթտուք չէնէ, մէկին լօխմամի բան չի կերցնէ տէյի ելաւ ծանուցում եասսաղ էրաց: Ինչէ՞ հըմպա տահա առջօները Մ...էնց տունը երեսկինը, աղջիկը մերճագերօք լսուեր էին: Միքա մարդիք շուքուր դունա ըխթիպար ունես: Ջէնածըդ գետինն է մնացեր, ի՞նչ, ըսի չեղած չըլ-լիր, գիտցած եղիր ու տանդ համը հոտը կը փախչի: Կէլլամուք մէկ թէք հարսիս շըլլին ծուռ կը թողում: Անա մարդու զաւակ է:

— (Ողիքը թոթուելով) օյ, օյ, կնիկ չէ՞ք, Ասված առաջք շէրէրնուդ, եատքը խէյրերնուդ պեհէ, գիտեմ նորէն մէկ էրկու հէրեր դուրուշ ախշրքինս պարտքին տակ պիտի խօթէկ իս: Ըսէք տեսնամ, իշ պիտի առնուինէ:

— Ըսի հա, ի՞շ պիտի առնուէիուք, կէօվդէ մի միս, լիտեր մը եղ, էր-կու լիտեր բրինճ, էրկու ըէք լիր հէյվա, կէս լիտեր շէքէր, բաամբ ճմերուկ, մէկ երկու լիտեր հաւեղ, քիչ մա քիւֆթէցու միս, պօլտիկ: Էկէր մէկ էրկու կապուրկու (փորլից) ցու ալ պէտք ըլլինէ էն ա եատքը կ'ըսենք: Դուն թող չըլլի կ'ըսէյիրա հըմմա, չէիր ըլլիր, էսօր քզիէ նէ՝ վաղն ա էնուրնէ: Գալող-ները հրէնք պարապ գային նէ՝ ապէս օրսէ կը կառվեյաք, էկօեու հէրքէս ամէնն չէշիտ խըլաաթը կը բերեն:

— Ալ խօսքը չեն երկնցներ: Պարտք նազդ առնաք ըսաք տահա, վան-քաց տղուն ետէ էշը շուկան կարվէցէք ու ինչ է նէ առնամուք. կթտուք կէ-նէքա, յում եկըթը խառնէկա նէ խառնեցէք:

## Դ.

## ՄԱՀՈՒԱՆ ԵՒ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Երբ հիւանդը ալ ուշակորոյս, խօսիլ ու լսելէ դադրի, հոգեվարք է[1]։ Արդէն կիները բոլորած են անկողնոյն շուրջ, լուր ու մունջ եւ գլուխնին տատանելով ակնապիշ կը սպասեն յետին շունչին վճարման։ Այս ճգնավայրկեանը, որ «թունչ առնալ տալ» կ'ըսուի, եթէ երկար տեւէ, ենթակային բացակայ եղող տեւէ սրտահատորին լաթերէն հատ մը կը փռուի վրան կամ նորեկ նամակը կը դրուի երեսին վրայ որ շուտ աւանդէ հոգին։

Վաղ կամ անագան, հիւանդը մեռնելուն պէս այն մունջ նստողները կը փղձկին ահա, ու լաց ու կոծ եւ ողբերու ձայները կը բարձրանան։ Ալ միջցին ճարպիկ մէկը մեռեալին երեսը աղօթքում դարձնելով՝ չաւան կը քաշէ կապով մը, որ բերանը բաց չմնայ եւ աչքերը կը փակէ սոսկադէմ չերեւնալու համար։ Ուրիշներ ալ լուալու ջուր եւ պատանք կը պատրաստեն։

Ննջեցեալը եթէ այր մարդ է, Երուսաղէմ գացող մղտեսի մը, իսկ եթէ կին կամ աղջիկ է, երէց կին մը կամ դայեակ մը կը լուանայ։ Եթէ «Լօս պատանք ունի, անով, եթէ ոչ տեղական կտաւով կը պատեն բերանին վրայ նշխարք մը, ականջները եւ ռնգունքը բամպակապատ խունկ եւ ձեռքի մատներուն փաթ մեղրամոմ դնելով։ Ասոնք կը նշանակեն իր յոյսն ու լոյս հաւատքը. պատանքը կարելէն յետոյ, մէջքը կը կապեն խաչաձեւ «կուրծքտիք»ը։

Հիւանդը ինչ ատեն ալ մեռնի, մէկ քանի զուժկաններ անմիջապէս լուրը կը հաղորդեն բոլոր ազգականներու եւ ծանօթներու, որոնք կու գան եւ դագաղով ուսամբարձ կը տանին եկեղեցի[2], ուր Ս. Պատարագ մատուցանել եւ եկեղեցւոյ կարգը կատարելէ յետոյ, մեռելի տիրոջ առաջարկով եկեղեցւոյ բոլոր պաշտօնեաները կը հրաւիրուին յուղարկաւորութեան։

Հանգուցեալին տունը որչափ հեռի ալ ըլլայ եկեղեցիէն, վերջին հրաժեշտի համար, դրան վրայ հոգեհանգիստ մը ընելով կ'ուղեւորին գերեզման։ Յուղարկաւորներու էն ետեւէն կ'երթայ ընտանեկան պարագան։

Գերեզմանատան մէջ մինչ ժամկոչը սեւ փոսը կը ծածկէ, ներկաները՝ ի պատիւ մեռելի տիրոջ քահանային յիշէք մը տալով՝ օրհնել կու տան նոր

(1) Գէորգ Մելիտինեցի (Նախճիրներ, էջ 54) կը գրէ. «Բոլոր դուռ դրացիներ, ազգականներ կարգով այցելութեան կ'երթային հիւանդին, ծեր պապեր ու մամիկներ ժամերով կը մնային հոն, բայց միշտ մխիթարական խօսք մը, հետաքրքիր եւ սփոփիչ առակ մը շրթունքներուն։

(2) Ճանապարհին ամէն անցորդ կը կանգնէր մէկ կողմ, յարգանք կը մատուցանէին դագաղին, ապա աղօթքի խօսքերը շրթունքներուն կը շարունակէր ճամբան։ Շատեր նուիրական պարտք համարելով դագաղը կը կրէին տասը եւ տասնհինգ քայլ, ապա կը դառնային իրենց գործին. իբրեւ յուղարկաւոր թափօրին նայող մը տխրութեամբ պիտի նշմարէր թէ ինչպէս բազմութիւնը յառաջխաղացման ընթացքին իր մէջ կ'ունենար ետառաջ շարժումներ ծովու ալիքներու նման բայց կարգապահ։ Ամէն 15 20 քայլ անգամ մը չորս դագաղակիրներ կը փոխուէին, մասնակցողները յամր քայլերով կը մնային ետ, իսկ նորեր կ'արագացնէին իրենց քայլերը դէպի դագաղը («Նախճիրներ» էջ 55)։

ՏՆջեցեալը, որ քահանան ալ օրհնելով կը կնքէ հողտապանը ու կը վերադառնան տուն «թաղման փիլաւ»ը ուտելու:

Հոս սեւ հագնելու սովորութիւն չկայ: Մեռեալը եթէ տարեւոր կամ տղայ է՝ երկու օր, իսկ եթէ չափահաս ու ցաւալի է 4—5 օր տունը նստելով՝ սուգ կը պահէ: Իսր սգակիր՝ այր մարդիկ մինչեւ երեք-չորս ամիս չեն ածիլուիր, կիներն ալ բաղանիք չեն երթար մինչեւ որ բարեկամ մը կամ ազգական մը գալով չտանէ զիրենք:

Սուգի առաջին օրուան առաջին կերակուրը մեռելի տունէն կ'եփուի, որ «թաղման փիլաւ»ն է: Յետոյ դրացիներ, խնամիներ ու ազգականներ կը բերեն մէկ-երկու տեսակ կերակուրներ, մինչեւ որ սուգի օրերը լրանան: Աս կերակուրէն աւելցածը մեռելի տունը կը թողուն, մինակ հաց մը հետերնին ետ կը տանին որ մահուան սուգը իրենց տունը չփոխադրուի:

Սուգի տուն մխիթարանքի եկողը, ի հարկէ ուրիշ խօսք չգտնալով՝ նստելուն պէս ներկաներուն կ'առաջարկէ «Հրամմեցէք հարմեր մի ըսէք»: Կ'ըսեն, սակայն շատեր անոր օրինակին հետեւելով՝ իրենք ալ կը կցին «Հրամմեցէք...»ը, այնպէս որ 20—30 հոգի կ'առաջարկէ: Եթէ քահանայ կենայ, քահանան միայն կը համառօտէ «Հոգոցն»ով մը:

Կիներու այս այցելութիւնն ալ հետաքրքրական է, ինչպէս հիւանդտեսի ատեն, նոյնպէս երբ լսեցաւ թէ այն ինչ տունէն մէկն է մեռած, խումբ-խումբ կը դիմեն հոն: Անոնց մէջ՝ լալական կամ այդ մօտ օրերուն իր մօտ պարագաներէն ոեւէ ցաւալի մէկը կորսնցնելու դժբախտութիւնն ունեցող մէկը, անմիջապէս առաջ նետուելով կը փարի հանգուցեալի մօր, կնոջ եւն.ի վիզը ու կը սկսի ողբալ, պայմանաւ սակայն որ ինչպէս «Հարսներգ»ին, նոյնպէս այս ողբերուն մէջ, բնաւ հայերէն բառ եւ հանգուցեալին հանգամանաց վրայ բնաւ բան մը չգտնուի, եւ միայն իր մեռելը լայ:

Այցելուհիք մինակ ըլլալով չեն բաւականանար, քիչ մը հանդարտելնուն պէս սա տխուր առիթէն իսկ օգտուելով մեռածը կը կարգեն կամ կ'ամուսնացնեն եւ այսպէս մէկ-երկու ժամ անպատշան խօսակցութենէ, բամբասանքէ եւ հող եղողներուն ՆԱԽՇԸ առնելէ յետոյ, իրենցմէ ամենէն տարիքոտը ով որ է, ոտքի ելլելով՝ ի դիմաց բոլորին «Հարմէրը» ըսելով կը մեկնին: Բայց այդ տան աղբիւրը ճռռքերնին պիտի լուանան եւ ուղղակի տուներնին պիտի երթան որ ուրիշին կամ իրենց տունը սուգ չփոխադրուի:

Ալ մխիթարութեան եկող չկայ, հանգուցեալին զգեստներն ու անկողինը լուանալով, եթէ աղքատի մը բան մը տուին, լաւ, եթէ ոչ անզգոյշ եւ անխտիր կը հագնին լաթը ու կը պառկին անկողնոյն մէջ:

ԿՏԱԿ.— Մալաթիոյ Հայուն համար հազուադէպ է որ մէկը կենդանութեանը որեւէ կտակ ընէ, միայն մահամերձ վիճակին մէջ, այն ալ ուրիշներու առաջարկութեամբ աննշան եւ ջնջին գումար մը կը կտակէ, որուն քանակը 1000 դրուշը չ'անցնիր:

Երբեմն անշարժ կալուածներ ալ կը կտակուին, այն կալուածները մանաւանդ, որ ժառանգորդներու մէջ կռուայ առարկայ կ'ըլլան:

Եթէ ննջեցեալը ինք կտակ չէ ըրեր, անոր պարագաները իր յիշատակին կտակի պէս բան մը կ'ընեն եւ կը բաժնեն եկեղեցւոյն, վանքերուն, քահանաներուն, դպրոցներուն, լուսարարին եւ ժամկոչին ու աղքատին: Եւ կարդալ կու տան եկեղեցւոյ մէջ այդ կտակագիրը:

## Զ.

# ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ ԲԺՇԿՈՒԹԻՒՆ

## (ՀԻՒԱՆԴՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ԺՈՂՈՎՐԴԱՅԻՆ ԴԵՂԵՐ)

*Մալաթիա առողջապահիկ տեղ մը չէր, իր ճահճային դիրքին պատճառով: Ջերմը մշտնջենական սպառնալիքն է տեղացի բնակչութեան, որ կլիմայական այս ճախող պայմաններու դէմ մաքառելու համար պէտք եղած զարգացումն ալ չունէր: Այս պատճառով հիւանդութիւններ շատ տարածուած էին:*

*Դժբախտաբար միջավայրն ալ հեռու էր ժողովուրդին միտքը լուսաւորելու նպաստելէ, հետեւաբար գիտական բժշկութեան կարեւորութիւնը քիչ ըմբռնուած էր:*

*Ժողովուրդը մեծ կարեւորութիւն կու տար առնին դեղերու, մեծ մասամբ բուսական եւ* ախթերներէ *հայթայթուած:*

*Թուրք կառավարութիւնը չափազանց անփոյթ եղած է հանրային առողջապահական սպասարկութիւններու հաստատութեան և բժշկական խնամք հասցնելու ժողովուրդին:*

*Շատ քիչ ըմբռնած էր բժիշկին եւ դեղին կարեւորութիւնը եւ սափրիչներ ու պառաւներ իբրեւ բժիշկ կը գործէին, յաճախ չարախօսելով բժիշկներու դէմ եւ զանոնք վարկաբեկ ընելով:*

*Անցեալ դարուն կէսէն աւելին է որ վկայեալ բժիշկներ եւ դեղագործներ — մեծ մասամբ հայ — Մալաթիա հաստատուած են, որոնց հետ տակաւին այս դարուն սկիզբը կը գործէին առանց վկայականի բժիշկներ:*

*Միշտ գոյութիւն ունեցած են առնին դեղեր, որոնք աւանդաբար եւ փորձառութեամբ կը կիրարկէին: Ասոնցմէ ոմանք կը ներկայացնէին գիտական արժէք մը կամ գոնէ բժշկական նշանակութիւն մը, որոնք թերեւս քաղուած էին հին բժշկարաններէ եւ անոնցմէ ժողովուրդին փոխանցուած: Բայց ասոնց քով կը կիրարկուէին նաեւ կարգ մը կախարդական կամ սնոտիապաշտական միջոցներ, յուռութքով, ՆՈՒՍԽԱով կամ ԹԸԼԸՍԸՄով, կախարդութիւններով, թովչութեամբ, աղօթքներով, ուխտերով եւայլն, որոնք յայտնի է թէ ոչ գիտական եւ ոչ փորձառական բժշկութեան շրջանակին մէջ կ'իյնա-յին, այլ ունէին աւելին սնոտիապաշտական հանգամանք եւ կրօնական հաւատալիքներու կամ նախապաշարումներու մաս կը կազմէին:*

*Մալաթիայի բնակիչները այս երկու տեսակի դարմաններն ալ կը գործածէին, հիւանդութիւններու դէմ: Դժբախտաբար մեզի կարելի չեղաւ*

*գտնել այս մասին յիշատակութիւններ, եւ այս ծաղրելի դարմաններու մասին գաղափար տուող աղբիւրներ։*

*Բայց կը խորհիմ թէ ասոնք աւելի կամ նուազ տարբերութիւններով կը նմանին ուրիշ գաւառներու մէջ գտնուած բուսային, հանքային եւ կենդանական իբր դեղ գործածուած նիւթերու եւ մարզական եւ շարժական միջոցներուն, որոնց կարեւոր հաւաքումները ուրիշ գաւառներու վերաբերեալ հրատարակուած են։*

*Ինչպէս ուրիշ տեղեր, Մալաթիոյ մէջ ալ ժողովուրդը կը հաւատար թէ սրբազան առարկաները շօշափելով կրնար բժշկութիւն գտնել։ Քահանաներ եկեղեցիին մասունքները կը տանէին հիւանդներու տունը, համբուրել կու տային եւ սփոփանք կը պատճառէին հիւանդին, որ թերեւս կը կազդուրուէր ինքնաթելադրութեամբ։*

*Նոյնպէս, ինչպէս ուրիշ տեղերու, նոյնպէս Մալաթիոյ Հայերը կը հաւատային մի քանի սուրբերու որոշ հիւանդութեանց համար ունեցած բուժիչ կարողութեան։*

*Հիւանդութեան, բժշկութեան եւ պառաւական դարմաններու մասին Մալաթիացիներու ըմբռնումները եւ մտայնութիւնը նոյնիսկ Ի. դարու առաջին քառորդին, շատ լաւ պատկերացուցած է Կարապետ քհնյ. Պէննէեան իր տեղագրութեան մէջ (ընդարձակ ձեռագիր), տեղական նկարագրով ու բացատրութիւններով ներկայացնելով Մալաթիացի Հայերու ողբալի վիճակը, որ իբր հետաքրքրական ապացոյց մը վերը պարզուած վիճակին հոս մէջ կը բերեմ նոյնութեամբ.—*

«Ինչպէս բսած ենք, կլիման խոնաւ ըլլալուն համար, հասարակ հիւանդութիւնները քիչ անգամ կ'անհետանան։ Ժողովուրդը դեռ այնքան տրամադիր չէ հիւանդութեան ատեն բժիշկ կանչելու։ Եւ բժիշկի սովն ալ կը յարատեւէ։ Պաշտօնական բժիշկի երեքը չորս չ'ըլլար ցարդ. բայց կան ինքնակարգ եւ անուանական երկսեռ բժիշկներ։ Ասոնք ալ կը կանչուին ծանր պարագաներու տակ, երբ արդէն «Գաբրիէլ»ը աներեւութապէս եւ Տէր պապան երեւութապէս կանխած են։

Հիւանդութեան ատեն հայ կիները մանաւանդ, առանց տեղւոյն հեռաւորութիւնը եւ եղանակը նկատի առնելու, կը փութան ենթակային մօտ։ Եւ դեռ չնստած գրպանէն ու ծոցէն պտուղ կամ միրգ հանելով, եւ ցաւակցական ցոյցով «Ույ, շունըդ ըլլիմ, կատատ ընծի գայ։ Ի՞նչ եղաւ հալա քիշ մի կըռնակդ նստիմուք, երկու դգալ կեր հէմի։ Ահա տանձ մա կըսեմուք, (կտրելով) ինչ աղկէկ թութու բան մ'է հըմպա, տիլիմ մի առ։ Աղէկ կ'ըլլէս իշալլա։ Քովդ իշ կայ, թող իս էղեր, մուխանէթ։» Ու նստեցնելով քանի մը դըգալ ակամայ կը կերցնեն, եւ այցելուհին եթէ հիւանդին մօտ պարագաներէն է, խօսքը տան կնիկներուն ուղղելով՝ (եթէ հիւանդն ալ իր սեռէն է) «բաղնիք տարիք հէչ։ Անցածները տալոջս աղջիկն ա էսպէս հըւընդցեր էր ուք, բաղնիք տարածնուս պէս՝ բօլատ պէս եղաւ։ Բաղնիք կըսմին շատ աղէկ բան է, վաղը ձան տուէք ու գացուք ասա տանիք։ Եատքնա հէմի ԿՕՐԽՈՒ ՕԾԱ–

ՂԻՆ կը տանին: Հէմ մեր մահլէն կարդացող մի կայ, աղէկ թուխտագիր կէնէեա, զէնած ԿԱԼԷՄԸ ՊԻՐԷ ՊԻՐ է: Էնուրա գիր մ'էնէլ կու տանք: Տէր Մ...ին տունը «Ուրբաթ գիրք» ու «Կիպրիանոս» պիտի ըլլի, կանչեցէք, թող կարդայ, կուրպան ըլլիմ, մեր գլուխը աւետրնէն կապուած է, իշ կայ քովը. աղէկ կ'ըլլի» ըսելէ զատ՝ մի քանի տեղական եւ պառաւական դեղեր ու դարմաններու հրահանգին հետ, հիւանդին դէմ ցաւակցութեան այլ յուսահատական նշաններ կը ցուցնէ, եւ հիւանդութեան տարափոխիկ ըլլալէն անզգոյշ, կը համբուրէ զայն ու կը մեկնի, ծանուցելով անոր հիւանդ ըլլալը բոլոր ծանօթներուն:

Հետեւեալ օրը կու գայ մեր բարեխիղճ եւ արենակից տոքթորուհին եւ հակառակ ենթակային տկարութեան եւ առողջապահութեան կը տանին բաղնիք: Երբ չառողջացաւ ասկէց, վերոգրեալ եւ ուրիշ նախապաշարմանց գործառնութիւնը անհրաժեշտ կը տեսնեն: Եւ վերջապէս շնորհիւ իրենց բժշկականութեան, յաճախ կը մեռնի հիւանդը եւ քիչ անգամ կ'առողջանայ:

Այսու ամենայնիւ, հիւանդին թէ անոր պարագաներուն ջերմեռանդութիւնը գովելի է: Կատարեալ հաւատք ունին գերմարդկային զօրութեան եւ բժշկութեան վրայ: Հիւանդանալնուն պէս՝ կը կանչեն քահանան որ վրան կարդայ եւ աղօթէ, եւ խոստովանցնելով՝ հաղորդէ զիրենք:

Հիւանդութեանց եւ դարմանումներու վրայ գրելը երկար ըլլալ եւ առանձին աշխատասիրութեան կարօտ ըլլալուն՝ զանց կ'ընենք հոս:»

## Է.

# ՀԱՒԱՏՔ

## Ա.

## ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ՀԱՒԱՏՔԻ ԸՄԲՌՆՈՒՄԸ

*Մալաթիացիք պարզ ըմբռնում մը ունէին կրօնքի մասին, եւ չունէին լայն հասկացողութիւն քրիստոնէական վարդապետութիւններու վրայ:*

*Մանաւանդ կիները այս մասին շատ նախնական մտայնութիւն ունէին:*

*Հետեւաբար դժուար է Մալաթիացի Հայերու մէջ կրօնական խորունկ համոզում մը փնտռել: Նախապաշարումները տիրակալած էին ամէն կողմ: Ըստ Մալաթիացի Ա. Եագուպեանի, որ միշտ իրեն յատուկ եւ սովորաբար ընդունուած տեսութիւններու հակառակ կարծիքներ յայտնել կը սիրէ, «Մալաթիացիք կրօնասէր ըլլալէ աւելի ազգասէր էին, զի յաճախ կ'երգէին, «Ով որ իր ազգն ուրանայ, երկու աչքեր կ'ուրանայ, դունէ ի դուռ մուրանայ»:*

*Անոնք հին Հայոց պէս քաջ եւ խոստմնապահ էին, կ'ատէին Թուրքը եւ*

*խալամութիւնը. իրարու հետ շատ շուտով կը միանային, եթէ Թուրքին դէմ կռուիլ պէտք ըլլար:*

*Միշտ սիրած են խմբովին իրարու մօտ բնակիլ: Միմեանց ցաւերուն ցաւակից եւ ուրախութեանց ալ ուրախակից ըլլալ աստուածային օրէնք կը համարէին» (Ա. Եղուպեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, էջ 10):*

*Շատ համոզիչ չեն այս խօսքերը, որոնք հայրենասիրաբար պէտք է ըսուած ըլլան Ա. Եղուպեանէն, իր ծննդավայրին ազգասիրութիւնը ներբողելու համար, վասնզի շատ համապատասխան չեն թուիր իրողութեան, վասնզի կը կարծեմ թէ Մալաթիացիք ալ ամէն բանէ առաջ «հայ քրիստոնեաներ» էին:*

*Բնաւ հաւատալի չէ թէ անոնք* «զԳրիգոր ԼՈՒՍԱՒՈՐԻՉ կ'անուանէին «Լոյսաւորիչ», որովհետեւ անոր միջոցաւ քրիստոնէութիւնը Հայաստան մը-տած էր, կարգ մը Հայեր կաշառուած, կամ մոլորելով անոր եւ Տրդատ թա-գաւորին հետեւած եւ քաղաքական նպատակներով այդ աղանդը ընդունելէ յետոյ Գրիգոր որպէս կաթողիկոս, առաջին պատեհութեամբ ջնջել տուաւ հայ հին յիշատակարանները, պետական արձանագրութիւնք, նախահայկա-կան պատմութիւնք, մատենագրութիւնք, գրականութիւն, տաճարքն եւ ա-ռարկայք: Գրաւեց քուրմերու կալուածները ու հոն պահուած հայ թանկագին հնութիւնները կամ մատեանները իսպառ ջնջած էր եւ ինքը կ'ապրէր որպէս արքայ: Թագաւոր եւ իշխանք իրմէ կը ստանային հրաման քաղաքական կամ կրօնական խնդրոց վերաբերեալ:

Հայոց մէջ անոր միջոցաւ մտած էր բաժանում, թէ Հայք զայրացած կէսը Պարսիկներուն, մէկ մասն ալ Յունաց մէջ ձուլուած, ան նենգաբար կործանած էր հայ ազգը եւ պատմութիւնը, թէ նա էր բիւզանդական կամ հռոմէական մի խորամանկ գործակալ, որ չկրցաւ քանդել միայն ապառաժից վրայի սեպագրութիւնք, որք սկսած էին Քրիստոսէ 825 տարի առաջ եւ տեւած մինչեւ 580: Հետագայ դարերուն եւս տեւականապէս «մէկ երեսից զարնելուն միւսը դարձուր»ի սկզբունքը քարոզուելով, հայ ազգն արդէն պըզ-տիկցած կորուսեր էր իր նախնեաց կռուելու ոգին, եղած էր գերի» (*Ա. Եղուպեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 10*):

*Այս բոլորը որ Ա. Եղուպեան իբր Մալաթիացիներու համոզումը գրի առած էր, միայն մէկ Մալաթիացիի մը, նոյնինքն Ա. Եղուպեանի կարծիքներն են միայն եւ բնաւ բոլոր Մալաթիացի Հայերուն: Ա. Եղուպեան այս բոլորովին յերիւրածոյ իրողութեան եւ պատմական հոլովոյթի եւ Հայ ազգին դարաւոր աւանդութիւններուն եւ հաստատ համոզումներուն հակառակ տեսութիւնները ներկայացնելով կ'ուզէր Մալաթիացիներու համար փառապսակ մը հիւսել, սակայն իրողութիւնները խեղաթիւրելով սեւէ փառքի եւ պատիւի չի կրնար արժանացնել Ա. Եղուպեան իր հայրենակիցները, որոնք հակառակ իր հաւաստիքին թէ* «Քրիստոսի յարութեան բնաւ չէին հաւատար, առարկելով թէ խաչին վրայ զամուած գլուխէն, կողէն եւս առատ արիւն կորսնցնելով մեռած մարդ մը չէր կրնար այլեւս ողջնալ, ոչ եղեր է

եւ ոչ ալ ըլլալիք ունի», *կը հաւատային Քրիստոսի Յարութեան. անոր նուիրուած եկեղեցի մըն ալ ունէին։ Առանց այդ հաւատքին արդէն քրիստոնէական կրօնը փլած պիտի ըլլար իրենց մէջ։*

*Նոյնպէս բնաւ ճիշդ չէ Ա. Եաղուպեանի այն հաստատումը թէ* «Ամենէն ռամիկ կամ տգէտ կարծուած Մալաթիացին չէր հաւատար թէ երկնքէն հրեղէն լեզուներու իջմամբ, ձկնորս Պետրոս եւ միւս Առաքեալները, որոնք տգէտներ էին, կարող ըլլային յանկարծ տարբեր լեզուներ խօսիլ։»

*Ընդհակառակը անոնք հայ եկեղեցիին հաւատքին եւ համոզումին անշեղ հետեւողներ էին եւ առարկայացուցած եւ թանձրացեալ կրօնք մը ունէին։*

*Բնաւ ճիշդ չեն բանաւարական եւ արդիական այդ տեսութիւնները, որ Ա. Եաղուպեան կը ներկայացնէ։ Մալաթիացիներու կրօնական ըմբռնումներուն մասին իր յայտնած կարծիքները, որոնք բոլորովին նոր տեսութիւններ են եւ հազիւ որոշ զարգացման մը հասած եւ պատմութեան ծանօթ մարդոց ծանօթ կրնային ըլլալ, մինչ առհասարակ չզարգացած եւ նախնական մտայնութեամբ սնած մարդիկ էին Մալաթիացիք։*

*Ա. Եաղուպեան իր ԱՆՁՆԱԿԱՆ համոզումն է որ Մալաթիացիներուն կը հագուեցնէ երբ կ՚ըսէ թէ*, «կը հաւատային թէ Աստուած մը կար, է. էն կը գործածէին նշան Աստուծոյ, որ կերպարանք չունէր, որ անշօշափելի, անբացատրելի, վերացական զօրութիւն մը, անսահմանութեան, տիեզերքին մէջ որուն գաղտնեաց չէին կրնար թափանցել։ Թէ ան բարի է, կը սիրէ միայն բարին» (*Նոյն, էջ* 10)։

*Ինչպէս կ՚երեւի Ա. Եաղուպեան կը սխալի, վասնզի առհասարակ, ինչպէս բոլոր հայ գաւառներու, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ Աստուծոյ գաղափարը անձնաւորուած է մարդու կերպարանքին մէջ։*

*Նոյնպէս բնաւ ճիշդ չէ ըսել թէ* «Չէին հաւատար քրիստոնէական Երրորդութեան՝ առարկելով թէ պապականութիւնը զայն օրինակած էր Հայ Նաիր-Ուրարտեան կրօնքէն, որոնց տաճարներուն մէջ կար արդէն Երրորդութեան գաղափարը, յանձին Խալտիս, Տիեսբաս, Արտենիս երեք իրարմէ անբաժանելի միակ մէկ աստուածութեան մը՝ «Հզօր Տէր և տիրական մարդկանց» և Արարիչ մարդկութեան։ Թէ բոլոր հին ազգերը, ինչպէս Եգիպտացիք, Քրիստոսէ 3000 տարի առաջ, Պարսիկք, Հռոմայեցիք, Յոյնք, Փիւնիկեցիք, Հինդուք, Իսրայելացիք, Ասորեստանցիք ունէին իւրաքանչիւրը իր Աստուածը երեք անձնաւորութեամբ, հայր, մայր եւ որդի, աննշան փոփոխութեամբ մը»։ (*ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ.* 2, *էջ* 10—11)։

*Մալաթիացիները չէին կրնար սոսկ իբր ընթացիկ տեսութիւն մը իւրացուցած ըլլալ, երբ նոյնիսկ գաղափար չունէին նախահայկական Նայիր-Ուրարտեան պատմութեան եւ իր թուած բոլոր ազգերու կրօններու վրայ։ Ամենէն գլխաւոր ապացոյցը նոր քաղաքին մէջ «Ս. Երրորդութիւն անուն եկեղեցի մը կառուցուած ըլլալն է»։*

*Ի՞նչ պէտք է ինքզինքնիս եւ ուրիշները խաբել, այս եւ այսպիսի անիրական տեսութիւններով, որոնց երկար թուումն ընել աւելորդ կը դատեմ՝ յանձնարարելով չհաւատացողներուն այս պոչաւոր առասպելները քննելու հա-*

*մար կարդալ իր նշանաւոր գրութիւնը* (*ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ*, *Գ. տարի*, *Թ.* 2, *էջ* 9–12):

*Մալաթիացիք, ինչպէս ուրիշ շատ քաղաքներու մէջ, ունէին կրօնքի մը ըմբռնումը, որ պարզապէս նախապաշարումներու, կարգ մը ծանօթութիւններու խառնուրդ մըն է, ուր գիտակից համոզումը կամ հաւատքը երբեք գոյութիւն չունէր:*

*Մալաթիացիք ջերմեռանդ մարդիկ էին, բայց «հոգեպաշտ» եւ մոլեռանդ չէին:*

*Տարտամ գաղափարներ ունէին հանդերձեալ կեանքի մասին, աւանդաբար իրենց հասած, կարելի է ըսել նոյնիսկ հեթանոսական օրերէն ժառանգուած: Անոնք կը հաւատային թէ հոգին անմահ էր եւ մարդուն մահէն վերջ, կ՚ապրէր ուրիշ աշխարհի մը մէջ, կը հաւատային թէ* «Հոգիները գերեզմանատան մէջ կամ շրջակայքը կը թափառէին եւ շատ անգամներ իրենց բաժնուած տուները կ՚այցելէին ի մասնաւորի Շաբաթ իրիկուններ: Ուստի Շաբաթ օրերը տանտիկինները տունի գործերը ըստ կարելւոյն շուտ լմընցնելով՝ կը մաքրուէին եւ ամուսնոյն տուն գալուն, ճաշէն առաջ կամ վերջը, մթնշաղին խունկ կը ծխէին, որպէսզի այցելող հոգին տունը մաքուր եւ անուշահոտ գտնելով իրենց պահապան լինի»: (*Ա. Եաղուպեան*, *ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ*, *Գ. տարի*, *Թ.* 2, *էջ* 9–10):

*Հետեւաբար իրենց մեռելներով կը զբաղէին եւ պատարագ ընել, ողորմութիւններ եւ հոգեճաշեր կու տային, իրենց մեռելներուն հոգւոյն համար:*

*Հոգւոյ անմահութեան գաղափարին եւ հոգիներու հետ մշտակայ յարաբերութեան մը գոյութիւն ունենալու համոզումը կը մղէր զիրենք* «գերեզմանատուները այցելել, հոն կերակուր ուտել եւ աւելցածը, նաեւ ջուր, հոգիներուն համար հոն թողուլ սովորական էր: Մեռելոց հոգւոյն համար գերեզմանին վրայ աղօթել ընտանեաց մեծագոյն մխիթարանք եւ հաւատքն էր: Իւրաքանչիւր ընտանիք իր գերեզմանատան բաժնին մէջ կը տնկէր ծառ մը, անպտուղ, որը նշան էր թէ մարդիկ դարձեալ պիտի վերակենդանանան»: (*Ա. Եաղուպեան*, *նոյն*, *էջ* 10):

*Կը հաւատային ԱՐՔԱՅՈՒԹԵԱՆ եւ ԴԺՈԽՔԻ գոյութեան, ինչպէս նաեւ հրեշտակներու եւ դեւերու եւ հեթանոսական շրջանէն մնացած հաւատքով կարգ մը ոգիներու գոյութեան:*

*Նոյնպէս իրենց տեսակ-տեսակ պէտքերուն, ցաւերուն եւ վիշտերուն համար, սուրբերու բարեխօսութեան եւ միջնորդութեան կը դիմէին, մեծ ջերմեռանդութեամբ:*

*Իրենց համար բարօրութիւն, առողջութիւն եւ զանազան բարիքներ խնդրելու այս եղանակը այնքան անհրաժեշտ եւ պարտաւորիչ դարձած էր որ իրենց հաւատքին մէջ ամենակարեւոր տեղ մը գրաւած էին Ս. Աստուածածինը եւ միւս սուրբերը, որոնց բարեխօսութիւնը եւ միջամտութիւնը անհր-*

*ըամբեշտ կը դառնէր հայ մամիկը իր խնդրանքներուն եւ պաղատանքներուն համար:*

*Հետեւաբար մեծ յարգանք եւ սէր ունէին Ս. Աստուածածինի համար, որուն կը դիմէին ամէն առիթներու մէջ:*

*Կը յարգէին նաեւ սուրբերը, որոնց մէջ առաջին տեղը կը գրաւէր Ս. Լուսաւորիչ, որուն անունին նուիրուած վանք մը ունէին:*

### Բ.

## ԿՐՕՆԱԿԱՆ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Մալաթիոյ Հայերը բոլոր հայաբնակ վայրերու բնակիչներուն պէս իրենց կրօնական պարտականութիւնները կատարելու նախանձախնդիր եղած են, ինչպէս կը հաստատէ Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան իր անտիպ ընդարձակ տեղագրութեան մէջ:*

*Թէ՛ տեղացի եւ թէ՛ քահանայ՝ այս անձին վկայութիւնը շատ թանկագին է, վասնզի անկէ աւելի գիտակ մէկը չի կրնար ըլլալ Մալաթիացիներու կրօնական պարտականութիւնները կատարելու մասին կարծիք յայտնելու համար:*

*Հետեւաբար այս մասին իր գրածը նոյնութեամբ կը ներկայացնեմ.—*

«Մելիտինեցին ՊՕՋԱՊԱԼԸ ՓՕԼԱՏ ՏԻՆԼԻ է: Անոր հաւատքին ՍԻԳԿԷ չ'անցնիր: Նա հայ հաւատաւորի ամէն հանգամանքներով օժտուած, գիտէ սիրել իր ազգը եւ կրօնքը: Կը յարգէ իր դարաւոր, բազմաչարչար եւ արիւնաներկ եկեղեցին ու անոր ամէն կարգուսարք, կանոնն ու սովորութիւնները, ամէն օր իրիկուն առաւօտ կը յաճախէ հոն աղօթելու աղաչանքներն մատուցանելու: Կը յաճախէ իմանալիին հետ նիւթականն տալու, իր փոքրիկ լումաներով կը յարգէ զանձանակն ու պաշտօնեան, աղքատն ու դպրոցը: Վառ կը պահէ, կը լուսաւորէ Ս. Սեղանը, Սուրբին պատկերը, կը մատակարարէ ու կը տեսնէ անոնց պակասորդը: Աջհամբոյրին, խաչհամբոյրին հաւատքով կը մօտեցնէ իր դրամն ալ:

Կիրակի եւ տօն օրերն ալ կը կանխէ ժամկոչն ու զանգակի ձայնը, «Տէր եթէ շրթունս»էն մինչեւ «Օրհնեալ եղբարք»ը եկեղեցւոյն մէջն է. կ'աղօթէ ջերմեռանդութեամբ: Շատ անգամ իր պզտիկ զաւակներն ալ քովն են, կը սորվեցնէ անոր ալ աստուածպաշտութիւն եւ աղօթել:

Լուսաւորչի լոյս հաւատքով վառվռուն եղողը՝ նորերը չեն սակայն: Նոր սերունդին այբ ու բեն չգիտցողն ալ, ինքնակոչ իմաստակն ալ հետզհետէ եկեղեցիէն ցրտանալու եւ ուծանալու վրայ է: Աս վերջիններուն համար, նախորդներու բարեպաշտական բոլոր զգացումներն ալ նախապաշարում եւ ա-

ւելորդապաշտութիւններ են: Առանց լուր օրերը բնաւ եկեղեցի չեն գար: Իսկ կիրակիներն ալ իրենց արդէն ժամադրած ըլլալով «Փառք ի բարձունս»ի եւ պատարագի զանգակը զարնուելէ յետոյ, հագուած ու յարդարուած (չըսենք զարդարուած) ի ցոյց եւ ձեւակերպութիւն կը բարեհաճին եկեղեցի գալ եւ դիտողութիւններ ընել ժամասացութեան եւ պաշտօնէութեան դէմ եւ բարեկարգութեան ծրագիրներ պատրաստել:

Էհ, մասամբ ասոնց ալ փաստերը բանաւոր են: Քանի որ բեմը զուացուցիչ բերան չունի: Եկեղեցական երգեցողութիւնք, երաժշտութիւն, կարգ ու սարք մօտեցած է մահամերձ վիճակի, ինչպէս կ'ըսեն «ետքի տէրը փրնտռէյա», եւ քանի որ դասէն ելած ձայնը աններդաշնակ, խռպոտ ու կերկեր է, ապացոյց է թէ մէկ քանի տարի յետոյ, ստիպեալ ժամերգութիւնք թիւ (քաղաձայն) պիտի կատարուին, երաժշտութիւն, դպրութիւն, սարկաւագութիւն բոլորն ալ քահանան է միայն որ կը կատարէ»:

*Հակառակ այս տխուր պատկերին, որ կը ներկայացնէ Հանգ. Կարապետ քհնյ. Պէննէեան իր գործին մէջ, չի դադրիր գովեստը հիւսելէ Մալաթիացի Հայուն՝ զայն ներկայացնելով կրօնասէր եւ կրօնական աւանդութեանց պահպանութեան նախանձախնդիր:*

*Ինչպէս այլուր, հոս ալ գրեթէ բոլոր պահքերը կը պահուէին:*

«Մալաթիոյ Հայուն համար, բացառութիւն համարելով արդի սերունդը, կրնանք ըսել թէ կրօնամոլ ըլլալէ աւելի կանոնապահ եւ նախանձախնդիր է իր եկեղեցւոյն, բոլոր ծեսերուն եւ աւանդութիւններուն: Ինչպէս եթէ ոեւէ մէկը, հարկեցուցիչ պարագաներուն իսկ, անժուր (պահոց) օր մը եղօք (պահոց կերակուր) ուտէ, քրէական յանցանք գործողի մը չափ ատելի է յաչս հասարակութեան, կարելի չէ որ պահոց օրերը (հասարակ Դշ. եւ Ուրբաթ, շաբաթապահքն ու մեծպահք) լուծէ:

Գալով ծոմապահութեան, ամէն հասակի մարդ հարկ անհրաժեշտ է որ մեծպահքի մէջ մինչեւ ճաշոց ժամը ծոմ կենայ: Մայրեր իրենց մանկիկներուն անգամ ուտելիք չեն տար մինչեւ այդ ժամը:

Այր թէ կին մարդ, ամէն հասակի մարդ հարկ անհրաժեշտ է որ մեծպահքի մէջ մինչեւ ճաշոց ժամը ծոմ կենայ: Մայրեր իրենց մանկիկներուն անգամ ուտելիք չեն տար մինչեւ այդ ժամը:

Այր թէ կին մարդ, աւելի պառաւներ ամբողջ մեծ պահքը կը ծոմապահէին: Շատերը շաբաթապահքի երեք եւ հինգ օրը միանգամայն անսուաղ մնալով պահքի իրիկնամուտէն մինչեւ ուտիքի առաւօտը պահոց ուտելիք ալ չեն ուտեր:

Նշանուած թէ նշանուելիք աղջիկներ երեք կամ հինգ օրեր կը պահեն, մէկը ՃԵՀԻԶԸ շատցնելով՝ հարսնանալու, միւսը նշանուելու բախտը բացուելու համար: Ասոնց պահելը երբ լուծի, դրացի, ազգական եւ խնամի կիներ մէկ քանի տեսակ կերակուրներով (Մալէզ, ԽՕՇԱՖ, ԵՈՒԽԱ-ՓԱԳԼԱՒԱ) եւ պտուղներով տեսութեան կու գան: Խնամին չի մոռնար իր հարսնցուին համար ոսկի կամ լաթեղէն ալ բերել:

Հայ հարսները պահեցողութիւնով մէկ տեղ չեն անտեսեր աղքատն ու եկեղեցին ալ, աղքատին կերակուր, միրգ եւ պտուղ տալով, եկեղեցւոյն ալ խունկ ու մոմ եւ մանած նուիրելով, բարեխօս կը բռնեն օրուան սուրբը, կ'աղօթեն ու կ'աղօթեն իրենց ՂԱՐԻՊԻՆ, իրենց աղջկան եւն.ի համար:

Առաջաւորաց պահքի Դշ. օրը տան անդամներէն իւրաքանչիւրի գլխու մազէն մկրատով մէյ մէկ քիչ կը կտրեն: Հարսներու սոյն վարսայարդարութեանը «էշ կնտում» կ'ըսուի: Կ'աւանդեն թէ՝ Ս. Սարգիս, Յոյներու ոչ-բարեկամ այս Զօրավարը, իր ձին այդ օրը կնտած է: Եւ ի պատիւ իր յիշատակին՝ մազերը կտրելու ատեն կ'ըսեն, «Սուրբ Սարգիս, ամուր պարիսպ, բռնէ գոտիս, չելլայ հոգիս»:

*Կը յարգէին սրբոց պատկերները՝ անոնց առջեւ մոմ վառելով եւ աղօթելով:*

*Կիրակին կը պահէին նախանձախնդրութեամբ եւ աշխատութիւնները կը դադրեցնէին շաբաթ իրիկունը, որ ԿԻՐԱՄՈՒՏՔ կը կոչէին: Միւս ժողովրդական եւ քրիստոնէական տօներն ալ Մալաթիոյ մէջ կը տօնէին բոլոր հայաբնակ գաւառներու մէջ կատարուած եղանակէն շատ քիչ տարբերութեամբ: Կարապետ քհնյ. Պէնէնեան կու տայ հետեւեալ տեղեկութիւնները տօներու մասին.*

«Ա. ՆՈՐ ՏԱՐԻ.— Ամանորի առաջին եւ ընթացող տարւոյն վերջին օրը «կախուկ» կ'ըսուի: Այդ օր՝ պզտիկ տղաքներ մէյ մէկ տոպրակ կամ ծրար առած դռնէ դուռ կը պտըտին «կախուկս տուէք» ըսելով, եւ կը հաւաքեն միրգ, եւ թաց ու չոր պտուղներ, իսկ իրիկունը՝ որուն առաւօտը ալ նոր տարի է, չուանով մը տոպրակ կամ օղիի շիշ մը կախելով տուներու ծխնելոյզներէն վար՝ կը պոռան «կախու կախու, փանա փանա... օղլու, տուր քէսմէնէ»: Տան տէրը կամ տիկինը, որ արդէն բոլորած են նահապետական օճախին շուրջը իրենց պզտիկներով, կը լեցնեն տոպրակը մրգով կամ պտուղով եւ կամ 10–20 փարայ մէջը դնելով «քաշեցէք» կը պոռայ կախողներուն ու կը քաշեն: Եթէ շիշ կայ, օղի կը լեցնեն:

Այդ օրուան (կախուկի) իրիկուան կերակուրը, ինչպէս ըսինք վերը, ԲԵՐԲԵՐ պիտի ըլլայ: Աս կերակուրը կրակին վրայէն վար առնուելուն պէս՝ օճախին մէջ գտնուած բոլոր ԿԻՍԷՐԵՑ (կէս–այրած) փայտերը մէկդի կը դրուին, որ կերակուրին աւելցուքին հետ պահելով՝ Ս. Ծնունդի խթման իրիկունը նորէն տաքցնեն ու պահքերնին ատով բանան:

Կիսէրեցներուն կը յաջորդէ կաղնիի մեծկակ կոճղ մը, որով օճախն ալ կաղնտուած կ'ըլլայ, եւ կը տաքցնէ դիմացինները: Այդ գիշերն ալ «ծրագալոյծ» է: Օճախին հետ վառ կը մնայ ճրագն ալ:

Նոր տարւոյ առաւօտը ամէն ոք եկեղեցի կ'երթայ, նոր նոր բարիքներ խնդրելու Աստուծմէ: Ցերեկին այր մարդիկ այնքան շնորհաւորական այցելութիւններ չեն տար իրարու, բայց իրիկունը հարեւաններ եւ ազգականներ իրարու տուն երթալով կը շնորհաւորեն զիրար: Այդ օրն ալ խնամիներուն է: Խնամի ունեցողը՝ իր հարսնցուին տունը կ'երթայ մեծկակ ծրար մը պը–

տուղներով եւ լաթեղէնով։ Խնամին ալ եկած պտուղներու քանակին վրայ հատ մը եւս աւելցնելով կը փոխարինէ։

Կախուկի եւ կաղանդի օրերուն մանր տղոց ՔԷՅՖԸ կատարեալ է, վարնգի ալ ԻՊՈՊՈՊՔԵԱՈՒԻՆ (յոպոպը) դարակին ու սնտուկին բալլին բերած է, եւ տանտիկինը առատօրէն կը լեցնէ ՃԷՊԵՐՆԻՆ ու ծոցերնին միրգերով ու պտուղներով, բայց պէտք է կանուխ պառկին ու կանուխ ելլեն կաղանդի գիշերը որ տարին էդպէս երթայ, եթէ ոչ «Նուոտ»ը կու գայ ու զիրենք կը տանի խորունկ ջրի մէջ նետելով կը խղդէ։ Այդ գիշեր աղբիւրներէն կէս ժամի չափ արծաթ կը վազէ, անոնք որ կը հսկեն կրնան առնել։ (Սակայն դեռ բընաւ վայելող եղած չէ բարի-դժբախտաբար)։

Բ· ԾՆՈՒՆԴ ՔՐԻՍՏՈՍԻ·— Աս մեծ տօնին առթիւ ժողովուրդը հոգեւորապէս պատրաստուելով՝ առհասարակ կը հաղորդուի կենարար մարմնին եւ արիւնէն։ Հաղորդութիւնը կ'առնեն խթման օրը առաւօտէն մինչեւ իրիկուան պատարագը եւ ծննդեան գիշերուան ժամուն։ Ժողովուրդը իր եւ իրեններուն վրան գլուխը նորելուն պէս՝ չ'անտեսեր եկեղեցին ու աղքատն ալ, եկեղեցւոյն դուռը մասնախումբի մը հսկողութեամբ կը հաւաքուի «խաչի գրուաք» անուամբ դրամական նուէրներ։ Այսինքն՝ 50—60 տարի առաջ դեռ «Ջրօրհնում»ի ատեն Ս· Խաչը ջուրէն հանելու համար մասնաւոր մէկը կընքահայր ըլլալով միւնակ ինք նուէր կու տայ եղեր եկեղեցւոյն։Եկեղեցւոյ պաշտօնէութիւնը բոլոր ժողովուրդն ալ մասնակցելու համար, որոշած է որ յատուկ կնքահայր չկանչուի այլեւս, հապա այդ անուամբ բոլոր ժողովուրդէն դրամ հաւաքուի։ Այդ հաւաքուած նուիրատուութեանց ցանկը կը կարդացուի յետոյ եկեղեցւոյ մէջ։ Ջրօրհնէքը կատարուելուն պէս՝ քահանան կը հրաւիրէ ժողովուրդը յերկրպագութիւն Ս· Խաչին, որոնք ամենայն ջերմեռանդութեամբ կը համբուրեն խաչն ու աւետարանը եւ մէյ մէկ դգալ ջուր խմելով հոն գտնուած պնակին մէջ կը ձգեն իրենց սովորական նուէրները։ «Ջրօրհնեքի» ջուրէն քահանաներու տունը տարուելով՝ ուսկից ալ ամէն տունէն գալով կը տանին խմելու համար։

Քահանան կ'երթայ Տնօրհնէքի, տանտիկինը կը բերէ կանխաւ պատրաստած սեղանը ծածկոյթով, որ կը բաղկանայ ալրցուէ, հացէ, թթխմորէ, տան մարդուն, դրամի քսակէն կամ անոր արհեստի գլխաւոր գործիքէն, աղէ եւ ջուրէ։ Քահանան կ'օրհնէ սեղանը եւ իրենք խաչն ու աջը համբուրելով՝ հայ հաւատաւորի յատուկ նուէրը կը դնեն անոր ափին մէջ։

Ժողովուրդն ալ խմբովին կ'այցելեն իրարու տունը առաջնութիւնը տալով դրացիներու։ Այցելուները կը մեծարուին սիկարէթով, սուրճով եւ օղիով, շատ անգամ կերակուրներով ալ։ Այս այցելութեան հետեւանքը յաճախ կ'ըլլայ «խայտառակութիւն խայտառակութեանց», անպատուութիւններ եւ հիւանդութիւններ, որովհետեւ այցելութեան ատեն խառն ըմպելիներու եւ կերակուրներու խճողումը խոտոր համեմատելով իրարու՝ փսխրնտուկներ, զգետնումներ տեղի ունենալով իրենց հանգիստը անկողնոյն մէջ կը գտնեն։

Գ. ՄՈԼՈՐՈՏ (ՏԵԱՌՆԸՆԴԱՌԱՋ). — Ծնունդի 40րդ օրուան, այն է՝ Տեառնընդառաջի իրիկունը մեծահանդէս ժամ կը կատարէ եկեղեցին, ուր հաւաքուած են հայրեր ու մայրեր, հարսեր ու փեսաներ, մեծեր ու պզտիկներ՝ տեսնել ու գրկելու Մանուկ Յիսուսը, որ 40-օրեայ ընծայումին կը բերուի տաճարին:

Տօնախմբութիւնը տեղի կ'ունենայ ըստ տօնացոյցի:

Զոքանչներ իրենց ներկայութիւնը կը յայտնեն վերնատունէն բաստեղ նետելով փեսաներուն վրայ: Եւ նոր մայրեր իրենց նորածիններն խանձարուրած կը յառաջանան դէպի դասը քառասունքէն հանել կամ ելլելու համար: 15 օր առաջ ծնածներն ալ քառասունքէն ելած կը սեպուին, եթէ եկեղեցի բերուած են:

Մալաթիոյ մէջ մոռցուած է այդ իրիկուն խարոյկներ վառելու սովորութիւնը: Միայն այդ իրիկուն տան լուսամուտներու թուղթերը պատռելով՝ տանիքներու վրայ կը վառեն, եթէ եղանակը եւ օդը ներող ըլլան:

«ՄՈԼՈՐՈՏ» բառը «Մոլորում» կը նշանակէ, այսինքն թէ այդ օր Տէրոջը տաճարը գալու պարագային ժողովուրդը անակնկալ իմանալով եւ մէկէն չկարենալ գտնելնուն համար՝ Մոլորած մը փնտռելու պէս կը բաղձային տեսնել զայն»: *Ա. Եաղուպեան (տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 9), ՄՈԼՈՐՈՏէն ըստ իրր անոր համապատասխան կամ համանիշ կը յիշէ ՄԷՂԷԴ կամ ՄԷԼԷՄԷԹԻՆ ՕՐԸ, տանիքներու վրայ կրակ վառելու, եւ կրակին շուրջ շուարճանալու, վրայէն ցատքելու եւ երգելու սովորութիւնով, առանց ըսելու թէ ասոնք ջնջուած էին:*

Դ. ԲՈՒՆ ԲԱՐԵԿԵՆԴԱՆ. — Ս. Սարգիս իրեն համար պահք բռնող աղջիկներուն սիրելի փեսաներ ցոյց տուած եւ տասն եւ հինգ օր ալ ուտիք տալով ժողովուրդին, ՊՕՂ ձին ասպանդակելով «Գագայ» բլրոյն գագաթը բարձրացած է: Հիմա ասպարէզը Ոսկեաններու, Սուֆիասեաններու, Ղեւոնդեաններու եւ Վարդան ու Վարդանեաններուն է, որոնց յիշատակութիւնը կը կատարէ եկեղեցին ըստ կարգի: Սոյն երկուշաբթի, չորեքշաբթի եւ ուրբաթները «*ԲԷԼ*» անունով կը մկրտեն, որովհետեւ այդ օրեր՝ Հայերու ազատութեան տարեդարձի եւ հոգեւոր հարսանեաց օրերն ըլլալով, կրօնական հերոսներ եւ արեամբ ներկեալ փեսաներ շատ ունին հետը: «Զէ պարտ պահել»: Բարեկենդանի, բուն Բարեկենդանի օրերն են առնէք, երբ մեծ պահքը գայ, թող «Աղու հաց» միայն ուտեն եւ պահեն 50 օր:

Այո՛, Մելիտինեցիներ, վերջերս մանաւանդ, «Ուտելու համար այրի, իսկ պահելու համար կոյրի պէս է»: Շատ կը մսխէ այս օրերուն կերուխումի: Օդերը որ բաց ըլլան, զբօսավայրերն ու պարտէզները կը լեցուին ուրախութիւն կազմող խմբերով [1]:

---

*(1) Մելիտինէի մէջ 1895 ի կոտորածէն մի քանի տարի առաջ բարեկենդանի մը յիշատակութիւնը ունի Գէորգ Ա. Միրաքեան (տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, թիւ 47, էջ 21–22), որ Հայկական անխոհեմութեան եւ անշրջահայեցութեան եւ երբեք չխրատուող նկարագիրին իբր փաստ կրնայ ներկայացուիլ:*

Հրապարակներուն եւ տանիքներուն վրայ հասակաւոր ու տարիքոտ-ներ, մինչեւ իսկ վարդապետն ու տէրտէրը կ'երգեն, կը խաղան, կը պարեն, կ'ուտեն ու կը խմեն մինչեւ մեծպահքի երկուշաբթի առաւօտը[1]: Ի հարկէ, կերակուրներն ու կարկանդակները պիտի աւելնան, իրենք կ'երթան եկեղեցին մեղքէ «Լուացարուք, Սրբեցարուք»ի, հարսեր եւ հարսներն ալ տան կահն ու կարասին, աման չամանը, դուռն ու դարակը կը մաքրեն ու կը ստկեն «Եղօք»ի հետք չթողլով: Թուրք եւ քիւրտ ՉԷՐՉԻներ ալ թաղերը պտըտելով կը վաճառեն գազ, խաշուած ճակընդեղ, ծոթրին, հացամեմ եւն․, եւ կը փոխեն կերակուրներու հետ:

Ահա «փագլավաճի»ն պարդելով զ«եաղլըճի»ն՝ ամէն տուն տուած է 50ական զօրք, պայմանաւ որ օրը մէյ մէկ հատ դրկէ անոնցմէ:

Ե․ ԶԱՏԻԿ ԿԱՄ Ս․ ՅԱՐՈՒԹԻՒՆ․— Մեծպահքի մէջն ենք, խճողուած ստամոքսները թեթեւցնելով՝ յամրաքայլ կ'երթանք Ս․ Թորես (Թէոդորոս) զօրավարին քով: «Զատիկը զատիկ կը բերէ» կ'ըսեն: Ուստի ՊՈՒԼՂՈՒՐԸ (կուլիքան) ուտելէն կը հասնինք Կիւրեղներուն, ուսկից Տաքեւացիներու եւ Օձնեցւոյն հանդիպելով՝ կը հասնինք «Քառասուն Մանուկ»ներու, կ'ուղ-ղուինք դէպի «Արտաշատ»՝ տեսնելու մեր բազմաչարչար նահատակին եւ Ս․ Լուսաւորիչին վիրապային վիճակը: Միեւնոյն ատեն ուսումնասիրել եւ լսելով Անառակին, Տնտեսին եւ Դատաւորին կեանքն ու նկարագիրը, կը դառնանք ԲԵԹԱՆԻԱ, տեսնելու Ղազարոսը յարուցեալ չորեքօրեայ, ու դի-մաւորել «Քս․ փառաց թագաւոր»ին փառաւոր մուտքը յԵրուսաղէմ:

Եկեղեցին ըստ տօնացոյցի կը կատարէ ասոնց յիշատակութիւնը եւ հայ մամիկը պատուոյ եւ յարգանքի առաջնութիւնը 40 մանուկներու եւ Լու-սաւորչին տալով՝ անոնց տօնախմբութիւններուն կը ներկայանայ եւ ի նշան յարգանաց այդ շաբաթ օրերը բաղանիք չ'երթար, հաց չի թխեր եւ լուացք չ'ըներ:

Զարզարդար (Ծաղկազարդ)․— Այդ օրն ալ նոյնպէս արտաքոյ եկե-ղեցւոյ կատարուած աչքառու բան մը չկայ: Միայն պզտիկ տղաքներ ուռեն-ւոյ դալար ճիւղերու կեղեւները դէպի ծայրերը սոթտելով՝ ծոպերու ձեւ մը տուած կը բերեն եկեղեցի երգելով «Զատիկը մօտեցաւ, Զարզարդարը բաս-ուեցաւ, Քէլ գլուխները հոտեցաւ»: Այո, զատիկը մօտեցած է, եւ ինք Զար-զարդարին պէս զարդարուիլ սկսած է նոր լաթերով: Ալ կարմիր հաւկիթի կե-ղեւներն ալ գետինը կը զարդարեն խաղցողներու ձեռքէն թափելով:

Աւագ շաբաթի երկուշաբթին կ'սնցնի, երեքշաբթի երեկոյին «Տասն կուսանաց» Աւետարանի ընթերցման ատեն դպրապետը տասը տղոց ձեռքը

(1) Ժամանակաւ մարդուն մէկը կը հարցնէ քահանային թէ «Տէր պապա, ուտիք օրէն ակռաներուս փաթ մնացած միսը պահոց օրին մէջ ակռաս յանկելու առեն ուտեմ նէ մեղք ունի՞»: «Ո՛չ, բնաւ մեղք չունի» կը պատասխանէ քահանան, «ուրեմն օրհնեա ի ան» ըսելով կ'երթայ ու Բէօյիւքլի կապուրղաի մը մէկ տեղէն խածնելով կը պատկի բուն բարեկենդանի գիշերը եւ Երկուշաբթին ըստ վճռոյ քահանային ակռային տակէն հանելով կ'ուտէ, եւ այդպէս կ'անցընէ ամբողջ մեծ պահքը:

կու տայ մէյ մէկ ծալլուած քուէթուղթ. եւ որոնք շապկազգեստ եւ մոմ ի ձեռին կը կենան գրակալին երկու կողմը, որ յետոյ քուէները բանալով «Իմաստուն»ները աջ եւ «Յիմար»ները ձախ կողմը կը կեցնէ: Այն «Յիմար Իմաստուն»ի բախտափորձը կ'ընեն տղաք դպրոցին եւ տուներուն մէջ ալ:

Աւագ հինգշաբթին «Ծանտր մեղք» է: Ամէն մարդ մարմնաւոր գործէ կը դադրի, մինակ դերձակները զատկական կարերն հասցնելու համար կ'աշխատին մինչեւ կէսօր: Եկեղեցւոյն զանգակը լռել չզիտէր այդ օրը: Ժամերգութենց կապը չի կտրիր մինչեւ կէսօրուան պատարագը: Ժողովուրդէն շատեր այդ պատարագէն հաղորդուելով՝ պահքերնին (ծոմ) կը բանան: Ինչպէս ըսած ենք, այդ օրուան կերակուրը աւանդական Քէշկէկն[1] է: Ոտընլուայի արարողութիւնը կը կատարուի հանդիսաւորապէս, բայց օրհնուած իւղի բաշխումը կ'ըլլայ ամենայն խայտառակութեամբ: Ատ եաղը կը տանին տան իւղի բղուկին մէջ լեցնելու եւ հիւանդներուն զգայարանքներուն քսելու համար:

«Գովասանք»ի (չարչարանաց եւն.) գիշերուան ժամերգութիւնը իրիկունէ, այսինքն «Ոտնլուայ»էն քիչ ետք սկսելով, կը կատարուի հիմա: Եկեղեցին լեփլեցուն է երկսեռ ժողովուրդով, եւ ազդուած տխուր երգեցողութենէ, արտասուալից կ'աղօթէ մինչեւ վերջը: Հին տարիներ «Փառք ի բարձունս»էն առաջ «կտակ» կարդացուելով կամ պատշաճ քարոզով՝ կ'ողբար ժողովուրդը. բայց հիմա կտակը ծալլուած եւ բեմը դրկուած է բանիբուն բերնէ:

Ուրբաթ ցերեկին ծոմ պահելը արգիլուած է՝ Յուդան եւ սատանան ճաթեցնելու համար: Նոյնպէս նաեւ արհեստաւորները զամ կը զարնեն՝ աւելի Յուդային աչքը մխած ըլլալու համար:

ՃՐԱԳԱԼՈՅՑ ԶԱՏԿԻ.— Ժողովրդէն շատեր մինչեւ իրիկուն պահք բռնելով կը հաղորդուին եւ ուտելով կը բանան իրենց պահքը: Դեռ մինչեւ 20–30 տարի առաջ, ոմանք «խթում» առած ըլլալով, այսինքն այդ իրիկուան համար հոգեկերակուր պատրաստելով՝ իր դրան վրայ կեցած կը հրաւիրէին եկեղեցին աւարտող՝ ժողովուրդը եւ ժամուորը կերակրելու: Նոյնպէս մոռցուած է «Կէրէկմութ»ը, այսինքն կիրակամուտի կերակուրը, որ ժողովուրդին մասնակցելէն զատ բոլոր աղքատներու տուները կը բաժնուէր ամաններով:

ԶԱՏԿԻ ԿԻՐԱԿԻՆ.— Եկեղեցւոյն մէջ ամենայն հանդիսաւորութեամբ կը կատարուի յիշատակութիւնը Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի Ս. Յարութեան: Ժողովուրդը արդէն նախընթաց շաբթուն մէջ անհատապէս եւ հաւաքաբար բերած է իր խունկն ու մոմը կամ լուսագինը. «Խաչ Համբոյր»ի կու գայ զոյգ զոյգ եւ «Աջ համբոյրի»ի կու գայ խնծովին, կու տայ նուիրական նուէրներ եկեղեցւոյ եւ պաշտօնէութեան պնակներուն, եկեղեցւոյ սրնտուկին եւ աղքատաց զանձանակին: Դուրսը դարձեալ պնակի մը կը հսկէ

(1) Սխալ պիտի ըլլայ քէշկէկը: Հերիսան միայն պահոց կերակուր չէ:

թաղականութիւնը: Ահիկա «վարագուրի գրուաք»ն է, ասոր ալ կը նուիրէ մասնաւոր գումարներ: Ինչպէս Ս. Ծննդեան ատեն «խաչի գրուաք»ը, նոյնպէս Զատկի առթիւ ալ աս նուիրատուութեան ձեւը փոխուած է: Առաջ ծրագալոյցին վարագոյրը բանալու համար ծանուցում ըլլալով բացումը կ'ըլլար մէկու մը կողմէ, որ նուէրին քանակը աւելցնելով՝ իր վրայ կը մնար: Իսկ հիմա բոլոր ժողովուրդին ալ այդ բացումին մասնակցելու համար վերոյիշեալ դրութիւնը հաստատուած է: Սոյնպէս յաւելումով կը կարդացուէր «Դանիէլ»ի եւ «Եսայի»ի «Լուսաւորեաց»ի ընթերցուածները: Հիմա փոխան ատոնց մասնաւոր պնակ կը պտըտցուի ժողովուրդին մէջ:

Զատկի շնորհաւորական այցելութիւնք եւ Տնօրհնէք ծննդեանին պէս: Միակ հաւկիթն է որ այս անգամ գործ շատ ունի: Զատկական այս հաւկիթի ծագման եւ նշանակութեան վրայ, բան մը չգիտնալով՝ խաղի եւ զբօսանքի առարկայ ըրած եւ հումը՝ թէ գոյնզգոյն ներկուածը խաղալով կ'ուտեն եւ կը նուիրեն իրարու: Հայ մամիկը զատկական հացին երեսը առանց հաւկիթ քսելու չ'եփեր: Զատկի օրերը երիտասարդները հաւկիթ կը խաղան: Աղջիկներ ու պզտիկներն ալ ՍԱԼՆՋԱՂ (յակուրճի) հեծնելով կ'օրօրուին:

Զ. ՄԵՌԵԼՈՑԻ ՕՐԵՐ. — Մեռելոցի օրերը միակ տօնն է Մելիտինեցի հայուն, որ տեղի կ'ունենայ ամենայն բարեպաշտութեամբ, եւ հինգ տաղաւարներու Բ.րդ օրերն, Սրբոց Վարդանանց հինգշաբթին, մեծ պահոցքի կիրակիներն. Աւագ ուրբաթն եւն.: Այդ օրերը տուներու մէջ կերակուր եփելով աղքատներու եւ դրացիներու կը բաշխուի առ հասարակ: Աւելի «Քառասուն մանկանց» կիրակին եւ Զատկի Երկուշաբթի օրն բոլոր ժողովուրդը կը թէփնի (բազմութեամբ երթալ) գերեզմանատուն, ուր արդէն ներկայ են մեր տէր պապաներն հաւատացեալներու 10—20 փարան ընդունելով՝ անոնց ննջեցեալներն օրհնելու: Պզտիկ տղաքներ գերեզմանատան ընդարձակ գետնին վրայ կը ցրուին ծաղիկներ հաւաքել եւ հոն տնկուած խորհրդաւոր ուռենւոյ լալկան ճիւղերէն փող (սուլիչ) հանելով խաղալու համար: Գերեզմանատան հիւսիսային կողմի բաց տեղը ձիարշաւ կայ, որուն կը խառնուին էշն ու ջորին ալ: Միւս կողմը կտրիճ երիտասարդներ տապանակի մը վրայ քար կը ձգեն գլորելով: Ուրիշներ առիթէն օգտուելով կը պտտին իրենց նշանածներն տեսնելու: Աս ատեն աղջիկներէ շատերու ալ նշանուելու բախտը կը բացուի: Իսկ տապաններուն վրայ խանդակաթ մայրեր, հարսներ ու աղջիկներու մորմոքի ողբն ու կոծը արձագանգ կու տայ չորսդին, սրտերու կը բաղխի, կը փղձկեցնէ եւ կը փլցնէ զմարդ:

Ասոնց (լացողներու) տարապայման սա ողբն ու կոծը մեղադրելու չէ սակայն, որովհետեւ վերջերս իրարու յաջորդ մէկէ աւելի արկածներն ու դէպքեր (երկրաշարժ, քոլէրա եւ ջարդ) իրենց ոեւէ մէկ սրտահատորը խլելով յանձնած է սեւ հողին: Թող լան, այո, թող լան ու թրջեն անոնց դամբաններն, թող ողբան իրենց դառն ու անդարմանելի կորուստը:

Մէկ քանի ժամ յետոյ քար ձգել տուողներն սեղան կը պատրաստեն այր մարդոց համար, որ բոլորուելով օղիներ ալ կը խմռեն ննջեցեալներու

հոգւոյն բարեմաղթութիւններ ընելով: Միւսներն ալ ամէն մէկը իր տապանակին վրայ հետերնին բերած կերակուրը ուտել եւ աւելորդն ալ տապաններու վրայ թափելով կամ քիչ մը հաց դնելով տապանաքարին վրայ կը մեկնին լուր ու տխուր:

Է.— ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՏՕՆ ԿԱՄ ՎԻՃԱԿ[1].— Համբարձման նախորդ օրուան (Չորեքշաբթի) ցերեկը պզտիկ տղաքներ ու աղջիկներ մամիկներու խորհրդով կը վազեն դաշտ ու պարտէզ, հաւաքելու վաղուան խորհրդաւոր հանդէսին համար այլ եւ այլ ծաղիկներ: Իրիկուն է: Ծաղկահասակ ծաղկահաւաքներ ծաղկեփունջ ի ձեռին կայտռելով կը դառնան տուն: Ծաղկանց մէջ կ'երեւնայ Համբարձման ծաղիկը,համեստ հարսնուկը հագած համակ մանիշակագոյն, որ իր ընկերներով կը հիւրընկալուի կանխաւ պատրաստուած ջրալից[2] դաշտին մէջ լողալու, ուր արդէն պարտէզներու, ծաղկոցներու ծաղիկները կը ցօղուին:

Ծաղկաբեր տղաք ցատկռտելով կը մտնեն ամէն տուն եւ «Հարսնուկ մեր տունը վիճակ պիտի ձգէք, բան տուէք ուր տանիք»ը ըսելով, ընտանեաց անդամներու իւրաքանչիւրին անուամբ մէկ մէկ մանր առարկաներ, ինչպէս, դանակ, մկրատ, բանալի եւն., հաւաքելով կը տանին եւ կը ծածկեն ծաղկալից դաշտին մէջ: Համբարձման առտուն, յետ աւարտման ժամերգութեան, անմիջապէս կը հաւաքուին թաղին բոլոր կիներն ու աղջիկները յիշեալ տաշտին շուրջը եւ կը սկսին «վիճակ հանելու» հետեւեալ կերպով.—

Վիճակամանի ծածկոցին տակ կը նստի 6–7 տարեկան տղայ մը, որ ՎԻՃԱԿԵՐԳ մը ըսուելէ յետոյ երբ «Հանեցէք մէյ մի» յանկերգը լսէ, ամանին մէջէն առարկայ մը հանելով կու տայ: Ելած առարկան որու է նէ վիճակ երգի մեկնութեան համաձայն բախտափորձը եղած է, աղէկ կամ գէշ: Վիճակերգի առաջինը «Օղորմիա Աստուած»ն է, որ տարէց կին մը կ'արտասանէ եկեղեցիէն ուղղակի գալով, եւ ամէն կին մէկ մէկ երգ կ'ըսէ (երգել չհասկըցուի), մինչեւ որ տաշտին մէջ ալ բան չմնայ: Իսկ «Վիճակ»ները իբր ժողովրդային բանահիւսութեան մաս ներկայացուցած եմ:

Ը.— ՎԱՐԴՎԱՌ (ՎԱՐԴԱՎԱՌ).— Վարդավառը, սա Հայոց յատուկ միակ տօնը, որ եկեղեցին հանդիսաւորապէս կը կատարէ առ յիշատակ պայծառակերպութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, հին հաւատքէն փոխանցուած է քրիստոնէութեան:

Կը պատմուի թէ Նոյ Նահապետ, ջրհեղեղը դադրելուն պէս՝ տապանէն ելլելով՝ իր հետ եղողներուն երեսը ջուր կը սրսկէ, որ չմոռնան տիեզերաց արարչին ամենակարող զօրութիւնը եւ աշխարհակործան պատիժը (ջրհեղեղը) եւ աղաւնի թռցնել կու տայ իր զաւակներուն, որոնք ջուրի սրսկումն ու աղաւնիի թռուցումը կը կատարեն եւ կ'աւանդեն իրենց ապագայ սերունդին ալ ի գործածութիւն:

---

(1) *Յիշատակ վիճակաւ ընտրութեան Շիղայի եւ Մատաթեայ:*

(2) *Վիճակի ջուրը 7 տունէ բերելու է:*

Ապագային, Հայք իրենց «Աստղիկ» կուռքը, գեղեցկութեանը համար ՎԱՐԴԱՄԱՏՆ մակդիրով մկրտած էին: Անոր տօնախմբութեան ատեն, ուրիշ ծաղիկներու հետ վարդի փունջերով կը զարդարէին եւ վարդի ջուր կը սրբրսկէին արձանին վրայ: Հայք կը շարունակէին սոյն տօնախմբութիւնը Քրիստոսէ ետքն ալ մինչեւ Լուսաւորչի ժամանակ: Ս. Գրիգոր Լուսաւորիչ կը կարողանայ «Աստղկան» մեհեանը կործանել եւ տօնախմբութիւնը փոխանակել Տեառն մերոյ Այլակերպութեան, հրամայելով որ ջուրի սրսկում եւն., այդ օրին մէջ կատարուի դարձեալ:

Ուստի Մալաթիոյ Հայութիւնն ալ սկիզբէն ի վեր, իր միջավայրին բերմամբ մանաւանդ, կրօնական տօնախմբութեան հետ արտաքին արարողութիւնն ալ կը կատարէ փառաւորապէս: Տեսէք.

Եկեղեցիէն տուն վերադառնալու ատեն իսկ տանիքներէն ջուր սրրսկուելու երկիւղը արդէն կը կրէ մարդ: Կերակուրդ կերար, դուրս մի՛ ելլեր, փողոցներուն գլուխը եւ պատերուն տակ մի՛ նստիր, որովհետեւ այդ պահուն ոչ միայն պատանին ու երիտասարդը նոր լաթերնին փոխած եւ սօրտրված են ՎԱՐԴՎԱՌ ընելու, այլեւ չափահասն ու ծերն ալ անտարբեր չեն հանդիսակցելու: Ամէն ձեռքի մէջ ջրաման մը բռնուած, տանիքներէն ու դռներէն թասերով ու թոյլերով գիրար կը հալածեն, միւս կողմէն երիտասարդներ ամէն ճիգ կը թափեն ջրաթաթախ առնել մէկն զմիւսը, աղբիւրին կամ առուակին մէջ կոխելով: Գաւիթներէն դուրս նետուած ջուրերն տեղատարափի մը պէս թրջած են ճամբան և ողողած խխում դարձուցած են անցորդըն ու պատերու տակ անհոգ նստողը: Հանդէսը քաղաքին մէջ եղածով միայն չի վերջանար, դաշտը եւ պարտէզները երթալով, ջրալից զբօսավայրերու առուակներու եւ վտակներուն մէջ ալ կը լոգան եւ ՎԱՐԴՎԱՌ կ'ընեն այս օր մինչեւ վերջը:» *Ըստ Ա. Եաղուպեանի, աղանի թացնելու սովորութիւնն ալ, որ ուրիշ վայրերու մէջ կար, Մալաթիոյ մէջ ալ կար:*

*Կրօնական պարտականութեանց շարքին կարեւորներէն մէկն էր Երուսաղէմի ուխտագնացութիւնը, որուն կը ցանկային այր եւ կին:*

*Եւ պէտք է ըսել թէ Մալաթիացիներու մէջ Մահտեսիներու թիւը քիչ չէր:*

*Ուխտ ընելը ընդհանրապէս սովորութիւն էր, մանաւանդ ծանր հիւանդութեանց եւ ճամբորդութեանց ատեն:*

«Գառնուկ, ուլ, հորթ զոհել եւ մատաղ ընել, կամ զանազան տեսակ կերակուրներ եկեղեցի բերել, կիրակի կամ տօնի օրեր, քահանային օրհնել տալէ վերջ՝ ժողովուրդին բաժնել հայ հին զոհաբերութեան սովորութիւնն էր որ կը պահէին» (*Ա. Եաղուպեան, նոյն, էջ* 11):

«Նախորդ տարիներու մէջ, մատաղը Մալաթիացիին համար, եկեղեցւոյ խորհուրդներուն չափ յարգի եւ նուիրական էր, այնպէս որ հիւանդութեան մը ենթարկուողը անշուշտ կ'ուխտէր վանքերէն մէկին կամ միւսին, կամ իր տունը խոզ մը մորթելով ճաշ մը տալ հասարակութեան: Սակայն հիմա ցանցառ է այդ մատաղ ընողներու թիւը:»

«Երէ մէկը որեւէ նպատակաւ կ'ուխտէ վանքերը մատաղ ընել, ճիշդ Ս. Աւետարանի մէջ կշտամբուողին պէս կը կոչէ իր բարեկամները, ազգականները, դրացիները եւն., գալ եւ մասնակցելու ՄԱՏԱՂԻՆ, կարծես հարսնիք եղած ըլլար: Հրաւիրեալք ընտանեօք կ'երթան այդ կոչունքին: Զգնացողը անպատուած կ'ըլլայ հրաւիրողը: Վանքին մէջ կը զէնուի մատաղը: Տղամարդիկ կը մանրեն միսը: Մինչեւ միսին մանրանալը արդէն ՓԷՊԱՊ եղած եւ պնակներու մէջ լցուած կ'ըլլան թոքը, սիրտը եւ միսի մասնաւոր կտորներ, որ մինչեւ լոյս խմող, երգող եւ պարող խումբին ՄԷԶԷ ըլլան: Այո, մատաղը կ'եփի եւ յետ աւարտման պատարագին քահանան համազգեստ գալով մատաղի սանին վրայ կ'օրհնէ եւ յետոյ ուխտաւորները նստելով կ'ուտեն: Մատաղէն դոյլերով քաղաք կը բերէն իբր ուխտամաս: Մատաղը «թաց» էր կ'ըսուի երբ ճոխ ու արգանակով ըլլայ, իսկ «չոր»՝ երբ նուազ ու անարգանակ: Մատաղը առանց փիլաւի չ'ըլլար: Երբ չոր է, միսը փիլաւին վրայ կը թափեն եւ երէ թաց՝ արգանակն ալ զատ ամանի մէջ կը լեցուի:

Մատաղի կենդանին միշտ խոյն է: Քաղաքին մէջ մատաղ ընողներ հաւ (աքաղաղ) մը մորթելով միսը շօթերու մէջ կը փաթտեն տուները կամ եկեղեցւոյ դուռը տանելով կը բաշխեն ժողովուրդին:

Մատաղը տեղի կ'ունենայ սովորաբար ամառը եւ տաղաւարներուն, բայց քաղաքին մէջ ամէն ատեն:

Սուրբերէն միայն Ս. Սարգիսը բախտաւոր գտնուած է իր անուան մատաղ ընել տալու: Այն ալ հորթ ըլլալու պայմանաւ, որ ինչպէս ըսինք, ուխտաւորը Ս. Սարգսի շաբաթ առտուն եկեղեցի տանելով շօթեր կը բաշխէ:

Մատաղները կը զոհուին հասարակութեան կողմէ մահտարաժամներու, երաշտք եւ այլ երկնառաք ցասումներու պարագային:

— Գալով ուխտագնացութեան, 19-րդ դարուն, մինչեւ ՍՈՒԼԹԱՆ ՀԱՄԻՏԻ գահակալութիւնը, երթեւեկութեան դէմ արգելք չըլլալով՝ Հայերն ալ ուխտի կ'երթային Ս. Երուսաղէմ, Բարձրհայեաց Ս. Աստուածածնի եւ Մուշի Ս. Կարապետ ընտանիքով, գերդաստանով եւ թաղերով: Բայց անցագիր առնելու դժուարութիւնը պաղեցուց ատկէց, միայն Երուսաղէմ երթալու համար մի քիչ կը թոյլատրուէր: Հիմա սակայն որչափ որ արգելքներ չկան, բայց այս անգամ ալ ժողովուրդին հայ քրիստոնէի ջերմեռանդ հաւատքը կը պակսի հետզհետէ, որով մէկ երկու տարին անգամ մը հազիւ մէկ երկու տուն կ'երթան այդ սրբավայրերը:

Քաղաքին վանքերը ուխտագնութեան խօսք չ'ուզեր, ինչպէս վերը ըսուած է, տարւոյն ամէն եղանակին, մանաւանդ ամառը, մատաղ եղած օրերը, խուռն բազմութեամբ կը լեցուին որ մէրն զմանուկը չի ճանչնար: Սոյն ուխտագնացութեան մէջ կիներն են դարձեալ զովելի: Վասնզի անոնք մէկ երկու ժամուան ճամբու յոգնութիւնը յանձն առնելով, հետի եւ բոպիկ եւ միշտ աղօթքներ մրթմրթալով կ'երթան, ու հոն երեսնին կը քսեն, կը համբուրեն գետինն ու քարերն, եւ խնդրուածք ու մուրատներ կ'ընեն: Այր մարդուն համար այդ տեղը ուխտավայր մը ըլլալէ աւելի զբօսավայր մ'է: Անիկա

զիջում չ՚ընեն եկեղեցւոյն դռնէն ներս մտնելու իսկ: Կը պաշտէ ու կը խընկարկէ բազոսը եւ ՄԻԱՅՆ ՔԷՅՓԸ:

Մամիկներու համար, դեռ ուխտավայր ըլլալէ դադրած չեն Ս. ՕՎԱՆԷՍԸ, ՍՈՒՎԷԼԼԷՋԸ (Ս. ԵՂԻԱ), Ս. ԳԷՈՐԳԸ, ՇՈՒԿՕՆԻՆ, ԴՈՂՈՒՆ ԱՂԲԵՐԸ, Ս. ԼԻՊԱՐԻՏԸ եւ ուրիշներ: Ասոնք ՃԷՆԻՒՏ (ջրակներ) են, զորս մըկըրտելով մէյ մէկ սուրբի անունով, յատուկ օրերու մէջ կերակուր կը պատրաստեն եւ այդ ջուրէն լոգալով քուրջի կտորներ կը կապեն յարակից տունկի ճիւղերուն, խնդրելով իրենց հիւանդութեանց բժշկութիւնը:

Ըստ Մելիտինեցիի (*տես ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Դ. տարի, Թ. 3, էջ 6–7*), «Մեծ Զատկուան յաջորդող կիրակի օրերը Մալաթիոյ Հայութեան համար զանազան սրբավայրերու ուխտագնացութեան օրեր էին:

Մեծ բազմութեամբ կ՚այցելէին այս ուխտավայրերը, հոն իրենց արցունքը թափելու, ուխտն ու մատաղն ընելու, սիրելիին կորուստը լալու, ու վերջապէս հոգեկան սփոփանք վայելելու:

Այն սրբավայրերը, ուր Մալաթիացին ուխտի կ՚երթար, հետեւեալներն են.

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉԻ ՎԱՆՔԸ.— Կօզլուխը, Լուսաւորիչի ակնաղբիւրը, զուլալ պաղորակ ջուրը, ուր տենդահարներ կը բժշկուէին, որքան իրենց հաւատով, այնքան ալ վանքի սքանչելի դիրքովն ու օդովը:

ԿՈՒԼՈՒՆՋ ՔԱՐԸ.— Վանքի ճանապարհին վրայ եսկայ ապառաժ քար մը, որ յօդացաւերը կը բուժէր:

ԱՆԱՐԾԱԹ ԲԺԻՇԿԻ.— Քառասուն խորաններով, քանդակուած դաբեր առաջ:

ՕՐՏՈՒՋԻԻ ՎԱՆՔԸ.— Իր արծաթեայ ջուրով:

ՍՈՒՐԲ ԿԱՐԱՊԵՏ.— Պէկ Տաղիի ստորոտը:

ՋԻՆԱՐԻ ԾԱՌԸ.— Իր զուլալ ջուրով:

ՍՈՒՐԲ ՆՇԱՆ.— Արմիտիի եկեղեցին:

ՍՈՒՐԲ ՍՏԵՓԱՆՈՍ.— Վարի քաղաքի եկեղեցին:

ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻՆ.— Շուկայի թաղը:

ՍՈՒՐԲ ՅԱՐՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ.— Տէր Մէսու թաղը:

ՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՆ.— Թաժա ժամու թաղը:

Ասոնցմէ զատ կային շատ մը ակեր ու աղբիւրներ զանազան անուններով»:

*Պէննէեան քհնյ. կ՚ըսէ թէ.* «Քաղաքի երեք եկեղեցիներէն Ս. Յարութիւնը աւելի ուխտավայր մը ընտրուած է կիներու կողմէն, ուր ամառը զնալով մէկ–երկու գիշեր կը պառկին հաւատաւոր հիւանդներ:

Սուրբ Արփէնի շաբաթացած մենաստանը, որ բարձրադիտակ կը նայի Եփրատի միւս կողմէն, իբր ամուլ արգանդներ արգասաւորելու բարեխօսող կը դիմեն իրեն. ոտքը երթալ եւ մատաղ մորթելով. «ՄՕՐԱՖԱ»ն ալ, որ խնեղեր խեյօֆցնող ուխտատեղի մ՚է, Քէախթա գաւառակին մէջ գտնուելուն, կը վերապահենք իր տեղը գրելու համար»:

*Ուխտագնացութիւններու մէջ հեթանոսական աւանդութիւններու յետամնացութիւններ կան շատ:*

*Այսպէս ծառապաշտութեան հետք մըն էր այն պաշտամունքը, որ Մալաթիացիք ունէին Ս. Փրկիչ վանքին Պարտէզը կամ Ջինարնոցը* «զոյգ ջուրբերու մէջտեղ, հողի լայն տարածութեան մը մէջ, իր հաստ ու հեռարձակ արմատները խրած, ամուր ու անսասան կանգնած» *հսկայ ծառի մը համար*:

«Միակ զարդարանքը, որ կը կրէր իր լայն կողերուն փարթամ մէջքին, հպարտ կուրծքին վրայ՝ առանց սկզբնատառերու տարեթուեր էին՝ իր բունի մազաղաթին սրածայր գործիններով փորագրուած, քանդակուած... գոյնըզգոյն թելեր եւ քրջիկներ՝ ազուցուած իր զանազան մասերուն եւ քովի տունկերուն, զով զեփիւռի հպանքէն տարուբեր, իր ասպնջական ստուերի տարածութեան քնքուշ պարուհիններու շարժուձեւերու բնական գծագրութիւնը կու տային, որ հմայիչ էր ու առինքնող: Իր տիտան հասակը, հաստ ու լայնատարած բազուկները, որոնք բնական վրանի մը վերնածածքը կը ձեւացընէին, իր զով ու հմայիչ շուքին տակ, աւազանին շուրջբոլորը խռնուած բազմութիւնները կը պաշտպանէին արեւի խանձող ճառագայթներէն եւ անակընկալ տեղատարափներու յանկարծական ու անխնայ յորդումէն: Կայծակը — բնութեան տարերքի այդ անզուսպ ու իրկիզող զաւակը — քանիցս ուժգին հարուածած եւ ամեհի խոռոչ մ'էր բացած այս նուիրական ծառի բունի ստորոտին, ուր՝ սիրաւոր երիտասարդներ երկու–երեքով ծալլապատիկ նստած՝ քովիկի աւազանին մէջ պաղեցուած տիւզերը աղցանին ու խորովածին մօտ դրած կ'ուտէին ու կ'արբենային եւ կոկորդալիր ձայներով իրենց սրտի յոյզն ու մորմոքը ծառին բունին ընդմէջէն երգով ու խաղով կը հեռարձակէին:

«Այս ծառին այցի կու գային ե՛ւ մեծը, ե՛ւ պզտիկը, ե՛ւ ծերը, ե՛ւ երիտասարդը: Ս. Փրկիչ ուխտի երթալ ու այս տարիքոտ, այլ միշտ երիտասարդ ծառին ի տես չգալ անկարելի էր, ուխտագնացութիւնը կատարեալ չէր կրնար ըլլալ:

Մամիկներ իրենց թոռնիկներուն ձեռքէն բռնած՝ պատկառանքով ցոյց կու տային այս ծառը եւ կ'ըսէին անոնց, որ մեծնան, այս ծառին պէս բարձրահասակ, թիկնեղ ու հուժկու բազուկներով կտրիճ տղամարդիկ դառնան: Երիտասարդ մայրեր՝ իրենց մատղաշ զաւակները գրկած՝ զայն ցոյց կու տային եւ կը յուսային ու ջերմօրէն կը հաւատային, որ այս նուիրական ծառը բախտաւոր ու հասակաւոր պիտի դարձնէ իրենց զաւակները:

Այո, նուիրականացած ու տեսակ մը պաշտելիութեան հասած էր այս ծառը ժողովրդեան աչքին: Օրհնուած ծառ է, կ'ըսէին անոր համար եւ բարեպաշտ ուխտաւորի մը կողմէն վանքին նուիրուած:

Նուիրատուն, ինչպէս կ'ըսէին՝ Ս. Փրկիչ ուխտի գնացած, ուրիշ ոչինչ ունենալով վանքին նուիրելու, այս ծառատունկն է տարած վանք ու ընդունուած եւ օրհնուելով վանքի բակին մէջ տնկած, այն առուին եզերքին ուր Աղբիւրակը (բունար պաշի) եղեգնուտէն բաժնուելով մեր օրերուն մնացած վանքի պարտէզին մէջէն կը հոսէր: Կ'ըսուէր թէ ատենօք, այդ ծառա-

տանի մէկ մասը վանքին արտաքին ընդարձակ գաւիթին մաս կը կազմէ եղեր։

Ե՞րբ է տնկուեր այդ ծառը ու որո՞նց ձեռքով, ոչ ոք գիտէ։ Քանի՞ տարիներու կեանք ունէր եւ քանի՞ դար էր անցած վրայէն, ոչ ոք գիտէր ու կարող էր ըսել։ Միայն գիտէին այն որ որդոց որդի, սերունդէ սերունդ այդ ծառը գոյութիւն ունեցած էր եւ կար։ Մեծ մեծերը կ'ըսէին այդ, ու անոնց մեծերն ալ նոյնը ըսած են իրենց։ Եւ կարեւոր ալ չէր անոր իսկական տարիքը գիտնալը։

Դ.

## ՊԱՌԱՒԱԾՈՒԿՉ

(ՆԱԽԱՊԱՇԱՐՈՒՄՆԵՐ ԵՒ ԱՒԵԼՈՐԴԱՊԱՇՏՈՒԹԻՒՆՆԵՐ)

*Մալաթիացի Հայերն ալ ուրիշ վայրերու Հայերուն նման զերծ չէին նախապաշարումներէ եւ հաւատալիքներէ, որոնք դարաւոր անցեալ մը ունին եւ անշուշտ կու գան մեծ մասամբ հեթանոսական ժամանակներէ։*

*Ամենէն աւելի տարածուած նախապաշարումը ճակատագիրին հաւատքըն էր ինչպէս նաեւ երկնային մարմիններու, մասնաւորապէս աստղերու մարդերու վրայ ունեցած ազդեցութեան համոզումը։ Տեսանք արդէն թէ անոնք երբ նոր լուսին տեսնէին, աղօթք մը կ'արտասանէին։*

*Ինչպէս այլուր, Մալաթիոյ Հայերն ալ մեծ կարեւորութիւն կու տային ՆԱԶԱՐԻՆ եւ ԱԶՔԻՆ, եւ կը հաւատային ՈՒՂՈՒՐԻ եւ հմայիչներու։*

*Երազները կը մեկնաբանէին, եւ շատ անգամ զանոնք տեսիլք կը համարէին ըլլալիք բաներու ազդարար։*

*Կը հաւատային նախազգացումին կամ կանխազուշակութեան։ Դժբախտաբար Մալաթիոյ Հայոց յատուկ նախապաշարումները լիովին չեն ուսումնասիրուած։*

*Հանգուցեալ Կարապետ քհնյ. Պէննէեան, որ ամենէն աւելի յարմարութիւնը կը ներկայացնէր այս գործը ընելու, կերպով մը զանցառու գտնուած է այս մասին, իր իսկ խոստովանութեամբ։*

Կարեւորը այն էր, որ այդ ծառը կար ու կը մնար որպէս բնութեան մէկ հրաշքը, գոյգ ջուրերուն մէջտեղը, փեռեկտուած կողովը, դուրս ցցուած, կենդանիներէն կրծուած արմատներովը, բնութեան անգութ տարրերին դէմ բաց ձգուած իր բոլոր մասերովը։

Եւ կ'ապրէր ան, հակառակ կեանքի պայքարի ընթացքին իր կրած բազմաթիւ հարուածներուն, ստացած բազմաթիւ վէրքերուն եւ անոնց թողուցած անհարթելի սպիներուն։

Ժողովուրդը կը սիրէր այս ծառը եւ ձեռք չէր տար անոր։ Եւ ո՛չ միայն

կը սիրէր զայն, այլ եւ կարծես իր շունչէն շունչ ու ոգիէն ոգի տուած կենդանի էակի մը վերածած էր զայն։ Ու ան ալ կարծես թէ կը զգար այդ ու կը երենէր ի տես իր այցելուներուն, ու տերեւներով ծափ կը զարնէր, իր ճիւղերը կը շարժէր՝ այցի եկող ուխտաւորներուն զով ու հանգիստ պարգեւելու համար։

Այսպէս էր Օրտուզու վանքի ՄԵԾ ՉԻՆԱՐԸ, այդ պատմական ծառը...» (*Ա. Քէքէվեան*, ՊԱՏՄԱԿԱՆ ԾԱՌԸ, ՊԱՊ ՈՒԽՏԻ, *Գ. տարի, Թ. 4, էջ* 17–19)։

*Հողեւոյս քահանային այս թերի հաւաքածոն լրացնելու միջոցները կը պակսին ինծի, սակայն պատահաբար իմէն անջատ մի քանի Մալաթիացի գրողներ յիշատակած են ուրիշ նախապաշարումներ, որոնք մէջ կը բերեմ։*

*Ա. Եաղուպեան (տես* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, *Գ. տարի, Թ. 2, էջ 9) կը հաւաստէ թէ Մալաթիացիք* «կը հաւատային թէ Ալ անունով չար ոգի մը կար, որ թշնամի էր նորածին մանկանց, եւ մայրերու մինչեւ քառասուն օրն պէտք էր մանուկը եւ մայրը միայնակ չթողուլ։ Ընտանիքի անդամներէն մին միշտ պէտք էր հսկէր, դանակ, մկրատ եւ կամ երկաթ առարկայ մը, խոշոր ասեղ մը ի ձեռին, պահապանը պէտք չէր քնանար, զի Ալին տունէն ներս մտնելուն եթէ ձեռքի երկաթը գետին ձգուէր, Ալը ինքզինքը ցոյց կու տար բարի էակի կերպարանքով եւ յետ այնու կը լինէր տունին գերին, ստրուկը, պահապան հրեշտակը, թէ շատ անգամներ նա կ'երթար օտար քաղաք, կ'աշխատէր որպէս մարդ եւ քիչ ատենէն ետ կու գար հարստութիւնով։ Ալեան ընտանիք մը կար, կը պատմէին թէ մեծ մայրերնին Ալ մը բռնած էր այդպէս եւ անոր բերած բարիքներով կ'ապրէին»։

*Ա. Եաղուպեան կ'ըսէ թէ 1906ին Եւրոպայէն դարձին այդ Ալեան ընտանիքին քանիցս այցելած է տեղեկութիւններ քաղելու համար, բայց մեծ մայրերնին մեռած էր եւ ընտանիքին միւս անդամները բան մը չէին գիտեր եւ կամ գիտցածնին եւ լսածնին բացատրելու դժկամակ կամ անկարող էին (նոյն)։*

*Ուսուցիչ Յարութիւն Ճըլճըլեան ալ (տես* ԲԻՒՐԱԿՆ, *23 Օգոստոս,* 1898), *Մալաթիոյ «ժողովրդական հաւատք»ին վրայ գրութիւն մը ունի, ուր կը հաստատէ Ալին մասին տիրող հաւատքը, որ գրեթէ ամէն գաւառներու մէջ ալ կար եւ կը կազմէր սարսափը տղաձգան մայրերուն, որոնց իրր թէ թոքերը կը տանէր մօտակայ անտառներէն մէկը եւ հոն կ'ուտէր զանոնք իր ընտանիքով։*

*Յարութիւն Ճըլճըլեան կը խօսի նաեւ ՕՃԱԽներու մասին, որոնք բնակավայրն էին Ալի պէս ոգիներու։ ՕՃԱԽներ շատ կային Մելիտինէի մէջ, զանազան ախտերու դէմ, որոնցմէ Ալինը ամենէն շատ ժողովուրդին ծանօթ էր (տես նոյն)։*

*Յարութիւն Ճըլճըլեան իր այդ յօդուածին մէջ պատմած է թէ ՕՃԱԽ նկատուած տան մը բնակիչ ընտանիքի մը տղան հարցաքննած է, սակայն որու ոչ մէկ իրողութեան ծանօթացած է։*

*Ա. Եաղուպեան կը յիշէ նա եւ ուրիշ ոգի մը Ալի պէս ահարկու, այն է ԽՈՐԴԼԱԽԸ, որուն համար իր տեղեկութիւնները կ'արտայրեմ։*

«Գիշերները, մասնաւորաբար միայնակ, Մահմետականաց սատակնոցէն անցնելէ կը խորշէին, որովհետեւ կը հաւատացուէր թէ իսլամներն ունէին ԽՈՐԴԼԱԽ չար ոգի, որ բռնած Հայը կը խեղդէր։ Այդ խորդլախ չար ոգին, երբեմն շունի, երբեմն գառնուկի, երբեմն չորքոտանիի կերպարանօք կը դեգերէր շրջակաները միայն գիշեր ատենները։ Հայ մը անգիտակցաբար բռնած էր աւանակ մը եւ տուն բերած, հետեւեալ առտուն ախոռին մէջ ճերմակ կտաւէ պատանքով ըստ իսլամ սովորութեան փաթաթուած սատակ էր դարձած. աւելի ծագման զաղտնիքը քահանայի պատմուած եւ անոր թելադրութեամբ, գիշերուան մօտենալուն սատակը դարձեալ փոխուած աւանակի, մարդը երկու ընկերներով կը տանի սատակնոցը կը թողու»։ (*Ա. Եաղուպեան, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 9*)։

*Այս առասպելապատումը բնական է յարմարցուած էր եւ նախապաշարեալ Մալաթիացիք հաւատացած էին։*

*Ա. Եաղուպեան (ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Գ. տարի, Թ. 2, էջ 9) նոյնպէս իբր նախապաշարում կը յիշէ նաեւ հետեւեալը.*

«Ջմրան երեկոները, բամպակ քաշելու, ընկոյզ կոտրելու, կամ ծիրանի կուտ կոտրելու համար դրացիի տունը պզտիկները հաւաքել, եւ զոյգ միջուկ հանողին նուէր տալէ զատ, կը քաջալերէին թէ նա պիտ ըլլար քաջ, ունենար շատ եւ խելացի զաւակներ, թէ չար ոգին անոր եւ ընտանեացը եւ թաղին, քաղաքին հայ բնակչաց որեւիցէ չարիք պիտի չկրնար հասցունել, թէ տարին բեղմնաւոր պիտի ըլլար եւ թէ բարի ոգին եւ մենէ բաժնուած սիրելեաց հոգիք որ զմեզ այդ միջոցին կը դիտէին պատուհանէն, պիտի ըլլային միշտ մեզ օգնող ամենայն ձեռնարկի, եթէ լինէինք բարի ու օր մը պիտի կարողանայինք տեսնել հոգիք եւս։»

*Անշուշտ կայինասոնց նման ուրիշ նախապաշարումներ ալ, որոնք ինծի անծանօթ են։*

*Սակայն ասոնք կը թուին հաստատելու թէ Մալաթիոյ Հայերը բաւական նախապաշարեալ ժողովուրդ մըն էին։*

***

*Թերեւս ամէն տեղ եւ ամէն գաւառ իրենց յատուկ եւ իրերանման նախապաշարումները ունին. բայց Մալաթիան այս նիւթի մասին առաջնութիւն կրնայ ունենալ խիստ առատ ըլլալուն համար։ Սակայն ասոնք ամբողջութեամբ գրի առնելը թէ՛ դժուար եւ թէ տուար հատորի մը պէտքն ունենալուն, մինակ մաս մը գրելով կը բաւականանանք։*

*— Արեւը մարը մտնելէն ետք ուրիշ տեղէ սեւ առարկայ բերողը՝ սուգ բերած կ'ըլլայ իր տունը։*

*— Ասեղ գտնող տղուն մայրը աղջիկ կը բերէ, իսկ գամ գտնողինը՝ մանչ։*

*— Այցելու մը, որ իր գնացած տունը կերակուր ուտելու հանդիպի, գդալը կամ կեսուրը զինքը շատ սիրելուն նշան է։*

*— Մէկը, որ անակնկալ կը փնտռայ, այդ պահուն ուրիշները զինքը կը բամբասեն։*

*— Գիշերը հայելիի մէջ նայիլը մեծ մեղք է։*

*— Գիշերը մազտաք ծամողը մեռելի միս ծամած կ'ըլլայ։*

*— Երաշտի ժամանակ եթէ չորս անգամ կարդուողի մը տանիքին ճըրթօնը տանելով առատ ջուրի հոսանքին դրուի, անմիջապէս առատ անձրեւներ կը տեղան։*

*— Կարկուտ տեղալու ժամանակ թոնիրի չամփուրները խաչաձեւ ձրգուին, կարկուտին տակ կամ կարկուտ մը լաթի տակէն կռնակը դրուի, անմիջապէս կը դադրի։*

*— Կրակին վրայ ջուրը պարապ տեղը եռայ, դրացիները կը հարստանան։*

*— Հարբուխը իրեն ալ չփոխանցնելու համար «ջաղջէն նոր էկայ» ըսելու է ենթակային, իսկ բոր կամ քոս եղողին հանդիպողը պէտք է ըսէ «Եօթը տարի է մառելի միս ծամմիմա կամ մառելին ծոցն իմ պառկեր»։*

*— Հաւը աքաղաղի պէս որ խօսայ, ընտանեաց մին կը մեռնի, նոյնպէս եթէ բուն խօսայ, մահ կը պատահի։*

*— Եթէ անծեղը տան շրջանակին մէջ խօսայ, բարի խապար կամ պանդուխտը կու գայ։*

*— Հիւսուած գուլպան ձեռքով քակողին տունը կ'աւերի։*

*— Ձեռքիդ մէջը որ մարմաջէ, քեզի նասիպ կու գայ։*

*— Մարած մոմին առկայծեալ պատրոյգը փչելով նորէն վառելու յաջողող մարդը արդար է։*

*— Շատ նստող հիւրը շուտ դրկելու համար ոտնամանին մէջ աղ լեցնելու է կամ տան աւելը կոթին վրայ տնկելու է։*

*— Մանածի կարժառը պարապ որ դարձնես, սատիկ քամի փչելու պատճառ կ'ըլլաս։*

*— Վառած մոմին բոցին չուրջը եթէ ճարպեր ցցուին, նոյն թուով հիւր կու գայ տունը։*

*— Պարապ օրրանը որ օրրես, մանուկը հիւծախտաւոր կ'ըլլայ։*

*— Տղայ մը եթէ պարապ մաղին մէջ նստի, իր ծաղիկը մաղին պէս կուռ կ'ըլլայ։*

*— Տան մը մէջ մրջիւն բնակիլը, տանտիրոջ հարստութիւն կը պատճառէ։*

*— Վառարանին մէջ փայտին բոցը որ վրնջէ, տանտէրը կը բամբասուի։*

*— Ականջը տօսացող մարդն ալ կը բամբասուի։*

*— Ջորին որ ծնի, աշխարհանցում կ'ըլլայ։*

*— Խուրճի վրայ նստող տղուն մայրը յառաջիկային երկուորեակ կը ծնի։*





# ԺԱ· ՄԱՍ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԻՒՆ

## Ա·

## ՀԱՒԱՔԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

*Մարդիկ միշտ իրենց կեանքին մէջ ինքնաբերաբար կ'երգեն ինքնիրեննին, առանձին, առանց ուեւէ թելադրութեան: Խնդիր չէ թէ իրենց երգը եւ անոր յարմարցուած բառերը յաճախ չափազանց անարուեստ եւ նախնական բնոյթ մը ունին:*

*Մասնաւորապէս երկրագործութեան, տարազագործութեան կամ գործաշինութեան պէս աշխատանքներու միջոցին մարդիկ բնազդաբար կարծես կը մղուին երգելու եւ իրենց աշխատանքին քայլերգը յօրինելու:*

*Ասով անոնք թեթեւցած կը զգան իրենց աշխատանքը, եւ անոր տաղտուկը եւ միօրինակութիւնը կը մոռնան: Հետեւաբար յաճախ մշակներ եւ բանուորներ կ'երգեն իրենց ծանօթ երգեր, որոնք իրարմէ կը սորվին:*

*Նոյնպէս կեանքին շատ պատահարներ, ուրախ կամ տխուր, մարդերը կը մղեն երգով արտայայտելու իրենց զգացումները:*

*Պատրաստի երգերը չեն որ միայն կ'օգտագործուին, այլ երբեմն ալ կը յօրինուին, երգողներու կողմէ, ծանօթ եղանակի մը բառեր յարմարցնելով կամ թէ՛ եղանակը եւ թէ բառերը յարմարցնելով պարագային կամ դիպուածին:*

*Այսպէս, կը ստեղծուի ժողովրդային անգիր դպրութիւն մը կամ բանահիւսութիւն մը, որ իր չափազանց պարզունակ ձեւով, մարդկային հոգիին արտայայտութեան ամենաբնական ձեւը կը ներկայացնէ եւ բոլորովին անանձնական բնոյթ ունի, վասնզի ժողովուրդը կ'արտայայտէ անոնց մէջ իր զգացումը եւ ոչ թէ բանաստեղծ եւ գրագէտ անհատը՝ իրը: Այս տեսակէտով ժողովրդային բանահիւսութեան ամենէն յատկանշականը երգն է, որ երբեմն վայրկեանին տպաւորութեան տակ կը յօրինուի:*

*Այդ երգերը յայտնի հեղինակներ չունին, այլ ստեղծագործութիւններն են ժողովուրդին: Արուեստագէտներ չեն ճախարակած զանոնք: Անոնք գիւտերն են ժողովուրդին, յաճախ նոյնիսկ անոր անուս գեղջուկ տարրին:*

*Այս ստեղծագործութիւնները կը բաղկանան երգերէ, յանգաւոր զրոյց-ներէ, Համբարձումի վիճակներէ, Անտունիներէ, սիրերգներէ, ողբերգներէ, հարսներգներէ, եւ ունին զուտ ազգային դրոշմ :*

*Մայրերը իրենց մանուկներուն օրօրոցին առջեւ յօրինած են օրօրներ, արհեստաւորներ եւ բանուորներ ձեռքի աշխատանքի ընթացքին ստեղծած են աշխատանքի երգեր, նման ուրախութեան եւ տրտմութեան օրերու ինքնաբե-րաբար ստեղծագործուած, յաճախ անարուեստ, սակայն սիրտէ բխած եր-գերուն, որոնք հետզհետէ աւելի արուեստ եւ գեղեցկութիւն ստացած են: Այսպէս, ստեղծագործուած են երգեր, որոնք ճոխացած են նոր յաւելումնե-րով եւ նոր ներշնչումներով :*

*Մալաթիոյ Հայերն ալ իբրեւ կենսունակ մէկ մասը հայ ցեղին, ան-կարելի է որ ժողովրդային բանահիւսութիւնը ունեցած չըլլային, նոյնիսկ վաղեմի ժամանակներէ սկսեալ :*

*Դժբախտաբար անոնցմէ շատերը գիրի առնուած չեն եւ ստիպուած եմ գոհանալ պահպանուած քանի մը նմոյշներով :*

*Արդէն ներկայացուցի հարսանեկան սովորութիւններու մէջ անոնցմէ նմոյշ մը (տես էջ 1122—4), որուն նման ուրիշներ ալ թերեւս կային, բայց դժբախտաբար գիրի չէին առնուած եւ ծանօթացած :*

*Մալաթիացիք որ քէֆ ընել կը սիրէին, կերուխումով եւ օղի սպառե-լով մեծաքանակ, անշուշտ ընտանեկան խրախճանքներու մէջ ունէին երգեր, որոնցմէ նմոյշներ մեզի հասած են, առհասարակ ուտելու ու խմելու շուրջը:*

*Այսպէս Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան իր Մալաթիոյ տեղագրութեան Համառօտ խմբագրութեան մէջ (տպուած Պէյրութ) ունի (էջ 135) սեղանի վրայի երգ մը, որ մէկ տարբերակը կը ներկայացնէ շատ մը հայկական գա-ւառներու մէջ երգուած նման բովանդակութեամբ երգերու :*

*Ահա անոր բառերը·*

«Պատրաստեալ է այս սեղան
Եահնի, պէօրէկ եւ փագլաւան,
Հինգ հատ հաւուն եւ կափաման,
Եղը լեցուն ծովու նման,
Բարեխօսի մեծ ինճանին,
Պատասխանէ կըյուկ բախին:
Արեւելք գետարքին
Եւ արեւմուտ կանաչ փարչին,
Ազնիւ քէպապ վրան տարչին,
Նստեալ ուտենք մատանոսին,
Բարեխօսեա եւ այլն :»

*Ուրիշ տողեր ալ կան դարձեալ կերուխումի նուիրուած :*

*Այսպէս Ծոցիկեան կը յիշէ* (Արեւմտահայ Աշխարհ, *էջ* 381), *սա տո-ղերը·*

«Նստէք սեղանի և գինի,
Առատ խմեցէք գինի» :

*կամ սա տողերը՝*

«Տուն տանինք փեսան,
Խառնենք հարսան» :

*Դարձեալ նոյն դասակարգին կը պատկանի հետեւեալ ԲԱՐԵԿԵԴԱՆԵԱՆ երգը (տես* Ծոցիկեան, *նոյն, էջ* 380) ·

«Բաժակներ լինի
Կարմրուկ[1] գինի,
Ձեզ անուշ լինի :

Ձոր մէզէն համեղ,
Գինին է զօրեղ,
Դուք անուշ արէք :

Գառը խորոված
Գինին փրփրած
Խմողն է օրհնած :

Տաղեր կանչեցէք,
Սազեր ածէք,
Ծափ տուէք, պարէք :

Այս գինարբուքին,
Տխուր ու դառն
Մարդ չըրնի խարն[2]» :

*Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան իր գործին Համառօտին մէջ իբր ժողովրդական երգեր կը ներկայացնէ երկու հատ (տես նոյն, էջ* 137)*, որ իր ընդարձակ աշխատութեան մէջ չեմ գիտեր ինչո՞ւ, դուրս ձգած է :*

*Այս երկուքն ալ նշանակելի է որ կը դառնան դարձեալ ուտել-խմելու շուրջը, ինչ որ ցոյց կու տայ թէ ո՛րքան մեծ կարեւորութիւն կու տային կերուխումի Մալաթիացիք :*

«Ահա բերին մեզի լավաշ,
Ուտիք խմիք եաւաշ եաւաշ,
Ոնչ կռիւ ունիք, ոնչ եաւաշ,
Գինի լիլիից, բախի լիլիից,
Հոյի հոգէկ տուր ըմպիք :

---

(1) *Ըստ Պաղտասար Եղիկեանի* (Պապ Ուխտի. *թ.* 26, *էջ* 10) *ԿԱՐՄՐԻԿ*:

(2) *Այս երեք տողերը Պաղտասար Եղիկեան՝ Ծոցիկեանէն աւելի ունի* (*տես* Պապ Ուխտի, *թիւ* 26, *էջ* 10):

Ահա բերին մեզի պանիր,
Աչիցը քունն ալ չի տանիր,
Ոնչ զոնքաչ ունիք ոչ անիր,
Գինի լիլից եւն․:

Ահա բերին մեզի սինի,
Վրան քէպապ բախի գինի,
Մէկ եար մ'ունիմ մէկ մ'ալ գինի,
Գինի լիլից եւն․:

Ահա բերին մեզի կազեր,
Եղն ելեր վրէն կը վազէր,
Մեզի պէտք է չիփթէ սազեր,
Գինի լիլից եւն․:

Ահա բերին մեզի խոնչա,
Վարդ մ'է բսեր կոնճա կոնճա,
Լիցտուր խմենք մենք տօյունճա,
Գինի լիլից եւն․:

Ձեր տունն ըլլէր մերն ըլլէր,
Արալըղի պատը չըլլէր,
Եարսալ քովս ալ մարդ չըլլէր,
Գինի լա լա լար, բախի լա լա լար,
Հոյի հոգեկս բար անուշ ըմպէի ։»

*
**

«Մեծ եւ ազնիւ է այս սինին,
Անթիւ ծաղիկ ի մէջ սորին,
Բամեալ թաղեն վրայ ծառին,
Տուդուն, կումրեն հետ պիւլպիւլին,
Ի սմա կաքաւն ու աղաւնին,
Բախին, գինին մէջ պիլլորին,
Որ թէ կ'ուզէք չըլլալ մոլին,
Սակաւ ըմպէք յետ խորտիկին ։»

*Այս կարգի ուրիշ երգեր ալ ունէին անշուշտ, որոնք դժբախտաբար չեն գիրի առնուած ։*

*Այս մասնաւոր Մալաթիոյ յատուկ երգերէն զատ, ժողովուրդը կ'երգէր, մանաւանդ 1908–էն ետք, ազգային ծանօթ երգեր, որոնք ամէն տեղ մուտ գտած էին ։*

# ՀԱՒԱՔԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ ԱՏԱՂՁՆԵՐԸ

**(Առակներ, առածներ կամ ասացուածքներ, հանելուկներ, մանրավէպեր, անէծքներ, երդումներ, օրհնութիւնք, բարեմաղթութիւններ, աղօթքներ, օրօրներ, մանկական երգեր, սիրահարական երգեր, եղերերգ, վիճակներ)**

*Մալաթիա, իբրեւ վաղեմի հայաբնակ եւ հայախօս գաւառ մը, պէտք է ունեցած ըլլայ հայ լեզուով իր դիւցազնավէպերը կամ առասպելները, գրոյցները կամ հեքիաթները, որոնք մեզի չեն հասած:*

*Մալաթիա ըլլալով շատ հին քաղաք մը, իր շուրջը ունէր վայրեր, որոնք իրենց «Պատմութիւնները», այսինքն աւանդութիւնները ունէին, որոնք գիրի առնող մը չեն ունեցած:*

*Այնպէս որ դժբախտաբար պիտի չկարենանք տալ նմոյշ մը՝ տեղական բնոյթով եւ նկարագիրով աւանդավէպի մը կամ առասպելի մը կամ գրոյցի մը կամ հեքիաթի մը, թէեւ համոզուած ենք որ անպատճառ պէտք էր գոյութիւն ունեցած ըլլային: Ինչպէս ուրիշ տեղ, նոյնպէս Մալաթիոյ մէջ, ապահովաբար երբ իրարու քով կու գային եւ կը հաւաքուէին մանաւանդ ձմեռ գիշերները, անշուշտ կը պատմուէին ՄԱՍԱԼներ, հեքիաթներ, առասպելներ, իբրեւ զուարճութիւն եւ ժամանցի միջոց:*

*Ինչպէս ամէն տեղ, Մալաթիոյ մէջ ալ հայ մամիկը իր թոռները կը զբաղեցնէր ապահովաբար հետաքրքիր պատմութիւններով, որոնցմէ դժբախտաբար գէթ նմոյշ մը չկրցայ ունենալ:*

**Ա.**

## ԱՌԱԿՆԵՐ

*Առակներ, որոնց առարկան են կենդանիները, ինչպէս աղուէս, առիւծ, շուն, կատու, մուկ, աքաղաղ, արծիւ, կռունկ եւայլն, ինչպէս բոլոր Հայերը, նոյնպէս նաեւ Մալաթիացի Հայերը ունեցած են:*

*Այս կենդանիներն, առհասարակ, խորհրդանշական հանգամանք ունին:*

*Անոնց մէջ անպատճառ աղուէսը՝ խորագէտ, շունը՝ հաւատարիմ եւայլն կը ներկայացուին:*

*Բուն հայկական նկարագիր ունեցող այս առակներէն մեծ մասը աւանդական «խիկար իմաստուն»ին վերագրուած են:*

*Ասոնցմէ անշուշտ մաս մը Մալաթիոյ Հայոց մէջ ալ պահուած էր:*

*Ասոնցմէ բաւական ընդարձակ նմոյշ մը գիրի առած է Տ. Կարապետ քհնյ. Պէննէեան, լեզուական նմոյշ մը տալու մտահոգութեամբ (Համառօտ հրատարակութեան մէջ, էջ 177–184):*

*Զայն հոս կը բերեմ, որքան Մալաթիոյ գաւառաբարբառին, նոյնքան առակի մը իբր նմոյշ:*

# ԷՇ, ԵԶ ԵՒ ՄՇԱԿ

Մէկը կար, մէկը չկար, Աստուծմէ կայրի ալ մարդ չկար: Ջանկին թիննըրին մէկը գեղի մի մէջ շատ տուներ ունէր, էտտիդ ամէն օրնակ շատ մի տավար տօլուղ կը պէհէր: Տարուանը մէկը կնկօքը եւ տղեքներօքը գեղը գնաց ուր թարլաներէն մէկուն մէջ զատէն հինգ ցորեն ցանէ տէյի: Էս մարդը հէյվաններին լեզուէն աղէկ կը հասկնար, հըմմա հարզէ հուէն նէփսը թէհլիքէի տակ չի դնէ նը՝ պաշխասուն չէրնա պատմիր. Էսուր համար պէտք չէր ու հուէն իմաստութիւնօքը ուսած բաները մէկուն ըսէր:

Էրկուքը մէկ ախոռի մէջ կապուած էշ մի եուք էօքիւզ մի ունէր: Օրին մէկը թիւննարը հուէն տղօց խաղերը տեսնալօք էկլէնմիշ ըլլելու համար էտոնից քով նստելն իքէն, լսեց ու էօքիւզը էշուն կ'ըսէ եա «Աբթուն, իշ խատար ուղուրլի տեսնմ ա քիզ եաբու քու քշած ըրէ հէթութիւնդ ու քիչի սէհմէդդ աչքիս առջեւը բերիմ: Մախսուզ մարդ մի քըզի մըղաթ կ'ըլլի, կը վըլանայ, մաղուած թէմիզ գարիիս պուզի պէս ջուր կու տայ, քու ամմենը մենծ գործդ, միր տէրը շէլկել է, եաբու քաղաք եա պաշխա տեղ մը էրթա էկէր ասա չըլլէր նէ ամմէն ատէն պարապ պիտի մնայիր, լէքին իմ հետս շատ գէշ վարվինա, հէմ իմ հալս իշ շտաք նետելիք, քուդ էն շտակ զովելիք է: Կէս գիշեր ըլլի թէ չըլլի, առա քըզի սապունի մի կողմիշ կ'ընին էս ու հարչէ ըռնկուն քշել կու տան. էսօնք էնպէս կը խղճին ամա քու՝ շատ ատեն պիւթին ուժս կը քաշվիյա, մնակ էսա չէ, չիւթճիւն ուր տայիմ էտեւէս կու գայ, հա պռա մաստայօքս կը ծեծէ: Ասարանը քաշիլէն քաշիլէն շըլիցս կաշին կեղվըված է, ինչ էնիս հարզէ ախշամ բանիլէն եատքը՝ եաբու տուն դառնամ առջեւս մընաք զոր մի լալծուն զատ՝ հէչ չէ նէ մէջի քարը քէսէի նեն ստկցնէր ուր ըրեհէթ մի ուտիմ. իմ էս ուղուրսուզութեանս պակասը թմմնալու համար քշերն ա թրիքիս վրան պառկելու մէնճպուր եղած եմ: Հըմ մաքու հալպդ ցանկանալու հազգ ունիմ թէ չէ:»

Էշը ճար կուլաղիյօք մտիկ էրաց. ու եաք էօքիւզը խօսքը թմնցուց. «Քըզի քու անկուտ (անելիք) ըսիր ինէ՝ ըսած էնոր, տեղօքն է. շատ թէվէքէլի իս. կը թողուս ուր հրէնց քէփին պէս քեզ բանեցնեն. հիչ խելք մի չես մտմտար. լաքին քու քաշած ամեն հազար էթէտ քըզի ինչ փայտայ կայ: Դուն հընքըզինքդ կը չարչըկիս ա էնպէս մարդոց ըրէհէթութեանը համար, ուր հէչ մի ատին մը կատիրդ չեն ճանչնար: Քու հետդ էտպէս չէին վարվիր, թէ ուր ուժիդ կէօրէ էօտ ալ ունենայիր: Եաբու քիզ մուսուլը կապելու կը բերեն՝ ինչո՞ւ համար դէմ չես կայնիր ա, ինչո՞ւ համար օտքվընեդ գետին զէնիրուք հէրս չիս էլլար ա, ինչո՞ւ համար մէրամ, պիթիւն ա չիս (օհմեցնիր ա եէկին մի պաջելօք): Ասված հինքըզինքդ սիրցունելու ամմէն բանը տըւիր է հըմմա. դուն չի գտիս: Էտ չոր հիրթըեա քըզի բերիննէ հիչ մի ուտիր: Էկէր քըզի տըւած էս խորհուրդներս բռնիս նէ՝ էնպէս մի մխաթ պիտի ըլլին քեզի եուր, էն ատենը կը հասկնաս ըսածներուս հագլի ըլլիլը. հէմ ընծի շնորհակալ պիտ ըլլիս»:

Էօքիւզը իշուն թամպիածները իրաւ հասկցաւ, հէմ շնորհակալութիւն յայտնեց, «Սիրելի Արթուն, ըսաւ իշուն, ամման ըսածներս միւքքէրդ պիտի էնիմ. հէմ տեսնաս քի իշպէս գլօխ հանիմ»: Էս զրուցներէն եատքը հիւս-քիւթ կիցան ու թիւճճարը ամէն բաները մտիկ էրաց:

Մէկալ օրը կաննուխ մուշակը էկաւ, Էօքիւզն առաւ, տարաւ սապանան կոշմիշ էրաց ու բանեցուց: Էօքիւզը իշուն խրատը միտքը պահիր էր՝ էն օրը գլօխը տնկից, եաբու ըսին ունն, ուշակը բերաւ ուր մուսուրը կապէ՝ ամմեն օրուան պէս, տունն էվըրկածը՝ պույնուզները հըքըհոեն երկնցնելու տեղ պաշլայեց սէրթութուն էնել ու պաչելէն եատ եատ քաշվիլ, գլօխն ալ ծըռից, կէօյէքի մուշակին զէնէլ կուզիր: Մէկ խօսք՝ իշուն տուած թէրպիաները պիւթիւն բանեցաւ: Մէկալ օրը մուշակը էկաւ օր նորէն տանէ, հըմմա տեսաւ ու ըռըկուան դըրած հերթօք մուսուրը լենկուկ է, հէմ Էօքիւզը գետինը մէյվըներ, օտքերը վեր տնկեր պէտ պէտ կը հեւայա, գըռըցաւ թէ հուանտ է մեղքըցաւ վըրան, եւ տեսաւ ուր փայտա չունի էտի բանեցնելը՝ գնաց թէզօք թիւճճըրին ըմցուց:

Թիւճճարը էն սաութս հասկցաւ ու Էօքիւզը իշուն խրատնիրը մէկին մէկին բռնիր է: Իշուն ճունան (պատիժ) տալու համար «թէզօք գընա, ըսաց մուշակին, Էօքիւզին տեղը էշն առ, աղէկ մը խօնճեցուր ու խելքը գլօխը գայ»: Մուշակը էս թանպահը կատարեց: Էշը մէճպուր էտպէս բանելու հէշ ալըշմըշ եղած չէր: Էսկից զատ՝ էն դտար փէտ կէրաւ ուր՝ տուն էկաւ նէ օտքի վրայ կայնելիք հալը չի մնաց:

Լէքին Էօքիւզին քէֆին վրայ քէֆ չի կար, հոէն մուսուրին մէջ ինչուր կար՝ կերիր գրբիր պիւթիւն օրն եան նստիր էր, հընքըռէն քէֆլէնմիշ կըլլէր ու իշուն խրատները բռնից. շատ մի օրհնէք կատար էնուք. հէմ եաբ էնուր գալը տեսաւ վազեց հոէն շնորհակալութիւնը յայտնելու: Էշն իշէ էնպէս նեղացիր՝ հոգին բերանն էկիր էր ուր բան մի, խօսք մի պիլէնէմ չըսաց: «Իմ իշութեանս էրուր ես՝ ձօնը իմ գլօխս էկաւ. կըսէր հընքըռէն. ամմեն ուզածս տեղն էր, քէֆիս վրայ քէֆ չիկար, սուչն իմն է՝ ու էս պէլայիս մէջ ընկայ հէմ էկիր ասկից խալըսելուն մէկ կօլայ ճամբան չի մտմտամ նէ, բանըս բըսիր է»: Էս ըսելօք էտ դտար ուժէ, մատուրէ ընկած էր ուր, հոէն մուսուրին տակը մառելի պէս գետինը մէյնըվեցաւ:

Թիւճարը եաբ լսեց իշուն էս հալը, տեսնամ հալա Էօքիւզին ու էնուր փաթը ինչ փըրլտաղ պիտի դառնայ ըսելօք՝ ըռընկվընոցը ուտելուն պէս հասաւ՝ լսեց ուր էշը Էօքիւզին կ՚ըսէր. «Հընքապապ, ըսէ տեսնամ թէ ի՞նչ պիտի էնիս եաբ վաղը մուշակը ուտելիքդ բերէ: — Իշ պիտ էնիմ, ըսաց Էօքիւզը, քան ինծի տուած թէրթիւպդ պըտի բանեցընեմ: Առաջք պիտի հասունճամ, էրէկվան պէս պոյընուզներս պիտի ցըցընիմ, սուտ հուանտ պիտի ըլլիմ ու հոգի քաշելու պէս պիտի էնիմ: — Չի ըլլի եու էտպէս բան մի էնիս ըսած էշը էտ պէսօք գլօխտ վրայ կու տաս. չիւնքի էս ըռընկուն տուն դառնալն ի քէն՝ մեր տիրոջը քըզի հանտէ ըսած մէկ խօսքը լսեցի եէւք սիրտս դող էլաւ:

— Էհ, ի՞նչ լսեցիր, ըսած Էօքիւզը, իրիճա կ՚ընիմ, բան մի պահիր

ըսէ ինծի, սիրելիս: — Տէրս, ըսած էշը մուշակին ըսաց թէ, «քանի ուր էօքիւզը օտքի վրայ չիյնայ կայնիր հէմ ուտելիք չիննայ ուտիրա, կ՚ուզիմ ուր վզը համան մորթիմ Աստուծու սիրուն հանրէ միսը աղքատներուն տաղտըրնիմ, կաշենա մըզի պէտք կ՚ըլլի, տապաղին կու տաս հըմմը չմեռնաս կասապը կանչելա»: Իշտէ էս իր քըզի ըսելիքս, հետդ ունեցած բարեկամութեաննուս կապէ մէճպուր էրաց իս էս բանը քըզի ըսելու նոր խրատ մալ քեզի տալ: Նախ եւ առաջ եաք հերցդ բերին օտքի ել ու էնի չէպիկ մի լըթէ: Միր տէրը էսի տեսածին պէս՝ պիտի հասկնայ ուր ադիկցիր իս· ու խօսքը ձաւռ պիտի առնա· չէ եու պախշա թէվիւր էնիսնէ բանըդ կը բռնի, խալըսում չունիս»:

Էս խրատները իշուն ուզածին պէս էօքիւզին թէէսիր էրաց: Էօքիւզը քօն առաւ տուաւ ու վախուն (վախէն) պաշլայեց պաջել: Տէրը եաքու էս գըրուսքները ճան կուլաղիքօք մտիկ էրաց, էնպէս բանձր քահքահօք մի խնդաց ուր, տունն էվրելիք կնիկը էնդի ծէրը զարմացաւ: «Հասկցուր ինծի, ըսաւ էնուր թէ ինչու հանտէ էդպէս մէկին բանձր կը խնդաս ուր իսա քու հետդ խնդամ: Կնիկ ըսաց թիւճճարը, իմ խնդալս լսիլդ մնակ հերիք է քըզի: Չէ, ըսաց կնիկը, կուզիմու սէպէպդ հասկնամ: Զիմնա էդ ուզածդ էնիլ, ըսաց էրիկը, մինակ գտցիր ու մեր իշուն ու էօքիւզին վրայ ըսած խօսքին վըրայ կը խնդամ, մնացածը էնպէս սըր մէ եու, քըզի չիմնայ ըսիր: Վո՞վ չի թողուր, ինծի ըմցնելու, ըսաց կնիկը: Էկէր ըսիմ նէ գըտցիր որ կը մառնիմ, ըսած էրիկը, իմ վրաս կը խնդաս, ճնչաց կնիկը ըսածդ աղօրտ չելար, էկէր հիմմա ինչո՞ւ հանտէ խէդալդ չըսիլ, հէմ իշուն ու էօքիւզին մապէյնը անցած լաքերը ըզմէ պահեսնէ, Աստուծու վրայ կերդընամ ուր ալ էսկի եատքը մէկտեղ չպիտի կենանք:

Էս խօսքերը թմցունելով՝ տուն գնաց քէօշէ մի նստեւ եւ էնտեղը հարզէ լօս լալօք անցուց: Էրիկը մէկալ օրը տեսաւուր, տահա լալուն ձայնը չիկյրիր ա, «կնիկ էն խելքդ խելք չէ, ըսաց էնուր, ինչու ցաւ կէնիսա, քանիքու օչինչ բան է: Էնտղաք հոգու ցաւ կէնիմ էսուր, հանտէ, ըսած կինը, որ հարզէ չըսիս նէ պիտի լամ: Լաքին *զարաֆութ* չէ ըսածս, ըսաց էրիկը· էկէր քու էս ըղաչանքդ լսիմու սըրը պատմիմնէ իս պիտի մառնիմ: Աստուծու էմրը ինչ է նը թող ըլլի· ըսաց կնիկը, իս տայիմ պիտի լամ, պիտի դադրիմու ըսիս տէյի: Տիսնամայաքու քըզի խօսք հասկցնելը շատ կիւճ է: Հէմ միս մքինը չիկայ՝ ու քանիքու էտպէս ինատուդիւնօքդ հընքըզինքդ պիտի մառցնիս, տղէքդ կանչիմ ու մառնելէդ առաջ քեզ տեսնամ: Համան տըղաքը բերել տուաւ, էնզն ալ մարդ կառվից ու կնկանը պապը· մէր ու խսըմ (ազգական)ները կանչին: Եաք էղածն ա էկան ժողովիտան ու գործին էղիլութինը էնոնց հասկցուց, էսոնք վարպետութիւննին բանեցուցին թէ հազզ չունի էտպէս ինատին ձին էծնալու: Ըմմա կնիկը պիւթիւնն ալ փիւր–սիաս էրաց (վհատեցաւ) ու ըսացքի աղէկ է մառնիլ քան թէ էս գործուն մէջ էրկանը որ էջընցնել: Կէրէկ մէրը կէրէկ պապը ու կէրէկ զաւկները զատէն զատէն զուրցեցին, հէր ինչ էրինէ կանմիշ չեղաւ: Թիւճճարն ալ շաշմշ էղէր

ինչ ընելիքը չէր գիտեր: Հոնն տանը դրան առջեւ մինակ նստած կը մտմըտարքի սըրը կնկանը ըսելօք հինք մառնէր չէնէ չըսելօք կնիկը մառնէր:

Էս թիւճճարը թոռդին մէջ հարծող լեցուն հաւ ու խօրօզ մ'ունէր. էնցէ աղէկ շուն մը ունէր որ տանը մղէթ կ'ըլլիր: Իշպէս ըսաք եար նստեր ինչ անելիքը կը մտմտար, տեսաւ ուր շունը խօրոզին վրայ կը վազէր ուր հաւու մը վրան էլիրը կը կոխիր ու լսեց ուր շունը սա խօսքերը կ'ըսէր խօրոզին. «խօրոզ, Աստուած քու էդ զէվէք քշելդ շատ չպիտի էրկունցունէ, դու չի՞ս ամըչնար ու էտ բանը էսօրա կէնիս ա»: Խօրոզը մէճիւզներու վրայ թիք մը կայնեցաւ ու շան դառնալով, «ինչու մար էսօր ու չէքէ պաշխաօր էս բանը ընծի *կասալ* եղած ըլլի: Քանի եու չգիտես, ըսաց շունը, գիտցիր ուր մեր տէրը էսօր սուգի մէջ է. կնիկը կ'ըսէ եահու պէհուած բան մը ըսէ էնուր. էնա էյեր էս ուզածը ըսէնէ հնքզինքը պիտի մառցնէ: Գործերը էսպէս են. հէմ վախնամ թէ կնկանը ինատութիւնը ախդըրելու տէյու խելք չունի. չինքի էնիկը շատ սիրէ եա: Կապիլէ քի պիտի մառնի, պիւթիւննիս ամէկզմէկ ջարդ ու փուրդ կէնիք էստեղ, մընակ դուն մեր թասայինա չիս հայիր չիրքի պէս հաւերուդ հետ քէֆ կէնիսայ:»

Խօրոզը սէպէս ճէվապ տուաւ շանը թազիրին. «ինչ անկուտ է եղեր մեր տէրը. սատէ մէկ կնիկ մի ունի ու էնուր հետ ալ հուն չիննա էլլար, իս իսէ էստին յիտծուն հատ ունիմ ու էմրէս դուրս չենելլար ա: Թող խելքը գլօխը թօփէ ու թէզօք էտքի խալսելուն նարը գտնա: — Էհ իշ կ'ուզիս ուր էնպէս էնէ, ըսած շունը: — Թող կնկանը էղած տեղն էրթայ, ներս մտնայ ըսաց խօրոզը ու դոռը կղպելէն եատքը՝ թող թէմիզ զօփայ մը առնայ ու էնիկի աղէկ մի թրջէ էն ատենը խելքը գլօխը կու գայ, փօլատ պէս կ'ըլլի»:

Թիւճճարը խօրոզին էս խօսքերը լսեց թէ չի լսեց օտք էլաւ. մեծկակ ու չի կոյրելիք փէտ մը առաւ հոէն կնկանը քով ուր տահա կուլաեա, էնուր հետ ներս մտաւ, դոռը կղպեց ու էնպէս աղկէկ փէտ մինզրբիցուր կնիկը ճնչել պաշլայեց, «Ջառք կու տայ, էրիկս ձառք կու տայ, իս թող տուր, ալ բան մը չեմ հարցներ քեզի»: Էս խօսքին վրայ էրիկը տեսաւ ու հոէն կնիկը բիւշմանութիւն կը բերէ ինատութեանը վրայ քէօթէկը թէրկից, դօռը բացաւ եղած խսմներ ներս մտան, ուրախացան կնիկը ինատութիւնը ձգիր է, ու շնորհակալ էղան էրկանըմնէ եու էսպէսօք էնուր խելքը գլօխը բերիր է:

Բ.

## ԱՌԱԾՆԵՐ ԿԱՄ ԱՍԱՑՈՒԱԾՔՆԵՐ

*Ինչպէս բոլոր հայաբնակ վայրերու, նոյնպէս նաեւ Մալաթիոյ մէջ Հայերը իրենց լեզուին մէջ ունեցած են բազմաթիւ առածներ եւ ասացուածներ, որոնք շատ անգամ դարերու իմաստութեան մը արտայայտութիւնն են:*

*Այս առածները կամ ասացուածները յաճախ նման են իրարու, եթէ բաղդատուին ուրիշ գաւառներու առածներուն եւ ասացուածներուն հետ, բայց իրենց լեզուով տեղական հանգամանք մը ունին, հետեւաբար անոնց*

*շատ ճոխ եւ խնամեալ մէկ հաւաքածոն կը ներկայացնեմ, առնելով Տ. Կարապետ քհնյ. Պէննէեանի ընդարձակ ձեռագիրէն.—*

## Ա.

Ագի ագէց փաթտիր էն = *Դաւակից են*:
Ագեցը տակ փուշ դնել — *Զայրացնել, բարկացնել*:
Ագեցը հետ խաղայս = *Ինքնիրեն կը վնասէ իր ընթացքով*:
Ագէցը ծէրը նախշուն է = *Խորամանկ, կեղծաւոր եւ փորձառու է*:
Ագին ճերմակ է = *Խորամանկ, կեղծաւոր եւ փորձառու է*:
Ագէցը տկէն թստող է = *Խորամանկ, կեղծաւոր եւ փորձառու է*:
Ագին ծալել կամ կտրել = *Գործէ եւ պաշտօնէ ձեռք քաշել տալ. օրինակ.*
*«Գողութիւնը բռնելուն պէս համան ագին ծալիր էն»*:
Ագօֆ աստըղիկ մի գլօղը ցաթեր է = *Բախտը ժպտեր է իրեն*:
Ագօֆը, հօգօֆը իբընիբ էղաւ = *Իսպառ անհետացաւ, կորսուեցաւ*:
Ագին տնկից — 1. *Կորսուեցաւ, սատկեցաւ*. 2. *Ընդդիմացաւ*:
Ազատիկ չուզողը զատիկի հասնիր:
Ալը ուրիշը հէչ հինֆ մէջ = *Ամէն բանի միջամուխ ըլլալ կ'ուզէ*:
Ալանֆ աշխարֆ էլլալիֆ բան չէ = *Իր ներկայութենէն որեւէ շահ եւ օգուտ չքաղուիր*:
Ալլըդը (*կազմածք*) ջրէն կը հանէյա = *Գործը կարգին է, ինքզինք կրնայ հոգալ*:
Ալիրը մաղիր, ալիր մաղը ցիցն է կախիր = *Ամէն բան կարգադրած, լրացուցած է*:
Ալիրին նուվալը ֆանի ֆանի թոթվիսնէ՝ թօզը կ'էլլայ = *Հիմնական հարստութիւնը մէկէն չ'սպառիր*:
Ալիրը ճանկել (*ձեռք քաշել*) = *Երբ մէկին խարդախութեան եւ ուրիշ թերութեանը իրազեկ կ'ըլլայ ոք կամ կը խաբուի, կ'ըսէ. «Ալ ալիրըս ճանկեցի էտկից»*:

Ալխֆտին էրես պաղ կ'ըլլի:
Ալկատը գողութեան էրթանէ՝ լուսինը առջի ըրընկվընէ կ'ցաթէ:
Աղէկ է ըսածիտ աղը ծոցէն կ'էլլայ:
Աղէկ խնծորին ֆար նետող շատ կ'ըլլի:
Աղերնին հոտեր է = *Մէջերնին անհամաձայնութիւն կայ*:
Աղը չոր, արտը կանաչ = *Անհոգ է, զինք մտատանջող որեւէ բան չունի*:
Աղ ցանիմ ուր չի հոտիս = *Հեգնութիւն մը*:
Աղէկ մարդը խօսֆին վրայ կու գայ:
Աղ եղաւ հալեցաւ = *Հարստութիւնը անզգալապէս կորսնցուց*:
Ահը գուգայ մահը կ'մոռցնէ:
Ահնամ ապուրը շերեփօֆ կ'ուտին:
Ահը սրտէն ամօթն էրեսէն չտանէ = *Դատաւորը (ղուկ.)*:

Ամառն էկօեու խիյար տամ = *Կ'ըսուի մէկուն, որ ուրիշին գործին կը վնասէ ժամավաճառութեամբ:*
Ամմեն մարդ ա ձիթ կ'ծամմէ, հըմմա քրդուն ախճինը համը կը բերէ:
Ամմենը սուտ՝ հինք իրաւ. (հեգնութիւն):
Ամուն մառաւ = *Ալ ամէն միջոց անօգուտ են գործի յաջողութեանը:*
Ամմեն օր պէկիր չի սատկեր ու քառասուն քիւփթէն փարայի մը ուտես = *Բախտը քիչ անգամ կը ժպտի մարդու:*
Անծակ դդումը կ'մտնա = *Անհնարին միջոցներով հետամուտ կ'ըլլայ որեւէ բանի:*
Անկաճը լենկուկ կորեկ չ'աժիր = *Բոլորովին անչահ մէկն է:*
Անկճին էտեւը չ տեսնել — *Սպառնալիք մը, որ դատախազը կ'ընէ հանդէպ հակառակորդին. օր. «Անկճին ետեւը կ'տեսնա, ատ բանը չիննա (չկրնար) տեսնար:*
Անկաճդ օղ թո՛ղ ըլլին էսոնք = *Աս բոլոր խօսքերը իբր խրատ միտքդ պահէ:*
Անկո՛ւտ, հէչ մառելը ձան կու տա՞յ:
Անուն ըսածդ վերստին կ'էջնա = *Լաւ է անուն բարի, քան զմեծութիւն աշխարհի*[1]:
Անուշ ապրէն վա՞վ կը փախչի:
Անուշ լեզուն օձը ծակէն կ'հանէ:
Անտեսը տես է էկիր = *Թրք. «Օլմամշըն օղլու օլմուշ»:*
Անցուկ մոռցուկ կ'ըլլի:
Անօթի մկտիքը՝ կ'կրծեն չոր քրթիկը:
Անօթի փորուց ձօն ուտել = *Կ'ըսուի անդէպ եւ տարաժամ եղած որեւէ խօսքի եւ խնդրոյ համար:*
Անօթուն աշքը ճանկ մի հողն է կշտացուցեր:
Անօթուն աշքը կուշտը կերաւ:
Աշէ՛, աշէ՛, ընկողինը գլօղըտ քաշէ:
Աշխարքը փլչինէ՝ մէջը մարդակ մի՛ չունի:
Աշկը լուսուն վատը չ'ուզեր:
Աշկին լօսը, սրտին սոնն է = *Ջերմ սէր ունի վրան:*
Աշկ հայից մնալ = *Անձկանօք ե ակնապիշ դիտել:*
Աշկին տեսածը տերուն խէյր չ'էներ = *Ջար աչք ունին:*
Աշք չէ՛, պատի ծակ է (հեգնութիւն) = *Ջար աչք ունին:*
Աշկը հողին կ'հայիս — *Մահը մօտալուտ է:*
Աշկը խփէ՝ բերանը բանայս = *Հակառակ իր ապրանքին արժեքաւորութեան, պէտքին ստիպողականութեանը համար պակաս գինով կը ծախէ:*
Աշկը աչիցը վրայ չի դնել = *Բոլոր գիշերը չքնանալ:*

---

(1) *Մարդոց անուններուն մէջ Թորէս (=Թորոս) անունը անարգական անուն մ'է Մելիտինէի մէջ: Այդ անունը կրող մէկին երբ անպատեհ մէկ ընթացքը տեսնուի, կ'ըսեն. «Ջըւլիր, անունը Թորէս է»:*

Աշկ վարտիկ չ'առնալ = *Բանի չսեպել, կարեւորութիւն չտալ*:
Աշկը կ'տեսնա՝ բերանը չ'տեսնար = *Կ'ունենայ, բայց չկրնար ուտել, վայելել, անբաւականութեան պատճառաւ*:
Աչից սիւրմէ(*ծարեր*)կ'գողնայ = *Մանաւանդ գողութեան մէջ շատ ճարպիկ է*:
Աշքին օրթը կոյրը կոյրել — *Զգաստացած է բարկութենէն: Իջած է ցասումի*:
Ասված խելք տարտղնած ատենը յօ՞ռտեղ էիր = *Ցանդիմանութիւն՝ ապուշ, անխելք եւայլն ըսելու տեղ*:

Առանց դաղտեղի ապուր չ'ուտիր:
Առաջքը կուտ ցանել = *Տողմել, պատրել, գաղտնիքը առնելու համար*:
Առվուն պօրքալ = *Կրօնափոխութեան դիմել*:
Ասսեղ կերած շուն դառնալ = (*Անարգական*) *Հիւանդութեան ազդեցութենէն խիստ նիհարնալ*:

Ասղը ընկեր կամ կոյրեր է = *Տարաբաղդ է*: (*Աստղահմայութեան վճիռ*):
Աստղիկ ցաթիր է = *Կ'ըսուի երբ վառարանին մէջ կրակի տեղ կայծեր միայն կը գտնուին*:

Ասված տայնէ՝ յո՞ւմ աղջինն իս, յո՞ւմ տղաս իս չփըսիր:
Ասված մատը մարդու աշքը չի խօթեր = *Անակնկալ կը պատժէ*:
Ասված խելք տալու տեղ պօյ (*հասակ*) տուեր է:
Ասված լառանը *կէօրէ* ձոնը կու տայ:
Աստծու չի մառուցածը խանը չիննա մառցնիր:
Աստծու օրը քէնց կորեկը շատ է = *Ըստ այնմ, «խենդը գիտէ թէ քառասուն օրն ու քառասուն գիշ.ը չեն հատնիր»*:
Ասսեղի մի ծակէն տէվէյի (*ուղտ*) չափ պաղ կ'անցնի — *Ցուրտին դէմ տան է'ն մանր ծակերն անգամ գոցելու է*:

Ասսեղ ձգելիք տեղ չիկայ = *Բազմութիւնը խուռն եւ հոծ է*:
Ասսեղ նետես, գետինը չ'ըյնիր = *Բազմութիւնը խուռն եւ հոծ է*:
Ասսեղը առաջք դուն քզի մխթէ, ետքը մախաթը էլին:
Արկայ ըստըկցնելով փոր չի կշտանար:

Բ.

Բախտ չ'ըլլինէ հաւը ծառը կիածէ:
Բաղնիք էրթալ չէ, *նաթուր* ծեծել է:
Բամբասանք չէ՝ բանն ասանկ է:
Բաղնեց դօռը կաւ ծախէ = *Կ'ըսուի մէկուն, որ նկուն ու կնատ է*:
Բանը բանելօք՝ եամբան քայլելօք:
Բանը քզմէն թող վախէ, դունէ բանէն մի՛ վախեր:
Բանը մարտիկ է = *Զախողուած, գէրծ չէ վախէ, վնասէ*:
Բանը բանէն անցեր է:
Բանն էն է եւր տէրտէրը խաղայ:
Բանան ծո՞ւռ է, բուխն օղորդ թող էլլա;

Բանը մէկ՝ հոգը հազար:
Բարկ կրակ մի քէնց բարեկենդան մի աղէկ է = *Ձմրան համար ուտեստեղէ-նէն աւելի վառելիք պէտք է.* Թրք. էվվէլ եազանազ՝ սօնրա եէեէնէք:
Բաց բերանը անօթի չէ մնացեր = *Տե՛ս. «ուզան բերանը»*:
Բաց ամանը շունը կ'լկէ:
Բըդբըդ ապուրն ալ բան մ'ըլլեր բերանս էրելուն կէօրէ:
Բրդուն տղան ա մարդ մ'ըլլեր իս պագնելուն կէօրէ:
Բերբեր ապուրը փոր չի կշտացնիր:
Բերան կայ լեզու չկայ = *Պապանձումն Զաքարիայի*:
Բերան չէ, խորան է = *Ազնիւ եւ բարեբար է*:
Բերանը բանալուն աշկը թող բանար = *Լրջութիւն*:
Բերնէն ելածը անկանը չի լսեր = *Անասելի հայհոյութիւններ եւ լուտանք-ներ կ'ընէ*:
Բերնին մէջ հազար լեզու կայ:
Բերնօքը ուզողը վօռօքը կերիր է:
Բերնօքը ննդուկ կը խլէ = *Քաջ և ճարպիկ, ինչպէս է բաղէն որսալու ատեն*:
Բունկալը չի պաղեցներ = *Ստիպողական պարագաներու տակ իսկ տեղէն չարժիլ չ'ուզեր* = *Տե՛ս «Թաց կարպետ է»*:

Գ.

Գալը բարի, չիգալը քէնց գալը բարի:
Գարին կորեկը գլողը բուսցուցին = *Կշտամբել, չեխել*:
Գեալը մնացածը՝ տէրը գացածը կու լայ:
Գեալին գլխուն աւետարան կ'կարդասուի՞:
Գեալը գըտէ գեալ բօնը:
Գեալին «կօրին կարծի՞ս» ըսիրէն = *Նստեր լացեր է*:
Գեալին կոյին ապսպրել = *Վերեւին պէս*:
Գեղին խօրոզը շատ ըլլինէ՝ վանքացը ուշ կ'ըլլի:
Գետինն անկան ունի:
Գինքը (քիթ) բռնիս նէ՝ հոգին կ'էլլա = *Նեղսրտութիւն, Փիզիքապէս տկար*:
Գինք (քիթ) զրբելն իքէն աշկ կ'հանէ:
Գողը գողուն զօղացաւ, Աստուած տեսաւ զարմացաւ:
Գողն ըժօք էլլանէ՝ տանը տէրը զօղ կ'բռնէ:
Գիտելին Աստուած = *Թէեւ Աստուած է միայն ամենագէտ եւ ծածկագէտ, բայց ես այնպէս կը դուշակեմ թէ ըսածս ստոյգ ըլլալու է*:
Գիրը պիտի գտնա = *Ճակատագիրը այդպէս է եղեր*:
Գեղուկ մեղուկ հերկէս սիրուն անուշուկ:
Գլօղը դօրս հինքը ներս = *Համեստ եւ տնաչէն կին*:
Գլխուն բարց մի դնել = *Խնդրոյն պատշաճ կարգադրութիւն մ'ընել*:
Գլօղը քերելիք ատեն չունի = *Ժամանակը շատ սուղ է իրեն համար, զբա-ղումը շատ է*:

Գիլխուն օղիլը ոտքը էջըցնել = *Տէ՛ս · գարին կորեկը*:
Գլօղը ջօռ մի լալ = *Թրջել, համոզել*:

Դ.

Դայեկը ջաղա (ծնօտ)ին վրայ է սէրպիր = *Շատախօս եւ գրաբաններու հասցէին ուղղուած անարգանք*:

Դանակը էկիր օսկրին դադրեր է:
Դախդեղ էղիր է եու բերան կզվեցնէ:
Դառը դորը Ասված թուր է = *Բարեմաղթութիւն մը*:
Դատաստան կայ գալոց, պատասխան կայ տալոց = *Աստուծոյ երկիւղը եւ դժոխքի տանջանքը միշտ նկատելու է*:
Դգալօք կ'ժողվէ, շերեփօք կ'տարտղնէ = *Տաժանքով չահածը չարաչար կը մսխէ*:
Դգալին բերնօքը կը կերցնէ, կոթօքը աչկ կ'հանէ = *Պատճառած վնասը ծանր քան ըրած բարիքը*:
Դօռդան ծուռ է, կովը կաթ չիտար:

Ե.

Եատքը անկնել = *Ապագան նկատի առնել*:
Եառը բաց մնալ = *Հոգածութեան անբաւականութեան պատճառաւ չպարտըկուիլ բոլորովին*:
Եիառըտ բացիս տեսեեիր = *Կ'ըսուի մէկուն որ տեսած մէկ գէշ երազը ուրիշներուն կը պատմէ*:
Եաց հեղ եաց առսունը եաց = *Մալաթիոյ գաւառաբարբառը ծաղրողներուն ձեռքի միջոցը*:

Եիառը վարտիք չիկայ, գլօղը ըրէհէն է խօթեր:
Եիառը օճ է փախեր, լէյլէկ բնտռէեա:
Եիառը պաղ ջօռը զէնել = *Ի հեճուկս հակառակորդին ցած միջոցներու դիմել*:
Եիառը գլօղը մէկ = *Գէր ու մսուտ մարդ*:
Եառը աչել = *Որեւէ բանէ ապագայ դոյգն բարիքի համար «յուսալ եւ սպասել», օր. «Հաւուն եիառը կաչէ եուր, էրկու օրը հակիթ մի ածէ...»*:
Եա՛ ծառն է, եա տրծակն է = *Կ'ըսուի, երբ լուրի մը կամ մարդու մը գալուստը մօտալուտ է*:
Եիառը դօռս ընկիր է = *Կ'ըսուի մէկուն որ տաժանելի աշխատութեան տակ կը չարչարուի ու չի կրնար տոկալ*:
Եիառը գլօղը խզտել = *Ի զուր ճչել յուսան կերպով*:
Եիառօքը եառ կործել = *Ուժեղ եւ կարշնեղ*:
Ծղի պէս էրես էլլալ = *Զտանելով իրեն ուղղուած խօսքերուն, դայրանալ անմիջապէս*:

Եզը փոռուն վազէյա = (*Հեգնութիւն*) *Նիւթապէս անկարող է*։
Եօթը կարպետէն քմմուած = *Անարգ, անպատիւ, գձուձ*։
Եօթը տան մակարդ = *Խռովայոյզ, բամբասող եւ քսու*։
Եօթը պօրտը փնտռել = *Կարի բծախնդրութիւն*։
Եօթը իշու խելք կայ = (*Ծաղր*), *Շատ խելացի է*։
Եօթը տուն դօղդա մի = *Խիստ գէր եւ մսոտ* (*մարդ*)։
Եօթն օրքօք մաղարան մնալ = Անտանելի թշուառութիւն։

Ձ.

Ձօրին թեւը չի պիւքմիւշվէր = *Իրաւունքը զօրաւորինն է*։
Ձօրօք բան չ'ըլլիր = *Նոյն*։

Է.

Էգածը սուտ' հինք իրաւ = *Կը ձգտի միայն իր մեթոտն ու փաստը արդարացնել*։
Էլլա հերս կէօրէ գլօխ, էշնա հերս չ'գտնա գլօխ։
Էգածն ա հօգկային = *Բոլորն ալ կը միտին դերակշռուիլ*։
Էն աղէկը առջի ըրընկվընէ գացածն է = *Կ'ըսուի թշնամիները դրուատողներուն ի պատասխան*։
Էնի էսի ծամմել = *Ուրիշները բամբասել*։
Էնուր խօսքը ջիփէր չէշնվեր = *Անվստահելի է*։
Էշը դիր բաղնիք կ'էրթայ = *Ապուշ, տխմար*։
Էշն է հեծեր, էշ կ'փնտռէ։
Էշը տիրուն ըսած տեղը կ'կապեն։
Էշս գէծ է, փէտս թաց է = *Զիջողութիւն*։
Էշը իշուն քով կապես նէ' եա առացը կ'առնա եա փառացը։
Էս տունը փոս է, իշղտար խեւ կանէ' հոս է։
Էտի ջրին է մնացեր = *Իր գործը կատարեալ չի կրնար տեսնել։ Տեղական սովորութեան համաձայն բաղանեաց ջուրը մինակ երկու անգամ կը հոսեցուի ջրամբարէն կիներու համար. կանուխ դացողները շատ կը ցողուին. իսկ ուշ դացողներու ձեռքը բնաւ ջուր չ'անցնիր շատ անգամ. ուստի կ'ըսեն. «Էտի ջրին է մնացեր»*։
Էտեւ առաջք չունի = *Անզաւակ այրիներուն, որոնց ձեռքը կ'ուզուի երկրորդ ամուսնութեան համար*։
Էտեւէն չի գայ նէ' ծովը կը ցամքի։
Էրէսը սեւ քաշիլ = *Զուր բամբասել*։
Էվէլ բարին աշք չի հանիր։
Էրեսը հատկի ջրով վլասված է = *Շատ երես գտած մէկն է*։
Էրես տասնէ' աստառն ա կ'ուզէ։

Էրես էրեսէ կամշնայ:

Էրեսն հայեցուք կաթ *ումմիշ* էրէ:

Էրեսէն ընկածը քառսուն փարչա կ՚ըլլի = *Տրտում երես, տխրադէմ*:

Էրես, գետին մո՛ւտ, անկա՛ն էրկնցիր = *Ամօ՛թ, մեծ ամօթ*:

Էրկու բարուն մէկը = *Կա՛մ մահ, կամ առողջութիւն*:

Էրկու խօսքը *պիւկիւ* (թօվանք) մ՚է:

Էրկու պինտը պատ է պատռիր:

Էրկու ոտքը մէկ ոտից խօթել = *Պահանջքին համար պարտապանը խիստ նեղը թողուլ*:

Էրկինքն աս (երկինք-ն-աստղ) գետինն իսան = *Հոծ եւ անհամար բազմութիւն ժողովրդեան*:

Էրկու աղէկութիւն մէյտեղ չ՚ըլլիր:

Էրկնուցը կօլան (փոկ) վազէնէ՝ համմի շըլլես չ՚անցնիր = *Երկնքի պարգեւներէն իսկ զուրկ եմ*:

Էրած սրտին վրայ մաղմաղ կ՚ցանէ = *Փոխանակ ցաւը ամոքելու կը սաստկացնէ*:

Էփած ապրին ջօռ չեն խառնիր:

Էփողին մէխքը չուտողին շլին = *Մեծարանքի բանաձեւ մը*:

Էրինը հաց բրդել = *Ցանկրաւի զրպարտել անմեղը*:

Էրկու *քէօշկը* քարի մը դէմ է:

Ը.

Ըղունկ ունիս նէ գլօխդ քերէ:

Ընկողնիտ կէօրէ ոտքդ էրկնցուր:

Ընկօզը կից չի տեսնանէ՝ քար չի նետիր:

«Ընծի» ըսողին չի մնար = *Վաճառքը որ աղէկ ըլլայ, յաճախորդը շատ եւ շուտ կու գայ*:

Ընկըզին ծառին տակ *չիթիլ* չի բուսնիր = *Ագահ եւ անձնասէր հարուստներէն մարդ բնաւ չ՚օգտուիր*:

Ըռպին մէջէն է էլիր = *«Շատ կը սիրէ», ըսելու տեղ*:

Ըռուպ մէյնիր = *Կ՚ըսուի այն կնոջ որ տան ամանները ցիր ու ցան ըրած է հօս հոն*:

Ըռպին բօղողը աղէկ գտաք՝ էկէր հաց օգտեցնիք նէ:

Ըռընկվան գործը վանքսվան մի՛ թօղուր:

Ըռընկունը կի՛ր, վանքսվան տէրն Ասված:

Թ.

Թազին (թրք. բարակ, քերծէ) *զօրօք ա՛վը* էրթայուք, ինչ պիտի բռնէ = *Ակամայ եղած գործէն շահ չկայ*:

Թան բերան = *Թոյլ, մեղկ*:

Թանէն ա վար բան կ'ըլլի՞ = *Ապրանքին գինը շատ ինկած է*։

Թացը էլիր է = *Կ'ըսուի մէկուն, որ ըրած խարդախութիւններուն համար կը խայտառակուի*։

Թաց կարպետ = *Մէկը որ ուրիշներուն քով յաճախելով կը ձանձրացնէ եւ ժամավաճառ կ'ըլլայ*։

Թացօֆ չորօֆ զուրցնել = *Տե՛ս*, «*Բէծօք օրծօք*»։

Թէփէծ ապուրը ա'լ չի ժողուըվիր։

Թէփուկ շուշան = *Տե՛ս* «*Ըռուպ մէյնել*»։

Թեթեւ ֆարը եիառ կ'զորեն։

Թէննիրէն գլտրեր կափաղը գտիր է։

Թիփը դարը էլլալ = *Արկածեալ մը որուն ամէն մէկ գործը մէյմէկ տեղ է*։

Թող չըսեն էշ է, թող ըսեն գէշ է։

Թոռդան ծուռ է, կովը կաթ չի տար։

Թուր դանակ խաղալ = *Սրախաղ, զինակռիւ*։

Մէկզմէկ պաննէցին թուր դանակ խաղցին։

Թօխմղին մանծը տայիմա մեծգլօղը կուտէ = *Ընտանեաց մէջ նախատինքը միշտ մեծ եղողը կը կրէ, ինչպէս որ գործին ծանրութիւնը եւ հոգն ալ անորն է ընդհանրապէս*։

Ժ.

Ժամ շինողին վօռուն հայի՛ց։

Ժամուն մոմն ուտող կատուին աշֆը ֆէօր կ'ըլլի։

Ժամուն իս զուգամա, դուն «օղորմիԱծ» կ'ըսիս։

Ի.

Ինը խեւը տասն էղաւ։

Ինը չ'տված տասը ճառֆ չ'ասնիր։

Իշուն ագին է, ոնչ կ'էրկննայ, ոնչ կը կարճնայ = *Գործը սահմանափակ է, ոչ կ'ընդարձակուի եւ ոչ կը հատնի*։

Իշուն մանծը ախօռն է = *Խնդրոյն կարեւորը դեռ ետքն է*։

Իշուն ա պաֆս չունիմ = *Նախատինք մը ործրամոլներուն*։

Իշուն ըրէհէն տուերին, բերանն է խօթեր։

Իշուն հետ ֆառսունֆ է խառնվեր = *Յամառ եւ յիմար*։

Իշ բրդեսնէ, էն զուգայ դգալդ։

Իս աղա՝ դուն աղա, ալի՞րը վավ պիտ՝ աղայ։

Իս «*ճիկէրը* շունը տարաւ» ըսիմնէ՝ չեն հաւատար, էնի կացինը տարաւ ըսէնէ՝ կը հաւտան = *Հաւասարութեան, համարումի, վստահութեան տարբերութիւն հարստութեան եւ աղքատութեան մէջ*։

Իսը ֆիսը աշֆդ մտնա = *Կ'ըսեն այն քրիստոնէին որ Յիսուս Քրիստոսը կը դաւանի մինակ շրթունքով։*
Ի վիրտը (ի սի՞րտ արդեօֆ) մտնալ = *Գաղտնիքին թափանցելու համար հետաքրքրութիւն։*
«Իս» ըսելը սատանին կը վայելէ = (*Թրք.* Պէնլիֆ շէյթանա եագըշըր)։

Լ.

Լաւը լաունը վրայ կը դնէ = *Բարի, քաջ եւ զօրեղ է*։
Լառ լառան վրայ կ'ըլլի, տուն տան վրայ չ'ըլլիր։
Լեզուն չ ըլլինէ՝ գլօղը կառկառը կ'տանէ = *Ինքնագով եւ շաղփաղփ*։
Լեզու ըսածըտ օսկոր չունի, յօռ ուզիս նէ՝ հոն կ'ծռի։
Լեզու բերան չ առնալ = *Խնդիրը բնաւ չառարկել*։
Լեզուին տակ բան մի կայ = *Գաղտնիք մ'ունի*։
Լեզուն տաֆ տեղն է = *Նախանձելի է վիճակը*։
Լօսը թողիր մութին ցանկանայա = *Իր շահն ու վնասը չի գիտեր*։
Լօն տէվէ կ'էնէ = *Աննշան, ջնջին բաներուն մեծ կարեւորութիւն եւ հանգամանք կու տայ*։
Լօյի մը համար տեղերը կրակը կ'էրէ։
Լօ կ'էնէ պըլօ չէնիր = *Յամառ է*։

Խ.

Խանչրին ֆարը ըյնել = *Ուրիշին օգնելուն մէջ կարծել թէ անձնապէս մեծ վնաս կ'ըլլայ*։
Խաղալ չ'գտէ, տեղս նեղս է կ'ըսէ։
Խաչը տէրը կ'զօրացնէ = *Մի ամենայն հոգւոյ հաւատաք*։
Խեւն ըսաց, խելօֆն հաւտաց։
Խեւը հարսնիֆ տարիր էն, ֆէնց մեր տունն աղէկ է ըսի։
Խեւը խրատն ինչ էնէ, սեւը սապօն ինչ էնէ։
Խեւը ֆար մը կ'ձգէ, ֆառասուն խելօֆ չիննան հանիր։
Խըւուն ջաղացֆը Աստված կը դարձնէ։
Խըւուն *սամման* չի կարդասուիր = *Զգաստանալուն չի վստահուիր*։
Խնծորին աղէկը խոզը կ'խլէ։
Խննոտ ֆինթին ցուրտն ա *մահանայ* = *Դժկամակութեան պատրուակ*։
Խորոզը՝ խորոզին դէմ կ'խօսայ = *Քաջերու մրցակցութիւն*։
Խունկդ մոմտ ֆզի, *թէք* մեր ժամը մի գար = *Քեզմէ որեւէ բան չենք ակընկալեր*։
Խունկ ու մոմ էղայ ժամերուն, ճիթը ժամ էղայ էլերուն = *Հակառակ անմեղութեանս, անձս առարկայ է բամբասանաց*։
Խօսֆը բերանը թողուլ = *Լռութեան դատապարտել, պապանձեցնել դիմացինը*։

Ծ·

Ծաղիկը պատռել = *Նորատայ բարիքին վրայ կարեվէր խնդալ* :
Ծակ հուլումը գետինը չի մնար = *Աղջիկ մը կը հարսնանայ վերջապէս* :
Ծակը մանծ կարկտանը պզտիկ = *Մուտքը ելքին խիստ անբաւական* :
Ծակը առաշք ծուռ ծակեր էն = *Գործին սկզբունքը սխալ է* :
Ծանտր կեցիր ուր լիտիր գաս = *Հականիշը «Թեթեւ քարը»* :
Ծանտր քարը տեղէն չելլար = *Վերեւին պէս* :
Ծառ թող ըլլի, ծուռ թող ըլլի = *Ցանկերգ ամուլներու* :
Ծովը կ'երթայ, ցամաք կ'դառնայ = *Պատեհութիւնը կը կորսնցնէ* :
Ծուռ թէննիրէն ապուր չ'էփիր :
Ծուռ պատը չ'օղորդնիր :
Ծուռին ոտքը կոյրած է կամ ճակատը պատին կու գայ :

Կ·

Կազկազը հոս կ'ընէ, հաւկիթը դօսը կ'ածէ :
Կազկազ կենէ, հաւկիթ չ'ածեր :
Կաթին համը բերնէն կու գայ = *Կ'ըսուի անոր որ դիտմամբ ինքզինքը անչափահաս ներկայացնել կը միտի* :
Կաթը թէփած կատու դառնալ = *Ձեռնթափութենէն սրտմտիլ* :
Կալէն կ'անցնի, կալ տկէն չանցնիր :
Կաշին *կատիմի* (միշտ) նօսր տեղացը կծակի = *Դժբախտութիւն, թշուառութիւն աղքատին վիճակուած է* :
«Կայ»ն «չկայ»ն չի գիտէ = *Վաստկել ու բերելէն զուրկ միայն պէտքերու առաջարկը կ'ընէ* :
Կաննուխ խօսացող խորոզին գլուխը կ'կըյրեն :
Կատուն ալ իրին ճուալը իրեն համար կ'աղէ, կամ կատուն մուկը *նէֆս*ին համար կը բռնէ :
Կատուն քացախ խմեր է = *Ծաղրանք հանդէպ խմաններուն* :
Կավունօքը կ'առնա, հելապիէօքը կ'չափէ = *Ամէն բան ըստ կամս եւ իր որոշման համաձայն կ'ընէ* :
Կատուն նեղը թողուսնէ էրէսդ կպօրգայ :
Կատու չեղած մուկը կը բռնէ :
Կատուին «քաքտ բանի դեղ է» ըսեր են, խորունն է թաղեր :
Կարպետին չորս ծէրը չօռն է տուեր = *Բնաւ ակնածութիւն եւ պատկառանք չունի* :
Կացին դպած չէ = 1· *Անդիտակ են*, 2· *Որեւէ վնասի չեն ենթարկուած տակաւին* :
Կացինը ոտքին զենել = *Վնասը ինքնիր ձեռքովը ընել* :

**Կ**երիր չ'է քաքիր = *Մտուար եւ մարմինը պարարողներու կից պառկողը քը-նացողին կռնակը կը քերէ :*
**Կ**ոտկան ջաղաքը պարապը չի մնար :
**Կ**որկոտը տէրը կ'ճաշնայ :
**Կ**ուտ կ'ուտէ երկինք կ'ըլլայ = *Ցասկոտութիւն :*
**Կ**ուտը հոս կ'ուտէ, հաւկիթը դուրսը կածէ :
**Կ**ուշտն անօթուն մանտր կը բրդէ :
**Կ**ուրպան ըլլիմ Աստուծու, չէմիչինս կոթ է տուեր = *Բամաշրանք, անապարծ հարուստներուն ուղղեալ :*
**Կ**ըսըված հացը ա'լ չի մէկտեղիր = *Ընտանեկան բաժանումը նորէն միա-ցընել անկարելի է :*
**Կ**ռնակը պատին կամ լառանը տալ = *Տէր եւ պաշտպան ունենալ :*
**Կ**ռնակը ըժօք է = *Տէր ու պաշտպան ունի :*
**Կ**ռնակը թանձր է = *Շատ հարուստ է :*
**Կ**րակ բերան լավել = *Բարկութիւնը բորբոքելուն պէս յարձակիլ :*
**Կ**օլանէն վար տտոտել = *Պոռոտախօսութիւն :*

Հ.

**Հ**ազար առջին հազար ետին = *Խուռն բազմութիւն :*
**Հ**ազար առվէ ջօռ կ'բերէ = *Անթիւ փաստերով կ'արդարացնէ ինքզինք եւ կ'ջրէ խնդիրը :*
**Հ**ազարին կէսը 500 է = *Վնասին վրայ շատ խորհելու չէ :*
**Հ**ազար չանկ ու չաղալա, չ'արժեր դգալ մի դարխանա :
**Հ**ազար սուտը փարա մ'է = *Շատ ստախօս է :*
**Հ**աչան շունը խածան չ'ըլլիր :
«**Հ**ա»ն «հա» է, «չէ»ն «չէ» է = *Ցանձնապաստանութիւն :*
**Հ**աստ մանողը կոչ մ'է առեր, բարակ մանողը հաւ մի :
**Հ**աստ ու բարակ մէկ գին է, վա'յ բարակ մանողին գլխուն :
**Հ**ա' որբուն մոմ խօստացերես, հա իրէն բան :
**Հ**ացը կազար ամէնը, շունը կ'ազար ամէնը = *Կ'ուղղուի անհաւատարիմ ու իրար անգոսնող ծառաներուն :*
**Հ**ացերնուս մէջ աղ չիկայ = *Դժբախտ ենք :*
**Հ**աց ու պանիր, կեր ու բանիր :
**Հ**ացդ նախշուն է = *Յաջողակ եւ բարեբախտ ես :*
**Հ**արգէ խելօքը մտմտանէ, խեւը տղան կը կարգէ :
**Հ**արգէ հաստը բարկնայ, բարակին հոգին կ'ելլա :
**Հ**արգէ ունկողը կից չի տեսնար, քար չի նետեր :
**Հ**արգեւոտ օրը հաւուն ջօռ տուող շատ կ'ըլլի :
**Հ**արը կու լար ամինը՝ շունը կու լար ամինը :
**Հ**արսնետունը չգտնէ, շերեփն առեր կ'վազէ :
**Հ**արսն ու փեսան թող խնտան, խեւ դրացին քըզի ի՞նչ :

Հաւը անօթենանէ՝ արասան միտքը կ'ըյնի:
Հաւը յօրկիցը կ'շռէ = *Տխմարներուն հանդէպ հեգնութիւն*:
Հաւը ծառը կը հածէյա = *Դժբախտութիւն*:
Հաւը հաւկիթէն կելլա թէ հաւկիթը հաւէն:
Հաւուն կաթը կերցնել = *Էն համադամ եւ համեղ ուտելիքներով մեծարել հիւրը*:
Հաւուն կաթը կը գտնուի = *Պարտէզը ամէն տեսակ պտղատու ծառերով եւ բանջարեղէնով օժտուած է*:
Հաւը կ'ածէ, ճիճին խմէյա = *Տե՛ս ծակը մանծ*:
Հաւուն «ֆիշէ» չ'ըսիր = *Պզտիկ վնաս մը չի տար եւ բնաւ վնասակար խօսք չի խօսիր*:
Հաւուն հետ թառիլ = *Կանուխ պառկիլ*:
Հաւը հաւ *իքէն* ջօռ խմէ նէ վեր կը նայի:
Հաւուն առաջքը նետելիք չունի = *Կարի թշուառ է*:
Հաւուն չի կերածը = *Էն անարգ ու գարշելի (մարդ)*:
Հիմա հարս ըլլիք նէ՝ ճառք պագնիլը կ'ուսնիք:
Հէրկէս հռէն մարտրոսը կու լայ = *Ամէն մարդ ինքզինքը կը հոգայ*:
Հինկ մատդ մէ՞կ է = *Աշխատողներուն բնաւորութեան մէջ տարբերութիւն կայ*:
Հէրքէսին խոնճեցած տեղը խան չեն շիներ:
Հիմն արգակը շրջել = *Հիմնայատակ ընել տունը· ծանր վնասներու ենթարկել*:
Հօգու տուն = *Հոգւով չափ սիրուած*:
Հօգուն տանը կ'քակուի = *Այն ողորմութիւնը որ անձնասէր եւ ագահ մարդիկ ժխտելով կու տան*:
Հաղուն ջրին համրուք կայ, լեննիցը (բազմութիւն) համրուք չիկայ = *Տե՛ս «Էրկինք աս գետինն եսան»*:
Հողէ բերան թողուլ = *Ըղձանքէն փափաքէն զրկել*:
Հովուն յօրկից գալը չգտէ = *Խնդրոյն փոփոխութիւնը եւ թելադրութիւնը դուրսէն է*:
Հով չ եկած տերեւ չի խաղար:
Հումհում ուտել = *Գաղաններու պէս յարձակիլ եւ փողոտել*:
Հում հում ուտելդ գուգայ = *Շատ գեղեցիկ եւ հրապուրիչ է տեսքը*:
Հուվնտի ճռնէ երթալիք է = *Այնքան յամրաքայլ եւ դանդաղ որ եթէ ձիւնի զրկես, դուցէ հիւանդը մեռնի ձիւնը չհասած· «Մինչեւ աղը հասնի, մատաղը կ'հատնի»*:
Հուվանտն աղեկնալիք է նէ՝ *հէքիմը* դէմ կու գայ:
Հում ջրերօք կը խմուի = *Տե՛ս «Հում հում ուտելդ»*:
Հումը եփող աղտօտը վլացող չունի = *Ընտանեաց մէջ հարս, աղջիկ եւ կին չունի*:

Հուվանտը արապան կը հեծնայ, կամ հուվանտը օտք կ՚ելլայ = *Իրենց էն տկարը անգամ տրամադիր է կռուի եւ կողոպտելու։*
Հնքիրեն թացը կ՚չորցնէ = *Եկամուտը ծախսին կ՚բաւէ։*

Ձ.

Ձան ըսածդ շէննիք է։
Ձառացը ետեւն առաջքը չզտէ = *Ամէն բան առատօրէն կը մսխէ։*
Ձառօքը կը բռնի, բերնօքը կ՚ուտէ = *Ինքզինք կ՚ապրեցնէ։*
Ձառքէն կորեկ չ ի թափիր = *Շատ կծծի է։*
Ձառքը տաքէն պաղը չշիներ = *Գործելու մասին բոլորովին անտարբեր է։*
Ձառքը մէջն է մնացեր = (*Հեղնութիւն*) *Գործը չհասնելիք է։*
Ձռան փոռուն գարի հացն ա մահանա = *Թրքերէն պատրուակ* = *Անյաջողութիւն վերագրել անհիմն պատճառներու։*
Ձռանին քաքնիլ կ՚ուսցնէ = *«Կոյրը կոյրին չի կրնար առաջնորդել»*։
Ձառքը բերնին հասնիլ = *Տե՛ս «Ձառօքը բռնել...»*։
Ձեր շունը մեր կացինը բերա՞ւ = *Անառիթ եւ առանց պատճառի հարցում։*
Ձին տիրուն ըսած տեղը կը կապեն։

Ճ.

Ճաճճին եղը հանել = *Ծայրայեղ կծծիութիւն։*
Ճակատը պատին զալ = *Ձեռնարկը արգելքի բաղխել։*
Ճիկերի հետ (ազգական) ուտես խմես, առուտուր չ ընես։
Ճիկերի կտրտուք = *Սրտաճմլիկ տեսարան։*
Ճրագը եղ տամլամիշ ըրեր է = *Նպաստաւորուիլ։*
Ճնճղուկը կամ ճուճուկը բռնեցաք = *Գործերնիս ճախողուած է։*
Ճրագկալը տակը լոյս չի տար = *Տակաւին ի վիճակի չէ մարդ խաբելու։*
Ճուվալակը վարտիկ շէպիկ չունենար։

Մ.

Մազը գլօղը աղնել = 1. *Կռուին մէջ հակառակորդին գլխու մազերը փետտել.* 2. *Դառափետտել, կշտամբել։*
Մազը էվէլ թիւը կէսերից ընել = *Այրի կին մը կ՚ըսէ. «Օրբերս մեծցնելու համար մազս էվէլ թիւս կէսերից ըրի»։*
Մախսաթօք էլլալիք է = *Տխպար կծծի որմէն նպաստ կամ ողորմութիւն պահանջելը շատ դժուար է։*
Մահն ինսանէն հառու չէ = *«Չէք գիտեր թէ տանուտէրը ե՞րբ կու գայ»։*
Մահը լալօք, հարսնիքը խնդալօք է։

Մահուն կը բռնեն ու դողուն կայիլ ըլլի:
Մահէն գրողէն տալ = *Հիւանդութիւնը մահացու է*:
Մանծ բանը պզտիկ չըլլիր:
Մանծ լոխմա կերուք, մանծ զրուք մի զուրցեր:
Մանտր մունտր լառները հինկէ դեղծեր = *Մարդ մը որ յանձնապաստան է, ամբարտաւան եւ այլ է*:

Մատը հնդհտալ = *Կռահել, գուշակել*:
Մատը հոտ տալ = *Նոյն*:
Մատը կը խօթէ, բան մի կը հանէ = *Քսու եւ կռուասէր*:
Մատի վրայ կը համրուի = *Թիւը եւ քանակը չափաւոր է*:
Մատ մի մեղիր ընել = *Խայտառակել, առակ նշաւակի ընել*:
Մառնողը մառաւ գնաց, չմառնողը մառ անցուց:
Մարդս մարդօք շէն է = *Տե՛ս «Ձան ըամծդ...»*:
Մարդ կայ մարդկանց մարդն է, մարդ կայ թազկանց մարդն է:
Մարդ մի փլած տեղէն կը շինուի:
Մարդու բառը աղի բառ է:
Մարդուս աճունն էլլալէն աչքը էլլանէ աղէկ է:
Մարդու մեխկը երեսը չ'են չէներ (*զէներ*):
Մարեա՛մ, տղայ կը բերես = *Ապագային համար վճիռ չ'արձակուիր*:
Մեր էշն ուտող գիալին չ'մնար:
Միսն ըղընկէն չի զատուիր = *Ծնողք զաւակներուն չար չեն կամենայ... եւ* փոխադարձաբար:

Մէկ *Թօփալ* օջիլը եօթը բարձ է փոխուեր:
Միսն ոսկրէն ճան կու տայ = *Ցաւի զառնութիւն եւ սրտնեղութիւն*:
Մէկմէկու բերաննին թուքացիր = *Համախոհ են իրարու հետ*:
Մեխքը եռեւը տալ կամ զենել = *Ուղղակի յանդիմանել*:
Մեծցաւ, մեծացաւ = *Հարուստներու հովն ու ցաւը շատ կ'ըլլայ*:
Մէկ կայ հազար կ'արժէ, հազար կայ մէկ չ'արժեր:
Մէկ ճառոցը ճանը չ'ելլար:
Մէկ ճառօք երկու ճմերուկ չբռնվիր:
Մէկ ճառօք երկու ճնճղուկ չինել = *Երկդիմութիւն*:
Մէկ ճառօք ըյնելիք չէ = *Դժուարահաճ եւ հաստատակամ*:
Մէկը մէյ մ'է, երկուքը զարա՞ր է:
Մէկը կը քաշէ մէկը կը քշէ, մէկալ ա Ասված կը յիշէ:
Մեղաւորը ժամ չէ կայներ· կայներէնէ, մատը աշկն է խօթեր:
Մէկը մէկուն էգի մ'է օժտեր· մէկալը էնուր կողմի հաւեղ չէ տուեր:
Մէյմիխփէ՝ հազար թէփէին = *Վշտին զառնութենէն կարեւէր կու լայ, կ'արտասուէ*:

Մկանը շառը, տենիզին շահ ունի:
Մուկ ըյնինէ, գլուխը կը պատռի = *Տունը ի սպառ զուրկ է կահաւորումէ*:

Մուկը խարարը ընկածի պէս է = *Կ'ըսուի մէկուն որուն հագած լաթը լայն ու անվայելուչ է իրանին*։
Մուկը ծակը չըրօղուիր, ցախ էվելն փօռուն կը կապէ։
Մուկն ալ ծակը շատ մալ ունի։
Մօրուք չունիմ որ խօսքս բռնվի։
Մօրուքը համպրել կամ ձառք տալ։
Մօրը մանածը ծախեր, լէյլկին քար նետեր է = *Ծայրայեղ անառակ*։
Մօտ դրացինը քենց հառուն խըսըմէն աղէկ է։

Յ.

Յերդը քուվդ չէր նէ՝ յերդնոցն ա քուվդ չէր։
Յիցծուն աւուր մեծվաքը մէկ հեղէն չբռնուիր։
Յո՞ւմ տունը փնռես ա = *Հետաքրքրութեան պէտք չկայ, խնդիրը շատ խառնաշփոթ է*։
Յուսակի յունան օղորդ խօսք չիկայ։
Յօռդ ցաւինէ, հոգիդ հոնտեղ է։

Ն.

Ները ներողն հայեր պարապ օրանն է օրեր։
Ներսը նստիր դրսին կը ցանկանայ։
Ներսը սատանայ դօռսը քահանայ։
Նոր հաւերուն ճուճու ճուճու, հին հաւերուն քիշէ՛ քիշէ՛։

Շ.

Շալկօքը քաքնել չէ նստեր տահա = *Տակաւին նեղութիւն չէ տեսեր*։
Շանը բարեկամութիւնը չ'ըլլիր։
Շանը բերանը շէկեր է ընկեր։
Շանը էտի յօտքն է = *Մարդ չակին էն վատը*։
Շանը կ'զենինուք տէրուն ըմէն կ'ամշնան։
Շանը հետ ճուվ ալ չ'մտնուիր (1) = *Չարերու ընկերակցութիւնը միշտ վնասակար է*։
Շանը կսմէթը շանը փօռուն կ'էլլա։
Շանն ագին հանկօշտ չի բանիր = *Չարերու բարեկամութեանը չի վստահուիր*։
Շատ խնտացող խեւը չէ խելօքցեր
Շատ խնտալը լաց կ'բերէ։
Շատ մարդ ձիտ կը ծամմէ, համմա քըրթուն աղջինը համը կը բերէ։

---

(1) *Սոյն առածը Կարուց Գագիկ Թագաւորի Յոյն մետրոպոլիտը իր շան հետ քուրձի մէջ իջեցնելը կը յիշեցնէ*։

Շէյինքին աչքը ծուռ է = *Ցուցեր եւ նպատակը փոխեր է*:
Շէյինքին աչքը նստիլ = *Զուղակչութիւն. տե՛ս «Էղածն ալ հօղկայ»*:
Շերեփօք կ'ըլլա. դգալօք կը ժողովէ:
Շերեփն առեր խառնեյա:
Շունն ագին չօրերա = *Ձեռքը խնդրող չկայ*:
Շունն ագին չ'ձգեր = *Չարերն ալ համախոհ եւ պաշտպան են իրարու*:
Շունն ինչ ուտինէ՝ էն կը քաքնէ = *Ծառ չար պտուղ չար առնէ*:
Շունն հաչելօք, ջաղան լալօք = *Բնական պահանջ*:
Շունն ըլլես մանծ չ'ըլլես:
Շունն յիշէ, քարը քովդ դիր:
Շունն յօռկից ուտէնէ՝ յօնկէ կ'հաչէ:
Շունը շանն է ընկեր = *Կռիւը չարերուն մէջ է*:
Շունը շանը միսը կ'ուտէ, ոսկորը չ'կոյրեր:
Շուն քերթէ, փարա վաստկէ:
Շունը հոսկէ ուտէ, հոնկէ կը հանէ:

Ո.

Ուզան բերանը փէտ, կթան կով մ'աղէկէ:
Ուզողին մէկ երեսը սեւ, չտուողին երկու երեսը:
Ուտէ օրդին, վճարէ հոգին = *Հականիշը «Հայրը ագոխ կերաւ...»ին*:
Ուտողն ուտողը չուզեր, տանը տէրը հիչ մէկը:
Ուղունկ ունեսնէ, գլօղդ քերէ:
Ուղունկ ուղունկի քսել = *Գրգռել, դրդել*:
Ուղունկ չ'երկննալիք է = *Գէշ է*:
Ուշ էկօ՛, անուշ էկօ՛:

Ջ.

Ջափութ քաշել = *Խծբծել*:
Ջարը բարեաց հակառակ է:
Ջ'անցած օր չ'ըլիր = *Հոս ամէն բան ժամանակաւոր է*:
Ջ'հաւնած շանըդ փորուն լիտեր մի եղ կ'ելլայ:
Ջ'հաւնած քարըտ գլօխ կ'պատռէ:
Ջ'հասած գեղիտ քովը պառկի՛ց:
«Ջ'կայ»ն աշխարհք չէ էկեր
Ջի լացողին ծիծ չիկայ:
Ջիմ ուտիր, ճէպս դիր:
Ջոր խօսքը փարա չ'էներ:
Ջոր ծառէն *տիւտիւկ* կ'հանէ = *Հնարագէտ է*:
Ջուտիս, չ'խմիս, էրեսը հայիս:

Պ.

Պագն աղկեկին ճակատը կ'ըլլի։
Պաշտել պատուհանը դնել = *Որեւէ բան պատշաճութենէն վեր որ կը սիրուի կ'ըսեն. «պաշտեր պատուհանը դրեր են»*։
Պապս տէրտէր էղեր է, ես անճաշակ մնացեր եմ։
Պատանէքը էլէն ըլլինէ՝ փաթտվելը *հօլայ* է։
Պատ կայ, պատին էտեւը մարդ կայ։
Պէ էնեսնէ՝ սիրտը կ'բրդի = *Շատ վախկոտ է*։
Պօրտը ծառօքը կըյրել = *Գործը անձնապէս տեսնել*։
Պօրտ նետել = *Գործին յաջողութեան վրայ ուրախանալ ու պարել*։
Պօրտը գետինը բերել = *Յաղթել ամէն կերպով*։

Ջ.

Ջաղացքը ջօրն է տարեր, ջախջախը կը փնտռէ։
Ջաղջին վրէ քարը կը կայնի, իտքընինը չի կայնիր։
Ջուխան չիք հագիր հըմմա (բայց) քինայրը տեսեր եմ = *Թէպէտեւ հիմա ոչ, բայց ծաղումով բարեկեցիկ էինք*։
Ջօռ չեղած ջաղաց չի դառնար։
Ջօրը կու գայ, ջաղասքը կ'դառնայ։
Ջօրը գլխէն խմելու է։
Ջօրը կըյրած ջաղացքը կ'ըլմանի։
Ջօրը փչէ խմէյա = *«Մժղուկս քամէ զուլալս կլանէ»*։
Ջօրն իվար էրթալ = *Ջուր ջանք, անօգուտ վաստակ*։

Ս.

Սատանան մուշակ բանիր է = *Խեղկատակ*։
Սաճը կրակը էրեր է = *Պէտքը ստիպողական եւ փութոյ պնդութեան կը կարօտի*։
Սատանան փապուճ կօշիկ չինքս հանիր քովը։
Սատանին անկաճը խուլ ըլլի = *Կարծեցեալ յանցանքին բնաւ հետամուտ եղած չեմ*։
Սատանին օտքը կօյրել = *Փոխանակ պտըտելու գործին վրայ մշտատեւ կենալ*։
Սատկած էշ կ'ուզէեու նալը քաշէ։
Սիւ ճլան վրայ նստիլ = *Իսպառ աղքատանալ*։
Սուտը իմ հետս է, իրաւը էնուր հետ։
Սուտին օտքը կոյրած է։
Սուղէն աժան բան չիկայ։
Սոխին քաղցրը չ'ըլլիր։
Սոխ չիմ կերեր ու կզուեճամ։
Սուտ տեղը հուանտ կըլլիեու վանուցը հաւերը ուտէ։
Սուտը սատանայ է։
Սուտ ըսաց իրաւն հաւտաց = *Տես «Խեւն ըսաց...»*։

Վ.

Վազած ախպերները կ'չորցնէ = *Շատ յոռետես է:*
Վազած ձիուն գլխուն չե՛ն զէներ:
Վազան ձին ալիքը կ'էվելցնէ:
Վայը մուրը պատեր է գլխուն = *Վիճակը արգահատելի է:*
Վարմի քարը վերցնես նէ՝ տըկէն կ'էլլայ:
Վա՞ մի քարը մանծէ նէ՝ գլօխըդ զէնէ՛:
Վա՞րմի մատըտ կըյրեսու չի ցաւի:
Վարուն աղէկ է բսիմուք պարտկան մնամ = *Բոլորն ալ զեղծանող են:*
Վարդ տեղտ փուշ մի էներ:
Վարտիքը կատու է ընկեր = *Սաստիկ վախէն կ'խուճապէ:*
Վարտիկը վրայէն քաշել = *Փութկոտութիւն, գործունէութիւն:*
Վավէ ցածցեր, էն բարձրցեր = *«Որ խոնարհեցուցանէ...»*
Վա՞վ «թանս թթու է» կ'ըսէ:
Վավ հարս ըլլինէ, առջինէկ է:
Վարժապետին զենած տեղը վարդ կը բըսնի:
Վեր թուքաս ալիկ, վար թուքաս մօրուք:
Վրան արգակ չէ ցաթեր կամ էրկինք չէ գօռացեր = *Նիհար եւ վտիտ կազմ ունի:*
Վրան ձի քշել = *Ստիպել, պնդել եւ բռնանալ:*
Վօռուն վարտիկը չինոա քաշիրա = *Ին աննշան գործը անգամ չկրնար տեսնել:*

Տ.

Տան զողուն հետ գլօղ չ'ելլուիր:
Տանտիրուն գործին չեն խառնվիր:
Տանծը քէնց ծառը ծանտր է:
Տանծ է նէ՝ հասաւ, խնծոր է նէ՝ կարմրեցաւ:
Տաս ձառօք լկուել = *Անսանձարար ունել:*
Տապակը նետելիք չունի = *Տե՛ս «Հաւուն առաջքը»:*
Տէյնկին էրկու ծէրն ա փիս է:
Տէրը կու տայ, տէրտէրը չի տար:
«Տէր օղորմիա»ի մնացեր է գործը = *Կ'ըսուի երբ մէկը փիլիքապէս թէ տըն-տեսապէս խիստ կը տկարանայ:*
Տէրտէրը ամմէն օր պադայ չուտիր:
Տէվէին ըսեր էն թէ «Շըլլիտ իմչու ծուռ է», յօ՞ըըս օղորդ է եւ շլխս ա օղորդ ըլլի:
Տէվէն շափշղօք ջրել:
Տէվէէն ընկեր է, «հօփ հօփ»ը ձառքէ թող չի տար:
Տեսածը չ'ուտէնէ, տըծակը կ'ուտէ = *Պորտաբոյծ է:*

Տիրէմ մի միսը հազար այպէ պարտկէր։
Տունը տուն շինողը կնիկն է։
Տուն չ'ըլլիյու խօսք չ'ըլլի։

Յ.

Յուր քաշողը գտէ մենակ։
Յվքին վրայ է = *Կուսակցութեանց յաղթական կողմը կը հակի*։

Փ.

Փարան դժոխքին մէջ ճռն ջօռ կ'խմցնէ։
Փէշին վրայ ժամ էնէլիք է = *Բարեպաշտ եւ անմեղ*։
Փլած տան մի սօնն է = *Գործունեայ կին*։
Փչած օնաղը ջօռ չ'ուզիր = *Զարիք հասցնելու մասին եղական է*։
Փորը վար զինել = *Մախալ, պչարել*։
Փորս մօտ է քէնց քորս։
Փորունը նետել = *Տե՛ս «փորը վար զինել»*։
Փորը փորուն է անցեր = *Նիհարութիւն*։
Փորը վրան էրթալ = *Մախալին հականիշը*։
Փսփսուկը տուն կ'էվրէ = *Զարութիւնը գաղտնի կը նիւթո·ւ*։

Ք.

Քարէն կակուղը կուտէ = *Ուտեստին խտրութիւն չի դներ*։
Քարը քարին զինել = *Քսութիւն*։
Քար նետերէնուի թեւերնին խոնեցեր է։
Քարը քարին՝ քարը գլխուն։
Քարը *պարղը* կոխել։
Քանի աշխարք լարվիր է նէ՝ հէրկէս էնքինքը հանիր է։
Քարէն ճան զուգայ, հոնկէ ճան չ'գար։
Քար նէթել = *Փաստ մը արդարացնելու անկարելի միջոցը։ Օր. «քար ճէթինէ տարիքը 50-ը չ'անցնիր»*։
Քառսուն սուրբը փառայ մը յիշել = *Վախէն ազատելու համար աղօթել սուրբերը բարեխօս բռնելով*։
Քարը կ'ամէնէ ջօրը կ'հանէ։
Քաք բերա՜ն էրթալ = *Զարաչար կորսուիլ*։
Քաքի շառի չէ = *Բնական կարիքը առանց ուրիշին տեսնելու կարող պզտիկ տղայ*։
Քաքին մէջէն հուլումէ գտեր = *Խենդի արարք*։
Քաքը փոխ առաւ = *Վախէն փախաւ գնաց*։
Քեառի՜ Ճոնկցի չէ = *Կ'ըսուի երբ կը կեղծէ ինքզինք*։

Քէլ գլխօք ճերմանի կը խառնուի:
Քէծօք օրճօք զուրցել:
Քէլ հաւ էնել = *Դատափետել*:
*Քէնէֆին* քար նետիսնէ՝ վրան կը պօրքայ:
Քէնց տէրը առաջք ախօռ կը մտնա:
Քիչ յօ՞ռ կ'երթաս = Շատին քով = Որ ունիցի տացի···
Քիչ քարճի'ր, թէզ դարճի'ր:
Քո'ւ խօրոզդ քանի՞ տեղաց ճան կուտանա:
Քունը քուն կը բերէ:
Քունն ու մահը մէկ է:
Քուրդը եղը շատ զտնանէ, պալտոներուն կ'քսէ:
Քուրդը 40 տարի ետքը հայքը առեր է եօք «ինչ թէզ առի» ըսեր է:
Քրդուն աղը թէփէցաւ = *Բանաձեւ մը, որով երբ պզտիկ տղայ մը վազելու ատեն իյնալով կու լայ, ձայնը կտրելու համար կ'ըսեն. «Հիս, հըմ—մա քուրդը աղը կ'ուզէ»*:

## Օ.

Օճը օճէնէ ջօռ խմած տեղը մարդու բան չ'էներ:
Օճը ծակէն դօրս չ'ելլար = *Զմեռը ապայուցանել*:
Օծու պէս լեզուն դօրս ճգեցա = *Կարի կ'աղաչէ*:
Օճուն աղու տալ = *Չարերը թելադրել*:
Օճը լզելօք կը խօթէ = *Խորամանկը անզգալիօրէն կը վնասէ*:
Օղորդ խօսքը իշուն կը զուրցեն:
Օղջ գլօղը աւետրնի տակ չեն դներ:
Օղորդ պատը չէ կորթեր:
Օղորդ զուրցողին տեղ չիկայ:
Օղորմիս, օղորմիս, փեսայ Կազարիս օղորմիս:
Օջիլը հօգկա հօգկա կ'ըլլի = *Անափառ եւ սնապարծ է*:
Օջիլոտը քէրվեր է, անօթին *կխման* է ընկեր:
Օջիլ սատակ = *Ծոյլ եւ մակարոյծ*:
Օտքը առնալ = *Դաւադրութիւն*:
Օտքօքը քաք բերել = *Դատարկապորտները տունին վրայ չարիք կը բերեն*:
Օտքին տակ սապօն դնել = *Տե'ս. ոտքը առնալ*:
Օտք չ'էղած գլօղ չ'ըլլիր:
Օտք ճառք էնել = *Ամուսնացնել, կարգել*:

Գ.

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

*Բոլոր գաւառներու մէջ հանաքներ եւ հանելուկներ ունեցած են Հայերը, որոնք իրր ստեղծագործութիւն հետաքրքրական են, վասնզի անոնք իբր գրօսանք ձմեռուան երկար գիշերներուն, զբաղեցուցած են Հայ միտքը, որ միշտ նորեր չինած է, Շնորհալիի օրերէն սկսեալ:*

*Ասոնց մէկ հաւաքածոն կազմած է հողեւոյս Կարապետ քհնյ. Պէննէեան, զոր նոյնութեամբ կը ներկայացնենք իր ընդարձակ տեղեկագրութենէն առնելով:*

Ագին բրդէ, հոգին էրկթէ = *Մախաթ*:
Ագի ունի, հոգի չունի = *Տապակ*:
Անծակ մարգրիտ, անոլոր դերձան. Ասված կը չէրէ ինսանը կը քակէ = *Խաղող եւ Նուռ*:
Անծիկ անծիկ կը ցանեմ, հոգկա լիտիր կը վերցունիմ = *Ծակնղեղ*:
Աշիմ աշիմ ծակտ քշիմ = *Թել եւ ասեղ*:
Ավլեցի, ջրշքնեցի կուճուկ մաման տնկցուցի = *Աւել*:
Բան մի ունիմ բան չէ, սուտ կ'դպնամ իրաւ կը ճնչէ = *Վին* = *Սազ*:
Բերանն էրկթէ շուն մ'ունիմ = *Կղպուած սնտուկ*:
Բերնէն կուտ փոռ'ն կը քաքնէ = *Բամպակը կորիզէն զատող ճախարակ*:
Բոլոր բոլոր մէջը ծակ. էշ չիսնէ՝ ըսէ՛, գտակ = Գտակ:
Գետնէն սուրուլիկ ցից մ'հանեցի = *Ստեպղին*:
Գեղին կովը սեւ կովուն եփառը կ'լզէ = *Բոց ու սան*:
Էգին մազօք մօրուօք մարդ մի կայ = *Եգիպտացորեն*:
Էգին անկանը կարմիր օղօք տղայ մի կայ = *Կեռաս*:
Էստին պատ, էնդին պատ, սեւ հարսին ճակատը տաք = *Պատուհան*:
Էրկնուցը ընկաւ գետինը փակաւ = *Անուն*:
Էրկու ախպրէն ջօռ կ'վազէ, հինկ ախպար դէմ կ'վազէ = *Քիթ եւ ձեռքի մատներ*:
Էրկու աչէն՝ չորս պուտէն, ագին կռնակն է բուսած = *Կշիռք*:
Էրկու արապ դէմ դէմի կայնիրէն = *Օջախին երկու քիթերը*:
Էրկան է պոչը կը կրէ կոչը = *Դգալ*:
Էրկան բարտին շուք չունի = *Առու*:
Թաք ըսիմ թակլար ըսիմ, անունն ըսիմ դուն չի գըտնաս = *Թակ*:
Թոնիրին մէջ չորս հաց ունիմ = *Ընկզմէջ*:
Լառանն էտեւ կէս հացի ունիմ = *Առաջին քառորդ լուսնի*:
Լառանն էտեւ ցարմաղ մի *չախմաղ* քար ունիմ = *Աստղ*:
Լառանը վրայ ճերմակ հացսաւան մի մէյնված է = *Ձիւն*:
Լառանը վրայ կարպէտ մի կայ, կէսը հուսվուն կէսը չ'հուսվուն = *Թաթ եւ մատներ*:
Իմ տափուկս՝ քու տափուկդ, իմ լօլօզս քու ծակուկտ = *Երկանաքար*:

Կզկիմ կզկիմ չի հատնիր = *Ճամբայ*։
Կովուն փորը փչեցի, Աղամայ ճրագը վառեցի = *Թոնիր*։
Կը լողանայ, կը ցօղվի, կ'էլլայ ցիցը կ'նստի = *Դաշնայ*։
Խպըլիկը ծառն էլաւ, ինչ կայ չիկայ վար թէփեց = *Ածելի*։
Հարս մ'ունիմ գալող էրթողին ձառքը կը պագնէ = *Դուռ*։
Հեքիյա հեքիյա հէգ մի գտայ․ էգին գացի՝ վէգ մի գտայ․ փորեցի կանանչ կապայօք հարս մի գտայ = *Բղուկով թաղուած գանձ*։
Մալանիկ՝ լեզուն տանիկ․ հոգի ունի, ոսկեր չ'ունի = *Տզրուկ*։
Մինէրէէն կը ձգեմ չի կոյրիր, ջուրը կը ձգեմ՝ կը կոյրի = *Թուղթ*։
Մութ մութ տուն՝ մէջը կօլկօլ = *Թուպի բզուկ*։
Ներսը օսկի, դօրսը արծաթ = *Հաւկիթ*։
Նստիմ նստելս չի գար․ կայնիմ կայնելս չի գար․ հարգէ երեք թիզ չորս մատ չի քշիմ, քունի չի գար = *Պառկելէ առաջ դրան նիգերը քշել*։
Զատըր մ'ունիմ սօն չունի = *Երկնակամար*։
Չէնթէմի անանուխ ունիմ = *Թուղ*։
Պապերնին կ'ըսէ «օյ մէշկըս», մէրերնին կ'ըսէ «օյ գլօղըս», չընճղտէքը կ'ըսեն «ջարդվեցաք, ջարդվեցաք» = *Տանեաց հեծանը, գերանը եւ սիւները*։
Ջխվեր մ'ունիմ մէջը օձ մի կայ․ օձուն բերանն ա մարգրիտ մի = *Հողի ճրագ կամ լապտեր*։
Սըրըղ, սըրըղին վրայ *թուլուղ*․ թուլուղին վրայ ջաղանք, ջաղանքի վրայ դդում, դդումին վրայ *չայեր*, չայերին մէջը մրջում = *Մարդուն արտաքին կազմը*։
Սեւ սեւ, սեւ օլեր, հէր չօպան չինանաքակեր = *Գրել կարդալ*։
Վօռուն հանիմ, վօռուտ դնիմ = *Բազմոց*։
Տատա մ'ունիմ, երկու եառը ծակ = *Լողքար*։
Տուն մ'ունիմ տուն չէ, մէջը մտնալիք բան չէ, իրեք բանա դօռ մի, անալ ձմրան *խարճ* է = *Տօտիկ* = *Կոնաձեւ հօղաման մը որ տաքցնելով անկողնոյն մէջ ոտքերնուն կը դնեն*։
Փառս փառաց է, ճերմակ սստռ թէփեցուն = *Կարկուտ*։
Քէնց թին թեթեւ․ քէնց հեծանը հաստ = *Փչուած տիկ*։
Ուլիկ, ուլիկին մէրը․ էրկան մայրամ, տապակ լզող, օջիլ կոտրտող = *Ծըկոյթ, մատնեմատ, միջնամատ, ցուցամատ եւ բթամատ*։

Դ.

## ՄԱՆՐԱՎԷՊԵՐ

*Մանրավէպեր ալ ունէին Մալաթիացիք անշուշտ*։

*Ասոնցմէ մէկը՝* «Ողորմեա, ողորմեա, փեսա Կազարիս ողորմեա»*ն*, *մէկ մանրավէպի մը խտացումն է։ Իրր թէ կին մը ունէր համանուն տղայ մը եւ փեսայ մը, որոնք երկուքն ալ սիրելի էին, եւ երբ եկեղեցի կ'երթար կամ տունը կ'աղօթէր, երկուքին համար ալ կ'աղօթէր «Կազարիս ողորմի» ըսելով*։

*Տղան սակայն կը կասկածէր իր մօրը սիրոյն հաւատարմութեան վրայ եւ օր մը եկեղեցին մօրը աղօթելու ատեն կը լրտեսէ եւ կը տեսնէ որ իր կասկածը անհիմն չէ, որովհետեւ մայրը կ'ըսէր աղօթելու ատեն. «Կաղարիս ողոր-մեա, ողորմեա փեսայ Կաղարիս»:*

*Այս բառերը առածի տեղ կը գործածուէին յաճախ:*

*Պէննէեան քհնյ. այն ատեն աշխարհական (Պ. Համբարձում) հրատա-րակած է ԲԻՒՐԱԿՆի մէջ (Ի. տարի) ուրիշ մանրավէպ մը, որ հաւանօրէն տեղական բնոյթ ունի, հող չէ թէ Եգիպտոսի հին պատմութեան ակնարկներ կը պարունակէ: Անշուշտ նիւթը քաղուած է ժողովուրդին բերնէն: Տ. Կա-րապետ քհնյ. Պէննէեան զայն ոտանաւորի վերածած է:*

*Ահա նոյնութեամբ՝*

## ՉՈՐՍ ԽՈՒԼԵՐԸ

Մենէսի (1) օրով հովիւ մ'ինք խուլ էր,
Բայց շատ աշխուժիւ սրինգ կը սուլէր,
Մեմփիսի մօտիկ անտառի մը մէջ,
Կ'արածէր ոչխար, գառն, այծ ու ուլեր:

Այդ անտառին մէջ տեղ տեղ աստ եւ անդ
Կար դալարագեղ արօտ կամ մարմանդ,
Ուր հօտն պնդակուշտ՝ ուտելով մատաղ,
Ուտէր, կանանչ խոտ, եւ կ'առնէին խաղ:

Ամռան տաք օր մ'ալ երբ միջօրէին,
Այհ, Գիս, Օյհ, Ըոր սրինգն ի ձեռին,
Բերաւ մակաղէչ եւ ինք ընդ հուպ
Ննջեց, սնարին դրած սրինգ՝ ցուպ:

Շատ ննջեց թէ քիչ, կարծես հմայեց
Մէկ մարդ, որ հեռուստ ուլ մ'հոն մայեց,
Իսկոյն ամբողջ հօտն անդէն հեռացան,
Գացին անտառը՝ եղան ցիր ու ցան:

Բաւական ետքը խեղճ մարդն արթնցաւ,
Տեսաւ կորուստը եւ զգաց մեծ ցաւ,
Չէր գիտեր ոչխարքն ի՞նչ եղան կամ ո՞ւր
Գացին՝ անտառը առած առաթուր:

---

*(1) Մենէս է Եգիպտոսի երեսուն արքայական ցեղերուն ամենէն առաջինը, որ Վերին Եգիպտոսէն իջնելով՝ ՄԵՄՓԻՍ քաղաքը շինած է. այժմ աւերակ:*

Մինչ կը մտածէր թէ ի՞նչ պիտ ընէ,
Երբ մոլորած հօտը չըգտնէ,
Մէկ մ'ալ դիպեցաւ խուլ մարդ մ'իրեն պէս,
Որ քաղաք կու գար հիւանդի մի տես:

Հովիւն հառաչեց եւ անոր ըսաւ,
Թէ իր մոլորած հօտը չըտեսա՞ւ,
Անցորդն ալ կարծեց թէ կը խնդրէ ջուր,
Ձեռօքն ի հեռուն ցցուեց մի աղբիւր:

Հա փութաց՝ սուրաց՝ ալ կը կեն՞այ հող,
Գնաց դիտմամբ ալ չըսես գտաւ հօտն,
Խնդումէն ոտքը գետին չէր հասներ,
Կարծես գտած էր ոսկեայ կարասներ:

Վըրայ բերաւ սա, պէտք է ես այն խուլ,
Անցորդին նուէր տանիմ գէթ մի ուլ,
Քաջ գիտեմ որ նա չդիպէր ստուիս,
Հետքն իսկ չէր հնար գտնել կորուստիս:

Հօտին մէջ ոտքը կոտրած ուլ մը կար,
Հասուց անցորդին եւ ըսաւ. «աղբար,
Դուն ազատեցիր զիս ախ ու վախէ,
Քաղաք տար սսի, քեզ համար ծախէ:»

Անցորդը ըսաւ «թէ եղբայր մոլիս,
Թող որ ես երթամ, հասնիմ հիւանդիս.
Ով է կոտրեր ով, ով ինչ լուր ունի,
Սեւ գայ սեւ երեսն լաննէթ սատանի»:

Հովիւը պնդեց «կ'աղաչեմ քեզ ա՛ռ».
Անցորդը մերժեց թէ «ես չեմ պատճառ
Ուլիկիդ ոտքին բեկմանն» ըսելով,
Երկուքին ալ խօսքն իսկոյն տանէ հով:

Ասոնց կռուելու շատ բան չէր մնար,
Զի մէկըն միւսին խօսք չէր իմանար,
Երբ բերանով ձեռքով չընտրէին
Քաղաք գալ եւ վերջ տալ բանակռուին:

Եկան քաղքին ծայր պարտէզի մը մէջ,
Տեսան ոստայնանկ մ'որ կ'ընէր առէջ.
Դէմքն էր տխրունակ այս ոստայնանկին,
Զի արձակած էր այդ օր զիւր բուն կին։

Ոստայնանկն առնիք տեսաւ՝ չտեսաւ՝
Եղկելի ձայնով լացաւ ու բսաւ.
«Ես այդ վատ կինը այլեւս չեմ առներ,
Զի արձակման գիրն երդմամբ եմ տուեր»։

Անցորդը բսաւ, «որ ամենեւին
Վնաս մը տուած չեմ ես այս հովուին,
Եկէք որ երթանք մենք աս դատաւոր,
Ինչ վճիռ որ տայ՝ հնազանդինք անոր»։

Ոստայնանկն ալ խուլ՝ բանը չիմացած,
«Ես ալ հլու եմ Աստծուն օրինաց»
Լսելով, մէկը միւսէն փաստաբան,
Կ'երթան երեք խուլ անդէն միաբան։

Մինչդեռ կ'երթային հոն գամ քան զգամ,
Դատաւորն դատէր մէկ մարդ անզգամ,
Ճիշդ այն վայրկէնին դատարան մտան,
Որ իրենց մտքէն չէր անցներ անգամ։

Այն ոստիկանը, որ կար առ դրան,
Լուր տուաւ ներսը «թէ ահա եկան».
Կարծելով թէ առնիք դատապարտ մարդուն,
Կողմէ ցոյց տրուած վկայք են արթուն։

Դատաւորն ներսէն յօնքով ու ձեռքով,
Կարծեցեալ վկայքն կանզնեցուց իր քով,
Ըսելով անոնց «այդ մարդն որ դիտէք,
Ըսէք իր մասին ինչ որ դուք գիտէք»։

ՈՍՏԱՅՆԱՆԿԸ.—

«Ես եմ յիսնամեայ ոստայնանկ բընիկ,
Արձակածս էր՝ մի վատհամբաւ կընիկ,
Հուսկ յետոյ ուրիշ չըգտայ ճարը,
Ահա, հոս զալուս ստոյգ պատճառը։»

ՀՈՎԻՒԸ ԵՒ ԱՆՑՈՐԴԸ․—

«Տէր իմ դատաւոր ծառայքն ենք ձերին».
Մի առ մի ըսին, ինչպէս որ ծերին,
Նախ պատմեր էին այն պարտէզին մէջ,
Հարկ չեմք սեպեր որ հոս ալ բերենք մէջ։

Դատաւորն որպէս թէ լաւ ուշադիր,
Միտ կ'առնուր երեք խուլերու խնդիր․
Մինչ ինք քան զայնս էր ծանրալուր,
Որով ականջին չդպաւ մէկ լուր։

Այս վերջնոյն թէեւ ականջները լսուլ,
Բայց վճիռ տալու միտքը չէր խարխուլ,
Առաջինն ազատեց զասոնք դրաւ բանտ,
Չըգիտեմ ադոնք դեռ ինչ կ'ընեն անդ։

*Կը պատմուէին նաեւ հետեւեալ մանրավէպերը, ժողովուրդին մէջ․—*

Ա․

Վանական միաբանի մը փոքրաւորն սովորութիւն ըրած էր միաբանին պառկելէն վերջ՝ ամէն օր հաւկիթ մը ճրագին բոցին վրայ բռնելով խաշել ու ուտել։ Մեծաւորը հետաքրքիր ըլլալով ասոր ուշ պառկելուն վրայ, իրիկուն մը արթուն մնալով կը հսկէ եւ ահա փոքրաւորն դարձեալ հաւկիթ մը բերելով խաշելու վայրկեանին՝ անկողնէն ցատկելով ձեռքէն կը բռնէ եւ «այս ի՞նչ է, անպիտան» որ կ'ըսէ, փոքրաւորը ալ ուրիշ ճար չգտնելով, «սատանան սորվեցուց» կը պատասխանէ։ Այդ միջոցին իսկոյն սատանայ մը երեւան գալով կ'ըսէ թէ «Անիրա՛ւ, մենք ամէն բան գիտենք, սակայն հաւկիթ խաշելը ոչ իմ նախնիքս գիտէին, ոչ ես գիտեմ եւ ոչ ալ մեր զաւակները» ու ամօթահար կը թողու։

Բ․

Ժամանակաւ թագաւոր մը կ'ուզէ 20·000 դրուշ պարգեւ տալ այն անձին, որ օրինաւոր սուտ մը կը խօսի իր ներկայութեանը։ Շատ մը մարդիկ իրենց հնարած սուտերն կը խօսին, սակայն չեն արժանանար խոստացուած պարգեւին։ Որբ տղայ մը իր խորթ մօր հրահանգով պզտիկ կարաս մը շալկած կը ներկայանայ կայսեր եւ՝ «Տէր վեհափառ, ձեր հոգելոյս հայրն այնինչ պատերազմի ժամանակ հօրմէս ոսկի փոխ առած է այս կարասով եւ չվճարելով վախճանած է։ Արդ՝ եթէ սուտս օրինաւոր կը գտնէք, տուէք կա՛մ

ոսկին եւ կա՛մ ձեր խոստացած նուէրը», կ'ըսէ. թագաւորն ալ հաւանելով սուտին կը կատարէ իր խոստումը:

Գ.

Հայաքնակ գիւղի մէջ կատարուած հարսնիքի մը ատեն, ըստ սովորութեան երբ կանայք փաղցրեղէն կը բաշխեն հրաւիրեալներու, բաշխողը նորեկ հարսին ալ մօտենալով՝ «Դուն ալ կ'ուտե՞ս, քեզ ալ տա՞մ», կ'ըսէ. հարսը՝ «չեմ ուտեր, նեպս դիր» կ'ըսէ:

Դ.

Մարդ մը որ քնաւ չէր սիրեր աղօթք ընել, բարեկամները զինքը կը համոզեն որ երթայ զէթ մեծ ծառի մը տակ միանգամ աղօթէ: Մարդը համոզուելով մինչ ծառի մը տակ կ'երթար, օտարական մը որ նոյն պահուն այդ ծառին տակէն կ'անցնէր, եկողը կասկածելի մէկը կարծելով անմիջապէս ծառը կ'ելլէ: Մարդը ծառին տակը կը հասնի եւ կը սկսի. — «Աստուած իմ, այս մէկ աղօթքս բոլորին տեղ ընդունել հաճէ»: Ծառին վրայինն ալ «քնաւ չեմ ընդունիր» կը պատասխանէ: «Կ'ուզես ընդունէ, կ'ուզես մի ընդունիր, արդէն ընելիքս ալ այսչափ էր» կ'ըսէ ու կը մեկնի:

# ԱՆՍՈՒՐԱԿԱՆ ՄԱՆՐԱՎԷՊԵՐ

Ա.

Ասոնք գիւղին մէջ քահանայ չունենալնուն համար՝ զէթ ծննդեան եւ զատկի տօներուն քաղաք զալով քահանայ մը տանին եւ իրենց հոգեւոր պէտքերն հոգալու պարտաւոր էին: Տարւոյն մէկը իրենց պարոնի յատկացեալ տուրքը վճարելու դժկամակելով, նեղացուցած եւ բարկացուցած էին զանի, նա ալ վրէժխնդիր ըլլալու համար երբ այդ տարուան զատիկը կը մօտենայ, միջոց մը կը խորհի, այն թէ՝ գիւղացիները դեռ վաղուց չեկած՝ զայ քահանաները կերպիւք համոզէ որ իրենք գիւղացւոց հետ չերթան, այլ՝ Ս. Հացը իրեն տան որ ինք տանի ու գիւղացիները հաղորդէ: Կը խորհի եւ կը գործադրէ: Գիւղացիք որ քաղաք կ'երթան, համոզուելով գիւղը կ'երթան որ գիւղապետէն ընդունին Ս. Հացը: Զատկի խթման օրը պարոնը հրաման կ'ընէ գիւղացւոց որ իրիկունն մեծ ու պզտիկ եկեղեցի դիմեն ու հոն հաղորդուին: Իսկ ինք՝ իր տունը գտնուած մեղուալից փեթակը զաղտուկ եկեղեցի տանելով խորանին վրայ կը դնէ ու վրան պատուական շղարով մը կը ծածկէ: Երեկոյեան երբ բոլոր գիւղացիք եկեղեցին կը լեցուին, կ'ըսէ որ ամէն մարդ մերկանայ ու սեղանին առջեւ մօտենայ եւ եկեղեցւոյ դուռը եւ ամէն ծակ ու ծուկ զոցեն ցաւարտ արարողութեան, այլ միայն աղօթեն նաեւ մաքսաւորին: Բոլոր ժողովուրդը ամենայն ջերմեռանդութեամբ աղօթելու ատեն փեթակին

բերանը կը բանայ ։ Մեղուները կը յարձակին և խեղճ գիւղացիներուն իւրաքանչիւրին մարմնին ամէն մէկ կողմը կնելով փեթակը կը դառնան ։ Այս պահուն ոմանք ինքզինքնին մեղաւոր եւ անարժան համարելով եւ իրենց ձեռքն մեղուներու մէն մի կնած տեղւոյն վրայ շուափ զարնելով «վայ ինձ, վայ ինձ, վայ ինձ» պոռալնուն պէս, ոմանք ալ «օյ պապուս հազւոյն, օյ տատուս հոգւոյն» կը պոռան, բայց կինեբու հարուածներուն ալ դիմանալու անկարող ըլլալով հազիւ դուռը կը կոտրեն եւ մահուանէ մազապուրծ կ'ըլլան ։

Բ.

Ասոնցմէ մին՝ առաջին անգամն ըլլալով երբ պատարագ տեսնելու համար քաղաք կու գայ եւ կիւրակի առաւօտ եկեղեցի կ'երթայ, պատարագի խորհրդոյն վերաբերումէ ետքն երբ սարկաւագն պատարագչին աջն համբուրելով բեմէն վար իջած եւ Ս. Ողջոյն ներկայ կրօնականին տալէ ետք՝ դարձեալ բեմ ելլելով պատարագչին խաղաղութիւն տալու ատեն բուրվառով դէպի ժողովուրդն խնկարկելն կը դիտէ, կարծելով թէ ատ բոլոր բաները զինքը բռնելու նշաններ են (որովհետեւ ժողովուրդը զիրար համբուրելով մինչև իրեն մօտ կու գան) ի փախուստ կը խուճապէ և տաճարին դռնէն դուրս ելլելուն պէս կծիկը կը դնէ եւ մինչեւ գիւղը շնչասպառ կը վազէ ։ Իր հայրը, ասոր այսպէս անակնկալ գալու պատճառն իմանալ ուզելով՝

— Տղաս, կը հարցնէ, բարի՞ է. ինչո՞ւ այսպէս շնչասպառ եւ գունաթափ եկար ։

— Հայրի՛կ, կը պատասխանէ տղան, մի՛ հարցներ. առաւօտ եկեղեցի գնացի որ աղօթք ընեմ, այն բարձր տեղը կեցող ու գեղեցիկ զգեստ հագնող գլուխը բաց մարդը՝ ձեռքը շղթայի փունջ մը կրող մէկը՝ որ իր մօտը կեցած էր, իրեն կանչեց եւ ականջն ի վար բան մը խօսեցաւ. ան վար իջնելով մէկու մը ըսաւ. ան ալ ժողովուրդէն մէկին ըսաւ ու ժողովուրդն ալ իրարու ականջին տակ խօսելով դէպ յիս մօտեցան ։ Տեսայ որ զիս բռնելու համար է այս բոլոր դարձուածքը՝ ելայ ու փախայ ։

Հայրը քմծիծաղով մը ալիքը ձեռքն առած՝

— Տղաս, ատոր բարի ողջոյն կ'ըսեն. էս սպիտակ մօրուքը անգամ մը տեսած է լուսահոգի տատուդ մեռած ատենը ։

Գ.

Տարուան ձմեռը երկար կ'ըլլայ. այնպէս որ ձիւնն մինչեւ տանիքները կը բարձրանայ եւ ցուրտ քամին ամէն բան կ'ուռեցնէ, կը ճաթեցնէ ։ Գիւղացիք ասկէ խիստ նեղուելով՝ կ'որոշեն որ ձմեռը ելլելէ ետք իրենց պարոնին քով երթան, որ ժամ մ'անդին ուրիշ գիւղի մը մէջ կը բնակի եւ ըսեն որ ասոր փոխարէն յառաջիկային մեղմ եւ երկար ամառ մը տալու շնորհքն ընէ իրենց ։ Կը ներկայանան պարոնին ու խնդիրնին կ'առաջարկեն. պարոնը կը խոստանայ

տալ երեք ամիս ծաղկալից եւ վեց ամիս ալ պտղալից ու տաք օրեր, որուն համար իրենց խորին յարգանքն ու շնորհակալիքն մատուցանելով մեկնելէ ետք՝ ճամբան իրենցմէ ամենէն բանգէտը «ընկերներ, գիտէ՞ք պարոնին բե–րանը թոյլ էր. եթէ չորս ալ ուզէինք պիտի տար» կ'ըսէ:

Ե.

## ԱՆԷԾՔՆԵՐ

Ախպրուկները վազի,
Աղ ջրվի,
Աղը մաղմաղը դրվի,
Անգալիյանը գայ,
Ա'ղ ըլլի հալի,
Ա'շկը հափը գայ,
Ա'նդուտը անատկն ըլլի,
Ա'շկը շուլլվի,
Ա'շքը ունքը խաղայ,
Ա'շկը ներմկի, պտղի,
Աչիցը լօ'սը դօրս ըյնի:
Բերնէն էլածը ծո'ցը լսվի,
Բերանը պաղպնծի,
Բո'ւթը պատռի:
Գլխակե'րն կամ գլօ'խն ուտէ,
Գլխիվա'ր էրթայ,
Գնդէն գայ,
Գրո'ղը տանէ,
Գլխուն վերեւը նստիմ:
Դարվար անցնի, բուսնի, դա'շը կըյրի,
Դգալ դգալ էրոն ըլլի,
Դօ'ռը կղպվի, դօ'ռ դօռ մուրայ,
Դրնակը նէթի:
Ե'ղը հալի, եօթը պօ'րտը մրեղի անցնի:
Ջավա'լը կարննայ:
Էրեսն արա'պ ըլլի,
Էրեսն էտեւը դառնայ օլօռի,
Էղածին ա վա'յն ըսեմ,
Էտի առջի ուտելնին ըլլի,
Էն աղէկը առջի ըռնկվնէ,
Էնի առջի ըռնկվնէ՝ դուն ա դէմ լուսուն,
Էրթալն ըլլի՝ գա'լը չըլլի:
Ըհ, ինչ ըսիմ ու ի'նչ ըլլի:

Թաքա՛ր խամի փակչի։
Խօշեր խօսոտուկ, կամ խօսոտուկին խօշերը, խլանայ։
Կատա կուրշունի էրթայ, կերած հացը ա՛շքը բռնէ,
Կրյրին կոտրտի,
Կորպակորպ ըյնի, կուրշո՛ւն վազէ անկանը։
Հինէն ճա՛ռքը մնայ,
Հավէսը փորը մնայ,
Հոգուն տո՛ւնն հանէ,
Հոգին մարմինը կա՛պ մնայ,
Հացը ճի ըլլի,
Հինքը շուն ըլլի,
Հերա՛մ ըլլի։
Ձաղկվի,
Ձանը գետնէն գայ,
Ձառվնեըր կոտրտի։
Ճէնէմին տա՛կն ըլլի,
Ճէսէտ սըզըսին ըյնի,
Ճէկէ՛րը շուլլվի կամ ջախմվի։
Մանզիլը կարճնայ,
Մանո՛ւկ մանտրտի,
Մանո՛ւկ գրողի դէմ գայ,
Մա՛հն էրեսը,
Մեխք ա կ՚անէ, շըլլին ըլլի,
Մեղա՛ցս չազատի,
Մանծ քարերուն տա՛կն էրթայ,
Մըթտի՛կս փակչի, մարմինը փտտի։
Ներսը նստի դրսին ցանկանայ։
Շան քոռէ ճանտայ,
Շան սատակ սատկի,
Շանը *թիւ* էրե՛սը բռնի, շաքպի։
Ոլումի՛շ էնէ։
Չանկլները զէնվի,
Չաղին չավտարի՛ն չէ հասնի,
Չար տամրները չորնայ,
Չ՚ըլլի չի կատարի,
Չի զօրանայ,
Չիկայ օ՛րը տեսնամ,
Չիքը չիմօ՛րքը գրվի,
Չորս հոգուն քէ՛նն էրթայ,
Չ՚ունենամ։
Պօյը պօյախանան մնայ,

Պապաներ հանէ,
Պատուրկե՛րը մնայ,
Պօյօքը գետինն անի:
Ջրջրանքը՛ վազէ, ջօրը տաքնայ:
Սիւ հո՛ղը պարտկէ,
Սիւ ջօւ կըյրի,
Սիւ ճլան վրայ նստի,
Սիւ փուշ քա՛շվի առաշկը,
Սրտին տո՛ւնն հանէ,
Սատա՛կն էրկննայ,
Սիրտը սիւ էրի՛ն կօլի,
Սօյուխա՛ն էլլայ,
Սիւ գայ սիւ էրեսին:
Վազէ վազէ՛ չի հասնի,
Վուրբճին քեսքին ըլլի,
Վա՛յն ըսիմ, վերվեր տայ:
Տանելիք տէ՛րտս փակչի,
Տախտկին վրայ էլլայ,
Տամլա մարազին ըյնի,
Տունն էվրի:
Փնտողին գլօ՛խն էլլայ:
Քաքնէեուք քաքին հե՛տ խաղայ:
Օճա՛խն անցրնի,
Օւթնօ՛տի,
Օթթըյնի մարմինը,
Օ՛տքը փաթտվի ***եւն.***:

Զ.

ԵՐԴՈՒՄՆԵՐ

Աշք ունեցողին ա՛շքը դօրս ըյնի,
Ա՛շքը քէօրնայ,
Ասվա՛ծ վկայ,
Աստուծու լուսուն մահրում էլլամ, աւետարան:
Ժամուն ճաշակը ա՛շկս բռնէ:
Թուրքօփ էնէ:
Խա՛չ, խօ՛սք մէկ, Ա՛սված մէկ:
Կըյրինութեանս խէրը չի տեսնամ:
Հացը իս քէօրցնէ:
Հա՛ցը բարի, հա՛ցը «պրօսխումէ» է:
Ճշմարի՛տ Ասված:
Մանո՛ւկ մանտրտիմ,

Մէ՛կ հատ զաւկիս «վայ» ըսիմ:
Պարտկան մնամ,
Պապուս ծո՛ցն էրթամ,
Պտղի՛մ,
Պապուս միսը բերա՛ն ըլլի:
Սեղանը բարի, սէ օրը բարի,
Սուտը սատանայ է:
Տո՛ւն չի հասնիմ:
Քէօրնամ:
Օտքօ՛ք էկայ, առանց օտի՛ էրթամ, ևն.։

## Է.

## ՕՐՀՆՈՒԹԻՒՆՔ

Անհատ հա՛ց ուտիս,
Աստված աղէկօք էվերօք էլուն լեզուն չի՛ ձգէ կամ օտքը ներս չի խօթէ,
Աստված արքայութանը նուս չ'ենէ,
Աստված ապէտ էօմիր չիտայ
Աստված էրկու օրտ իրիկ չ'էնէ,
Աստված էտի լուսան չ'էնէ,
Աստված բարին առաջնորդէ,
Աստված հանկօշտը ամուր էնէ, հէմա բարձ չի փոխէ,
Աստված շատ քաշել չի տայ,
Աստված մնակ էկած կատտանները պէհէ,
Աստված ընծի տվեր է, եօթը ճանկ էրինս խմողին չի տայ,
Աստված քաշածնուս զաք չիտայ,
Աստված եօթը պօրտէ հառու էնէ,
Աստված տանէ, հէմալ չի բերէ,
Աստված չի տանէ ահլ՝ սրտէն ամօթն՝ էրեսէն,
Աստված կրկին տայ, կրկին ուրախացնէ,
Աստված քունունէտ եւ արթուն չի ձգէ:
Գէշս ուզողին բարի տայ:
Էրեսը խնդայ, էրեսը ճերմակ ըլլի,
Էրկնուցը թէփի զետնէն ժողվէ:
Ծլի՛ս ծաղկիս:
Հէմալ կրակ կսկիծ չի տեսնուս,
Հող ճանկիսնէ՝ ոսկի ըլլի:
Մօրուքդ ճերմկի, մէկը հին ըլլի, հազարը նոր:
Շատ ապրիս:
«Չիկայ» չի տեսնաս:
Պէրխուտար ըլլիս,
Վասկերնիդ կատար:
Ցաւ ջօռ չտեսնայ:
Օրերդ շատ ըլլի, ևն.։

## Ը.

# ԲԱՐԵՒԵԼ ԵՒ ՈՒՐԻՇ ԲԱՐԵՄԱՂԹՈՒԹԻՒՆՆԵՐ

Բարեւել, ձեռքը կուրծքը կամ ճակատը տանելով·

**Առ՛աւօտէն** կէսօր.— Բարի լօ՛ս — Աստծու բարին:

**Կէսօրէն** ետինք.— Բարե՛ւ — Աստծու բարին:

**Ետինքէն** իրիկուն.— Բարըրկուն — Աստծու բարին:

**Գիշերը**.— Բարեւ — Աստծու բարին:

**Գիշերը**՝ հրաժեշտի ատեն.— Կեցիր կամ գիշեր բարի — Էրթաս բարի·

**Ուրիշ** անգամ հրաժեշտի ատեն.— Կեցիր բարի — Էրթաս բարի· Աստուած հետդ ըլլի:

**Երազ** պատմել՝ եւ փռնգտալու ատեն.— Բարին ըլլի — Էտի օրդ բարի ըլլի:

**Ուխտաւորներուն**.— Ուխտդ ընդունական — Ձեզ օգնական մեզ պահապան:

**Մեռելի** մխիթարանքի ատեն.— Աստուած լուսաւորէ յանցանաց հոգին — Բարի յիշողացս:

**Յանկերգ** խմելու ատեն.— Կենդանութիւն — Անուշ անմահութիւն:

**Նոյնին** փոխադարձը.— Անո՛ւշ ըլլի — Կենդանի կեցի՛ր:

**Իբր** շնորհաւորական.— Աշկտ լօ՛ս — Լուսօք կենաս:

**Իբր** մխիթարական.— Դուք ողջ կեցիք — Բսէկ մտէք ողջ թող մնան:

**Որեւէ** աշխատութեան վրայ.— Աստուած աջօղէ՛ — Բարի էկար:

**Ուտել** եւ դրամ համրելու ատեն.— Պէրէքվոր ըլլի — Բարի էկար:

**Ձորնալիք** պաշարեղէնի համար.— Վրան արգոք ըլլի — Բերանդ դալար:

**Գործի** մը լրանալուն.— Ձառքդ դալար — Բարի օղջութունօք հագնիս, նըստիս, *եւն.*:

**Աղօթել**, կտակել եւ ողորմելու առթիւ.— Աստուած ընդունելի էնէ — Բերանդ դալար:

**Եկեղեցիէն** վերադարձողը.— Ողորմի՛ Աստուած — Ողորմի հոգուդ և ծնողացդ:

**Քահանան**.— Օխնուն, ողջուն — Օշնա ի տէր:

**Ժողովուրդը**.— Օշնա ի տէր — Աստուած օրհնէ:

**Ժողովուրդը**.— Աստուած կարգիտ վրայ հաստատ պէհէ:

**Քահանան**.— Աստուած օրհնէ:

**Մեռելի** դագաղակիրները փոխուելով.— Լուսաւորչայ փառօքը փառաւորվիս — (Պատասխան չունի):

**Պատարագի** «ողջոյն»ին ժամանակ.— Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ — Օրէնքն առաւ հաստատեցաւ:

**Երգող** կամ խաղ կանչողին.— Ձէնդ անսպառ — Բերանդ դալար եւ (իբրեւ կատակ) խմէ՛, Քէօր Կասպար:

**Ջինքը** կանչելու եւ իրեն ուղղեալ խօսքին ի պատասխան.— Հըմմէ՛, հրամմէ՛.— Հրամմանքդ բարին:

## Թ.

# ԱՂՕԹՔՆԵՐ

### 1.— Արձակ աղօթք

Օշնալ տէր մեր Յիսուս Քրիստոս ամմէն։ Օշնալ հար սուրբ Ասված ճիշմարիտ, օշնալ օրդիդ սուրբ Ասված· օշնալ հոգիդ սուրբ Ասված։ Հաւատամ խոստովանիմ էւ էրկիր պագանիմ։ Բարի լօս, բարի վագնէք· դռն բարի դռնվեր բան։

Մարեամ, մեր Ասվածածին, դուն մէր ըլլի սուրբ Սարգիս, սուրբ Գէվերգ, դռն բարեխօս ըլլիս։ Աման տէր դօռդ դռնակդ մ'առնիմ։ Դռն կափըլ կատաներուն պէհիս։ Մեղայ Յիսուս մեր Ասվածածին, դուն հասնիս, դռն օղորմիս։

Ասվա'ծ, իս քըզի մեղայ, դուն ընծի օղորմիս Աման, հողդ մոխիրդ ըլլիմ, առջեւդ մ'առնիմ Ասված, բիւշմանիմ· հազար անգամ գործած մեղացս։ Տէր դուն արքայութիւնս տաս։

Հար մէր օր էրկինըս, սուրբ էղիցի անուն քո· եկեսցէ արքայութուն քո· էղիցի կամ քո օրպէս յերկինըս սեւ էրկրի· ըս հաց մեր հանապազօրդ տուր մեզ էյսօր· էւ թող մէզըս պարտիս մեր· օրպէս էվ մեք թողուք մերոց պարտապանաց էվ մի տանիր ըզմեզ ի փորձութուն. ալ փրկէ ըզմեզ ի չարէ, զի քոյ է արքայութուն էվ զօրութուն էվ փառք յաւիտեանըս յաւիտէնից, ամմէն։

### 2.— Ոտանաւորներ

#### ԱՂՕԹՔ ԱՌԱՒՕՏԵԱՆ

Առաւօտվան բանն է բարի,
Էրնէկ էն մարդն էլլա բանի,
Շղշղան սուր նախշուն խալի՝
Քրիստոս վրան կը թաւալի,
Մեղաւորին մեղքը հալի։

Լուսացու լուսնը բարին,
Քեզ հավատամ տէր կենդանի,
Էրկինքը պայծառ ծնանի·
Մարեամ նստաւ Ս· Սեղանի։

Առաւօտվան լօսն է ցաթեր,
Օղորմութեան դօռն է բ'ացվեր,
Աղօթկ էրէ'ք խօրող խօսուն,
Արժան ըլլէք Աստծու տեսուն։

Էս գիշեր էլայ դօրս,
Տեսայ Աստծու լօս,
Սուրբ Պօղոս, Սուրբ Պետրոս,
Ընդունելի Ս. Կիրակոս:

Տէրն յիշեցի, ըսի մեղայ.
Իս, մեղաւորս աշխար էկայ.
Լուսահոգիս կորսնցուցի,
Մութ մարմինս կրակն էրեցի:

## ԻՐԻԿՈՒԱՆ ԱՂՕԹՔ

Գլխարկս բարձ, լեզվակս բաց.
Խօսիմ խոստովանիմ,
Առնամ Սրբութուն,
Հոգիս տամ բարի հրեշտակ.
Քընիմ մէջ գիշերուն,
Չի վախեմ մէջ էրազիս,
Գաբրիէլը սաղ բէնիս,
Միքաէլը սօլ բէնիս,
Էրկնուց սօնը սրտիս,
Օսկի ափտարանը գրկիս,
Ճաշակ ամանը բերնիս,
Աստծու եաղլըղը էրեսիս:

*
* *

Էլայ, էլայ էն լառը.
Տեսայ հրեշտակաց զալը.
Շատ դժար է հոգի տալը:

Հոգիս բարի հրեշտակին տամ.
Հրըշտակն ըլլի պահապան.
Չի խափէ չար սատանան:

Մէկ հատ ժպմուս, տէր մի թողուր,
Չար սատանաները հասնցո՛ւր:

## ԽԱՌՆ ԱՂՕԹՔՆԵՐ

Բալլին ընկաւ քարձիս վրայ,
Տիվան խանէն սրտիս վրայ·
Ծունկս դնեմ աղօթք էնիմ,
Լօս գերեզմանը համբուրիմ:

Լօսը կ'էլլայ կամար կամար,
Լուսաւորչայ խաթերն համար,
Ելաւ գնաց Լուսաւորիչ,
Անմահութեան ջօռը խմեց:

Եկաւ էկաւ իրեք ճիաւոր·
Իրեքն ա կանաչ կապաւոր·
Մէկը Յիսուս, մէկը Քրիստոս·
*Զօխ սէվտէ իմ* Ս. Ստեփանոս [1] :

Իզին կ'երթայ թօզին վրայ,
Եւ անյատակ ծովուն վրայ·
Խաչ կը հանէ Հայուն վրայ,
Կուս գեղացիք խաչ կ'հանեն,
Խաչափէտը իս կը շէլկիմ:

Երկան ճամբայ էրթալու
Մէճէլ չունիմ·
Քրիստոսայ համար տալիք,
Ժամ էնելիք պաշար չունիմ:

Մեր տէրն էրեկ ամպը գօռաց,
Ելաւ նստաւ աթօռ փառաց,
Տէր մի ճգի մէզ ի ճեռաց,
Քու ստեղծած քու յօրինած,
Սուրբ աւազան մկրտված:

Խասերուն խասը,
Աւագ Ուրբաթը նստիրէն
Եասը· դուն հասիպ էնիս
Նշխարն ու մասը:

---

(1) *Ըստ Խանձեանի՝ «Ընդունելի Սուրբ Ստեփանոս»:*

Վանքավան տուր օղորմութիւն:
Ընկնվան տո՛ւր խաղաղութիւն,
Վաստկվորին կենդանութիւն:

*
**

Մարեամ մէր դուն գըտես,
Իմ մեղաւորիս դուն հասնես,
Ձար միտքերս մոռցընես,
Խաւար սիրտերս լուսցնես,
Արքայութեան դօռը ցուցուր:

Մարեամ մէր դօռը բաց,
Առջեւս ընկիր ճամբայ բա՛ց․
Դժոխկին դրանն անցուր,
Արքայութեան դօռը ցուցուր:

Վավուր էս աղօթքը յիշէ[1],
Աստված էնուր մեղքը չ՚իշէ:

*
**

### ՆՈՐ ԼՈՒՍԻՆ ՏԵՍՆՈՂԸ

Լուսնկան նոր նոր,
Ձար կամարս կորկոր,
Էկար գացիր փիր ըլխթեցար,
Էղար կոյրին թագաւոր,
Աստված էնէ շնհաւոր:

## Ժ.

## ՕՐՕՐՆԵՐ

*Ժողովրդային ստեղծագործութեան ամենէն սրտաբուխները օրօրներն են, որոնց անծանօթ հեղինակները նախապէս եղած են մայրերը։ Յետոյ այդ պարզ երգերը ճախարակուած են եւ առած են հաստատուն երեւոյթ մը։*

*Մալաթիացի հայ մայրերը իրենց հոգեհատորները քնացնելու համար կ՚երգէին գլխաւորապէս սա օրօրները․—*

---

(1) *Ըստ Խանճեանի՝ «Վավոտ աս աղօթքը յիշէ»:*

**Մանկական Օրօր**

Ճօր, ճօր, ճօր էնիք,
Խզտիք կապան նոր էնիք,
Սիւ հաւը կուրպան էնիք,
Փետուրները գլխուդ բարձ՝
Վըրէդ փոստը քիւրք էնիք:

Ճօր, ճօր, ճօր ապար,
Օսկուն թային պարապար,
Նէնէս էնո՛, կ'ուզեն տար,
Պըտըտիկ է իս չե՛մ տար:

Ճօր, ճօր, ճօր գնա՛,
Ել վազէ՛, մաման գնա,
Մաման քըզի ի՛չն տայ,
Ճէպըդ լենկուն նուշ տայ,
Ուտես ուտես մեզնաս,
Պօզ ձիանքը հեզնաս:
Տօմ, տո՛մ, տում էրէ՛,
Գըթգըթ բերիմ, համ էրէ՛,
Հարզէ՛ մաման ժամուն գայ,
Տանծին տակը տայ էրէ:

Ճո՛ր, ճօր, ճօրն էրթաք,
Ջուազեղ էնիք, ձորն էրթաք,
Կատուի ձազեր հօրքըտէք,
Մկան ձագտիկ խալատէք,
Հէմի չեն ըսեր թէ կ'ուզեն առնաք
միրն էրթաք:

*
**

Ճընկըր ճընկըր ձան զուզայ,
Էլեք, տեսաէք վա՞վ զուզայ.
Ի՞նչ է բարձեր պօզ իշուն.
— Բուրդ ու բամպակ էպրշում:
Էպրշումին գինն ի՞նչ է:
— Գինը քէօշկէրն է տարեր:
Քէօշկէր կօշինքս կարէ՛,
Հազնիմ էրթամ Հինտիստան,
Քըզի բերիմ մատնեստան,
Ընծի բերիմ խալեստան:

**Մինակ մանչ եղու**

Իմ տղաս կայնիր կարմունը,
Մէնկիւշ օղը անկանը,
Խապար էրէք զոնքրչին,
Կուրպան ըլլի, էապէս աղա կըյրըճին:

Սա տղան պէկ կըլմանի,
Բերչամը թագ կըլմանի,
Սիւ ապանօս աշկերը,
Սէյրանի ակ կըլմանի:

**Աղջկան յասուկ**

Մօռ մօռ մանուշակ·
Քրդուն տղան միր մշակ·
Հայտէ՛, ձգէ տեղ տէօշէկ,
Գան նստին խնամինեք
Մազերն ուսին ուռմնեք:

Ախճին, ախճին, խան ախճին,
Խնամեստան գան աղջին,
Հազար եալտուզ տան աղջին:
Կենէ քիզ չեմ տար աղջին:

ԺԱ.

# ՄԱՆԿԱԿԱՆ ԵՐԳԵՐ

*Հայ մայրերը կ'երգէին օրօրներէն զատ մանկական երգեր, որոնցմով կը զուարճացնէին իրենց զաւակները, անոնց արթուն եղած ատեն.—*

«Ամէն բան կ'ըլլայ կայ էն»
Երբ հայրս գայ շուկայէն,
Կը բերէ մեզ ամէն օր
Խաղող, ծիրան, տանձ, խնձոր:

Ամէն անգամ որ նա գիւղ,
Կ'երթայ, կը բերէ հաւկիթ, իւղ,
Որ մենք օրն երկու հեղ,
Կ'եփենք, կ'ուտենք ձուազեղ:

Իսկ երբ երթայ մեղուաբուն,
Գունկիներով դառնայ տուն,
Ինծի համար մէկ բչիչ,
Բաւէ՝ կ'ուտեմ մինչ ի նինչ:

Հայրս երբ գայ ջաղացէն,
Բաժին բերէ քաղարչէն,
Մենք այդ հացէն համադամ
Համ կ'առնենք ամէն անգամ:

Երբոր երթայ յագարակ,
Բերէ պանիր, սէր, կարագ,
Եւ թարմ բարակ շօկից քար,
Մի տապակած գիրուկ բադ:

Թ'ունենայինք մէկ պարտէզ,
Միշտ մօտերնիս դէզադէզ,
Լեցուէր ծմերուկ, շամամ,
Կ'ընէինք հափ ու համհամ:

### Զմրան Երգ

Հարգեւ կու գայ ձոն կու գայ,
Գրիգոր աղան տուն կու գայ,
Փիլաւ կ'եփիմ եղ չըկայ,
Քէօր Թնտօին տեղ չըկայ:

Ցուրտ է տարին,
Մանտր է գարին,
Զ'ուտիր ա միր խնըզ ջորին:

### Պիւլպիւլ

Շուքուր էսօր ամառ էլաւ,
էնուր հըմար կու լաս պիլպիլ,
Վարդ բասվեցաւ, աշխար եղաւ
էնուր հըմար կու լաս պիլպիլ:

Աշունֆ կ'ըլլի շլլիտ ծուռ է,
Էվէլֆու հավէսըտ յուռ է,
Վար վազածը վարդի ջուր է,
Էնուր հըմար կու լաս պիլպիլ։

Վարդ բասվինէ կ'էնիս հավէս,
Պաղչաները կ'էրթան հէրֆէս․
Շատ կարօտիս վարդը տեսնաս,
Էնուր հըմար կու լաս պիլպիլ։

Վարդան օղլին մէտիտ էրաց,
Պիլպիլը շատ փիղան էրաց․
Պաղչաները սէյրան էրաց
Էնուր համար կու լաս պիլպիլ։

ԺԲ.

## ՍԻՐԱՀԱՐԱԿԱՆ ԵՐԳԵՐ

*Հակառակ անոր որ սիրահարութեան առիթներ չունէին երիտասարդները եւ երիտասարդուհիները, Թուրքերու անողոք խստութեան համար, սակայն նորէն բնութիւնը կը խօսէր եւ գաղտագողի սիրահարութիւններ կը կատարուէին եւ հաւանօրէն սիրահարական երգեր գոյութիւն ունէին, յայտաբար նշան սիրահարութեանց ալ գոյութեան։*

*Դժբախտաբար մեր գաւառացի գրողները եւ բանահաւաքները իրենց գաւառները «Սուրբ սրբոց» ցոյց տալու համար, քօղը վեր չեն առած, եւ իրենց քաղաքին բարքերը մաքրամաքուր ներկայացուցած են յաճախ կեղծեօք։*

*Ահա այդ երգերէն երկու հատ․—*

Ա․

Էսօր հէօրը կին մէկ եարմի տեսայ,
Մէշկը բարակ հինֆը նիվան կըլմանի,
Շատ ալ չի մնացուր հոգիս ա առնար,
Աչիցը ունֆերն ա շահըն կըլմանի։

Դըմացէն գալողին հէյրան եմ էղիր,
Էրեսէն կը վազէ ֆէրէ ու մեղիր․
Վարդի հոտօտ եղօֆ մազերն է եղիր․
Մէջֆը բարակ հինֆը նիվան կըլմանի։

Խելֆըս կայիպ էրի, չի գըտիմ յո'ւռ է․
Էրեսները ներմակ, այնէ պէս թոր է․
Հոգիս ուզէ՝ կու տամ, լաֆին հինֆ ծուռ է,
Պեհելիֆ փէֆ մէշհուր տօղան կըլմանի։

Վարդի ծառ ըլլէի դուռը բըսնէի․
Պիլպիլշալ ըլլէի, կուրսկը նստէի․
Ամմէն առաւօտուն բէշին քսվէի․
Պուլպուլուկը բացված ալ վարդ կըլմանի։

Շատ աղէկ է էս Մէյտանի ին եարը,
Էրեսը շէքէր է, սիւքկէր է պալը․
Պզտիկուցա նազլի պեհիր է մէրը․
Նազլի պեհված աղէկ ներան կըլմանի։

Բ․

Հազուստիդ սեւը տեսայ,
Սնտուկիդ մալը տեսայ,
Սուտ մի խօսիր, չար աղջիկ,
Հարիդ զրածը տեսայ։

Ջուր է դեղը ու հեքիմը,
Ուրկի՞ց ելայ քու դէմը,
Ջուր տեղը իս մի նեղիր,
Ծուռ է սեր տանը հիմը։

Սենեակիդ դուռն ես փակեր,
Խութնի խումաշ ես հագեր,
Արեւ ըլլաս բէ լուսին,
Մարդու վրայ չես ծագեր։

Պաղչան տուեր են մեզի,
Իմ եար, ականջդ խօսի,
Տասը տարի է կը սպասեմ,
Սրտէս արին կը հոսի։

ԺԴ.

ԵՂԵՐԵՐԳ

*Գովք կոչուած՝ մեռելներու վրայ երգուած տեսակ մը ներբողեաններ ալ ունէր Մալաթիա, որմէ ահա նմոյշ մը*[1] ․—

Ուհաննէսն է հագիր ալ մօրին վրայ․
Սուրաթը քաշեցին պելլարին վրայ․

(1) *Սոյն եղերերգին հեղինակը յայտնի չէ։Կ՚ուանդուի միայն թէ աւելի 150-200 տարի առաջ նորապսակ ամուլի մը փեսան հարսանեաց գիշերը թունաւորուելով կը մեռնի։*

Երնէկ կու տայ մուրատ առնողին վրայ·
Վա՛յ արեւոտ մէրտ մ՚առնի, Ուհաննէս,
Նստիմ կէնճուկ հասըտ քաշիմ Ուհաննէս:

Է, ի՛նչ մանտր, բոլոր խոշեր հացեր է,
Ուհաննէսը ժամուն պաղչան գացեր է·
Կատարի սիւրմէլի աշքը լացիր է·
Վա՛յ արեւուտ............

Ինչ գէշ զուգայ սա կավուրմաին հոտը,
Ըսէ՛ք իմ զօնքչիս չի գայ իմ մօտը,
Մանծ քէնիս թող կըյրէ ըզմէն ումոտը·
Վա՛յ արեւուտ............

Լօխմամի կավուրման բերնիկս մնաց,
Ձագկու դանկները ճեպիկս մնաց·
Ախշրքին հավէսը փորիկս մնաց
Վա՛յ արեւուտ............

Ըստամպուլայ մէջը ջուխա
Կըյրեցին· Սէվլի պօյիտ վրայ պեճիշ կարեցին,
Քաղաք ուր էկարնէ, *մէչկըտ* կոյրեցին...
Վա՛յ արեւուտ............

Ծոցի բալլին առին ըրնտըլխճան բացին·
Թոփ մի կտաւ բերին պատանք ձեւեցին·
Ջօռ տաքցուցին հինքն աղկէկ մի լօխցուցին·
Վա՛յ արեւուտ մէրըտ մ՚առնի Ուհաննէս,
Նստիմ կէնճուկ հասըտ քաշիմ Ուհաննէս:

Հարսնեւորներն էկան դօռը մնացին,
Փետատն առին գերեզմանը փորեցին,
Տասներկու քահանայ կարգ կատարեցին·
Վա՛յ արեւուտ մէրըտ մ՚առնի Ուհաննէս,
Նստիմ կէնճուկ հասըտ պէհեմ Ուհաննէս:

**ԺԳ.**

## ՎԻՃԱԿՆԵՐ

***Ժողովրդային բանահիւսութեան մաս կը կազմեն վիճակները, որոնք Համբարձման Տօնին կը հանեն, յատուկ արարողութեամբ մը որ նկարագրած եմ տօներու բաժնին մէջ:***

***Այսոնցմէ Կարապետ քհնյ. Պէննէեան կը յիշէ քառատողեան կամ երկտողեան վիճակները.—***

— Զէնզիւ, զի անզիազ *բաչանէր*,
Ոսկի ջրված լանջաներ:

— Բէշկիր բէշկիր իւստիւնէ,
Բէշկիր տիզին իւստիւնէ,
Օթուրմուշ եազը եազար,
Քրիստոսըն էշգընա:

— Տամ պաշընտա փիրփիրիմ,
Հի՞չ մի եօզ էդիս փիրին:

— Հէպկիկէ իտիմ հէպ օլտում,
Փաշա իտիմ պէկ օլտում,
Կէրիտէ տուրուր իֆէն,
Հէփսինտէն եէկ օլտում:

— Գույումճուլար եէլլէսին,
Զուպուղըմ կիւմիւշլէսին,
Պէնիմ եարըմ պիր տանէ,
Հազզ պանա պաղըշլասըն:

— Ծովուն վրայ փրփրիս,
Օսկուն վրայ ֆրֆրիս:

— Ակն յստակ, փաֆ նստակ,
Քէնց կովլըկին կաթն յստակ:

— Կոխեցի թախթը,
Ելաւ դրախտը:

— Կանչէ, մանուկս, կանչէ,
Ամէն արտրս կանանչէ:
Օլուր օլմազ շըւէններ,
Եսեւըս ներս կը հաչէ:

— Հերու ունէի մէկ զօտի,
Էստարի երկու զօտի,
Դուն կըլմանիս տուտու գուշի,
Տիւշմընինին աչքը փըշի:

— Ճնճղուկ ըլլիմ, դուռը նստիմ,
Մարգրտէ շէպիկ հագնիմ,
Ալէմին Սուլթան ըլլիմ:

*Մ. Միրաքեան հաւաքած է հետեւեալ չորս տողով վիճակները (տես* **ԳԱԳ ՈՒԽՏԻ**, *Թ.* 25, *էջ* 15 *եւ Թ.* 26, *էջ* 9 *եւայլն.—*

— Տէ հանէ, աղջի՛կ,
Վիճակը բարին,
Երգելով գովենք,
Այս իկիտ եարին:

— Կանչեր է տունին եէզը,
Ծաղկով լեցուած է մէջը,
Հոգ մի ըներ ճան տղայ,
Շատ բարի է քու վերջը:

— Վերի կարաս,
Վարի կարաս,
Աստուած մեզի
Դուռ կը բանաս[1]:

— Նոր աշխարհ, նոր մօտայ,
Մեզ որ ես Քուպա եկայ,
Քանդուխս դուն փուճ աշխարհ,
Սրտակից մէկը չկայ:

— Ոչ տուն ունիս, ոչ լսիր,
Գլխդ զարնեն չես խօսիր,
«Ազատ» Հայաստան ունիս,
Եղիր ես խալիլին եսիր:

— Ամէն օր կը մտմտամ,
Գրպանէս դրամ կու տամ,
Գործս խումար խաղալ է,
Վախնամ ճուլս վրայ տամ:

(1) *Պէննէեան ունի այսպէս.* Վարի կարաս, վերի կարաս, Աստուած ընձի դուռ մը բանաս:

— Վարդի նման սէր ունիս,
Ամէն ցաւի ճար ունիս,
Հիչ մի՛ խորհիր ճան աղջիկ,
Զինարի պէս եար ունիս։

— Ֆինճանին փալը վատ է,
Աստուած ինծի ազատէ,
Եարս խօսք չի հասկնար,
Բաշածս Աստուած գիտէ։

— Խօսքերը լաւ են Արա,
Կը խօսիս ազգիդ վրայ,
Բայց որ մէկը քեզ դիտէ,
Չես տար ազգիդ հինգ փարայ։

— Զարկէք ձեր սիրոյ սազը,
Ճերմըկաւ գլխուս մազը,
Աս, օր ալ ձեռքս կու տաք,
Մուրացկանի սեւ քասը։

Բ.

## ԱՆՀԱՏԱԿԱՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒԹԻՒՆՆԵՐ

*Հաւանօրէն Մալաթիոյ Հայերը ունէին նաեւ պարերգներ, հարսներգներ, եւայլն, որոնցմէ դժբախտաբար նմոյշներ չկրցայ հայթայթել։*

*Ապահով եմ որ Մալաթիացիք ունեցած են նաեւ աշխատութեան երգեր, ինչպէս նաեւ երգիծական եւ ծաղրական երգեր, սակայն դժբախտաբար չկրցայ անոնցմէ նմոյշներ ունենալ։*

Ա.

## ՄԻՋՆԱԴԱՐԵԱՆ ԵՐԳԻՉՆԵՐ ԿԱՄ ՏԱՂԱՍԱՑՆԵՐ

*Ինչպէս տեսնուեցաւ, ուրիշ տեղերու նման նաեւ Մալաթիոյ մէջ, գոյութիւն ունեցած են նախնական արուեստով, ժողովրդային բանահիւսութիւններ, ուղղակի առօրեայ կեանքին կապուած, որոնց ե՞րբ, ի՞նչպէս, ո՞րոնց կողմէ ստեղծագործուած ըլլալը ճշդել կարելի չէ։*

*Ասոնք անխափան շարունակած են ամէն դարերու մէջ, բայց գիրի չեն առնուած, վասնզի Միջին Դարուն գիրը եւ գրիչը ապաստանած էին վանքերու մէջ եւ ժողովրդային կեանքին հետ կարծես թէ իրենց կապերը խզած։*

*Բայց կեանքը չէր դադրած, տխուր կամ ուրախ անիկա կը շարունակէր եւ վանքերու պարիսպներուն ետին ապաստանած եւ նախնեաց լեզուով*

*չարունակուած դրականութենէն անջատ նոր լեզուով, ամկօրէն մշակուած բանահիւսութիւն մը երեւան կու գար, ժողովուրդին կեանքէն ներշնչուած եւ անոր համար ստեղծագործուած :*

*Եւ նոր լեզուով (աշխարհաբար) երեւան կու գային նոր մշակներ (հմմտ. Պատմ. Հայ Եւդոկիոյ, էջ 1544), որոնցմէ զուրկ եղած է դժբախտաբար Մալաթիա, որ միջնադարեան տաղասաց մը չէ ունեցած, չենք գիտեր թէ ինչո՞ւ :*

*Թերեւս պատճառներ կային ասոր համար, իբր հետեւանք միջավայրի եւ ժողովրդային կենցաղի :*

*Ուշ արթնցած վայր մը եղած է Մալաթիա, հակառակ իրենց արհամարհանքին եւ վերէն նայելուն այլոց վրայ :*

*Գուցէ ասոր համար է որ Մալաթիացի «գրոց աշակերտներ»ու, ինչպէս տաղասացներու յիշատակութեան չենք հանդիպիր :*

Բ.

# ԱՇՈՒՂՆԵՐ

*ԺԲ. եւ ԺԹ. դարերուն երեւան կու գայ երգիչներու նոր տեսակ մը, որոնք թէ՛ կը նուագէին եւ թէ կ'երգէին, յաճախ իրենց յօրինած երգերը : Ասոնք կը կոչուէին ԱՇՈՒՂ :*

*Անոնք ժողովրդային բանաստեղծներ էին, որոնց ստեղծագործութիւնները իրենց հիւսուածքով, ձեւերով, պատկերներով, նոյնիսկ տաղաչափութեամբ, ժողովրդային բանահիւսութեան չափազանց մեծ նմանութիւններ ունէին : Անոնց հեղինակները ներշնչումով կ'երգէին վայրկեանի ազդեցութեան տակ յանպատրաստից, հրապարակներու եւ սրճարաններու մէջ կամ խրախճանքներու ատեն :*

*Անոնց յօրինած երգերը շատ քիչ անգամ գիրի առնուած են, բացի փոքր մէկ մասէն : Աշուղներ, որ ամէն ժամանակներու եւ տեղերու մէջ գտնուած են, ապահովաբար Մալաթիոյ մէջ ալ կային, որոնք ընտանեկան հաւաքոյթներու մէջ կ'երգէին :*

*Ասոնք յաճախ Թուրքերէնով երգած են, վասնզի աշուղները երբ իրարու հետ հրապարակով կը մրցէին պատրաստաբանութիւններով, ամբողջ քաղաքը կը հաւաքուէր անոնց շուրջը : Եւ որովհետեւ Թուրքերը մեծ թիւ կը ներկայացնէին, պետական լեզուն կը գործածէին :*

*Այսպէս շատ մը հայ աշուղներ Թուրքերէնով երգած են եւ երբեմն հայատառ կական դէպքերու վրայ* տեսքաններ *գրած են :*

*Սով հանդերձ այս մարզին մէջ ալ Մալաթիացիք շատ յաջողակ չեն եղած եւ շատ թիւով աշուղներ չեն ունեցած :*

*Ծանօթ աշուղ մըն էր ԹՈՐՈՍ ԹԱՇՃԵԱՆ կամ այլ անունով ԹԱՇՕՂԼԻ, որ ժողովուրդին մէջ համբաւ կը վայելէր :*

*Ասիկա «Ազգին Մարմնի» պատահարին վրայ, որ այնքան յուզում պատճառած է (տես սոյն, էջ 660–1), ունի ՏԵՍԹԱՆ մը Թուրքերէն, որուն սա տողերը կը յիշուին.—*

«Մուրախսա տէր, կէօրմէտին մի օ պապը,
Անըն իչուն իֆրար էտտի մէսէպը:
Մուրախսա տէր, Ասլան Ջատէ Նամլը տըր,
Շամ գըլընը չարխա վէրմիշ Ղազլը տըր,
Էրմէնիլէր հէփ էօմրընէ պաղլը տըր.
Ախ ու վախ չէքմէսըն տօղուրան անա եւայլն:

*Ասոր նման Թորոս Թաշճեան ունէր Թուրքերէն լեզուով գրուած բազմաթիւ ոտանաւորներ, որոնք կ'երգուէին ժողովուրդէն:*

*Ս. Շէհրիկեան այս աշուղէն յիշած է հետեւեալ տողերը* (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 25, էջ 15).—

Հէմ կէնչլիկէ, հէմ կուվէթէ,
Հէմ կիւվէնմէ, սիմ ու վարէ,
Գարտըն զափէ հէօքմ էյլէյէն
Գալմատը նէփէ Հասնֆալէ:
Նէչէ պիր խազնէ սարփէտէն,
Պուլմատը էօլիւմէ չարէ,
Ճիհանը հիւքմ էյլէյէն,
Գալմատը Շահ Իսկէնտէրէ:

*ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՎԱՐԺԱՊԵՏ ՊԷՆՆԷԵԱՆ, հայր Տ. ԿԱՐԱՊԵՏ ՔՀՆՑ. ՊԷՆՆԷԵԱՆ (տես իր կենսագրութիւնը, սոյն էջ 759–761), թէեւ իրական աշուղ մը չէ, սակայն այս նախկին ուսուցիչ քահանան իր աշխարհականութեանը գրած է ողբ մը կամ ՏԵՍԹԱՆ մը 1895ի կոտորածին համար, որ հրատարակուած է* (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 36, էջ 18 եւ 37, էջ 11):

*Ուրիշ նման գործեր ունի՞ թէ չէ, ծանօթ չէ, սակայն ամէն պարագայի մէջ իրր աշուղ չէ յիշուած, եւ իր պատրաստած ՏԵՍԹԱՆները չեն երգուած եւ թերեւս այս մէկն ալ քմայք մըն է:*





# ԺԲ. ՄԱՍ

# ՀԱՅ ԳՐՉԱԳԻՐՆԵՐ

*Մալաթիա իր աշխարհագրական դիրքին պատճառով, միշտ պատերազմի եւ խռովութեան վայր մը եղած է եւ այս պատճառով մշակութային կեդրոն մը չէ կրցած դառնալ եւ քիչ անգամ միայն կարճ միջոցներ ժամանակաւոր փայլ ունեցած է։*

*Իր վանքերն ալ մեզի հասած վաւերագիրներու վրայ հիմնուած կարելի չէ ուսումնասիրել նկատել։*

*Հետեւաբար Մալաթիոյ մէջ գրուած ձեռագիրներու թիւը շատ չափաւոր է, իմ ձեռք բերած յիշատակարաններուս վրայ հիմնուելով։ Առով հանդերձ իբրեւ պատմական անուրս վկայութիւն եւ վաւերագիր, կը ներկայացնեմ Մալաթիոյ մէջ գրուած ձեռագիրներու յիշատակարանները, թուականի կարգով, որչափ որ կրցած եմ ձեռք բերել։*

1057

ԱԻԵՏԱՐԱՆ, Ձեռագիր Էջմիածնի Թ. 362/3784,

Գրիչ՝ Թովմաս քահանայ,

Տեղ՝ ՄԵԼԻՏԻՆԷ,

Թուական՝ «ի թուականութեանս Հայոց ի հինգ հարիւր ու վեցն» (= 1057)։

ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ.

«Փառք ամենասուրբ երրորդութեանն յաւիտեանս ամէն, որ ետ զաւրութիւն տկարութեանս իմոյ հասանել մինչեւ ցյետին գիծ գրոյս այսորիկ, քան զի շնորհիւն Աստուծոյ սկսա եւ ողորմութեամբ նորին կատարեցի..... ձեռամբ Թովմաս երիցու նուաստ քահանայի եւ յետին գրչի քաղաքիս Մելիտինոյ, ընդ հովանեաւ (1) սրբոյն Գրիգորի, ի թուականութեանս Հայոց ի հինգ հարիւր ու վեցն, ի կաթողիկոսութեան տեառն Խաչկա, յորժամ ի Թաւբլուրի վանսն էր...:Արդ որք ընթեռնոյք կամ աւրինակէք, զգրողս յիշեսջիք

(1) *Յակոբ Թոփճեան* (Ցուցակ ձեռագրաց Խաչիկ Վրդ. Դադեանի, *էջ* 7) *ունի աւելի սա բառերը.* «(Սի)մէոն ծերունուն եւ Աննային...»։

եւ զՄովսէս քահանայ՝ զհայրն իմ եւ Աստուած ձեզ ողորմեսցի յիւրում գա–լըստեանն ամէն» :

(Գարեգին Կաթողիկոս, ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ 235–6, Յակոբ Թոփճեան, ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ԽԱՉԻԿ ՎՐԴ. ԴԱԴԵԱՆԻ, էջ 7)

1 0 9 2

Վկայաբանութիւն սրբոյ Եւդոքսիոսի Մարինոսն կոչեցելոյ եւ Ռոմեյի եւ Զենոնի եւ Մակարա, որ եղեն յամս Մարկիանոսի եւ ամբարիշտ թագաւորի յամսեանն :

(ՍԿԶ.) Ի ժամանակին յայնմիկ թագաւորելով Տրայիանոսի՝ բարի–ատեացն սատանայ :

(ՎԵՐՋ.) Թարգմանեցաւ պատմութիւն սրբոց վկայիցս ի յունականէն ի մեր ի մայրաքաղաքս Մելիտինոյ, ի թուականիս Հայոց ՇԽԱ (=1092), ընդ որս Քրիստոս տացէ վարձս բարեաց աշխատողացս ի սմա :

(Զարբ.ի ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ ՀԱՅԿ. ԹԱՐԳՄ., էջ 722, ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ, Վենետիկ, 1948, էջ 3–5, Գարեգին Կաթ. ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ 258)

1 1 2 5

ՎԱՐՔ ՀԱՐԱՆՑ. Ձեռագիր Էջմիածնի, թիւ 2680, էջ 119բ, փոքր յի–շատակարան

«Ես Շմուէլ նուաստ եւ յետին քահանայ, ի բազում գըթոյ գրեցի զվա–րըս երանելոյն Պարսամայի, եւ զբազում նշանաց զանց արարաք, վասն զի յայտնի են վարք երանելոյն եւ նշանք ընդ ամենայն տեղիս: Այլ այս անչափ գրեցաւ, զի հաւատաչիք եւ աւրհնիցէք (Տ!) զԱստուած, որ այնչափ փա–ռաւոր առնէ զսուրբս իւր :

Թարգմանեցաւ պատմութիւն երանելոյս ի թվականին Հայոց ի նորում շրջանի յարմի քառասներորդի առաջներորդի, հրամանաւ տեառն Գրիգոր Հայոց կաթողիկոսի, ի մայրաքաղաք Մելիտինի, ընդ հովանեաւ սրբոյն Գը–րիգորի, ձեռամբ Գրիգորի մեղապարտ կրաւնաւորի, ի բարեխաւսութիւն ինձ, եւ ի փառս ամենասուրբ երրորդութեանն յաւիտենից յաւիտեանս, ամէն» :

(ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՁԵՌԱԳՐԱՑ, Գարեգին Կաթ., էջ 333–334, տես նաեւ 387–8)

1166–էն առաջ

Ներսէս Շնորհալիի մէկ գրութիւնը :

«Այս պատմութիւն վարուց երանեալ ձգնաւորին Քրիստոսի Բարսա–մայի նախ զոլով թարգմանեալ ի հոյակապ եւ ի հռչակաւոր մայրաքաղաքն

Հայոց Մելետենոյ՝ հրամանաւ եւ ծախիւք մեծին Գրիգորիսի կաթողիկոսի եւ վկայասիրի ի ձեռն Գրիգորի ուրումն քահանայի…»

«Եւ քան զի դեռ եւս ըստ Ասորոց շաղփաղփ և ծամածուռ անյարմար եւ աշխարհօրէն բանիցն գոյր եւ ոչ ըստ մերումս ազին սիղոբայից պայծառ եւ յոգնապատոյն բանից, յաղագս որոյ հրամանն հասեալ առ իմս նուաստութեան, որ ոչ ըստ արժանւոյն կոչեցեալ Ներսէս ի գերահռչակ եւ ի վսեմական տեառնէ իմմէ եւ եղբաւրէ Գրիգորիսի, գոլով նախնոյն մերոյ Լուսաւորչի արեանառու աթոռակալի անուանակից, որպէս զի ձեռնարկեալ ի սմա … ըստ մերում լեզուի յարմարութեան, ըստ գրեցելումն լինել զպակասութիւն հարց որդւոց: Եւ արդ իմ սսեալ եւ առաւելեալ ի սմա այժմ ի նոցուն անտի, բայց միայն զաւրութիւն բանին եւ պատմողականին, եւ այս ոչ ապիկար իմոյ զաւրութեան այլ ըստ հոգւոյն Աստուծոյ տուչութեան, մանաւանդ թէ ի սիրոյ աստի առժընդակութեանց: Վասն որոյ պաղատիմք հանուրց եկեղեցւոյ մանկանց, որք միանգամ յաւրինակ առեալ վերստին գրէք զայս պատմութիւն երանելոյն, որպէս զի փոքրաքանս զյիշատակարանս գրեցէք խիրաքանչիւր: Ընդ նմին եւ թողութիւն մեղաց հայցեցէք ի Քրիստոսէ առաջնոյ աշխատողաց եւ վերջնոյս եւ ծնողաց մերոյ եւ եղբարց ամենայն հաւատացելոց ի Քրիստոս Յիսուս ի տէր մեր, որում փառք յաւիտեանս, ամէն:»

(Գարեգին կաթ., ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ 387-8)

1204

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ԻԳՆԱՏԻՈՍԻ

Ձեռագիր Երուսաղէմի, Թ. 334
Գրիչ՝ Գրիգոր Դպիր
Ստացող՝ Զաւրավար «արհեստիւ ոսկերիչ» «ի Մելիտինոյ Հայոց»
Տեղ՝ Հռոմկլա
Ժամանակ՝ 1204

Ձեռագիրը ունի պատմական յոյժ շահեկան յիշատակարան: Հոն նկարագրուած է Կ. Պոլսոյ գրաւումը խաչակիրներէ եւ լատին կայսրութեան մը հաստատութիւնը:

*Սակայն Մալաթիոյ հետ ոչ մէկ կապ ունին պատմուած դէպքերը (տես Գարեգին կաթող., ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, էջ 695–700): Մալաթիոյ հետ այս ձեռագրին կապակցութիւնը այն է որ անոր ստացողը Մալաթիացի մըն է:*

*Այս մասին կան սա տողերը.*

«Յայսմ ամի այր ոմն ի Մելիտինոյ Հայոց՝ Զաւրավար անուն, ար-

հեստիւ ոսկեգործ, յոյժ ազնուական ի ճարտարաց եւ յընտրելոց, այլ իմաստուն եւ հանճարեղ բնութեամբ, բարեբարոյ եւ հեզ եւ ամենայն առաքինութեամբ զարդարեալ, գիտելով եւ դպրութիւն ընթերցողութեան, սորա հանդիպեալ յաստուածապահ դղեակս Հռոմկլա՝ առնելով զգործ իւրոյ արուեստին եւ տեսեալ զքաղցրաքան Մեկնութիւնս սրբոյ Աւետարանին Ղուկասու առաքելոյ եւ աւետարանչի, զոր արարեալ է սրբոյ եպիսկոպոսին Իգնատիոսի... եւ ճաշակեալ ի սմանէ վերծանութեամբ, վասն որոյ եւ քաղցրեալ ի քիմըս սորա բան սրբոյ վարդապետութեանս քան զխորիսխ մեղու՝ ըստ Դաւթա եւ խնդրեալ ի մերմէ նուաստութենէս մակագրել զսա իւր եւ ըստ փափագման ըղձից սրտի իւրոյ՝ ստացեալ զսա իբրեւ զգանձ պատուական, ի վայելումն անձին իւրոյ յաստիս եւ յիշատակ հոգոյ իւրոյ յապառնիսն: Իսկ ես տրուպս եւ կրսերս համանմանեաց իմոց՝ Գրիգորիս դպիր յանձին կալեալ զքարիոք խնդիրս բարեխորհուրդ առնս, լցի զքաղձանս սրտի սորա եւ յանգ ելեալ աւարտեցի զսա յամսեանս նոյեմբերի ի ԺԳ, յանառիկ եւ յանմատոյց դղեակս Հռոմկլա՝ յաթոռս հայրապետական, ընդ հովանեաւ աստուածաբընակ սրբոյ տաճարիս, որ յանուն սուրբ Լուսաւորչին մերոյ Գրիգորի, աւգընականութեամբ աստուածընկալ սուրբ նշանացս եւ առաքելական նշխարացս: Արդ աղաչեմ...»

*Ձեռագիրը հոս ընդհատուած է: Գարեգին կաթողիկոս կ'ըսէ թէ «հաւանօրէն կազմի ժամանակ ընկել է մնացած մասը»:*

*Եթէ յիշատակարանը ամբողջ ունենայինք, թերեւս Մելիտինեցի ոսկերիչ Զօրավարի մասին ուրիշ տեղեկութիւններ ալ ունենայինք: Հաւանօրէն Զօրավար ձեռագիրը Մելիտինէ իր ծննդավայրը փոխադրած ըլլայ:*

1215

*Քեսուն քաղաքը գրուած է* ՃԱՌԸՆՏԻՐ *մը* 1215-*ին, ինչպէս նաեւ Եփրեմ Խուրիի ճառերը թարգմանուած Գէորգ անուն մէկէն ըստ մասին բնագրին հետ գրուած...*

(ԿԱՐԻՆԵԱՆ ՑՈՒՑԱԿ, *Թ.* 899, *էջ* 76):

1226

ԱՒԵՏԱՐԱՆ ՅՈՒՆԱՐԷՆ
*Սեպհականութիւն՝ Նիկողայոս Թէոդոր Դումբայի*
*Գրիչ՝* ՎԱՍԻԼ ԴՊՐԱՊԵՏ ՄԵԼԻՏԻՆԵՑԻ, *որդի* ՈՎՐԵՍՏԷՍ ՔԱՀԱՆԱՅԻ
*Տեղ՝ Կեսարիա*
*Ժամանակ՝* 1226

(*Տես* ՀԱ, 1908, *էջ* 220, ՊԱՏ. ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ, *էջ* 1840 *եւ* 1063, *Գարեգին Կաթ.*, ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ ՁԵՌԱԳՐԱՑ, *էջ* 845–848)

## 1268

Աւետարանը գրուած Ռոսլինի ձեռամբ Կոստանդին կաթողիկոսի ժամանակ, Հեթում Բ.ի նուիրուելու համար, գրուած էր 1268ին։ Մալաթիոյ հայ գրչագիրներուն գոհարն էր։ Հիմա կը գտնուի Երուսաղէմի վանքը։

Այս ձեռագիրը առաջին անգամ ծանօթացուցած է Սրուանձտեանց (ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, Ա., էջ 324–7), իսկ անկէ օգտուած են Մեսրոպ եպիսկոպոս (ԱԶԳԱԳՐԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ, ԻԴ., էջ 74), «Հնասէր» կեղծ անունով գայն ներկայացուցած է նաեւ Սահակ կաթողիկոս Խապայեան, որքան ներած են Համխեան բռնակալութեան գրաքննութիւնը (տես ԲԻՒԶԱՆԴԻՈՆ, Թիւ 3439, 19–30 Յունուար, 1908)։

Փիրղալէմեան ալ նոյն Աւետարանին երկրորդական յիշատակարաններէն մէկ մասը առած է Սրուանձտեանցէն։

Իսկ Գարեգին կաթողիկոս Յովսէփեան (Նիւթեր եւ Ուսումնասիրութիւններ Հայ արուեստի եւ մշակոյթի պատմութեան, Բ., էջ 40–41), զայն քննած է արուեստի տեսակէտով։

Այս գիրքին առաջին կազմողը եղած է Առաքել Զաղանդենց «ի Թվ. ՉԺԷ (=1268), յայտնելով իր եղբայրներուն Կարապետ քհնյ.ի և Պօղոս Սարկաւագի եւ ուսուցիչ Սարգիս քահանայի անունները։

Երկրորդն է Մալաթիոյ Սիմէոն արքեպիսկոպոսը, աշակերտ Արիստակէս րաբունապետի «ի դուռն սրբոյն Գրիգորի, Ի ՋԳ. (=1454) ի յունիս ամսեան», «որ այրուել է եւ նոյն տարի նոյեմբեր 11ին նորոգել է Մահտեսի Պեհնամի որդի Մահտեսի Կիրակոսը։»

Նորոգութիւնը կատարուած է նաեւ Մելիտինոյ վերադիտող Աբրահամ եպիսկոպոսի ձեռքով ՌՃՂԳ (1744) Մայիսի 17-ին։

Գարեգին կաթողիկոս Յովսէփեան ձեռագրին պատմութեան համար այս տեղեկութիւնները տալէ վերջ Յովհաննու Աւետարանին վերջը դրուած գլխաւոր յիշատակարանը (տես ՆԻՒԹԵՐ ԵՒ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ, Բ., էջ 40–41) եւ ձեռագիրին զանազան էջերուն վրայ գտնուող յիշատակարանները կու տայ, զորս չենք մէջբերեր, վասնզի Մալաթիոյ հետ առնչութիւն չունին [1]։

Մալաթիոյ պատմութեան համար չահագրգռական են երկրորդ կազմողին՝ Մալաթիոյ Սիմէոն Արքեպիսկոպոսի եւ երրորդ նորոգողի՝ Մահտեսի Պեհնամի որդի Մահտեսի Կիրակոսի, չորրորդ նորոգողին Մելիտինոյ վերադիտող Աբրահամ եպիսկոպոսի եւ հինգերորդ նորոգող՝ Կարապետ Աբեղայի վերաբերեալ յիշատակարանները, 1454, 1601 եւ 1744 Թուականներով (տես յիշատակարանները վարը՝ այս Թուականներուն տակ), իսկ ձեռագիրին այն յիշատակարանները անԹուական, որոնք ոեւէ նպաստ չեն բերեր Մալաթիոյ պատմութեան համար, զանց առած եմ։

---

(1) Գլխաւոր եւ երկրորդական յիշատակարաններ ունի նաեւ Սրուանձտեանց Թորոս Աղբարի մէջ (Ա., էջ 324 - 327)։

*Այս չքեղ ձեռագիրը, պատմական եւ գեղարուեստական մեծ արժէքով, մինչեւ 1880 Յունուար Թաշճեան Միքայէլի համաձայն կը պահուէր Մալաթիոյ մէջ, ուր տեսած է 1878ին Գարեգին Եպիսկոպոս Սրուանձտեանց եւ հայ բանասիրութեան ծանօթացուցած:*

*Այս ձեռագիրը յայտնի չէ թէ ինչպէս Ատանա կը տեսնուի Թուրքի մը ձեռքը եւ 45 մէճիտի կը գնուի հոն: Մալաթիացիք այս դրամը կու տան եւ ետ կ'առնեն խլամէ մը եւ կը բերեն իրենց քաղաքը (տես ԲԻՒԶԱՆԴԻՈՆ, Թ. 3439):*

1 2 6 9

*ԱՒԵՏԱՐԱՆ, որ գրուած է 1466ին, բայց յիշատակարանը կը թուի ըլլալ 1269 (ըստ Հ. Ն. Ակինեանի, տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 55, էջ 12), այսինքն 1269-ին գրուած ձեռագիրի մը վրայէն ընդօրինակուած է եւ անոր յիշատակարանն ալ առնուած է:*

*Գրիչը յիշատակարանին է Սարգիս, որ հաւանօրէն Մելիտինէի կողմերէն Կիլիկիա փախած եւ հոն գրած է:*

*Սարգիս կը պատմէ Թաթարներու պատճառով Մելիտինէի մէջ տիրող սովը:*

*Ահա յիշատակարանը.*

«Իսկ ի թուականիս եղեւ սով սաստիկ ի Մելիտինէ Հայոց մեծաց քաղաքի, որ մայրն զտղայն կ'ուտէր, որ զխոտն եւ զամենայն ժժմունք իբրեւ զհաց կ'ուտէին: Ճշմարտապէս պատմեցին թէ երեք ընկեր ի ճանապարհին միակ երթային, երկու ի մի խորհուրդ եղեն եւ զընկերն իւրեանց կերին...

Իսկ ես տրուպս եւ անարժանս Սարգիս ամենայն մեղօք լի զերծեալ ի դառն տանջանաց, եկի յերկիրս Կիլիկեցւոց ի յաստուածասէր եւ բարեպաշտ թագաւորին Հեթմոյ... եւ գրեցի... զսուրբ Աւետարանս...»

(Երուանդ Լալայեան, ՋԱՒԱԽՔ, էջ 311–2)

1 2 9 5

*Ցուցակ Ձեռագրաց Սեբաստիոյ, Թ. 17 ձեռագիր Ս. Նշանի վանուց (Թորգոմ Արքեպս. Գուշակեան, ՀԱ., 1924, էջ 515, Հ. Աճառեան, ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ, Ա., էջ 583):*

*ԱՒԵՏԱՐԱՆ.*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ բուն գրչէն* (*էջ* 176) «զանսուրբ գծողս զկարապետ յիշեսջիք»

*էջ* 467, «Տէր Աստուած Իսրայէլի, ողորմեա՛ մեղացեալ քո ծառայի Յովհաննէս քահանայի, կազմողի Սուրբ Աւետարանիս, ամէն. թվ. ՉԽԴ (= 1295):

*էջ* 608, *ՏԱՐԲԵՐ ԳՐՉԷ* «փառք... զվերջին կազմողս զԳրիգոր երէցս յիշեցէք յաղաւթս ճեր ի թվին Հայոց ՉԽԴ ի յերկիրն ի Մելիտինի, ի գիւղն ի Յամոսի, ի դուռն սուրբ Փրկչին և սուրբ Աստուածածնին և սուրբ Սարգսին: Աւետարանս յիշատակ է Պօղոս երիցու եւ Ովհաննէս երիցու, խաչատուրին, Մատթէոսին, որ ետուն կազմել իւրեանց հոգոյն. ամէն»:

## 1297

*ԱՒԵՏԱՐԱՆ*,

*Գրուած Մամուեստիա (Կիլիկիա)*։

1884-*ին Աւետարանը կը գտնուէր Խարբերդի Ս. Ստեփանոս եկեղեցին*։

**ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ**.–

«Տէր Յիսուս ողորմեսցի··· Տէր Յովանէս եպիսկոպոսի վերադիտողի Մելիտինու եւ Խարբերդու մայրաքաղաքի»։

(Գարեգին վրդ. Սրուանձտեանց, ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, բ. հտ. էջ 347)

## 1314

*Երեւանի մատենադարան*, *Թ*. 2787

**ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ**

**Յամին ՉԿԳ** (=1314)։

«Ես Կոստանդին եպիսկոպոս ՊԵՀԵՍՆՑԻ··· առաջնորդ աստուածաբնակ ուխտի այս ՍԿԵՒՌԱՅԻ, յաղագս բարի իմոյ յիշատակի, ի տեսանելն իմ այսմ ամի զգեղն սուրբ ՍԻՄԱՒՈՆԱՅ եկեղեցին աղքատ ի գրոց եւ այլ սպասուց սրբարանի եւ մանաւանդ ի հարկաւորէն, որ ամենայն աւուր է յոյժ պիտանի։ Եւ ետու գրել զանուանեալս Մաշտոց, ········· եւ տամ զսա մնացական ի գեղն սուրբ ՍԻՄԱՒՈՆՈՒ եկեղեցին, որ սուրբ Սիմաւոն անուն կոչի, յիշատակ ինձ եւ ·············· նաեւ յոյժ սիրելի ձեռնասնունդ հոգեւոր որդեկին իմոյ, նաեւ երախտաւոր սպասաւորին իմոյ՝ ՅԱԿՈԲԱՅ քահ(անայի), որ մահու չափ նահատակեցաւ ընդ իս, ի բանտ եւ ի կապանս, ի ծովու եւ ի ցամաքի, նաեւ չորս ամաւք յաւտարութեան պանդխտանայ յաշխարհին ՖՌԱՆԳԱՑ եւ երկու ամաւք յառաջ քան զգրել սուրբ գրոցս, փոխեցաւ ի Քրիստոս վասն սիրայորդոր փութոյ պրնիս (պատճառիս) եւ յաւժար կամաւք աշխատելոց ի վերակացութիւն շինութեան պրնիս եւ եթող ինձ մեծ եւ անմխիթար սուգ։ ·············· նաեւ միւս սիրելի եւ ձեռասնունդ հոգեւոր որդեկի իմոյ, արեամբ չափ նահատակելոյ ընդ իս ի ՀՌՈՄԿԼԱՅՆ եւ ի ՊԵՀԵՍՆԻ՝ ՍՏԵՓԱՆՈՍ քահ(անայ), նաեւ ի սուրբ ուխտիս իւրով արեամբս նահատակեցաւ, յանաւրինաց, ի սպասաւորութիւն սուրբ եկեղեցւոյս, եկեղեցւոյ սուրբ Սիմաւոն։ Ոչ հայրապետ կամ հաւգացող գոլով, ապա սպասաւոր իմոյ նըւաստութեանս, զիմ բերին լալով·············

Արդ, աղաչեմ զամենեսեան ·········· որք ժառանգք լինէք յայսմ եկեղեցիս՝ խնամ տանիլ այսմ գրի ············ ընդ նմին՝ ես տառապեալ գրողս Ներսէս ···· աղաչեմ յիշել ··· զիմ անարժանութիւնս, եւ զծնաւղս իմ ···· եւ զպատուական քահ(անայ) զհաւրեղբայրն իմ՝ զՍՏԵՓ(անոս) գրել՝ զսնուցիչն իմ եւ լուսուցիչն, որ յայսմ ամի փոխեցաւ ի Քրիստոս·····

(*Լ. Ս. ԽԱՉԻԿԵԱՆ, ԺԴ. ԴԱՐԻ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ*, *էջ* 106–107)

# 1314

## ՀԱՏՈՒԱԾՔ ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԻ

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

«Ես Կոստանդին եպիսկոպոս ՊԵՀԵՄՆԱՑԻ ······· առաջնորդ սուրբ ուխտիս ՍԿԵՒՌԱՑի · · · · · · · · · · · · · ·

ի ՉԿԳ (=1314) ետու գրել զսա ········: Արդ, աղաչեմ ······ յի-շեցէք ···· զմեզ· զիս՝ ԿՈՍՏԱՆԴԻՆ եպիսկոպոս ······· այլ եւ զծնողսն որդեակն զՅԱԿՈԲ քահանայ, որ մահու չափ նախատակեցաւ ընդ իս ի բանտ և ի կապանս, ի ծովու եւ ի ցամաքի, եւ Դ (4) ամաւք յաւտարութիւն պան-դըխտակից [եղեալ] աշխարհին ՖՌԱՆԿԱՑ եւ Բ (2) ամաւք յառաջ քան զգրել սուրբ գրոցս (1312) փոխեցաւ ···· վասն սիրայորդոր փութոյ տաճարիս եւ յաւժար կամաւք աշխատելոյ ի վերակացութիւն շինութեան տաճարիս, յի-շատակ · · · · · · · · · · · · · · ·

Նաեւ զմիւս սիրելի եւ հոգեւոր որդեկին իմոյ, արեամբ չափ ընդ իս աշխատելոյն ի ՀՌՈՄԿԼԱՅՆ, ի ՊԵՀԵՄՆԻ՝ ՍՏԵՓԱՆՈՍի քահանայի, որ ի սպասաւորութիւն սուրբ ուխտիս սպանաւ յանաւրինացն, ի կեցոյցն ի սուրբ Սիմաւոն · · · · · · · · · · · · · ·

Աղաչեմ զի եւ խնամ տարջիք սմա · · · · · · · · · · · · · ·

Աղաչեմ մեղաւորս ՅՈՎՀԱՆՆԷՍ՝ շարագրաւղ տառիս, թողութիւն մե-ղաց յԱստուծոյ հայցել եւ սխալանացս ներել, զի եւ ձեզ ներեսցէ տէր :»

(*Լալայեանց*, *ՑՈՒՑԱԿ ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՁԵՌԱԳՐԱՑ*, . էջ 59—62 *կամ* Լ. Ս. Խաչիկեան, *ԺԴ. ԴԱՐԻ ՀԱՅԵՐԷՆ ՁԵ-ՌԱԳՐԵՐԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՆԵՐ*, էջ 107—108)

# 1315

*ԱՒԵՏԱՐԱՆ Յ. Քիւրտեանի ձեռագրաց հաւաքածոյէն:*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ՝ Թուղթ* 176*ա, մասամբ վնասուած եւ անընթեռնլի: Մանրանկարչական տեսակէտով չահեկան ձեռգիր ըստ Յ. Քիւրտեանի:*

«Գրեցաւ սբ. աւետարանս ի թուին Հայոց ՉԿԴ (1315) ի մայրաքաղա-քիս Մելտենի ի հայրապետութեան Կոստանդեա, ի թագաւորութեան Աւշնի, ընդ հովանեաւ սբ. Աստուածածնի ձեռամբ մե(*պատռած*) եւ աստուածաշէն քաղաքս Մելտենի (…*փճացած*…) սուսերի մաշեցին մնացեալքս զերի վա-րեցին… ականջաք մերոց լսեցաք, ո աչաց մերոց որ տեսաք զաւերումն քա-ղաքիս:

Այդ աղաչեմք զամենեսեան, որք ընթեռնուք սբ. աւետարանս, մեղաց թողութիւն խնդրեցէք Ստեփանոս գծողիս փոխեցեալն ի Քրիստոս եւ աստ-ուածասէր քահանային, եւ տուք ընդ նմին եւ զվ.ահրամ սուտանուն քահանայ որ զպակասութիւն եկից եւ կազմեց եւ յիշողացդ եւ յիշեցելոց ողորմի մար-դասէր Աստուած, որ է աւրհնեալ» (*պատռած*):

1316

*ՃԱՇՈՑ, Երուսաղէմի Թ. 271 ձեռագիր*
*Գրիչ՝ Ստեփանոս կրօնաւոր՝ «Երկայն» կոչեցեալ*
*Ստացող՝ Տ. Դաւիթ Արքեպիսկոպոս Երուսաղէմի*
*Ժամանակ՝ ՉԿԵ. (= 1316)*
*Տեղի՝ Երուսաղէմ Ս. Հրեշտակապետ վանք*
*Կազմող՝ Կարապետ Դպիր:*

*Ընդարձակ յիշատակարանին մէջ կան սա տողերը.*

«Երեւցաւ ի թագաւորութեան Հայոց Աւշնի եւ ի հայրապետութեան Տէր Կոստանդեա... ի դառն եւ յանքարի ժամանակս, զի չէ կար ումեք ընդ գրով արկանել զազգի ազգի վիշտս եւ զնեղութիւն որ հասեալ է ընդհանուր ի վերայ ամենայն քրիստոնէից յանաւրէն եւ յանաստուած պիղծ եւ գարշելի ազգէն իսմայելի, որ զամենեսեան մաշեցին ի սուր սուսերի եւ զմնացեալն ի գերութիւն վարեցին, որ եւ ի սոյն ամին զմեծանուն մայրաքաղաքն *Մելիտինի Հայոց* առին յաւար եւ ի գերութիւն եւ զայլ բազում քաղաքս եւ զգաւառս եւ զանմատչելի ամրոցս հիմն ի վեր տապալեցին...»:

(Արտաւազդ Արքեպս., ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ, Ա., էջ 302, Նորայր Եպիսկ. Պողարեան, ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ, ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ, Գ. էջ., 81 եւ ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 55, էջ 13)

1316

*Ձեռագիր մը կը հաստատէ այս թուականին գրուած Երուսաղէմի Թ. 271 ՃԱՇՈՑին յիշատակարանի բովանդակութիւնը:*

*Այս ձեռագիրը եթէ նոյնը չէ* ճաշոցին *հետ ըստ Աստուածատուր Եպիսկոպոս Տէր Յովհաննէսեանի (տես ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ա. հա., էջ 203), ունի սա տողերը.* «..... Զի ազգն իսմայէլեան .... առին եւ զմայրաքաղաքն Հայոց զՄելիտինէ եւ աւարի ետուն, զապրեալսն, ի սրոյ վարեցին ի գերութիւն»:

1361

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

«փառք ... յամի ութ հարիւր ժ. (10) երրորդի թվականութեանս Հայոց եղև գրաւ գրչութեան սուրբ և տիեզերալոյս Աւետարանի Աւգոստոս ամսոյ է (7) աւարտեալ ի Մելիտինէ քաղաք Հայոց ի սուրբ մենաստանիս, որ կոչի Լուսաւորիչ, իմայէ [այսպէս] ընծայ եղեալ, սուրբ Գրիգոր վկայ եղեալ, յիշատակ նմա եղեալ ի դրանս նորա միշտ ընթերցեալ քահանայից, սարկաւագաց պատճառ եղեալ, որ ի սմայ են աշխատեալք .... ի հայրապետութեան Հայոց տեառն Տէր Կոստանդինին և այլ առաջնորդութեան սուրբ ուխտի անյաղթ փիլիսոփայի Տէր Սիմէոնի եւ Տէր Մատթէոսի և զայլ միեղէն եղբարքս, որ աստ կան հաւաքեալ ի սէր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի .....

անսասանելի պահեսցէ սուրբ ուխտս բնակչաւքս իւրովքս...»

(*ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼ շաբաթաթերթ, Իզմիր*, 1907, *թ.* 21, *էջ* 520, *նաեւ ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *թ.* 55, *էջ* 13, *Հ. Ակինեանի հաւաքածոյէն առնուած*, *ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼԻ մէջ կայ նաեւ ձեռագրին նկարագրութիւնը*, *էջ* 519—520)։

1361

*Նախ Մալաթիոյ կամ Մելիտինէի մէջ։*

*Այս թուականին գրուած Ձեռագիրի մը յիշատակարանը կը յիշէ Մալաթիոյ Ս. Գրիգոր Լուսաւորիչ վանքը*, (*Հ. Ն. վրդ. Ակինեանի ՀԱՒ. ՑԻՇ.*, *ամ* 1361, *ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *թ.* 55, *էջ* 13)։

1372

*Լոնտոնի Բրիտանական Թանգարանին մէջ գտնուող հայերէն ձեռագիրի մը* (*թ.* (42/19548) *յիշատակարանին մէջ կը կարդանք.*

«Ո՛վ աստուածարեալ արհի եպիսկոպոս տր. Յովանէս Մելիտինոյ, ընկալ զսակաւ գիրս եւ յիշեա զանարժան հողս զՆերսէս աբեղայս ի թվ. ՊԻԱ (=1372), Հոկտեմբեր ԺԹ. աւրն.

Ի թվին ՊԻԴ (=1375) էառ Յաշիխ Թամուրն զթագաւորական քաղաքն զՍիս եւ եղեւ սուգ մեծ։

Ի սոյն ամի եղեւ սով սաստիկ ընդ ամենայն աշխարհս եւ եղեւ զգրիւ մի ցր (*ցորեն*) Ճ. դր(ամ) դահեկանի։

(Կոնիբերի ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ)

ԺԵ. ԴԱՐ
(1430—1440)

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

«Ես Անանիա դպիրս որ ծաղկեցի... Աւետարանս ի դուռն ի սուրբ Լուսաւորիչն ի Մելիտինոյ վանքս, եւ առաջին ծաղիկս այս էր որ ուսայ ի վարդապետէն իմոյ՝ Տէր Սիմէովնի արքեպիսկոպոսին[1] այս ուխտիս (*անընթեռնլի*)։»

(Հ. Բ. վրդ. Սարգիսեան, ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՎԵՆԵՏԿՈՅ, թ. 170, էջ 714)

---

(*1*) *Երուսաղէմ պահուած ձեռագրի մը մէջ, որուն գրիչն է Յովհաննէս, որ Երուսաղէմի մէջ գրած է* «Մեկնութիւն կաթողիկեայ Թղթոց Սարգսի Շնորհալւոյ», *կը յիշուի* «*Կուսակրաւն աբեղայ զՍիմէոն Մելտինցի, որ ծաղկեաց...*։» (Միաբանք եւ այցելուք Երուսաղէմի, *էջ 351—352*)։ *Արդեօք կապ մը կա՞յ*։

1 4 3 3

*ՏԱՐԵԳԻՐՔ (ձեռագիրը հիմա Երուսաղէմ, Թ. 3153)*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

«Ի թվի ՊՁԲ (1433) ընդ հովանեաւ Մելիտինէի Սբ. Թէոդորոս Զինաւորի, որ այժմ կոչի Դերձկի վանք», *գրուած է Յովսէփ աբեղայէ եւ ծաղկուած է Սիմէոն եպիսկոպոսէ* «թվին ՊՁԴ (=1435) յառաջնորդութեան սուրբ Ուխտիս Տէր Ներսէս եպիսկոպոսի»:

*Ստացողն է Գրիգոր Աբեղայ, որ կը նուիրէ զայն ի յիշատակ իր եւ ծնողաց* «յանառիկ դղեակս ի գեաւղս ի Կուռասխս, ի դուռն Ս. Վասիլ եկեղեցւոյ»:

*Յետոյ* «Կուրընցի դերձակ Մարտիրոս որդւոյն Կարապետի հոգոյն» *կը նուիրէ զայն ի յիշատակ իր ծնողաց* «յերկիրն Անթափ, ի դուռն Ս. Աստուածածնին, ի յառաջնորդութիւն Դանիէլ վարդապետին եւ յաւագերէցութիւն Տէր Սարգիսին: Աստուած զայն քահանայ աւրհնէ, որ զայս գիրքս լաւ պահէ»: *Նուիրատուութեան թուականը ըստ Բաբգէն եպիսկոպոսի* 1607:

1 4 3 5

*Ակնայ Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ կայ շարական մը փոքրադիր* «ի վերջըն՝ փառք ամենասուրբ (*եւայլն*) յիշեսջիք Յովհաննէս քահանայ զծաղկաւղըն զՄԵԼԻՏԻՆՑԻՆ (*եւայլն*): Ամիր պէկ Սարկաւագն որ զաւրինակս շնորհեաց մեզ: Գրեցաւ եւ ծաղկեցաւ եւ կազմեցաւ (*եւայլն*) ի լաւ և ընտիր աւրինակէ, որ կոչի Խլկցի ձեռամբ Սամուէլի, ի յԵկեղեաց գաւառս ի մայրաքաղաքս ի յԵզնկայ, ի թվաքերութեանս Հայոց ՊՁԵ» (=1435):

(*Յետոյ տգեղ նօտր գրով մը*) «վերջին ստացող շարականիս Ստեփանոս կաթողիկոս Յառընջեցի...»

(Ճանիկեան, ՀՆՈՒԹԻՒՆՔ ԱԿՆԱՅ, էջ 78–79)

1 4 3 8

*ԳԱՆՁԱՐԱՆ (Չնքուշի Բարձրահայեաց Ս. Աստուածածին վանքը կը պահուէր 1915–էն առաջ)*:

«Գրեալ ի վանս Սուրբ Գրիգոր Մելիտինոյ Հայոց, ի թվ. Հայոց ՊՁԷ, յիշեցէք զիս զԴաւիթ աբեղայս (*Թերեւս գրիչ Գանձարանին*) եւ զհայրն իմ զիսահակ քահանայս... զԿոստանդին աւագերէցն եւ զԱստուածատուր զաւակըն իւր զԹորոս քահանայս եւ զՍտեփանոս հայրապետն, որ այժմ խնամատար եւ վերակացու են Սուրբ Ուխտիս»:

(*Փիրղալէմեան* ՆՕՏԱՐՔ, *էջ* 117, *Սրուանձտեանց*, ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, *բ. հտ.*, *էջ* 452–453)

## 1439

*Ս. Լուսաւորիչ վանքին տաճարի դրան ճակատի վրայ գրուած էր.*
«շինեցաւ դուռս Ս. Գրիգորի ձեռամբ Սիմէոնին եպիսկոպոսի, ի թուին Հայոց ՊՁԸ Մարտ 4 (=1439) յիշատակ ինձ եւ ծնող...»

(*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, *Բ*. 313, *ՆՕՏԱՐՔ*, *էջ* 178, *Տրդատ եպսկ. Պալեան*, *ԲԻՒԶԱՆԴԻՈՆ*)

## 1447

***ՃԱՇՈՑ***, *ձեռագիր պահուած Սեբաստիոյ Ս. Մինաս եկեղեցին*:

«Արդ գրեցաւ սա ի թուիս Հայոց ՊՂՋ (=1447), ի դառնաբեր ժամանակիս վասն ծովացեալ մեղաց մերոց, ձեռամբ Մկրտիչ սարկաւագին... ընդ հովանեաւ սուրբ Թէոդորոսի զինաւորին, զոր այժմ Դերձկի կոչի, եւ այլ բազմահաւաք նշխարաց... եւ Սիմէոն հայրապետի, որ ետ գրել զգիրքս ի վայելումն մաքուր անձին իւրոյ. յիշեցէք զվանիցս միաբանքն զՍիմէոն աբեղայն եւ զսարկաւագներն եւ զգործաւորն՝ զՍարգիս պապն:»

(*ՆՕՏԱՐՔ*, *էջ* 156–157)

## 1454

*Բարձրբերդցի Կոստանդին կաթողիկոսի 1268–ին գրել տուած Աւետարանին 1454 թուականով յիշատակարանին մէջ կը կարդանք.—*

«Զմեղաւք մեռեալ հոգին զտէր Սիմէոնին արքեպիսկոպոսին Մալաթիոյ վերադիտողին, եւ իմ որդի Ուսլու բէկին, վարժեալ ձեռամբ վարդապետին Արիստակէս բաբունապետին, վերջին կազմողս ի Մելիտինին, ի դուռն սըրբոյն Գրիգորին ի ՉԳ (=1254) [1] թուականին, ի Յունիս ամսեանն ԻԲ.ին: Ով որ կարդայ ի յատենին, նա մեզ ասէ զՔրիստոս որդին, եւ զՀայր մեր յերկինքն ի յետ նորին, նա թողցի իւր մեղքն եւ իւր ծնաւղին, եւ ժառանգէ զերկնիցն զքարին, և Աստուած ողորմի իմ վարդապետին Արիստակէս բաբունապետին, եւ ինձ անարժան եւ անպիտան ծառային, տէր Սիմէոնին արքեպիսկոպոսին եւ ծնողաց իմոց առաջին եւ վերջին, հոգեւորին եւ մարմնաւորին, եւ ամենայն արեան մերձաւորին, ամենին. ով որ ասէ լի սրտիւ զՏէր

---

(1) *Սրուանձտեանց թէեւ ընդօրինակած է ՉԳ (1254), սակայն պիտի ըլլայ ՋԳ, այսինքն 1454, անոր համար որ 1268-ին գրուած ձեռագրի մը մէջ իր գրութեան թուականէն առաջ կարելի չէր յիշատակարան գրել: Սահակ կաթողիկոս Խապայեան յիշատակարանին թուականը ճիշդ կարդացած ՋԳ է՝ (1454): Նոյնպէս Փիրղալէմեան հակառակ անոր որ կը գրէ թէ արտագրած է Թորոս Աղբարէն, թուական նշանակած է ՋԳ (տես ՆՕ ԱՐՔ, էջ 175):*

*Հետեւաբար Հ. Աճառեանի (Անձնանուններու բառարան, Դ. հա., էջ 500) դիտողութիւնը՝ թէ Գարեգին կաթողիկոս 1454-ի վերածած է սխալմամբ Սրուանձտեանցի 1254 թուականը, սխալ է:*

ողորմեա, նա Քրիստոս թողու զիւր անցանքն եւ զնախնեաց նոցին․ ամէն Ո-Ո․ ամէն»...

(*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, Ա․, *էջ* 327–8)



*Այս ձեռագիրը այրած է 1454 Յունիսին եւ նոյն տարին Նոյեմբեր 11ին նորոգած է Մահտեսի Պեհնամի որդի Մահտեսի Կիրակոս, որուն յիշատակարանը ընդօրինակած է Սրուանձտեանց եպիսկոպոս։*

*Ահա այդ յիշատակարանը այլ գրով․*

«Ո՛վ սուրբ հայրապետք, վարդապետք, քահանայք և կրօնաւորք եւ սարկաւագունք եւ ուսումնականք եւ կարդացողք սուրբ Աւետարանիս, որ է բերանն Քրիստոսի եւ ընթերցողք ի սուրբ Եկեղեցի, յիշեցէք ի Քրիստոս եւ ի սուրբ մաքուր յաղաւթս ձեր զՄահդասի Կիրակոսն տիաւք մանուկ եւ մըտաւք կատարեալ, որդի Մահդասի Պեհնամին, որ ետ վերստին կրկին նորոգել եւ զարդարել զսուրբ Աւետարանս, յիշատակ իւր եւ ծնողաց իւրոց Մահդասի պարոն Պեհնամին, եւ փաշայ Մելիքին, հանգուցելոյն ի Քրիստոս, եւ հաւրեղբաւրն Պարոն Յովանիսին եւ հարազատ որդւոյն Պարոն Դաւթին եւ քուերցն իւրոց Խուանդ խաթունին, Կիրայ խաթունին, Մանայ խաթունին, Սառայ խաթունին, եւ դեռաբուս զաւակին իւրոյ Մարիամին եւ կողակցին իւրոյն Հռիփսիմէին, եւ ամենայն արեան մերձաւորացն։ Եւ մեծ հաւրն իւրոյ Պարոն Կիրակոսին, եւ մեծ մաւրն իւրոյ Կիրայ խաթունին...»

Եւ սա երետ զանիրաւ մանոնան որ չէ մեր սեփական, եւ էր Աւետարանս այրած եւ կրկին երետ նորոգել զսուրբ Աւետարանս, նա Քրիստոս որդին Աստուծոյ նորոգեսցէ զհոգիս Մղդեցի Կիրակոսի, եւ զննջեցելոցն սորայ զկենդանեացն եւ հանգուցելոցն յիշատակացն եւ անյիշատակացն։ Յիշեցէք ի Քրիստոս եւ զմեծ մայրն իմ զՂութլու Մելիքն, եւ Աստուած զձեզ յիշէ ամէն։ Եւ մի ոք իշխեսցէ զսուրբ Աւետարանս ծախել կամ առժտել կամ ասել թէ իմ է, ես Մղտեսի Կիրակոս որդի Մղտեսի Պեհնամին ՎԱԳՓ արի իմ ամէն ազգիս, ով որ զայս պատուէրս չկատարէ, նա զանէծքն ի յԱստուծոյ առնէ, եւ ի սուրբ Աւետարանէն, հնազանդեալքն աւրհնին յԱստուծոյ եւ ի սուրբ Աւետարանէս Ամէն եւ Ամէն։

Իյար որ տեղ կենայ, նա աւագ հինգշաբթիին աւուրն զպատարագն մեր ննջեցելոցն մատուցանեն, եւ խնամ տանաւզքն զաւրհնութիւն ի սուրբ Աւետարանէս առնուն․ ի թվին Հայոց ՋԳ․(=1454) Նոյեմբեր ԺԱ···ի փառս Աստուզոյ, ամէն։

Ով որ չունի իշխանութիւն կամ առնուլ կամ ծախել կամ գրաւել կամ սուրբ Ստեփանոսի դրանէն հանէ․ ով որ յանդգնի՝ բանիւ եղիցի»։

(*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, *էջ* 330–331)

1 4 6 1

*ԱՒԵՏԱՐԱՆ* (*Խոյլու գեղի եկեղեցին*)

*«Գրեալ ի Մելիտինոյ վանք, ի սուրբ Լուսաւորիչ ··· Թվ· ՋԺ»* (= 1461):

(*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, *Բ·*, *էջ* 340)

1 5 0 0

*ԱՒԵՏԱՐԱՆ*, *որ այս Թուականին կազմուած է ԳՐԻԳՈՐ ԵՐԷՑ-էն*, *«··· Ի ՅԵՐԿԻՐՆ Ի ՄԵԼԻՏԻՆԻ Ի ԳԻՒՂՆ Ի ՅԱՄՈՍԻ, Ի ԴՈՒՌՆ ՍՈՒՐԲ ՓՐԿՉԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ՍԱՐԳՍԻՆ···»* (*Թորգոմ Արքեպս· Գուշակեան*, *ՅՈՒՑԱԿ ՍԵԲԱՍՏԻՈՅ ՁԵՌԱԳՐԱՑ*):

1 5 4 4

*ԳԱՍԱՊԱ Ս· ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ ԵԿԵՂԵՑԻԻՆ ՊԱՀԱՐԱՆԻՆ ՄԷՋ ՊԱՀՈՒԱԾ ՁԵՌԱԳԻՐ*

*ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ* (*ԾԱՂԻԿ*, 1891, *Մայիս* 11):

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*·«Փառք ամենասուրբ երրորդութեան հայր եւ որդւոյն եւ հոգւոյն սրբոյ, յամենայն սրբոց եւ յամենայն արարածոց, յիմանալեաց եւ ի զգալեաց, ի հրեշտակաց եւ ի մարդկանէ յամենայն գոյից էականէ: Աւարտեցաւ սուրբ մատեանս տէրունական տաւնից, Առաքելոց եւ Մարգարէից ··· հայրապետաց եւ վարդապետաց, քահանայից եւ սարկաւագաց, կուսանաց եւ ճգնաւորաց, մարտիրոսաց եւ յաղթող նահատակաց, թագաւորաց եւ իշխանաց, զաւրավարաց եւ զինուորեալ մանկացն նոցին երիտասարդաց, մանաւանդ արանց եւ կանանց, ծերոց եւ տղայոց եւ ամենայնի յամենացուն չափու հասակի: Որք վասն անուանն Քրիստոսի զարիւնս իւրեանց յերկրի հեղին, եւ զյաղթութեան պսակն առին որ յամենայն տուրք ըստ տաւնին մեզ դառնողացդ բարեխաւսին: Գրեցաւ սա ի թվին Հայոց ՋՂԳ (=1544) նոյեմբեր ամսոյ, ի Զ· (6) ամին, ի հայրապետութիւն տեառն Տէր Սիմէոնի ամենայն Հայոց, եւ ի թագաւորութեան Սուլթան Սիւլէյմանի, ի յերկիրս ի Մելտինի ի գիւղն յԱմաւսի, ի դուռն Սուրբ Սարգսի եւ Սբ· Աստուածածին եւ Սբ· Փրկչին եւ յեպիսկոպոսութեան Տր· Ըոստագիսին եւ Տր· Մկրչին ձեռամբ յոգնամեղ եւ տարտամ ոգոյ Գրիգոր գրչի: Որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր, զիս զանարժան զանպիտան ծառայս ծառայիցդ Աստուծոյ, զԳրիգոր գծաւղ սորա զծաղկաւղս եւ զկազմաւղս աղաչեմ յիշել ի Տէր և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, ամէն···:

Զօտս ունի սա բոլոր մասունս տէրունական տունից, զառաքելոց եւ զմարգարէից եւ ամենայն սրբոց, որք Ադամայ մինչեւ ի մեզ հասին եւ յամենայն աւուր տաւնին: Զոր սուրբ եւ ընտրեալն արին եւ քաջ հսկողն եւ առա-

քինի, ողորմածն եւ աղքատասէր հիւրընկալն եւ առատապարգեւ· բարի բընութիւն եւ մարդասէրն քաջանման եւ քարտուղար ճարտարապետն բանահիւսն եւ տիեզերալուր քարոզն, ջահն անշիջանելի եղեալ ի մատեանս, ստադեանի մեծ վարդապետն Գրիգոր Ծերենց հոգելի ի յանձին իւրում, հոգս դընելով եւ զաստուածամատեանս տառս յաւրինելով, քաղցր եւ համեղ ճառս դնելով եւ զուարթ գիրքս փարթամացուցանելով, ու ի դիւրս հասկանալ ընթերցողացն եւ լսողացն որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի· ամէն:

Ես ստացող այսմ տառիս, զՊօղոսն եւ զՄահտեսի Փոլատն···եւ Ամաւսու ժողովրդեան մեծի եւ փոքու առհասարակ ամէն եւ Ո· ամէն»:

*Այս գիրքին համար հող տանողները (50էն աւելի) յիշուած են եւ ուրիշ յիշատակարաններ կային, որ չեն առնուած:*

1 5 4 8

*ԱՒԵՏԱՐԱՆ Սեբաստիա Ս· Նշան·*
(*ՑՈՒՑԱԿ ՍԵԲԱՍՏԻՈՅ*, *Թ*· 38, *Թորգոմ Արք*·, *ՀԱ*, 1925, *էջ* 377):

*Կ Ր Կ Ն Ա Գ Ի Ր*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ*, *էջ* 553, *տարբեր գրիչէ*·—

«Փառք··· Արդ ի վերջին աւուրս յետնեալ ժամանակիս· ի թուականութեանս Հայոց ՋՂԷ, ի Մայիս ամիս ԻԶ, աւրն շաբաթ, ի բռնակալութեան Սուլթան Սուլէյմանին, ի յերկիրն Մելտինի ի գիւղն ի յԱմոսի, ի դուռն Սուրբ Աստուածածնին եւ Սուրբ Սարգսին ձեռամբ Մահտեսի Գրիգոր Երիցու: Ով ոք աւգտիք կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք ի պատարագս եւ ի յաղաւթս ձեր, զանարժան Գրիգոր երէցս, եւ զհայրս իմ զՄահտեսի Փոլատըն, եւ զմայրն իմ զխանտուտն եւ զառաջին մազաղաթեայ շինողն եւ զաշխատողն: Ընդ նմին յիշել աղաչեմք զաշխատողքն մեր որք խաւսակիցք եղեն եւ միջնորդք ի գին սորա, զոր տէրն ողորմի մեզ եւ նորա որք զձեռն ամբառնան եւ ասեն թէ՝ Տէր կատարեաց զխնդիր սորա Գրիգոր քահանայի եւ երիցուկին զԵրանուհին, եւ որդիքն զԹորոս եւ զՄարտիրոս, զԳալուստն եւ զեղբայրն Մոշամ, վայելել շնորհեաց, խաղաղական կենաւք պահեա, եւ զձեզ յիշողացդ եւ մեզ յիշելոցս առ հասարակ ողորմեսցի Քրիստոս յոյսն ամենեցուն, ամէն:

Յիշատակ է Աւետարանս Ֆարշողադին եւ հաւրն Ոսկէանկիծ եւ մաւրն Թուրվանախ եւ հայր քրոջն Պապաճանին եւ եղբարցն խաչատուրին եւ Ախիճանին եւ Յովասափին, եւ ամենայն արեան մերձաւորացն, ամէն...»:

1 5 6 0

*ԱՒԵՏԱՐԱՆ*

«Ի բռնակալութիւն Սուլթան Սուլէյմանին, ի գաւառն ի Մելտինի ի գիւղն յԱմոսի ի դուռն Ս· Փրկչին եւ Ս· Աստուածածնին եւ Ս· Սարգիսին գրեցաւ Աւետարանս···»:

(*ՏԱՇԵԱՆ ՑՈՒՑԱԿ*, *էջ* 313–314)

1563

*ԱՒԵՏԱՐԱՆ*
*Գրիչ՝ Ստեփան Երէց*
*Տեղ՝ Մելիտինի*
*ԹՈՒԱԿԱՆ՝ ՌԺԲ.* (=1563)
(*Երուսաղէմի Թանգարան*, *Թ.* 1939 *ձեռագիր*)

1566

*ԱՒԵՏԱՐԱՆ Սեբաստիոյ Ս. Նշան վանքի*, *Թ.* 14 *ձեռագիր*
*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*, *էջ* 239, *բուն գրչէն*

«Փառք եզակի անճառելոյ… Արդ ի վերջին աւուրս յետնեալ ժամանակիս, ի թուականութեանս Հայոց ՌԺԷ, ի բռնակալութիւն Սուլթան Սուլէյմանին եւ ի կաթողիկոսութեան Տէր խաչատուրին, ի յերկիրն ի Մելիտին ի գիւղն յԱմոսի ի դուռն Սուրբ Փրկչին եւ Սուրբ Աստուածածնին և Սուրբ Սարգիսի գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ անպիտան հողիկս Գրիգոր Երէցիս՝ ի յիշատակ հայրն Մղտեսի Փոլատին եւ մայր խանդուդին եւ որդւոյն Թորոսին, Մարտիրոսին եւ եղբայրն Մուղամին եւ կնոջն Մանային եւ ինձ անարժան Գրիգոր գրչի, որ գրեցի եւ ծաղկեցի եւ կազմեցի… (*Թերթ մը պատռուած ըլլալով*, *յիշատակարանս կը մնայ թերի*)։

(*Թորգոմ Արքեպ. Գուշակեան*, *ՅՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ*, *Ս. ՆՇԱՆ ՎԱՆՈՒՑ Ի ՍԵԲԱՍՏԻԱ*, *ՀԱ*, 1924, *էջ* 248)

1566

*ԱՒԵՏԱՐԱՆ* (*Երուսաղէմի Թ.* 1939 *ձեռագիր*)
*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

«…. Գրեալ աւարտեցի զսա ի գիւղն որ ասի ի Գայլականջ (= Գայլականջ) (1) ի գաւառս Մելտինու ի թուին Հայոց ՌԺԵ (= 1566) ամէն (2) ի կաթողիկոսութեան Տէր խաչատուրին եւ ի հայրապետութեան Տէր Գրիգորին… յիշեսջիք … մանաւանդ զստացող սորին զՏէր Ստեփանոս քահանայս, որ եդ յիշատակ ի գիւղն ի Գայլականջ, ի դրունս Ս. Հրեշտակապետին…»

(*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ.* 56, *էջ* 17)

1566

*ՄԱՇՏՈՑ*, *Թ.* 89, *Սեբաստիոյ Ս. Նշան վանուց*
(*Թորգոմ Արքեպ. Գուշակեան*, *ՀԱ*, 1926, *էջ* 455)

(1) *Այլ ընդ. Հովանեաւ սբ. Նշանաց, ի գաւառս*։
(2) *Ի Թագաւորութեան Սուլթան Սելումին եւ*

*Յիշատակարանին մէջ կը յիշուի թէ ձեռագիրս գրուած է* «Ի թվին Հայոց ՌԺԵ (=1566), ի գաւառն Մելտինի, ի դուռն Ս. Աստուածածնին, Ս. Սարգսին եւ Սուրբ Փրկչին, ձեռամբ Գրիգոր երիցու:» (*Տաս հինգած ձեռագիր մը*)։

## 1568

*ՄԱՇՏՈՑ*, 1884*ին Երզնկայի Կայիփոս վանքին մէջ պահուած ձեռագրի* *ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ*։

«Աւարտեցաւ Ս. տառս, որ այժմ Մաշտոց կոչի բոլոր ···· ի յամի ՌԺԷ (=1568) ընդ հովանեաւ Ս. Աստուածածնի տաճարին եւ Ս. Սարգսին և Ս. Փրկչին ի գաւառն ի Մելտինի, (Հոմուսի) ի գիւղն Համուսի, ի ջեռիցու-թեան Գրիգորի Տէր Թորոսեան եւ ի կաթողիկոսութեան Տէր Խաչատուրի եւ յեպիսկոպոսութեան Տէր Գրիգորին ··· եւ ի թագաւորութիւն Սէլումին ··· Ով եղբարք, որ սիրով կարդայք եւ կարդալ տայք, նա զվարձս ի Քրիստոսէ առնուք, եւ զգրոցս շնորհն եւ օրհնութիւն, եւ որ հակառակի, եւ ոչ կամենայ որ կարդան, նա մասն եւ շնորհս ոչ առնու ի յայս··· գրոցս··· յիշեցէք բզ-Գրիգոր գծող, հայրն մղտեսի Փոլատն, եւ որդիք, զԹորոս երէցն եւ Մար-տիրոս սարկաւագն եւ Յովհաննէս սարկաւագն, եւ երիցակին զՆրանուհին··· յիշատակ է բոլոր Հայր Մաշտոցս Թամսուարին, եւ հաւրն Աստէմին, եւ մաւ-րըն Մզգարին, եւ եղբաւրն Կիրակոսին, Պետրոսին, Մարտիրոսին, Այթու-նին, Այրամուրին, Յակոմին եւ Ջոջ Պապուն Պօղոսին եւ քրոջն Մարթային, եւ կնոջն Պաղդադին, հարսին Շահաստանին, (որք) զնեցին իւրեանց հալալ վաստակայ յիշատակ ի գիւղն ի Աղջախաղաւն ի դուռն Աստուածածնին եւ ի Ս. Սարգսին. թվ. ՌԻԱ» (=1021+551=1572)։

(*Գարեգին վրդ. Սրուանձտեանց*, *ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, *Բ.*, *էջ* 299)

## 1569

*ԱՒԵՏԱՐԱՆ*, *որ*1879*ին Տիվրիկի Ս. Աստուածածին եկեղեցին կը գտ-նուէր*։

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*. «Ուստի եւ շառաւիղն աւհնութիւն եւ սիւն բարենը-շան, սրբազան եւ գերամաճուր մարդն Աստուծոյ, նախանձեցաւ նախանձ բարի: Տեսեալ զոմանս տարփողական սիրով տեղացեալ, զի զՏեառն մերոյ եւ զԱստուծոյ մատեան յաւետարանի յինքեան գրուէին. եւ ապա խորհուրդ մի բարի ի մէջ առեալ աւէ թէ ամենայն կեանք մարդոց անցաւոր տեսանեմ եւ ստացաւ զստացուածս գեղեցիկս, նախանձեցաւ նախանձ բարեօք: Եւ ա-պա թախանձեալ յոգնամեղ եւ զանարժան գրիչս զՍՏԵՓԱՆՈՍ ԵՐԷՑՍ, նկա-րագրել զաստուածախաւս սուրբ Աւետարանս յիշատակ հոգւոյ իւրոյ ըստ այնմ որ աւէ թէ երանի որ ունիցի զաւակ ի Սիոն եւ ընտանիք յԵրուսաղէմ: Եւ իմ հարկեալ ի սիրոյ նորայ թէպէտ եւ ի վեր էր զործաւնութիւն սորա քան զկար իմ եւ չարժան, ապա եւ զանկարութիւն ի բաց եդեալ լցեալ փա-

փափանաւք: Եւ գրեալ աւարտեցի զսա ի գիւղն, որ ունի կաչայչ կարողու-թեամբ Աստուծոյ, ընդ հովանեաւ սուրբ Նշանեաց ի գաւառս Մելիտինու, ի թուին Հայոց ՌԺԸ (=1018+551=1569) ամին, ի թագաւորութեան Սուլթան Սելումին եւ ի կաթողիկոսութեան Տէր Խաչատուրին, եւ ի հայրապետութեան Տէր Գրիգորին: Արդ երեսանկեալ աղաչեմ զձեզ, ով սրբակրօն քահանայք, որք հանդիպիք սուրբ Աւետարանիս կարգով աւրինակելով լի սրտիւ յիշեսջիք զմեղաւորս եւ զուսուցիչս իմ զՅովանէս երէցն, որ էր հոգեւոր ծնողք իմ: Եւ ըստ մարմնի ծնաւղացս Պապին եւ Թամամին եւ Մուսէս դպրին եւ ծնաւ-ղաց իւր: Աստուած լուսաւորէ զիւրեանց հոգին, ամէն: Մանաւանդ զստացող սորին: Դարձեալ յիշեցէք զվերջին ստացաւղ սուրբ Աւետարանիս, զԿուլաստա-րըն եւ զիւր որդին զԱստուածատուրն եւ զԳասպարն, զՊաղտասարն, զԱբրա-համն եւ զիւր աղջկունք, զերէցկին եւ զՆազլուն: Յիշատակ իւրեանց, հոգւոյն իւրեանց ննջեցելոցն, եւ որ յիշէ, եւ Աստուած ողորմի ասէ: Աստուած իւրն ողորմի ի միւսանգամ գալստեանն, ամէն:

Եւ ետուն ի ձեռին Տէր Խաչատուրին ի գիւղն Սարուճաճին, եւ ոչ ոք ունի իշխանութիւն ծախելոյ զսա կամ գրաւ տալոյ, եւ եթէ ոյք անդգնի, զպատիժն կայէնի առցէ...»:

(*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, Ա., էջ 221–2)

## 1576

«Ի թվ. Հայոց ՌԻԵ (=1576) ի հայրապետութեանս Հայոց Տեառն Խաչատուր կաթողիկոսին, գրեցաւ... յերկիրն Մելտինի, ի գիւղն Մուշուղ-կան, ի դուռն Ս. Սարգսի, ձեռամբ... Գրիգոր եպիսկ.ի:»

(*ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻՆ ՄԽԻԹԱՐԵԱՆՑ Ի ՎԵՆԵՏԻԿ*, Ա. հա., էջ 191)

## 1578

### *ՄՈՒՇՈՂԿՈՒՆ ՎԱՆՔԻՆ ՄԷՋ ԳՏՆՈՒԱԾ*

«Գրեցաւ Ս. Աւետարանս ձեռամբ Պօղոս եպիսկոպոսի յերկիրն Մել-տինի ի գիւղն Մուշողկուն վանքն, ի դուռն Ս. Սարգսայ եւ Սրբոյն Յակոբայ եւ Ս. Թորոսու եւ Ս. Խաչատուրայ եւ Ս. Կարապետի եւ Ս. Ստեփանոսի, ի խնդրոյ բանի Մղտեսի Խօճայ Պակէ որդւոյն Կասպարին:

Արդ գրեցաւ ի թուին ՌԻԷ, ի թագաւորութեան Շահ Մուրատի, որ ուղարկեաց զիւր վազերն ՌԵԱ [1] հեծելով ի վերայ Կարսին, ի կաթողիկո-սութեան Տէր Խաչատուրայ եւ ի Վանից առաջնորդութեան Տէր Աստուածա-տրոյ աբեղայի եւ մեր եղբարցս Համշիրակ տէր Գրիգոր եպիսկոպոսի եւ Ծե-րուն եպիսկոպոս, որ է պարթեւ եւ աշակերտին իմոյ Տէր Յովհաննէսին եւ

---

(*1*) *100.000 ըսել կ'ուզէ:*

Տէր Յակոբին եւ Մալազին Տէր Գէորգին եւ այլ միաբանեաց, յիշեցէք ի Քրիստոսի զԹարուկղն եւ զՇահզատան եւ զՍուլթան եւ զՄելիքն»:

(*Գերպ. Անդրէաս վ. Ալեքսանդրեան, ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱԿԱՆԱՒՈՐ ՔԱՂԱՔԻ ՍԵԲԱՍՏԻՈՅ, էջ* 402)

1 5 8 4

*ԳԱՆՁԱՐԱՆ, ցուցակագրեալ Բաբգէն կաթողիկոսէն (Տես ՅՈՒՅԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ԿԱՐՄԻՐ ՎԱՆՈՒՑՆ ԱՆԿԻՒՐԻՈՅ, էջ* 855–860), *կը պարունակէ* 82 *գանձեր, խնամոտ գրչութեամբ եւ խազագրուած:*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

«Փառք ··· յորում ընկրաք մեք անպիտան եւ յոռի եւ տըխմար եւ թարմատար եւ փցուն գրիչս ՄԵԼՏԻՆՑԻ ՊԱՒՂՈՍ ՍՈՒՏԱՆՈՒՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ մեք վիճակիմք հաւատով, յուսով եւ սիրով ········ դիւրամիտ եւ հեզահոգի ԽՕՃԱՅ ՊԱՆԿԼՈՒԻՆ, որ եռափափաք սիրով գրել ետուր Պաւղոս անուն գրագիր եպիսկոպոսի, ի հալալ վաստակոցն իւրոց, եւ ստացաւ եւ գրնեաց զմատեանս աստուածային, որ Գանձարան կոչի ·········· եւ իր գանձարան անկողոպտելի եւ յիշատակ իւր եւ իւր ծնաւղացն ՎԱՐՊԵՏ ԻՍՊԱՆՏԵԱՐԻՆ եւ մարն ԿԻՐԱԿԱՅԻՆ եւ կողակցին ԹԱՄԱՄ ԽԱԹՈՒՆԻՆ, եւ իւր որդւոյն ԽՈՃԱՅ ՅՈՀԱՆԻՆ եւ ՊԱՐՈՆ ՂԱՐԱՅԿՈՉԻՆ եւ ԽՈՃԱՅ ՄՈՒՐԱՏԻՆ եւ ԻՍՊԱՆԴԻԱՐ ՉԱԼԱՊԻ եւ քուերցն ՄԱՐԻԱՄԻՆ եւ ՇԱՀԻՂԱԹՈՒՆԻՆ եւ դեռաքոյս եւ նորաբողբոջ թոռանն ՆԵՐՍԷՍԻՆ, եւ ամենայն արեան մերձաւորացն նորին, յիշատակ անջնջելի, ի սուրբ կաթողիկէ եկեղեցին, ի սուրբ Քառասունսն, յաստուածապահ քաղաքին յԱնկիւրիոյ: . . . . . . . . . . .
Արդ գրեցաւ Գանձարանս ձեռամբ անարհեստ եւ անպիտան գրչի, Մելտինցի Պաւղոս եպիսկոպոսի, ի կաթողիկոսութեանս Հայոց Տէր ԳՐԻԳՈՐԻ եւ ի յերկրիս առաջնորդութեան եւ յեպիսկոպոսութեան ԳՐԻԳՈՐ ՔԱՋ ՀՌԵՏՈՐԻ եւ ՐԱԲՈՒՆԱՊԵՏԻ, ԳՐԻԳՈՐ ԿՈՉԵՑԵԱԼ ի յերկրէն ԶԸՄԸՇԿԱԾԱԿՈՒ, զի Տէր Աստուած պահեսցէ ընդ երկար աւուրս, ամէն, զի որ շինեաց զՍուրբ Աստուածածինն, զեղանատուն եւ զպարիսպն եւ զնոր աւտանին, եւ կապել երետ զգրեանքն, ամէն: Աստուած իւրեան կենդանութիւն տայ եւ անփորձ մընայ ի սատանայէ, ամէն: Ի թուականութեանս Հայոց ՌԼԳ (= 1584) եւ ի թագաւորութեան Տանկաց Սուլթան Մուրատ խոնդքարին:

Արդ աղաչեմ զամենեսեան ····· յորժամ հանդիպիք յայսմ աստուածային Գանձարանիս, տեսանելով կամ աւրինակելով կամ կարդալով, յիշեցէք ի սուրբ եւ ի մաքրափայլ աղաւթս ձեր զգծագրող սորայ, զՊԱՒՂՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍՆ, ընդ նմին եւ զստացաւղ զԽԱՒՃԱՅ ՊԱՆԿԼՈՒԻՆ, ամէն:

Դարձեալ աղաչեմ զքեզ, որ ողորմինն լի սրտիւ ասէք ԽՈՃԱ ՊԱՆԿԼՈՒԻՆ, որ ԲԸՌԸՆԵԱՆՑ ԶՄԵԶ եւ ԵԴԻՐ Ի ԽՈՒՑՆ Ի ՍՈՒՐԲ ՔԱՌԱՍՆԻՑՆ ԵՒ ԵՏ ԳՐԵԼ ԶՍԱ, անջինջ յիշատակ իւր հոգւոյն:

Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զանարժանս, որ ջանիւ եւ աշխատանաւք գրեցի եւ զանազան զձագագրերն հանեցի եւ ծաղկեցի եւ զտնաւրինականքն հանեցի եւ կազմեցի, յիշեցէք ի Քրիստոս զիմ ծնաւղքն զՄըղտեսի Վարդն եւ զիմ մայրն զխանմելիքն, ով յիշէ, յիշեալ լիցի»։

*ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ.—*

1.— *Հայոց կԹղս.ը Տէր մականուանուած Գրիգոր ԺԲ. Վաղարշապատցի կաթողիկոսն է, որ պաշտօնավարած է 1570էն 1587, իրեն աթոռակից ունենալով 1571էն 1576 Թադէոս Բ.Լեհաստանցին, 1575էն 1579 Առաքել Վաղարշապատցին եւ 1579էն 1587 Դաւիթ Դ. Վաղարշապատցին, որ յետոյ իրեն յաջորդած է եւ 1587էն մինչեւ 1629, իր հրաժարումը 50 տարուան պաշտօնավարութիւն մը ունեցած է։*

2.— *«Ի յերկրիս առաջնորդութեան եւ ի յեպիսկոպոսութեան» Գրիգոր քաջ հռետոր, ո՞վ է։*

*Պօղոս Եպիսկոպոս Մալաթիացի էր, ինչպէս կը տեսնուի։ Արդեօք իր ծննդավայրին առաջնո՞րդն է որ կը յիշէ։ Արդարեւ Գրիգորը եպիսկոպոս մը կը յիշուի 1566, 1568, 1576 եւ 1578 թուականներով չորս ձեռագիրներու մէջ։ Երկրորդ բաբունապետ տիտղոսով յիշուած Գրիգոր եպիսկոպոս Զմշկածագցիի հետ նո՞յնն է արդեօք։*

3.— *Գրիգոր եպիսկոպոս Զմշկածագցի այլուստ ծանօթ է, ասիկա Գաղատիոյ առաջնորդ էր 1581էն 1584, ինչ որ ժամանակագրականօրէն կը համապատասխանէ ձեռագիրիս յիշատակութեան։*[1]

4.— *Պօղոս Եպիսկոպոս մը 1578–ին Մալաթիոյ Մուշողկայ վանքը գրած է Աստուածաշունչ մը։*

(*Ալիշան, ԿԱՄԵՆԻՑ, էջ 54*)

1 5 8 9

*ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ*

*Պահուած էջմիածնի Մատենադարան, Թ. 267, ըստ Գէորգեան ցուցակի*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ.* «Այժմ ի թուականութեանս Հայոց ՌԼԸ (= 1589), որ գրեցի զայս ասացուած ի ԿԱՐԿԱՌ քաղաքիս, ի դուռն Սուրբ Աստուածածնին եւ առ ոտս տեառն իմոյ քաջ եւ երջանիկ Րաբունապետ վարդապետիս իմոյ Տէր Պետրոսին, որ այժմ զարեգակնանման ծագէ յամենայն տիեզերաց, մանաւանդ յայսմ աշխարհի։ Արդ՝ անմեղադիր լերուք անարժան *Յովսէփ Մոնողոնիս*, որ անուամբս կոչեցեալ եմ աշակերտ եւ գործովս ո՛չ. մի՛ մե–

(1) *Այս Գրիգոր եպիսկոպոսի համար «Տարեգիրք Կամենից» ունի 1586 թուականով յիշատակութիւն մը.* «Տէր Դաւիթ կաթողիկոսն Նստաւ, եւ զՏէր Գրիգոր վարդապետ՝ որ էր Անկիւրիոյ քաղաքին աթոռակալ այս Ֆռանգաց աշխարհն Նուիրակ ուղարկեց որ եւ եկաւ ի Կամինիցս եւ Նուիրակեց եւ զժողովուրդն ճշմարտեցայց քարոզի, եւ աստուածային բանիւ, վասն որոյ մեծաւ պատւով ընդունեցան եւ մեծարեցին, եւ բախում սիրով զինքն ուղարկեցին ի ճանապարհն իւր։»

ղադրեր ոչինչ շեղագրոյս, եղբայր, զի խիստ ճմեռ էր եւ սաստիկ ցուրտ. այսչափս նորովին ժուժեցի ի գրելն»։

(*ԱՐԱՐԱՏ*, 1896, էջ 201–202)

1 5 9 0 – 9 1

*«ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ» Ներսէս Շնորհալիի, Էջմիածինի Թ.* 1253 *ձեռագիր*

***ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ***,

«Գրեցաւ ի շրջագայութեան թուականիս հայ տոմարիս Ռ. եւ ԺԹ. երորդի քառասներորդի ի Մելիտինի գաւառիս, որ կոչի տաճիկ բառով ՄԱ-ԼԱԹԻԵԱՅ, ի մենաստանիս, որ կոչի յանապատ սրբոյն Գրիգորի Լուսաւոր-չին, ընդ հովանեաւ սրբոյն Յովանիսի եւ սրբոյ Անարծաթ Բժշկացն Կոզմայի եւ Դամիանոսի եւ սրբոյն Ստեփանոսի նախավկային եւ սրբոյն Սոփիայի, ի յառաջնորդութեանն եւ ի հայրապետութեանն Հայոց ազգի տեառն Ազարիայի Հայոց կաթողիկոսի .... եւ ի սպասաւորութեան եւ ի վերացականութեան սուրբ ուխտիս մեղաւոր Մարտիրոս եպիսկոպոսի, որ ոչ եմ արժանի կոչել ի կարգ առաջնորդութեան»։

(*ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ.* 56, *էջ* 5)

1590–1591

*ՃԵՌՆԱԳՐՈՒԹԵԱՆ ԳԻՐՔ կամ ՄԱՇՏՈՑ*

*Նիկոսիոյ Ս. Աստուածածին եկեղեցւոյ, Թ.* 31 *ձեռագիր*

(*Հիմա Անթիլիաս տեղափոխուած*)

*Ամբողջական յիշատակարանը տես ՊԱՏՄ. ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԿԻԼԻԿԻՈՅ*

(*էջ* 278–9)

***ԳԼԽԱՒՈՐ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*** (*քաղուածաբար*)։

«Աստանաւր անկ ելեալ կատարեցաւ աստուածային եւ հոգեւոր տաւն ածայխումբս, որուն Ձեռնադրութեան գիրգ կոչի, հոգւոյն սրբոց թելա-դրութեամբն մեծ վարդապետին Հայոց գրեալ ձեռամբն յոքնամեղ անձին եւ ուշիմ եւ տխուր Ածատուր դպիրի եւ իմաստուն Մինաս Սարկաւագին, ի խնդրոյ շնորհայզարդ եւ ածայսէր հոգիացեալ պատուական Տէր Պետրոսի արհեպիսկոպոսի, ի քաղաքի որ կոչի ԿԱՐԿԱՌ։ . . . . . . . . . . . . . [յ]անձն առաք գրել զսայ մեծ աշխատութեամբ է [յ]այս չար եւ դառն ժա-մանակիս, վասնզի կար յոյժ հարկաւոր էայք եւ ընդ լծով եկեղեցոյ էայք, զի ոք ի ներքոյ հարկաց էաք ոչ կարէաք ըստ իշխանութեամբ կալ, բայց եւ ա-ծայնոցն։

Եւ է սայ յիշատակ Տէր Պետրոս արհեպիսի . . . . . . . . . .»

***ՈՒՐԻՇ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ***

«Գրեցաւ տետրս [յ]իշատակ եւ վայելումն Տր. Պետրոս եպիսկոպոսին, որ է Կառկառցի։ Եւ դարձեալ աղաչեմ զձեզ որ լի բերանով ասացէք Աստուած ողորմի Յինաս Սարկաւագին եւ իւր ծնաւղաց եւ իւր որդւոյն։ Գրեցաւ ի թվն. ՌԼԹ. (=1590) Փետրվարի ԻԱ (21)»։

1 5 9 4

*ԳԻՐՔ ՍԱՀՄԱՆԱՑ*
*ՑԻՇԱՏԱԿԱՐԱՆ.–*

«Թվ. Հայոց ՌԽԳ (=1594). . . յիշեցէք զսուսցիչ զՏէր Պետրոս վարդապետն, որ ի վերջին դառն ժամանակիս իբրեւ զնոր արուսեակ առաւօտի երեւեալ փայլմամբ յազգիս Հայոց, որ զաւուր ասացեալ դառն աւրինակէաք ամէն աշակերտ իւրեանն, զի աւրինակն մէկ էր, եւ աշակերտացն կարդալու չէր ժամանէր, զոր մեք վեց աշակերտք, եւ այլ աւելի, աւրինակէաք զսա ի վաճքն ԿԱՐԿԱՌԱՑ, ի դառն ժամանակիս, որ մէկ մարդոյն վեց Ջլորի խարած առնէին»:

(*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, *Բ.*, *էջ* 454)

1 5 9 6

*ՇԱՐԱԿՆՈՑ*, *պահուած Վենետիկի Մխիթարեանց Մատենադարանին մէջ*

*ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ*,

«Գրեցաւ ի թվ. ՌԽԵ (=1596) յերկիրն Մելտինի, ի գիւղն Եղեգնոց Ձորոյ, ընդ հովանեաւ Ս. Սարգսի, ձեռամբ կիրակոս սարկաւագին...» (*Հ. Ն. վրդ. Ակինեան*, *ՀԱՒ. ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԱՑ*):

(*Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեան*, *ՊԱՊ ՈՒԽՏԻ*, *Թ.* 56, *էջ* 18)

ԺԶ. դարուն վերջերը

«*ԱՌ ՈՐՍ*» *Գրիգոր Աստուածաբանի*

(*Երուսաղէմի Թ.* 794 *ձեռագիրէն զաղափարուած է ուրիշ օրինակ մը, որուն յիշատակարանն էր*):

«Դարձեալ ընդ նոսա յիշեսջիք զվարդապետն իմ, զհեզ եւ զխոնարհն, զքաջն եւ զարին, զքանիբունն եւ զհոգոյ Սրբոյ զտունն, յորջորջեալ վիմին հաւատոյ (*ակնարկութիւն Պետրոս Կարկառեցիի*):

Եւ զսորա երկու աշակերտքս, որ ի մանկութենէ հետեւեալ սորին առաքինասէր բարուցն, յորջորջեալք անուամբք սրբոյ առաքելոյն Թումայի եւ կենսատու սուրբ խաչին, Տէր Թումա, որ եւ հիմուտ լեալ տառիք սրբոց, Տէր Խաչատուր, քաջ երաժիշտ քաղցրաձայն եւ համեղաբարբառ: Յետ սոցա յիշեսջիք յետնեալս ամենուց, զգծող տառիս Յովհաննէս պիտակ անուն: Զի եւ դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէն Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ, ամէն»:

(*Տես Բարգէն Կաթ.*, *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԱՑ ԿԻԼԻԿԻՈՅ*, *էջ* 253)

1 5 9 8

*Մանկունի Վահրամ Արքեպ.ի հաւաքածոյէն* (*էջ* 95)

*ՇՆՈՐՀԱԼԻ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՄԱՏԹԷԻ*, *ձեռագիր Էջմիածնայ Մատե–*

*Նաղարանին*, *Թիւ* 1298

«ԶԱրիստագէս վրդպ․ն եւ զգովեալ աշակերտն նորա զեփրեմ յիշեսջիք ի Քրիստոս։ Զի նա աշխատեալ ժողովեալ զքանս Մեկնեչացն ի մի յետ տեառն Ներսիսի։ Յաւրինակն այսչափ էր յիշատակարանն Առիստագէսի զայն որ կատարեալն էր զայն չգտաք, անմեղադիր լերուք։

Փառք․․․ի շրջագայութեան թուականին Հայոց տումարիս, ԼԵ․ եւ ԼԹ․ երրորդի քառասներորդի, ի Մելտինի գաւառիս, որ կոչի յանապատ Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին։ Ընդ հովանեաւ սրբոյ Յովանիսի, եւ սրբոց անարծաթ բժշկացն Կոզմայի եւ Դամիանոսի եւ սրբոյն Ստեփաննոսի նախավկային, եւ սրբոյն Սոփիայի, ի յառաջնորդութեան եւ ի հայրապետութեան Հայոց ազգին տեառն Ազարիայի Հայոց կաթողիկոսի, աթոռակալ եւ Պատրիարք Սուրբ յաթոռոյ Երուսաղիմի։ Ի սպասաւորութիւն եւ ի վերակացութիւն սուրբ ուխտիս մեղաւոր Մարտիրոս եպիսկոպոսի, որ ոչ եմ արժանի կոչել ի կարգ առաջնորդութեան։

Սուրբ գրոյս ստէր Դանիէլ վարդապետն յիշատակ իւր ծնողաց իւրոց հաւրն Յետկարին եւ մաւրն Սանդաղին եւ եղբաւրն Հայրապետին, որ յանգեաւ ի Քրիստոս։ Արդ կազմեցաւ սայ ի գիւղն, որ կոչի Մատվանց ի դուռն Սուրբ Գրիգորի եւ այլ ամենայն սրբոց ի թուականութեան մերում Դ․ խ․ եւ Է (=1598) որ կազմեցաւ ձեռամբ ,ոգնամեղ և անպիտան սուտանուն Յովանէս յիշեցէք եւ Աստուած զձեզ յիշէ ի միւսանգամ գալստեան։

(*Անտիպ*, *Մանկունի Վահրամ Արքեպսի․ Հաւաքածոյէն*, *էջ* 95, *Փարիզ Նուպարեան Մատենադարան*)

1600

1041*ին Թուին գրուած Աւետարան*

*Տեղ՝ Սեբաստիոյ Խանդալ աւանը*, *բազմաթիւ յիշատակարաններուն վերջը* 1600 *Թուականով ՄԵԼԻՏԻՆԷԻ մէջ կազմուած ըլլալու յիշատակարանը կայ*։

(*Գարեգին կաթ*․, ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆՔ ՁԵՌԱԳՐԱՑ, *էջ* 224)

1601

*Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի* 1628–*ին գրել տուած Աւետարանին մէկ ուրիշ յիշատակարանը*․

«Զվերջին կազմող սուրբ Աւետարանիս զբազմամեղ գրիչս, աղաչեմ զձեզ յիշել ի Տէր Հայրապետ [1] աբեղայն, կազմեցի ի դուռն սուրբ Ստեփաննոսի ՌԾ․ (=1601) թվականին ի փետրվար ամսեանն ԺԲ․ին։ Ով որ

(1) *Սահակ կաթողիկոս Կարապետ կը կարդայ փոխանակ Հայրապետի*։

կարդամ ի յատենին, նա մեզ ասէ զՔրիստոս որդին, եւ զՀայր մեր յերկինքն ի հետ նորին, նա թողցի իւր մեղքն եւ իւր ծնողին եւ ժառանգէ զերկնից ըզբարին»:

(*ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ*, *էջ* 331)

1 6 3 3

***ՇԱՐԱԿՆՈՑ***

«Եւ արդ գրեցաւ եւ աւարտեցաւ սուրբ եղանակաւոր տառս, որ կոչի Շարակնոց, ի լաւ եւ ընտիր աւրինակէ ի թուականութեանս հայկազեան տումարի Ռ եւ ՁԲ (=1633) ի հայրապետութեան Տեառն Սիմէոն կաթուղիկոսին, որ է աթոռն Սըսա, ձեռամբ անիմաստ գրչի ՄԵԼՏԵՆՑԻ Յովաննէս քահանայիս: Արդ որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զՅովաննէս քահանայս:

Այլ եւ զուսուցիչն իմ այսմ արուեստիս, որ բազում աշխատանքս կըրեաց ի վերայ իմ վասն ուսուցնելոյ՝ զՏէր ԽԱՉԱՏՈՒՐ ԵՊԻՍԿՈՊՈՍՆ ՁԷՅԹՈՒՆՑԻՆ: Աստուած լուսաւորէ զիւր արդար հոգին: Այլ եւ զառաջնորդն մեր զՏէՐ ՅՈՎԱՆ ԱՐՀԵՊԻՍԿՈՊՈՍՆ եւ զմարմնաւոր ծնաւղն իմ զԱստուածատուրն եւ զմայրն իմ Թագուհին եւ քոյրն իմ զԵրանն, ամէն:

Դարձեալ աղաչեմ զձեզ որ անմեղադիր լինիք քանիս, զի կար մեր այսչափ է:»

(*ՏԱՇԵԱՆ ՄԱՅՐ ՑՈՒՑԱԿ*, *էջ* 808)

1 6 5 0

***ՃԱՌԸՆՏԻՐ***, *այժմ պահուած Էջմիածին (տես Կարինեան*, ***ՑՈՒՑԱԿ***, *Էջմիածին, Թ.* 1597)*: Հ. Եփրեմ վրդ. Պօղոսեանի համաձայն յիշատակարանը համառօտակի տուած է Հ. Մ. վրդ. Պոտուրեան, Հ. Ներսէս վրդ. Ակինեանի:*

***ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ***,

«Գրեալ ի թվ. ՌՂԹ (=1650) ի Մալաթիա, ի դուռն Ս. Ստեփանոսի». *գրիչն է Յովհաննէս երէց որդի Աստուածատրոյ եւ Թագուհիի*, «ի հայրապետութեան տեառն Ներսէս Սսոյ կաթողիկոսի»:

(***ՊԱՊ ՈՒԽՏԻ***, *Թ.* 56, *էջ* 18)

1 6 9 2

***ՏՕՆԱՑՈՅՑ***, *որ* 1882*ին Լոնտոն կը գտնուէր:*

***ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ***,

«Գրեալ ի թվ. ՌՃԽԱ (=1692), յերկրին Մելտինի ի դուռն Ս. Ստեփանոսի, Ս. Սարգսի եւ Ս. Լուսաւորիչի...»

*Գրիչն է Յոհան դպիր, աշակերտ Յովհաննէս վարդապետի:*

***ՍՏԱՑՈՂ***՝ *Վարդան Սարկաւագ:*

(*Հ. Ներսէս Վրդ. Ակինեանի հաւաքածոյէն*, ***ՊԱՊ ՈՒԽՏԻ***, *Թ.* 56, *էջ* 18)

1 6 9 7

*ԱՒԵՏԱՐԱՆ, գրուած 1469ին, Լոնտոն տարուած է Երզնկայէն:*

*«Փոքր յիշատակարաններէն մէկուն մէջ կը յիշուի թէ Աւետարանը նորոգուած է Ախոսցի (գիւղ Մալաթիոյ) Կարապետ վարդապետէն* «... ի յիշատակ Շընթըլցի խօճայ Աթանասին եւ կողակցին Ներկիզին ի թվ. ՌՃԽԶ. (= 1697)...», *որոնք կը դնեն Աւետարանը Շընթըլայ եկեղեցին:*

(*Հ. Ներսէս վրդ. Ակինեանի հաւաքածոյէն*, ՊԱՊ ՈՒԽՏԻ, *թ*. 56, *էջ* 18)

1 7 0 0

*ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍՈՒՐԲ ՊԱՏԱՐԱԳԻ, Ձեռագիր Ս. Քառասուն Մանկունք եկեղեցւոյ Հալէպի, գրուած 1687-ին:*

*Ունի մանր յիշատակարաններ, որոնք են, էջ* 596. «Յիշատակ է գրգուկըս Պետրոս Բեր[ի]ացի բանասերիս, ամէն»:

*էջ* 597, «Ի թվն ՌՃԽ եւ Թ.ին (= 1700) ի առաջնորդութեանս ԿԱՐԿԱՌ քաղաքին. ըստացա ի *Հասան Մասուր* (Հիւսնի Մանսուր) նախանգին, ի թվին ՌՃԾԷ (=1708) եղեւ կաթողիկոս ի Սիս քղքին եւ ի թվին ՌՃԾԹ (=1710) եկա Բերիա քաղաքս եւ բազում անցք անցին: Աստուած զվերջն ի բարին կատարեսցէ»:

(*Արտաւազդ Արքեպ. Սիւրմէեան*, ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ ՀԱԼԷՊԻ, *Բ. հտ.*, *էջ* 217)

1 7 2 3

*ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ, գրուած Սեբաստիա, ՌՄԿ.ին ձեռամբ Լուսարար Տէր Մարտիրոսին:*

«Ի թագաւորութեան Հագարացւոց եւ տեղապահութեան Մելիտինոյ ղաչի (1) ղանին, որ էր ազգաւ քուրթ, ի հայրապետութեան Սիսոյ Տէր Յովհաննէս կաթողիկոսին (2) եւ յեպիսկոպոսութեան Մելիտինոյ Տէր Սահակին եւ եղեւ չքնաղ եւ զարմանալի նոր Մարտիրոսըս այս Կարապետ... Այս եղեւ ի Թ. Հ. ՌՃՂԳ*ին*» (=1723):

(*Կոնիբերի* ՑՈՒՑԱԿ ՁԵՌԱԳՐԱՑ, *թ*. 68/6988)

1 7 4 4

*Դարձեալ 1268 թուականով Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի գրել տուած Աւետարանին զանազան յիշատակարաններէն մէկուն մէջ կը կարդանք.*

(*Տես* ԹՈՐՈՍ ԱՂԲԱՐ, *Ա.*, *էջ* 328–9)[3]

---

(1) *Հաւանօրէն Ղազի:*

(2) *Յովհաննէս Գ. Հաճնցի (1701–1725):*

(3) *Սահակ Կաթողիկոս (տես Բիւզանդիոն, թ. 3438) ինքն ալ համառօտագրելով ներկայացուցած է:*

«Ս․ Աւետարանս այրած էր Յոհան գլուխն եւ մենք խիստ աշխատեցանք եւ վերըստին աշխատեցանք նորոգել զսուրբ Աւետարանս յիշատակ մեզ եւ ծնողաց մերոյ եւ ամենայն արեան մերձաւորացն, ամէն:

Սուրբ Աւետարանովս որ կազմել են, ա ՃԾԶ (=156) գիրք է, որ եւ շնորհօք Ս․ Հոգւոյն եւ ներութեամբ Փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ զանց առնէ զմեղս մեր, եւ ոչ նախատէ զմեզ, բազում սղալանաց մերոց եւ տայ զշնորհս բազում որ ի խորոց սրտէ յառաջանօք խնդրէ որ եւ յետնեալ ծառայս ձեր, ծառայիցդ Աստուծոյ, մեղօք փտեալ եւ ի բարի գործոց եւ հեռացեալ, միայն անուամբ եմ կոչեցեալ, այլ եւ բարեաց դատարկացեալ, Աբրահամ եպիսկոպոս, որ եմ որդի Տէր Մկրտիչ քահանային, վերատիրողի Մելիտինու քաղաքին, տեսի զսուրբ Աւետարանս, որ Ղուկաս եւ Յոհան գլուխքն եղծեալ էր որ գրոց նշմարանք ոչ կայր գրեալ, նորոգեցի վերստին, ով սըրբասէր վարդապետք, եւ քահանայք եւ մանկունք եկեղեցւոյ, երեսս ի գետնի դնելով աղերսեմ ի սրբութենէ ձերմէ, հայցեմ, յորժամ որ ընթեռնոյք ըզսուրբ Աւետարանս ի յատեան, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս Ձեր զմեղօք լցեալ Աբրահամ աղեզար եւ զհայր իմ Տէր Մկրտիչն՝ Քրիստոս որդի ասելով եւ Հայր մեր որ երկինք ի հետ նմին տալով, որ եւ խնդրեմ զբազմաւոր տեառնէ մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, զձեզ Յանուանէս յիշեսցէ յիւր սուրբ արքայութեանն ամէն եւ հազար ամէն նորոգեցի գրերն, թվին ՌՃՂԳ․ (= 1744) ամսեան Մայիս ժէ․ ամէն»:

*Միայն խիստ զարմանալի է որ Սրուանձտեանց եպիսկոպոսի ՌՃՂԳ* (= 1193+551=1744) *թուականը* 1644 *նշանակած է Գարեգին կաթողիկոս Յովսէփեան, որ գրիչի վրէպ է ապահովաբար:*

## 1779

*Պատասխանի Ներսէսի Շնորհալւոյն առ Յակոբ վարդապետն Սարբ Մելիտինոյ քաղաքին:* (*Կարինեան*, ՑՈՒՑԱԿ, 1779*ին Կ․ Պոլիս գրուած Ընդհանրականին հետ, Էջմիածնի Թ․* 515 *ձեռագիր*):





# ԺԳ. ՄԱՍ

# ՄԱԼԱԹԻՈՅ
# ՀԱՅ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԷՄՔԵՐԸ

*Մալաթիա իբր «մարդու հանք» աղքատ վայր մը եղած է մեզի՝ Հայերուս համար, մինչդեռ մենք ունեցած ենք Փոքր-Ասիական եւ Հայաստանեան բազմաթիւ քաղաքներու պատկանող հայ բնակիչներ, որոնք միջին մակարդակէն — այսինքն խելօք քաղաքայիններու աշխատունակ զանգուածէն— վեր բարձրացող անհատներ ունեցած են, պատուաբեր Հայ ազգին:*

*Մալաթիա բոլորովին զուրկ չէ անոնցմէ, սակայն առատ չեն անոնք:*

*Իր պատեանին մէջ քաշուած, եղածովը գոհացող է Մալաթիացին: Քիչ են անոնք, որոնք յանդուգն ձեռնարկներ, խիզախ ելոյթներ եւ նախաձեռնութիւններ ունեցած են. թերեւս ասոր համար է որ նոր հորիզոններ ընդգրկելու ալ հետամուտ չեն եղած եւ շատ գաղթողներ չեն ունեցած մինչեւ Հայ եւ Թուրք յարաբերութիւններու վատթարանալը:*

*Մալաթիոյ մէջ հայ անհատականութիւններու թիւը բաղդատմամբ ուրիշ հայաբնակ քաղաքներու բնակչութեան հետ ունեցած համեմատութեան շատ տկար է:*

*Անըմբռնելի է թէ ինչո՛ւ Մալաթիա չէ կրցած տալ դէմքեր, որոնք մեր պատմութեան մէջ տեղ գրաւած ըլլան, իբր հանրային մարդիկ:*

*Չեն ունեցած նաեւ մեծ թիւով կարող առեւտրականներ, պատկառելի մտաւորականներ, հռչակաւոր արուեստագէտներ, թէեւ պէտք է ըսել թէ բոլորովին ալ ամուլ չեն եղած եւ տուած են, թիւով թէեւ քիչ, դէմքեր, որոնք իրենց ծննդավայրէն հեռու փայլած են եւ մեր կեանքին մէջ տեղ մը գրաւած:*

*Քաղաքին պատմութեան մէջ, ինչպէս տեսնուեցաւ, առատ չեն կառավարութեան մէջ առաջնակարգ դիրք գրաւող դէմքեր: Ազգային շրջանակի մէջ ալ մեծ թիւ մը չունին վարիչ դէմքեր, որոնք ղեկավարներ հանդիսացած ըլլան:*

*Թոյլ է ազգային գործերու տնտեսութիւնը: Զոհաբերող անհատներ, ազգային հաստատութեանց առատաձեռն օժանդակողներ ալ չեն ունեցած Մալաթիացիք, ինչ որ մասամբ հասկնալի է, վասնզի երկրաշարժի, հրդեհի եւ համաճարակներու պէս աղէտներ պակաս չեն եղած միշտ: Այնպէս որ Հա—*

յերը մինչ նիւթական անձկութեան օրեր ապրած են եւ չեն կրցած հանրային ձեռնարկներու լայն օժանդակութիւն ընծայել, սակայն անուրանալի է որ իրենց ազգային հաստատութիւնները տեղական միջոցներով մատակարարած են եւ բնաւ ձեռք չեն երկարած ուրիշներուն: Ժողովուրդին լումաներով գոհացած են եւ չեն ունեցած խոշոր նուիրատուներ:

Ինքնամփոփ ինքնապահութեամբ ապրած են հակառակ զիրենք հալածող դժբախտութիւններուն եւ ոչ ուրիշ քաղաքներու չափ, սակայն որոշ չափով մը իրենք ալ ունեցած են իրենց մէջ դէմքեր, որոնք պետական եւ ազգային շրջանակներու մէջ, ինչպէս մտաւորական եւ մշակութային մարզերու մէջ, գործած են ազգին պատուաբեր եղանակով. դժբախտաբար կարելի չեղաւ հակառակ Պ. Խոսրով Պոնարպարթեանի ըրած ջանքերուն որ այս հատուածը եթէ ոչ կատարեալ, այլ կատարեալին մօտ ըլլար հնարաւոր եղածին չափ: Կարելի չեղաւ շատ ճոխ տեղեկութիւններ գտնել. ուստի Պրն. Պոնափարթեանի կազմած հետաքրքրական ցուցակները պետական պաշտօնեաներու եւ զանազան ասպարէզներու հետեւողներու, ինչպէս նաեւ բարձրագոյն վարժարաններու եւ համալսարաններու շրջանաւարտներու ներկայացնել եւ բացառիկ օգտակարութիւններ ունեցող անձերու վրայ առանձին խօսիլ, յարմար նկատեցի:

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐ

(*) Տ. Ստեփան Քհ. Քըզըլքեչիշեան, Մայր եկեղեցիի
(*) Տ. Եղիշէ Քհ. Խաչատուրեան, Մայր եկեղեցիի
Տ. Յակոբ Քհ. Մանուչեան (Մանուչ օղլու), Մայր եկեղեցիի
(*) Տ. Գրիգոր Քհ. Թաշճեան, Մայր եկեղեցիի
(*) Տ. Կարապետ Քհ. Պէննէեան, Ս. Երրորդութիւն եկեղեցիի
Տ. Վահրամ Քհ. Պաղտասարեան, Ս. Երրորդութիւն եկեղեցիի
Տ. Յովհանն Քհ. Յովհաննէսեան, Ս. Յարութիւն եկեղեցիի
Տ. Սերովբէ Քհ. Տելլալեան, Ս. Յարութիւն եկեղեցիի
Տ. Մուշեղ Քհ. Տէր Մուշեղեան, Ս. Երրորդութիւն եկեղեցիի
Տ. Եղիա Քհ. Տէր Կարապետեան, (լուսարարապետ):

Հին քահանաներուն վրայ տեղեկութիւններ կը պակսին, նոյնպէս կարելի չեղաւ «Հաւկըթուք» մականուանուած քահանայի վրայ տեղեկութիւններ ձեռք բերել:

Այս եկեղեցականներէն նշանակելի դէմքեր են.

Տ. ՍՏԵՓԱՆ ՔՀ. ՔԸԶԸԼՔԵՇԻՇԵԱՆ (այլ անուամբ ԱՂԱ ՏԷՐՏԷՐ Պաղտասարեան).— Աղա Տէրտէր Պաղտասարեան ծնած է Մալաթիոյ մէջ 1820-ին: Ուսումը ստացած է տեղւոյն վարժարանին մէջ: 1895-էն ետք պաշ-

(*) Բոլոր աստղանիշ կրող անուններու վրայ գրքին մէջ խօսուած է արդէն:

*տօնավարած է Մայր եկեղեցւոյ մէջ որպէս առաջնորդի փոխանորդ: 1895-ի կոտորածին Մալաթիոյ Թանկագին Աւետարանը յափշտակուած էր Թուրքերու կողմէ եւ ծախուած՝ Ատանայի Հայոց եկեղեցւոյն:*

*Իր կրկնակի դիմումները եւ բողոքները պատճառ կը դառնան, որ Թուրք կառավարութիւնը փոխարժէքը վճարելով ետ վերադարձնէ այս թանկագին մագաղաթը, Մալաթիոյ Մայր Եկեղեցւոյն:*

1895-*ի կոտորածին Հեքիմխանի գիւղի հայ բնակիչները Մահմետականութիւն կ'ընդունին, սակայն կաթոլիկներ գիւղի եկեղեցին Թուրքերէն կը գնեն եւ կրօնափոխ Հայեր կաթոլիկ կը դարձնեն: Աղա Տէրտէր Պատրիարքարանի աջակցութեամբ դատ կը բանայ եւ կը յաջողի եկեղեցին ետ առնել եւ դաւանափոխ ժողովուրդը կրկին հայրենի եկեղեցւոյ փարախը առաջնորդել:*

1895-*ի կոտորածէն կարգ մը Հայեր կը թրքանան, որոնց մէջ էր Մինասեան ընտանիքը: Լուսաւորչայ վանքի կալուածաթուղթը իրենց անունին ըլլալով, կ'ուզեն իւրացնել վանքը: Կրկին Աղա Տէրտէր օրինական միջոցները դիմելով կը յաջողի վանքը հայ համայնքին վերադարձնել, ուր կը փոխադրուին որբեր եւ կը հաստատուին գործատեղիներ որբերու համար:*

*Աղա Տէրտէր Պաղտասարեան կը վախճանի* 1902-*ին:*

Տ. ԵՂԻՇԷ ՔՀ. ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ, *որ մօտաւորապէս* 50 *տարեկան, յաղթանդամ, գիրուկ ու մեծ փորով կղերական մըն էր: Երուսաղէմի վանքին մէջ ուսում առած էր:*

*Մալաթիոյ քահանաներէն ամենէն զարգացածն էր: Իր լեցուն դէմքին վրայ փայլփլող խոշոր սեւ աչքերուն մէջ կը տեսնուէին ոյժ, կորով եւ անյաղթելի բնութիւն:*

*Մեր դարաւոր թշնամիի մասին խօսած ատեն կարծես կայծեր կը տեսնուէին իր աչքերուն մէջ:*

*Ազգային, անհատական, մտաւորական ու կրօնական հարցերու շուրջ խօսած ատեն իր աչքերուն մէջ կը տեսնէիր անձնուիրութիւն, զոհողութիւն եւ անսահման գութ:*

*Իր հսկայ մարմինը հակառակ* 150 *քիլոյ ծանրութեան, պէտք եղած ատեն արծուի թեւեր առած, առանց ընչարգելութեան կը վազէր մէկ թաղէն միւսը, մէկ եկեղեցիէն միւսը, վանքէն Օրտուզի, առանց ձի կամ աւանակ մը հեծնելու:*

*Իր կազմը բերդի մը կը նմանէր, իր բազուկները անյաղթ, հուժկու, կայտառ, միշտ կարող էր դիմագրելու* 3-4 *կորիճներու. Տ. Եղիշէ ազգասէր էր ու ազգապաշտպան:* Իր անձը Մալաթիոյ Հայութեան բերդն էր՝ տոկուն ու դիմացկուն:

*Դարերու ընթացքին արմատացած, հսկայ կաղնիի ծառի մը կը նմանէր ան, որուն շուքին տակ ու ճիւղերուն մէջ շատեր կրնային ապաստան գտնել ու պատսպարուիլ:* Ինք մասնաւոր կուսակցութեան մը չէր պատկաներ, *բայց կուսակցականէ մը աւելի կը հաւատար ինքնապաշտպանութեան,*

-հերոսութեան եւ ի պահանջել հարկին, զէն ի ձեռին կռուելու եւ զոհուելու։

Ինքնապաշտպանութեան կռիւներու ատեն իր զոհաբերութեան ոգին, իր առաջնորդութիւնը, իր տուած ուղղութիւնը փրկարար արդիւնքներ ունեցած են Մալաթիոյ Հայութեան համար։

95–96-ի կոտորածի ատեն Տէր Եղիշէ քահանան Հայ-Կաթոլիկներու եկեղեցին, ապա Ս. Երրորդութիւն եկեղեցիին մէջ, իր շուրջ հաւաքելով Մալաթիացի կռուող ոյժերը հերոսաբար դիմադրած էր աւելի քան 20,000 Թուրք ու Քիւրտ բարբարոսներու խուժանին։

Շնորհիւ ինքնապաշտպանութեան համար մղուած 5–6 օրուան կռիւներուն է որ Հաշիմ պէյ եւ պեհեսնեցի Եաղուպ փաշա, ճերմակ դրօշակ պարզած հաշտութիւն առաջարկած էին եւ այսպէս փրկուած էր Մալաթիոյ Հայութիւնը անագորոյն կոտորածէն։

Հերոսութեան տիպար մարմնացումն էր Տէր Եղիշէ, երբեք չէր նմաներ սուտ հերոսներուն, որոնք դժբախտաբար վտանգի պահուն իրենց զէնքերը նկուղներու մէջ պահած, իրենց մորթի մասին միայն խորհեցան, կամ փախուստ տուին կռուի ճակատէն վատօրէն։

Տէր Եղիշէն իր կեանքը եւ իր զէնքը գործածեց իր ժողովուրդի պաշտպանութեան համար։ Վախճանեցաւ եւ իր փառաւոր թաղումը տեղի ունեցաւ Մալաթիոյ մէջ, Համաշխարհային Պատերազմէն կարճ ժամանակ առաջ։

Մեծ եղեռնի օրերուն, համարձակօրէն կարելի է ըսել, տարբեր կ'ըլլար Մալաթիոյ Հայութեան ճակատագիրը, եթէ ողջ ըլլար այս անվեհեր ու անվախ քահանան (տես ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐԸ, —ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի Թիւ 1, էջ 9–10, ՏՈՔԹ. Մ. ՔԵՇԻՇԵԱՆ)։

Այս հերոսական ինքնապաշտպանութեան ամենէն աչքառու դէմքերէն մէկն էր Տ. Եղիշէ քահանայ Խաչատուրեան, որուն յեղափոխական գործունէութիւնը արդէն ներկայացուցի, իր ընտրած ողջախոհ ու գործնական ուղղութեամբ։ Եղիշէ քահանայ Խաչատուրեան, որ մի քանի անգամ Առաջնորդական Տեղապահի կամ Փոխանորդի պաշտօն ալ վարած էր իր ծննդավայրին մէջ «պարթեւ հասակով, յաղթանդամ ու խրոխտ կեցուածքով, փարթամ մօրուքով, ուղիղ քթով ու լայն ճակատով, խոշոր ու պայծառ աչքերով եկեղեցական մըն էր» (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Թ. 28, էջ 1)։ Եղիշէ քահանայ որ 1890-ին ձեռնադրուած էր քահանայ Մալաթիոյ Ս. Աստուածածին Մայր եկեղեցիին վրայ, որուն սեղանին ծառայած էր խղճամիտ կերպով, մինչեւ 1914, մօտաւորապէս քառորդ դար։

Եղիշէ քահանայ Խաչատուրեան, որ համեստ միտքի պաշար մը ունէր, ան ալ գրեթէ ինքնաշխատութեամբ եւ անձանձրոյթ ընթերցմամբ ձեռք բերած ժողովրդանուէր և անձնազոհ հովիւ մը եղած է, եւ միշտ արդիւնաւոր գործունէութիւն ունեցած է Մալաթիոյ մէջ իբր ղեկավար ռահվիրայ մը երիտասարդութեան։

Տ. Եղիշէ քահանայ Խաչատուրեան ունէր նաեւ «ընտանի քաջութիւն» ոչ միայն խօսքի ու բանակռիւի մէջ պաշտպանելու համար արդարու-

թիւնը, ճշմարտութիւնը, մանաւանդ խեղճը, տկարը եւ զրկուածը, այլ եւ քաջութիւն կռիւի ու ռազմական գիրքերու մէջ, իր կեանքի գնով պաշտպանելու համար խաչն ու Աւետարանը, եկեղեցին ու ժողովուրդը (ՊԱՊ ՈՒԽՏԻ, թիւ 28, էջ 3)։

Տ. ՅԱԿՈԲ ՔԱՀԱՆԱՅ ՄԱՆՈՒՇԵԱՆ.– Ծնած է 1838–ին Մալաթիա, որդին էր Թորոս Մանուչեանի։ Նախնական ուսումը առած է ազգային վարժարանի մէջ եւ ապա ինքնաշխատութեամբ զարգացած։ Մասնաւորապէս գրաբարի տիրացած է։

Նախ զբաղած է դերձակութեամբ եւ ամուսնացած է 1858–ին, Օր. Մարիամ Ճիկերճեանի հետ եւ ունեցած է եօթը զաւակներ, չորսը՝ մանչ եւ երեքը՝ աղջիկ։

Ինք ունէր չորս եղբայրներ, որոնք միասին գնած են ընդարձակ հող մը եւ շինած են առանձին–առանձին տուներ։ Փողոցն ալ իրենց մականունով կոչուած է Մանուչեան։

Յակոբ Մանուչեան իր լաւ նկարագրով, մասնաւորաբար յարմարութիւն ներկայացնելով քահանայութեան՝ առաջնորդ Սահակ Եպս. զայն կը ձեռնադրէ քահանայ։

Տ. Յակոբ քահանայ իբր պարկեշտ, պարտաճանաչ, խղճամիտ եւ աղքատասէր քահանայ մը արդիւնաւէտ պաշտօնավարութենէ մը ետքը կը վախճանի 1909–ին։

## ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԵԱՅՔ

ԳԷՈՐԳ ՄԱՋՄԱՆԵԱՆ.– Օրական հացին կարօտ հօր մը զաւակը, թշուառութեան ճիրաններէն ինքնօգնութեամբ ազատած, բնական տաղանդի տէր մէկն էր, կառավարական այլեւայլ պաշտօններ վարելէ եւ կոկիկ հարստութեան մը տիրանալէ ետք մեռած է։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹԻՒԹԵԼԵԱՆ.– Ծնած է 1855–ին, նախակրթութիւնը ստացած է Մալաթիոյ մէջ, իսկ բարձրագոյն կրթութիւնը՝ Կ. Պոլիս, ըստ ոմանց Շահնազարեան վարժարանին մէջ եւ ըստ այլոց՝ Ռոպերթ Գոլէճի մէջ։ Մալաթիա դարձին կառավարչութեան պաշ քեաթիպի պաշտօնին կը կոչուի եւ կը վարէ 1873–էն մինչեւ 1888, իսկ 1888–էն մինչեւ 1895, վարած է Սանտըգ Էմինի (գանձապահ) պաշտօնը։

1885–ին մահուան դատապարտուած Թուրքի մը համար շատ խնամուած աղերսագիրով մը վերաքննութիւն կը պահանջէ Կ. Պոլսոյ վճռաբեկ ատեանէն եւ բեկանել կու տայ Մալաթիոյ դատարանին վճիռը եւ ամբաստանեալը կը փրկէ։ Յովհաննէս Թիւթելեան Սալիխէի աստիճան ունէր։ Իր ազդեցութեամբ շատ օգտակար եղած է ազգին։ Նիւթապէս սատարած է Հայ Աւետարանականներու ժողովարանին եւ կրթական հաստատութեանց եւ անոնց նորաշէն եկեղեցիին ու երկսեռ դպրոցներու շինութեանց ձեռնարկին

համար նիւթական եւ բարոյական զոհողութեան իր մեծ բաժինը բերած է։ (Դժբախտաբար այս շէնքերը այրած են 1895–ին)։

Յովհաննէս Թիւթելեան փեսան էր առաջին անգամ Մալաթիոյ ազդեցիկ Հայերէն Գրիգոր Աղա Ասլանեանի ու երկրորդ անգամ Արաբկիրի ծանօթ Միսաքեան ընտանիքին։

Իր զաւակներէն անդրանիկը՝ Ստեփան եւ երրորդը Վահան 1895–ի ջարդին զոհ գացած են, եւ մէկ աղջիկը 1915–ի տարագրութեան։

1895–ի Մալաթիոյ ջարդին օրը, ինչպէս նկարագրուած է, Նաբոլէոն Պաղտոյեանի հետ Միւթեսարըֆի դաւով սպաննուած է։ (Տես ՊԱՊ ՈՒԽՏԻ, 1952, Թիւ, 59 եւայլն)։

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԱՂՏՈՅԵԱՆ. — Պաղտոյեան ընտանիքը Մալաթիոյ հարուստ եւ ազդեցիկ ընտանիքներէն մէկը եղած է։

Այս ընտանիքը Հայ Աւետարանական համայնքին կը պատկանէր։

Յովհաննէս էֆենտի Պաղտոյեան, որ շատ յարգուած անձնաւորութիւն մըն էր, կը կառավարէր իրենց առեւտրական եւ կալուածական գործերը։

Յովհաննէս էֆէնտի իր կրտսեր եղբօր Նաբոլէոնի 1895–ի կոտորածին չարաչար սպաննուելէն ետք, կարճ ժամանակէն սրտին ցաւէն մեռաւ։

Իր երկու որդիներէն Ստեփան 1895–ի Թրքական վայրագութեան զոհ եղած է։

ՆԱԲՈԼԷՈՆ ՊԱՂՏՈՅԵԱՆ. — Ծանօթ ընտանիքի մը զաւակը, ընկերային նախանձելի դիրք մը գրաւած էր։ Նաբոլէոն, որ ծնած էր 1868–ին, Եփրատ Գոլէճի մէջ քիչ մը ուսանելէ ետք, ինքնաշխատութեամբ իր Թուրքերէնը զարգացուցած եւ օրէնսդիտական հմտութիւն ձեռք բերած էր։ Պահ մը ուսուցիչ եղած է Ամերիկեան Գոլէճի մէջ, եւ ապա կառավարական պաշտօնեայ եղած է շուրջ քանի տարի, այլեւայլ պաշտօններ վարելով։

Սալիխէի ատաւճան ստացած էր։

Ազնիւ անձ մը եղած է։ Ամուսնացած էր 1887–ին։

Սպաննուած է 1895–ին Միւթեսարըֆին մէկ դաւովը, ինչպէս նկարագրուած է վերը։

Իր Եդուարդ զաւակը շրջանաւարտ Եփրատ Գոլէճէն, զոհ եղած է 1915–ի Թրքական խժդժութեան, տեղահանութեան ատեն։

ՍԱՐԳԻՍ ՏԷՐ ԴԱՒԻԹԵԱՆ. — Վաղեմի ընտանիքի մը շառաւիղ, վարընդի կը սերէր հին Մելիտինէ քաղաքի Տէր Դաւիթ անունով քահանայէն։ Ծնած է 1860–ական Թուականներուն, զաւակը Զիթճի պապա Գրիգոր աղային, որ իր ատենին համբաւ հանած էր իբր անվախ, քաջ եւ եկեղեցասէր ազգային մը։

Իր ուսումը առած է Մալաթիոյ ազգային դպրոցին մէջ։ Ինքնօգնութեամբ տիրացած է Հայերէն եւ Թրքերէն լեզուներուն։ Ուշիմ եւ ճարպիկ երիտասարդ, կանուխէն մտած է առեւտրական ասպարէզին մէջ եւ դտած է

մեծ յաջողութիւն։ Ամուսնացած է Գըլըճճի Առաքելական ծանօթ ընտանիքէն Թագուհի Առաքելեանի հետ եւ կազմած է տիպար հայ ընտանիք մը եւ բախտաւորուած վեց մանչ զաւակներով։ Իբրեւ մէկ հաւատաւոր զաւակը Հայց. Եկեղեցւոյ, վարած է զանազան պաշտօններ թէ՛ եկեղեցւոյ եւ թէ՛ ազգային դպրոցներու մէջ։

Պաշտօնի կոչուած է կառավարական մեծ պաշտօններու, ինչպէս իբր ընդհանուր դատախազ։ Հայ ազատագրութեան գաղափարականը արմատացած իր սրտին եւ հոգիին մէջ, հրաւիրած է Թուրք վայրագ կառավարութեան կասկածը եւ իբրեւ յեղափոխական ձերբակալուելով աքսորուած Ատիեաման։ Երկու տարի աքսորի տաժանակիր կեանքը ճաշակելէ ետք, ընդհանուր ներումի շնորհիւ շատ մը աքսորեալներու հետ ինքն ալ եկած է իր ծննդավայրը, Մալաթիա։

1895–ի ջարդի ժամանակ հրաշքով ազատած, իր ամբողջ ընտանեօք ապաստանած է Խարբերդ եւ երկու տարի մնալէ ետք դարձած է կրկին Մալաթիա։ Զբաղած է վաճառականութեամբ եւ առեւտուրով մինչեւ 1907։ Թրքական գազանային հոգեբանութեան քաջատեղեակ եւ ապագայի անյոյս կացութիւնը ի մտի ունենալով, ստիպուած է թողուլ իր հայրենիքը եւ Թըրքական հպատակութիւնը լքելով մեկնած է դէպի Ամերիկա նոյն տարուան աշնան եւ ժամանած՝ Նիւ–Եորք 1907–ին ամբողջ ընտանեօք։ Երկու տարի հոն մնալէ ետք, ընտանեօք հաստատուած է Քլիվլենտ (Օհայօյ) 1910–ին։

Նիւ–Եորքի մէջ Բարեգործականի կազմութեան առաջին ժողովին իսկ անդամագրուած է այդ ազգային մեծ կազմակերպութեան։ Քլիվլենտի մէջ վարած է պաշտօններ եկեղեցւոյ հոգաբարձութեանց եւ Բարեգործականի մէջ։ Պարտաճանաչ անդամներէն մէկն էր Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան։

Անդամակցած է նաեւ Ռամկավար Ազատական Կուսակցութեան։

Մեռած է 1935–ին, Քլիվլենտ։ Իր այրին մահացած է 1939–ին նոյն քաղաքը։

ՍԵՐՈԲ ԷՖԵՆՏԻ ՔԻՒՆՏԻՒՊԵԿԵԱՆ.— Սերոբ էֆենտի Քիւտիւպեկեան, որդին Փիլիպպոս աղա Քիւնտիւպեկեանի, ծնած է 1868–ի ատենները։ Շնորհիւ իր ստացած կրթութեան՝ քաջ հմուտ էր հայերէնի եւ Թրքերէնի։

1893–ին եղած է կալուածոց տեսուչ (էմլաք միւտիւրի), նաեւ գանձային խորհուրդի պաշտօնեայ։

1904–ին եղած է ոստիկանական քոմիսէր Հիւսնի Մանսուրի շրջանին։ Նախ քան Օսմանեան Սահմանադրութեան հռչակումը Հայերը ջարդելու հեռագիրը իր պաշտօնին բերմամբ իրեն կը յանձնուի։ Երբ պարունակութեան տեղեակ կ'ըլլայ, կը հաղորդէ իր ընտանեաց անդամներուն, որոնք կը թելադրեն որպէսզի հեռագիրը պատկան մարմնոյն յանձնելը յետաձգէ։ Յաջորդ օր բարեբախտաբար Սահմանադրութիւնը կը հռչակուի եւ Հայեր ազատ կը մնան ջարդէ։

*Թուրք պետութեան կողմէ երեք անգամ պատուանշաններ ստացած է իր գնահատելի եւ հաւատարիմ ծառայութեանց համար։ Ասոնցմէ մին կը ստանայ, երբ Թոփուզ անունով մարդասպան աւազակը, որ Մալաթիոյ շըրջանը ահ ու սարսափ ձգած էր իր ապստամբութիւններով, իր հնարամիտ ջանքերով ծուղակի մէջ ձգելով կը ձերբակալէ։*

*Հակառակ Թուրք պետութեան մատուցած ծառայութեանց* 1915–*ին կը նահատակուի Թուրք դահիճներու ձեռամբ։*

ՅՈՎՀԱՆՆԷՍ (ՄԿՐՏԻՉ) ԷՖ. ՔԻՒՆՏԻՒՊԵԿԵԱՆ.— *Որդին պօղոս աղա Քիւնտիւպեկեանի, ծնած է Մալաթիա* 1865–*ի առենները։ Շնորհիւ իր առած կրթութեան՝ քաջ հմուտ էր հայերէն եւ թրքերէն լեզուներու։*

1890—1903 *եղած է Գանձային եւ Դատական ատեանի պաշտօնեայ։*

*Նահատակուած է* 1915–*ի համաշխարհային պատերազմին։*

ԻՍԿԵՆՏԷՐ ԷՖԵՆՏԻ ՔԻՒՆՏԻՒՊԵԿԵԱՆ.— *Քիւնտիւպեկեան ընտանիքը Մալաթիոյ հարուստ եւ ազդեցիկ ընտանիքներէն մին կը նկատուէր, մանաւանդ կաթոլիկ համայնքին մէջ։ Այս ընտանիքը ազդեցիկ եւ առաջնորդող դիրք ունէր հանրային եւ եկեղեցական մարզերուն մէջ։*

*Այս գերդաստանի անդամներէն Իսկենտէր էֆենտի Քիւնտիւպեկեան ծնած է* 1865–*ին։*

*Վարած է հետեւեալ պետական պաշտօնները. պաշտօնեայ եղած է Դատական ատեանի, տնտեսական խորհուրդի եւ առողջապահութեան ու տնտեսութեան։ Նահատակուած է* 1915–*ի տեղահանութեան շրջանին։*

ՄԻՔԱՅԷԼ ԷՖԵՆՏԻ ԹԵՐԽԱՆԵԱՆ (1865—1915).— *Մալաթիոյ Հայութեան կարկառուն դէմքերէն մէկն էր։ Մալաթիոյ բողոքականաց վարժարանը լրացնելէ ետք, համեմատաբար երիտասարդ տարիքի մէջ կը մտնէ կառավարական ծառայութեան մէջ։*

*Նախ կալուածային տուրքերու բաժանմունքին մէջ ատեն մը գործելէ ետք,* Մաճտըֆ–էմինի (*գանձապետ*) *կը կարգուի* Ատիեամանի *գաւառին համար։* 1889–*ին կ՚ունենայ պաշտօնի բարձրացում եւ կը դառնայ Մալաթիա,* Սանտըգ–էմինի *մինչեւ* 1909։ *Պաշտօններ կը վարէ նաեւ որպէս՝*

1.— *Դատական Ատեանի անդամ* (Մուհաքեմէ ազասը)։

2.— *Գաւառային խորհուրդի անդամ* (Մեճլիսի իտարէ)։

3.— *Նահանգային ընդհ. ժողովի երեսփոխան* (Մեճլիսի ումիմի)։

4.— *Քաղաքապետական խորհուրդի անդամ* (Պելետիէ ազասը)։

*Քսանամեայ հաւատարիմ ծառայութեան համար Բ. Դուռը իրեն ղըրկած էր գնահատական գիր։*

*Իր պարթեւ եւ առինքնող հասակը, անոյշ ժպիտը, ազդեցիկ դիրքը, ուրիշներու օգտակար ըլլալու պատրաստակամութիւնը մեծ յարգանք ու պատկառանք կ՚ազդէին թէ՛ Հայերուն եւ թէ Թուրքերուն։*

*Իր քաղաքական փիլիսոփայութիւնը այն եղած էր թէ, երբ բիրտ ուժին դէմ կարելի չէ բիրտ ուժով դիմադրել, այն պարագային խոհեմութիւն է աչալուրջ եւ համբերող ըլլալ, զարգանալ մտաւորապէս թէ բարոյապէս*

եւ առանց թշնամիին աչքին կասկածելի դառնալու, իր գաղտնագուսպ վարուելով անոնց հետ:

Ամուսնացած էր Վերապատուելի Մարտիրոս Կիրակոսեանի աղջկան՝ Հոփսիմէի հետ: 1915-ին ան եւս խողխողուեցաւ ԻՆՏԵՐԷի մէջ, եւ զոհ եղաւ թրքական հրէշութեան: (Խ. Պ.)

Բացի վերոգրեալներէն իբր պետական պաշտօնեայ կը յիշուին նաեւ Միհրան Թիւթելեան, Յարութիւն Արսլանեան, Յակոբ Ժարժաթեան, Յովհաննէս Աղա Ճիզմեճեան, Մարտիրոս Քեչիշեան, Գրիգոր Զոլաքեան եւ Սահակ Սահակեան (Գոմխէր), որոնց վրայ կենսագրական տեղեկութիւններ չկըրցայ ունենալ դժբախտաբար:

## ՀԱՅ ԱՌԱՋԱԿԱՆՆԵՐ, ԱՐՀԵՍՏԱՒՈՐՆԵՐ, ՄՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐ ԵՒ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԳՈՐԾԻՉՆԵՐ

ԱՇԻՐԷԹ ՊԱՊԱ.— Աշիրէթ պապա մեծ հայրն էր Յակոբ Ալաչայեանի: Հանրածանօթ էր բոլոր տարէց քաղաքացիներուն, իր յատուկ պատմութեամբ: Տարի մը Զատկի մօտերը շատ աղքատ Հայեր բանտ կը նետուին տուրքի համար: Աշիրէթ պապան օրուան Մութեսարըֆին կը ներկայանայ եւ բոլոր բանտարկուած Հայերուն պարտքերը իր վրայ կ'առնէ եւ բանտարկեալները ազատ արձակել կու տայ:

ԳՐԻԳՈՐ ԱՂԱ ԱՐՍԼԱՆԵԱՆ.— Գրիգոր աղա Արսլանեան մէկն էր այդ ՄԵԾ ԱՂԱներուն, որ գործող եւ շինող էր, կառավարութեան կամ անհատ Թուրքերու կողմէ հալածուողները կը պաշտպանէր, յանդուգն էր, արդար դատի եւ իրաւունքի համար անվհատ պայքարող էր եւ յեղափոխական էր իր ժամանակուան ըմբռնումով, որովհետեւ չէր հանդուրժեր ստրկութեան:

Աքսորի առեն Գրիգոր աղա, յուզուած, տղու պէս կ'արտասուէր: Մէկը խօսքը անոր ուղղելով կ'ըսէ. «Մի' յուսահատիր, Աղա՛, Աստուած ողորմած է, այս աքսորէն ալ կ'ազատիս»: Գրիգոր աղա արտասուալից աչքերով կը պատասխանէ. «Աքսորուելուս համար չէ որ կու լամ, այլ մեր ժողովուրդին համար, որ անտէր ու անտիրական պիտի մնայ» (Հմմտ. Խ. Եղիայեան, ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 25, էջ 10):

Գրիգոր աղա Արսլանեան 1895ի կոտորածէն առաջ նախատեսելով սպառնացող վտանգը, մաս մը երեւելիներ կանչելով իր քով՝ կը պարզէ վատ նըշանները Թուրքերու խոռ աչքով դիտելը Հայերը եւ իրենց շարժումները, եւ ջարդի սպառնալիքի մը գոյութիւնը կը փաստէ, վասնզի Մալաթիոյ զօրանոցին մէջ հայ աշխատաւորները լսած էին հարիւրապետի մը սա խօսքերը. «Աշխատեցէք, այսօր Սասունը, վաղն ալ ձեզ պիտի ջարդենք»: Այս միջոցին Մալաթիա եկած էր Սասունի դատըն եւ զինուորական միրալայը: Իսկ Միւթեսարըֆն էր տխրահռչակ Ալի Րիզան: Ան կ'առաջարկէ այդ ջոջերուն 2000 ոսկի գումար մը գոյացնել, անոր կէսը յանձնելու համար ժողովուր-

դը զինելու անյետաձգելի գործին եւ միւս կէսը յատկացնելու Աղճատաղի Քըզըլպաշ քիւրտ աշիրեթապետներուն հետ դաշինք մը կնքելու գործին, որպէսզի անոնք օգնեն Հայոց, եթէ Թուրքերը կոտորած սարքեն:

Դժբախտաբար ներկաները չեն համոզուիր եւ խնդիրը կը մնայ առկախ եւ ձեռնարկն ալ կը մատնուի կառավարութեան, եւ կը վիժի:

Մատնիչը՝ Գրիգոր աղա Զոլաքեանն էր որ Հնչակեանները տեռորի կ՚ենթարկեն:

Ինքը շատ աշխատած է 1895-ի ջարդին օրը Նաբոլէոն Պաղտոյեանը եւ Յովհաննէս Թիւթելեանը համոզելու որ Միւթեսարըֆին հրաւէրին — որ իրեն ալ ուղղուած էր — չպատասխանեն, սակայն անոնք մտիկ չեն ըրած եւ սպաննուած են, եւ ինքն չերթալով փրկուած է:

Գէորգ աղա Արսլանեան քաջալերած է Հնչակեաններու հաստատուիլը Մալաթիոյ մէջ (ՊԱՊ ՈՒԽՏԻ, թ. 26 եւ 30):

ՈՍԿԵՐԻՉ ՓԻԼԻՊՊՈՍ.— Նշանաւոր արհեստաւոր մը, որ 1839–1849ին-ատեն Հին Մելիտինէէն արդի Մալաթիան փոխադրուած էր իր հօրը Մահտեսի Յարութիւնի հետ եւ հաստատուած է Նիազի թաղը:

Քաղաքին Թուրք կառավարիչը, որուն ընտանիքին գոհարեղէնները եւ զարդեղէնները պատրաստած էր, իբր բացառիկ շնորհ զայն կը հարկադրէ խալմներու վերապահուած գլխանոցը (ֆէս) դնել: Փիլիպպոս կը վարանի, ինքը բանի դնել կու տայ եւ իր թիկնապահի ընկերակցութեամբ շուկայ կը ղրկէ:

Ոսկերիչ Փիլիպպոս ունեցաւ հինգ զաւակներ, որոնք «Ոսկերիչեան» մականունը առին: Անոնք էին.

1.— Աբրահամ, որուն որդին Յովհաննէս 1885-ի առաջին Ամերիկա գաղթած Մալաթիացիներէն մէկն է: Յովհաննէս հոն աջակից եղած է շատ մը Մալաթիացիներու:

2.— Մհ. Յակոբ, որ զոհ եղաւ 1895-ի ջարդին:

3.— Յարութիւն Ոսկերիչեան, ունեցաւ հանրային օգտակար ծառայութիւն:

1895-ին Թուրքերը քարուքանդ ըրած էին Մալաթիոյ Ս. Փրկիչ վանքը, որուն հօգաբարձու նշանակեց Առաջնորդ Գէորգ Վրդ. Արսլանեան Յարութիւն Ոսկերիչեանը: 1895-ին իր դէմ Թուրքերու ամբաստանութիւններէն փրկուելուն համար ուխտած է նորոգել այս վանքը: Յարութիւն Ոսկերիչեան շինեց նախ փոքրիկ մատուռ մը պաշտամունք կատարելու համար եւ 10 քարաշէն սենեակներ, ուխտաւորներու համար: Գլխաւոր գոհարերողը ինքը Յարութիւն Ոսկերիչեան եղաւ, որ իբր պետական պաշտօնեայ իր դիրքը օգտագործեց ի նպաստ ազգին:

1915-ին Մալաթիոյ հանրային դէմքերու եւ մտաւորականներու հետ ձերբակալուելով նահատակուեցաւ Միհրան Ոսկեան: Յարութիւն Ոսկերիչեանի որդին՝ Յակոբ, որ ազատած է 1915-16-ին եղեռնէն, հիմա կը գտնուի Հայաստան՝ Նոր Մալաթիա:

4. — Թոբէս եւ

5. — Մկրտիչ Ոսկերիչ, Փիլիպպոսի չորրորդ եւ հինգերորդ զաւակները, երկուքն ալ 1895-ի ջարդին սպաննուեցան:

Թորէսի Արմենակ անուն տղան եւ Մկրտիչի՝ Միհրան անուն մէկ տղան 1895-էն ետք Ամերիկա գացած են եւ իրենց մականունը Ոսկեանի վերածած են:

Գէորգ Ոսկերիչեան, ոսկերիչ Փիլիպպոսի ընտանիքին չէր պատկաներ: Մալաթիոյ ամենաճարտար ոսկերիչներէն մին էր, անդամ Հնչակեան կուսակցութեան: Օգտակար ծառայութիւններ մատուցած է հանրային հաստատութիւններու:

ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԷՖ. ՔԵՇԻՇԵԱՆ, հայրը Տոքթ. Միքայէլ Քէշիշեանի եւ դեղագործ Խոսրով Քէշիշեանի. եղած է ազգասէր բողոքական Խարբերդ նահանգին: Իր մասին տեղեկութիւններ ունի Տոքթ. Քէշիշեան ՊԱՊ ՈՒԽՏԻ մէջ: Բողոքականաց այս ազգասէրը ինքն Հայ առաքելական եկեղեցւոյ կը պատկանէր: (Խ. Պ.)

ՅՈՎՀԱՆՆԷՍ. ԷՖ. ՍԱՐԱՖԵԱՆ. — Այս ընտանիքը գաղթած է Եւդոկիայէն եւ «Ատուր աղայէնք» անունով ծանօթ էին հանրութեան: Մալաթիոյ հարուստ եւ ազդեցիկ ընտանիքներէն մին կը նկատուէին: Յովհաննէս էֆենտի Սարաֆեան եղած է կառավարական պաշտօնեայ, նոյնպէս օգտաշատ հանրային ծառայութիւն մատուցած է Մալաթիոյ Հայ համայնքին:

ՄԱՆՈՒԿ ԽԱՆՃԵԱՆ. — Մանուկ Խանճեանի հայրը Հեքիմ Խանէն Մալաթիա գաղթած պղնձագործ մըն էր: Մանուկ աշակերտած է Սահակեան վարժարան, որուն շրջանը աւարտելէ ետքը իր հօրը հետ աշխատած է նոյն գործին մէջ: Եղած է Դաշնակցական կուսակցութեան առաջնորդներէն մին, նոյնպէս օգտակար հանրային ծառայութիւն մատուցած է առաքելական եկեղեցւոյ եւ կրթական հաստատութիւններու: 1915-ին չարաչար տանջանքներու ենթարկուելէ ետք, սպաննուած է բանտին մէջ (ՊԱՊ ՈՒԽՏԻ, Դ. տարի, Թ, 1, էջ 11 եւ Թ. 41, էջ 17):

ՍԵՆԵՔԵՐԻՄ ՊՈՆՃՈՒՔԼԵԱՆ. — Ծնած է 1875-ին եւ իր նախնական կրթութիւնը ստացած է Մալաթիոյ մէջ: Գաղթած է Ամերիկա, ուր յարած է Ս. Դ. Հնչակեան կուսակցութեան: 1894-ին Սենեքերիմ Պոնճուքլեան եւ Առաքելեան Մալաթիացի, իրենց ընկեր ունենալով Սմբատ Ռուսիկեան Խարբերդի, Հնչակեան կուսակցութեան անդամներ, կը մեկնին Սուէտիա, տեղւոյն երիտասարդութիւնը կազմակերպելու համար, սակայն կը ձերբակալուին Թուրք կառավարութեան կողմէ: Երկար չարչարանքներու ենթարկուելէ յետոյ կը փոխադրուին Հալէպի բանտը, ուր ութը ամիսներ բանտարկուած կը մնան: Երեք բանտարկեալները Ամերիկեան քաղաքացի ըլլալնուն համար Միացեալ Նահանգաց կառավարութեան միջամտութեամբ կ'ազատին ու կրկին Ամերիկա կը դառնան:

Սենեքերիմ Պոնճուքլեան երբ քանի մը տարիներ ետք Մալաթիա վե-

*րադարձաւ, միացաւ Հայ Յեղափոխական Դաշնակցութեան եւ եղաւ անոր եռանդուն գործօն անդամներէն մին։ Երկար ատեն զբաղած է Մալաթիոյ մէջ առեւտուրով։*

1915-*ի Համաշխարհային պատերազմին ձերբակալուեցաւ եւ բանտին մէջ դժոխային չարչարանքներու ենթարկուելով նահատակուեցաւ։*

(*Տոքթ.* ՔԵՇԻՇԵԱՆ)

ԿԱՆԱՆ ԽԱՆՋԵԱՆ.— 1895-*ի Մալաթիոյ ինքնապաշտպանութեան ղեկավարներէն մէկը։*

ՅՈՎՀԱՆՆԷՍ Պ. ՍՐԱԳՈՐԾԵԱՆ.— *Ծնած է Ակըրի* 1893-*ին, որբացած* 1895-*ի Համիտեան ջարդին։ Ուսումը առած է Լատինաց վարժարանը,* 1916-*ին մարտիրոսացած աւագ վարժապետ Յարութիւն էֆ. Ճլճլեանի ձեռքին տակ։ Նիւթական աննպաստ պայմաններու բերումով կարող եղած չէ բարձրագոյն կրթութիւն առնելու։ Հետեւած է կօշկակարութեան։* 1913-*ին իր ընտանեկան բոյնը կը կազմէ ամուսնանալով Կիւրեղ Կիւրեղեանի աղջկան Օր. Նազելիի հետ։*

*Համաշխարհային պատերազմին զօրակոչին պատասխանելով զինուորական պարտականութիւնը կը կատարէ Երզնկա Դ. զօրաբանակի արհեստանոցին մէջ։ Թիֆուսէ վարակուելով վեց ամսուան օդափոխութեան արտօնութեամբ Մալաթիա կը վերադառնայ։ Իբր փախստական կը ձերբակալուի, սակայն կառավարիչին, զինուորական հրամանատարին եւ Թուրք մեծամեծներու միջնորդութեամբ ազատ կ'արձակուի։ Իր արհեստին մէջ ունեցած մեծ հմտութեան շնորհիւ, մեծ համակրանք կը շահի զինուորական եւ կառավարական պաշտօնէից մօտ։ Իր միջամտութեամբ նաեւ ազատած են* 41 *երիտասարդներ պատերազմական ճակատ ղրկուելէ, անոնց տարիքի ճշդումով։*

1920-*ի զինադադարէն ետք, իր կողքին ունենալով Գէորգ աղա Չէքիմեանը եւ Գէորգ Ժամագործեանը քահանայ ձեռնադրել կու տան Ստեփան Քհնյ. Ղազարեանը։ Կը բանան Մայր եկեղեցին եւ կը կառուցանեն Մայր եկեղեցւոյ կողքին Ղազանճի Պազարի* 45 *ազգապատկան խանութները եւ կը կազմակերպեն Ազգային խորհուրդը։*

*Ծանօթ Աթէշ Երլտըրըմ հրոսակախումբի նախօրեակին, Հայերու արտասահման փախուստը ղեկավարողի ամբաստանութեամբ կրկին բանտարկուած եւ դատարանի միջոցաւ անպարտ արձակուած է։ Այս միջադէպէն ազդուելով* 1923-*ին ընտանեօք կը մեկնի Պոլիս, ապա* 1925-*ին Ֆրանսա, Ռոման կը հաստատուի։ Եղած է գործօն անդամ Ռոմանի Մալաթիոյ Կրթասիրաց Մասնաճիւղին։ Ջեռնհասօրէն վարած է Ֆրանսայի Շրջանային գործադիր մարմնի նախագահական պարտականութիւնը սկիզբէն մինչեւ* 1937։

1935-*ին լիազօր պատուիրակ ղրկուած է Խորհրդային Հայաստան, Նոր Մալաթիա։ Այս առթիւ մասնակցած է Հայաստանի ԺԵ. տարեդարձի տօնակատարութեան։ Նոր Մալաթիա այցելութեամբ իր տպաւորութիւնները*

կեդրոնական Վարչութեան միջոցաւ փոքրիկ գրքոյկով մը լոյս տեսած է։ 1936–ին Ֆրանսայէն կազմուած ներգաղթին, մեծ թիւով Մալաթիացիներու մաս կազմելը, անոր անխոնջ գործունէութեան կը պարտինք։

(Խ. Պոճաքարրթեան)

ԿԱՐԱՊԵՏ ՏՕՆԱՊԵՏԵԱՆ (Միլլէթ վէքիլի).– Ծնած է 1881 Թուականին։ Որդին էր ծանօթ բարեկեցիկ ընտանիքի մը։ Հայրը առեւտրական էր եւ ընդհանրապէս գիւղացիներու հետ կը գործէր։ Եթէ ոչ հարուստ, գէթ նիւթական լաւ վիճակ մը ապահոված ըլլալու, Արգաւանի Պոյաճա գիւղին մօտ հող գնած էր եւ հիմնած էր ագարակ մը, որ կը կոչուէր Գըլըճճի օղլու **Չիֆթլիք** եւ հոն շինած էր նաեւ ջաղացք մը շրջակայ գիւղերուն պէտքը գոհացնելու համար։

1895–1896–ի հայկական ջարդերէն առաջ, երբ Հայոց դպրոցը լաւ վիճակ ունէր, Առաջնորդ Սահակ Եպս.ի առեն, շնորհիւ Կիւրինցի Յովհաննէս վարժապետին, Կարապետ Տօնապետեան, հոն ուսում առած է եւ հայերէնէ զատ, լաւ Թրքերէն սորված է։ Դպրոցը աւարտելէ ետք հօր անհատական գործին մէջ մտած է եւ հօրը մահէն վերջ, մինակը շարունակած է այդ գործը, մինչեւ 1914, առաջին համաշխարհային պատերազմը։ 1915–ին, Տօնապետեան կը տեսնէ Հայոց սպառնացող վտանգը, իր ընտանիքով կ'երթայ հաստատուիլ Պոյաճա գիւղը, ուր քանի մը շաբաթ վերջը՝ կը տեսնէ թէ հոն ալ ապահով չէր, կ'ապաստանի Տիրիժանի աշիրէթի ցեղապետ Շաթըր օղլուի քով, ուր կը մնայ մինչեւ զինադադար։

Շաթըր օղլուի աշիրէթին ամառնային արօտավայրը եղող Նեմայի լեռները, քանի մը Մալաթիացի հայ ընտանիքներէ զատ, քանի մը տասնեակ Տիվրիկցի հայ ընտանիքներ ալ պատսպարուած են, առանց խալածանալու, Կարապետ Տօնապետեանի պէս, որ մինչեւ կուրծքը հասնող մօրուքով մը ծածկուած էր։

Զինադադարին կը փութայ քաղաք, ուր կը բերէ նաեւ իր ընտանիքը։ Երբ յաղթական Թուրքիոյ պարտուած դաշնակիցները կը պարտադրեն իրենց որոշումները, վերապրող Հայերուն կը յանձնուին եկեղեցիներ եւ Կ. Պոլսոյ Պատրիարքարանին կարգադրութեամբ կը կազմուի առժամեայ մարմին մը, որ գրկուած նպաստները կը բաժնէ, գիւղերը տարուած հայ մանուկները եւ կիները կը հաւաքէ եւ կը պատսպարէ որբանոցին մէջ։ Այս առժամեայ մարմինին գործօն անդամներէն մէկն է Կարապետ Տօնապետեան։

Քանի մը ամսուան մէջ քաղաքէն եւ գիւղերէն կը հաւաքուին հազարէն աւելի հայ կիներ եւ մանուկներ։ Տօնապետեան կառավարիչէն առնուած հրահանգներէն քաջալերուած, յանդուգն եւ խիզախ քայլեր կ'առնէ, որբերը հաւաքելու գործին մէջ։ Ոմանք կը սկսին վարանիլ եւ ապագայ հակազդեցութենէն վախնալ, մինչ Տօնապետեան առանց ընկրկելու կը շարունակէր գործել։

Այնքան առաջ կը նետուի, որ առանց ոեւէ ընտրութեան ինքնին կառավարութենէն կը ճանչցուի ՄԻԼԼԷԹ ՎԷՔԻԼԻ, եւ այդ անունով կը գործէ,

*մինչեւ որ միլլիական շարժումը կը սկսի եւ կը փոխուի վիճակը։*

*Հելլենական պարտութենէն վերջ ամէն ինչ յեղաշրջուեցաւ եւ Թուրքը անգամ մըն ալ իր գազանութիւնը ցոյց տալ սկսաւ։ Տօնապետեան ստիպուեցաւ իր պատեանին մէջ ամփոփուիլ։ Քանի մը ամիս ետքը կը մեռնի։ Ըստ ոմանց, քիւրտ գիւղէ մը, հայ որբեր ազատագրելու գացած ըլլալով, սաստիկ ծեծի կ'ենթարկուի, եւ ատիկա պատճառ կ'ըլլայ իր վաղաժամ մահուան* (Գէորգ Ժամագործեան)։

## ՀԱՅ ԲԺԻՇԿՆԵՐ

ՏՈՔԹ. ՄԻՔԱՅԷԼ ՔԵՇԻՇԵԱՆ. — *Ծնած* 1874-*ին Մալաթիոյ մէջ։ Որդին է Համբարձում էֆէնտի (Գըզըլ) Քեշիշեանի որ երկար ժամանակ հայ Բողոքականներու Ազգապետ եղած է, հակառակ իր առաքելական եկեղեցւոյ պատկանելուն։ Իր նախնական ուսումը ստացած է Խարբերդ, Թլկատինցիի վարժարանին մէջ։* 1894-*ին վկայուած է պսակաւոր Արուեստից (Պ. Ա.) ախտղոսով Խարբերդի Եփրատ Գոլէճէն։ Ետքը Պէյրութ գալով կը հետեւի բժշկական ճիւղին եւ* 1898-*ին կը վկայուի Պէյրութի Ամերիկեան համալսարանէն։ Պէյրութէն կը մեկնի Պոլիս եւ* 1899-*ին նաեւ կը ստանայ Օսմանեան համալսարանէն բժշկական վկայական։ Պոլսոյ մէջ իրեն կ'առաջարկուի ծառայել տեղւոյն Ս. Փրկիչ Ազգային Հիւանդանոցին մէջ իբր օգնական վիրաբոյժ։ Սոյն պաշտօնը կը վարէ եւ կը գնահատուի Օրմանեան Պատրիարքէ կոնդակով։* 1900-*ին կը դառնայ հայրենիք ու շատ փայլուն ու յաջող գործունէութիւն ցոյց կու տայ Մալաթիոյ եւ Խարբերդի մէջ, վաստկելով ժողովուրդին համակրանքը։* 1902-*ին Ապտիւլ Համիտի դէմ եղած մահափորձէն վերջ երբ շարժում կը տեսնէ դաւաճներու Հայութիւնը ջարդելու, Մալաթիոյ մէջ, Տոքթէօրը իր եղբօր Խօսրովի հետ ծանօթ ըլլալով տեղւոյն ազդեցիկ խօճաներուն եւ բարձրաստիճան զինուորականներուն միջոցով առաջքը կ'առնեն այս աղէտին, յաճախ զինուորական տողանցքներ կատարելով կը ցրուեն արիւնի եւ թալանի սիրահար խուժանը։*

*Մալաթիոյ մէջ վարած է քաղաքային եւ դատական բժիշկի պաշտօն։* 1914-*ի համաշխարհային պատերազմին կը զինուորագրուի եւ հարիւրապետի աստիճանով կը ղրկուի ռուսական ճակատ։ Հասան Գալէի մէջ կը կազմակերպէ մօտ* 2000 *մահիճ պարունակող զինուորական հիւանդանոցը եւ առ ի գնահատութիւն այս աշխատանքներուն զինք կը նշանակեն Կարնոյ «Մարկօֆ» հիւանդանոցին բժշկապետ։*

*Թուրք կառավարութիւնը զինք վարձատրած է պատուոյ մէտայով եւ ժապաւէնով։ Երբ կը վարէր այս պաշտօնը իր ազգայնական ոգիով տոգորուած կ'օգնէ հայ տարագիրներուն եւ մանաւանդ կ'ազատէ իրական մահէ բազմահազար հայ երիտասարդներու կեանքը, ինքզինքը վտանգելով։ Ամբաստանելով զինք կը հանեն պատերազմական ատեանին առջեւ։ Բարերախ—*



Տէր Եղիա Քհնյ. Տէր Կարապետեան



Տէր Յակոբ Քհնյ. Մանուշեան



Տոքթ. Միհրան Քէշիշեան



Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան

տութիւն մը կ'ըլլայ իր բարձր մասօնական Լօճի պատկանիլը: Պատերազմական ատեանի Նախագահը եւ անդամներուն մէջ Մասօններ (Ազատ Որմնադիրներ) գտնուելով զինք կ'ազատեն եւ միայն քանի մը ամսուան արգելափակում կ'որոշեն:

Պատերազմի բոլոր տեւողութեան բանակին հետ կը տեղափոխուի մինչեւ Կովկասեան ճակատ եւ յետոյ Պաթում (Ռուսիա) եւ հոն ծառայութիւններ կը մատուցանէ Անդրանիկ փաշային եւ իր զինակիցներուն՝ որոնք զինադադար կնքուելէն վերջ կը բերուին Պաթում Անգլիացիներուն կողմէ:

1919-ին կը հաստատուի Կ. Պոլիս եւ ընտանեօք կը մնայ հոն մինչեւ 1923, յետոյ Քեմալական շարժումի պատճառով Պոլիսն ալ ձգելով վերջապէս կու գայ հաստատուիլ Պէյրութ (Լիբանան): 1923–1943 Լիբանանի մէջ կ'ունենայ շատ բեղուն շրջան մը: Սկզբնական շրջաններուն կը կազմակերպէ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերակցութիւնը: Պէյրութի մէջ մաս կը կազմէ Ռամկավար Ազատական Կուսակցութեան: 1943 Փետրուար ամսուն մէջ 69 տարեկան հասակին մէջ կը մեռնի: Իր ընտանիքի անդամներէն, անդրանիկ զաւակը ամուսնացած, կը գտնուի Սան-Բաօլօ (Պրազիլ). երկրորդ զաւակը Եղնիկ, մեռած է 1931-ին Թրիփոլիի (Լիբանան) մէջ: Տիկինը Վերոնիքա Քեշիշեան, աղջիկը Քաթրին եւ փոքր զաւակը Կորիւն Քեշիշեան կը գտնուին այժմ Թրիփոլի:

ՏՈՔԹ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇԻՇԵԱՆ.— Ծնած Մալաթիա 1886-ին, զաւակն է Կարապետ էֆէնտի Քեշիշեանի: Իր նախնական ուսումը կը ստանայ տեղւոյն Ժեզուիթներու գոլէճին մէջ եւ յետոյ Խարբերդի Ֆրանսական գոլէճէն յաջողութեամբ շրջանաւարտ կ'ըլլայ (1909): Մէկ տարի յետոյ կը մեկնի Պէյրութ բժշկութեան հետեւելու Ֆրանսական Համալսարանին մէջ եւ վկայուած բժիշկ է արդէն 1914-ին: Պատերազմը վրայ հասնելով, ինչպէս ուրիշ շատ մը հայեր, Տոքթ. Միհրանին ալ պաշտօն կը տրուի Թրքական բանակին մէջ: Կիլիկիոյ դրաման օրերուն Տոքթ. Միհրան Քեշիշեան կը միանայ Հայկական լեգէոնական ուժերուն եւ կը նուիրուի լայն ու ազդօգուտ գործերու՝ այդ շրջաններուն մէջ: Որպէս բժշկապետ Մերսինի հիւանդանոցներուն, ձեռնհասօրէն կը վարէ իր պաշտօնը: Հակառակ իր բազմազբաղ վիճակին, այլ մտաւորականներու գործակցութեամբ կը հիմնէ Մշակութային Ընկերութիւններ, կը կատարէ ուսումնասիրութիւններ, կ'աշխատակցի Ատանա հրատարակուող «ԱՐԱՐԱ» թերթին, Պոլսոյ «Ճակատամարտ»ին եւ այլ թերթերու: Մերսինի մէջ համաճարակի մը առաջքը առնելով կը փրկէ հազարաւորներ եւ կ'արժանանայ Ֆրանսական զինուորական ու քաղաքական վերին մարմիններու գնահատանքին եւ կը ստանայ Ֆրանսական Պատուոյ Լեգէոնի Ասպետութիւն: Յետոյ կը մեկնի Միւնիխ, Գերմանիա եւ կը հետեւի ելեքտրաբուժականութեան ճիւղին: Անկէ կ'անցնի Փարիզ եւ կը հետեւի հոգեբուժութեան եւ կը ստանայ վկայականը երեք պատուոյ մետայլներով միատեղ:

1928-ին կու գայ կը հաստատուի Պէյրութ, ուր արդիական ելեքտրաբուժական դարմանատուն մը կը հաստատէ Ք. Ճառագայթներու բոլոր մեթոտներով օժտուած. սակայն երկար չի տեւեր իր գործունէութիւնը Պէյրութի մէջ։ Սրտի եւ ընտանեկան դժբախտ շրջան մը անցընելէ վերջ կը ստիպուի լուծել իր բոլոր գործերը եւ դառնալ Փարիզ։ Պէյրութ գտնուած շրջանին Հայ Ազգ. Գաւառականի անդամ կ'ըլլայ։ Փարիզ հաստատուելէ վերջ կը սկսի հրատարակել «Առողջ Կեանք» ամսաթերթը. 2–3 ուրիշ հայ բժիշկներու հետ կը հաստատէ «Բօլիքլինիք» մը։

Բայց կարծես կեանքը դադրած էր իրեն ժպտելէ, առողջութիւնը կը վատթարանայ, կը ստիպուի բուժարան մը երթալ եւ բաւական լաւանալէ վերջ, երբ կը սկսի գործը, օր մըն ալ օթօյի արկածով կը ստիպուի նորէն հիւանդանոց ապաստանիլ, իր ոսկրային հիւանդութիւնը երեւան կու գայ այդ արկածին պատճառով ու անողոք եւ երկարատեւ հիւանդութիւնը վերջապէս վերջ կը դնէ իր երիտասարդ կեանքին Մարտ 1935-ին։ (ՊԱՊ ՈՒԽՏԻ 1936 Թ. 3)։

ՏՈՔԹ ՍԻՄՈՆ ՃԸԼՃԸԼԵԱՆ.— Կրտսեր եղբայրն է Յարութիւն Ճըլճըլեանի։ Ծնած է 1877-ին։ Նախնական ուսումը կը ստանայ Մալաթիոյ Լատինաց վարժարանին մէջ։ Կ'անցնի Խարբերդ, Լատինաց գոլէճը։ Յետոյ կ'երթայ Պէյրութ ու բժշկութիւն կ'ուսանի Ֆրանսական համալսարանին մէջ։ Մասնագիտանալու համար կը մեկնի Եւրոպա ու 1914-ին կը դառնայ Մալաթիա իբր մասնագէտ բժիշկ կանանց հիւանդութիւններու։

Բայց հազիւ տարի մը կրցաւ մնալ, վասնզի վրայ հասաւ զինուորագրութիւնը։ Թրքական բանակին մէջ իբր սպայ կը ղրկուի Արղայ գիւղը։ Բայց Թուրքը ասոր ալ չի հանդուրժեր, ու իբր բանտակից զինք կը տանին Խարբերդ։

Կ'ըսուի թէ Խարբերդէն Ջարդի ճամբուն վրայ Տօքթ. Սիմոն քիւրտ բարեկամներու շնորհիւ սպանդէն կ'ազատուի ու կ'անցնի Տերսիմ։ Շրջան մը հոն կը մնայ ու չի կրնար տեղափոխուիլ, նկատի ունենալով որ փախստական սպայ է. բայց իր քիւրտ բարեկամները մինչեւ 1924 իր ողջութեան լուրը կը բերեն։ Բայց այդքան, ի՞նչ վախճան ունեցաւ, ո՞ւր մնաց, մարդ չգիտցաւ։ (Մելքոն Ասլանեան)։

ՏՈՔԹ. ՆՇԱՆ ՄԱՆՈՒՇԵԱՆ (ՄԱՆԻՇԱԿԵԱՆ).— Կարապետ Պէշիկթօ-Թիւրեանի կը յաջորդէ Հայ Աւետարանականներու վարժարանին իբր տնօրէն։ Նշան Մանուշեան ուսանած է բժշկութիւն։ 1915-ին Համաշխարհային պատերազմին, Թրքական բժշկական խումբին հետ Ռուսական ճակատը կը ղրկուի, ուր գերի կ'իյնայ եւ կը ղրկուի Սիպերիա, ուրկէ փախուստ կու տայ անունը փոխելով եւ կը հաստատուի Հայաստան եւ կը գործէ Նիըր Իսթ Րըլիֆի մէջ։

Խորհրդային Հայաստանի մէջ երկար տարիներ իբրեւ բժիշկ ծառայելէ յետոյ, պետութեան կողմէ հանգստեան կը կոչուի։

Իր խոր ծերութեան մէջ, ներկայիս կ'ապրի Նոր Մալաթիա, իր սեփական տան մէջ։

ՏՈՔԹ. ՍԻՄՈՆ ՃԸԼՃԸԼԵԱՆ.— *Տոքթ. Սիմոն Ճըլճըլեան իր ուսումը աւարտած է Պէյրութի Ֆրանսական համալսարանին մէջ: Երբ ուսման ընթացքը կ'աւարտէ, կու գայ Պոլիս և իր հմտութեան եւ ճարպիկութեան շնորհիւ կառավարական բժիշկ կը նշանակուի:*

*1915-ի կոտորածէն քանի մը տարի առաջ կու գայ եւ կը հաստատուի Մալաթիոյ մէջ եւ միւս հայ մեծամեծներու եւ մտաւորականներու հետ կը նահատակուի Թուրքերու ձեռամբ:*

## ԴԵՂԱԳՈՐԾՆԵՐ

ԽՈՍՐՈՎ ՔԵՇԻՇԵԱՆ.— *Ծնած է Մալաթիա 1880 Թուականին, իր նախնական ուսումը կը ստանայ Խարբերդի բողոքականներու Նախակրթարանին մէջ, երբ հայրը Համբարձում Քեշիշեան ամբողջ Խարբերդի բողոքականներու ազգապետ ընտրուելով ընտանեօք կը փոխադրուի Խարբերդ, Խոսրով կը հետեւի Եփրատ Գոլէճի ընթացքին եւ վկայական ստանալէ ետք ուսուցիչ կ'ըլլայ Թլկատինցիի դպրոցին մէջ: Հոն երկու տարի կը պաշտօնավարէ լոյս եւ ազգային վերադարթնումի ոգի ներշնչելով նոր սերունդին: 1899-ին իր մեծ եղբօր՝ Տոքթ. Միքայէլ Քեշիշեանի Պոլսէն Խարբերդ եւ Մալաթիա վերադարձին, Խոսրով կը լքէ ուսուցչական ասպարէզը եւ 1900-ին կը մեկնի Պէյրութի Ամերիկեան համալսարանը՝ հետեւելու քիմիաբանութեան եւ դեղագործութեան ճիւղին: Յաջողութեամբ կ'աւարտէ սոյն ճիւղը եւ կը մեկնի Պոլիս, ստանալու Թրքական վարժարանին վկայականը: Կը դառնայ իր ծննդավայրը՝ Մալաթիա: Իր եղբայրը Տոքթ. Միքայէլ Քեշիշեան արդէն պատրաստած էր լաւագոյն կերպով կահաւորուած եւ օժտուած դեղարան մը ուր կը սկսի անմիջապէս դեղագործութեան: Դեղարանի գործերէն դուրս կ'աշխատակցէր Պոլիս հրատարակուող անգլիերէն լեզուով «Լէվանդ Հերըլտ»ի եւ Պոլսական հայ մամուլին: Վայելած է լայն ժողովրդականութիւն, սիրուած էր բոլորէն եւ իբրեւ ճշմարիտ հայրենասէր մը, կ'առաջնորդէր ու ուղղութիւն կու տար հասարակական, ուսումնական, դաւանական եւ ընկերային քաղաքական հարցերուն:*

*1915-ին Թուրք կառավարութեան ուղղակի հրամանով ու ցուցմունքներով, ինչպէս ամէն տեղ, Մալաթիոյ մէջ ալ առաջին անգամ ձերբակալուեցան մտաւորական առաջնորդները, որոնց հետ եւ Խոսրով Քեշիշեան, որ դըժոխային տանջանքներէ յետոյ, կացինահար սպանուած է Թուրք ճիւաղներու կողմէ:* (ՊԱՊ ՈՒԽՏԻ, *Դ. տարի Թ.* 1—10):

## ՄԱԼԱԹԻՈՅ ՀԱՅՈՑ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՄԱԿԱՐԴԱԿԸ

*Համայնքի մը քաղաքակրթական զարգացման աստիճանը կը չափուի առաւելապէս իր ուսումնական զարգացման վիճակով:*

*Մալաթիոյ Հայերը ինչպէս առհասարակ բոլոր Թուրքիոյ հայաբնակ քաղաքներու Հայերը բնակակից էին Թուրքին, քիւրտին եւ ասորիին եւ գիտելի է որ ամենէն առաջինթացն էին, վասնզի ժողովուրդին նախակրթութեանը համար, ինչպէս առհասարակ ամէն տեղ, հոն ալ Հայերը իրենց եկեղեցիներու քով հաստատած էին դպրոցներ, ուր համայնքին զաւակները կը ստանային նախակրթութիւն ժամանակին եւ պարագաներու համաձայն ելեւէջ ունեցող հայկական նախակրթարաններու մէջ: Հայ վարժարաններէն զատ, խօսուեցաւ վերը նաեւ յարանուանական օտար վարժարաններու վրայ, որոնցմէ օգտուողները հայ աւետարանական եկեղեցւոյ զաւակները եղած են մեծ մասամբ:*

*Բայց դժբախտաբար Մալաթիա չէ ունեցած Ամերիկեան երկրորդական Գոլէճ մը որ կրնար մեծագոյն օգուտ ընծայել Մալաթիոյ Հայ Համայնքին ուսումնական մակարդակին բարձրացման:*

*Լատին վարդապետներու վարժարանին նկատմամբ, իբր կրօնական բրօբականտի ծառայող հաստատութիւններ՝ մինչ Հայերը վերապահութիւն ունեցած են Մալաթիոյ մէջ, ինչպէս ուրիշ շատ տեղեր եւ հետեւաբար շատ աշակերտներ չեն ունեցած:*

*Մալաթիացիք գլխաւորապէս օգտուած են մերձակայ Խարբերդի Եփրատ Գոլէճէն, ուրկէ շրջանաւարտ Մալաթիացիները թիւով 34 (28 տղայ եւ 6 աղջիկ) էին միայն եւ ասիկա համեմատական չէր քաղաքին հայ բնակչութեան հետ:*

*Իսկ Եփրատ Գոլէճէն զատ ուրիշ երկրորդական վարժարաններու մէջ ուսում առնող Մալաթիացի հայ անհատներու թիւը շատ քիչ էր, ինչ որ իբր չափանիշ դժբախտաբար շատ նպաստաւոր չէ Մալաթիացի հայերուն համար: Հոս կու տանք ցուցակաշարը երկրորդական վարժարանէ շրջանաւարտ Մալաթիացի Հայերու:*

## ԵՓՐԱՏ ԳՈԼԷՃ

*Այս հաստատութենէն ընթերցաւարտ եղած են 1881ին՝ .*

1. ՏՈՔԹ. ՄԻՆԱՍ ԿԻՐԱԿՈՍԵԱՆ (*մեռած 1885–ին Մալաթիա*):
2. ԳԱՐԵԳԻՆ Մ. ԿԻՐԱԿՈՍԵԱՆ (*մեռած 1936–ին Ամերիկա*):

*1893–ին՝*

3. ՌՈՒԲԷՆ ՈՐԲԵՐԵԱՆ (*մեռած 1931–ին Փարիզ*):

*1894–ին՝*

4. ԿԱՐԱՊԵՏ ԱՆՍՈՒՐԼԵԱՆ (*նահատակուած Մալաթիոյ մէջ 1895–ին*):
5. ՏՈՔԹ. ՄԻՔԱՅԷԼ ԳԸԶԸԼՔԵՇԻՇԵԱՆ:
6. ՄԿՐՏԻՉ Ս. ՈՐԲԵՐԵԱՆ (*նահատակուած 1915–ին*):

1897–*ին*

7· ՍԱՄՈՒԷԼ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ, *մեռած Աղեքսանդրիա* 1945–*ին*:

1899–*ին*

8· ԳՐԻԳՈՐ ԺԱՄԿՈՉԵԱՆ, *նահատակուած* 1915–*ին*:

9· ԽՈՍՐՈՎ ԳԸԶԸԼ ՔԵՇԻՇԵԱՆ, *նահատակուած* 1915–*ին*:

1900–*ին*

10· ԽԱՉԱՏՈՒՐ ՀԱՅԿ ՊՈՆԱՊԱՐԹԵԱՆ, *մեռած Ամերիկա* 1956–*ին*:

1905–*ին*

11· ԽՈՍՐՈՎ ՊՈՆԱՊԱՐԹԵԱՆ, *այժմ Ամերիկա*

1907–*ին*

12· ՅԱՐՈՒԹԻՒՆ ՇԵՔԵՐՃԵԱՆ, *մեռած* 1954–*ին Ամերիկա*:

1908–*ին*

13· ՅԱԿՈԲ Գ· ԱԼԱՇԱՆԵԱՆ, *այժմ Պաղտատ*

1909–*ին*

14· ՄԻՀՐԱՆ ԹԵՐԽԱՆԵԱՆ, *Մալաթիա, վաճառական, նահատակուած* 1915–*ին* :

15· ԳՐԻԳՈՐ ԱԼՎԱՐԴԵԱՆ, *վախճանը անյայտ*

16· ՄԵՍՐՈՊ ՍԱՀԱԿԵԱՆ (*Սահակ Մեսրոպ*), *փաստաբան, Կ· Պոլիս*

1910–*ին*

17· ԽԱՉԱՏՈՒՐ ԱԶՄԵԼԵԱՆ, *առեւտրական, նահատակուած* 1915*ին*

18· ՄԿՐՏԻՉ ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ, *փաստաբան, Կ· Պոլիս*

19· ՄԱՆՈՒԷԼ ՔԵՓԵՆԵԿԵԱՆ, *նահատակուած* 1915–*ին*

1911–*ին*

20· ԳԵՂԱՄ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ, *ուսուցիչ*

21· ԳՐԻԳՈՐ ԱՍԼԱՆԵԱՆ, *մեռած*

21· ՅՈՎՀԱՆՆԷՍ ԴԱՒԻԹԵԱՆ,

23· ԳԷՈՐԳ ՔԵՆՏԻՐԵԱՆ, *նահատակուած* 1916–*ին*

1913–*ին*

24· ՄԻՀՐԱՆ ԽԱՆՋԵԱՆ

25· ԵԴՈՒԱՐԴ ՊԱՂՏՈՅԵԱՆ, *նահատակուած* 1915–*ին*

26· ՍԱՐԳԻՍ ՔԷՕԼԷԵԱՆ

27· ՅՈՎՀԱՆՆԷՍ ԽԱՆՋԵԱՆ, *մեռած*

1914–*ին*

28· ՅՈՎՀԱՆՆԷՍ ԽԱՆՋԵՐԼԵԱՆ, *Կոլկաս ապաստանած, անհետացած*

## ԵՓՐԱՏ ԳՈԼԷՃԻ ԱՂՋԻԿՆԵՐՈՒ ՄԱՍԻՆ

*Շրջանաւարտ եղած են*

1902–*ին*

1· ԱՆՆԱ ՊՈՆԱՊԱՐԹԵԱՆ (*Տինկիլեան*)

1911–*ին*

2· ԻՍԿՈՒՀԻ ԱՀԱՐՈՆԵԱՆ

1912–ին
3․ ՎԱՐԴԱՆՈՅՇ ՓԱՊՈՒՃԵԱՆ
1913–ին
4․ ՎԱՐԴԱՆՈՅՇ ՊՈՆԱԲԱՐԹԵԱՆ, *նահատակուած* 1915–*ին*
5․ ՏԻԳՐԱՆՈՒՀԻ ՊՈՆԱԲԱՐԹԵԱՆ
6․ ՊԱՅԾԱՌ ՊԱՂՏՈՅԵԱՆ, *Ամերիկա անցած է։*

*Ասոնց վրայ կարելի է աւելցնել անունը* ՀԱՅԿԱԶ ՊՈՆԱԲԱՐԹԵԱՆԻ, *որ* 1914–*ի եղեռնական տարին Ֆրէշման կարգի ուսանող էր եւ Տերսիմի ճամբով անցած է Ռուսիա եւ անկէ Ամերիկա։ Այժմ դեղագործ ի Լոս Անճելոս։*

*Այս ցանկին վրայ ակնարկ մը մեզ պիտի համոզէ թէ Մալաթիոյ Հայերը իրենց քով գտնուող այդ կրթական հաստատութենէն չեն կրցած օգտուիլ ոչ ուսում առնելու տեսակէտով, քանի որ անոր շատ քիչ աշակերտ տուած են եւ ոչ ալ հոն ուսում առնող Մալաթիացիներէն, վասնզի առհասարակ հոն ուսում առնող Մալաթիոյ զաւակներէն շատ քիչեր ծառայած են Մալաթիոյ կրթական զարգացման, այլ հեռացած են իրենց ծննդավայրէն եւ մեծամասնաբար Ամերիկա գաղթած են եւ հոն ապրած են։*

## ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՄԱԼԱԹԻԱՑԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ

1895–*ի ջարդերէն քիչ ետք Կարնոյ Սանասարեան վարժարանը կ'ընդունի Մալաթիայէն երեք որբ ու ուշիմ աշակերտներ, որոնք էին․*

1․ ԳԱԲՐԻԷԼ ԱՆՍՈՒՐԵԱՆ, *ուսուցիչ*
2․ ՄԱՆՈՒԷԼ ՄԻՐԱՔԵԱՆ, (*Տըրֆըլեան*), *ուսուցիչ*
3․ ՍԱՐԳԻՍ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ, *քաջածանօթ նկարիչը*
*Այպ՝*
4․ ԼԵՒՈՆ ԵԱՂՈՒՊԵԱՆ, *գծագրիչ։*

*Նոյնպէս երկու կիսաւարտներ՝* ՄԿՐՏԻՉ ԹՈՓԱԼԵԱՆ *եւ* ԱՐԱՄ ԿԵՕՋԻՒՐԵԱՆ։

*Առաջինը, Գաբրիէլ Անսուրեան, ծառայած է իր ծննդավայրին մէջ, իբր տնօրէն Ազգ․ Վարժարանին, յիշատակելի անուն մը թողլով։*

*Երկրորդը նոյնպէս կրթական ասպարէզ ընդգրկեց, կարճ բայց արդիւնաւոր պաշտօնավարութենէ մը ետք, դառնացած հեռացաւ ազգային վարժարանէն եւ պաշտօնավարեց Թուրք կառավարական* ԻՏԱՏԻ *դպրոցը եւ ապա Ամասիոյ Իբրանոսեան առեւտրական վարժարանը, մինչեւ* 1915–*ի մեծ եղեռնը։*

*Իսկ երրորդը Մալաթիա չդարձաւ, վասնզի իր ընդունակութիւնը նըկատի առնելով Սանասարեանի խնամակալութիւնը զայն ղրկեց արտասահման՝ կատարելագործելու համար իր արուեստը։*

*Սարգիս Խաչատուրեան միջազգային չափանիշով ծանօթ նկարիչ մը*

եղաւ, Հայ անունին պատիւ բերող, ինչպէս պիտի տեսնուի սորբեւ, Մալաթիայէն դուրս Մալաթիացիներու վրայ խօսուած ատեն (*)։

## ԽԱՐԲԵՐԴԻ ՖՐԱՆՍԱԿԱՆ ԳՈԼԷՃԻ ՄԱԼԱԹԻԱՑԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐԸ

1· ՏՈՔԹ. ՃԼՃԼԵԱՆ
2· ՏՈՔԹ. ՄԿՐՏԻՉ ՃԼՃԼԵԱՆ
3· ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ԵԱԶԸՃԵԱՆ, *առեւտրական*
4· ՏՕՆՈՍԻՈՍ ԿԵՍԱՐԵԱՆ, *պաշտօնեայ*
5· ՏՈՔԹ. ԿԱՐԱՊԵՏ ԵԱԶՄԱՃԵԱՆ
6· ՅԱԿՈԲ ԴԱՆԻԷԼԵԱՆ
7· ԽԱՉԱՏՈՒՐ ԳԱՐԱԳԸԶԵԱՆ
8· ԱՐՄԵՆԱԿ ԹԷՐԶԻԵԱՂՈՒՊԵԱՆ, *ատամնաբոյժ*
9· ՏՈՔԹ. ՄԻՀՐԱՆ ՔԵՇԻՇԵԱՆ, *հողերան*։

## ԱՅՆԹԱՊԻ ԱՄԵՐԻԿԵԱՆ ԳՈԼԷՃԷՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏ ՄԱԼԱԹԻԱՑԻ

ԳԷՈՐԳ ՉՈԼԱԳԵԱՆ, *լեզուագէտ—հրապարակագիր*։

## ՎԵՆԵՏԻԿԻ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԷՆ ՇՐՋԱՆԱՒԱՐՏ ՄԱԼԱԹԻԱՑԻ

ԿԱՐԱՊԵՏ ԿԷՕԶԻՒՐԵԱՆ, *առեւտրական*։



(*) *Սանասարեանէն շրջանաւարտ էր նաեւ Պօղոս Տէր Պօղոսեան, որ Մալաթիոյ Մայր Վարժարանին մէջ շատ արդիւնաւոր պաշտօնավարութիւն ունեցած է (տես վերը), բայց Մալաթիացի չէր։*



# ԺԴ. ՄԱՍ

## ՄԱԼԱԹԻԱՑԻՔ ՄԱԼԱԹԻԱՅԷՆ ԴՈՒՐՍ

*Հակառակ անոր որ Հայերը գաղթական ժողովուրդ մը եղած են, իրենց բնավայրին աշխարհագրական ձախող դիրքին եւ արշաւանքներու ենթարկուած ըլլալու պատճառով, Մալաթիացիք ընդհակառակը գաղթականութիւններ շատ չեն ունեցած աշխարհի չորս կողմը մինչեւ 1915—16-ին մեծ եղեռնը, որ ցանուցիր ըրաւ ամբողջ Հայութիւնը: Մալաթիոյ Հայերը աւելի սերտիւ կապուած ըլլալ կը թուին իրենց ծննդավայրին, Հայոց գաղթականութեան շատ հակամէտ չըլլալուն:*

*Գլխաւոր պատճառը թերեւս այն է որ Մալաթիոյ հայ բնակչութիւնը հին ժամանակներէն սկսեալ քանի քանի անգամներ քաղաքը լքած հեռացած եւ միշտ նորէն լեցուցած են, նոր եկուորներով, որոնք հաստատուն բնակչութեան ցանկութեամբ հոն եկած են:*

*Քաղաքին մի քանի անգամ դատարկանալուն եւ լեցուելուն գլխաւոր պատճառը քաղաքին դիրքն էր: Մալաթիա իբր կամրջագլուխ վայր մը եղած է, ուր երկար ատեն իսլամները եւ քրիստոնեաները սաստկապէս մաքառած են:*

*Բիւզանդացիք հոն երկար ատեն կռուած են քրիստոնեայ քաղաքակըրթութիւնը պաշտպանելու համար իսլամական արշաւանքներու դէմ, Եփրատի գիծը պաշտպանել աշխատելով, բայց վերջապէս ընկճուած են, վասնզի իսլամները յաջողած են անցնիլ Եփրատը եւ կործանել քրիստոնէութեան ախոյեան Բիւզանդական Կայսրութիւնը:*

*Մալաթիա այս թոհուբոհին մէջ եթէ կրցած է պահել իր գոյութիւնը, անիկա կը պարտի իր դիրքին առաւելութիւններուն, ինչպէս նաեւ իբրեւ արդիւնաբեր հողամաս իր ընծայած առաւելութիւններուն: Հետեւաբար միշտ Մալաթիան Հայոց համար եղած է ցանկալի բնակավայր մը, ուր եթէ խաղաղութիւն կարենային վայելել, բնաւ գաղթելու վրայ պիտի չխորհէին:*

*Մալաթիա Փոքր Հայքի կը պատկանէր, սակայն Հայերը զայն Հայաստանի մաս նկատած են եւ շատ անգամ քաղաքը կը յիշատակեն անոր տալով հայկականութիւն մը՝ անոր վրայ խօսուած ատեն* «ՄԵԼԻՏԻՆԷ ՀԱՅՈՑ» *կոչելով քաղաքը:*

*Եւ նկատելով թէ բոլոր այն պատճառները, որ Մեծ Հայքի բնակիչները կը մղէին իրենց հայրենիքէն հեռանալու, նոյնպէս գոյութիւն ունէին*

Փոքր Հայքի մէջ, Մալաթիայի Հայերն ալ անխուսափելի կերպով պէտք էր հեռացած ըլլային իրենց բնակավայրէն եւ գաղթած այլուր։

Արդարեւ Մալաթիոյ շրջանէն ալ Հայերու այլուր գաղթած ըլլալու փաստերը գոյութիւն ունին եւ զարմանալի ալ չէն տիրող պայմաններուն պատճառով, որոնք շրջակայ քաղաքներուն մէջ գոյութիւն ունէին եւ պատճառ եղած էին գաղթերու եւ տեղափոխութիւններու որոնց յիշատակութեան յաճախ կը հանդիպինք։

Մալաթիոյ համար եթէ որոշ յիշատակութիւններ չունինք, սակայն այդ իրողութեան անժխտելի փաստերը կը հանդիսանան բազմաթիւ հայանուն վայրերու գոյութիւնը, որոնք, Թրքական տիրապետութեան ենթարկուելէ ետք հայաբնակ ըլլալէ դադրած էին՝ ապահովաբար անոնց բնակիչներուն հեռանալուն պատճառով։

Ասով հանդերձ պէտք է դիտել տալ թէ Մալաթիացիք գաղթելու նուազ տրամադիր եղած են քան թէ Փոքր Հայքի պատկանող ուրիշ քաղաքներու հայ բնակիչները։

Ասոր պատճառը կրնայ ըլլալ Մալաթիացիներու հողին եւ անոր արտադրութեանց կապուած ըլլալը, մինչ օրինակի համար Կեսարացիք երկրագործութենէ բոլորովին հեռու մնացած են եւ բնաւ անով չեն զբաղած։

Հետեւաբար Մալաթիացիք շատ տրամադիր չեն եղած իրենց արդաւանդ և բերքերով հարուստ երկիրէն հեռանալու, հակառակ անոր որ Մալաթիա ալ հաւասարապէս ենթակայ էր բոլոր այն դժբախտութիւններուն, որոնց կ՚ենթարկուէին Մեծ ու Փոքր Հայքերու հայ բնակիչները, կեղեքուելով, հարստահարուելով ու կողոպտուելով Թուրքէն եւ քիւրտէն։ Աւելին ըլլալով Մալաթիա ենթակայ էր երկրաշարժներու եւ քանի մը անգամ կիսակործան վիճակի վերածուած, բայց Հայերը յամառօրէն կառչած են իրենց քաղաքին եւ անկէ չեն հեռացած եւ վերաշինած են։

Ասիկա երեւոյթ մըն է, որ ուշագրաւ է եւ թերեւս ուրիշ աւելի խոր պատճառներ ունի կարօտ ուսումնասիրութեան որ կատարելու համար բաւականաչափ տուեալներ գոյութիւն չունին դժբախտաբար։

Առանց պատճառներու հետազօտութեան կարելի է վճռաբար ըսել թէ Մալաթիացիք շատ գաղթականներ չեն ունեցած ուրիշ քաղաքներու մէջ։ Օրինակի համար Կ. Պոլսոյ մէջ, որ խառնարան մը եղած էր Հայաստանի եւ Փոքր Ասիոյ Հայ գաղթականներուն, Մալաթիացիք գրեթէ բնաւ չեն յիշուած եւ Մալաթիացիք չունէին վայր մը, որ իբր նախամեծար գաղթավայրը համարուած ըլլար իրենց, ինչպէս օրինակ Եգիպտոս՝ Արաբկիրցի Հայերուն համար։

Մալաթիացիներու յիշատակութեան շատ քիչ կը հանդիպինք եւ անոնք ալ շատ նշանակելի կամ կարեւոր դեր չեն կատարած։

Մէկ խօսքով Մալաթիացիք գաղթել չեն սիրած։ Ասոր համար դուցէ Մալաթիացի եկեղեցականներու թիւը չափազանց քիչ եղած է եւ իբրեւ կաթողիկոս, պատրիարք կամ առաջնորդ շատ քիչ կը յիշուին Մալաթիացիք,

որոնք իրենց ծննդավայրէն դուրս գործած ըլլան:

Երուսաղէմի միայն Մալաթիացի հազիւ քանի մը եկեղեցական, ամէնն ալ վարդապետ, կը յիշատակուին այդ դարուն վանքին մէջ, մինչ միւս Անատոլեան քաղաքներէն աւելի շատ թիւով միաբաններ գտնուած են Երուսաղէմի մէջ: Նոյնպէս Մալաթիացի յայտնի եկեղեցականի մը անունը չէ պահուած մեր տարեգրութիւններուն մէջ:

Մալաթիացի ուրիշ նշանաւոր անձերու անունին ալ շատ քիչ կը հանդիպինք:

Այս երեւոյթը թերեւս պատահական է եւ Մալաթիացիք ալ գաղթած են այլուր, սակայն բախտ չեն ունեցած փայլուն դիրքերու հասնելու եւ յիշատակուելու: Իմ կարծիքովս, Մալաթիացիք Հայոց առեւտրական բնազդով նուազ օժտուած են, նախ անոր համար որ իրենց երկիրը շատ բարեբեր ըլլալով, ապրուստի նեղութիւն չեն ունեցած եւ երկրորդ՝ իրենց երկիրին բերքերուն այլուր վաճառումը իրենց վաճառականական բնազդներուն որոշ չափով գոհացում տուած է. որով հեռաւոր աշխարհներ նետուելու պէտքը չեն զգացած:

Այս երկու պատճառներէն դուրս կ'ենթադրեմ ուրիշ զօրաւոր պատճառ մըն ալ, որ Հայերը որոնք ծփուն բնակչութիւն մը կը ներկայացնէին, զօրաւոր մրցակիցներ ունէին իրենց դէմ առեւտրական կեանքի մէջ եւ պայքարին մէջ միշտ յաղթական չեն կրցած ըլլալ, այդ քաղաքին մէջ, ուր իրենց դէմ կը մաքառէին Սուրիացին, Արաբը, Յոյնը, Ասորին, որոնք միշտ քաղաքին բնակչութեան մէջ մեծ թիւ մը կը կազմէին:

Հետեւաբար հին ժամանակներու մէջ հակառակ քաղաքին առեւտրական վայր մը ըլլալու եւ հարուստ քաղաք մը ըլլալուն, Հայերը իբրեւ առեւտրականներ չեն փայլած, եւ եթէ գաղթողներ եւ Մալաթիայէն հեռացող Հայեր գտնուած իսկ են, իրենց բնակավայրէն հեռու չեն կրցած դիրք գրաւել եւ միշտ երկրորդական վիճակ մը ունեցած են:

Մալաթիացի Հայերը նոր ժամանակներու մէջ գաղթել սկսած են իրենց մօտակայ քաղաքներուն, մանաւանդ Խարբերդի օրինակով, ուր ինչպէս ուրիշ շատ տեղեր Ամերիկացի Միսիոնարները յաջողած էին Ամերիկան ներկայացնել Աւետեաց երկիր մը, ուր կը վազէին Խարբերդցիք իրենց քաղաքին մէջ հաստատուած Ամերիկեան Գոլէճին ուսուցիչներու Ամերիկայի համար չռայլած գովեստներէ շլացած:

Մալաթիացիք, որ իրենց կարգին բաւական ուսանողութիւն մը (34 երկսեռ շրջանաւարտներով) ունեցած են Եփրատ Գոլէճին մէջ, իրենք ալ դէպի Ամերիկա գաղթողներ ունեցած են (*) եւ հետեւաբար սփիւռքի մէջ Մա-

(*) Այս շրջանաւարտները առաջապահները եղած են դէպի Ամերիկա գաղթող Մալաթիացիներուն, բայց ինչպէս վերը 35 Մալաթիացի շրջանաւարտներու ցանկը ցոյց կու տայ, անոնցմէ մօտաւորապէս մէկ քառորդը Ամերիկա գացած է: Բայց Ամերիկա բաւական եղած է որ ուրիշներ հետեւին անոնց:

լաթիացիներ երեւան եկած են ԺԹ. դարուն վերջին քառորդէն սկսեալ, երբ Հայ եւ Թուրք յարաբերութիւնները պրկուած էին եւ Հայերը աւելի քան երբեք կը տառապէին Թուրքիոյ մէջ, որ սպանդանոց դարձած էր Հայերուն համար:

Մալաթիոյ Հայերը 1878 թուականէն առաջ, բոլոր Հայաստանի, ինչպէս նաեւ Փոքր Հայքի գլխաւոր քաղաքներու պանդխտութեան վայրը հանդիսացող Կ. Պոլսոյ մէջ, որ 1453-էն սկսեալ հայ գաղթականներու համախմբման վայր մը հանդիսացած է, վասնզի հոն հաստատուած էին մասնաւորաբար Կեսարացի, Թոքատցի, Կարնեցի, Վանեցի, Ակնցի եւ այլ գաղթականներ բաւական թիւով, Մալաթիացի գաղութ մը գոյութիւն ունեցած չէ, որչափ կ'երեւի:

Մալաթիացիք չեն յիշուած նաեւ Կ. Պոլսէն դուրս ուրիշ գաղութներու մէջ, ինչպէս Լեհաստան, Ռումանիա, Պուլկարիա, Իտալիա, Ֆրանսա եւայլն:

Հետեւաբար մինչեւ ԺԹ. դար Մալաթիացի գաղթականներու յիշատակութիւն շատ քիչ կը պատահինք, բայց ասիկա ըսել չէ թէ Մալաթիացի Հայեր բնաւ չեն գաղթած Պոլիս եւ այլ քաղաքներ:

Հաւանօրէն Մալաթիայէն ալ Կ. Պոլիս, Իզմիր, Հալէպ եւ թերեւս Իտալիոյ վաճառաշահ նաւահանգիստներ, որոնք այնքան փայլուն դեր մը կը կատարէին, Մալաթիացի Հայեր գտնուած են, սակայն տարեգրութիւններ չեն պահուած անոնց անունը: Պատահօրէն յիշուած է Սարգիս անուն Մալաթիացի մը, որ նախապէս ունէր կտաւագործարան մը եւ ապա ձեռնարկած վաճառականութեան եւ հետզհետէ գործը ընդարձակելով Հալէպի, Աղեքսանդրիոյ եւ Պոլսոյ հետ յարաբերութեան մտած եւ մեծ անուն շահած էր:

Թուրք կառավարութիւնը զինքը կ'անուանէ Գաբուճի Պաշի եւ անգլիական տէրութիւնը անոր պատուանշան կու տայ:

Ուրիշ այս կարգի ձեռներէց Մալաթիացի Հայու մը յիշատակութեան չհանդիպեցայ իմ պրպտումներուս մէջ, որ իր ծննդավայրէն դուրս ուրիշ վայրերու մէջ ալ ձեռնարկներ ըրած ըլլայ:

Մալաթիացիք առեւտրական բախտախնդիր յանդգնութիւններ չեն ունեցած, մինչեւ որ կեանքի հարկադրանքով Հայերէն շատեր սկսան լքել իրենց բնակավայրերը եւ գաղթել Թուրքիայէն դուրս՝ զերծ մնալու համար թրքական կեղեքումներէն եւ հարստահարութիւններէն:

Որչափ ցոյց կու տան տուեալները, առաջին վայրը, ուր Մալաթիացիները գաղութ մը կազմած են, ոչ այնքան մեծ թիւով, մինչեւ 1915 աղէտալի տարին, ան ալ Ամերիկան է, ուր եւս շատ կանուխ չեն նետուած, եւ առաջին գաղթականները, որչափ կը թուի, շատ քիչ էին այն ատեն Ամերիկայի մէջ:

1880—1890 թուականներէն ետք երբ դէպի Ամերիկա գաղթի հոսանքը մեծ համեմատութիւն առաւ եւ Ամերիկա օրէ օր աճող թիւով հայ գաղթա-

կաններու ապաստանի վայրը եղաւ, Մալաթիացի Հայերը մերձակայ Խարբերդի օրինակին հետեւելով իրենք ալ Ամերիկայի ուղին իբր «ճանապարհ կորստեան»ը բռնեցին, թէեւ ոչ այն համեմատութեամբ, որքան Խարբերդի Հայերը, որոնք իրենց քաղաքին մէջ հիմնուած Ամերիկեան ԵՓՐԱՏ ԳՈԼԷՃԻՆ ազդեցութեան տակ Ամերիկան դրախտավայր նկատած եւ ստուար թիւով Ամերիկա գացած են, հրաժարելով օսմանեան հպատակութենէն:

Թուրք կառավարութիւնը, կամ աւելի անոր Կարմիր Սուլթանը Համիտ, Հայերը Թուրքիայէն հեռացնելու եւ Հայաստանը Հայերէ պարպելու իր քաղաքականութեան նպատ մը համարած է այս գաղթը, որ կը վրդովէր Հայերը իբր ազգային աղէտ մը:

Սակայն երկուքն ալ մեր դժբախտ ազգին համար նոյն արդիւնքը կ'ունենային, վասնզի եթէ Թուրքիոյ մէջ կարմիր ջարդով կը կորսուէր, Ամերիկայի մէջ սպիտակ ջարդը նոյն արդիւնքի կը հասցնէր Հայերը, սա տարբերութեամբ որ այս երկրորդը անզգալաբար մեզի կորստեան կը մատնէր:

Մեր միամտութիւնը հոն էր որ ձեռք առնուած կիսամիջոցները կը կարծէինք թէ կը բաւէին ազգին անէացման առաջքն առնելու եւ կը մաքառէին իրենց աննշան ոյժերով ձուլման վտանգին դէմ, կազմելով մշակութային եւ հայրենակցական միութիւններ, որոնցմով կը կարծէին երկարաձգել Հայութեան հոգեվարքը:

Մալաթիացիք միւս Հայերէն աւելի խորամանկ չէին նոր ուղի մը ընտրելու համար. ուստի Ամերիկայի Մալաթիացիները հակառակ իրենց թիւին, իրենք ալ ցոյց տուած են եռանդ ու ոգեւորութիւն, եւ նման ուրիշ քաղաքներու գաղթականներուն՝ իրենք ալ աշխատած են օգտակար ըլլալ իրենց ծննդավայրին անոր կրթական գործին ի նպաստ կազմելով ԾԻԱԾԱՆ ՄԵԼԻՏԻՆԷԻ անուն ընկերութիւն մը 1892-ին, որ հինգ տարի այինքն, մինչեւ 1897 կեանք ունեցած է, հակառակ անոր այդ հինգ տարիներու ընթացքին, Թուրքիոյ մէջ պատահած 1895-96-ին հայկական ջարդերը աւելի զօրացուցին Հայոց Թուրքիայէն հեռանալու շարժումը, որուն դէմ մաքառած են մեր հրապարակագիրները եւ հանրային գործիչները, որոնք հայրենիքը դատարկացնելը անխորհուրդ քայլ մը կը նկատէին եւ ծանր յանդիմանութիւններ կ'ուղղէին գաղթողներու հասցէին, մինչ եկաւ ատեն մը որ ամէն հայ աւադել սկսաւ որ աւելի մեծ թիւով Հայեր գաղթած չէին օտար երկիրներ:

Ինչ որ չարիք կը թուէր 1880-էն մինչեւ 1915, բարիք նկատուիլ սկսաւ Առաջին Համաշխարհային Պատերազմին, որմէ ետքը Մալաթիացիք մեծ թիւով գացին Ամերիկա, ուր այսօր բաւական ստուար Մալաթիացի Հայերու գաղութ մը ունինք:

Ես հոս պիտի չխօսիմ Մալաթիացիներու Ամերիկա հաստատութեան եւ իրենց գործունէութեան պատմութեան վրայ, վասնզի այս գիրքին իբր յաւելուած պիտի կցուի Տիար Իսրայէլ Տէր Յովհաննէսեանի ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ յիսնամեայ (1904-1954) պատմութիւնը, ուր ներկայացուած է Ամերիկահայ գաղութին սկիզբը, անոր 1880-ին կազմուա-

րութիւնը, 1886-ին Նիւ-Եորքի մէջ ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ մը կազմութիւնը, իբրեւ առաջին Հայ կազմակերպութիւնը, որուն յաջորդած են 1885–1895 տասնամեակին մէջ կազմուած Հայրենակցական Միութիւնները մեծ մասամբ Խարբերդի եւ իր գիւղերուն անունով:

Այս շարժումին մէջ Մալաթիացիք ալ իրենց բաժինը ունեցած են, յաջորդական չորս շրջաններու մէջ հետզհետէ աճելով.—

Ա. շրջանը մինչեւ 1895 երկարող շրջանն է, ուր Մալաթիացիք թիւով շատ աննշան էին, բայց եւ մնալ չէին ուզեր ուրիշ քաղաքացիներէն:

Բ. շրջանը կը սկսի 1895-էն, որ Համիտեան ջարդերու շրջանն է, ուր Հայերը Թրքական դժոխքէն զանազան ձեւերով, փախուստով, կաշառքով, հպատակութենէ հրաժարելով կը հեռանային՝ Թրքական հալածանքէ ազատելու համար: Այս շրջանի Մալաթիացիք թէեւ համեմատաբար թիւով քիչ, սակայն բաւական թիւով Ամերիկա կ'երթան:

Այդ շրջանին մէջ կը կազմուի 1904-ին Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը, որ հայրենակցականներու մէջ ամենէն զօրաւորներէն մէկը եղած է, ինչպէս ցոյց կու տայ իր պատմութիւնը:

Գ. շրջանը կը սկսի 1908-ի Օսմ. Սահմանադրութեան վերահաստատութեան թուականէն, ուր արգելքները ջնջուած ըլլալով, Հայերը ազատօրէն ինքնակամ հեռանալ սկսան Թուրքիայէն՝ Ամերիկա երթալով բախտ որոնելու համար:

Դ. շրջանը 1915-ի հայաջինջ եղեռնէն ետք փրկուած հայ բեկորներէն ինքզինքնին Ամերիկա նետողներն են, որոնք բաւական ստուարացուցին Ամերիկայի Հայութիւնը, ինչպէս Մալաթիացիներու թիւը, դոնէ իբր քանակ եթէ ոչ որակ, վասնզի դժբախտաբար յիշուած չեն բարձր արժէքով Մալաթիացի մտաւորականներ, դրագէտներ եւ գիտուններ:

Մուշեղ Սերոբեան «ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՏԱՐԵՑՈՅՑ»ին (1912 էջ 12–34) մէջ փորձ մը կատարած է Ամերիկահայ գաղութին ծագման եւ զարգացման վրայ՝ տալու համառօտ տեղեկութիւններ եւ անոր պատմութեան պատրաստութեան համար կատարուած փորձերը ներկայացնելու: Հոն շատ արդարացի կերպով կ'ըսէ թէ «Ամերիկահայ գաղութին ծագումը, իր մանրամասնութեանը մէջ գրկուած պիտի մնայ ընդ միշտ, իր հարազատ եւ վաւերական պատմութենէն: Ոչ մէկ աչք որչափ ալ սրատես ըլլայ եւ թափանցող, պիտի չկրնայ հետեւիլ նոր աշխարհի ափերուն վրայ ցրցնուած հայ կեանքի անցնող դրուագներուն, որոնցմէ մեծագոյն մասը մեռած են յաւիտենապէս, ազգային գաղթական պատմութեան համար: Կարելի է պատմական տեսութիւններ գրել, գաղթային կեանքէ վերլուծումներ ընել, կարելի է նոյնիսկ պատմական-ընկերաբանական եզրակացութեան մը գալ Ամերիկահայ գաղթային կեանքի վերաբերմամբ, բայց իր ծագումներով ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ մը գրել անկարելի պիտի ըլլայ» (ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՏԱՐԵՑՈՅՑ, 1912, էջ 12): Ինչ որ ընդհանուրի համար ճիշդ է, անոր մասերուն համար ալ ճիշդ է:

Ինչ որ անկարելի էր ընդհանուր Ամերիկահայ գաղութին համար, անկարելի էր նաեւ Ամերիկայի Մալաթիացիներուն համար։

Արդարեւ հակառակ բաւական ընդարձակ տեղեկութիւններուն, որ կրցած է ձեռք բերել Մուշեղ Սերոբեան, 1895-էն առաջ Ամերիկա գաղթող Մալաթիացիներու մասին գրեթէ ոչինչ կամ շատ աննշան տեղեկութիւններ ունի։

Անիկա կը յիշէ միայն ՀԱՃԻ ԳԱԲՐԻԷԼ ՊԵՏՐՈՍԵԱՆ անուն Մալաթիացի Հայ մը, որ 1901-ին առաջին Հայն եղած է որ հաստատուած է Եդեմի մէջ եւ հող գնած (Ամերիկահայ Տարեցոյց, 1912, էջ 59)։

Նոյն տարեցոյցին մէկ ուրիշ էջին վրայ (տես էջ 70) Մուշեղ Սերոբեան կը խօսի ծրագրի մը վրայ որ 1901-ին մշակուած է Ֆրեզնոյի շուրջը հողեր գնելու համար։ Մասնաւորապէս որոշուած էր արդի Եդեմի տեղը մեծ տարածութեամբ հողեր գնել, բայց կարելի չեղաւ ընդհանուր համաձայնութիւն մը գոյացնել եւ վիժեցաւ գործը։

Միայն մէկ հոգի Հաճի Գաբրիէլ Պաղտոյեան Մալաթիացի, 1901-ին 40 արտավար հող մը գնած է Եդեմի մէջ եւ հոն հաստատուած երբ արդէն հինգ Ամերիկացի ընտանիքներ կը բնակէին այդ ընդարձակ տարածութեան վրայ։

Ուշիմ ընթերցողը անշուշտ կռահեց թէ այս երկու Հաճի Գաբրիէլները, երկուքն ալ Մալաթիացի, միեւնոյն անձն են որ սխալմամբ (հաւանօրէն տպագրական սխալ) Պետրոսեան եղած է փոխանակ Պաղտոյեանի, վասնզի ՊԱՂՏՈՅԵԱՆ մականունով կը յիշէ զինքը Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան յիսնամեայ կեանքի պատմագիրը Տիար Իսրայէլ Տէր Յովհաննէսեան, զայն նշանակելով իբր մէկը Մալաթիացի Ամերիկա գաղթող հնագոյն գաղթականներուն։

Տիար Իսրայէլ Տէր Յովհաննէսեան այդ դասակարգէն, այսինքն հնագոյն Մալաթիացի գաղթականներէն, կը յիշէ ուրիշ երեք անուններ առանց շատ մանրամասնութիւններ տալու։

Անոնցմէ առաջինն է Մալաթիացի ուսանող մը ՄԻՍԱՔ ԵԱՂՈՒՊԵԱՆ, որ եկած է Ամերիկա ուսանելու, 1881-ին ՔՍԱՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ, քան Հաճի Գաբրիէլ Պաղտոյեան։

Երկրորդը որ հաւանօրէն նոյնպէս Հաճի Գաբրիէլ Պաղտոյեանէն առաջ Ամերիկա եկած Մալաթիացի մըն էր, Տոքթ. Մինաս Մ. Կիրակոսեանն էր, որ մեռած է 1913-ին։

Նոյնպէս կը յիշուի երրորդ մը, Գամալիէլ Եաղուպեան, որ մեռած է 1919-ին։

Իրապէս Մալաթիացի գաղութի մը գոյութիւնը կը սկսի Ի. դարու ըսկիզբը և անոր աճումը 1915էն ետք։ Այդ բախտորոշ թուականը նաև սկիզբն է Սուրիոյ եւ Լիբանանի մէջ Մալաթիացի Հայ գաղութներուն, որոնք բեկորներն էին տարագրեալներուն։

Իսկ աւելի ուշ է որ Մալաթիոյ Կրթասիրացի ջանքերով ներգաղթ կը կատարուի Հայաստան եւ հոն կը հիմնուի Նոր Մալաթիան, Հայաստանի նորաշէն աւաններէն ամենէն ճոխ եւ ամենէն ուժեղ, բարգաւաճ եւ ներկայանալիներէն մէկը որուն վրայ Կրթասիրաց Պատմութեան մէջ շատ բան կայ ըսուած:

# ՊԵՏԱԿԱՆ ՊԱՇՏՕՆԱՏԱՐՆԵՐ

## ԷՐՄԷՆԻ ՍԻՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱ

Որքան որ տկար եղած ըլլար Մալաթիացիներու գաղթելու սէրը կամ տրամադրութիւնը անկարելի է որ 1453-ին Կ. Պոլսոյ գրաւումէն ետք, երբ ստուարացաւ օսմ. պետութեան մայրաքաղաքին մէջ Հայոց թիւը գաւառներէ գաղթած կամ Անատոլուէն բռնի տեղափոխուած Հայերով, անխուսափելի էր որ Մալաթիայէն ալ, գուցէ շատ քիչ թիւով Հայեր ալ տեղափոխուած ըլլան Կ. Պոլիս:

Դժբախտաբար չեն յիշուած Կ. Պոլսոյ մէջ գործող Մալաթիացի Հայեր:

Մասնաւորապէս եթէ ոչ համաշխարհային պատմութեան գէթ օսմանեան պատմութեան համար նշանակութիւն ունեցող անձի մը անունին կը հանդիպինք որուն իր կրօնքը ուրանալու հարկադրած են, սակայն չեն կրցած անոր ազգութիւնը մոռցնել եւ անոր անունի կից պահած են «ԷՐՄԷՆԻ»՝ Հայ կոչումը:

Ապահովաբար մանկաժողովով (Տէվշիրմէ) հաւաքուած հայ մանուկ մը, որ Ենիչէրիներու Օճախի մէջ իսլամացած էր այս հայը, որ «էրմէնի» տիտղոսը պահած էր մինչեւ վերջը, նոյնիսկ Եպարքոսի պաշտօնին հասնելէ ետքն ալ:

Էրմէնի Սիւլէյման փաշա ոչ առաջինն էր եւ ոչ ալ վերջինը այսպէս բռնի իսլամացողներուն, սակայն գոնէ թէ միակն էր որ իր Հայ ծագումը այսպէս չեշտուած, իր անուան կից պահած է, յանդուգն նախանձախնդրութեամբ մը, մինչ վիճակակից ուրիշներ միշտ աշխատած են իրենց ծագումը մոռնալ եւ մոռցնել:

Իսլամանալով Ենիչէրի դարձած հազարաւորներ կողոպուտ եւ վայրագութիւններ գործելով Ենիչէրի Օճախներու մէջ մնացած են իբր բանակային եւ չեն կրցած բարձրանալ այս ստորադաս վիճակէն վեր:

Էրմէնի Սիւլէյման ինչպէս Հայ անունը, նոյնպէս Հայ նկարագիրը պահած էր եւ յաջողած էր հասարակ զինուորի վիճակէն բարձրանալ մինչեւ Եպարքոսութեան եւ օսմանեան պատմութեան կարեւոր դէմքերէն մէկը դառնալ:

Սիւլէյման փաշա ծնած էր 1605-ին Մալաթիոյ մէջ, հայ ծնողքէ, եւ հաւանաբար 1622-ին մանկաժողովով (Տէվշիրմէ) Ենիչէրի օճախի մը մէջ մտած, ուր ըստ սովորութեան իսլամացուած էր:

*Սիւլէյման Մալաթիացի, իր ընտանիքէն Գաբու Աղասը Իսմայիլի միջնորդութեամբ Ապտուլլահ փաշայի գործակատարը կ'ըլլայ եւ ապա պաշտօնի կը կոչուի արքունիքին* ԽԱՍ ՕՏԱՍԻ*ն մէջ*։

*Ծարպիկ, աշխատասէր մարդ, իր ասպարէզին մէջ յառաջանալով եղաւ արհեստապետ,* Տիւլպէնտճի աղասը, *եւ ապա Սուլթան Իպրահիմի* (1640–1648) *թիկնապահ*։

*Քիչ ատենէն վեզիրութեան աստիճան կը ստանայ եւ վեց ամիսի չափ Եպարքոսի խորհրդական կ'ըլլայ եւ յաջորդաբար Կարնոյ եւ Սեբաստիոյ կուսակալութիւնները կը վարէ։ Կը մասնակցի Կրետէի գրաւման, ուրկէ Կ. Պոլիս դառնալով Ավճը Մոհամմէտ Դ.ի* (1648–1687) *քրոջ Այիշէ Սուլթանուհիին հետ կ'ամուսնանայ*։

9 *Օգոստոս* 1644-*ին երբ Եպարքոս յաջորդեց Մուրատ փաշայի* (Երեմիա Չելեպիի օրագրութիւն, *էջ* 85), *երբ* 12 *տարեկան անփորձ Սուլթանի իշխանութեան տակ փառասէր Վալիտէ Սուլթանուհին ստեղծած էր խառնակ վարչութիւն մը՝ պալատական խարդաւանանքներով լի, այնպէս որ ժէ. դարու ալխալի տաղնապներուն մատնուած էր երկիրը, նահանգները ըմբոստացած էին կեդրոնի դէմ, Փոքր Ասիան ապստամբ հրոսապետներուն ենթարկուած, պետական գանձը դատարկուած, Թօշակներու անկանոն վճարման համար վաշխառուներէ փոխառութիւն կ'ըլլար, շրջաբերող դրամներու կշիռքը պակաս էին։ Իբր հետեւանք զանազան պարագաներու կռիւ, գանգատ եւ խռովութիւն անպակաս էր ժողովուրդին մէջ*։

*Իրարու յաջորդող վարչապետներ բռնամահ կը զոհուէին իբրեւ պատասխանատու այդ իրողութեանց. ուստի Էրմէնի Սիւլէյման փաշա խոհեմութիւնը ունեցաւ իր կնոջ միջոցով Վալիտէ Սուլթանուհիէն խնդրելու որ ազատ արձակուի իր պաշտօնէն, վասնզի շատ հաղուադէպ էր Եպարքոսներուն առանց իրենց գլուխը վրայ տալու, պաշտօնէն հրաժարիլը եւ կեանքը ազատելը, այնպէս որ Եպարքոս մը անմիջապէս որ պաշտօնի կոչուէր, իր դամբարանը շինել կու տար պատրաստ ըլլալու համար*։

*Սիւլէյման փաշա վեցուկէս ամիս Եպարքոսութենէ ետք կրցաւ ազատիլ այս վտանգէն եւ կեանքը փրկել եւ Սատրազամութենէն հրաժարելէ ետք Սիլիսթրէի կուսակալ նշանակուեցաւ, իսկ Եպարքոս եղաւ Սպարապետ Հիւսէին փաշա, երբ տակաւին Կրետէ կը գտնուէր* (1656)։

*Ենիչէրիները Կրետէէն դառնալով պահանջեցին իրենց ռոճիկները՝ Պոլսոյ փողոցները շրջելով եւ պոռալ-կանչելով թէ հաւատքի սիրոյն տարիներով կռուեցան օտար հողերու վրայ* (Մարմարա *օրաթերթ*, 15 *Յուլիս*, 1945)։

*Լամարթին՝ Սիւլէյման փաշայի համար գրած է թէ* «Իր յարափոփոխ եւ տկար ձեռքերով չկրցաւ դանդաղեցնել կառավարութեան վայրէջքը, ուստի երբ հրաժարեցաւ պաշտօնէն, վերստին խօսուիլ սկսաւ Քէօփրիւլիւի անունը, բայց այնպիսի ժամանակի մը մէջ որ ամէն բան ծախու կ'առնուէր, նոյն իսկ երկիրին իշխանութիւնը։ Անոր ունեւորութեան համեստութիւնը

իբրեւ պատրուակ ծառայեց զինքը հեռացնելու այդ պատիւէն. — Ի՞նչպէս ընչազուրկ մէկը կրնայ կառավարել մեր երկիրը, — մոլտաց Սիւլէյման փաշա ինքն իրեն ու տէրութեան կնիքը դրկուեցաւ Կրետէի յաղթական սպարապետին Հիւսէին փաշայի (Լամարթին, Զ. հտ., էջ 748):

*Սակայն Հիւսէին փաշայի պաշտօնը շատ կարճ եղաւ, վասնզի միեւնոյն 1656 տարուան մէջ իրարու յաջորդեցին չորս ուրիշ Եպարքոսներ, որոնք էին Սուրնազան Մուսթաֆա փաշա, Սիյավուշ փաշա, Պօյնի էյրի կամ Պօյնի Եաղալը Մեհեմմէտ փաշա եւ վերջապէս 1656 Դեկտեմբեր 5-ին Քէօփրիւլիւ Մեհեմմէտ փաշա, որ իբր իմաստուն անձնաւորութիւն եւ զօրաւոր անհատականութիւն կրցաւ կայսրութիւնը բարւոքել եւ զօրաւոր բազուկով մը կառավարել Օսմ. Կայսրութիւնը մինչեւ իր մահը 1661, վեց տարի, իր ընտանիքէն ուրիշ մեծ Եպարքոսներու պէս, որոնք Օսմ. պետութիւնը ծանր տագնապներէ փրկած էին իրենց բացառիկ կարողութիւններով:*

*Քէօփրիւլիւ Կ. Պոլսէն բացակայիլ պարտաւորուեցաւ պատերազմի երթալու համար եւ էրմէնի Սիւլէյման փաշա Մալաթիացի, ըստ Երեմիա Չելեպի Քէօմիւրճեանի՝* «որդի Հայոյ», *Եպարքոսական տեղապահ* (գայմագամ) *նշանակուեցաւ* 15 *Յունիս* 1659-*ին Իսմայիլ փաշայի տեղ* (*տես* Օրագրութիւն Երեմիա Չելեպի Քէօմիւրճեանի, էջ 338), *անշուշտ Քէօփրիւլիւ Մեհեմմէտ փաշայի խորհուրդով եւ թելադրութեամբ, ինչ որ էրմէնի Սիւլէյման փաշայի բարեկարգիչ ոգի ունենալու ապացոյց մը կրնայ նկատուիլ* (1):

*Իր Եպարքոսութեան տեղապահութեան ատեն* 13 *Յուլիս* 1660-*ին, պատահեցաւ Հոճա փաշայի առաջին անուանի հրդեհը* (Երեմիա Չելեպիի օրագրութիւն, էջ 356) *եւ նախանձոտ հակառակորդներ զինքը իբրեւ անհոգ ամբաստանեցին:*

*Սիւլէյման փաշա պաշտօնանկ եղաւ եւ տեղը գայմագամ դրուեցաւ Եուսուֆ փաշա: Սիւլէյման փաշա դարձեալ գնաց Սիլիսթրէ իբր կուսակալ:*

*Բայց երբ խռովայոյզ պահու մը Եպարքոս Քէօփրիւլիւ Ահմէտ փաշա բանակին գլուխը անցած Կ. Պոլսէն մեկնեցաւ, երրորդ անգամ էրմէնի Սիւլէյման փաշա հրաւիրուեցաւ փոխանորդելու, սակայն քիչ ատենէն հիւանդագին վիճակն ու ծերութիւնը նկատի առնելով, արտօնուեցաւ քաշուիլ իր Սկիւտարի բնակարանը:*

*Տարին չէր լրացած, երբ ամենազօր Վալիտէ Սուլթանուհին, որուն փեսան եւ վստահելին էր Սիւլէյման փաշան, կանչեց զայն Էտիրնէ, ուր ինք կը գտնուէր եւ զայն անուանեց արքունական պալատին վերակացու. իրեն յատկացուցին իբրեւ ռոճիկ Զանկըր քաղաքին հասոյթը, զոր ստանալու համար երբեմն հոն կ՚երթար քննութեան:*

---

(*) *Սիւլէյման փաշայի պաշտօնավարութեան շրջանին վրայ խօսելով Երեմիա Չելեպի կ՚ըսէ թէ անոր օրով* «Պատրիարքն Հոռոմոց զերեք եպիսկոպոս զոմն կախեալ ետ եւ զոմն ի Թի տվեալ եւ զեպիսկոպոս մեծ ոմն ի Պրուսայ կախեալ ետ, զի պատրիարքութեան սպասէին»: (Օրագրութիւն, *էջ 338*):

*Քանի մը տարիէն բոլորովին հեռացաւ զործօն կեանքէն և առանձնացաւ Սկիւտար, ուր 14 տարի խաղաղ կեանքով ապրելէ ետք, 85 տարեկանին մեռաւ 1680–ին*: (*Տես Եղուարդ Ալեանաք*, «Հնասէրի Պրպտումներ, Սատրազամ էրմէնի Սիւլէյման փաշա (1654–1655)», «Մարմարա» *Օրաթերթին մէջ*, *կամ* Արեւ, 1943, *Դեկտեմբեր*, 25, *Պիմէն Զարղարեան*, Մարմարա *թ*. 718 *եւ* 721, 12 *եւ* 15 *Յուլիս* 1945 *եւ Ալֆոնս տը Լամարթին* (1793–1859) Թուրքիոյ Պատմութիւնը, *Զ*. *հատոր*, *էջ* 748):

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐ

*Արդէն վերը յիշուեցաւ թէ Մալաթիացի յայտնի եկեղեցականներու յիշատակութեան չենք հանդիպիր մեր տարեգրութիւններու մէջ:*

*Չկայ մէկ հատ կաթողիկոս եւ ոչ ալ եպիսկոպոս, որ Մալաթիայէն դուրս կարեւոր դեր մը կատարած ըլլայ, մեր եկեղեցիին նուիրապետութեան մէջ:*

*Ինչպէս ըսի, արդէն նոյնիսկ Երուսաղէմի վանքին միաբաններուն մէջ Մալաթիացի վարդապետներու թիւը աննչան է, մինչ քաղաքներ կան, որոնք մեծ թիւով անդամներ ունեցած են անցեալին Ս. Յակոբեանց միաբանութեան մէջ:*

*Հայ Առաքելական Եկեղեցիէն դուրս հայ կաթոլիկ յարանուանութեան մէջ երեւոյթը տարբեր չէ: Մալաթիա կրօնքի ծառայող դէմքեր չէ տուած ազգին:*

*Սակաւաթիւ Մալաթիացի եկեղեցականներ կը յիշուին Մալաթիոյ շրջանակէն դուրս, զորս կը յիշատակեմ:*

## Ա. — ՀԱՅ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԵԿԵՂԵՑԻԻ ՊԱՏԿԱՆՈՂՆԵՐ

1. ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍ ՎՐԴ. ԳՐԻԳՈՐԵԱՆ – ՍԱՏՈՋԵԱՆ. — *Ծնած է* 1826–*ին*: 1866–*ին կը ձեռնադրուի աբեղայ, իբր միաբան Ս. Յակոբեանց միաբանութեան*: *Վարած է* 1866–1869 *Ս. Փրկչի*, 1869–1870 *Եաֆայի*, 1870–1874, *Ս. Յարութեան տեսչութիւնները եւ* 1874–1895 *եղած է հիւրընկալ, եւ* 1875–1876 *վերատին տեսուչ Յոպպէի ,եւ* 1876–1907 *տեսուչ Ռամլէի*:

*Ս. Յակոբի վանքին կտակած է պարտէզ մը եւ խանութներ Ռամլէի մէջ, հազար ոսկի արժողութեամբ, ինչպէս նաեւ ինն հատ Ռումելիի երկաթուղիի արժեթուղթեր*:

*Վախճանած է* 1907–*ին* (*տես Ազատնունի*, Միաբանք եւ Այցելուք, *էջ* 49 *կամ* Նոր Մալաթիա, *Ը*. *տարի*, *թ*. 4):

2. ՄԻՆԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՄՐԻԿԵԱՆ. — *Ծնած է* 1827–*ին*: *Ձեռնադրուած է* 1856–*ին Զնքուշի մէջ*: 1896–*ին ուխտի կ'երթայ Երուսաղէմ եւ հոն կը մնայ իբր միաբան*:

Կը վախճանի Երուսաղէմ 1909–ին, 82 տարեկան։ (Տես Ազատնունի, Միաբանք եւ Այցելուք, էջ 288 կամ Նոր Մալաթիա, Ը. տարի, Թ. 4)։

3. ԱԹԱՆԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԱՍԼԱՆԵԱՆ.— Ծնած է 1860–ին։
Ձեռնադրուած է 1892–ին աբեղայ։
1904–ին եղած է Հիւրընկալ Երուսաղէմի վանքին։
1905–ին տեսուչ Բեթլեհեմի։
1907–1910 Տեսուչ Ս. Յարութեան։
1911–1913 Տեսուչ Ս. Փրկիչի։
1913–1922 վերստին Տեսուչ Ս. Յարութեան։
1911–1915 Անդամ Տնօրէն Ժողովի։
Կը վախճանի 13 Մայիս 1927։

4. Ս. ՍՏԵՓԱՆ ՔԱՀ. ՂԱԶԱՐԵԱՆ.— Ծնած է Մալաթիա 25 Դեկտեմբեր 1880–ին։ Իր նախնական կրթութիւնը ստացած է քաղաքին Կաթողիկէ Հայոց վարժարանը։ Դպրոցը աւարտելէ ետք կը դառնայ լաւ արհեստաւոր շնորհիւ իր արհեստին։ 1915–ին զերծ կը մնայ տարագրութենէ եւ ջարդէ, ծառայելով Թրքական բանակին շինութեանց։

Ինչպէս յիշուած է վերը, 1920–ին եղեռնէն փրկուած Մալաթիացիներու միաձայն հաւանութեամբ կը ղրկուի Խարբերդ, ուր Գիտ Եպիսկոպոսէն քահանայ կը ձեռնադրուի եւ կը դառնայ Մալաթիա եւ Քիւրտերու ու Թուրքերու քով գտնուող հայ բեկորները կը յաջողի հաւաքել եւ դպրոց մը բանալ։

Բայց ինչպէս տեսնուեցաւ, «Աթէշ Եըլտըրըմ» հրոսախումբին տուած նեղութիւնները անտանելի վիճակ մը կը ստեղծեն, եւ Մալաթիոյ Հայերէն շատերը կը հեռանան իրենց ծննդավայրէն։ Տ. Ստեփան քհն. իր հօտին հետ կը մեկնի Հալէպ, ուր կը քահանայագործէ եւ Ամերիկայի Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան նպաստներուն եւ կրթական ձեռնարկներուն կ'աջակցի իբր լիազօր։ Հետզհետէ կ'այցելէ Առաջնորդարանին հրամանով Համա, Հոմս, Պապ, Մումպուճ, Ճարապլուս, Թէլ–Ապիատ, Այն Էլ Արուս եւ Ռաքքա եւ տարագիր բազմութիւններ կը հովուէ եւ կը կազմակերպէ Թաղական խորհուրդներ ընտրելով։

Մէկ տարի հովուած է Քեսապի Հայերը, Սահակ Կաթողիկոսի հրամանով եւ երկու տարի ալ Ադէնի Հայերը՝ Արտաւազդ Արքեպս.ի հրահանգով։

1929–1954 իբրեւ Առաջ. Փոխանորդ հովուած է Այն–էլ–Արաբի կամ Արաբ–Բունարի Հայերը, միաժամանակ հոգալով Ճարապլուսի, Թէլ–Ապիատի, Այն–էլ–Արուսի եւ Ռաքքայի Հայերը։

Առ ի գնահատութիւն իր ծառայութեանց՝ Սահակ Կաթողիկոս անոր կը շնորհէ Աւագ քահանայութիւն, եւ 1950–ին Հայ Բարեգործական Ընդհանուր Միութիւնը՝ իր գնահատանքը։ 7 Նոյեմբեր 1954–ին կը վախճանի Պէյրութ իր որդւոյն Տ. Վահան քհն.ի քով։ (Նոր Մալաթիա, ԺԷ. տարի, Թիւ 4)։

*Ինչպէս կը տեսնուի, Տ. Ստեփան Աւագ քհն. Ղազարեան, թէեւ Մալաթիայէն դուրս գործունէութիւն ունեցած է, սակայն նշանակելի է որ ինքն չէ որ իր ծննդավայրէն դուրս այնքան արդիւնաւորապէս գործած է, այլ պարագաներու ստիպման տակ է որ ոստում ըրած է իր շրջանակէն դուրս:*

## Բ.— ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ՆՈՒԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՊԱՏԿԱՆՈՂՆԵՐ

1. ՄԻՆԱՍ Ծ. ՎՐԴ. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ.— *Ծնած է* 22 *Դեկտեմբեր* 1864*-ին:*

*Աշխարհական անունով, Կարապետ, տակաւին շատ դեռատի, ուսուցչութեան կը նուիրուի, ապա կը մտնէ Զմմառի կղերանոցը, զոր աւարտելէ ետք* 1 *Նոյեմբեր* 1889*-ին վարդապետ կը ձեռնադրուի, իբր միաբան այդ վանքին, եւ երկու տարի հոն իբր ուսուցիչ կ'աշխատի: Կ'այցելէ հոգեւոր պաշտօնով Զնքուշ, Ատրեաման, Հաճին, Տիարպեքիր, ուր Ծայրագոյն վարդապետի աստիճան կը ստանայ:*

1912—1913 *տարիներուն Սեբաստիոյ առաջնորդական փոխանորդ կ'ըլլայ:*

1914*-ին Զմմառի միաբանական ժողովին քուէով վանքին մատակարար կ'ընտրուի, եւ այլեւս կը մնայ վանքին մէջ՝ յաջորդաբար վարելով փոխ-Մեծաւորի, Մեծաւորի եւ իբր հոգեւոր Հայր Կղերանոցի:*

*Մինչեւ իր վախճանումը,* 13 *Յունիս* 1944*-ին, կը պահէ այս պաշտօնը:*

1915—1918*-ին երբ վանքին կալուածները կը գրաւէ Թուրք կառավարութիւնը, Մինաս Ծ. Վրդ. Տէր Մինասեան իր նիւթական միջոցները կը տրամադրէ Զմմառի վանքին, ուր կը պատսպարուէին հայ անչափահաս տղաներ, եղեռնէն փրկուած:*

*Պարտաճանաչ եւ հաւատաւոր եկեղեցականի մը համբաւը շահած էր այս վարդապետը:*

2. ՅՈՎՍԷՓ Ծ. ՎՐԴ. ԽԱՆՁԵԱՆ.— *Ծնած է* 15 *Մարտ* 1893*ին Մալաթիա: Նախնական ուսումը առած է իր ծննդավայրին, հայ կաթողիկէ վարժարանին մէջ:*

13 *տարեկանին Մալաթիոյ Առաջնորդ՝ Միքայէլ Խաչատուրեան Եպիսկոպոսէն կը ղրկուի Կ. Պոլիս* 1906*-ին, Սէն Լուի կոչուած դպրեվանքը, ուր կը հետեւի երկրորդական վարժարանի ընթացքին:*

1915*-ին Ապրիլին կը ղրկուի Հռոմ, ուսանելու համար փիլիսոփայութիւն եւ աստուածաբանութիւն:* 1920*-ին մեծ յաջողութեամբ կ'աւարտէ համալսարանական շրջանը՝ ընդունելով Տոքթորայի աստիճան փիլիսոփայութեան, աստուածաբանութեան եւ իրաւաբանութեան մէջ, համապատասխան վկայականներով:*

4 *Ապրիլ* 1920*-ին, քահանայ կը ձեռնադրուի Պօղոս-Պետրոս ԺԳ. Թերզեան Կաթողիկոսէն եւ կը վարէ իր հոգեւոր հօտը, անձնական քարտուղարի*

պաշտօնը, ապա մասնաւոր առաքելութեամբ մը Ամերիկա կը ղրկուի, Ֆիլատելֆիա քաղաքը: Կարճատեւ ժամանակ մը հոն մնալէ ետք կը դառնայ Հռոմ, ուր կը մնայ տարի մը, եւ 1924-ին, Ապրիլին հոգեւոր իշխանութեան կարգադրութեամբ կը ղրկուի Յունաստան, ուր կը գտնուի մինչեւ այսօր:

Յունաստան՝ ժողովրդապետական եւ ուսուցչական պաշտօն կը վարէ, երկար տարիներ, Թրակիոյ եւ Մակեդոնիոյ շրջաններուն մէջ: 1935-ին կը կանչուի Հին Յունաստանի մէջ պաշտօնավարելու: Բիրէայի արուարձաններէն Գոկինա կոչուած գաղթակայանին մէջ կ'անուանուի Մեծաւոր տեղւոյն հայ կաթողիկէ հասարակութեան եւ տնօրէն Արարատեան վարժարանին: 1939-ին դարձեալ ժողովրդապետի պաշտօնով կ'անցնի Մակեդոնիա, ուր կը մնայ մինչեւ 1942: Այս թուականին, Աթէնք կը կանչուի վարելու համար Աւագ ժողովրդապետութիւնը Տուրկութիի Առաջնորդանիստ Եկեղեցւոյն: 1944-ին կ'անուանուի Առաջնորդական Տեղապահ Յունաստանի Հայ կաթողիկէ Թեմին: 1948-ին Գրիգոր ԺԵ. Աղաճանեան Կաթողիկոս-Պատրիարք անոր կը շնորհէ ԾԱՅՐԱԳՈՅՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ աստիճանը, իսկ 19 Յունիս 1949-ին, զայն կ'անուանէ Առաջնորդ Յունաստանի հայ կաթողիկէ Թեմին: Այս պաշտօնը կը վարէ մինչեւ այսօր:

## ՄՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԱԳԷՏՆԵՐ

Մալաթիա, ինչպէս ըսելու առիթը ունեցայ, հարուստ չէր բացառիկ շնորհներ ունեցող անհատներով:

Տեսնուեցաւ որ այս իրողութիւնը հետեւանքն էր միջավայրին:

Եթէ Մալաթիացիք մեծ թիւով գաղթականներ ունեցած ըլլային, թերեւս դարձեալ տարբեր միջավայրերու մէջ նոր բնակավայրերու ազդեցութեամբ իրենց թաքուն մնացած ձիրքերը մշակուէին եւ արժէքներ առաջ եկած ըլլային:

Դժբախտաբար այս առիթը չէ ընծայուած իրենց եւ անոր համար գրեթէ իրենց քաղաքին փառքը իրենց ծննդավայրէն դուրս պտըտցնող անձեր շատ քիչ ունեցած են:

Յիշենք ասոնցմէ մի քանին.—

### 1. ՌՈՒԲԷՆ ՈՐԲԵՐԵԱՆ (1874 — 1931)

Անոնցմէ մէկն էր իբր բանաստեղծ: Ծնած է «Եփրատի եզերքը» եւ Տաւրոսի ստորոտը՝ «դրախտագեղ Մալաթիա»:

Համեստ եւ բարեպաշտ ընտանիքի մը զաւակն էր:

Իր ուսումը առած էր Խարբերդի Եփրատ Գոլէճի մէջ, ուր իր կեանքը ոչ միայն անփառունակ, այլեւ ողբերգական եղած էր, վասնզի իբրեւ աշակերտ փայլուն չէր եղած, տարուած բանաստեղծութեամբ եւ իր նախասիրութենէն դուրս դասերու մէջ տկարութեամբ:

Կրակոտ եւ երազուն երեւակայութեամբ պատանի, յափշտակուած է



**Ռուբէն Որբերեան**

հայկական շարժման ալիքներէն, ինչպէս նաեւ սիրային երազներէ։ Կ'երեւակայէ տիրանալ անգլիական հիւպատոսին աղջկան, ինչ որ կը զայրացնէ դպրոցին տնօրէնութիւնը։ Իրեն կը տրուի 1893-ին շրջանաւարտի բծաւոր վկայական մը, վասնզի սրբապղծութիւն մը կը նկատուի իր յանդգնութիւնը։ Միխինար, դպրոցի տեսուչ, ամէնքն կը հակառակին եւ Ռուբէնը կը նկատեն ստահակ մը։ Ան կը զոհուի ցեղային, կրօնական եւ ընկերային նախապաշարումներու։ Իր դպրոցականութեան օրերէն կը գրէր բանաստեղծութիւններ եւ կ'աշխատակցէր հայ մամուլին, Ռ. Ալիքեան ծածկանունով։

Դպրոցը աւարտելէ ետք բաւական ատեն պարապած է ուսուցչութեամբ՝ Պոլսի, Պանտրմայի, Քերմասթիի, Իզմիրի եւ Սեբաստիոյ մէջ։

Կ. Պոլսոյ մէջ Եղիա Տէմիրճիպաշեանի ազդեցութեան կ'ենթարկուի եւ Իզմիրի մէջ Մամուրեանի կը ծանօթանայ եւ կ'աշխատակցի ԱՐԵՒԵԼԵԱՆ ՄԱՄՈՒԼԻ։

Իզմիրի մէջ կը յաջողի ոստում մը ընել Սպարթալեան առեւտրական հաստատութեան մէջ գրագրութեան պաշտօն ստանձնելով եւ մի քանի տարի ետք փոխադրուելով Ճիպութի (1904 Ապրիլ), ուր կը հաստատէ սեպհական գործ մը։ Հոն երկար տարիներ զբաղած է արեւելեան հնութեանց, կապերտի, սուրճի, մարգարիտի, Թռչունի ծիրտի եւ այլ արտածութեամբ։

Ըստ իր յայտարարութեան՝ իր մարմինը ինկած է ուժաբեկ, այլ հոգին Թափառիկ շարունակած է իր գնացքը դէպի արցունք ու վրէժ։

Բախտը ժպտած է իրեն եւ ապահոված է նիւթական վիճակ մը Ճիպութիի մէջ եւ ուշագրաւ դիրք մը ստացած է, այնպէս որ 1914-ին Ֆրանսական կառավարութիւնը Նշան էլ Անուարի ասպետական աստիճանով պատուած է զինք ի գնահատութիւն Ճիպութիի վաճառականութեան իր մատուցած մեծ ծառայութեանց։ 1920 Ապրիլին կը մասնակցի Փարիզ գումարուած Հայկա-

*կան Համագումարի, իբր պատգամաւոր Եթովպահայ գաղութին եւ անկէ ետք մինչեւ իր մահը (1931) հոն կը մնայ:*

*Իր լրագիրներու եւ հանդէսներու մէջ գրած բանաստեղծութիւններէն եւ արձակ գրութիւններէն զատ հրատարակեց բանաստեղծութիւններու երկու հատորներ,* ՅԻՇԱՏԱԿԱՑ ԾԱՂԻԿՆԵՐ *եւ* ԾՓԱՆՔՆԵՐ (*տպ.* 1906, *Գահիրէ*):

*Այս գործերուն, մանաւանդ առաջինին մէջ կ՚իշխէր ցաւը այն յուսախաբութեան, որ Խարբերդի մէջ կրած էր եւ ունեցած ցաւատանջ ապրումներ:*

*Ան ինքզինք կը բացատրէր սա տողերով.*

«Ու տարօրինակ իրողութիւն. մշուշ մը կը պատէ, կը վարագուրէ ճակատս ու յիշողութիւնս. կարգն ու ներդաշնակութիւնը կը խանգարեն, շըղթային մէջ օղակներ կան, որ ջնջուած են ու տասը տարիները միահաղոյն ամէնը մէկէն կը խուժեն, կը ծառանան ու կը ճնշեն զիս: Առաջին չորս տարիները հոն են: Մեքենական աշխատանքի, համեստ գրագրի ամփոփման տարիներ: Յետոյ դժնդակ սկզբնաւորութիւնը ովկիանի կոհակներու վրայ եղեւէջող նաւակի մը խելայեղ ոստումներով, թափառումներս մէկ անկիւնէն միւսը, անցնումներս մէկ տնակէն միւսին: Ու վերջապէս ժամանումը նաւակին բախտաբեր, անքոյթ ու նուազ ալեծուփ ջուրեր: Եւ անյողդողդ, թէեւ երբեմնի դողդոջուն փայլերով վերելքիս մէջ դէպի գրական կեանքի Գողգոթան, զօրացած երկնային շունչերովը սիրոյ, որուն վկայ ես դուն այսօր, ով իմ մրրկածուփ անցեալիս իտէալը, ով փայփայուած երազ, եթէ չմոռցայ երբեք քեզ, դուն աստղ արշալոյսին, որին պիտի սլանամ մէկ օր»:

• *Որբերեան ունի նաեւ երրորդ հատոր մը* ՈՎԱՍԻՍ-*ը* (*տպ.* 1920 *Փարիզ*)*: Իր գրական վաստակին վրայ խօսելով, Օշական, ժամանակակից գրական յայտնի քննադատներէն մէկը եւ խստապահանջը, Որբերեանը կը ներկայացնէ իբր արեւմտահայ գրագէտ եւ բանաստեղծ: Իր գնահատութեամբը անգլիական բանաստեղծութեան մէջ Որբերեանի կազմաւորումը իր տաղանդին վրայ ունեցած է որոշ կնիք:*

*«Գրել սկսած է շատ կանուխ,* 1890-*ական թուականներուն:*

*Ճիպութի անցուցած է իր կեանքի ստեղծագործական տարիները, մեռած է Փարիզ* 1931-*ին:*

*Իր գրական գործունէութեան երեսուն տարիները կը յատկանշուին սիրող գրագէտի* (ամաթէօր) *տիտղոսով: Քնարերգական կտորներ, դիւցազնաշունչ քերթուածներ, վիպակներ, արձակ էջեր, խորհրդածական, տպաւորապաշտ ձգտումներով, օրագիրի նոթեր, ճառեր կը կազմեն իր ժառանգութիւնը: Ասոնցմէ մաս մը հրատարակած է* ՈՎԱՍԻՍ *անունով, իր երկու նախընթաց յիշատակուած հատորներէն ետք:*

*«Որբերեանի տաղանդին յատկանիշերը կը կազմեն Պայրընեան թախծութեան, ռոմանթիք զգայնոտութեան, երաժշտական ապահով տուրքեր, մտածման ու խորհուրդի շեշտ նախասիրութիւն, սիրտբաց հաղորդականու-*

*թին եւ ճոխ լեզուն։ Իր գլուխ գործոցը՝ ԾՓԱՆՔՆԵՐԸ գրած է ճիպութի, հետեւողութեամբ Պայրընի «ՉԱՅԼՏ ՀԱՐՈԼՏ»ին։ Ահա ամփոփ պարունակութիւնը հատորին.—*

*Չայլտ Հարոլտի ուրուականին հետ ան կ'անցնի Սուրբ Երկիրը, անկէ՝ Հայաստան, Սաղիմական պատկերներ, վերյիշումներ ու հայկական եղեռնը, իրեն կը թելադրեն դաշնաւոր այս ութեակները...։ Առողջ ու գեղեցիկ նկարագրութիւններ, պատմական զօրեղ ոգեկոչում, հայրենի երկրին տեսարանները ու մեր 1900–ի հոգեբանութիւնը կը լեցնեն գիրքը։ Հակառակ անոր որ քառորդ դարի մօտ շրջան մը մեզ կը բաժնէ այդ մտայնութենէն, գիրքը կը կարդացուի իր մնայուն շնորհներուն համար։ Պայրընի եւ Շիլլերի տաղերուն փայլուն ու խոր ոտամութիւնը, այդ գիրքին վրայ ունեցած է բարի ազդեցութիւն։*

*Քնարերգական կտորներէն ոմանք, ինչպէս ԳԻՒՂԻՍ ՃԱՄԲԱՆ մեզ կը յուզեն իրենց անկեղծ, կարօտալից շեշտովը, ու ընտանի, նկարագեղ բնութեան մը հովուերգական գիծերովը։ Միշտ իր զգայնութեանը ներքին շաղախը կը բերէ այդ փոքր, բայց սիրուն կտորներուն։ Ուժեղ սա* Շէլլիական Ադամին Անէծքը *քերթուածը։*

*Արձակներուն մէջ կ'արժէ յիշել ՖԱՆԻՆ ՈՒ ԵՍ սանթիմանթալ վիպակը, գաւառիկ բարքերու իբր հարազատ պատկերացում։ Իր ճամբու տպաւորութիւնները, որոնք մուտ են գտած ՈՎԱՍԻՍին մէջ, յաջող են առհասարակ ու կու տան տեսիլքը, ասոր ոլորտը ու արձագանգը հոգիէն ներս։»* (Օշական Հայ Գրականութիւն, *Երուսաղէմ*, 1942, էջ 560–561) (Աղբիւրներ, *Յ. Ն. Շէքէրճեան*, ՌՈՒԲԷՆ ՈՐԲԵՐԵԱՆ. իր կեանքը եւ գրական գործերը. *ԱՐՕՐ, Հանդէս, Ֆրեզնօ*, 1922, ԱՄԵՆՈՒՆ ՏԱՐԵՑՈՅՑԸ, 1912, *էջ* 400, 1915 *էջ* 295 *եւ* 1916–1920, *էջ* 71)։

## Զ. ՍԱՐԳԻՍ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

*Ահա երկրորդ մը, որ թերեւս իբր արուեստագէտ պիտի չգրաւէր այն տեղը, որ այսօր ունի հայ արուեստի մարդոց մէջ, եթէ Մալաթիա մնացած ըլլար։*

*Ան ծնած էր Մալաթիա* 1889*–ին։*

*Իր նախակրթութիւնը ստացած է ծննդավայրին մէջ։ Եւ երբ Սանասարեանի խնամակալութիւնը Մալաթիայէ իբր ձրիավարժ երեք աշակերտ ընդունիլ յանձն առաւ (տես վերը), Մալաթիոյ Առաջնորդարանի յանձնարարութեամբ Սարգիս Խաչատուրեան եւս կը ղրկուի Կարին եւ շրջանաւարտ ըլլալէն ետք, կը դառնայ իր ծննդավայրը, ուր եղած է գծագրութեան ուսուցիչ, Սանասարեանի մէջ ինքնաշխատութեամբ, որոշ չափով, տիրացած էր նկարչական արուեստին ծանօթութիւնները օգտագործելով* (*)։

---

(*) *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՅՆԹԱՊԻ ՀԱՅՈՑ (Բ. հտ., էջ 238) Տիգրան Զագմաքեան բոլորովին տարբեր պատմութիւն մը կու տայ, որ կը կարծեմ թէ ճիշդ չէ։ Այնթապի՞ հետ գործ չէ ունեցած Խաչատուրեան։*



Նկարիչ Սարգիս Խաչատուրեան եւ իր գործը

1908–ին Օսմանեան Սահմանադրութեան վերահաստատութենէն օգտուելով Պոլիս կ'երթայ եւ Սանասարեանի խնամակալութեան դիմելով կը խնդրէ որ ղրկուի Եւրոպա իր արուեստը կատարելագործելու համար։ Խնամակալութիւնը 1908–ին զայն կը ղրկէ Հռոմի Գեղարուեստի Ակադեմիան, ուր իր տաղանդին ու աշխատութեան շնորհիւ կը յաջողի այս հաստատութեան հինգ տարուան դասընթացքը լրացնել մէկ տարիէն։ Ետքը Զուիցերիա եւ Գերմանիա մեկնելով աւելի կատարելագործեց իր արուեստը։

1911–ին, Իտալական ԹՐԻՒՊԻՆԱ թերթին թղթակցին հետ այցելեց Պէյրութ եւ ամբողջ Փոքր Ասիա՝ արեւելեան գոյները ուսումնասիրելու համար։ Յետոյ գնաց Սեբաստիա եւ նոր բացուած Սանասարեանի մէջ 8 ամիս պաշտօնավարեց իբր նկարչութեան ուսուցիչ։ Սանասարեանի խնամակալութիւնը պատրաստելու համար նկարչութեան ուսուցչութեան՝ կրկին ղրկեց զայն Եւրոպա, որպէսզի Ժընեւի մէջ գեղարուեստական ու մանկավարժական դասընթացքներու հետեւի։

Յետոյ կ'երթայ Փարիզ, ուր Առ Տեֆոռաթիւ դպրոցէն շրջանաւարտ կ'ըլլայ առաջին կարգի մետալով:

1914–ին դարձաւ Կ. Պոլիս, ուրկէ երբ Ա. Համաշխարհային պատերազմը ծագեցաւ, դժուարութեամբ յաջողեցաւ անցնիլ Կովկաս, ուր 1915–ին անձնական ցուցահանդէս մը սարքեց Թիֆլիսի մէջ:

Պատերազմին հետեւանքով Կովկաս ապաստանած Վանի գաղթականներուն տարազները ուսումնասիրեց եւ անոնց մէջ գտաւ ներշնչումի նոր աղբիւրներ:

Հոն մասնակցեցաւ 30 նկարներով Կովկասեան Ընկերութեան սարքած ցուցահանդէսին, որ իրեն համար մեծ յաջողութիւն մը եղաւ, վասնզի գնահատուեցան իր պատկերները եւ ծախուեցան:

1917–ին Թիֆլիսի մէջ կազմուեցաւ Հայ Արուեստասէրներու Միութիւնը, որուն հիմնադիրներէն մէկը ինքն էր:

Այդ Միութիւնը 1918–ին սարքեց իր առաջին ցուցահանդէսը, որուն Խաչատուրեան մասնակցեցաւ 42 նկարներով, որոնց ութը՝ տեղւոյն Ամերիկեան Հիւպատոսը՝ Մր. Էմըրսըն գնեց եւ ղրկեց Նիւ Եորք:–

1919–ին Խաչատուրեան Պոլսոյ մէջ տուաւ իր առաջին ցուցահանդէսը, որմէ գոյացաւ մօտաւորապէս 2500 ոսկի: Այդ գումարէն 1500 ոսկի յատկացուեցաւ Կանանց Լիկային (Հայ Տիկնանց Միութիւնը) որբերուն, իսկ 500 ոսկին ալ՝ Կարմիր Խաչին: 1921 Նոյեմբերին մասնակցեցաւ Հայաստանի Արուեստագէտներու Միութեան 6–րդ պատկերահանդէսին, որ տեղի ունեցաւ Կ. Պոլիս, Բերա, Հայ Ակումբի սրահներուն մէջ, 30 նկարներով բոլորը Հայաստանէն կամ հայ կեանքէն առնուած (Թէոդիկ, 1923, էջ 322), եւ ջերմօրէն գնահատուեցաւ: Իսկ 1923–ին տուաւ նկարահանդէս մը Փարիզի մէջ, ջրաներկ եւ իւղաներկ նկարներով, բոլորն ալ հայրենի կեանքէ առնուած:

Ասկէ ետք Խաչատուրեան այցելեց բազմաթիւ երկիրներ Եւրոպա, Ամերիկա եւ վերջապէս Պարսկաստան, որուն գեղարուեստի հմայքովը օծուն, այլ ժամանակի ժանիքներէն եղծուած շատ մը որմանկարները վերարտադրեց, հիացում պատճառելով դժուարահաճ քննադատներու անգամ:

Այդ պատկերները զանազան կեդրոններու մէջ ցուցադրելէն ետք այս անգամ անցաւ Հնդկաստան, որուն եւս ժամանակի ընթացքին մաշած ու եղծուած որմանկարները վերակենդանացուց, կատարելութեան եւ ժողովուրդին երախտագիտութեան արժանանալով:

Խաչատուրեան ցուցահանդէսներ սարքած է Եւրոպայի գրեթէ բոլոր մայրաքաղաքներուն մէջ եւ մեծապէս գնահատուած:

Նոյնը եղաւ Ամերիկայի մէջ, ուր սարքեց շատ մը ցուցահանդէսներ, մեծ յաջողութեամբ:

Ամերիկայի եւ Եւրոպայի շատ թանգարաններուն պատերը կը զարդարեն իր նկարները:

Ֆրանսա հրաւիրուած էր ներկայ ըլլալու համար Միւզէ–Սէրնիւշիի մէջ Հնդկաստանի որմանկարներուն վերարտադրութիւնները ցուցադրելու

համար կազմուած նկարահանդէսին բացումին, որ տեղի պիտի ունենար 15 Փետրուար 1947-ին։ Այդ օրը կատարուեցաւ արդարեւ բացումը արուեստագէտներու եւ արուեստասէրներու հոծ բազմութեան ներկայութեան, որոնք հիացումով դիտեցին Խաչատուրեանի գործը։

Եւ ճիշդ այն պահուն որ իր փառաւոր յաղթանակը կ'արձագանգէր աշխարհի ամէն կողմը, վիրաբուժական գործողութեան մը հետեւանօք անակընկալօրէն կը մահանար 7 Մարտ 1947-ին Փարիզի մէջ, այս չքնաղ բնաւորութեան տէր, յարաժպիտ եւ ընկերական անձը, որ ազգային պարծանք մըն է իբր արուեստագէտ։

Իր կինը Տիկին Վալա Խաչատուրեան — աշակերտը իր ամուսինին — ծանօթ նկարչուհի մըն է։

## 3. ՓՐՈՖ. ՍԱՄՈՒԷԼ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան որդին էր Մալաթիոյ Աւետարանականաց հովիւ Պատ. Կիրակոս Խաչատուրեանի (տես իր կենսագրութիւնը վերը) եւ 1877-ին ծնած է Բալու, իր հօրը շրջագայութեան միջոցին։ Սամուէլ Խաչատուրեան, ինչպէս յիշատակուեցաւ, Եփրատ Գոլէճի մէջ ուսումը կ'առնէ եւ 1897-ին դպրոցին շրջանը աւարտելէ ետք նոյն հաստատութեան մէջ ձայնական եւ գործիական երաժշտութեան դասախօս կը կարգուի եւ տասնմէկ տարի շարունակելէ ետք իր պաշտօնը, դպրոցին կողմէ կը ղրկուի 1905-ին Գերմանիոյ Շթութկարթի երաժշտանոցին մէջ իր երաժշտական ուսումը կատարելագործելու համար։

Փայլուն յաջողութեամբ իր վկայականը ստանալէ ետք կը դառնայ 1907-ին Խարբերդ, ուր իրեն կը տրուի 1910 Յունիս 16-ին «Երաժշտութեան Ուսուցչապետ»ի տիտղոսը։

1912-ին կրկին կը մեկնի Գերմանիա եւ այս անգամ կը հետեւ Պերլինի երաժշտանոցի դասընթացքներուն, զորս երկու տարիէն կը լրացնէր։

Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան բացառիկ բախտով տարագրութենէ եւ մահէ կ'ազատի եւ կը մնայ Խարբերդ, ծառայելու համար Թուրք հաստատութեանց մէջ իբր երաժշտութեան ուսուցիչ։

Հեղինակած է բազում երգեր, դպրոցական եւ հոգեւոր։

Կազմակերպած էր երգչախումբեր եւ նուագախումբեր։

Աշխատակցած է «Եփրատ» կիսամսեայ հանդէսին։

Զինադադարէն ետք 1919-ին գացած է Պոլիս, ուր զբաղած է ուսուցչութեամբ հայկական որբանոցներուն մէջ եւ իբր վարիչ Y. M. C. A.-ի։

1922-ին Րըլիֆի որբերուն հետ անցած է Քորֆու եւ տնօրէնութիւնը վարած է Աքիլլիաւի որբանոցին։

1927-ին եկած է Աղեքսանդրիա, ուր զբաղած է դասախօսութիւններով, եւ հաստատած է «Եփրատ Գոլէճի Երաժշտանոցը» անուն երաժշտական դպրոց մը, յաւերժացնելու համար անունը այն հաստատութեան, ուր մօտ

կէս զար ծառայած էր: Եգիպտոսի մէջ թէ՛ Գահիրէ եւ թէ՛ Աղեքսանդրիա ունեցած է բազմաթիւ աշակերտներ:

1922–ին Գորֆուի մէջ տաղնապալի օրերու, ուր Ամերիկեան մարդասիրութիւնը հակամարդկային եղանակով մը կը հոգար որբերը, Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան գերմարդկային ճիգեր ըրած է անոնց վիճակին բարուոքման համար:

Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան ազնիւ հոգիով եւ հանդարտ գաղափարական անձ մըն էր, բարձր բարոյականով եւ աննման սիրտով մը օժտուած (*):

Մեռաւ 1945–ին Աղեքսանդրիա:

## 4. ՔԷՖԹԸՆ ՀԱՅԿ (Խաչատուր Պոնափարթեան)

Որդի հանրածանօթ սեղանաւոր Գասպար աղայի եւ Սառա Պոնափարթեաններու:

Ծնած է 1880 Հոկտեմբեր 18–ին: 1900–ին Եփրատ Գոլէճի շրջանը աւարտելէ ետք իբր ուսուցիչ կը պաշտօնավարէ մէկ տարի Տիարպեքիր եւ երկու տարի՝ Ուրֆա:

Յետոյ կը մտնէ Պէյրութի բժշկական վարժարանը, որուն շրջանը աւարտելէ (1908) ետք, կը մեկնի Կ. Պոլիս, ուր կ'անցընէ յաջողութեամբ օրինական քննութիւնը՝ կարենալու համար ընել բժշկութիւն:

Կը դառնայ իր ծննդավայրը Մալաթիա եւ ապա Մեզրէ յաջորդաբար կը գործէ երկուական տարի:

1914–ին Մալաթիայէն կ'ընտրուի անդամ Խարբերդի Նահանգային Ժողովին:

1914–ի Ա. Համաշխարհային պատերազմի սկիզբը զինուորական ծառայութեան կը կոչուի եւ Մուշի եւ ապա Վանի մէջ կը պաշտօնավարէ եւ յետոյ կը ղրկուի Էրզրումի ճակատը:

1915 Մայիս 5–ին երբ հայ զինուորները զինաթափ կ'ըլլան, կանխատեսելով սպառնացող վտանգը, կ'որոշէ անցնիլ Ռուսերուն կողմը եւ հեռանալ Թուրք բանակէն: Եւ կը յաջողի յանդգնութեամբ, իր ձիուն վրայ հեծած, հասնիլ իր նպատակին եւ միանալ Զօր. Անդրանիկի Կամաւորական առաջին գունդին:

---

(*) Դժբախտաբար մեծագոյն անփութութեամբ մը, անշուշտ անգիտակցաբար, ՊԱՅՔԱՐի խմբագիր Անդրանիկ Անդրէասեան զինք շփոթելով Յարութիւն Խաչատուրեանի հետ (երբեմնի Ամերիկեան ոպայ եւ Կ. Պոլսոյ Խնամատարութեան տնօրէն), անոր գաղանային մէկ արարքը վերագրած է Սամուէլ Խաչատուրեանի, որ բոլորովին անմասն է այդ արարքէն։ Ժամանակակից լրագիրներու մէջ Գորֆուէն գրուած թղթակցութիւնները եւ ինծի պէս ականատես վկաները, որոնք բաւական թիւով դեռ կ'ապրին, կը հաստատեն մեր ըսածը։ Արդարութեան համար այս երկու տողը հոս կը դնեմ։

Ա. Ա.

1916 Ապրիլին Բաղէշի մէջ կը վիրաւորուի իր աջ սրունքէն եւ վեցամսեայ դարմանումէ մը ետք կրկին կը մեկնի ճակատ։

1917–ին կը հասնի Դաշնակիցներուն։

Արեւմտահայ գաղթականներէ բաղկացած 30·000 զօրաբաժինին կազմակերպութեան մէջ մեծ դեր կը խաղայ։ Կը մեկնի Երզրումի ճակատը, դիմադրելու համար Թուրքերուն, որպէսզի հայ գաղթականութիւնը ապահով Կովկաս հասնի։

1919–ին Հայաստանի Հանրապետութիւնը դաշինք կը կնքէ Թուրքիոյ հետ, որ կը պահանջէր Անդրանիկի եւ Հարուածող Զօրաբաժինի յանձնումը։

Անդրանիկ եւ իր կամաւորները 25·000է աւելի գաղթականներ ապահով կը փոխադրեն Պարսկաստան, անկէ Զանգեզուրի լեռնադաշտը։

Ազգային Խորհուրդի հրաւէրով Պոնափարթեան կ'ընդունի ընդհանուր հրամանատարութիւնը։ Գունդ մը կը կազմէ եւ թշնամին կը մաքրէ այդ շրջաններէն մինչեւ զինադադար։

1919–ին Պատուիրակ Փարիզի Ազգային Պատուիրակութեան մօտ։ Մեկնած է Ամերիկա իբր զինուորական առաքելութեան մէկ անդամը։ Այցելած է հայաշատ կեդրոններ եւ իր պերճախօս ու կրակոտ հայրենասիրական բանախօսութիւններով մեծ դեր կատարած է 600·000 տոլարի Փրկութեան հանգանակութեան օրերուն։

Իբրեւ զինուոր եւ հրամանատար եղած է հնարամիտ, յանդուգն եւ վճռական, ինքզինքն նուիրելով հայ ժողովուրդի ազատութեան դատին։ Հաստատուած էր Միացեալ Նահանգներու Լոս Անճելոս (Քալիֆորնիա) քաղաքը, ուր մեռաւ 11 Յունուար 1956–ին։

(Առնուած գրեթէ նոյնութեամբ «Յիշատակարան Եփրատ Գոլէճի» հատորէն, էջ 200–201)։

Այս տողերը, ապահովաբար տուն տրուած իր կողմէն, կը կարօտին ճշգումներու, վասնզի կը պարունակեն հակասական եւ կասկածելի մասեր, որոնք Պոնափարթեանի աղմկայարոյց նկարագրին վառ երեւակայութեան ազդեցութիւնը կրած են։

*
**

Մալաթիայէն դուրս այլուր ապրող Մալաթիացիներէն չորս դէմքերէն երեքը, ինչպէս տեսնուեցաւ, իրենց ուսումը ստացած էին Եփրատ Գոլէճի մէջ եւ մէկը՝ Սանասարեանի մէջ։

Եփրատ Գոլէճի մէջ ուսում առնող Մալաթիացիներէն անոնք, որ իրենց ծննդավայրին մէջ գործած են, կենսագրուած են այս հատորին մէջ, իսկ անոնք, որ անկէ դուրս գործած են, ինչպէս Ռ. Որբերեան, Փրոֆ. Սամուէլ Խաչատուրեան, Հայկ Պոնափարթեան եւ նկարիչ Սարգիս Խաչատուրեան, ներկայացուցի։

Այս հաստատութեան շրջանաւարտները զարմանալի էր որ մեծ մա–

սամբ Մալաթիա, իրենց ծննդավայրը չեն մնացած եւ տարաշխարհ, մասնաւորապէս Ամերիկա գաղթած են:

Այսպէս Գարեգին Մ. Կիրակոսեան, Գրիգոր Ժամկոչեան, Խոսրով Պոնափարթեան, Յարութիւն Շեքերճեան, Մկրտիչ Պալտասարեան, Տիկին Աննա Պոնափարթեան–Տինկիրեան, Տիկին Վարդանոյշ Փապուճեան, Յովհաննէս Խանձեան, Մկրտիչ Պալտասարեան, Օր. Տիգրանուհի Պոնափարթեան եւ այլն, գացած են Ամերիկա, ոմանք կարճ գործունէութիւն մը ունենալէ ետք եւ ոմանք բնաւ Մալաթիա չգտնալով, գացած են ուրիշ տեղեր:

Ասոնցմէ Գարեգին Կիրակոսեանի, Գրիգոր Ժամկոչեանի, Յարութիւն Շեքերճեանի, եւայլն մասին այս հատորին մէջ խօսուած է:

Հոս կ՚ուզեմ յիշատակել անոնք որոնք Ամերիկա անցած են եւ հոն գործած են:

## 1. ՏԻԿԻՆ ԱՆՆԱ ՏԻՆԿԻՐԵԱՆ (Ծն. Պոնափարթեան)

Ուսուցչուհի Եփրատ Գոլէճի մէջ: Մանկավարժական ընթացքը աւարտած է 1913–ին: Ամուսնացած է Գոլէճի ուսուցիչներէն Յովհաննէս Տինկիրեանի հետ: Համաշխարհային Ա. պատերազմի ընթացքին հարիւրաւոր Հայերու կեանքը փրկած է, զանոնք Տեղսիմ հասցնելով: Թուրք կառավարութիւնը կասկածելով կը բանտարկէ զայն եւ ապա կ՚աքսորէ Մարաշ, ուր մէկ տարի ուսուցչութեամբ կը զբաղի:

Զինադադարէն ետք կ՚երթայ Ամերիկա, ուր կը պաշտօնավարէ իբր գործիչ Նիըր Իսթ Րիլիֆի, բանախօսութիւններ կատարելով: Ամերիկուհիներ գնահատելով իր զոհողութիւնները, նուիրած են իրեն մետաքսեայ Ամերիկեան դրօշակ մը զայն «Հերոսուհի» հռչակելով: Հաստատուած է Լոս Անճելըս (Գալիֆորնիա):

## 2. ՎԱՐԴԱՆՈՅՇ ՓԱՊՈՒՃԵԱՆ

Եփրատ Գոլէճի մանկավարժութեան ճիւղէն շրջանաւարտ 1913–ին: Իսալա գիւղի մէջ մէկ տարի ուսուցանելէ ետք մեկնած է Անգլիա, Կլասքօ, Սկովտիա: Բժշկական Միսիոնարական դասընթացքին կը հետեւի 2 տարի, մէկ տարի ալ Ռոյըլ Մեթէօնիթի հիւանդանոցին մէջ մանկաբարձութիւն ուսած է:

Նիւ Եորքի մէջ յաճախած է մէկ տարի «Թրէյնի Սքուլ Ֆոր Քրիսչըն Ուըրքըրս» Կիրակնօրեայ դպրոցը՝ ընկերային ծառայութեան դասընթացքներուն հետեւելով:

1919–ին կ՚ամուսնանայ Պր. Աւետիս Փապուճեանի հետ, որ Եփրատ Գոլէճի շրջանաւարտներէն էր: Եղած է գործօն անդամ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան: Վեց տարի եղած է Կեդր. Վարչութեան քարտուղարուհի եւ նոյն ատեն այդ շրջանին եղած է խմբագիր Նոր Մալաթիոյ:

1939–էն ի վեր ուսուցիչ է հայերէն լեզուի Նիւ Եորքի Ամերիկահայ չորս դպրոցներու:

### 3 ԽՈՍՐՈՎ ՊՈՆԱՓԱՐԹԵԱՆ

*Գոլէճը աւարտելէ ետք նոյն հաստատութեան մէջ մէկ տարի երաժըշտութեան ուսուցիչ կ՚ըլլայ։ 1906–ին կ՚անցնի Ամերիկա՝ կատարելագործելու համար իր երաժշտական ուսումը, սակայն անակնկալ պատահարներով իր բաղձանքը անիրագործելի կը մնայ։ 1921–ին Արեւելեան գորգերու առեւտուրով զբաղիլ կը սկսի եւ 22 տարիներ կը շարունակէ Նիւ Եորքի մէջ։*

*Երկար տարիներէ ի վեր եղած է Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան գործօն եւ նուիրուած մէկ անդամը։*

1925–1933 *Նոր Մալաթիոյ հիմնարկութեան շրջանին եօթը տարիներ եղած է Կեդրոնական Վարչութեան քարտուղարը։*



**Խոսրով Մ. Պոնափարթեան**

1933 *Յունիս* 18–*ին Յար Ռաքսաէի ծովեզրէն, իր կեանքը վտանգի դընելով,* 14 *եւ* 17 *տարեկան երկու քոյրեր խեղդուելէ ազատելուն համար, ի գնահատութիւն «Գառնեկի» հերոսական Ֆընտի յանձնախումբը նուիրեց իրեն Գառնեկիի մետաղաձոյլ մետալը։*

*Խոսրով Պոնափարթեան այս հատորին հրատարակութեան մէջ ամենակարեւոր դերը կատարած է իբրեւ Կրթասիրացի Վարչութեան կողմէ նշանակուած վերհսկող։*

*Բազմաթիւ դժուարութիւններու յաղթելու պէտք ունեցաւ ինք եւ յաջողեցաւ շնորհիւ իր ազնուութեան, անսահման համբերատարութեան եւ ներողամտութեան։*

*Ուրիշ մէկը պիտի չկարենար այսքան խոհականութեամբ կառավարել այս գործը։*

*Այս անձնական վկայութիւնովս կը փակեմ այս աշխատութիւնը, որ տառապալից գործ մը եղաւ պատրաստողին համար։*

---



**Մելիտինեցի Պօղիկտոսի վանքի (Երուսաղէմ) գերեզմանի մօզայիկի նկարը** (*հնագիտական տեսակէտով գրեթէ ամենախօշորը եւ արժէքաւորը*)



# ՅԻՍՆԱՄԵԱՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՄԱԼԱԹԻՈՅ

# ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԱՇԽԱՏԱՍԻՐԵՑ՝

**ԻՍՐԱՅԷԼ ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ**

(ՊՈՍԹՈՆ, ՄԷՍ.)

# ՁՕՆ

Հայրենակցական անկեղծ սիրով ու յարգանօք կը ծօնեմ սոյն աշխատասիրութիւնը իմ այն բոլոր ազնիւ եւ զոհաբերող հայրենակիցներուս, որոնք հիմնեցին ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ եւ բոլոր անոնց, որոնք սկսուած գործ մը աւելի մեծ եռանդով, ջանասիրութեամբ եւ զոհողութեամբ յառաջ տարին ու հասցուցին զայն պատիւ բերող եւ ազգային չափանիշով արժէք ներկայացնող կազմակերպութեան մը, որուն շնորհիւ այսօր մենք՝ Մալաթիացիներս՝ կրնանք բաց ճակատով եւ զոհունակ սրտով ըսել որ մենք մեր պարտականութիւնը կատարած ենք եւ պիտի շարունակենք կատարել հանդէպ մերիններուն, մեր ազգին եւ մեր հայրենիքին։

Ի. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ



Իսրայէլ Տէր Յովհաննէսեան
Հեղինակը
«Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան
Պատմութեան»
(1904–1954 շրջանի)



# ՍԿԶԲՆԱԿԱՆ ՇՐՋԱՆ

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Պատմութիւնը սերտ կապակցութիւն ունի զայն կազմակերպող եւ հիմնաւորող Ամերիկաբնակ Մալաթիացիներու պատմութեան հետ, որ իր կարգին նաեւ կապ ունի ընդհանուր Ամերիկահայ գաղութի պատմութեան հետ։ Հետեւաբար, նախ քան Կրթասիրաց Ընկերութեան պատմութեան սկիզբը, կարեւոր է, գէթ մասամբ, ծանօթանալ Ամերիկահայ գաղութի եւ Ամերիկա եղող կամ բնակող Մալաթիացիներու կեանքի եւ կենցաղի պատմութեան, այդ օրերու հայրենակցական, ազգային, ընկերային եւ աշխատաւորական բազմակողմանի շարժումներուն, դէմքերուն եւ դէպքերուն, որպէսզի կարող ըլլանք հասկնալ եւ գնահատել անոնց գործունէութեանց եւ զոհողութեանց չափը եւ արժէքը, ըստ արժանւոյն։

Ամէն Հայ, որ Ամերիկա եկած է, ամէն հայ գաղութ, որ կազմուած է, ունեցած է իր պատմութիւնը։ Պատմութիւններ, որոնց իւրաքանչիւրը մէկ-մէկ գրուագներ եղած են, եւ որոնք պէտք էր որ իրենց ժամանակին գրուած ըլլային։ Սակայն, հակառակ Ամերիկայի ընծայած հնարաւորութեանց եւ դիւրութիւններուն, նիւթական եւ երթեւեկութեան միջոցներուն, բազմաթիւ ուսանողներու, եկեղեցական, կուսակցական եւ այլ ազգային կազմակերպութեանց, թերթերու եւ հմուտ մտաւորականներու գոյութեան, Ամերիկահայը չունեցաւ իր հարազատ եւ իրական պատմութիւնը։

Ամերիկահայ Պատմութիւնը թերեւս բոլորովին կորսուած կամ մոռացութեան տրուած ըլլար, եթէ 1912-ին Մուշեղ Եպիսկոպոս Սերոբեանի կողմէ հրատարակուած ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ՏԱՐԵՑՈՅՑ-ին մէջ զետեղուած չըլլային աստ եւ անդ մնացած ձեռագիր գրութիւնները եւ մասնակի գրուած պատմութիւնները։

Այս Տարեցոյցին մէջ, բացի Մուշեղ Եպիսկոպոսի գրութիւններէն, կան նաեւ շատ արժէքաւոր գրութիւններ, գրուած հեղինակաւոր անձնաւորութեանց կողմէ, որոնք մեծ լոյս կը սփռեն Ամերիկահայութեան սկզբնական շրջանի անցուդարձերուն շուրջ, եւ որոնց կը պարտինք այդ ուղղութեամբ մեր ունեցած տեղեկութիւնները։

*Այս արժէքաւոր գրութիւններէն մէկն է Տոքթ. Անդրանիկ Այվազեանի — Նիւ Եորքի Հայոց ՊԱՊԱին —* Ամերիկահայ Ընկերային կազմակերպութիւնները *վերնագրութեամբ յօդուածը:*

*Համաձայն Տոքթ. Այվազեանի տեղեկագրութեան, մինչեւ 1880-ի ժամանակները ամբողջ Ամերիկահայութեան թիւը հազիւ հինգ հարիւրի կը հասնէր, որոնց մեծ մասը կը կազմէր Ամերիկայի զանազան քաղաքներու կրթական հաստատութեանց մէջ հաստատուած ուսանողութիւնը, կային մաս մը առեւտրականներ եւ մաս մըն ալ արհեստաւորներ հոս ու հոն ցրուած: Անանկ որ հաւաքական հայկական կեանք շատ քիչ գոյութիւն ունէր:*

*Հասկնալի է անշուշտ, որ Ամերիկան Հայուն ծանօթացնողը եղած է Ամերիկեան Միսիոնարութիւնը, որուն ցուցմունքներով և կարգադրութեամբ Ամերիկա եկած են այնքան ուսանողներ: Այս ուսանողներու գրած նամակներուն եւ հետզհետէ երկիր վերադարձողներու միջոցաւ Հայը տակաւ առ տակաւ աւելի ծանօթութիւն ունեցաւ Նոր Աշխարհի մասին: Ասկէ ետքն էր որ ուսման ծարաւ եղողներու, քաղաքական ազատ ասպարէզ փնտռողներու եւ տնտեսական տառապանքներու տակ հիւծողներու ահագին հոսանք մը սկսաւ գաղթել դէպի Ամերիկա:*

*1888-ի ժամանակները արդէն հազարաւոր Հայեր եկած հաստատուած են Ամերիկայի զանազան կողմերը, մասնաւորապէս Նիւ Եորք, Ուստր եւ Պոստոնի շրջակաները:*

*Նոր եկողներու ջախջախիչ մեծամասնութիւնը ամուրի երիտասարդներ էին: Տեղական լեզուին, բարքերուն և սովորութեանց անծանօթ, գործաւորական պայմաններուն եւ մեքենականութեանց անվարժ, նիւթական անձուկ վիճակի եւ առաջնորդութեան պակասի հետեւանքով նորեկ հայ պանդուխտը դէմ յանդիման եկաւ զանազան կարգի դժուարութեանց, ձախորդութեանց եւ տեղ-տեղ ալ անհաճոյ դէպքերու:*

*Ամերիկեան տեղական աշխատաւորութիւնը հաշտ աչքով չէր նայեր նորեկ հայ գործաւորներուն, նկատելով զանոնք աժան գործողներ. եւ առ այդ ամէն միջոց կը գործածէին իրենց գործատեղիներէն դուրս ընելու զանոնք: Այս պարագան սկսաւ աւելի դժուարացնել Հայոց վիճակը, բայց միեւնոյն ժամանակ այս պարագաները պատճառ եղան որ Հայեր ամփոփուին իրարու մօտ, իրարու օգնելու, իրարմով մխիթարուելու և հայրենի կարօտն իրարմէ առնելու համար:*

*Այսպիսով հետզհետէ կազմուեցան հայ գաղութներ եւ կազմակերպութիւններ, որոնց առաջինն եղած է 1886ին Նիւ Եորքի մէջ կազմուած Հայկական Միութիւնը, որուն նպատակն էր օգնել հայ պանդուխտին, անոր մէջ վառ պահել մայրենի լեզուն, հայկական տոհմային յատկութիւնները, հայրենասիրութիւնը եւ Հայը ուծացումէ կամ օտարացումէ հեռու պահելը: Առ այդ յաճախ կը սարքուէին հրապարակային եւ դասախօսական ժողովներ:*

*Զարմանալի եւ սքանչացման արժանի էին հայ պանդուխտին հայրենա-*

սիրութիւնը եւ ազգասիրութիւնը։ Ան հազիւ ինքզինք տնտեսապէս քիչ մը ապահովուած զգալուն, իր առաջին հոգը կ'ըլլար օգնել հայրենիքի մէջ մնացած սիրելիներուն եւ յետոյ հաւաքական կերպով սատարել իրենց ծննդավայրի դպրոցներու եւ եկեղեցիներու կարիքներուն։

Համաձայն Ամերիկահայ Տարեցոյցի, 1889էն մինչեւ 1895 արդէն կազմուած են տասնեակ մը հայրենակցական միութիւններ, մեծ մասամբ Խարբերդի եւ շրջակայքի գիւղերու հայրենակիցներէն։

Հոս կ'արժէ համառօտակի ակնարկ մը նետել այն ժամանակներու գործաւորական դրութեան, շաբաթավճարներու, ապրելակերպի եւ ընկերային դրութեան վրայ։

Ինչպէս ըսինք, տեղական լեզուին եւ այլ պայմաններու անգիտակ հայ աշխատաւորը չէր կրնար ակնկալել որ դիւրին, մաքուր եւ լաւ վճարումով գործերու տիրանայ։ Անոր վիճակուած էին ամենածանր, վտանգաւոր եւ աղտոտ գործերը, ան ալ քիչ շաբաթականով։

Տեղացիի եւ օտարականի խտրութիւնը գոյութիւն ունէր ամէն տեղ ամէն ժամանակ։ Տեղացիին չըրած գործն էր որ կը տրուէր օտարականին։

Գործաւորութեան պայմաններուն եւ աշխատանքի ժամերուն համար որոշ օրէնքներ գոյութիւն չունէին։ Շաբաթական 60 ժամ կամ աւելի, նայելով գործի տեսակին, սովորական նկատուած պայմաններ էին։ Գործաւորութեան հանգիստ ժամերն էին Շաբաթ կէսօրէ ետք եւ Կիրակի օրերը։

Աստուծոյ հետ խօսիլ աւելի դիւրին էր քան այն օրերու վերակացուներուն (պօս) հետ։

Վերակացուներու դէմ խօսիլ աններելի յանցանք էր, որուն պատիժը իր գործը կորսնցնել էր։ Ոչ ոք կը համարձակէր նոյնիսկ դիտողութիւն մը ընել, հոգ չէ թէ որքան ճիշդ եւ արդարացի ըլլար։

Առողջապահական պայմաններն ալ գոհացուցիչ վիճակ մը չունէին։ Ամէն մարդ իր գլխուն ճարն ինք պէտք էր նայէր որ չվնասուի կամ չհիւանդանայ։

Գործաւորներու համար աւելի տանելի եւ մարդավայել կարգ ու սարք մը ստեղծելու նպատակով կազմակերպուած տեղական բանուորական միութեանց ջանքերը ի դերեւ կ'ելնէին նոր եկող հազարաւոր անգործ բանուոր գաղթականներու յաւելումով։ Գործաւորի եւ գործատիրոջ միջեւ մղուած կռիւներու մէջ շահողը միշտ գործատէրը կ'ըլլար, որովհետեւ ուզած ժամանակը պէտք եղած չափով գործաւորներ կրնար գտնել։

Ահա թէ ինչու տեղացիները կ'ատէին օտարականները։

Գործաւորներու շաբաթականը անշուշտ կախում ունէր գործի տեսակէն։ Պարզ գործաւորին շաբաթականը 5էն 8 տոլար էր· կային ալ որոնց վըճարումն աւելի պակաս էր։ Շաբաթը տասը տոլար ստացողներ մատով կը ցուցնէին։ Եւ նկատել, որ հայ երիտասարդը շաբաթական 5 կամ 8 տոլարով պիտի ապրէր, երկիր դրամ պիտի ղրկէր, քանի մը սէնթ մէկ կողմ պիտի դնէր անգործութեան, հիւանդութեան եւ այլ պատահականութեանց համար

եւ անկէ վերջն ալ ազգային, եկեղեցական եւ հայրենակցական կազմակերպութեանց պիտի օժանդակէր:

Զենք կարծեր որ կարելի է աւելի ժողովուրդ բաղդատութեան դնել Ամերիկահայ գաղութի ազգասիրութեան, հայրենասիրութեան եւ զոհողութեան ոգւոյն հետ:

Բնական էր, որ Ամերիկահայ գաղութը պիտի չկարենար ապրիլ այնպէս, ինչպէս որ պէտք էր: Ոչ թէ որովհետեւ չէին գիտեր կամ չէին ուզեր, այլ անոր համար, որ պարտականութիւն մը ունէին կատարելիք. անոր համար որ անոնք միմիայն իրենց համար չէին ապրեր, այլ՝ իրենցիններուն համար ալ: Ու այս հասկացողութեամբ Ամերիկահայ գաղութը զոհեց իր հանգիստը, իր վայելքը, արիւն-քրտինք թափեց որպէսզի կարենայ հասնիլ իրեն, իր ընտանիքին եւ ազգին անյետաձգելի կարիքներուն:

Յարգա՜նք այդ զոհաբերող հոգիներուն:

# ՄԱԼԱԹԻԱՑԻՆԵՐԸ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ

Ամերիկա եկող եւ վերադարձող եւ կամ հոն մնայուն բնակութիւն հաստատող Մալաթիացիները կարելի է բաժնել չորս շրջաններու.

Առաջին շրջանին մէջ կ'իյնան անոնք, որ 1895-ի եղեռնէն առաջ եկած են Ամերիկա:

Երկրորդ շրջան, անոնք որ 1895-էն վերջը եկած են:

Երրորդ շրջան, անոնք որ 1908-ի Թրքական Սահմանադրութենէն ետք հասած են Ամերիկա:

Չորրորդ շրջան, անոնք որ 1915-ի կոտորածներէն ետք եկած են:

ԱՌԱՋԻՆ ՇՐՋԱՆ.— Որո՞նք եղած են Ամերիկա եկող առաջին Մալաթիացիները:

Դժբախտաբար, մեր տրամադրութեան տակ չունինք այս մասին պատմական գրութիւններ. բայց եւ այնպէս մեր հարցափորձերէն եւ այլ աղբիւրներու պրպտումներէն յայտնի եղաւ, որ Ամերիկա եկող Առաջին Մալաթիացիներն եղած են Պրն. Միսաք Եաղուպեան, Տոքթ. Մինաս Մ. Կիրակոսեան եւ Հանի Գաբրիէլ Պաղտոյեան:

Միսաք Եաղուպեան.— Ամերիկա եկած է 1881-ի սկիզբները, որպէս ուսանող եւ ժամանակ մը հետեւած է մասնագիտութեան մը: Սակայն, տեսնելով ուսանողական կեանքի ծանր, դժուարին եւ հոգի մաշեցնող պայմանները, ինչպէս նաեւ սահմանափակ կարելիութիւնները, կը ձգէ դպրոցը եւ կը նետուի առեւտրական ասպարէզին մէջ:

1885-ին Ամերիկա կու գայ նաեւ իր եղբայրը Գամալիէլը, որուն հետ կը ձեռնարկեն Արեւելեան Գորգի գործին եւ կարճ ժամանակէն կը գտնեն բաւական մեծ յաջողութիւն:

Պրն. Միսաք 1889-ին կը վերադառնայ Մալաթիա, բայց հազիւ վեց

## ԱՄԵՐԻԿԱ ԵԿՈՂ ԱՌԱՋԻՆ ՄԱԼԱԹԻԱՑԻՆԵՐ



Խոսրով Եաղուպեան եւ Տօքթ. Մինաս Կիրակոսեան



Հաճի Գրիգոր աղա Պաղտօյեան

ամիս կը մնայ հոն եւ կը վերադառնայ Ամերիկա, չկարենալով հանդուրժել Թրքական հալածանքներուն ու տիրող կարգերուն։ Իր հետ կը բերէ կրտսեր եղբայրը Յարութիւնը։

Ժամանակ մը իր Յարութիւն եղբօր հետ կը հաստատուին Շիքակօ եւ հոն կը սկսին մածունի գործին։ Բայց, կ'երեւի սպասուած յաջողութիւնը չեն

գտներ եւ կրկին կը վերադառնան Պոստոն, իրենց եղբօր Գամալիէլին քով, ուր ժամանակ մը մնալէ ետք, վերջնականապէս կը հաստատուին Քալիֆորնիա, Միսաք կը մեռնի Ֆրեզնոյի մէջ 1913–ին։

Գամալիէլ Եաղուպեան ըլլալով լաւ եւ սահուն անգլիախօս մը, բարեկամական լայն ծանօթութիւն ունեցած է ամերիկեան շրջանակներու մէջ, որոնց կարգին էր մեծանուն բանաստեղծուհի Օր. Ալիս Սթոն Պլաքուէլ եւ այս հանգամանքով շատ օգտակար եղած է տարագիր Հայերուն։ Մեռած է Պոստոնի մէջ։

Տոքթ. Մինաս Կիրակոսեան.— Տոքթ. Մինաս Մ. Կիրակոսեան Մալաթիացիներու ծանօթ պապային, վերապատուելի Մարտիրոս Կիրակոսեանի անդրանիկ զաւակն է։

Խարբերդի Եփրատ քոլէճի երկրորդ շրջանի, 1881–ի շրջանաւարտներէն է եւ նոյն տարւոյ վերջերը եկած է Ամերիկա, որպէս ուսանող եւ հետեւած է բժշկական ճիւղին։

Տոքթ. Մ. Կիրակոսեանի ջանքերով ու խորհուրդով Ուստրի մէջ կը կազմուի Հայ Բողոքական համայնքը, հուսկ յետոյ եկեղեցին։ Այս մասին կ'արժէ կարդալ Ամերիկահայ Տարեցոյցին մէջ լոյս տեսած Վերապատուելի Կ. Մանուէլեանի Ամերիկահայ Բողոքականութիւնը վերնագրով գրութիւնը։

1884–ին կ'աւարտէ բժշկական դասընթացքը եւ վկայականն առած կը վերադառնայ Մալաթիա։ Հազիւ վեց ամիս կ'ապրի իրեններուն մօտ. մահը վրայ կը հասնի։

Հաճի Գաբրիէլ Պաղտոյեան.— Այս անձին Ամերիկա գալուն ճիշդ թուականը յայտնի չէ. սակայն եւ այնպէս, կը թուի թէ 1884–ի ժամանակներն ըլլալու է։

Ամերիկահայ Տարեցոյցին մէջ Գալիֆորնիոյ Գաղութը վերնագրով գրութեան մէջ կը հանդիպինք իր անունին։ 1884—1886–ի Ֆրեզնոյի Հայ Գաղութի ցանկին մէջ է իր անունը, այսինքն այդ ժամանակամիջոցին Ֆրեզնոյ հաստատուած է, բայց թէ ուղղակի ո՞ր թուականին, յայտնի չէ։

Բնականաբար, Հաճի Պաղտոյեան Մալաթիայէն ուղղակի Ֆրեզնոյ չգնաց, այլ ժամանակ մը Նիւ Եորքի կողմերը մնացած ըլլալու է. անանկ որ, կարելի է ըսել, թէ 1884–ի ժամանակներն Ամերիկա եկած ըլլալու է։

1900–ին Ֆրեզնոյի մէջ համախմբուած Հայութիւնը կ'որոշէ իր գործունէութեան դաշտն ընդլայնել եւ քաղաքի շրջակաները նոր հողեր գնելու որոշում կու տայ։ Այս նպատակին գործադրութեան համար կ'ընտրուի նաեւ Յանձնախումբ մը, որուն մէկ անդամը կ'ըլլայ Հաճի Պաղտոյեանը։ Յանձնախումբը կ'որոշէ մեծաքանակ հողեր գնել ներկայիս Եդեմ կոչուած շրջանին մէջ։ Սակայն անհամաձայնութիւն ծագելով այդ ծրագիրը չի յաջողիր։ Միայն Հաճի Պաղտոյեանը կ'ըլլայ առաջին Հայը, որ 40 արտավար հող կը գնէ եւ հիմը կը դնէ այժմու Եդեմի հայ գաղութին։ Մեռած է Եդեմի մէջ։

*
**

1888-ի ժամանակները սկսաւ ծայր տալ աւելի մեծ արտագաղթ մը հայ բնագաւառէն: Հայաստանի բոլոր կողմերէն հազարաւոր Հայեր իրենց աչքերը սեւեռած էին դէպի Նոր Աշխարհ — Աւետեաց Երկիրը, դրամ եւ բախտ որոնելու:

Այս խումբին մէջ կային նաեւ հարիւրէ աւելի Մալաթիացիներ, որոնց նպատակը հոն հաստատուիլ չէր, այլ քանի մը տարի գործել, չարչարուիլ ու մաս մը դրամ շահելով վերադառնալ երկիր, իրենց սիրելիներուն մօտ. եւ այդպէս ալ ըրին:

1895-էն առաջ երկիր վերադարձողներէն ոմանք զոհ գացին 1895-ի եղեռնին, ոմանք մեռան բնական մահով, ոմանք ալ ազատեցան: Ամերիկաբնակ Մալաթիացիներու մէկ մասն ալ 1895-էն ետք երկիր վերադարձաւ այն յոյսով, որ այլեւս հայկական ջարդեր չէին կրնար պատահիլ, նկատի ունենալով եւրոպական քրիստոնեայ ազգերու խոստումները: Ուրիշ Մալաթիացիներ երկիր վերադարձան 1908-ի Օսմանեան կեղծ Սահմանադրութենէն վերջ: Ոմանք, նոյնիսկ Առաջին Համաշխարհային Պատերազմի սկզբնաւորութեան, 1914-ին վերադարձան եւ բոլորը զոհ գացին Թրքական բարբարոսութեան — հայկական մեծագոյն սպանդին:

Շատ մը Մալաթիացիներ ալ մնացին Ամերիկա, տուն տեղի եւ գործի մարդիկ եղան. տարիներով աշխատեցան, զոհեցին ընկերութեան եւ ազգային բոլոր շարժումներուն ու պէտքերուն: Բայց ժամանակի ընթացքին, կեանքի անդառնալի օրէնքով, անոնց մեծ մասը մահացան, բայց չմոռցուեցան:

Ոմանք դեռ կ'ապրին եւ մեզի հետ են. մարմնով ծերացած, բայց հոգիով երիտասարդ: Հայրենակցական սէրն ու զգացումներն իրենց մէջ դեռ վառ պահող այս հայրենակիցներուն կը պարտինք առաջին շրջանին մեր ունեցած տեղեկութեանց մեծ մասը:

Որո՞նք են անոնք:

Մեր այս պատմութեան ծկիզբը նշեցինք, որ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան պատմութիւնը կապ ունի Ամերիկա եկող Մալաթիացիներու կեանքին հետ: Այլ խօսքով, Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Պատմութիւնը Ամերիկա եղող Մալաթիացիներու պատմութիւնն է, որովհետեւ անոնք էին որ կազմակերպեցին, գործեցին ու զոհեցին: Եւ եթէ անոնցմէ ոմանց ժամանակ ընկերութիւնը գոյութիւն չունէր կամ չկրցին այդ ուղղութեամբ աշխատանք տանիլ, սակայն պէտք է նկատի ունենալ որ անոնք եղան ճամբայ բացողը իրենցմէ ետք եկող հայրենակիցներուն, որոնց ժամանակ կազմուեցաւ Ընկերութիւնը: Հետեւաբար, պատմական անհրաժեշտութիւն մը ըլլալէ աւելի, բարոյական պարտականութիւն մը ունինք, որ հաւաքէինք այդ անունները եւ զետեղէինք այս պատմութեան մէջ. այլապէս ոչ մէկտեղ կարելի պիտի ըլլար գրուիլ իրենց անունները եւ առ յաւէտ պիտի մոռցուէին:

*Ամէն հնարաւոր ջանք ի գործ դրած ենք, որ այս անուանացանկը լիակատար ըլլայ. սակայն կրնայ պատահիլ որ ոմանց անունները մոռցուած ըլլան եւ կամ ժամանակի եւ վայրի մասին սխալմունքներ եղած ըլլան։ Նկատի պիտի առնուի որ շատ մը հայրենակիցներ, գործի բերումով, քաղաքէ քաղաք փոխադրուած են եւ այս ցանկի մէջ նշանակուած քաղաքները իրենց վերջին տեղը եղած վայրերն են։*

# ՑԱՆԿ

## 1895-ԷՆ ԱՌԱՋ ԱՄԵՐԻԿԱ ԵԿՈՂ ՄԱԼԱԹԻԱՑԻՆԵՐՈՒ

### *ՄԱԼԱԹԻԱ ՎԵՐԱԴԱՐՁՈՂ ԵՒ ՀՈՆ ՄԵՌՆՈՂ ԿԱՄ ՋՈՀ ԵՂՈՂՆԵՐԸ*

Տոքթ. Մինաս Կիրակոսեան
Գէորգ Ոսկերիչեան
Սենեքերիմ Պոնճուքլեան
Սեդրակ Առաքելեան
Դաւիթ Խաչատուրեան
Մարտիրոս Պօնափարթեան
Գրիգոր Խարճի Կիւզելեան
Մեսրոպ Խարճի Կիւզելեան
Պետրոս Կիւլուշեան
Հաճի Գասպարեան
Ստեփան Ուռումեան
Քերոբ Տօնապետեան
Գրիգոր Տօնապետեան
Նիկողոս Թիւթելեան
Մկրտիչ Թիւթելեան
Աստուր Տէր Մկրտիչեան
Յակոբ Թիւթելեան
Գէորգ Տարպոյեան
Յակոբ Պապիկեան
Կարապետ Կուշեան
Գրիգոր Կեզիւրեան
Յակոբ Ջէքէմեան
Գէորգ Խանձեան
Սարգիս Տարպոյեան
Մանուկ Տամպուրանեան
Յովհաննէս Սիւտնեան
Պետրոս Օյմայեան

Յարութիւն Օյմայեան
Մկրտիչ Օյմայեան
Կարապետ Սահակեան
Գէորգ Եղիայեան
Աբրահամ Թերզի Եաղուպեան
Յակոբ Միրէճեան
Զիլինկիր Պաղտօ
Սարգիս Մընըխեան
Սիմոն Անսուրեան
Յովսէփ Ճերահեան
Դաւիթ Պանաճուզեան
Գէորգ Աղոսեան
Աբրահամ Կեզիւրեան
Ստեփան Դաւիթեան
Դաւիթ Խանճեան
Միքայէլ Տէր Մուշեղեան
Սարգիս Բարսեղեան
Սարգիս Գայանանեան

## *ՔԱԼԻՖՈՐՆԻՈՅ ՇՐՋԱՆԻՆ ՄԷՋ ՄԱՀԱՑՈՂՆԵՐ*

Հաճի Գաբրիէլ Պաղտոյեան
Գարեգին Կիրակոսեան
Գէորգ Խարբութլեան
Յակոբ Կենէյեան
Կարապետ Գասպարեան
Առաքել Թայեան
Կարապետ Թայեան
Ստեփան Կուրապեան
Ստեփան Տամպուրանեան
Յարութիւն Փափազեան
Սահակ Պաղտոյեան
Գրիգոր Թադէոսեան
Խորէն Կիրակոսեան
Նարին Հաճի Երամեան

## *ՌԻՍՏՐԻ ՄԷՋ ՄԱՀԱՑՈՂՆԵՐ*

Յակոբ Պոնճուքլեան
Յակոբ Մարգարեան
Ստեփան Սահակեան
Ծերուն Գարաօղլանեան (պզտիկ)

Սարգիս Թիւթելեան
Յարութիւն Կեզիւրեան
Մարտիրոս Պոյաճեան
Մանուկ Տէր Գէորգեան
Թորոս Թաշճեան
Մելքիսեդեկ Մուրատեան
Համբարձում Պոյաճեան
Գրիգոր Քեշիշեան
Կարապետ Նանիկեան
Կանան Նանիկեան
Աբրահամ Դաւիթեան
Կարապետ Փափազեան
Ստեփան Աւետեան
Սարգիս Չէքէմեան
Կարապետ Թաշճեան
Յարութիւն Թադէոսեան

## ՖԻՁՊՈՒՐԿԻ ՄԷՋ ՄԱՀԱՑՈՂՆԵՐ

Փիլիպպոս Մանուշեան եւ
Մարտիրոս Մանուշեան

## ՆԻՒ ԵՈՐՔԻ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԻ ՄԷՋ ՄԱՀԱՑՈՂՆԵՐ

Մանուկ Թաշճեան
Յովհաննէս Թաշճեան
Յարութիւն Շաթաֆեան
Համբարձում Ստեփանեան
Պետրոս Գաբուսուզեան
Ստեփան Ճերահեան
Ղազար Հապիպ Պետրոսեան
Մանուկ Զրթաֆեան
Խաչատուր Պոյաճեան
Գրիգոր Մարգարեան
Ծերուն Գարաօղլանեան (մեծ)
Մանուկ Եղիայեան
Արիս Տամպուրաճեան
Մանուկ Տամպուրաճեան
Յովհաննէս Անեմեան
Յովհաննէս Ոսկերիչեան
Աւետիս Գըրպըյըզեան
Յարութիւն Պոնափարթեան

Սարգիս Գըրպըյըգեան
Յակոբիկ Սարաֆեան
Ասատուր Թերզի Եաղուպեան
Յովհաննէս Ընտրիկեան
Գրիգոր Թաշճեան
Նազարէթ Որբերեան
Պոռսում Վոիկեան

## ՖԻԼԱՏԵԼՖԻՈՅ ՄԷՋ ՄԱՀԱՑՈՂՆԵՐ

Թիւթէլ Թիւթելեան
Համբարձում Թաւազալեան
Դանիէլ Դանիէլեան
Սերոբ Եսայեան
Գրիգոր Գարաօղլանեան
Յարութիւն Սուքիասեան
Դղիկ Սանիոսեան
Ստեփան Գարաօղլանեան
Նազարէթ Տօնապետեան
Յակոբ Տէր Մուշեղեան
Ստեփան Միրեքեան

## ԱՅԼԵՒԱՅԼ ՎԱՅՐԵՐՈՒ ՄԷՋ ՄԱՀԱՑՈՂՆԵՐ

| | |
|---|---|
| Գամաղիէլ Եաղուպեան | Պոստոն |
| Յարութիւն Եաղուպեան | » |
| Նշան Ռեհենեան | » |
| Գրիգոր Ուռումեան | » |
| Համբարձում Անճայեան | » |
| Գէորգ Արվանեան | » |
| Պետրոս Տամպուրանեան | Տովըր |
| Գէորգ Աղաէկեան | » |
| Արամ Պոյանեան | Շիքակօ |
| Մկրտիչ Պոյանեան | » |
| Խաչատուր Կարվանեան | » |
| Պօղոս Կարվանեան | » |
| Դաւիթ Պըլըգեան | Ֆրէնքլին |
| Պօղոս Նարընեան | » |
| Ղազար Բաղսարեան | » |
| Գէորգ Պապիկեան | Լովել |
| Ասատուր Պապիկեան | » |

| | |
|---|---|
| Կարապետ Մարգարեան | Լովել |
| Գրիգոր Էլիճանեան | » |
| Գէորգ Ասլանեան | Տիթրոյիթ |
| Յակոբ Ալաշայեան | » |
| Աբրահամ Պաճագուզեան | Քլիվլենտ |
| Սարգիս Էմենեան | » |
| Ալեքսան Էմենեան | » |
| Յովհաննէս Էմենեան | » |
| Մկրտիչ Աւետիսեան | Փրաւիտենս |
| Գրիգոր Վասիլեան | » |
| Յարութիւն Ասլանեան | Նիւպրիփորթ |
| Միքայէլ Քեշիշեան | Ֆրանս |

*ՈՂՋ ՄՆԱՑՈՂՆԵՐ*

| | |
|---|---|
| Գրիգոր Պոյաճեան | Պոստոն |
| Յարութիւն Պըլըգեան | Ֆրենքլին |
| Մանուկ Փափազեան | Քալիֆորնիա |
| Պաղտասար Վասիլեան | Փրաւիտէնս |
| Մարտիրոս Բարսեղեան | Նիւ Եորք |
| Տիգրան Թիֆթիկճեան | Պըֆլօ |
| Յակոբ Թիֆթիկճեան | » |
| Միսաք Գալեմքէրեան | Ֆիլատելֆիա |
| Յակոբ Շահրիկեան | » |
| Աւետիս Գարաօղլանեան | Ուսթր |
| Զաքարիա Պարսամեան | » |
| Մելքիսէթ Մելքիսէթէկեան | Ֆիչպուրկ |
| Սենեքերիմ Թիւթելեան | Քալիֆորնիա |

# ԵՐԿՐՈՐԴ ՇՐՋԱՆ

*1895-ի հայկական կոտորածներուն հետեւանքով կատարուած սպանութիւնները, թալան-թալանը եւ աւերումները ընդհանուր Հայութիւնն հասցուց թշուառութեան գագաթնակէտին, որուն պատճառով բազմաթիւ Հայեր, ինչպէս նաեւ Մալաթիացիներ, ստիպուեցան պանդխտութեան ցուպը ձեռք առնել եւ ով որ կրցաւ դուրս գալ թրքական դժոխքէն, ինքզինք գտաւ Ամերիկայի մէջ։*

*Այնքան շատ է այդ շրջանին Ամերիկա եկող Մալաթիացիներուն թիւը, որ բաւական դժուար գործ է զանոնք ալ դասաւորել առաջին շրջանի եկողներու ձեւով։ Բայց գիտենք որ անոնցմէ շատերուն անուններուն պիտի հանդիպինք Ընկերութեան պատմութեան մէջ։ Պիտի ջանանք արձա–*

նօտրել նաեւ 1908-էն ետք, երկրորդ շրջանի ընթացքին եկող եւ երկիր վերադարձողներու անունները իրենց կարգին. իսկ անոնք որ Ամերիկայի մէջ մահացած են, անոնց անունները պիտի արձանագրուին մասնաճիւղերու պատմութեանց անհետացող դէմքերու սիւնակներուն մէջ:

# ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ

Նախապէս յիշեցինք, որ մինչեւ 1904-ը Ամերիկայի զանազան հայաշատ կեդրոններուն մէջ կազմուած էին աւելի քան տասնեակ մը հայրենակցական միութիւններ իրենց կանոնագրութիւններով եւ մասնաճիւղերով: Ամէնքն ալ եռուզեռի մէջ էին իրենց ծննդավայրի եկեղեցական եւ կրթական կարիքները հոգալու առաջադրութեամբ: Ասոնցմէ զատ կային նաեւ կարգ մը ազգային եւ քաղաքական կազմակերպութիւններ, որոնք ամերիկահայ գաղութի մթնոլորտը ելեկտրականացուցած էին իրենց հայրենասիրական ժողովներով, դասախօսութիւններով եւ ազգային ու յեղափոխական երգերով:

Այդ ժամանակները ազգասիրութիւնը, ազգային կարիքներուն օժանդակելը, անոնց ի նպաստ գործելը հայ երիտասարդին բարոյական կարգախօսն էին: Շատ քիչ բացառութեամբ, ամէն Հայ իր կարողութեան ներած չափով լծուած էր աշխատանքի եւ զոհողութեան:

Մալաթիացիները զոհողութենէ խուսափողներ չեն եւ եղած ալ չեն: Անոնք ամէն տեղ ալ իրենց զոհողութեան բաժինը բերած են լիառատ կերպով: Բայց թէ ինչո՞ւ մինչեւ այդ ժամանակ չէին կազմակերպուած, անշուշտ ունէին իրենց պատճառները, որոնցմէ մին է, թերեւս, 1892-ին Ուստրի մէջ կազմուած Ծիածան Մելիտինէի Միութեան անփառունակ վախճանը:

Ինչ ալ որ եղած ըլլային պատճառները, կարելի չէր, սակայն, չափազանցել իրենց շուրջը կատարուած գործունէութենէն եւ ժամանակի ոգիէն: Եւ ահա, 1904 Յունուար 4-ին, Նիւ Եորքի մէջ հիմը կը դրուի Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան:

Ընկերութեան կազմութեան, ժամանակի եւ վայրի մասին կան զանազան կարծիքներ եւ տեսութիւններ, որոնց մասին շատ անգամներ խօսուած եւ գրուած է ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթին մէջ:

Այդ կարծիքները հետեւեալներն են.—

Առաջին.— Թէ՝ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը կազմուած է Մալաթիոյ մէջ 1880-ին: Այս կարծիքին հեղինակն է, կիպրոսէն, Պրն. Յակոբ Մուրատեան, որ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթի Դ. տարի թիւ 1 համարին մէջ հրատարակութեան առաւ իր Մարտ 8, 1942 թուակիր մէկ գրութիւնը հետեւեալ վերտառութեամբ.

«Որո՞նք եղած են Մալաթիոյ Կրթասիրաց Հիմնադիրները»: Յօդուածագիրը մանրամասնօրէն կը նկարագրէ ժամանակակից դէմքերն ու դէպքերը, Ընկերութիւնը կազմակերպողներուն եւ անոնց գործակիցներուն անունները, եւ անոնց գործունէութիւնը: Վերոյիշեալ յօդուածի տուած տեղեկութիւննե-

րէն օգտուելով, քանի մը հայրենակիցներ ալ արտայայտուած են այդ մասին:

Ուրախ ենք, որ մեր ծերունազարդ եւ յարգելի հայրենակիցը, իր այդ յուշերով, պատմութեան կու տայ մեզի համար շատ սիրելի եւ խնկելի անուններ եւ անմոռանալի յիշատակներ:

Ուսումնասիրաց Ընկերութիւն, Միութիւն, Ուսումնական Խորհուրդ, Կրթական կամ Կրթասիրաց ընկերութիւն կամ միութիւն ընդհանրական բառեր եւ անուններ են, որոնք կարող են գործածուիլ նոյն իմաստով կազմուած ոեւէ կազմակերպութեան կողմէ:

1880-ին Մալաթիոյ մէջ կազմուած ընկերութիւնը ճիշդ եւ ճիշդ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւն անունը կը կրէ՞ր թէ ոչ, մեզ ծանօթ չէ: Հետեւաբար, այդ ուղղութեամբ կարծիք յայտնելու իսկ նպատակ չունինք, որովհետեւ այդ թուականներուն ոչ մենք եւ ոչ ալ մեր ընկերութիւնը հիմնադիրներուն մեծ մասը դեռ ծնած չէինք: Նոյնիսկ լսած չէինք այդ մասին: Ուստի, երբ կ'ըսենք Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւն, կը հասկնանք Ամերիկայի մէջ կազմուած ընկերութիւնը, որուն պատմութիւնն է որ կը գրենք:

Երկրորդ.— Ո՞ր քաղաքի մէջ հիմնուեցաւ ընկերութիւնը. Ուստրի՞, Նիւ Եորքի՞ թէ Ֆիլատելֆիոյ մէջ:

Ուստրի մէջ, 1892-ին կազմուած Ծիածան Մելիտինէի Միութիւնը, որ հազիւ 3 տարուան կեանք ունեցաւ եւ ինչպէս յիշեցինք, անփառունակ կերպով վերջացաւ, երբեք կապ չունի 1904-ին կազմուած Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան հետ: Արդէն այդ մասին ոչ մէկ խօսք կամ դիտողութիւն գոյութիւն ունի: Ֆիլատելֆիոյ պարագան, սակայն, տարբեր է. կ'արժէ նկատի ունենալ, քննել եւ ճշդել այն ինչ որ իրողութիւն է:

Նախապէս բսուեցաւ, որ այն ժամանակները ամերիկահայ բոլոր գաղութները հայրենասիրական զգացումներէ տարուած, կազմակերպական աշխատանքի լծուած էին: Բնականաբար, Ֆիլատելֆիոյ նման հայկական մեծ գաղութ մը բացառութիւն չէր կրնար կազմել եւ հոն ալ կազմուած էին զանազան միութիւններ: Պէտք է մտածել, որ Ֆիլատելֆիոյ մէջ ապրող բաւական կարեւոր թիւով Մալաթիացիներ չէին կրնար անտարբեր մնալ եւ սկսած էին կազմակերպուիլ: Բայց ո՞ր թուականին. ատոր տրուչումն է կարեւորը:

Մեր տրամադրութեան տակ ունինք երկու գրութիւններ, որոնցմէ մէկը Փարոս ստորագրութեամբ հրատարակուած է ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթի Ե. Տարի թիւ 3ին մէջ 1944ին Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի քառասնամեայ տօնակատարութեան առթիւ: Հոս կ'արտատպենք մաս մը այդ գրութենէն, որ մեզ կը հետաքրքրէ.—

«Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի հիմնադիրներէն Սեդրակ Օտապաշեանի յայտարարութեան եւ պատմութեան համաձայն, 1904-ի ամրան ամիսներուն միոյն մէջ, Կիրակի օր մը, չորս հայրենակիցներ — Յովհաննէս Թայեան,

Թորոս Թաշճեան, Յարութիւն Թաշճեան եւ Նազարէթ Սուքիասեան կու գան
իր բնակարանը եւ միութիւն մը կազմելու համար կ'ունենան խորհրդակցա-
կան ժողով մը: Անկէ ետք յաջորդական քանի մը ժողովներ եւս կ'ունենան եւ
կիրակի օր մըն ալ Ցրդ *Քալոհնէլ փողոցի* սրահին մէջ ժողով մը կը սարքեն,
ուր ներկայ կ'ըլլան նաեւ Գէորգ Մութաֆեան, Իսկենտէր Էմինեան, Գէորգ
Եսայեան, Սերոբ Եսայեան, Գրիգոր Ահարոնեան, Համբարձում Թաւագա-
լեան, Թիւթէլ Թիւթելեան եւ Յովհաննէս Կիւզելեան:

«Այս ժողովին ատենապետ եղած է Յովհաննէս Թայեան: Ներկաները
բոլորն ալ կ'արտայայտուին եւ միաձայնութեամբ կ'որոշեն կազմել միութիւն
մը:

«Ծրագիր–կանոնագիր պատրաստելու համար կ'ընտրուի յանձնախումբ
մը, որ կը դիմէ Պրն. Կարապետ Մխալեանի...» *յետոյ կը շարունակէ*.

«Պրն. Օտապաշեանի հաւաստիացումին համաձայն, Միութեան կազ-
մութեան այդ օրերուն նամակներով կապ կը պահեն Նիւ Եորքի հայրենակից-
ներուն հետ, որոնցմէ Մանուկ Կուրապեան եւ Խաչատուր Պոյաճեան Ֆիլա-
տելփիա կու գան եւ հոն տեղեկանալով միութեան շուրջ մանրամասնու-
թիւններուն, կը զեկուցանեն Նիւ Եորքի հայրենակիցներուն եւ հոն ալ կը
կազմուի Կրթական մասնաճիւղ մը ու իրարու հետ տեւական կապ կը պա-
հեն»:

*Ամրան ամիսներն են Յունիս, Յուլիս եւ Օգոստոս: Եթէ Յունիսի առա-
ջին Կիրակին ալ կազմած ըլլային մասնաճիւղը, կրկին Ֆիլատելփիան չէր
կրնար ըլլալ ընկերութիւնը կազմողը, որովհետեւ, բոլորս ալ գիտենք, որ
այդ Թուականէն վեց ամիս առաջ արդէն կազմուած էր ընկերութիւնը Նիւ
Եորքի մէջ:*

*Երկրորդ գրութիւնը Գալիֆորնիայէն մեր վեթերան հայրենակից Պրն.
Կարապետ Ճերահեանի նամակագրութիւնն է, որ շատ աւելի հաւանական եւ
ժամանակակից գրութիւն մը ըլլալ կը Թուի:*

*Պրն. Ճերահեան ընդառաջելով Յանձնախումբիս կոչին, մեզի տուած է
նաեւ կարգ մը ուրիշ արժէքաւոր տեղեկութիւններ, որոնց պիտի անդրա-
դառնանք իրենց կարգին:*

*Պրն. Ճերահեանի գրութիւնը լոյս պիտի տեսնէ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պար-
բերաթերթին մէջ: Հոս կը զետեղենք այդ գրութեան միայն այն մասերը, որ
մեզ հետաքրքրող հարցերուն հետ կապ ունին.—*

«1904–ին, Յունուար ամսոյն, հետեւեալ անձերը — Դիկին Սանոսեան,
Թորոս Թաշճեան, Յարութիւն Թաշճեան, Նազարէթ Սուքիասեան, Յարութիւն
Սուքիասեան, Աւետիս Սուքիասեան, Խաչատուր Քեշիշեան, Խաչատուր
Սուրբ Կիրակոսեան, Լեւոն Տէր Դաւիթեան, Յովհաննէս Մանուշեան, Կա-
րապետ Ճերահեան եւ Ահարոն Ճերահեան իրարու քով գալով կը խորհին Ֆի-
լատելփիա գտնուող հայրենակիցները հաւաքելով եւ Արաբկիրցիներու օրի-
նակին հետեւելով հիմնել հայրենակցական ընկերութիւն մը: Ուստի, առ
այդ, իրենց մէջէն ընտրեցին հետեւեալ երեք երիտասարդները — Կարապետ

Ճերահեան, Յարութիւն Թաշճեան եւ Լեւոն Տէր Դաւիթեան, իբրեւ առժամեայ յանձնախումբ, որ անհրաժեշտ կարգադրութիւնները ընեն եւ զանոնք ժողովի մը հրաւիրեն :

«Յանձնախումբը ······ սրահը կը վարձէ եւ 55 հայրենակիցներու հրաւէր քարտեր կը գրէ :

«Որոշուած օրը — զոր չեմ յիշեր — անխտիր, բոլոր հայրենակիցները ներկայ կ'ըլլան եւ օրուան առժամեայ ատենապետ կ'ընտրուի Յարութիւն Թաշճեան եւ այս ժողովին մէջ կը կազմեն Միութիւն մը ու կ'ընտրեն Յանձնախումբ մը Ծրագիր-կանոնագիր պատրաստելու համար : Կ'որոշեն, որ *կազմուելիք* Միութիւնը անմիջապէս վաւերացուի Ամերիկեան կառավարութենէն եւ Ուստր եւ Նիւ Եորք նամակներ գրել այս ուղղութեամբ ···» :

*Այս բոլորը որքան ալ ճիշդ ըլլան, կրկին պէտք եղած ապացոյցները չեն տար, թէ ընկերութիւնն առաջին անգամ Ֆիլատելֆիա կազմուած ըլլայ :*

*Առաջին· որովհետեւ այս գրութեան մէջ միայն կ'ըսուի Յունուարի մէջ, բայց ե՞րբ· Յունուարը 31 օր ունի, եւ մինչեւ յանձնախումբը սրահը վարձէ, ժողով գումարէ, կարող է մի քանի շաբաթ առնել, մինչդեռ Յունուարի սկիզբը արդէն ընկերութիւնը կազմուած է Նիւ Եորքի մէջ :*

*Երկրորդ· մեր ձեռքին տակ չունինք այս տեսակէտը փաստող ոեւէ պաշտօնական գրութիւն կամ արձանագրութիւն : Անհատի մը միտքը կամ յիշողութիւնը որքան ալ սուր եւ պայծառ եղած ըլլայ, կարելի չէ հիմք ծառայեցնել, մանաւորապէս երբ խնդիրը կը վերաբերի 50 տարի առաջ եղած առաջին անցուդարձերուն եւ թուականներուն : Բայց իր ժամանակին գրուած ու վաւերացուած արձանագրութիւնները սխալ չեն կրնար ըլլալ : Այս նկատումով է, որ մեր պատմութեան հիմքը նկատած ենք միմիայն պաշտօնական եւ վաւերացուած գրութիւններ, որպիսիք են Ընկերութեան Կեդրոնական Վարչութեանց եւ Պատգամաւորական ժողովներու արձանագրութիւնները : Ընկերութեան սկզբնական շրջանի արձանագրութիւններուն մէջ այս ուղղութեամբ ոեւէ խօսք կամ ակնարկութիւն գոյութիւն չունի, հակառակ անոր որ շատ անգամ մէկ բառի վրայ ժամերով վիճաբանած են, եւ առ այդ, Յանձնախումբս քննելով վերոյիշեալ պարագաները, կը հաստատէ որ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը հիմնուած է Նիւ Եորքի մէջ : Կը հաստատենք, նաեւ որ Ֆիլատելֆիան ալ անկէ քիչ ետք կազմակերպուած եւ կազմած է իր մասնաճիւղը :*

## ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԿԱԶՄՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ ԵՒ ՈՒՆԵՑԱԾ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ

*Ընկերութեան կազմութեան պարագաները դեռ մեզ շատերուս ծանօթ են : Այն ժամանակները, ինչպէս ուրիշ տեղացի Հայեր, նոյնպէս նաեւ Մալաթիացի մեր հայրենակիցներու մեծ մասը խնայողութեան եւ իրարու քով ըլլալու նկատումներով, խումբով միասին կ'ապրէին : Ուրիշներ ունէին իրենց*

տանձին սենեակները։ Անոնց մեծ մասն ամուրի երիտասարդներ էին եւ շաբաթը վեց օր չարաչար աշխատիլ պարտադրուած ըլլալով միայն Շաբաթ երեկոները եւ Կիրակի օրերն էին որ կրնային իրարու քով գալ եւ հանգիստ ընել։ Իրենց ժամանցի գլխաւոր զբաղումը թուղթ — խսկեմպիլ — խաղալն էր եւ տափլա շարունակաբար։

Քիչ մը աւելի տարէց եւ կեանքի փորձառութեամբ թրծուած հայրենակիցներ, ինչպէս Պրն. Մահտեսի Յովհաննէս Սիւտճեան, Համբարձում Ստեփանեան եւ ուրիշներ, նկատի առնելով այս յումպէտս ժամավաճառութիւնը, յաճախ խօսած եւ երբեմն ալ յանդիմանած էին երիտասարդները, որ փոխանակ թղթախաղութեան, հետամուտ ըլլան աւելի օգտակար բաներու. օրինակ կրնան կազմել միութիւն մը։ Յունուարի Կիրակի օր մը երբ կրկին սեղաններու շուրջ բոլորուած թուղթ կը խաղային, ներկայ տարէց հայրենակիցներէն մին կրկին միութիւն մը կազմելու հարցը կ'արծարծէ։ Խաղցողները կը ձգեն իրենց խաղը եւ խորհրդակցելէ ետք կը հիմնեն ընկերութիւնը։

Ընկերութեանս պատմութիւնը գրելու մեր հիմնական աղբիւրը ընկերութեան արխիւներն են։ Հոս մեծ պարծանքով ու գովեստով կու գանք արձանագրել, որ անցեալ 50 տարիներու ընթացքին պաշտօնավարող Կեդրոնական Վարչութեանց, վարչական ժողովներու եւ պատգամաւորական ժողովներու արձանագրութիւնները նոյնութեամբ պահուած են եւ այսօր ձեռքի տակ ունինք, որոնց շնորհիւ միայն կրնանք գրի առնել Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան ճշգրիտ պատմութիւնը։ Այս պարագան ինքնին ցոյց կու տայ մեր հայրենակիցներուն ընկերութեան հանդէպ ցոյց տուած հոգածութիւնն ու նախանձախնդրութիւնը։

Ժողովներու արձանագրութիւնը կը սկսի 1904 Յունուար 4-ին, իսկ կանոնաւոր տոմար պահելը Մարտ 1-ին։ Ասոր համար է որ տոմարի կողքին վրայ գրուած է 1904 Մարտ 1. պարագայ մը որ ոմանց մտքին մէջ շփոթութեան պատճառ եղած է։

Ընկերութեան հիմնումին թուական նշանակուած է 1904 Յունուար 4, բայց Շարժական Տոմարի (Perpetual Calendar) հաշուով 1904-ը նահանջ տարի է եւ Յունուար 4-ը Երկուշաբթիի կը հանդիպի, այնպէս որ Երկուշաբթին գործի օր ըլլալով կարելի չէր ժողով ընել։ Այս կէտը նկատի ունենալով յայտնի է որ ժողովը տեղի ունեցած է Յունուար 3, Կիրակի օր։ Կ'երեւի այդ օրուընէ մինչեւ Մարտ 1 զանազան թուղթերու վրայ մնացած արձանագրութիւնները մնայուն տոմարի մէջ առնուած ժամանակ սխալմունք մը պատահած է։ Այս ճշդումն ընելէ ետք կ'անցնինք ուղղակի պատմութեան, նախ մէջբերելով ժողովներու արձանագրութիւնները, յետոյ տալով ծանօթութիւններ կամ մեկնութիւններ եթէ պէտք ըլլայ։

1904 Յունուար 4.

«Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը Նիւ Եորքի մէջ յարութիւն առաւ եօթը անդամօք։»

Որո՞նք էին այս եօթն անդամները, այդ մասին բան մը գրուած չէ։

Բայց սակայն կարեւոր նկատելով տեսակցութիւն մը ունեցանք Ընկերութեանս հիմնադիրներէն եւ անոր առաջին քարտուղար եւ յիշեալ արձանագրութիւնը պատրաստող Պրն. Գրիգոր Պարմաքեանի հետ, որուն տուած տեղեկութիւններէն յայտնի եղաւ որ այդ անուններուն ամարին մէջ չգրուիլը պարզապէս համեստութեան համար եղած է։ Բայց այժմ որ 50 տարիներ անցած են եւ անոնցմէ մեծ մասն ալ յաւէտ բաժնուած են այս աշխարհէն, հիմա կրնանք տալ այդ անունները արձանագրուելու համար պատմութեան մէջ, որոնք հետեւեալներն են.

Ասատուր Ազմելեան, Գրիգոր Պարմաքեան, Համբարձում Ստեփանեան, Սեդրակ Պետրոսեան, Մատթէոս Կուրաքեան, Կանան Անտուրեան եւ Մարգար Թաչճեան։ Այս վերջինն այն տարաբախտ եւ հեզահամբոյր հայրենակիցն է, որ սոյն Թուականէն քանի մը ամիս վերջ դաւադրաբար սպաննուեցաւ իր հարազատ եղբօր Արամի ձեռքով, որ գտաւ իր արդար պատիժը։

«Յունուար 30-ին անդրանիկ ժողովն ունեցանք Ազմելեաններու սենեակը եւ հոն կարգ մը երիտասարդներ եւս հրաւիրելով կարդացուեցաւ մեր շինած ծրագիրը։ Ներկաները բոլորն ալ ոգեւորուած, զանազան արտայայտութիւններէ վերջ անդամոց թիւը բարձրացաւ 22-ի եւ մեծ ուրախութեամբ ժողովը փակեցինք։»

Յայտնի է որ Յունուար 3 կամ 4-էն ետք վերեւ յիշուած 7 անդամները գործի լծուած եւ իրենց միջոցներով պատրաստած են ընկերութեան ծրագիր-կանոնագիր մը։

«Փետրուար 14. կրկին ժողով ունեցանք Պրն. Ազմելեաններու սենեակը ու հոն կարդացուեցաւ Ֆիլատելֆիայէն եկած ծրագիրը, որուն մասին բաւական վիճաբանելէ ետք, թողուցինք միւս ժողովին, որ տեղի պիտի ունենար նոյն տեղը Փետր. 28-ին։ Այս ժողովին մէջ անդամոց գաղտնի քուէով Պրն. Ա. Ազմելեան՝ ատենապետ եւ Պրն. Գրիգոր Պարմագեան՝ Ատենադպիր ընտրուեցան։»

Հոս որոշապէս կը տեսնուի որ Ֆիլատելֆիան ալ Յունուարի մէջ, Թերեւս Նիւ Եորքէն երկու կամ երեք շաբաթ յետոյ կազմուած ու ծրագիր մը պատրաստած է։ Ֆիլատելֆիացիներու պատմութենէն յայտնի է որ այդ ծրագրի պատրաստութեան համար դիմած են Եփրատ քոլէճի Դ. շրջանի շրջանաւարտներէն Արաբկիրցի Պրն. Կարապետ Մխալեանի, որ Թերեւս ինքն է եղած քանի մը տարի առաջ կազմակերպուած Արաբկիրի Միութեան ծրագիրը պատրաստողը։ Նիւ Եորքի մեր հայրենակիցներու կողմէ եւ հմուտ գրագէտի մը պատրաստած ծրագիրները բաղդատութեան կը դրուին։ Բնական է որ ընդունուէր Ֆիլատելֆիայէն ղրկուածը։ Բայց եւ այնպէս այդ ծրագիրը հետագայ երեք տարիներու ընթացքին յաճախ փոխուած, աւելցուած կամ պակսեցուցուած է, որոնց կը հանդիպինք հետագայ արձանագրութեանց մէջ։

«Նախորդ ժողովին համաձայն փետր. 28-ի ժողովը տեղի ունեցաւ նոյն սենեակը, անդամոց մեծամասնութեան ձայնիւ ժողովը բացուեցաւ ու շատ վիճաբանութիւններէ ետք Ֆիլատելֆիոյ ծրագիրը ընդունուեցաւ։ Քուէից

մեծամասնութեամբ եւ գաղտնի քուէով ընտրուեցան դիւանի մնացեալ հինգ անդամները — ընդհանուր գանձապահ Համբարձում Ստեփանեան, երկրորդ գանձապահ Մատթէոս Կուրապեան, հաւաքիչ Կանան Անտուրլեան: Այս բոլորէն վերջ ժողովը փակուեցաւ գոհունակութեամբ :»

*Ապրիլ 3-ին ժողով մը եւս կ'ունենան նոյն տեղը եւ կ'որոշեն սարքել ընդհանուր ժողով մը, հրաւիրելով Նիւ Եորքի բոլոր հայրենակիցները: Ժողովի օր կ'որոշեն Մայիս 15-ը:*

*Որոշուած օրը, Մայիս 15-ին, 344-րդ պողոտայի վրայ եղող Հայկական Գրադարանի սրահը տեղի կ'ունենայ հրապարակային ժողովը եւ հակառակ օդի աննպաստ ըլլալուն, կրկին 40-ի մօտ հայրենակիցներ ներկայ եղան: Սոյն ժողովին եկած էին Ֆիլատելֆիայէն երկու հայրենակիցներ — Յովհաննէս Թայեան եւ Ստեփան Միրէքեան: Կրկին խնդրոյ առարկայ կ'ըլլայ ընկերութեան ծրագիր-կանոնագիրը: Հոս մէջ կը բերենք արձանագրութեան այդ մասը.*

«Ատենապետը կարդաց ծրագիրը մի առ մի եւ ժամանակ տրուեցաւ ունկնդիրներուն ընելու հարցումներ, որոնց պատասխանեցին յարգելի պատգամաւորներ Պրն. Յովհաննէս Թայեան եւ Ստեփան Միրէքեան: Շատ մը հարցեր եւ պատասխաններ եղան եւ բաւական վիճաբանուելէ ետք, մէկի դէմ տասն եւ վեց քուէով ընդունուեցաւ բարեփոխել նպատակի առաջին յօդուածը ըսելով. ՄԱԼԱԹԻՈՅ ՆԵՐԿԱՅ ՎԱՐԺԱՐԱՆՆԵՐԷՆ ԱՒԵԼԻ ԲԱՐՁՐ ՎԱՐԺԱՐԱՆ ՄԸ ՀԱՍՏԱՏԵԼ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԱՍԿՈՂՈՒԹԵԱՄԲ ՄԵՐ ԵՒ ՈՉ ԹԷ ՄԻԱՑԵԱԼ ԿԱՄ ՈՒՐԻՇ ՈՐԵՒԷ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՁԵՌՕՔ:

«Հինգի դէմ տասնեւութ քուէով ընդունուեցաւ Հինգ Հազար Տոլարի դրամագլուխը Երկու Հազարի իջեցնել եւ շուտով գործի սկսիլ:

«Հինգի դէմ տասնեւերկու քուէով ընդունուեցաւ ստակը դրամատուն դնել, չորս կտորէ բաղկացեալ կնիքով մը, այս կնիքին իւրաքանչիւր կտորը պիտի մնայ չորս տարբեր քաղաքաց մէջ եղող չորս անձանց քով, փոխան կալուած առնելու: Նաեւ քուէից մեծամասնութեամբ ընտրուեցան հոգաբարձութեան հինգ անդամները — Պրն. Ստեփան Կուրապեան, Խաչատուր Պոյաճեան, Յովհաննէս Անեմեան, Մանուկ Թաշճեան եւ Համբարձում Ստեփանեան: Առնցմէ վերջ առաւելագոյն քուէ շահողներ — Ս. Ավուշարեան, Աբրահամ Պաճաքճուզեան: Նաեւ ընդունուեցաւ որ հոգաբարձութեան անդամները սոսկ բարոյական երաշխաւորութիւն պէտք է ունենան եւ ոչ թէ դրամական:

«Նախորդ թիւին վրայ աւելցան 15 անդամներ եւս, որով ընդամէնը եղաւ 35 անդամ: Գլխարկի պտոյտէն գոյացաւ 2 տոլար 70 սենթ: Երկու նաբինջ աճուրդի դրուեցաւ, որոնցմէ մէկը եղաւ 3 տոլար եւ ստացաւ Պրն. Ս. Ավուշարեանը, իսկ միւսը 10 տոլար 55 սենթ, որ Նիւ Եորքցիներս, իբր շնորհք, Ֆիլատելֆիոյ պատգամաւոր Պրն. Յ. Թայեանի տուինք, հոն տանելու համար :»

*Արձանագրութիւնը ցոյց կու տայ սկզբնական ծրագրի կարգ մը կէտե–*

րը, որոնք փոփոխութեան ենթարկուած են եւ թէ, այդ ծրագրի համաձայն, դիւանին կից կայ եղեր հոգաբարձութիւն մը։ Իսկ չորս կտորէ բաղկացեալ կնիքը ընաւ գործածութեան չդրուեցաւ։ Դրամը դրամատո՞ւն դնել թէ կալուած առնելու հարցը այն ժամանակուան ամենամեծ վիճաբանութիւն յարուցանող հարցը եղած է, որուն պիտի հանդիպինք հետագայ արձանագրութեանց մէջ։

Յունիս 5-ի անդամական ժողովին մէջ հոգաբարձական կազմի մը գոյութիւնը աւելորդ կը նկատեն եւ անոր անդամները կը միացնեն վարչական կազմին։ Ընդհանուր հաւաքիչ կը նշանակեն Յակոբ Սուրբ Կիրակոսեանը։ Նոյն այդ ժողովին մէջ իրաւունք կու տան վարչութեան որ ընտրէ երկու անձինք, Ուստր երթալու համար, անշուշտ այնտեղ մասնաճիւղ մը կազմակերպելու նպատակով։

Յունիս 9-ի արձանագրութիւնը ցոյց կու տայ որ վարչական ժողովին մէջ ատենապետ Պրն. Ս. Ազմէլեան կը հրաժարի իր պաշտօնէն եւ վարչական նոր կազմի անդամ կ'ըլլան հետեւեալները.

| | |
|---|---|
| Ստեփան Կուրապեան | Ատենապետ |
| Խաչատուր Պոյաճեան | Փոխ-Ատենապետ |
| Գրիգոր Պարմագեան | Ատենադպիր |
| Ասատուր Ազմէլեան | Փոխ-Ատենադպիր |
| Համբարձում Ստեփանեան | Գանձապահ |
| Յակոբ Սուրբ Կիրակոսեան | Հաւաքիչ |
| Յովհաննէս Աճեմեան | Խորհրդական |
| Մանուկ Թաշճեան | Խորհրդական |

Յունիս 11-ի վարչական ժողովին մէջ կ'որոշեն որ Ուստրի երկու ճաշարաններուն ալ նամակ գրուի։ Այդ ժողովին մէջ ծրագիրը կրկին խնդրոյ առարկայ կ'ըլլայ եւ որոշ սրբագրութիւններ ընելու համար կ'ընտրուի յանձնախումբ մը, որոնք են — Ս. Կուրապեան, Աճեմեան, Ազմէլեան եւ Պարմագեան։

Յուլիս 14-ի արձանագրութիւնն ունի կարգ մը կարեւոր կէտեր, որոնք նոյնութեամբ կ'արտագրենք.

«Վերջը կարդացուեցաւ Ֆիլատելֆիայէն եկած նամակը, եւ երբ տեսանք թէ այդ նամակին մէջ, մեզ ուղղեալ, «անգամ մը կ'ընդունինք անգամ մը չենք ընդունիր»ի խնդիր կայ, իրենց մեզ ղրկած Յունիս 2 թիւ պաշտօնական նամակը կարդացուեցաւ մէկ երկու անգամ, ինչպէս նաեւ Յունիս 11 թիւ քարտը։ Այս բոլորէն ետք տեսանք թէ մեզի ըսածնին իրենց համար նըշմարիտ էր. սակայն մեր դիւանի անդամները գործին յառաջացման ի սրտէ փափաքողներ, ուզեցին այդ գաղափարի զոհողութիւնն ընել մեր կողմէն, քանի որ անոնք չեն զոհեր եւ այս մասին խնդիրն սկսաւ ծեծուիլ։ Ոմանք ուզեցին տուն առնել, ոմանք ստակը դրամատուն դնել։ Բաւական ծեծուելէ վերջ ընդհանուրի հաւանութեամբ որոշուեցաւ որ Ֆիլատելֆիացիներուն միանանք եւ դրամն ալ փոխանի դրամատուն տանելու, տուն առնուի։ Յետոյ որոշուեցաւ մեր ժողովին արդիւնքն հաղորդել Ֆիլատելֆիացիներուն նամա-

## ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴԻՐՆԵՐԸ



Ստեփան Կուրապեան



Գրիգոր Պարմագեան



Ասատուր Եզմկեան



Յովհաննէս Անեմեան

## ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՀԻՄՆԱԴԻՐՆԵՐԸ



Խաչատուր Պոյաճեան



Հաճի Մանուկ Թաշճեան



Համբարձում Սեփանեան

կով, ի միջի այլոց յիշելով, թէ իրենց ղրկած պաշտօնական նամակներն ու պատգամաւորաց պատգամն անանկ կը ցուցնէր, թէ ընդունած էին մեր ծրագիրը, սակայն, որովհետեւ իրենք այժմ չեն ընդունիր, մենք կ'ընենք այդ զոհողութիւնը գործին սիրոյն համար։»

*Խնդիրը շատ որոշ է. նախապէս որոշուած էր որ դրամը դրամատուն դրուի եւ Ֆիլատելֆիան ալ համակարծիք էր։ Սակայն, կ'երեւի յետոյ, թերեւս որոշ պատճառներով, մտքերնին փոխած են եւ անանկ ալ պահանջ դրած են, որուն հետեւանքով նախկին որոշումը կը փոխուի, նոյնպէս նաեւ ծրագրի երկրորդ յօդուածը — փոխանակ դրամը դրամատուն դրուելու, տուն առնելու կը փոխուի։ Ոմանք կը հակառակին տրուած որոշումին եւ ատենապետ Ս. Կուրապեան կը հրաժարի։*

*Խնդիրն անշուշտ անմիջապէս տուն առնելու վրայ չէր, որովհետեւ այդ ժամանակները դեռ դրամ չունէին որ այդ մասին վիճիլ հարկ ըլլար, այլ ծրագրային հարց էր. չէին ուզեր որ դրամը դրամատուն պահուիլը օրէնք նկատուէր. իսկ դրամը դրամատուն պահելու կողմնակիցներն ալ վստահ չէին թէ ընկերութիւնը կրնա՞յ տուն մը գնել եւ պահել։*

*Ուստր գրուած նամակներուն պատասխանը, որուն կը սպասուէր անձկանօք, վերջապէս կու գայ եւ կը կարդացուի Սեպտեմբեր 11–ի անդամական ժողովին մէջ, ու կը ստեղծէ մեծ խանդավառութիւն։ Ասոր վրայ ժողովը կ'ընտրէ երկու պատգամաւոր Ուստր երթալու համար, յանձին Պրնք. Յովհաննէս Աճեմեանի եւ Գրիգոր Պարմագեանի։ Կ'երեւի սակայն, որ վերջին Աճեմեան չէ կրցած երթալ եւ իր տեղը գացած է Խաչատուր Պօյաճեան։*

*Նոյեմբեր 30–ի անդամական ժողովին ներկայ կ'ըլլան նաեւ Ֆիլատելֆիայէն Ս. Էմինեան եւ Խաչատուր Տէր Մուշեղեան։ Ուստր գացող պատգամաւորներն իրենց զեկոյցը կու տան այս ժողովին, ուրկէ յայտնի կ'ըլլայ որ Ուստրի հայրենակիցները մեծ եռանդով գործի սկսած են։ Այս տեղեկութիւնը մեծ յոյս եւ խանդավառութիւն կը ստեղծէ։ Այս ժողովին մէջ կ'որոշուի սարքել հրապարակային հանդէս մը՝ քիչ մը դրամ ձեռք բերելու համար։ Կը կարդացուի նաեւ Մալաթիոյ առաջնորդէն եկած նամակը։ Ներկաները տեղեկանալով նամակի բովանդակութեան, կ'որոշեն որ այդ նամակը նոյնութեամբ կարդացուի սարքուելիք հրապարակային ժողովին, հանդէսին մէջ աւելի խանդ եւ ոգեւորութիւն ստեղծելու համար։ Այս ժողովի արձանագրութեան մէջ Առաջնորդի նամակի բովանդակութեան մասին կան հետեւեալ տողերը.* — Նամակը կը համապատասխանէր մեր նպատակին եւ ուղղեալ էր ընդհանուր Մալաթիացիներուն։

*Այս ժողովով կը փակուի Ընկերութեան գործունէութեան առաջին տարին, որու ընթացքին ունեցած են 18 վարչական եւ անդամական ժողովներ եւ կազմուած է երեք մասնաճիւղեր — Նիւ Եորք, Ֆիլատելֆիա եւ Ուստր։*

# ԱՌԱՋԻՆ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Յունուար 22, 1905, Կիրակի օր, Հայկական Գրադարանին մէջ տեղի կ՚ունենայ Ընկերութեան Տարեկան ժողովը, որ կը քննէ Ընկերութեան մէկ տարուան նիւթական եւ կազմակերպչական գործերը եւ 1905 տարւոյ համար կ՚ընտրէ նոր վարչութիւն մը հետեւեալ կազմով.*

| | |
|---|---|
| *Յովհաննէս Աճեմեան* | *Ատենապետ* |
| *Բ. Էմինեան* | *Փոխ–Ատենապետ* |
| *Գրիգոր Պարմաղեան* | *Ատենադպիր* |
| *Մեսրոպ Սիւտճեան* | *Փոխ–Ատենադպիր* |
| *Համբարձում Ստեփանեան* | *Գանձապահ* |
| *Յ. Կիրակոսեան* | *Հաւաքիչ* |
| *Ս. Ախուչարեան* | *Խորհրդական* |
| *Մ. Կուրապեան* | *Խորհրդական* |

*Նիւթական հաշուետուութենէն յայտնի կ՚ըլլայ որ 1904ի շրջանին ընդհանուր մուտք եղած է 305 տոլար 57 սէնթ, իսկ ելք եղած է 23 տոլար 56 սէնթ. գանձը պատրաստ դրամ կը մնայ 282 տոլար 1 սէնթ:*

*Այս ժողովը թէեւ Նիւ Եորքի մասնաճիւղի անդամական ժողով է, սակայն, պատգամաւորական ժողովի դեր կատարած ըլլալուն, զայն կը նկատենք Ընկերութեան Առաջին Պատգամաւորական Ժողովը, նկատելով որ բացի Ֆիլատելֆիայէն ուրիշ մասնաճիւղ չկար: Ուստր դեռ նոր կը կազմուէր:*

*Նիւ Եորքի մասնաճիւղը Մարտ 11-ին կը սարքէ հրապարակային հանդէս մը, ուր ներկայ կ՚ըլլայ խուռն բազմութիւն մը: Տոքթ. Ա. Այվազեան եւ Ղեւոնդ Վարդապետ Մարդուկէսեան կը խօսին այս հանդէսին: Այս ձեռնարկի նիւթական հասոյթը կ՚ըլլայ 93 տոլար 73 սէնթի գումար մը: Այն ժամանակներուն համար մեծ յաջողութիւն նկատուած ձեռնարկ մըն է:*

*Նոյն տարւոյ Մարտ 19-ի վարչական ժողովէն ետք ընկերութիւնը կ՚ունենայ երկար դադար մը: Այս պարագան ճշդրիտ կերպով ցոյց տալու համար յարմար կը սեպենք հոս մէջբերել, նոյնութեամբ, այս մասին գրուած արձանագրութիւնը: Բայց նախ քան այդ, կ՚ուզենք ճշդում մը ընել որ 1905 Մարտ 11-ը Շաբաթ օր է եւ շաբաթ օրերը այդ կարգի հանդէսներ չեն սարքուիր, պէտք է եղած ըլլայ Մարտ 12, որ Կիրակի է: Ահա արձանագրութիւնը.*

«Ընկերութիւնս 1905 Մարտ 19-էն մինչեւ 1906 Դեկտեմբեր 22 բաւական երկար դադար մը ունեցաւ, որով մասնաւոր ժողովներ եւ հանդէսներ տեղի չունեցան, այլ սոսկ դիւանի անդամներէն մի քանի անձեր անխտիր կ՚աշխատէին Ընկերութեան տուն մը առնելու համար, որովհետեւ այս էր անդամներու յուսահատութեան պատճառ եղող ամենամեծ անջրպետը: Շատ մը տուներ ձեռք առնուեցան. սակայն գնոյն եւ մասնաճիւղերու անհամաձայնութիւնը պատճառ եղաւ այսչափ ուշանալուն: Բայց վերջապէս Ընկերու–

թիւնս բոլոր մասնաճիւղերու համաձայնութեամբ տուն մը գնեց Վեսթ Հոպոքընի 492 Քըլինթըն էվընիւի մէջ:

«Այս տան առնուիլը ընդհանուր մասնաճիւղերու, մանաւանդ Նիւ Եորքցիներուս մեծ ուրախութիւն պատճառեց եւ այդ ուրախութեան արդիւնք ժողով մը ունեցանք 1906 Դեկտեմբեր 22-ին 139, **East 26th St.**ի սրահին մէջ, ուր ակնկալուածէն շատ աւելի հայրենակիցներ ներկայ էին: Թէեւ սրահը շատ պաղ էր, սակայն անդամոց կրակոտութիւնը մոռցնել տուաւ այդ պաղը: Բաւական մանր մունր խօսակցութիւններէ վերջ, ժողովը բացուեցաւ: Ատենապետը բացակայ ըլլալով առժամեայ ատենապետ ընտրուեցաւ Ա. Ազմեյեան:

«Առնուած տանը մասին բացատրութիւններ տրուեցան: Եղան շարք մը հարցումներ անդամներու կողմէ, որոնց պատասխանուեցաւ միառմի:

1907 տարւոյ համար նոր վարչութիւն մը ընտրուեցաւ, որոնք եղան հետեւեալները.

| | |
|---|---|
| Ստեփան Մօթիեան | Ատենապետ |
| Խաչատուր Պոյաճեան | Փոխ-Ատենապետ |
| Գէորգ Մութաֆեան | Ատենադպիր |
| Պօղոս Քըրպըյըքեան | Փոխ-Ատենադպիր |
| Համբարձում Ստեփանեան | Գանձապահ |
| Մատթէոս Կուրապեան | Հաւաքիչ |
| Դանիէլ Դանիէլեան | Խորհրդատու |

«Յաջորդ առաւելագոյն քուէ շահողներն են Գէորգ Մարգարեան, Յակոբ Կիրակոսեան, Պետրոս Ժամկոչեան:

«Ֆիլատելֆիա երթալու համար ընտրուեցան երեք պատգամաւորներ՝ յանձինս Դաւիթ Պաճաքըրզեանի, Խաչատուր Պոյաճեանի եւ Ա. Ազմեյեանի: Յետոյ մէկ տանձ աճուրդի դրուեցաւ եւ բարձրացաւ 5 տոլարի. ստացաւ Լեւոն Թաշճեան, իսկ սրահի մէկ տոլար վարձքը վճարեց Պետրոս Գափուզեանը. ժողովը փակուեցաւ մեծ գոհունակութեամբ:»

*Առաջին Պատգամաւորական ժողովի արձանագրութենէն յայտնի եղաւ որ 1904 Յունուարէն մինչեւ 1905 Յունուար Ընկերութեան մուտքը եղած է 305 տոլար, որուն 23 տոլարը ելք ըլլալով գանձը կը մնար 282 տոլար: 1905, Մարտ 1-էն մինչեւ 1906 Դեկտեմբեր 22-ը, մօտաւորապէս 22 ամիս Ընկերութիւնը, այսինքն Կեդրոնը եւ Նիւ Եորքի մասնաճիւղը որեւէ գործունէութիւն չեն ունեցած բայց 1905 Մարտ 11-ի հանդէս-խնճոյքը, որմէ գոյացած է 93 տոլար, որով պատրաստագումարը կ՚ըլլար 375 տոլար: Հետեւաբար հարց է թէ ուրեմն ի՞նչպէս գնեցին: Քանի՞ գնեցին. որքա՞ն կանխիկ վճարեցին. որքա՞ն առաջին* մորթկէճ *և որքա՞ն երկրորդ* մորթկէճ *ունէր: Այս մասին ոչ մէկ յիշատակութիւն կայ արձանագրութեան մէջ: Մէկ տանձի աճուրդին մասին քանիցս գրուած է, բայց տուն մը գնելու հարցը, որ այնքան ժամանակ խնդրոյ առարկայ եղած եւ յետոյ վերջապէս գնուած է, այս*

մասին բան մը գրուած չէ։ Այս եւ ասոր նման կարգ մը հարցերու մասին արձանագրութիւնները լուռ կը մնան եւ կամ շատ կարճ ու լակոնական կերպով գրուած են։ Այնպէս որ խնդրոյն ծանօթ չեղողներու համար դժուար պիտի ըլլար այդ գրութեանց վրայ հիմնուելով պատմութիւն մը գրել։ Կ'երեւի իրենք բոլորն ալ տեղեակ էին ամբողջ մանրամասնութեանց եւ աւելորդ նկատած են արձանագրութիւն պահել մտքէ անցուցած չըլլալով որ կէս դար յետոյ Ընկերութեան պատմութիւնը պիտի գրուի եւ թէ անհրաժեշտ կ'ըլլան այդ տեղեկութիւնները։ Այս առթիւ Ընկերութեան կանոնագրութիւնը կ'ըսէ, որ

«Ընկերութիւնը երբ պատրաստի 1000 տոլար ունենայ, պարտի տուն մը գնել 8—12 հազար տոլարի արժողութեամբ»։ Կ'երեւի այդ հազար տոլարը կերպով մը մէջտեղ բերուած է եւ տունը գնած են 12 հազար տոլարի։

## ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Երկրորդ Պատգամաւորական Ժողովը գումարուած է 1907, Յունուարի սկիզբը, Ֆիլատելֆիոյ մէջ։ Մինչեւ այդ ատեն դեռ երեք մասնաճիւղեր միայն կային — Նիւ Եորք, Ֆիլատելֆիա եւ Ուստր։

Նիւ Եորքի Պատգամաւորներ էին Դաւիթ Պաճաքսուզեան, Խաչատուր Պոյաճեան եւ Ասատուր Այմելեան։

Ուստրի պատգամաւորներ — Աբրահամ Կեզիւրեան, Գրիգոր Պոյաճեան, որոնց կ'ընկերանայ նաեւ Պետրոս Կեզիւրեան։

Ֆիլատելֆիոյ պատգամաւորներ — Յովհաննէս Թայեան եւ Էմինեան։

Պատգամաւորական ժողովը տեղի կ'ունենայ, բայց արձանագրութիւն չկայ, այնպէս որ յայտնի չէ թէ ի՛նչ խնդիրներով զբաղած է ժողովը։ Մեր ունեցած անհատական տեղեկութիւններէն դատելով, ժողովի արձանագրութեան մասին տարակարծութիւններ տեղի ունեցած են եւ գոյութիւն ունեցող արձանագրութիւնը ըստ օրինի չէ վաւերացուած եւ չէ ստորագրուած պատգամաւորներուն կողմէ, եւ հետեւաբար արձանագրութեան մաս չէ կազմած։

Թէ ի՛նչ եղած են տարակարծութիւնները, այդ մասին կարծիք չենք կրնար յայտնել, քանի որ պաշտօնական փաստեր չունինք մեր ձեռքին տակ։

Այդ օրերուն Դաւիթ Պաճաքսուզեան եւ Խաչատուր Պոյաճեան Ուստրի կողմերը կ'երթան եւ կը հանգանակեն 195 տոլարի գումար մը։

1907 Յունուար 8-ին Նիւ Եորքցիները կը հանգանակեն 310 տոլար եւ կ'ընտրեն յանձնախումբ մը, հանգանակութիւնը շարունակելու համար։

1907 Մարտ 31-ին Նիւ Եորքի մասնաճիւղի անդամական ժողովը կ'որոշէ նոր վարչութիւն մը ընտրել, գանգատելով, որ 1906 Դեկտեմբեր 22-ին ընտրուած վարչութիւնը իր պարտականութեանց մէջ թերի գտնուած է, եւ

*առ այդ կ'ընտրէ նոր վարչութիւն մը հետեւեալ կերպով.*

| | |
|---|---|
| *Յովհաննէս Աճեմեան* | *Ատենապետ* |
| *Սարգիս Բըրպըյըքեան* | *Փոխ-Ատենապետ* |
| *Պօղոս Բըրպըյըքեան* | *Ատենադպիր* |
| *Գէորգ Մութաֆեան* | *Փոխ-Ատենադպիր* |
| *Օհան Աւետիքեան* | *Գանձապահ* |
| *Մատթէոս Կուրապեան* | *Հաւաքիչ* |
| *Դանիէլ Դանիէլեան* | *Խորհրդական* |
| *Մանուէլ Էրքեքեան* | *Խորհրդական* |
| *Պետրոս Ժամկոչեան* | *Խորհրդական* |
| *Մանուկ Թաշճեան* | *Տան Խնամակալ* |

1907 *Մայիսին կը կազմուի Ֆիչպուրկի մասնաճիւղը, իսկ նոյն տարւոյ Յուլիսին ալ Վուքեկընի մասնաճիւղը: Այս վերջինը կը ղրկէ նաեւ* 100 *տոլարի գումար մըն ալ:*

*Նիւ Եորքի Մասնաճիւղի Օգոստոս* 29-*ի անդամական ժողովին մէջ նկատի կ'առնուի Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի անգործութեան մատնուած ըլլալը: Այդ մասին կարգադրութիւնները կը թողու Պատգ. Ժողովին:*

*Սեպտեմբեր* 2-*ին տեղի ունենալիք Պատգ. Ժողովին պատգամաւոր կ'ընտրուին Յովհաննէս Աճեմեան, Պօղոս Բըրպըյըքեան եւ Յակոբ Կիրակոսեան:*

## ԵՐՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան առաջին չորս պատգամաւորական ժողովներու արձանագրութիւնները գրուած են պարզ ժողովի մը արձանագրութեան նման, այնպէս որ, որեւէ տեսութիւն ընելէ առաջ, յարմար կը նկատենք մէջ բերել այդ գրութիւնը այնպէս ինչպէս որ է:*

### *ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆ*
### *ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ*
### *ԵՐՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ*

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Երրորդ Տարեշրջանի Պատգամաւորական ժողովը տեղի ունեցաւ Սեպտեմբեր 1 եւ 2-ի օրերուն ի Նիւ Եորք, Պրն. Խ. Պոյաճեանի բնակարանը:

Տեղիս ատենապետը ժողովի նպատակը համառօտ եւ հակիրճ կերպով բացատրելէ վերջ բացաւ ժողովը:

Դիւանի անդամք ընտրուեցան Պրնք. Մանուկ Տամպուրաճեան՝ Ատենապետ, Պօղոս Բըրպըյըքեան՝ Ատենադպիր:

Պատրաստուեցաւ օրակարգ մը եւ ըստ անոր, կարգին սեղանի վրայ դրուեցաւ Ընկերութեանս հիմքը կազմող էն էական խնդիրը, որ էր Կանոնագրի բարեփոխումը:

Շնորհիւ պատգամաւորներու կանխամտածած պատրաստականութեան,

հիանալի արագութեամբ եւ համաձայնօրէն կնքուեցան բոլոր որոշումները:

Դուրս ձգուեցաւ կանոնագրի երկրորդ յօդուածը, որն ինքնին ոչնչութիւն մը դարձած էր: Ոմանք բարեփոխուեցան, ուրիշներ նոյնութեամբ ընդունուեցան. իսկ ասոնց վրայ աւելցաւ յօդուածներու նոր շարք մը, որոնց կանոնագրի մաս կազմելը հրամայական պահանջք դարձած էր Ընկերութեանս ներկայ կազմի եւ փոփոխմանց համընթաց ուղղութիւն մը տալու համար:

Կիրակի երեկոյ ժամը 12,30-ին օրակարգի այս հարցը լրացած ըլլալով նիստը փակուեցաւ:

Երկրորդ նիստը տեղի ունեցաւ հետեւեալ առաւօտ ժամը 11,30-ին: Հարց եղաւ *Թրըստիներու* ընտրութիւնը եւ կատարուեցաւ հետեւեալ կերպով թէ այդ մարմինը բաղկանայ եօթը անձերէ եւ թէ իւրաքանչիւր մասնաճիւղ մասնակցի մէկ կամ աւելի անդամներով եւ ընտրուեցան հետեւեալ անդամները. — Յակոբ Կիրակոսեան, Գէորգ Մուրադեան, Մեսրոպ Սիւտնեան, Յակոբ Տէր Յակոբեան, Գրիգոր Պոյաճեան, Աստուր Թերզիեանղուլեան եւ Մելքիսեդեկ Տէր Մելքիսեդեկեան: Որոշուեցաւ նոր *Բօ օփըրէյշընի* նոր վաւերագիր մը շինել տալ յիշեալ ձեւի տակ:

Ընտրուեցաւ հինգ անձերէ բաղկացեալ Կեդրոնական Վարչութիւն մը, որոնց երեքը կազմեն դիւանը եւ ըլլան Նիւ Եորքէն, եւ երկուքն ալ մասնաճիւղերէն — որոնք եղան.

| | |
|---|---|
| Խաչատուր Պոյաճեան | Ատենապետ |
| Պօղոս Քըրպըյըքեան | Ատենադպիր |
| Յակոբ Կիրակոսեան | Գանձապահ |
| Մանուէլ Վահրամեան | Խորհրդական |
| Աբրահամ Կեզիրեան | Խորհրդական |

որոնց պաշտօնը անմիջապէս սկսելով պիտի շարունակուի մինչեւ 1908-ի ըսկիզբը:

Ընկերութեան տան երրորդ Մորթկէճի հազար տոլարի վճարումը խնդիր ըլլալով որոշուեցաւ որ իւրաքանչիւր մասնաճիւղ հանգանակութիւն մը բանալով պէտք եղած գումարը հայթայթէ: Տանը նոր խնամակալ մը կարգելու խնդիրը ձգուեցաւ Կեդրոնական Վարչութեան. նոյնպէս Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի կազմալուծուած վիճակը նկատի առնուելով յանձնուեցաւ Կեդրոնական Վարչութեան, որ յարմար նկատած կերպով ջանայ վերականգնել մասնաճիւղը: Նիստը փակուեցաւ ժամը 5,30-ին:

Երրորդ նիստը բացուելով ներկայացուեցաւ Ուստրի հաշիւներու ելեւմըտական տեղեկագիրը, որուն մուտք եղած է 1904 Հոկտեմբերէն սկսեալ մինչեւ 1907 Օգոստոս մէկ 1,047 տոլար 92 սէնթ, ելք եղած է 234 տոլար 32 սէնթ. զուտ շահ 813 տոլար 60 սէնթ: Յիշեալ գումարին 45 տոլար 25 սէնթը եկած է Ֆիչպուրկէն:

Նիւ Եորքի ընդհանուր մուտք եղած է 1904 Մարտ 1-էն մինչեւ 1907

Մայիս 30, 3,358 տոլար 62 սէնթ․ ելք 3,234 տոլար 48 սէնթ․ պատրաստ դրամ 124 տոլար 14 սէնթ, որմէ 24 տոլարը պատգամաւորներու ծախք կը ցուցուէր եւ որ ցարդ անընդունելի կը մնար։ Պատգ․ ժողովը ընդունեց այդ եւ գանձը կը մնայ 100 տոլար 14 սէնթ։

Որոշուեցաւ յաջորդ պատգամաւորական ժողովը գումարել Ուստրի մէջ։

Երեկոյեան ժամը 10,45–ին փակուեցաւ ժողովը»։

*Մինչեւ 1907 Սեպտեմբեր Ընկերութիւնը ունէր հինգ մասնաճիւղեր — Նիւ Եորք, Ֆիլատելֆիա, Ուստր, Վոքեկըն եւ Ֆիչպուրկ։*

*Ֆիլատելֆիան ատենէ մը ի վեր անգործութեան մատնուած էր դանազան պատճառներով․ Վոքեկըն շատ հեռու էր եւ չէր կրնար պատգամաւորական ժողովին մասնակցիլ․ Ֆիչպուրկ նամակով մը կը տեղեկացնէր Կեդրոնական Վարչութեան, որ իրենց մասնաճիւղը օրինական թիւը չունենալով պատգամաւոր չէ կրցած ղրկել, այնպէս որ Երրորդ Պատգամաւորական ժողովին կը մասնակցէին միմիայն Նիւ Եորք եւ Ուստր։*

*Նիւ Եորքի պատգամաւորները յիշեցինք, քաղելով անոնց անունները Կեդրոնի արձանագրութենէն, բայց որո՞նք եղած են Ուստրի պատգամաւորները, յայտնի չեն։ Միայն երբ կը յիշուի ատենապետ Մանուկ Տամպուրաճեանի անունը, յայտնի կ'ըլլայ, որ Ուստրի մէկ պատգամաւորը ինք է եղած, իսկ միւս երկուքը հաւանաբար Աբրահամ Կեղիւրեան եւ Գրիգոր Պոյաճեան։ Մեր տրամադրութեան տակ եղած Ընկերութեան գանձապահի տոմարը կը սկսի 1907 Սեպտեմբեր 2–ին եւ համաձայն այդ տոմարին, 1904–էն մինչեւ 1907 Սեպտեմբեր 2 Ընկերութեան ընդհանուր մուտք եղած է 3,377 տոլար 72 սէնթ, բայց այս գումարէն մէկ սէնթ գանձը մնացած չէ, այլ ծախսուած է, այսինքն տանր վճարուած է, այնպէս որ 1907 Սեպտեմբեր 29–ին կը սկսի կանոնաւոր գանձապահական ելեւմուտքի հաշիւները։*

## ՉՈՐՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Պատգամաւորական ժողովներու շարքէն մէկ ժողով պակաս է, պարզ անոր համար որ 1908 Փետրուար 17–ի Տարեկան ժողովը որպէս Պատգամաւորական ժողով նկատի չէ առնուած եւ այդ ձեւով շարունակուած է մինչեւ Եօթներորդ Պատգ․ ժողով եւ անկէ կը ցատկէ Իններորդ ժողով․ այնպէս որ Ութերորդ Պատգամաւորական ժողով գոյութիւն չունի։ Որպէսզի այդ սխալը դարմանուի, մենք կ'ընդունինք 1908 Փետրուար 17–ի ժողովը որպէս Չորրորդ Պատգ․ ժողով եւ այդ թիւով կը շարունակենք ընթանալ։*

*Արդէն Երրորդ Պատգ․ ժողովը որոշապէս կ'ըսէ որ այդ ժողովէն ընտրուած Կեդրոնական Վարչութեան պաշտօնավարութեան շրջանը կը սկսի 1907 Սեպտ․ 2–էն մինչեւ 1908–ի սկիզբը եւ երբ 1908–ի Փետրուար 17–ի ընդհանուր ժողովը կու գայ եւ կ'ընտրէ նոր Վարչութիւն մը եւ թէ այդ ժողովին կը մասնակցի Ուստրի մասնաճիւղը, ուրիշ բան չէ, այլ կանոնաւոր Պատգամաւորական ժողով։*

Երրորդ Պատգ. ժողովին համաձայն, Չորրորդ Պատգ. ժողովը պիտի գումարուէր Ուստր. բայց կարգ մը պարագաներ ստիպած են որ այդ ժողովն ալ կրկին գումարուի Նիւ Եորքի մէջ, նկատի ունենալով Ընկերութեան գործերու անկանոն վիճակը:

Ժողովին ատենապետ կ'ընտրուի Պրն. Մանուկ Տամպուրաճեան՝ Ուստրէն, իսկ ատենադպիր՝ Գ. Կուրապեան:

Այս ժողովի ամենակարեւոր հարցը կ'ըլլայ Ընկերութեան Կեդրոնական Վարչութեան եւ անդամներու մէջ եղած պայքարը, որ քննութեան ենթարկուելով յայտնի կ'ըլլայ որ եղածները պարզապէս՝ «փուճ եւ անիմաստ» բաներ են, պարզ բախ–բաւներ, որոնց մասին հարկ եղած բացատրութիւնները լսուելէ ետք կը կարգադրուին եւ կ'ընտրեն թէ՛ նոր Կեդրոնական Վարչութիւն եւ թէ Նիւ Եորքի մասնաճիւղի վարչութիւն:

Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին՝

| | |
|---|---|
| Յովհաննէս Աճեմեան | Ատենապետ |
| Ասատուր Ազմեյեան | Ատենադպիր |
| Սարգիս Քըրպըյըքեան | Գանձապահ |
| Աւետիս Քըրպըյըքեան | Տան–Խնամակալ |
| Խաչատուր Պօյաճեան | Խորհրդական |
| Մանուկ Կուրապեան | Խորհրդական |
| Գրիգոր Պօյաճեան — Ուստրէն — | Խորհրդական |

Նորընտիր Կեդր. Վարչութեան ամենակարեւոր եւ դժուարին գործը կ'ըլլայ Ընկերութեան տան խնդիրը: Յայտնի չէ թէ տունը գնուած ժամանակ որքա՞ն կանխիկ վճարուած է: Բայց յայտնի է թէ մեծ գումար մը վճարուած չէր եւ տանը վրայ կար առաջին, երկրորդ եւ երրորդ մորթկէճներ, որոնց տոկոսները եւ գլխավաճառի գումարները ամէն երեք ամիսն անգամ մը պէտք էր որ վճարուէր: Տունը շատ անգամ պարապ կը մնար եւ եկած եկամուտը չէր կրնար ծախքերը գոցել:

Կեդրոնական Վարչութիւնը եւ Նիւ Եորքի մասնաճիւղը ամէն կարելի միջոց կը գործածեն պէտք եղած գումարը իր ժամանակին հայթայթելու եւ տունը կորուստէ փրկելու համար: Մասնաւոր հանգանակութիւններ կը կատարեն ուր որ կարելի է: Բայց այդ ճիգերը բաւարար չըլլալով, ստիպուած կ'ըլլան նեքին փոխառութիւն մը ընել քիչ թէ շատ ունեւոր հայրենակիցներէ, որմէ կը գոյանայ 800 տոլարի գումար մը վեց առ հարիւր տոկոսով:

Եթէ մէկը կարդայ այս շրջանի Կեդրոնական Վարչութեանց եւ Նիւ Եորքի մասնաճիւղի արձանագրութեանց տոմարները, ուշի ուշով, որոշապէս պիտի տեսնէ, թէ ինչպիսի՛ դժուարութեանց եւ հոգեկան տագնապներու ենթարկուած են Ընկերութիւնը կանգուն պահելու եւ տունը ձեռքէ չհանելու իրենց ջանքերու ընթացքին:

Հարցը տան նիւթական կորուստը չէր, այլ բարոյականը: Տունը կորսնցնելը Մալաթիացիներու արժանապատուութեան ամենամեծ անարգանքը

կը նկատուէր։ Տունը կորսնցնելը կրնար վտանգել Ընկերութեան գոյութիւնը. հետեւաբար ամէն գնով պէտք էր պահել տունը։

Եւ անոնք պահեցին թէ՛ Տունը եւ թէ Ընկերութիւնը։

Հոս կը վերջանայ երկրորդ շրջանի գործունէութեան պատմութիւնը եւ կը հասնինք Երրորդ Շրջանին։ Բայց նախ քան այդ, կարեւոր է ակնարկութիւն մը ընել Ընկերութեան Certificate of Incorporationի մասին, որ իր ատենին բաւական խնդրոյ առարկայ եղած է եւ զանազան որոշումներ եւ ընտրութիւններ տեղի ունեցած են։

Ընկերութեան պաշտօնական գրութեանց մէջ յիշուած է որ Ընկերութիւնը կազմուած է 1904–ին եւ Incorporate եղած է — այսինքն տեղական նահանգային կառավարութեան կողմէ վաւերացուած է 1907–ին։ Բայց եւ այնպէս մեր ձեռքին տակ եղած պաշտօնական գրութիւնները այնպէս ցոյց կու տան որ Ընկերութիւնը վաւերացուած է Հոկտեմբեր 28, 1905–ին եւ Թրըրստիի անդամներ նշանակուած են հետեւեալները. Յովհաննէս Աճեմեան, Գրիգոր Պարմագեան, Մեսրոպ Սիւտճեան, Յակոբ Սարաֆեան, Յարութիւն Ճաթաֆեան, Մանուկ Թաշճեան եւ Յակոբ Կիրակոսեան։

Այս վաւերագրին մէջ նշանակուած են Ընկերութեան անունը, նպատակը, ինչպէս նաեւ գործունէութեան կամ կանոնագրի գլխաւոր կէտերը։ Համաձայն այդ վաւերագրին, Ընկերութեան Կեդրոնը պէտք է ըլլայ Նիւ Եորքի մէջ, Թրըրստիի անդամները պէտք է ըլլան Նիւ Եորքի մէջ քաղաքացի անդամներէն, անանկ որ կարելի չէր ուրիշ նահանգներու մէջ բնակող անդամներ նշանակել որպէս Թրըրստիի անդամներ եւ ոչ ալ կարելի էր Կեդրոնական Վարչութիւնը փոխադրել ուրիշ ուեւէ նահանգ, առանց նախապէս այդ նահանգային կառավարութեան կողմէ վաւերացնելու Ընկերութիւնը։

# ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

1908 Յուլիս 24–ին տեղի ունեցաւ այսպէս կոչուած Օսմանեան Սահմանադրութիւնը։

Թուրքիոյ բաղկացուցիչ ազգերու ժողովուրդները, մասնաւորապէս գաւառի Հայութիւնը, նախ կասկածանքով նայեցան կատարուած փոփոխութեան վրայ, բայց երբ տեսան թէ որոշ բաներ մը եղած են, մանաւանդ երբ ճամբորդութեան վրայ դրուած արգելքը վերցուած էր եւ ամէն մարդ ազատ համարձակ կրնար երթալ ուր որ ուզէր, ամէնքին աչքերն ուղղուեցան արտասահման։

Մեր բնաշխարհէն տասնեակ հազարներով Հայեր լքեցին տուն–տեղ, ընտանիք եւ սկսան գաղթել դէպի Ամերիկա։ Ասոնց մէջ էին հարիւրաւոր Մալաթիացիներ, մեծ մասամբ երիտասարդներ, որ Օսմանեան Սահմանադրութենէն ետք իրարու ետեւէ, չարան–չարան Ամերիկա հասան։

Հայ ազգային–եկեղեցական իշխանութիւնները եւ կուսակցական առաջնորդները տեսնելով երկրի հայութեան պարպումի կարծեցեալ վտանգը,

ամէն ինչ ի գործ դրին որոշողութին առաջքն առնելու համար: Սակայն ի զուր: Որովհետեւ մեր ժողովուրդի բնածին բնազդը շատ աւելի զօրաւոր եւ պերճախօս էր քան բոլոր կարծեցեալ հռետորներու ճառախօսութիւնները եւ փիլիսոփայութիւնները: Շատ մօտիկ ապագան եկաւ ցոյց տալ որ Հայուն բնածին բնազդը զինք չէր խաբած:

1909-էն մինչեւ 1914-ի սկիզբները այն Մալաթիացիները, որոնք կըր-ցին Ամերիկա գալ, իրենց եկած օրէն իսկ կրնանք ըսել որ մեծ եռանդով լծուեցան Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան գործունէութեան:

Նոր եկողներուն մեծ մասը ամուրի երիտասարդներ ըլլալով նոր ոյժ, նոր եռանդ եւ աւիւն ներարկեցին Ընկերութեան երակներուն մէջ: Կազմա-կերպեցին զանազան մասնաճիւղեր եւ հետեւելով Ընկերութեան տարէց ան-դամներու ցուցմունքներուն, Կրթասիրացը հասցուցին իր փառքի գագաթնա-կէտին: Տակաւ աւելի մանրամասնօրէն պիտի ծանօթանանք իրենց ունեցած գործունէութեան:

## ՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Հինգերորդ Պատգամաւորական Ժողովը տեղի ունեցած է Նիւ Եորքի մէջ, 1909 Յունուար 24-ին:

Ժողովին կը մասնակցին հետեւեալ մասնաճիւղերը.

Նիւ Եորք — 2 պատգամաւոր
Գրիգոր Պալըմաղեան եւ
Լեւոն Տէր Դաւիթեան
Ուստր — 2 պատգամաւոր
Մանուկ Տամպուրաճեան եւ
Սենեքերիմ Մուշեղեան
Ֆիլատելֆիա — 1 պատգամաւոր
Յակոբ Կիրակոսեան

Դիւանը կը կազմեն Ատենապետ՝ Գրիգոր Պալըմաղեան, Ատենադպիր՝ Լեւոն Տէր Դաւիթեան:

Այս ժողովի գլխաւոր հարցերը կ'ըլլան Ընկերութեան տան խնդիրը, նոր թըրքաստիճներու ընտրութիւն եւ Ընկերութեան անդամոց պարտքերու խնդիրը, մասնաւորապէս անհատներէ առնուած գումարները, Կեդրոնական Վարչութեան մէկ տարուան գործունէութիւնը եւ այլ հարցեր:

Տան խնդիրը միեւնոյն բանն է. դրամի կարիք կայ եւ առ այդ կ'որո-շեն հանգանակութիւն կատարել:

Անհատական պարտքերը կ'որոշեն վճարել որքան շուտ որ կարելի է:

Գանձապահի տոմարները կը քննուին ըստ սովորութեան եւ ճիշդ ըլ-լալը կը հաստատեն: Ըստ որում Ընդհ. Մուտք եղած է 1,733 տոլար 38 սէնթ եւ այս գումարն ամբողջութեամբ ծախսուած է, որով գանձը դրամ չկայ:

Վերոյիշեալ մուտքի գումարին մօտաւորապէս ՀԱԶԱՐ տոլարը ան-

հատական փոխառութիւններէ եւ մասնաւորաբար նուէրներէ գոյացած եւ մը-նացեալ 733 տոլարը Ընկերութեան տան վարձքերէն եւ անդամատուրքերէն:

Կեդրոնական Վարչութեան գործունէութիւնը քննադատութեան առարկայ կ'ըլլայ եւ կ'որոշեն բոլորովին նոր վարչութիւն մը ընտրել: Խիստ քննադատութեան առարկայ կ'ըլլայ մէկ անդամի մը գործունէութիւնը եւ զայն կ'արտաքսեն ընկերութեան շարքերէն:

Կ'որոշուի յաջորդ Պատգ. Ժողովը գումարել Ուստր:

Կ'ընտրուի նոր Կեդրոնական Վարչութեան կազմը հետեւեալ կերպով.

Նիւ Եորքէն — Գրիգոր Պարմագեան, Գրիգոր Կուրապեան, Գրիգոր Մարգարեան:

Ուստրէն — Գրիգոր Պոյաճեան եւ Աբրահամ Կեզիւրեան:

Ֆիլատելֆիայէն — Յովհաննէս Թայեան եւ Իսկէնտէր Էմինեան:

Կեդրոնական Վարչութեան դիւանը կը կազմուի այսպէս.—

| | |
|---|---|
| Գրիգոր Պարմագեան | Ատենապետ |
| Գրիգոր Կուրապեան | Ատենադպիր |
| Գրիգոր Մարգարեան | Գանձապահ |

Այս տարեշրջանին նոր գործունէութիւն մը չէ եղած, ի բաց առեալ ներքին հանգանակութիւններն ու տեղական ձեռնարկները:

## ՎԵՑԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Վեցերորդ Պատգամաւորական Ժողովը գումարուած է Յունուար 1 1910-ին, Ուստր, Պրն. Գրիգոր Պոյաճեանի բնակարանին մէջ:

Ժողովին կը մասնակցին հետեւեալ մասնաճիւղերն իրենց պատգամաւորներով.

Նիւ Եօրք — Խաչատուր Պոյաճեան եւ Աբրահամ Կեզիւրեան:

Ուստր — Գրիգոր Պոյաճեան եւ Աբրահամ Կեզիւրեան:

Ֆիլատելֆիա — Յակոբ Կիրակոսեան եւ Մեսրոպ Սիւտճեան:

Քլիվլենտ — Սեդրակ Տէր Դաւիթեան — երկու ձայնով:

Դիւանի ընտրութիւն տեղի ունենալով կ'ընտրուին Գրիգոր Պոյաճեան՝ Ատենապետ եւ Գրիգոր Կուրապեան՝ Ատենադպիր:

Նկատի կ'առնուի որ ժողովին կը մասնակցին 7 պատգամաւորներ 8 ձայնով: Ութը թիւը որոշումներու անյարմար նկատուելով՝ կ'որոշեն մէկ ձայն աւելցնել. առ այս նկատի կ'առնուի մասնաճիւղերու կանոնաւոր անդամներու թիւը, որոնք են.— Նիւ Եորք 33 անդամ, Ուստր 32 անդամ, Քլիվլենտ 37 անդամ, Ֆիլատելֆիա 43 անդամ: Այս ճշդումն ընելէ ետք Ֆիլատելֆիա կ'ունենայ 3 ձայն, ու ընդամէնը կ'ըլլայ 7 պատգամաւոր 9 ձայնով:

Այս ժողովն ունեցած է երեք նիստեր, եւ լուծած է 12 հարց. բայց եւ այնպէս այս 12 հարցերուն մէջ նոր բան մը չի տեսնուիր. միեւնոյն հարցերը: Անանկ որ կը գոհանանք միայն յիշատակել մասնակցող պատգամաւորներու եւ ընտրուած Կեդրոնական Վարչութեան անունները եւ անցնիլ:

*Կ'որոշուի որ Կեդրոնական Վարչութեան դիւանը մնայ Նիւ Եորք ե-րեք անդամներով եւ միւս երեք մասնաճիւղերը ունենան երկ-երկու անդամ-ներ, ընդամէնը ինը անձերով կազմուի Կեդրոնական Վարչութիւնը։*

*Նոր ընտրութեան արդիւնքը կ'ըլլայ հետեւեալը.—*

Նիւ Եորքէն — *Խ. Պօյաճեան, Գ. Կուրապեան եւ Գ. Մարգարեան։*

Ֆիլատելֆիայէն — *Գրիգոր Ահարոնեան եւ Մեսրոպ Սիւաճեան։*

Ուստրէն.— *Մանուկ Տամպուրաճեան եւ Սարգիս Մանուչեան։*

Քլիվլէնտէն — *Խորէն Տէր Դաւիթեան եւ Խաչատուր Պըլըքեան։*

*Ընկերութեան* 1909 *տարւոյ հաշիւները կը քննուին եւ ճիշդ ըլլալը կը վաւերացուի, ըստ որուն ընդհանուր մուտք եղած է* 1,344 *տոլար* 25 *սէնթ։ Իսկ ելք* 1,342 *տոլար* 68 *սէնթ։ Գանձը կը մնայ մէկ տոլար* 57 *սէնթ։*

*Ելքը տանը երկրորդ եւ երրորդ մորթիկէճներու, մայր գումարին հա-մար եղած վճարումներն են, ինչպէս* նաեւ *տանը անհրաժեշտ ծախքերը։*

| | | |
|---|---|---|
| *Մուտքի գումարներ, Ուստրէն* | 100,00 | տոլար |
| *Նիւ Եորքէն* | 298,00 | տոլար |
| *Ֆիլատելֆիայէն* | 434,25 | տոլար |
| *Տան եկամուտ* | 512,00 | տոլար |
| *Գումար* | 1344,25 | տոլար |

*Նորընտիր Կեդրոնական Վարչութեան կազմի մասին որոշ արձանա-գրութիւն մը չկայ թէ Նիւ Եորքէն ընտրուածներէն դիւանը ի՛նչպէս կազ-մուած է։ Սակայն յայտնի է թէ Խաչատուր Պօյաճեան՝ Ատենապետ, Գ. Կուրապեան՝ Ատենադպիր, իսկ Գ. Մարգարեան Գանձապահ եղած են։*

*Այս շրջանին Նիւ Եորքի մասնաճիւղին եւ Կեդրոնական Վարչութեան արձանագրութիւնները իրար խառնուած են, այնպէս որ ճշգրիտ գաղափար մը չէ կարելի կազմել անոնց գործունէութեան մասին։ Թէեւ, տարակոյս չունինք որ միեւնոյն տան հոգատարութենէն եւ դրամի հանգանակութենէն աւելի բան մը չէ եղած։*

*Մալաթիայէն Մասեաց Ընկերութիւնը նամակով մը նիւթական օժան-դակութիւն խնդրած է։ Առ այդ, Նիւ Եորքի մասնաճիւղը որոշած է իր սարքելիք Հանդէս-Խնճոյքէն ձեռք բերուած հասոյթէն մաս մը յատկացնել Մասեաց Ընկերութեան կարիքներուն։ Արձանագրութիւնները ցոյց չեն տար թէ ուեւէ գումար ղրկուեցա՞ւ թէ ոչ։*

## ԵՕԹՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Եօթներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Յունուար* 1, 1911-*ին, Ֆիլատելֆիա, Պրն. Խաչատուր Տէր Մուշեղեանի բնակարանին մէջ։*

*Այս ժողովին կը մասնակցին հետեւեալ մասնաճիւղերն իրենց պատգա-մաւորներով.*

Նիւ Եորք — *Խաչատուր Պօյաճեան, Գրիգոր Կուրապեան։*

Ֆիլատելֆիա — Խաչատուր Տէր Մուշեղեան, Գրիգոր Ահարոնեան:

Ուստր — Աբրահամ Կեղիւրեան եւ մէկ ձայն, որ կու տայ Յովհ. Թայեանի:

Քլիվլենտ — Գաբրիէլ Տէր Պաղտասարեան 2 ձայնով:

Կրկին նոյն բանը — 7 պատգամաւոր 8 ձայնով: Այս անգամ ալ մէկ ձայն տրուեցաւ Ֆիլատելֆիայի, ժողովին օրինական ըլլալու համար:

Ժողովին ատենապետ կ'ընտրուի Յովհաննէս Թայեան, իսկ ատենադպիր՝ Գրիգոր Ահարոնեան:

Այս ժողովն ալ ունեցած է չորս նիստ եւ 15 հարցեր: Կարեւոր հարցերէն մէկն եղած է, կրկին, Ընկերութեան Չարթըրի եւ Թրըսթիներու խնդիրը: Այս հարցը, ինչպէս քանի մը անգամ յիշեցինք, ամէն պատգամաւորական ժողովի մէջ ծեծուած է, որոշումներ տրուած են և նորանոր թրըսթիներ ընտրուած են, բայց եւ այնպէս հարցը կը մնար հոն ուր որ էր եւ որուն պատճառները յիշած ենք: Կ'երեւի այս մասին լայն բացատրութիւններ չեն տրուած պատգամաւորական ժողովներուն մէջ եւ կամ մասնաւոր պատճառ մը կար, որ կը ջանային որ Թրըսթիի անդամները փոխուին եւ կամ բոլորը մէկ քաղաքէ ըլլան: Այս ժողովին մէջ յայտնի կ'ըլլայ, որ վախ ունին Ընկերութեան ապահովութեան մասին եւ ատոր համար է որ կ'ուզեն Թրըսթիի անդամները զանազան քաղաքներու մէջ եղող հայրենակիցներէ բաղկանայ, որպէսզի հնարաւոր չըլլայ իրարու քով գալով խօսքերնին մէկ ընեն եւ տունը ծախեն, կրկնելով Ծիածան Մելիտինէի վիճակը:

Կեդրոնական Վարչութեան եւ Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի կողմէ այս հարցի մասին նախապէս տեղական փաստաբաններու հարցուած էր եւ հասկցուած էր, թէ թրըսթիները ոեւէ կերպով գործ չունին Ընկերութեան տան, դրամի գործածութեան հետ եւ կամ ոեւէ կերպով չեն կրնար ամենափոքր վնաս հասցնել, թէ նոր անուններ դրուելու համար նոր Չարթըր մը գրել պէտք է, որ շատ դրամի եւ ժամանակի կարօտ խնդիր է: Այս բացատրութեանց լոյսով կ'որոշուի այս հարցը այլեւս խնդրոյ առարկայ չընել:

Այս ժողովին մէջ, առաջին անգամ ըլլալով կ'որոշուի որ Կեդրոնական Վարչութեան Ատենադպիրը Պատգ. ժողովներուն ներկայ ըլլայ որպէս Կեդրոնական Վարչութեան ներկայացուցիչը:

Ընկերութեան տան երկրորդ մորթկէճը, որ այդ ատեն 1.300 տոլար մնացած է, կ'որոշուի ամբողջութեամբ վճարել մասնաճիւղերու քով եղած գումարները բերել տալով, անհատական փոխառութիւններով եւ Կեդրոնին մօտ գտնուած գումարով:

Պատգ. ժողովը քննած է Կեդրոնական Վարչութեան մէկ տարուայ գործունէութիւնը եւ չափազանց գոհացուցիչ նկատած է: Վերընտրած է միեւնոյն կազմը անոնց ընկերակից տալով մասնաճիւղերէն հետեւեալները.

Ֆիլատելֆիայէն Գրիգոր Ահարոնեան եւ Գ. Ծըլճըլեան: Ուստրէն Յ. Թերխանեան եւ Մ. Փափազեան: Քլիվլենտէն Կ. Թերզիեաղուպեան եւ Ա. Կեղիւրեան:

Յաջորդ պատգամաւորական ժողովի վայրը օրէնքով պէտք է Ֆիլիլէնտ ըլլել, սակայն տեղի հեռաւորութեան պատճառով, կ'որոշուի գումարել Նիւ Եորք։

1910 տարւոյ շրջանի նիւթական հաշիւները քննելով կը տեսնուի որ ընդհանուր մուտք եղած է 1,768 տոլար 19 սէնթ. իսկ ելք 1,498 տոլար 35 սէնթ. գանձը կը մնար 269 տոլար 84 սէնթ։

Նորընտիր Վարչութիւնը իր 1911 տարւոյ շրջանին կը վճարէ Ընկերու-թեան տան երկրորդ եւ երրորդ մօրթկէճները եւ կը մնայ միայն առաջին մօրթկէճը, որու գումարը, այս թուականին, 6,300 տոլար էր։

# ՈՒԹԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Եօթներորդ Պատգ. Ժողովի որոշումով, Ութերորդ Պատգ. Ժողովը պիտի գումարուէր Նիւ Եորքի մէջ, բայց կ'երեւի վերջը փո-փոխութիւն մը տեղի ունեցած է եւ գումարուած է Ուստր։

Այս ժողովի արձանագրութիւնը գրուած չէ Մայր Տոմարին մէջ. ա-նանկ որ յայտնի չէ թէ ի՛նչ որոշումներ տեղի ունեցած են։

Ընկերութիւնը շատ լաւ սովորութիւն մը ունէր, որ բոլոր ժողովներու արձանագրութիւնները, հոգ չէ թէ տպագրուած ըլլային կամ ոչ, կ'արձա-նագրէր Մայր Տոմարին մէջ, նկատի ունենալով որ տպագրուած թերթիկներ կամ տետրակներ կրնային կորսուիլ, բայց Կեդրոնական Վարչութեան խը-նամքին տակ եղած տոմարը կորսուելու վտանգէն զերծ էր։ Բայց հակա-ռակ այս բոլոր զգուշութեան, Ութերորդ Ժողովի արձանագրութիւնը չէ արձանագրուած։ Եւ եթէ Նիւ Եորքի մասնաճիւղի արձանագրութիւնը եւ գանձապահի տոմարը չունենայինք, այս ժողովի մասին ոեւէ բան կարելի չէր գիտնալ։

Դեկտեմբեր 17, 1911-ի ժողովի արձանագրութիւնը կը յիշէ որ Ուստր գումարուելիք Պատգ. Ժողովին համար պատգամաւոր ընտրուած են Գրիգոր Խանձեան եւ Խաչատուր Պոյաճեան։

Այն ժամանակները Ընկերութիւնը ուրիշ գեղեցիկ սովորութիւն մըն ալ ունէր, ան ալ այն էր, որ ամէն պատգամաւոր ստիպուած էր ստորագրել գանձապահի տոմարը որպէս վաւերացում։ Այս ստորագրութիւններէն կը հասկնանք, որ Ութերորդ Ժողովին մասնակցած են ատենապետ Աբրահամ Կեղիւրեան, ատենադպիր Աբրահամ Տէր Վահրամեան եւ պատգամաւորներ — Գրիգոր Ահարոնեան, Խաչատուր Տէր Մուշեղեան, Մանուկ Փափազեան, Գրիգոր Խանձեան, Խաչատուր Պոյաճեան, Գաբրիէլ Տէր Պաղտասարեան։

Նիւթական հաշիւներու քննութենէն յայտնի կ'ըլլայ որ 1911-ի շըր-ջանին ընդհանուր մուտք եղած է 2,005, 11 տոլար, ելք եղած է 1,859, 63 տոլար. գանձը կը մնայ 145,48 տոլար։

## ԻՆՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Իններորդ Պատգ. Ժողովը գումարուած է Մարտ 15, 1913–ին, Նիւ Եորք, Գրիգոր Կուրապեանի բնակարանը:

Պատգամաւորական Ժողովին կը մասնակցին հետեւեալ մասնաճիւղերը իրենց պատգամաւորներով.—

Ուստրէն — Աբրահամ Կեղիւրեան եւ Առաքել Եազըճեան:

Ֆիլատելֆիայէն — Գրիգոր Ահարոնեան եւ Գրիգոր Պարմաքեան:

Նիւ Եորքէն — Յովհաննէս Աճեմեան եւ Գրիգոր Խանձեան:

Ֆրենգլինէն — Յակոբ Պըռնազեան: Այս մասնաճիւղը նոր կազմուած էր եւ ղրկած էր իր առաջին պատգամաւորը:

Քլիվլէնտ բացակայ եղած է այս ժողովէն, թերեւս քիչ մըն ալ ցաւած, Պատգ. Ժողովը Քլիվլէնտ չգումարուելուն համար, թէեւ այս մասին որոշ բան մը ըսուած չէ:

Եօթը պատգամաւորներով եւ Կեդրոնական Վարչութեան մէկ ներկայացուցիչով ժողովը կը բացուի եւ նախնական աշխատութիւնները լրացնելէ ետք կ'ընտրուի մնայուն դիւանը. Գրիգոր Պարմաքեան՝ Ատենապետ եւ Առաքել Եազըճեան՝ Ատենադպիր:

Այս ժողովի արձանագրութեան մէջ ալ սովորական հարցերէն զատ նոր բան մը չենք գտներ: Որոշուած է, սակայն, Երկու Հազար տոլար վճարել տան առաջին մորթկէճէն, որ Վեց Հազար Երեք Հարիւր տոլար էր: Յայտնի կ'ըլլայ որ ոեւէ գումար վճարուած չէր 1912–ի շրջանին:

Կեդրոնական Վարչութեան անդամները ձանձրացած մասնաճիւղերէ եւ անհատներէ եկած անտեղի քննադատութիւններէն, չեն ուզեր այլեւս գործը շարունակել:

Պատգ. Ժողովը պահ մը կը մտածէ կեդրոնը փոխադրել Ֆիլատելֆիա, բայց նկատի ունենալով գալիք դժուարութիւնները, կրկին կ'որոշեն կեդրոնը պահել Նիւ Եորքի մէջ: Կ'ընտրուի նոր Կեդրոնական Վարչութիւն մը հետեւեալներէ.—

Գրիգոր Խանձեան, Մարգար Մարգարեան եւ Յակոբ Թաշճեան: Սակայն Խանձեան եւ Մարգարեան կը հրաժարին եւ յետոյ մասնաճիւղերու հաւանութեամբ անոնց տեղ կ'ընտրուին Ստեփան Կուրապեան եւ Գրիգոր Մարգարեան: Ասոնց վրայ աւելցած են մասնաճիւղերու ներկայացուցիչներ, որոնք են.— Ֆիլատելֆիայէն Գրիգոր Պարմաքեան եւ Կարապետ Ասլանեան, Ուստրէն Մկրտիչ Օրմանեան եւ Աբրահամ Կեղիւրեան, Ֆրենգլինէն Միսաք Էլիճանեան եւ Յակոբ Պըռնազեան:

Ընկերութեան կանոնագիրը վերջապէս կատարեալ նկատելով, կ'որոշուի տպագրել զայն:

Այդ շրջանին կազմուած է Նորթ Աթըլպորոյի մասնաճիւղը:

Քլիվլէնտի մասնաճիւղի բացակայութիւնը մեծ ցաւ կը պատճառէ Պատգամաւորական Ժողովին և կը թելադրուի Կեդրոնական Վարչութեան

*պէտք եղածը տնօրինելու, եւ եթէ կան անհասկացողութիւններ, ջանալ զանոնք հարթել:*

*Նիւթական հաշիւները քննելով, յայտնի կ'ըլլայ որ* 1912-*ի շրջանին ընդհանուր մուտք եղած է, նախորդ շրջանէն փոխանցուած գումարով միասին,* 1,307,48 *տոլար, իսկ ելք եղած է* 827,35 *տոլար. գանձը կը մնայ* 480,13 *տոլար:*

*Կեդրոնական Վարչութեան դիւանը կը կազմուի այսպէս.*

| | |
|---|---|
| *Ստեփան Կուրապեան* | *Ատենապետ* |
| *Յակոբ Թաշճեան* | *Ատենադպիր* |
| *Գրիգոր Մարգարեան* | *Գանձապահ* |

*Դրամի կարիքը կրկին մտահոգիչ պարագայ մը կը դառնայ: Առաջին մորթկէճի մայր գումարէն* Հինգ Հարիւր *տոլար պէտք էր վճարուէր: Մասնաճիւղերը իրենց քով եղած գումարները փութացուցած են Կեդրոն, բացի Քլիվլենտէն, որոնք նամակով մը ըսած են, թէ մինչեւ որ Քլիվլենտի մէջ բացառիկ Պատգամաւորական Ժողով մը չգումարուի, իրենք մէկ սէնթ չեն ղրկեր եւ թերեւս ինքզինքնին չեղեալ համարեն:*

*Կեդրոնական Վարչութիւնը այս մասին, երկար մտածելէ ետք, Նիւ Եորքի մասնաճիւղի ժողովին հարց կ'ընէ: Վերջապէս կ'որոշուի բացառիկ ժողով մը գումարել Քլիվլենտի մէջ եւ կ'ընտրեն Յովհաննէս Աճեմեանը, Քլիվլենտ գումարուելիք Պատգ. Ժողովին իբր պատգամաւոր:*

*Օգոստոս* 3, *Կիրակի օր, կը սարքուի հրապարակային ժողով մը* 158 *Իսթ* 27-*րդ փողոցի սրահին մէջ, ուր հրաւիրուած է խօսելու մեր յարգելի հայրենակից Փրոֆ. Մկրտիչ Որբերեան: Ժողովին ներկայ եղած են* 75-*ի մօտ երկսեռ հայրենակիցներ, որոնք գոհունակութեամբ ունկնդրած են Փրոֆեսորի հայրենասիրական եւ եղբայրասիրական բանախօսութիւնը:*

*Քլիվլենտի մէջ գումարուած բացառիկ Պատգամաւորական Ժողովի արձանագրութիւնը չունինք: Բայց, յայտնի է թէ, գումարուած է Սեպտեմբեր* 1-*ին: Սեպտեմբեր* 21-*ի Նիւ Եորքի վարչական ժողովին մէջ Պրն. Աճեմեան կու տայ բացառիկ ժողովին տեղեկատուութիւնը եւ բոլորը գոհ կը մնան: Մասնաւորապէս անոր համար որ Քլիվլենտ այս անգամ* Հինգ Հարիւր *տոլարի պատկառելի գումար մը ղրկած էր կեդրոն, ան ալ այնպիսի ժամանակ մը, երբ շատ ստիպողական կարիք կար:*

## ՏԱՍՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Տասներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Յունուար* 1, 1914-*ին, Ֆրենքլինի մէջ:*

*Պատգ. Ժողովին կը մասնակցին հետեւեալ մասնաճիւղերն իրենց պատգամաւորներով.—*

Նիւ Եորք — *Յակոբ Թաշճեան եւ Գէորգ Տէր Պաղտասարեան:*

Ֆիլատելֆիա — *Գրիգոր Ահարոնեան — 2 ձայնով:*

Ուստր — Սրապիոն Անտոնեան եւ Նափոլէոն Ալաճայեան :

Քլիվլենտ — Յովհաննէս Թերգիեազուպեան — 2 ձայնով :

Ֆրենքլին — Միսաք Էլիճանեան :

Վոքեկըն — Նշան Քէփէնէկեան :

Աթըլպորօ — Խորէն Առաքելեան :

Դիւանի անդամներ կ'ընտրուին — Գրիգոր Ահարոնեան՝ Ատենապետ եւ Նափոլէոն Ալաճայեան՝ Ատենադպիր :

Այս ժողովի արձանագրութիւնը Պատգ. Ժողովի արձանագրութիւն կոչուելու արժանի բան մը չէ. որոշ չէ թէ ի՛նչ հարցեր նկատի առնուած են եւ ի՛նչ որոշումներ տրուած են : Միայն Կեդրոնական Վարչութեան գանձապահի տոմարէն կը հասկնանք, որ 1913 տարւոյ շրջանին ընդհանուր մուտք եղած է 4,503,63 տոլար եւ ելք եղած է 4,331,54 տոլար. գանձը կը մնայ 172,09 տոլար : Այս ելքին մօտաւորապէս 3,000,00 տոլարը տանը մորթկէճի պարտքին վճարած են եւ միւսը այլեւայլ ծախքերու յատկացուցած :

Արձանագրութեան մէջ յիշուած չէ նաեւ, թէ որո՞նք եղած են Կեդրոնական Վարչութեան անդամները. այնպէս որ այս ժողովի եւ իր որոշումներու մասին ասկէ աւելի բան մը չունինք արձանագրելիք :

## ՏԱՍՆԵՒՄԷԿԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Տասնեւմէկերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Յունուար 1, 1915-ին, Ֆիլատելֆիոյ մէջ :

Սոյն Պատգ. Ժողովին մասնակցած են հետեւեալ մասնաճիւղերը.—

Նիւ Եօրք — Յակոբ Թաշճեան եւ Գէորգ Տէր Պաղտասարեան :

Ֆիլատելֆիա — Կարապետ Ասլանեան եւ Խոսրով Եսայեան :

Ուստր — Առաքել Եաղըճեան 2 ձայնով :

Ֆրենքլին — Ձայն դրկուած է Մկրտիչ Ասլանեանի :

Նիւպրիփորթ — Ձայն դրկուած է Դաւիթ Սիւտճեանի :

Քլիվլենտ — Բացակայ :

Վոքեկըն — Բացակայ :

Դիւանի անդամներ կ'ընտրուին Կարապետ Ասլանեան՝ Ատենապետ եւ Առաքել Եաղճեան՝ Ատենադպիր :

Այս Պատգ. Ժողովն ունեցած է 13 հարցեր, որոնցմէ շատեր ընկերութեան սովորական հարցերն են, բայց եւ այնպէս կան նոր հարցեր ալ : Առաջարկ կ'ըլլայ որ տանը պարտքը հազար տոլար ամբողջութեամբ վճարուի եւ յետոյ տունը ծախուի, նկատի ունենալով որ տունէն շահ մը չկայ : Պարտքը ամբողջութեամբ վճարելու առաջարկը կ'ընդունուի, բայց ծախելը կը մերժուի :

Առաջարկ կ'ըլլայ նոր տուն մը գնել : Այս հարցը կը ձգուի Կեդրոնական Վարչութեան :

Առաջարկ կ'ըլլայ պահեստի գումար մը ունենալ, այն մտածումով որ

*եթէ Մալաթիոյ մէջ նոր դէպքեր պատահին եւ անոնց օժանդակելու կարիք ստեղծուի, հնար ըլլայ անոնց օգնութեան հասնելու:*

*Այս մտածումը երեւան կու գայ գլխաւորաբար այն իրողութեամբ, որ Առաջին Համաշխարհային պատերազմն սկսած էր 6 ամիսէ ի վեր եւ Թուրքիան Գերմանիոյ կողմն անցած էր: Ամէն օր կը սպասուէր չարաշուք լուրերու:*

*Պատ. Ժողովը տեղեակ այս բոլոր երեւոյթներուն, պաշտօնապէս կը յայտարարէ.* «Ոչ թէ միայն Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան ամբողջ հարստութիւնը, այլեւ բոլոր Մալաթիացիներու ունեցածը կը տրամադրենք մեր սիրելիներու կարիքներուն, եթէ պէտք ըլլայ»:

*Այդ շրջանին կազմուած է Լովէլի մասնաճիւղը եւ իր առաջին նիւթական օժանդակութիւնը ղրկած է Պատ. Ժողովին:*

*Գանձապահի տոմարը կը քննուի եւ կը վաւերացուի: Յայտնի կ'ըլլայ որ* 1914 *տարւոյ ընթացքին ընդհանուր մուտք եղած է* 2,667,59 *տոլար, իսկ ելք եղած է* 2,532,61 *տոլար, գանձը կը մնայ* 134,98 *տոլար: Այս ելքին* 2,000,00 *տոլարը տան պարտքին վճարուած է, որով պարտք կը մնայ ՀԱԶԱՐ տոլար միայն:*

*Նոր տարեշրջանի կեդրոնական վարչութեան ընտրութիւն կը կատարուի: Կ'ընտրուին Խաչատուր Պօյաճեան, Ստեփան Կուրապեան, Հայկ Ադմէլեան, Գրիգոր Մարգարեան, Յակոբ Տէր Մուշեղեան:*

*Նոր Կեդրոնական Վարչութեան դիւանը կը կազմուի հետեւեալ կերպով.*

| | |
|---|---|
| *Ստեփան Կուրապեան* | *Ատենապետ* |
| *Յակոբ Տէր Մուշեղեան* | *Փոխ–Ատենապետ* |
| *Հայկ Ադմէլեան* | *Ատենադպիր* |
| *Յակոբ Թաշճեան* | *Փոխ–Ատենադպիր* |
| *Գրիգոր Մարգարեան* | *Գանձապահ* |

1915*–ը Հայութեան մեծագոյն ողբերգութեան տարին է: Գերման զինուորապաշտութեան դիւային միտքը միացած Թրքական ոճրածին բնազդին, սկսած էր բնաջնջել Հայութիւնը եւ անոր հետ միասին հայկական հարցը:*

*Թուրքիոյ Հայութիւնը Թակարդուած էր: Փախուստի ոչ մէկ միջոց: Միայն Վանի Հայութեան որոշ մէկ տոկոսը կրցած էր փախչիլ եւ ապաստանիլ Կովկաս:*

*Նոր գաղթականներու կարիքները հոգալու համար Վեհափառ Կաթողիկոսը օգնութեան կոչեր կը ղրկէր ուր որ կարելի էր, մանաւորապէս Ամերիկա:*

*Այդ շրջաններուն Ամերիկայի մէջ կը կազմուի Ազգային Պաշտպանութեան Միութիւնը՝ իր ճիւղերն ունենալով երկրին բոլոր հայաշատ կեդրոններուն մէջ:*

*Հայ ժողովուրդն ամէն տեղ յուզումի մէջ է: Ամէն օր օգնութեան նոր կոչեր կը հասնին սրտաճմլիկ տեսարաններու նկարագրութեամբ: Ամերիկա–*

հայութիւնը հնարաւորութիւն չունէր օգնելու Թրքահայութեան, որու ճակատագիրը դեռ կը մնար անստոյգ։ Կարելի եղաւ, սակայն, անմիջապէս օգնել Կովկասահայութեան։

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը եւ Մալաթիացիներ անխտիր պատնէշին վրայ են։ Կեդրոնական Վարչութիւնը կը հրահանգէ մասնաճիւղերուն, որ բացառիկ հանգանակութիւն ընեն ի նպաստ Կովկաս ապաստանող հայ գաղթականութեան, որուն ի պատասխան Նիւ Եորքի մասնաճիւղը կը գոյացնէ 670 տոլար, Քլիվլէնտ 377 տոլար, Ֆրէնքլին 293 տոլար, իսկ Ֆիլատելֆիա իր հանգանակած գումարը ուղղակի ղրկած ըլլալով, այդ գումարը չէ արձանագրուած Ընկերութեան տոմարին մէջ, սակայն վստահ ենք որ նկատելի գումար մը եղած ըլլալու է։

Ընկերութեան միջոցաւ հանգանակուած գումարը, ընդամէնը 1,340,00 տոլար, անմիջապէս հեռագրով կը ղրկուի Էջմիածին, Ամենայն Հայոց Հայրապետին։

Մեր միւս մասնաճիւղերը թէեւ չեն կրցած առանձին հանգանակութիւն ընել, սակայն, առանց բացառութեան մասնակցած են Ազգային Միութեան տեղական հանգանակութեանց. այնպէս որ հպարտութեամբ կրնանք ըսել որ Մալաթիացիները իրենց բաժին պարտականութիւնը լիուլի կատարած են։

Ազգային Պաշտպանութեան Միութեան հրահանգով եւ հսկողութեամբ կազմուեցաւ Կովկասեան ճակատի կամաւորական շարժումը եւ որ աւելի քան 500 հայ երիտասարդներ կամաւոր զինուոր արձանագրուելով, 1915, Օգոստոս 18-ի ժամանակները Ռուսական նաւով ճամբայ կ՚ելլեն եւ 13 օրէն կը հասնին Արխանկէլ։

Արխանկէլի մէջ Քէփթըն Ճիմ Զանգալեան դիմում կը կատարէ ռուս կառավարութեան կամաւորները Կովկասի ճակատը փոխադրելու համար։ Ռուս կառավարութիւնը 12 վակոննոց կառախումբ մը կը յատկացնէ, որով 8 օրէն կը հասնին Թիֆլիս։

Անկէ ետք եղածները կը պատկանին պատմութեան։ Վերեւի քանի մը տողերը գրեցինք, պարզ անոր համար որ այդ շարժումին մէջ եղած են Մալաթիացիներ, որոնց անունները եւ յետոյ Կիլիկեան ճակատի կամաւոր Մալաթիացիներու անունները յիշատակելը նուիրական պարտականութիւն կը համարենք։ Որովհետեւ, ինչպէս քանիցս շեշտած ենք թէ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան պատմութիւնը ուրիշ բան չէ, եթէ ոչ Մալաթիացիներու, ի մասնաւորի Ամերիկաբնակ Մալաթիացիներու պատմութիւնը։

Ամէն ջանք թափած ենք, որ որքան կարելի է, ոեւէ անուն չմոռցուի. իսկ եթէ պատահի որ մեր կամքէն անկախ մոռցումներ եղած ըլլան, կը ջանանք ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթով կատարել պէտք եղած ճշդումները։

Մալաթիացի կամաւորներու անունները եւ անոնց մասին պէտք եղած ծանօթութիւնները ունենալու համար դիմեցինք Կովկասեան ճակատի կամաւորներէն Պրն. Գէորգ Տէր Պաղտասարեանի, որու մեզի տուած ընդարձակ

*տեղեկութիւններէն յայտնի կ՚ըլլայ որ Մալաթիացի կամաւորները եղած են հետեւեալները.—*

1.— Նափոլէոն Թիփթիկճեան, *Հարթֆըրտէն. բանակի լուծարքէն ետք վերադարձած է Ամերիկա: Ներգաղթի առեն առաջին կարաւանով մեկնած է Խորհրդային Հայաստան ու հոն մեռած:*

2.— Սերոբ Սաչաքլեան, *Նիւ Պրիթընէն. 60 տարեկան հասակին կամաւոր գինուորագրուած է: Վերադարձած է Ամերիկա եւ մեռած Նիւ Պրիթըն:*

3.— Ռուբէն Միրեքեան, *լուծարքէն ետք միացած է Զօր. Անդրանիկի բանակին: Այժմ կը գտնուի Հաւանա, Գուպա:*

4.— Ռուբէն Մուրատեան, *Ուստրէն: Եղբայրասպան սեւ ձեռքերու կողմէ նահատակուած Կովկասի մէջ:*

5.— Գէորգ Տէր Պաղտասարեան, *Նիւ Եորքէն: Իգտիր քաղաքի մէջ կը վարէ Օգնական Մատակարարի պաշտօն. յետոյ կը փոխադրուի Վան եւ Քէփթըն Ճիմ Զանգալեանի հաշուապահ կը նշանակուի: Կը վերադառնայ Ամերիկա եւ այժմ կը գտնուի Ֆիլատելֆիա:*

6.— Եղիա Յովհաննէսեան, — Բալա Եղօն — Ֆրենքլինէն: *Իր յառաջացած տարիքին կը գինուորագրուի Կովկասեան ճակատի կամաւոր եւ կ՚ունենայ նշանակելի գործունէութիւն: Լուծարքէն ետք կը միանայ Կիլիկեան ճակատի կամաւորական խումբերուն. ի վերջոյ կը մեկնի* **ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ** *եւ հոն կը մեռնի, ըմանց հաշիւով՝ 100 տարեկան հասակին:*

7.— Գէորգ Պոնազեան, *Ֆրէնքլինէն: Լուծարքէն ետք վերադարձած է Ամերիկա եւ մեռած է Ուստրի մէջ:*

8.— Գէորգ Թաշճեան, *Քլիվլենտէն: Միացած է Անդրանիկի բանակին: Կռիւներուն մէջ ճակատէն ծանրապէս վիրաւորուած է: Քանի մը անգամ բըժըշկական գործողութեանց ենթարկուած է: Այժմ կը գտնուի Քլիվլենտ:*

9.— Խոսրով Միրեքեան, *Ֆիլատելֆիայէն: Քեռիի բանակին միացած: Գիշեր ատեն պահակ կեցած ժամանակ Թուրքերէն խօսած կ՚ըլլայ: Իրմէն քիչ անդին գտնուող գինուորները գայն թշնամի կարծելով հրացանազարկ կ՚ընեն, առանց ստուգելու թէ ո՞վ է: Իր սպանութեան մասին վերջէն հետապնդում կատարուած չէ:*

10.— Մկրտիչ Ասլանեան, *Ֆիլատելֆիայէն: Քեռիի բանակին միացած է: Մի քանի կռիւներու մասնակցած է: Ատեն մը Վան մնացած է, իսկ հիմա կը գտնուի Հայաստան:*

11.— Թադէոս Թաւաքալեան, *Ֆիլատելֆիայէն: Ռուսական Կարմիր Խաչի խումբին մէջ էր: Վերջին անգամ տեսնուած է Թիֆլիսի մէջ: Ռազմադաշտին վրայ վիրաւոր գինուոր փոխադրելու ժամանակ կը նահատակուի:*

12.— Գէորգ Արփաճեան, *Ֆիլատելֆիայէն: Զօր. Անդրանիկի բանակին միացած էր: Մասնակցած է քանի մը կռիւներու: Այժմ կը մնայ Ֆիլատելֆիա:*

13.— Քէփթըն Խաչատուր Պոնափարթեան, *Թրքական բանակի բըժիշկներէն մին է: Թուրքերը հայ գինուորներն սպաննելէ ետք կը ծրագրեն*

*գիրենք խնամող հայ բժիշկներու կեանքն ալ վերջացնել։ Թէփիթին Պոնափարթեան կռահելով իր կեանքին սպառնացող վտանգը, կը յաջողի խոյս տալ եւ ապաստանիլ Ռուսական սահմանը։ Յետոյ կու գայ Երեւան, կը միանայ Զօր. Անդրանիկի բանակին եւ կարգ մը կռիւներու մասնակցելով կը վիրաւորուի։ Հետագային Զօր. Անդրանիկի հետ կու գայ Ամերիկա իբրեւ Զօրավարին թիկնապահը։*

14. — Անտոն Բաղտասարեան, *Ֆրենքլինէն։ Քեռիի բանակին գնուոր, քանի մը կռիւներու մասնակցելէ ետք նահատակուած է։*

15. — Յովհաննէս Բաղտասարեան, *Ֆրենքլինէն։ Քեռիի բանակին գինուոր, նոյնպէս կռիւներու մասնակցած եւ նահատակուած է։*

16. — Գրիգոր Տէր Գէորգեան, *Քլիվլենտէն։ Լուծարքէն ետք վերադարձած է Ամերիկա եւ վերջերս մեռած է Քլիվլենտի մէջ։*

17. — Գրիգոր Ստեփանեան *(Ալվարդեան), Նիւ Եորքէն մեկնած է Ֆրանսա եւ անկէ անցած է Կովկաս եւ միացած Քեռիի խումբին։ Ժամանակ մը մնացած է Երեւան։ Այժմ անյայտ։*

18. — Կարապետ Դանիէլեան, *Ֆրենքլինէն։ Սպաննուած Կովկասի կռիւներուն մէջ։*

19. — Ազարիա Ազարեան, *սպաննուած Կովկասի ճակատի կռիւներուն մէջ։*

## ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Կրթասիրաց Ընկերութեան Տասներկուերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Յունուար 1, 1916–ին, Նիւ Եորքի Հայ Գաղթային Ընկերութեան գրասենեակին մէջ։*

*Ժողովին կը մասնակցին հինգ մասնաճիւղեր 9 ձայնով եւ հետեւեալ կերպով.*

Նիւ Եորք. — *Յովհաննէս Աճեմեան եւ Յակոբ Թաշճեան* — *Մէկ-մէկ ձայն*
Ֆիլատելֆիա. — *Խաչիկ Եսայեան* — *Երկու ձայն*
Քլիվլենտ. — *Գաբրիէլ Տէր Պողոսսարեան* — *Երկու ձայն*
Ֆրենքլին. — *Սենեքերիմ Ափաչաքեան* — *Երկու ձայն*
Նիւպրիփորթ. — *Յարութիւն Գուլուքճեան* — *Մէկ ձայն*
Կեդրոնական վարչութիւն. — *Հայկ Ազմելեան* — *Մէկ ձայն*

*Այս ժողովէն կը բացակայէին Ուստրի, Ֆիչպուրկի, Վուքեկընի եւ Լովէլի մասնաճիւղերը։ Ուստրի մասնաճիւղը հակառակ արտայայտուած է այդ ժամանակներուն պատգամաւորական ժողով գումարուելուն, չենք գիտեր ինչո՞ւ. կ'երեւի ազգային ճգնաժամի կացութիւնը նկատի առնելով էր։ Կեդր. Վարչութիւնը աւելի լաւ եւ օգտակար նկատած է ժողով գումարել եւ այդպէս ալ տեղեկացուցած է Ուստրի մասնաճիւղին։*

*Պատգ. Ժողովը կը հեռագրէ Ուստրի մասնաճիւղին որ ղրկէ իր պատգամաւորը, բայց պատասխան չի ստանար։ Լովէլի, Ֆիչպուրկի եւ Վուքե–*

կընի մասնաճիւղերը անգործութեան մատնուած էին, որոնց վերակազմութեան գործը կը ձգուի Նորընտիր Կեդրոնական Վարչութեան։

Մնայուն դիւանի անդամ կ՚ընտրուին Յովհաննէս Աճեմեան՝ Ատենապետ եւ Խօսրով Եսայեան՝ Ատենադպիր։

Այս ժողովին եկած բոլոր հարցերը կեդրոնացած են կարօտեալներուն օգնութեան հասնելու նպատակին շուրջ։ Երկրէն որոշ տեղեկութիւններ չկան։ Բոլոր ճամբաները գոցուած եւ հեռագրալուրերը գրաքննութեան տակ առնուած են։ Բայց եւ այնպէս, դուրս սպրդած հատուկտոր լուրերը ցոյց կու տան երկրի ներսերը տեղի ունեցած ահռելի աղէտին մեծութիւնը։ Ինչպէս գաղթաշխարհի ողջ Հայութիւնը, նոյնպէս նաեւ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը կը պատրաստուին օգնութեան գործին։ Որոշումները կու տան ընդհանուր հանգանակութեան եւ ընկերութեան բոլոր եկամուտները յատկացնելու կարօտեալներուն պէտքերուն։

Ընկերութեան տան պարտքի մնացած մասն ալ վճարուած ըլլալով տունը Ընկերութեան սեփականութիւնը կ՚ըլլայ առանց պարտքի։ Պատգ. Ժողովը կ՚ողջունէ այս պարագան եւ իր շնորհակալութիւնները կը յայտնէ Կեդրոնական Վարչութեանց եւ մասնաճիւղերու անցեալ ԻՆԸ տարիներու ընթացքին կատարած զոհողութեանց եւ ջանքերուն համար։

Գանձապահի տոմարը կը քննուի եւ կը վաւերացուի, որմէ յայտնի կ՚ըլլայ որ 1915–ի շրջանին ընդհանուր մուտք եղած է 1,721,64 տոլար, իսկ ընդհ. ելք եղած է 1,255,04 տոլար։ Գանձը կը մնայ 466,60 տոլար։ Երքին ՀԱԶԱՐ տոլարը տանը վճարուած վերջին գումարն է։

Կեդրոնական Վարչութեան համար Նիւ Եորքի մասնաճիւղի կողմէ ներկայացուցած եռապատիկ ցանկին վրայ ընտրութիւն տեղի ունենալով, կ՚ընտրուին Ստեփան Կուրապեան, Հայկ Ադմեյեան, Յակոբ Թաշճեան, Գրիգոր Մարգարեան եւ Յակոբ Տէր Մուշեղեան։

Յաջորդ Պատգ. Ժողովի վայր կը նշանակուի Նիւպրիտըթ։

Նորընտիր Կեդր. Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ այսպէս.—

| | |
|---|---|
| Ստեփան Կուրապեան | Ատենապետ |
| Հայկ Ադմեյեան | Ատենադպիր |
| Գրիգոր Մարգարեան | Գանձապահ |

Նիւ Եորքի մասնաճիւղը եւ Կեդրոնական Վարչութիւնը իրենց մէկ նիստին մէջ նկատի կ՚առնեն Ընկերութեան պատմութիւնը գրելու կարեւոր խնդիրը։ Ժողովի բացարձակ մեծամասնութեամբ կ՚ընտրեն հինգ անդամներէ բաղկացած յանձնախումբ, այս գործին համար, որոնք են.— Յովհաննէս Աճեմեան, Խաչատուր Պօյաճեան, Գրիգոր Մարգարեան, Մարգար Մարգարեան եւ Մանուկ Թաշճեան։

Հոկտեմբեր 8–ի ժողովին մէջ կը կարդացուի Կովկասեան կարօտեալներուն գրկուած դրամին ստացուած ըլլալու պատասխանը, որ գրկուած էր Կաթողիկոսէն Ամերիկահայ Առաջնորդարանին, Ուստր, եւ անկէ ալ գրկուած էր Ընկերութեանս Կեդրոնական Վարչութեան, ի Նիւ Եորք։

## ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Տասներեքերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Յունուար 1, 1917–ին Նիւպրիփորթի* Beck *փողոցի սրահին մէջ։*

*Այս ժողովին կը մասնակցին վեց մասնաճիւղեր 9 ձայնով եւ Կեդրոնական Վարչութիւնը մէկ ձայնով։*

Նիւ Եորք. — *Գէորգ Տէր Պալտասարեան* 2 *ձայն*
Ֆիլատելֆիա. — *Գէորգ Թերխանեան և Խօսրով Եսայեան* 2 *ձայն*
Քլիվլենտ. — *Յովհաննէս Թերզիեաղուպեան* 2 *ձայն*
Ուստր. — *Յակոբ Աճեմեան* 1 *ձայն*
Ֆրեզնօ. — *Նշան Կանանեան* 1 *ձայն*
Նիւպրիփորթ. — *Յակոբ Աւետիսեան* 1 *ձայն*
Կեդր. Վարչութիւն. — *Հայկ Ազմըլեան* 1 *ձայն*

*Կրկին կը բացակային Վոքեկընի, Լովէլի, եւ Ֆիչպուրկի մասնաճիւղերը։*

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Գէորգ Թերխանեան՝ Ատենապետ եւ Գէորգ Տէր Պալտասարեան՝ Ատենադպիր։*

*Ուստրի պատգամաւոր Յակոբ Աճեմեան ցաւ կը յայտնէ, Տասներկուերորդ Պատգ. Ժողովի առթիւ եղած սխալմունքին համար։ Պրն. Աճեմեան կը յայտնէ թէ իր մասնաճիւղը Պատգ. Ժողովի հեռագիրն ստացած եւ նոյնպէս հեռագրով իր ձայնը դրկած է եղեր Յակոբ Ն. Թաշճեանի։ Բայց հասցէի սխալմունքին պատճառով հեռագիրը ատենին հասած չէ Պրն. Թաշճեանին։ Այս բացատրութիւնով կը ճշդուի որ Ուստրի մասնաճիւղը պատասխանած է Տասներկուերորդ Պատգ. Ժողովի հեռագրին եւ այդ սխալմունքով չէ կրցած մասնակցիլ այդ ժողովին։*

*Պատգամաւորական ժողովը նկատի ունենալով որ քաղաքական ներկայ պայմաններու բերումով կարելի չէ մեր Ընկերութեան ընդգրկած նպատակի — այսինքն կրթական գործին — գործադրութիւնը, եւ թէ նկատի ունենալով վերաշինութեան եւ կարօտեալներու օգնութեան գործի անհրաժեշտութիւնը, կ'որոշէ, որ*

«Անդամական տուրքերը եւ տարեկան եկամուտը յատկացուին կրթական նպատակի գանձին, իսկ վերաշինութեան եւ կարօտեալներու համար զատ հաշիւ պահուի։ Այս վերջին պէտքերուն հասնելու համար կատարուած հանգանակութիւններու արդիւնքը յատկացնել վերաշինութեան եւ կարօտեալներու օգնութեան գործին»։

*Ամերիկաբնակ Մալաթիացիներու մարդահամարն ընելու համար կ'ընտրուի յանձնախումբ մը։*

*Պատգ. Ժողովը կ'որոշէ կազմել առանձին կանանց մասնաճիւղեր, վճարելով տարեկան մէկ տոլար մուտք եւ 10 սէնթ անդամավճար։*

*Կեդրոնական Վարչութեան համար Նիւ Եորքի մասնաճիւղէն ներկայացուած եռապատիկ ցանկին վրայ կատարուած ընտրութեան արդիւնքը*

*Կ'ըլլայ հետեւեալը.— Ստեփան Կուրապեան, Յակոբ Թաշճեան, Հայկ Ազմելեան, Գրիգոր Մարգարեան, Գէորգ Տէր Պալտասարեան։*

*Գանձապահի հաշիւները քննելով կը վաւերացուին։ Յայտնի կ'ըլլայ, որ* 1916*-ի տարեշրջանին ընդհ. մուտք եղած է* 1,218,60 *տոլար ի հաշիւ Կրթասիրացի եւ* 773,00 *տոլար ի հաշիւ Վերաշինացի. ընդամէնը* 1,991,00 *տոլար. իսկ ընդհ. ելք եղած է* 375,85 *տոլար։ Գանձը կը մնայ* 1,615,75 *տոլար։*

*Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր գլուխը կը կազմէ այսպէս.*

| | |
|---|---|
| *Ստեփան Կուրապեան* | *Ատենապետ* |
| *Հայկ Ազմելեան* | *Ատենադպիր* |
| *Մարգար Մարգարեան* | *Գանձապահ* |

1917*-ի տարեշրջանին կը կազմուին Պոսթընի, Փրովիտենսի, Շիքակոյի, Պրաքթընի, Լարենսի մասնաճիւղերը։*

*Նոյն տարւոյ Կեդրոնական Վարչութեան եւ մասնաճիւղերու գործունէութեան առանցքը կը կազմեն հայ կարօտեալներու օգնութեան գործը եւ հանգանակութիւններ, ամէն տեղ։*

*Հայկական տեղահանութեանց եւ զանգուածային կոտորածներու լուրերը կը ցնցեն համայն քաղաքակիրթ աշխարհը։*

*Անգլիոյ, Ֆրանսայի, Ամերիկայի եւ այլ երկիրներու խորհրդարաններու ամպիոններէն եւ եկեղեցիներու բեմերէն պաշտօնապէս եւ հանդիսաւորապէս կը ճառուի Հայոց իրաւունքներու մասին եւ կը խոստացուի կատարեալ ազատութիւն։*

*Հայ ժողովուրդը կը ճանչցուի որպէս* Փոքր Դաշնակից *եւ հետեւաբար, մեր ժողովուրդն ալ պէտք էր որ բերէր իր դրական մասնակցութիւնը պատերազմին։*

*Ազգային Պաշտպանութեան Միութեան կողմէ կոչ կ'ըլլայ Կիլիկեան կամաւորական շարժումին, որուն կը պատասխանեն* 20–25 *հազար հայ երիտասարդներ։*

*Բայց,* 1917, *Ապրիլ* 6*-ին Միացեալ Նահանգներ Գերմանիոյ դէմ պատերազմ յայտարարելով, միլիոնաւոր Ամերիկացի երիտասարդներ, որոնց կարգին նաեւ հազարաւոր հայ երիտասարդներ Ամերիկեան բանակին կանչուելով, փոխադրութեան անկանոնութիւններու հետեւանքով, հազիւ* 4–5 *հազարի չափ հայ կամաւորներ կրցին երթալ Կիլիկիոյ ճակատը։*

*Կիլիկեան ճակատի կամաւորական շարժման պատմութիւնը լեփլեցուն է հերոսական դրուագներով եւ սրտամորմոք տեսարաններով, որոնց նկարագրութիւնը մեր նպատակէն դուրս ըլլալով, միայն այսչափով կը բաւականանանք։*

*Մալաթիացիներ այս շարժման մէջ ալ բերած են իրենց լիակատար մասնակցութիւնը իրենց կամաւոր հայրենակիցներով, որոնց անունները միայն յիշելով պիտի գոհանանք, որովհետեւ դժուար է ճշդել ամէն մէկ կամաւոր զինուորի, խումբի կամ ծառայութեան դաշտի գործունէութիւնները։*

ԽՈՍՐՈՎ ՔԵՇԻՇԵԱՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՄՊԱՐԵԱՆ
ԱՐՄԵՆԱԿ ՄՈՒՐԱՏԵԱՆ
ՅԱՐՈՒԹԻՒՆ ՍԱՐԳԱՐԵԱՆ
ՍԱՐԳԻՍ ԿԸՋՐԵԱՆ

ԳՐԻԳՈՐ ՊԱՐՍԱՄԵԱՆ
ՄԻՍԱՔ ԱՒԵՏԻՍԵԱՆ
ԱՒԵՏԻՍ ԱՒԵՏԻՍԵԱՆ
ՅԱՐՈՒԹԻՒՆ ԱՒԵՏԻՍԵԱՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԱՉԱՔԼԻԵԱՆ

ՀԱՅԿ ՕՐՄԱՆԵԱՆ
ՄԻՔԱՅԷԼ ԱՆՍՈՒՐԼԻԵԱՆ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ԴԱՐՈՂԼԱՆԵԱՆ
ԳՐԻԳՈՐ ԱՃԱՄԵԱՆ
ՄԱՐՈՒԷԼ ՄԱՐՈՒԷԼԵԱՆ
ՆԱԶԱՐԷԹ ԱՆՍՈՒՐԼԻԵԱՆ

ԿԱՐԱՊԵՏ ԻՓԻԿԵԱՆ
ԱՊՐԱՀԱՄ Տ. ՎԱՀՐԱՄԵԱՆ
ՄԱՆՈՒԿ ԾՂԻԱԵԱՆ

Ամերիկայէն կիլիկեան Ճակատի կամաւորներ

Ամերիկայէն Կիլիկեան ճակատի մալաթիացի կամաւորներ

ԽՈՍՐՈՎ ԽՐԻԿԵԱՆ | ՄԻՔԱՅԷԼ Տ. ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ | ԳԷՈՐԳ ԵՐԱՆԵԱՆ | ՍԵՆԵՔԵՐԻՄ ԶՕԼԱՔԵԱՆ | ՊԵՏՐՈՍ ԴԱՄՈՂԼԱՆԵԱՆ

ԳՐԻԳՈՐ Տ. ԴԱՒԻԹԵԱՆ | ՄԵՀՐԱԿ Տ. ՊԱՂՏԱՍԱՐԵԱՆ | ՄԻՀՐԱՆ ՔԱՇԻՇԵԱՆ | ՄԱՆՈՒԷԼ ՊԱՃԱՔՃԵԱՆ | ՅԱՐՈՒԹԻՒՆ ՔԻՒԼԽԱՆՃԵԱՆ

ԳՐԻԳՈՐ ՄԻՆԱՍԵԱՆ | ԽԱՉԱՏՈՒՐ ՏԷՕՓԵԱՆ | ԳԷՈՐԳ ՇԱՀՐԻԿԵԱՆ | Յակոբ ԿԱՆԱՆԵԱՆ | ԿԱՐԱՊԵՏ ԹԱՇՃԵԱՆ

Ամերիկայէն Ֆրանսայի Լեգէոնի Մալաթիացի կամաւորներ

Ամերիկայէն ֆրանսական լեգէոնի մալաթիացի կամաւորներ

Եղիա Տէր Յովհաննէսեան.— *Նախապէս մասնակցած Կովկասեան ճակատի կամաւորներու խումբին: Վերադարձին կը միանայ Կիլիկիոյ կամաւորական շարժման: Գացած է ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, Հայաստան եւ հոն մեռած:*

Աբրահամ Տէր Վահրամեան.— *Պէյրութի մէջ սպաննուած:*

Յարութիւն Մարգարեան.— *Եղած է Ընկերութեանս լիազօր ներկայացուցիչ Պէյրութի եւ Հալէպի շրջաններուն, իսկ այժմ կը գտնուի Հայաստան:*

Սարգիս Կեզիրեան.— *Հայ գաւառականներուն սարսափին եղող այս քաջամարտիկ տղամարդը մեծ գործ տեսած է Կիլիկեան շարժումի կռիւներուն մէջ եւ մեռած է Ռումանիոյ մէջ:*

Յովհաննէս Սաչաքլեան.— *Մասնակցած է շատ կռիւներու եւ հոն նահատակուած:*

Խոսրով Քեշիշեան.— *Ժամանակ մը մնացած է Քուպա, յետոյ Քալիֆորնիա, ուր մեռած է:*

Արմենակ Մուրատեան.— *Այժմ կը գտնուի Ուստր:*

Մանուկ Եղիայեան.— *Այժմ կը մնայ Պոսթոն:*

Միսաք Աւետիսեան.— *Այժմ կը մնայ Քալիֆորնիա:*

Յարութիւն Աւետիսեան.— *Մեռած է Պոսթոնի մէջ:*

Գրիգոր Պարսամեան.— *Այժմ կը բնակի Ուստր:*

Հայկ Օրմանեան.— *Կը մնայ Տիթրոյիթ:*

Սեդրակ Տ. Պաղտասարեան.— *Մեռած է Քլիվլէնտի մէջ:*

Սենեքերիմ Զոլաքեան.— *Կը մնայ Տիթրոյիթ:*

Յովհաննէս Գասպարեան.— *Կը մնայ Փալմըր:*

Խաչատուր Տէյիրեան — Խաչատուրեան.— *Կը մնայ Քալիֆորնիա:*

Գէորգ Շահրիկեան.— *Կը մնայ Նիւ Եորք:*

Գրիգոր Տէր Դաւիթեան.— *Կը մնայ Քլիվլէնտ:*

Յարութիւն Գիւլխանեան.— *Մեռած է Քլիվլէնտի մէջ:*

Մանուէլ Պանաքարզեան.— *Կը մնայ Քլիվլէնտ:*

Խոսրով Խրիկեան.— *Մեռած է Քլիվլէնտի մէջ:*

Գրիգոր Մինասեան.— *Մեռած է Ֆրանսայի մէջ:*

Միքայէլ Տէր Պաղտասարեան.— *Կը մնայ Քլիվլէնտի մէջ:*

Կարապետ Թաշճեան.— *Կորսուած է Ատանայի մէջ:*

Յակոբ Կաճաճեան.— *Կը մնայ Քլիվլէնտ:*

Գէորգ Երանեան.— *Այժմ կը գտնուի Քալիֆորնիա:*

Պետրոս Գարօղլանեան.— *Մեռած է Եգիպտոսի մէջ:*

Յովհաննէս Գարօղլանեան.— *Այժմ կը բնակի Եգիպտոս:*

Միքայէլ Անսուրեան.— (*Արժանթինէն*): *Մեռած է Պուէնոս Այրէսի մէջ, Արժանթին:*

Սամուէլ Սամուէլեան.— *Զինուոր ֆրանսական բանակին մէջ, գերման ճակատին վրայ:*

Գրիգոր Աճեմեան.— *Արժանթինէն:*

Նազարէթ Անսուրեան.— *Եգիպտոսէն: Այժմ կը գտնուի Հայաստան:*

Տոքթ. Միհրան Քեշիշեան. — *Մասնագէտ վիրաբոյժ բժիշկ Թուրք բանակին մէջ: Գերի կ՚իյնայ անգլիական բանակին եւ յետոյ տեղական տարիճանով կը միանայ հայ կամաւորական խումբերուն: Այժմ մեռած:*

Կարապետ Խպիկեան. — *Թրքական բանակէն կ՚անցնի անգլիական բանակը եւ տեղակալի աստիճանով կը միանայ հայ կամաւորական խումբերուն: Կը մնայ Ֆրանսա: Այժմ մեռած:*

Աւետիս Աւետիսեան. — *Կը մնայ Քալիֆորնիա:*

## ՏԱՍՆՉՈՐՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Տասնչորրորդ Պատգամաւորական ժողովը տեղի ունեցած է* 1917, *Դեկտեմբեր* 30–*ին, Ուստրի Ս. Դ. Հնչակեան ակումբի սրահը:*

*Այս ժողովին կը մասնակցին* 9 *մասնաճիւղեր՝* 14 *ձայնով:*

Նիւ Եորք. — *Մարգար Մարգարեան, Յակոբ Թաշճեան:*

Քլիվլենտ. — *Յովհաննէս Թերզիեաղուպեան,* 2 *ձայնով:*

Պոսթոն. — *Հայկազուն Պոնափարթեան, Մարտիրոս Դաւիթեան:*

Ուստր. — *Առաքել Եաղըճեան, Կարապետ Մոմճեան:*

Ֆրենքլին. — *Նշան Կանանեան, մէկ ձայն:*

Փրաւիտենս. — *Ի. Տէր Յովհաննէսեան, մէկ ձայն:*

Լովել. — *Յովհաննէս Պապիկեան, մէկ ձայն:*

Նիւպրիփորթ. — *Լեւոն Գաւուքճեան, մէկ ձայն:*

Ֆիլատելֆիա. — *Գէորգ Թերխանեան, Սարգիս Շահրիկեան:*

*Կը բացակայէին Լորէնսի, Շիքակոյի, Վոքեկընի եւ Պրաքթընի մասնաճիւղերը:*

*Մնայուն դիւանի անդամներ կ՚ընտրուին Նշան Կանանեան՝ Ատենապետ եւ Հայկազուն Պոնափարթեան՝ Ատենադպիր:*

*Դիւանին կը ներկայացուի* 16 *հարցերէ օրակարգ մը, որոնց մեծ մասը ժողովներու ընթացիկ խնդիրներ եւ նախապէս խօսուած–վճաբանուած հարցեր են:*

*Ժողովը նկատի կ՚ունենայ Ամերիկեան բանակին մէջ եղող Մալաթիացի զինուորներու կտակի հարցը եւ կը թելադրէ որ իրենց կտակներն ընեն նախ քան զինուոր երթալը. եւ եթէ մէկը չունին, ընեն զայն Ընկերութեան անունով:*

*Կ՚որոշուի գրել* 1895–*ի Մալաթիոյ կոտորածին պատմութիւնը եւ զայն միացնել Ընկերութեան պատմութեան հետ, որու մասին նախապէս որոշում տրուած եւ յանձնախումբեր ընտրուած են:*

*Ուսանողներու օգնութեան, այսինքն այն ուսանողներու, որոնք ժամանակի ընթացքին ինքնօգնութեամբ հետեւած են մասնագիտութեան մը, որպիսիք են մեքենագիտութիւն, մանկավարժութիւն, երկրագործութիւն, բժշկութիւն, եւ նիւթական օգնութեան կարիք ունին իրենց սկսած դասընթացքը լրացնելու, այդպիսիներուն օգնելու համար կ՚ընտրուի յանձնա–*

խումբ մը, որ աշխատի նիւթական եւ այլ միջոցներ գտնել, առաւելապէս ապահովել անհատական նուիրատուութիւններ եւ ձեռք բերուած գումարն ամէն տարի յատկացնել այդ նպատակին: Յանձնախումբի անդամներ կ՚ընտրուին. Յարութիւն Շեքերճեան, Խոսրով Պօնափարթեան, Յակոբ Տողանեան, Առաքել Եագըճեան եւ Սարգիս Մարտիրոսեան:

Կեդրոնական Վարչութեան գանձապահի ապահովագրութեան հարցը նկատի առնելով կ՚որոշուի գանձապահի ապահովագրութեան քանակը բարձրացնել Հինգ Հազար տոլարի:

Իրաւունք կը տրուի Կեդրոնական Վարչութեան, որ երբ որեւէ ժամանակ տեղեկութիւն ստանայ Մալաթիացի կարօտեալներու մասին, անմիջապէս օգնութեան հասնի, ինչ միջոցաւ որ հնարաւոր է. հակառակ պարագային գումարել արտակարգ պատգամաւորական ժողով:

Նիւպրիտօրթի մասնաճիւղի ընկերներէն կազմուած մարդահամարի յանձնախումբը կը տեղեկացնէ, որ Ամերիկայի մէջ այս ժամանակները մօտաւորապէս Հազար Հինգ Հարիւր Մալաթիացիներ կան:

Կեդրոնական Վարչութեան համար կ՚ընտրուին Ստեփան Կուրապեան, Յակոբ Թաշճեան, Միհրան Ոսկերիչեան, Մարգար Մարգարեան, Յովհաննէս Աճեմեան:

Գանձապահի տոմարը քննելով կը փաւերացուի. յայտնի կ՚ըլլայ որ 1917-ի շրջանին մուտք եղած է — ի հաշիւ Կրթասիրացի — անցեալ տարւոյ 842,75 տոլարն ալ մէջն ըլլալով ընդամէնը 2,135,05 տոլար, ի հաշիւ Վերաշինացի, անցեալ տարւոյ 773 տոլարով միասին ընդամէնը 2,207 տոլար: Կրթասիրացի հաշիւէն ելք եղած է 347 տոլար, որով դանձը կը մնայ 1,789,98 տոլար:

1918 տարին հայ կեանքի պատմութեան մէջ որոշ նշանակութիւն ունեցող տարի է: Նոյն տարւոյ Մայիս 28-ին կը ստեղծուի Հայաստանի Հանրապետութիւնը: Դարերու ընթացքին հայրենիքէ եւ պետականութենէ զուրկ Հայութիւնը ողջունեց այդ Ակտը: Սաւա՛ղ, սակայն, որ Թուրքիոյ երկու միլիոն Հայութենէն մէկուկէս միլիոն նահատակուած Հայութիւնը դէթ չլսեց, թէ Հայաստան անունով երկիր մը, կառավարութիւն մը ստեղծուած է, հոգ չէ թէ որո՞ւ կողմէ եւ կամ ի՞նչպէս:

Զօր. Անդրանիկ Ամերիկա կու գայ, Ամերիկահայ ժողովուրդի խանդավառութիւնը չափ ու սահման չունի: Մէկ Միլիոն Տոլարի հանգանակութիւնը կը սկսի: Մալաթիացիներ, ամէն տեղի մէջ, մեծ գումարներով կը մասնակցին տեղական հանգանակութեանց: Գաղափար մը տալու համար ըսենք, որ միայն Նիւ Եորքի մասնաճիւղը հանգանակած է 2,500 տոլարի գումար մը: Տարակոյս չունինք, որ մեր միւս մասնաճիւղերն եւս մեծ չափով մասնակցած են:

*
**

1918, Նոյեմբեր 11-ին կը կնքուի Առաջին Համաշխարհային Պատերազմի Զինադադարը: Չորս տարիներէ ի վեր շարունակուող պատերազմը վերջ կը գտնէ:

# ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Տասնհինգերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Դեկտ.* 29, 1918-*ին Լովէլի մէջ,* Քոլոնիէլ *սրահը:*

*Սոյն ժողովին կը մասնակցին* 11 *մասնաճիւղեր* — 16 *պատգամաւորներ* 19 *ձայնով:*

Կեդր. Վարչութիւն.— *Մանուկ Թաշճեան:*

Նիւ Եորք.— *Յովհ. Աճեմեան, Գէորգ Տէր Պաղտասարեան:*

Լովէլ.— *Յովհաննէս Պապիկեան, Գէորգ Կիւլիւշեան:*

Ուստր.— *Կար. Մումճեան, Արմենակ Մուրատեան:*

Պոսթըն.— *Խոսրով Եսայեան, Գրիգոր Պարմագեան:*

Պրաֆքըն.— *Գրիգոր Խուլեան:*

Փրաւիտենս.— *Իսրայել Տէր Յովհաննէսեան:*

Քլիվլենտ.— *Մ. Թաշճեան, երկու ձայնով:*

Ֆիչպուրկ.— *Ալեքսան Քէքէվեան, երկու ձայնով:*

Ֆրենքլին.— *Նշան Կանանեան, երկու ձայնով:*

Ֆիլատելֆիա.— *Համբարձում Թերխանեան, Յարութիւն Փիլիպպոսեան:*

Կրանիթ Սիթի.— *Հաճի Մանուկ Թաշճեան:*

*Կը բացակային Նիւպրիփորթի, Լորէնսի, Շիքակոյի եւ Վոքեկընի մասնաճիւղերը:*

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Խոսրով Եսայեան՝ Ատենապետ եւ Ալեքսան Քէքէվեան՝ Ատենադպիր:*

*Այս ժողովին ամենակարեւոր հարցն եղած է* ՅԻՍՈՒՆ ՀԱԶԱՐ *տոլարի հանգանակութեան արշաւը:*

*Նկատի ունենալով ազատագրուած Հայաստանի վերաշինութեան գործը եւ կարօտ հայրենակիցներու օգնութեան անհրաժեշտութիւնը, Պատգ. Ժողովը կ'որոշէ սկսիլ* 50,000 *տոլարի հանգանակութեան արշաւ մը, որու* ՀԻՆԳ ՀԱԶԱՐ*ը յատկացուի Ուսանողական Ֆոնտին: Կրթական նպատակի յատկացուած գումարը բարձրացնել* ՔՍԱՆ ՀԻՆԳ ՀԱԶԱՐ *տոլարի եւ մնացեալ գումարը յատկացնել երկրի վերաշինութեան:*

*Այն ժամանակները բոլորին հաւատքն էր, թէ վեց նահանգներով միասին Անկախ Հայաստան մը այլեւս իրականութիւն է, եւ առ այդ այս Պատգ. Ժողովը կը թելադրէ, անմիջապէս որ ճամբաները բացուին, պատրաստ ըլլանք երկիր վերադառնալ եւ հոն հաստատուիլ...:*

*Վերջնականապէս կ'որոշուի Հոպօքընի տունը ծախել:*

*Մալաթիոյ եւ Ընկերութեան պատմութիւնները դրող յանձնախումբերը կը վերընտրուին, գործը շարունակելու համար:*

*Գանձապահի տոմարները կը քննուին եւ կը վաւերացուին: Յայտնի կ'ըլլայ որ* 1918-*ի տարեվերջանին ընդհանուր մուտք եղած է ի հաշիւ Կըր-*

*Թասիրայի 3,455,71 տոլար, իսկ ելք 363,37 տոլար· գանձը կը մնայ 3,092,34 տոլար: Ի հաշիւ Վերաշինացի Ընդ· Մուտք եղած է 5,201,41 տոլար, որով գանձի եղած ընդհանուր գումարը, անցեալ տարիէն փոխանցուած գումարներով, կ'ըլլայ 8,293,75 տոլար:*

*Նոր տարեշրջանի համար Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին հետեւեալները·— Մարգար Մարգարեան, Յովհաննէս Աճեմեան, Մանուկ Թաշճեան, Ստեփան Կուրապեան եւ Գէորգ Տէր Պաղտասարեան:*

*Նոր Վարչութեան դիւանը կը կազմուի այսպէս·—*

| | |
|---|---|
| *Ստեփան Կուրապեան* | *Ատենապետ* |
| *Գէորգ Տէր Պաղտասարեան* | *Ատենադպիր* |
| *Հաճի Մանուկ Թաշճեան* | *Գանձապահ* |

1919–*ի շրջանին հետզհետէ Կեդրոնական Վարչութեան կը հասնին ազատուած Մալաթիացիներու անունները: Կեդրոնին կողմէ, որպէս անմիջական օգնութիւն, կը ղրկուին հետեւեալ գումարները·—*

*Ատանա* 557 *տոլար· Հալէպ* 245 *տոլար· Պաղտատ* 36 *տոլար· Փորթ Սայիտ* 36 *տոլար· Մալաթիա — Պոլսոյ Պատրիարքարանի եւ այլ միջոցներով — ընդամէնը* 4,985 *տոլար:*

1919–*ի Սեպտեմբերին կը մեռնի Ընկերութեանս բազմամեայ եւ վաստակաւոր անդամներէն եւ տարիներու Կեդր· Վարչութեան ատենապետ Ստեփան Կուրապեանը: Մասնաճիւղեր եւ Կեդր· Վարչութիւնը կը յայտնեն իրենց ցաւակցութիւնները եւ յարգանքները հանգուցեալի պարագաներուն:*

*Ընկերութեան համար նոր զարդակոճակներ կը պատրաստուի:*

*Այս շրջանին կը կազմուի Տիթրոյիտի եւ Ֆիլատելֆիոյ Կանանց Մասնաճիւղերը:*

## ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Տասնվեցերորդ Պատգ· Ժողովը գումարուած է Յունուար* 1, 1920–*ին Պոսթընի մէջ:*

*Այս ժողովին կը մասնակցին* 14 *մասնաճիւղեր* 23 *ձայնով:*

Կեդր· Վարչութիւն·— *Գ· Տէր Պաղտասարեան:*

Փրաւիտենս·— *Ի· Տէր Յովհաննէսեան:*

Լովել·— *Գէորգ Կիւլիչեան 2 ձայնով:*

Վոքեկըն·— *Վերակազմուած — ձայն Յ· Տողանեանի:*

Քլիվլենտ·— *Յովհ· Թերզիեաղուպեան, 2 ձայնով:*

Ուստր·— *Յակոբ Աճեմեան, Սարգիս Մանուչեան:*

Նիւ Եորք·— *Հայկ Ազմելեան, Կարապետ Ճերահեան:*

Պոսթոն·— *Գրիգոր Պարմազեան, Կարապետ Աւագեան:*

Պրաքթըն·— *Յարութիւն Գաւուքճեան:*

Տիթրոյիթ·— *Գրիգոր Պարմազեան — ձայն —:*

Ֆիլատելֆիա. — Մ. Շահրիկեան, Յակոբ Գոճապաշեան։

Ֆիլտ. կանանց. — Սարգիս Շահրիկեան։

Բեմորն. — Յ. Գոճապաշեան։

Ֆրենքլին. — Ստեփան Ոսպիկեան, Յովհ. Քէփէնկեան։

Այս շրջանին կազմուած են նաեւ Պրինճփորթի, Ֆրեզնոյի, Նիւ Պրիթընի, Պուենոս Այրէսի (Արժանթին) եւ Ատանայի մասնաճիւղերը որոնք, սակայն, ոչ կրցած են ներկայ ըլլալ եւ ոչ ալ ձայն ղրկած են։ Ժողովէն բացակայած են նաեւ Նիւպրիփորթի եւ Կրանիթ Սիթիի մասնաճիւղերը։

Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Ի. Տէր Յովհաննէսեան՝ Ատենապետ եւ Կարապետ Աւագեան՝ Ատենադպիր։

Նախորդ Պատգ. Ժողովներու մէջ ծեծուած հարցերը կրկին նիւթ կ'ըլլան եւ նորանոր որոշումներ կը տրուին, որոնք են — 50 հազար տոլարի հանգանակութեան, Մալաթիոյ եւ Կրթասիրաց Ընկերութեան պատմութեանց եւ Ուսանողական յանձնախումբերու ընտրութիւններ, եւայլն։

Կ'որոշուի հագուստ եւ գիրքեր հաւաքել եւ ղրկել Մալաթիոյ կարօտեալներուն։ Կ'որոշուի Կեդրոնական Վարչութեան հետ նշանակել երկու հոգի եւս, մօտակայ մասնաճիւղերէն։

Ընկերութեան Զարթըրին մէջ եղած Association բառը կը փոխուի Societyի ապագային դժուարութեանց տեղի չտալու համար, քանի որ ընկերութիւնը միշտ Society բառը գործածած է։

Կ'որոշուի յետ այսու Պատգ. Ժողովները գումարել Սեպտեմբեր ամսուն, նկատի ունենալով ձմեռ եղանակի դժուարութիւնները։

Նոր տուն մը գնելու համար կը նշանակուի երեք կարապետներով յանձնախումբ մը, որոնք են — Կարապետ Մարգարեան՝ Լովէլէն, Կարապետ Ճերահեան՝ Նիւ Եորքէն, Կարապետ Աւագեան՝ Պոսթոնէն։

Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին — Ասատուր Ագմելեան, Կարապետ Ճերահեան, Մ. Թաշճեան, Մ. Մարգարեան, Գրիգոր Խանճեան Նիւ Եորքէն, Յակոբ Գոճապաշեան եւ Սարգիս Մազմանեան Ֆիլատելֆիայէն։

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, որով յայտնի կ'ըլլայ, որ 1919 տարեշրջանի ընդհանուր մուտք եղած է, նախորդ շրջանէն մնացած գումարներով, ի հաշիւ Կրթասիրացի 5,193,44 տոլար, իսկ ելք 1,254,60։ Գանձը կը մնայ 3,938,04 տոլար։

Ի հաշիւ Վերաշինացի 6,996,22 տոլար, իսկ ելք՝ 6.041,13 տոլար. կը մնայ 954.39 տոլար։ Վերաշինացի ելքը երկիր ղրկուած գումարներն են։

Ի հաշիւ ՅԻՍՈՒՆ ՀԱԶԱՐ տոլարի հանգանակութեան Կեդրոն ղրկուած ընդհ. գումարն է 7,598,73 տոլար, որով Ընկերութեան պատրաստ գումարն է.

| | |
|---|---|
| Ի հաշիւ Կրթասիրացի | 3,938,84 |
| Ի հաշիւ Վերաշինացի | 954,39 |
| Քեմփէյնէն եկած | 7,348,73 |
| Ընդհանուր Գումար | 12,241,96 տոլար։ |

*Նոր Վարչութեան դիւանը կը կազմեն Գրիգոր Խանձեան՝ Ատենապետ, Հայկ Աղմէլեան՝ Ատենադպիր և Մանուկ Թաշճեան՝ Գանձապահ։*

*Կեդրոնական Վարչութիւնը Մալաթիայէն ստացուած նամակէ մը կը տեղեկանայ որ տեղւոյն վրայ կազմուած է մարմին մը ղրկուած նպաստի դրամները հաւասարապէս բաժնելու կարօտեալներուն եւ տնօրինելու ինչ որ պէտք է։*

*Ատանայի մէջ Քեմփ մը ունենալու կարգադրութեանց համար կը դըրուի տեղւոյն մէջ կազմուած յանձնախումբին։*

*Այդ տարեշրջանին Նախագահ Ուիլսըն կը գծէ Հայաստանի սահմանները, որուն մէջ մեր Մալաթիան դուրս մնացած էր։ Ընդհանուր Մալաթիացիներու կողմէ դիմում կ'ըլլայ մեր մեծանուն Նախագահին, որ Մալաթիան ալ մէջն առնէ, քանի որ այդ քաղաքը կը պատկանի Խարբերդի նահանգին։*

*Նպաստի գումարներ կը ղրկուին ուր որ կարիք կը տեսնուի եւ կամ լուր կը ստացուի։*

## ՏԱՍՆԵՕԹՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Այս Տասնեօթներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 4, 1920–ին, Վերակազմեալ Հնչակեաններու սրահը, Փրավիտենսի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին 12 մասնաճիւղեր՝ 17 ձայնով։*

Կեդր. Վարչութիւն.— *Հայկ Աղմէլեան։*

Նիւ Եորք.— *Միհրան Ոսկերիչեան, Աւետիս Աւետիսեան։*

Փրաւիտենս.— *Իսրայէլ Տէր Յովհաննէսեան։*

Ֆիլատելֆիա.— *Նազարէթ Քիւնտիւզէկեան, Յակոբ Ընտրիկեան։*

Ուստր.— *Յակոբ Աճեմեան, Սրապիոն Անտոնեան։*

Լովէլ.— *Յակոբ Կիւլիչեան, Սեդրակ Սապունճեան։*

Լովէլ կանանց.— *Սեդրակ Սապունճեան։*

Պոսթոն.— *Մարտիրոս Դաւիթեան, Ռուբէն Պարմաքեան։*

Աթըլպորոյ.— *Աւետիս Աւետիսեան։*

Ֆրեններին.— *Ստեփան Ռապիկեան։*

Տիթրոյիթ.— *Կարապետ Ճերահեան։*

Պրաքթըն.— *Յովհաննէս Խանձեան։*

վոքեկըն.— *Կարապետ Ճերահեան։*

*Լուծուած մասնաճիւղեր այդ շրջանին — Սենթ Լուիզ, Կրանիթ Սիթի, Շիքակօ, Ֆիչպուրկ։ Բացակայ է Քլիվլենտ։*

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Ի. Տէր Յովհաննէսեան՝ Ատենապետ եւ Յակոբ Աճեմեան՝ Ատենադպիր։*

*Այս ժողովին որպէս հիւր ներկայ եղած է մեր հայրենակից եւ յայտնի նկարիչ տիար Սարգիս Խաչատուրեան, որ գեղեցիկ ուղերձով մը գնահատեց Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան գործունէութիւնը։*

Արտասահմանի մէջ գտնուող Մալաթիացի անկարող ուսանողներու օգնելու եւ միեւնոյն ժամանակ Ուսանողական Ընդհանուր Ծրագիր–Կանոնագիր մը պատրաստելու համար կ'ընտրուի յանձնախումբ մը հետեւեալ անդամներէն.— Ի. Տէր Յովհաննէսեան, Նշան Կանանեան, Աւետիս Աւետիսեան, Յովհ. Խանձեան:

Այս ժողովին մէջ հարց կ'ըլլայ, կրկին, կանոնագրի բարեփոխութիւնը:

Մալաթիոյ Վերաշինութեան համար ծրագիրներ կը պատրաստուին: Նոր շրջանի Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին հետեւեալները.—

Գրիգոր Խանձեան, Միհրան Ոսկերիչեան, Մանուկ Թաշճեան, Աւետիս Աւետիսեան, Ա. Ազմէլեան Նիւ Եորքէն իսկ Ֆիլատելֆիայէն Յակոբ Գոճապաչեան եւ Կ. Նաճարեան:

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին: Ասկէ յետոյ պիտի տանք միայն ընդհանուր գումարը Կրթասիրացի, Վերաշինութեան եւ Քեմփէյնինը միասին, որովհետեւ վերջէն պիտի տանք ընդհանուր հաշիւները իրենց մանրամասնութեամբ: Երբ մուտք կ'ըսենք, կը նշանակէ նախորդ տարիէն փոխանցուած եւ վերջացող տարեշրջանին ստացուած գումարներու ամբողջութիւնը.—

| | | |
|---|---|---|
| Ընդհանուր Մուտք | 28,617,95 | տոլար |
| Ընդհանուր Ելք | 4,150,82 | տոլար |
| Գանձը կը մնայ | 24,467,13 | տոլար |

Նորընտիր Կեդրոնական Վարչութեան առաջին նիստին մէջ Գ. Խանձեան եւ Ա. Ազմէլեան կը հրաժարին եւ անոնց տեղ կը հրաւիրուին Յովհ. Աճեմեան եւ Սեդրակ Քիւփելեան: Դիւանը կը կազմուի հետեւեալ կերպով.—

| | |
|---|---|
| Յովհաննէս Աճեմեան | Ատենապետ |
| Միհրան Ոսկերիչեան | Ատենադպիր |
| Մանուկ Թաշճեան | Գանձապահ |

Այդ տարուայ Կեդրոնական Վարչութեան աշխատակցութեանց մէջ նկատառութեան արժանի գործ մը չկայ, ի բաց առեալ մասնաճիւղերու եւ յանձնախումբերու հետ կատարած յարաբերութիւնները:

Այդ օրերուն Հայաստանի մէջ արտակարգ անցուդարձեր տեղի կ'ունենային: Օրուան կառավարութիւնն իր վրայ դրուած յոյսերը չկրցաւ արդարացնել: Իշխանութեան գլուխն անցնելէ ի վեր երկրին ներքին կացութիւնը օր ըստ օրէ սկսած էր վատթարանալ, կռիւներ անպակաս էին ներքին թէ արտաքին ճակատին վրայ: Հայաստանի մէջ տիրող այս խառնակ կացութենէն օգտուելով Հայոց դարաւոր Թուրք թշնամին յարմար պատեհութիւնը հասած նկատելով յարձակած էր Հայաստանի վրայ, զայն գրաւելու մտօք:

Չէ՞ որ Հայաստանի անկախութիւնը Թուրքը եւ գերմանացին տուած էին, աւելի ճիշդը, պարտադրած էին, ոչ թէ Հայը սիրելնուն համար, այլ զայն անջատելու Ռուսիայէն, որ մըն ալ գրաւելու համար: Եւ ահա այդ պատեհութիւնը ստեղծուած էր:

*Հայութիւնը իր օրհասականը կ՚ապրէր եւ խաղաղ փճանալու վրայ էր, երբ Ռուս Խորհրդային կառավարութիւնը օգնութեան եկաւ բազմաչարչար հայ ժողովուրդին:*

*Պատերազմը դադարեցաւ եւ դաշնակցական կառավարութիւնը Հայաստանի ղեկը յանձնեց խորհրդային կարգերու տակ կազմուած հայ կառավարութեան:*

*Հայութիւնը Խորհրդային կառավարութեան պաշտպանութեան եւ եղբայրական աջակցութեան շնորհիւ գտաւ իր հանգիստը, ապահովութիւնը եւ լծուեցաւ երկրի վերաշինութեան:*

## ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Տասնութերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 4, 1921–ին, Ուստրի մէջ:*

*Ժողովին կը մասնակցին 12 մասնաճիւղեր 17 ձայնով:*

Կեդր. Վարչութիւն.— *Միհրան Ոսկերիչեան:*

Նիւ Եորք.— *Խաչատուր Պոյաճեան, Ա. Ագմելեան:*

Փրավիտենս.— *Ստեփան Մոթիեան:*

Ֆիլատելֆիա.— *Յակոբ Գոճապաչեան, Ս. Շահրիկեան:*

Լովէլ.— *Մարտիրոս Զուլալեան:*

Պոսթոն.— *Գասպար Թէօքմէճեան, Մարտիրոս Դաւիթեան:*

վոքեկըն.— *Լեւոն Փափազեան — 2 ձայն —:*

Ֆրենքլին.— *Սենեքերիմ Ափալաքեան:*

Ֆրեզնոյ.— *Ս. Մանուչեան — 2 ձայն —:*

Պոսթոնի կանանց.— *Գ. Թէօքմէճեան:*

Ֆիլատ. կանանց.— *Ս. Շահրիկեան:*

Աթըլպորոյ.— *Աւետիս Աւետիսեան:*

Ուստր.— *Ս. Մանուչեան, Յակոբ Աճեմեան:*

*Պատգ. Ժողովի մնայուն դիւանի անդամ կ՚ընտրուին Աւետիս Աւետիսեան՝ Ատենապետ եւ Գասպար Թէօքմէճեան՝ Ատենադպիր:*

*Այս ժողովն ալ նոր գործ մը կամ որոշում մը արձանագրած չունի, ի բաց առեալ նախապէս որոշուած հարցերու անդրադարձումները:*

*Կ՚որոշուի Կեդրոնական Վարչութեան բոլոր անդամները ընտրել Նիւ Եորքէն, փոխանակ երկու հոգի Ֆիլատելֆիայէն առնելու:*

*Նիւ Եորքի մասնաճիւղի ներկայացուցած եռապատիկ ցանկին վրայէն կ՚ընտրուին հետեւեալները.— Սեդրակ Քիւփելեան, Յ. Աճեմեան, Մ. Թաշճեան, Մ. Ոսկերիչեան, Խ. Պոյաճեան, Ա. Ագմելեան, Ս. Ոսկերիչեան:*

*Լուծուած եւ թոյլ մասնաճիւղերու վերակազմութեան համար ջանքեր կը թափուին նամակներով եւ այցելութիւններով:*

*Անցեալ քանի մը Պատգ. Ժողովներուն մէջ որոշում տրուած էր Հին տունը ծախել եւ նոր ու աւելի շահաւէտ շէնք մը գնել, բայց ցարդ յարմար*

չէնք մը գտնուած չէր, որու վրայ կարենային համաձայնիլ։

Կեդր. Վարչութիւնը այդ տարի քանի մը չէնքեր աչքէ անցուցած էր Նիւ Եորքի մէջ եւ վերջապէս գտած էր Ընկերութեան ներկայ տունը։ Հարկ եղած մանրակրկիտ քննութիւնէ անցուցած էր չէնքին ելեւմուտքը եւ շահաւէտ էր գտած։ Բայց մինչեւ Պատգ. Ժողով տակաւին երկու ամիս ժամանակ կար, իսկ չէնքը ծախող գործակալութիւնը չէր ուզեր այդքան սպասել։ Կար նաեւ պարագայ մըն ալ, թէ ի՛նչ որոշում պիտի տար Պատգ. Ժողովը։ Կեդրոնական Վարչութիւնը, սակայն, նկատի ունենալով չէնքին ունեցած առաւելութիւնները եւ Ընկերութեան շահը, նոյնիսկ անհատական պատասխանատուութեան տակ, կը գնէ տունը կանխավճար մը ընելով, յուսալով, որ Պատգ. Ժողովը պիտի ընդունի եղած կարգադրութիւնը. եւ առ այդ կ՚որոշէն պէտք եղած օրինական թուղթերը եւ պայմանները ներկայացնել յաջորդ Պատգ. Ժողովին։

## ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Տասնիններորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 2, 1922-ին, Ֆիլատելֆիոյ մէջ։

Ժողովին կը մասնակցին 10 մասնաճիւղեր 16 ձայնով։

Կեդրոնական Վարչութիւն.— Ա. Այմելեան։

Ուստր.— Ի. Տէր Յովհաննէսեան, Սրապիոն Անտոնեան։

Պոսթոն Արանց.— Ռուբէն Պարմագեան՝ երկու ձայն։

Պոսթոն Կանանց.— Տիկին Եսթեր Տողանեան։

Նիւ Եորք.— Մանուկ Զըրթափեան, Մ. Ոսկերիչեան։

Ֆիլատելֆիա.— Գ. Տէր Պաղտասարեան, Գ. Խանձեան։

Քլիվլենտ.— Յովհաննէս Թերզիպաշեան՝ երկու ձայն։

Փրաւիտենս.— Աւետիս Աւետիսեան։

Լովէլ.— Ալեքսան Քէքէշեան։

Վոքեկըն.— Ի. Տէր Յովհաննէսեան։

Ֆիլատ. Կանանց.— Գ. Խանձեան։

Մնայուն դիւանի անդամ կ՚ընտրուին Ի. Տէր Յովհաննէսեան՝ Ատենապետ եւ Ալեքսան Քէքէշեան՝ Ատենադպիր։

Կեդր. Վարչութիւնը իր տեղական զեկոյցին հետ նաեւ ժողովին կը ներկայացնէ նոր գնուած տունին պարագաները եւ կը թելադրէ որ Ընկերութիւնը գնէ այդ տունը, հակառակ պարագային, անհատները իրենց անունով պիտի գնեն։

Պատգ. Ժողովը երկար վիճաբանութիւններէ ետք կը մերժէ տունը գնել, որովհետեւ առանց Պատգ. Ժողովի հաւանութեան գնուած է։ Նոյնիսկ եղած են անհատներ, որ կարծած են թէ այդ տան գնման մէջ անհատական շահախնդրութիւններ եղած են։

Որպէսզի Պատգ. Ժողովը իր հեղինակութիւնը բարձր պահէ եւ կարգ մը անհատներու գոհացում տրուի, ժողովը նախ կը մերժէ տան գնումը եւ

*յետոյ կ'որոշէ որ շէնք մը գնուի, ոչ աւելի քան 60 հազար տոլարի:*

*Յիսուն Հազար տոլարի հանգանակութեան քեմփէյնը գոցուած կը համարուի եւ կ'որոշուի այս առթիւ Ոսկեմատեան մը հրատարակել, որուն մէջ արձանագրուին հանգանակութեան մասնակցողներու անունները իրենց տըւած գումարով միասին:*

*Ընկերութեան անունով անջատ ուսանողական ֆոնտ ունենալը կը մերժուի:*

*Ընկերութեան կողմէ Մալաթիա ներկայացուցիչ մը ղրկելու գաղափարը անյարմար կը սեպուի:*

*Կեդրոնական Վարչութեան վայրի խնդիրը կրկին հարց կ'ըլլայ, բայց կրկին կը մերժուի եւ կ'որոշուի որ կեդրոնը պահուի Նիւ Եորք, բայց երկու անդամներ աւելցուին Ֆիլատելֆիայէն:*

*Կեդր. Վարչութեան ընտրութիւնը կատարուելով Նիւ Եորքէն կ'ընտրըւին Մանուկ Թաշճեան, Յովհ. Աճեմեան, Միհրան Ոսկերիչեան, Խոսրով Եսայեան, Մանուկ Զրրթափեան, իսկ Ֆիլատելֆիայէն՝ Գ. Տէր Պաղտասարեան եւ Կարապետ Նաճարեան:*

*Գանձապահի հաշիւները քննուելով կը վաւերացուին, ուրկէ յայտնի կ'ըլլայ որ այդ տարեշրջանին նախորդ շրջանէն փոխանցուած գումարով միասին ընդհանուր մուտք եղած է* 33,503,77 *տոլար, իսկ ելք՝* 12,148,18 *տոլար: Այս ելքին* 9.000 *տոլարը նոր շէնքին կանխավճար տրուած է: Շէնքը գնուած է* Յիսուն Երեք *հազար տոլարի, Յուլիս* 10, 1922*-ին:*

*Նոր Վարչութիւնն իր գլուխը կը կազմէ — Յովհաննէս Աճեմեան՝ Ատենապետ, Միհրան Ոսկերիչեան՝ Ատենադպիր, Մանուկ Թաշճեան՝ Գանձապահ:*

*Հալէպ տեղաւորուած հայրենակիցներու համար առժամեայ տեղ մը վարձելու որոշում կը տրուի:*

*Հալէպէն, Պէյրութէն եւ Դամասկոսէն եկած նամակներուն ու դիմումներուն կը պատասխանուի եւ նիւթական օգնութիւն կը փութացուի:*

## ՔՍԱՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Քսաներորդ Պատգամաւորական Ժողովը գումարուած է Սեպտ.* 1, 1923*-ին, Հայ Առաքելական Եկեղեցւոյ սրահին մէջ, Նիւ Եորք:*

*Ժողովին կը մասնակցին* 8 *մասնաճիւղեր՝* 13 *ձայնով:*

Կեդր. Վարչութիւն. — *Միհրան Ոսկերիչեան:*

Ֆիլատելֆիա. — *Յակոբ Գոճապաշեան, Կարապետ Նաճարեան:*

Նիւ Եորք. — *Ա. Ագմելեան, Գէորգ Թերխանեան:*

Ուստր. — *Պետրոս Զոպիեան:*

Ֆրեննքլին. — *Նշան Ալաչայեան:*

Քլիվլենտ. — *Սարգիս Էմինեան՝ երկու ձայնով:*

Պոսթոն. — *Յակոբ Տողանեան:*

Պոսթըն կանանց․— *Տիկ․ Եագկիւլ Պալիկեան*։

Լովել․— *Աստուր Պալիկեան*։

*Մնայուն դիւանի անդամներ կ՚ընտրուին Յակոբ Գոճապաչեան՝ Ատենապետ եւ Կարապետ Նաճարեան՝ Ատենադպիր*։

*Արտասահման գործիչ մը ղրկելու հարցը կրկին խնդրոյ առարկայ կ՚ըլլայ եւ Ժողովը յարմար կը նկատէ փոխանակ Ամերիկայէն մէկը ղրկելու, արտասահման եղող ծանօթ հայրենակից մը նշանակել որպէս լիազօր կամ Ընկերութեան ներկայացուցիչ։ Այս պաշտօնին համար կ՚ընտրուի Ամերիկայէն Կիլիկեան կամաւորական շարժման մասնակցող եւ Ընկերութեան ծանօթ անդամ Պրն․ Յարութիւն Մարգարեան, որ այդ ժամանակ Պէյրութ կը գտնուէր*։

*Պատգ․ Ժողովը նկատի ունենալով 10–է աւելի մասնաճիւղերու անգործութեան մատնուած ըլլալը, նոյնպէս կազմալուծուած մասնաճիւղերը վերակազմելու խնդիրը, յարմար կը նկատէ ունենալ երկու գործիչներ, մէկը Արեւելքի եւ միւսը Արեւմուտքի կողմը։ Այս գործին համար Ա․ Բէքէրեան Պոսթոնէն եւ Խօսրով Եսայեան Քլիվլենտէն*։

*Հալէպի մէջ տուն մը վարձելու եւ միեւնոյն ժամանակ, եթէ կարելի է, դպրոց եւ արհեստանոց մը հաստատելու որոշում կը տրուի եւ գործադրութեան համար պէտք եղած կարգադրութիւնները կը ձգուին Կեդր․ Վարչութեան, որ իր ներկայացուցիչ Յարութիւն Մարգարեանի հետ խորհրդակցաբար պէտք եղածն ի գործ պիտի դնէ*։

*Նիւ Եորքի մէջ գնուած նոր շէնքը պաշտօնապէս կը հաստատուի։ Կ՚ընդունուի եւ իրաւունք կը տրուի Կեդր․ Վարչութեան որ Վերաշինութեան Ֆոնտէն* Տասը Հազար տոլար *եւս վճարուի Մայր պարտքէն (մորթկէյճէն)*։

*Ընկերութեան կազմութեան Քսանամեակը տօնելու որոշում կը տըրուի*։

*Գանձապահի տոմարները կը քննուին եւ կը վաւերացուին։ Այս շրջանին, անցեալ տարւոյ գումարով, մուտք եղած է* 35,910,61 *տոլար, իսկ ելք եղած է* 12,899,45 *տոլար։ Ելքին մեծ մասը Հալէպ, Պէյրութ եւ այլ տեղեր ղրկուած նպաստի գումարները եւ շէնքին մորթկէյճի տոկոսներու եւ այլ ծախքերու յատկացուած են*։

*Նոր Կեդրոնական Վարչութեան անդամ կ՚ընտրուին Ա․ Ազմելեան, Մանուկ Թաշճեան, Սարգիս Շահրիկեան, Գէորգ Թերխանեան, Մարգար Մարգարեան Նիւ Եորքէն, Մանուէլ Քիւփելեան եւ Համբարձում Թերխանեան Ֆիլատելֆիայէն*։

*Նորընտիր Կեդր․ Վարչութեան անդամներէն Ա․ Ազմելեան կը հրաժարի եւ անոր կը յաջորդէ Յովհ․ Աճեմեան*։

*Դիւանը կը կազմուի․—*

| | |
|---|---|
| *Յովհաննէս Աճեմեան* | *Ատենապետ* |
| *Գէորգ Թերխանեան* | *Ատենադպիր* |
| *Մանուկ Թաշճեան* | *Գանձապահ* |

*Այս ժամանակներուն Ընկերութեան ամբողջ ուշադրութիւնը կեդրոնացած էր Հալէպ, Պէյրութ եւ այլ տեղեր ապաստանող մեր հայրենակիցներու պատսպարման եւ հոգածութեան գործին վրայ։*

1922-*ի ժամանակ Մալաթիոյ մէջ բացուած Ամերիկեան միսիոնարութեան* Նիըր Իսթ *որբանոցը կը գոցուի եւ միսիոնար ու որբեր կը թողուն Մալաթիան եւ ճամբայ կ'ելնեն դէպի Հալէպ։*

*Օրեր տեւող, հեւիւոտ եւ հազար ու մէկ նեղութիւններէ ետք որբերը կը հասնին Հալէպ։ Անկէ քիչ ետք Թուրքիայէն դուրս ելլելու ազատ օրէնքներ կը հռչակուին։ Երկրէն ամէն անոնք, որ կրնային գաղթել, իրարու ետեւէ, չարան-չարան կը հասնին Հալէպ։*

*Նոր ժամանողներու պատսպարան եւ օժանդակութիւն տալը ծանր խնդիր էր։ Սակայն, Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը ըրաւ այն ինչ որ կարելի էր։ Այդ մի քանի տարիներուն Ընկերութիւնը* 17 *հազար տոլարի պատկառելի գումար մը հասցուց Հալէպ եւ* Հինգ Հազար տոլար *ալ Պէյրութ։*

*Հալէպի մէջ եղող Հոգետուն կոչուած շէնքը, որ կը պատկանէր Երուսաղէմի Պատրիարքութեան, եւ որ ունէր բաւականաչափ սենեակներ, վարձուեցաւ Ընկերութեանս կողմէ եւ անկարողներ ժամանակաւորապէս հոն տեղաւորուեցան, ուրիշներ ատոր մօտակայ վայրերը։*

*Հալէպի մէջ կը կազմուի Ընկերութեանս մասնաճիւղ մը, որու Վարչութիւնը կը հսկէ Մալաթիացի հայրենակիցներուն վրայ։*

*Կարօտեալներու թիւը այնքան շատ եւ զանոնք հոգատարելու կարիքը այնքան մեծ էր, որ չափազանց դժուար էր ամէն մէկուն պէտքերուն գոհացում տալ։ Թերեւս պատահած են տեղ դէպքեր, որոնք այսպիսի ժամանակներու մէջ անխուսափելի են, բայց Կրթասիրացի կամքէն անկախ։*

*Ընկերութեան լիազօր Պրն. Յարութիւն Մարգարեան, Կեդրոնի հրահանգով, կ'երթայ Հալէպ, եւ տեղւոյն վրայ քննութիւն կատարելով կը տնօրինէ ինչ որ անհրաժեշտ է։*

*Նոր շէնք մը կը վարձուի ու անոր մէջ կը բացուի Ընկերութեան դըպրոցը, որ կը կոչուի Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Վարժարան։ Ունէր հինգ կարգ ուսուցիչ-ուսուցչուհիներ, տնօրէն ունենալով Պրն. Գրիգոր Ասլանեանը։*

*Վարժարանը ատեն մը ունեցաւ* 200 *երկսեռ աշակերտներ։ Քիչ վերջ, սակայն, շատերը ուրիշ երկիրներ — Ամերիկա, Ֆրանսա, Գուպա, Արժանթին — մեկնելով՝ աշակերտներու թիւը պակսեցաւ։ Հակառակ այս իրողութեան, մինչեւ այսօր ալ, հոն մնացող եւ ծնող փոքրիկներուն հայեցի դաստիարակութեան գործը իր վրայ առած Ընկերութիւնը ամէն տարի որոշ գումար մը կը ղրկէ այդ նպատակին համար։*

*Ատանայի մէջ արդէն ունէինք Ընկերութեան մասնաճիւղ մը, որ այդ շրջանի մէջ եղող կարօտ հայրենակիցներու կարիքներուն հասնելու հոգը ստանձնած էր։ Սակայն, Կիլիկիոյ պարպումէն ետք, անոնք փոխադրուեցան*



Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Հալէպի երկսեռ վարժարանի ուսուցչական կազմը



Սալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Հալէպի Երկսեռ վարժարանի մանչերու բաժինը (1924)



Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Հալէպի երկսեռ վարժարանի աղջկանց բաժինը (1924)

Հալէպ եւ Պէյրութ։ 1923-ին Պէյրութի մէջ կը կազմուի Ընկերութեան մասնաճիւղ մը։

Սուրիոյ եւ Լիբանանի շրջաններուն մէջ Մալաթիացիներու թիւը հետզհետէ կը շատնայ եւ բնակարանի պէտքը խիստ զգալի կ'ըլլայ։

Մասնաճիւղի թելադրութեամբ եւ Կեդրոնական Վարչութեան օժանդակութեամբ կ'որոշուի Մալաթիացիներուն համար տուն մը շինել։ Կեդրոնը Հազար տոլար կը ղրկէ եւ Պէյրութի հայրենակիցները իրենք կ'ըլլան ճարտարապետը, վարպետը եւ բանուորը եւ ահա տունը կը շինուի։

Անոնք, որ այդ ժամանակներուն Պէյրութ եղած են, եւ կամ Ամերիկայէն հոն այցելած են, գիտեն թէ ի՛նչ բարերար ազդեցութիւն ունեցաւ այդ շէնքը մեր հայրենակիցներուն համար։

Եթէ մէկը տեսնէր, ինչպէս ես տեսած եմ, այդ գաղթակայաններու վիճակը, կոտրած տախտակներէ, թիթեղի կտորներէ եւ քուրջերէ շինուած վրաններու խղճալի տեսարանը, եւ յետոյ այցելէր Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան շէնքը, այդ շէնքը կարելի է ըսել, պանդոկի մը տպաւորութիւնը կը թողուր։ Շէնքը երկյարկանի է 20 յարկաբաժիններով։ Ամէն յարկաբաժին ունի մեծ սենեակ մը եւ պալքոն, երթեւեկի համար, երկու կողմի վրայ՝ տասը յարկաբաժին։ Առաջին յարկի վրայ 10 յարկաբաժին, վրայի յարկին վրայ ալ տասը։ Տնտեսապէս ի վիճակի եղողները ծախքերը հոգալու չափ վարձք մը կը վճարեն, իսկ անոնք որ անկարող են, անոնց համար ամէն ինչ ձրի է։

Շէնքին հողը գնուած չէ, այլ վարձու տրուած էր, կ'երեւի որոշ օրէնքի մը համաձայն. սակայն եւ այնպէս, այսօր երեսուն տարի է մեր հայրենակիցները հոն կը բնակին եւ որքան ատեն որ կան ու կ'ապրին, հոն պիտի բնակին։

Շէնքը խնայողութեան, առողջապահական տեսակէտէ ունի նաեւ իր բարոյական կողմերը։ Քսան ընտանիքներ իրարու քով, իրարու հետ են։ Ունին հասարակաց բաղնիք, ջուր եւ լուացարան։ Մալաթիացիներու վեհանձնութեան վրայ կատարեալ վստահութիւն ունինք, այնպէս որ անոնք որ քիչ թէ շատ ի վիճակի են, վարձք կը վճարեն եւ այդ եկամուտը շէնքին բոլոր ծախքերը հոգալէ զատ, մաս մըն ալ կ'աւելնայ, որ կը գործածուի տեղւոյն վրայ անհրաժեշտ կարիքներուն։

Այդ ժամանակներուն պատահեցաւ Ընկերութեանս Նիւ Եորքի շէնքին դէմ բացուած Քսան Հազար տոլարի դատը, որ մեր Ընկերութեան արժեց Տասը Հազար տոլար։

---

# ՉՈՐՐՈՐԴ ՇՐՋԱՆ

*Կիլիկիոյ, Հալէպի եւ Պէյրութի մէջ ժամանակաւոր բնակութիւն հաստատող մեր ազատուած հայրենակիցները կամաց-կամաց սկսան գաղթել ուրիշ երկիրներ: Բնականաբար, անոնց բոլորին նախընտրելին Ամերիկան էր: Ամերիկայի Մալաթիացիները իրենց սիրելիներուն կամ ազգականներուն օգնելու եւ զանոնք Ամերիկա բերելու համար ոեւէ նիւթական զոհողութեան առջեւ կանգ չառին եւ ըրին ամէն ինչ, որ մարդկօրէն հնարաւոր էր: Իսկ անոնք, որ հնարաւորութիւն չունեցան Ամերիկա գալու, մեծ մասով մեկնեցան Ֆրանսա եւ հաստատուեցան զանազան քաղաքներու մէջ, այլ խօսքով, հոն, ուր կրցան հաց մը ճարել:*

*Մեր այդ հայրենակիցները, անմիջապէս որ կրցին ինքզինքնին գտնել, սկսան կազմակերպել Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան մասնաճիւղեր: Եղաւ ժամանակ մը, որ Ֆրանսայի մէջ ունէինք տասնէ աւելի մասնաճիւղեր, որոնց մասին պիտի արտայայտուինք մասնաճիւղերու առանձին պատմութեան ընթացքին:*

*Ուրիշներ գաղթեցին Արժանթին եւ Պոլիս: Այդ տեղերն ալ մասնաճիւղեր կազմուեցան բայց շատ կարճ ժամանակ մը հազիւ գոյութիւն ունեցան, հայրենակիցներու այլ եւ այլ տեղեր ցրուելուն պատճառով:*

*Ամերիկա եկող Մալաթիացի երիտասարդներ այս երկիրը ոտք դրած օրէն միացան Ընկերութեան եւ նոր եռանդ ու կորով ներշնչեցին մասնաճիւղերու մէջ: Եւ այդ շատ բնական էր, որովհետեւ անոնք շատ աւելի լաւ կըրնային գնահատել Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան մատուցած ծառայութեան արժէքը եւ մեծութիւնը:*

## ՔՍԱՆՄԷԿԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Քսանմէկերորդ Պատգ. Ժողովը գումարուած է* 1924, *Օգոստոս* 30-*ին, Ֆրէնքլինի մէջ:*

*Ժողովին կը մասնակցին* 14 *մասնաճիւղեր՝* 17 *ձայնով:*

Կեդր. Վարչութիւն. — *Սարգիս Շահրիկեան:*

Նիւ Եորքի Արանց. — *Խ. Պոյաճեան եւ Ա. Ասատուրեան:*

Նիւ Եորքի Կանանց. — *Ա. Ասատուրեան:*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Յ. Ընտրիկեան:*

Պոսթոնի Արանց. — *Յարութիւն Որբերեան:*

Պոսթոնի Կանանց. — *Տիկ. Սիրազարդ Ռումեան:*

Փրավիտենս. — *Աւետիս Աւետիսեան:*

Ուստրի Արանց. — *Նափոլէոն Մարգարեան:*

Ուստրի Կանանց. — *Նափոլէոն Մարգարեան:*

Լովէլ Արանց. — *Ալեքսան Քէքէվեան:*

Լովէլ կանանց.— *Ալեքսան Բէքչիեան*:

Քլիվլենտ.— *Յովհաննէս Թերզիպաշեան*:

Ֆրենքլին.— *Սեներքերիմ Ափալաքեան*:

Տիթրոյթ.— *Խաչատուր Պոյաճեան — ձայն —* :

Պէյրութ.— *Ս. Ափալաքեան — ձայն —* :

*Կը բացակայէին Ֆիլատելֆիոյ Արանց, Քլիվլենտի կանանց, Վոքեկընի, Ֆրեզնոյի մասնաճիւղերը:*

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Յովհաննէս Թերզիպաշեան՝ Ատենապետ եւ Ալեքսան Բէքչիեան՝ Ատենադպիր:*

*Այս ժողովին մէջ կ'որոշուի Մալաթիացի գաղթականները Հայաստան փոխադրել, եւ առ այդ իրաւունք կը տրուի Կեդրոնական Վարչութեան, որ բանակցութեան մտնէ Հայաստանի Կառավարութեան եւ այլ պատկան մարմիններու հետ եւ արդիւնքը տեղեկացնէ մասնաճիւղերուն:*

*Արտասահման, աւելի ճիշդը Սուրիա գործիչ–ներկայացուցիչ մը ղրկելու որոշում կը տրուի եւ կ'ընտրուի Պրն. Գրիգոր Պարմաքեան. իսկ անոր մերժելու պարագային, Պրն. Տոնոսիոս Կեսարեան՝ Պէյրութէն:*

***Ընկերութեան Քսանամեակի տօնակատարութեանց հետ նաեւ կ'որոշուի գրել Ընկերութեան պատմութիւնը:***

*Կ'որոշուի օժանդակել Հայաստանի համալսարանին ինչ միջոցաւ որ կարելի ըլլայ:*

*Կեդրոնական Վարչութեան համար ընտրութիւն տեղի ունենալով կ'ընտրուին.— Խոսրով Պոնափարթեան, Սարգիս Շահրիկեան, Մանուկ Թաշճեան, Աստուր Աստուրեան, Յովհաննէս Աճեմեան, Խաչատուր Պոյաճեան եւ Գէորգ Թերխանեան:*

*Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, ուրկէ յայտնի կ'ըլլայ որ այդ շրջանին ընդհանուր մուտք եղած է, նախորդ շրջանի գումարով միասին,* 35,070,79 *տոլար եւ ելք եղած է* 24,003,58:

*Ելքին մեծ մասը չէնքին վճարուած եւ արտասահման ղրկուած գումարներն են:*

*Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.*

*Յովհաննէս Աճեմեան* — *Ատենապետ*
*Գէորգ Թերխանեան* — *Ատենադպիր*
*Մանուկ Թաշճեան* — *Գանձապահ*

*Արտասահման գործիչ ղրկելու եւ կամ նոր մէկը ընտրելու գործը որոշ պատճառներով կը յետաձգուի:*

*Հայաստանի Կառավարութեան հետ բանակցութիւններու համար խորհրդակցութիւններ կ'ունենան ազգային մարմիններու, ի մասնաւորի Ս. Սըրնարեանի հետ եւ այս ուղղութեամբ նամակներ կը գրուին Խորհ. Հայաստան:*

*Խորհրդային Հայաստանի կառավարութիւնը հեռագրով կը պատաս–*

*խանէ եղած դիմումին. կը սպասուի խոստացուած նամակին։*

*Կեդրոնական Վարչութիւնը կը հրահանգէ մասնաճիւղերուն* Տասը Հազար Տոլարի *քեմփէյն մը սկսիլ ի նպաստ մեր գաղթականները Հայաստան փոխադրելու ծախքերուն։*

# ՔՍԱՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Կրթասիրաց Ընկերութեան Քսաներկուերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 6, 1925–ին, Քլիվլենտի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին 16 մասնաճիւղեր 22 ձայնով։*

Կեդր. Վարչութիւն.— *Խոսրով Պոնափարթեան։*

Նիւ Եորքի Արանց.— *Խաչատուր Պոյաճեան, երկու ձայնով։*

Նիւ Եորքի Կանանց.— *Տիկ. Մարիամ Զրթափեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Սարգիս Շահրիկեան, երկու ձայնով։*

Ֆիլատելֆիոյ Կանանց.— *Տիկ. Եսթեր Մազմանեան։*

Ուստրի Արանց.— *Պետրոս Զօպիեան եւ Ս. Անտոնեան։*

Ուստրի Կանանց.— *Պետրոս Զօպիեան։*

Պոսթոնի Արանց.— *Յակոբ Աճեմեան եւ Ռուբէն Պարմաքեան։*

Պոսթոնի Կանանց.— *Խոսրով Եսայեան, ձայն։*

Փրաւիտենսի Արանց.— *Աւետիս Աւետիսեան։*

Ֆրենքլին.— *Սենեքերիմ Ափալաքեան։*

Քլիվլենտ.— *Մկրտիչ Թոփալեան եւ Սարգիս Թաշճեան։*

Լովէլ.— *Գէորգ Թոփալեան — ձայն։*

Տիթրոյիթ.— *Սենեքերիմ Մուշեղեան։*

Սէյնթ Լուիզ.— *Յովհաննէս Թերխանեան — ձայն։*

Լոս Անճըլէս.— *Յովհաննէս Թերզիեազուպեան — ձայն։*

Ֆիչպուրկ.— *Սրապիոն Անտոնեան։*

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Խոսրով Եսայեան՝ Ատենապետ եւ Պետրոս Զօպիեան՝ Ատենադպիր։*

*Այս ժողովին գլխաւոր որոշումներն են.—*

*Թուրքերու քով եղող Մալաթիացիներու ազատման համար ոեւէ ջանք կամ դրամ չխնայել։*

*Խորհրդային Հայաստանի մէջ հիմնել աւան մը* ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ *անունով եւ ջանալ մեր բոլոր կարօտեալները փոխադրել հոն։ Նոր Մալաթիա աւանը հիմնուելէ ետք անոնք, որոնք կը մերժեն երթալ Հայաստան, անոնց գրկուած նպաստը պէտք է դադրեցնել։*

*Միշտ սովորութիւն եղած է Պատգ. Ժողովներու մէջ յատկապէս յարգել սոյն տարւոյ մէջ հանգուցեալ հայրենակիցներու յիշատակը։ Այնպէս որ, այս կարգի նման յիշատակութիւններու մասին կրկնութիւններ եւ կամ մահացող հայրենակիցներու անունները յիշելու կարիքը չկայ, որովհետեւ մաս–*

նաճիւղերու պատմութեանց մէջ պիտի յիշուին նոյն քաղաքին մէջ մահացող բոլոր հայրենակիցներու անունները։

Նոր Մալաթիոյ մէջ կօշիկի գործարան մը հիմնելու հարցը սկզբունքով կ՚ընդունուի եւ գործադրութեան մասին պէտք եղած ծրագիրը եւ կարգադրութիւնները կը թողուն Պոսթոնի մասնաճիւղին, որ կօշիկի մասնագէտներու հետ խորհրդակցելով պատրաստեն ծրագիր մը եւ ղրկեն Կեդրոնական Վարչութեան։

Հայաստան ղրկուելիք ներկայացուցիչներու եւ անոնց վարելիք բանակցութեանց ուղղութիւն տալու համար կ՚ընտրուի հինգ հոգիէ բաղկացեալ յանձնախումբ մը, որ Կեդր. Վարչութեան հետ խորհրդակցաբար վարէ Հայաստանի կառավարութեան հետ ըլլալիք բանակցութիւնները։

Յանձնախումբի անդամներ կ՚ընտրուին.— Խոսրով Եսայեան, Նափոլէոն Պարմազեան, Աւետիս Աւետիսեան, Սրապիոն Անտոնեան, Ալեքսան Բէքէվեան։

Հայաստան ղրկուելիք ներկայացուցչի ճանապարհածախքերէն դատ կ՚որոշուի Քսան (20) տոլար չաբաթական։

Պատգ. Ժողովին կողմէ հեռագիր մը կը ղրկուի Խորհր. Հայաստանի կառավարութեան, Նոր Մալաթիա աւանի գաղափարի իրականացման համար։

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին։ Սոյն տարւոյ շրջանի ընդհանուր մուտք եղած է, նախորդ տարիէն մնացած գումարով, 32,246,46 (Երեսուն երկու հազար երկու հարիւր քառասուն վեց տոլար քառասուն վեց սէնթ)։ Ելք եղած է 17,445,48 (Տասնեւեօթը հազար չորս հարիւր քառասուն հինգ տոլար քառասուն եւ ութը սէնթ)։

Գրեթէ ամէն Պատգ. Ժողովի մէջ կեդրոնը ուրիշ վայր մը փոխադրելու հարց եղած է, սակայն ամէն անգամ ալ մերժուած է եւ պահուած է Նիւ Եորքի մէջ։

Նոր շրջանի Կեդր. Վարչութեան անդամ կ՚ընտրուին.— Մանուկ Թաչճեան, Խոսրով Պոնափարթեան, Յովհ. Աճեմեան, Խաչատուր Պոյաճեան, Մարգար Մարգարեան, Արմենակ Սիրանեան եւ Աստուր Աստուրեան՝ Նիւ Եորքէն։ Սարգիս Շահրիկեան եւ Հ. Թերխանեան՝ Ֆիլատելֆիայէն։

Նորակազմ Կեդր. Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.—

Յովհաննէս Աճեմեան՝ Ատենապետ, Խոսրով Պոնափարթեան՝ Ատենադպիր, Մանուկ Թաչճեան՝ Գանձապահ։

Հալէպի մէջ եղող Կրթասիրացի դպրոցը տեղական ազգային դպրոցներու միացնելու հարցը խնդրոյ առարկայ ըլլալով, յարմար կը սեպուի պահել առանձին։

Կ՚որոշուի ուրիշ դպրոցներու մէջ բարձրագոյն կրթութիւն ստացող Մալաթիացի ուսանողներու թոշակները վճարել։

Գուպայի մէջ մասնաճիւղ մը կը կազմուի։

Յունուար 17, 1926-ին, Նիւ Եորքի մէջ տեղի կ՚ունենայ Հայաստանի

կառավարութեան հետ բանակցութիւն վարող Յանձնախումբի ժողովը։ Հոն կ'որոշուի Հարիւր Հազար տոլարի պիւտճէ մը յատկացնել Նոր Մալաթիա Աւանի շինութեան, հինգ տարուան ընթացքին։ Նոր շինուած շէնքերը մնան Ընկերութեան սեփականութիւն, մինչեւ որ անոնք փոխանցուին անհատներու։

Նոր Մալաթիոյ մէջ կօշիկի գործարանի մը հիմնարկութեան եւ Հայաստան գրկուելիք պատգամաւորութեան համար յարմար կը սեպուի Հայաստան ղրկել երկու ներկայացուցիչ, մէկը որպէս Ընկերութեան ներկայացուցիչ եւ Նոր Աւանի համար բանակցութիւնները վարող, իսկ միւսը՝ կօշիկի գործարանի մասնագէտ մը։

Առաջինին համար կ'ընտրուի Յովհաննէս Խանձեան, իսկ երկրորդին համար՝ Մարտիրոս Դաւիթեան, որ այդ ժամանակները կը գտնուէր Ֆըրանսա։

Պրն. Յովհաննէս Խանձեան կրցաւ մեկնիլ Հայաստան, բայց Պրն. Մ. Դաւիթեան չկրցաւ երթալ անցագրի եւ այլ դժուարութեանց պատճառաւ։

## ՔՍԱՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Քսաներեքերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 4, 1926–ին Ուստրի Ս. Փրկիչ եկեղեցւոյ սրահին մէջ։

Ժողովին կը մասնակցին 18 մասնաճիւղեր 23 ձայնով։

Կեդր. Վարչութիւն.— Խորէն Պօնափարթեան։

Փրաւիտենս.— Ա. Աւետիսեան։

Նիւ Եորքի Արանց.— Խ. Պօյաճեան եւ Ա. Սիրանեան։

Նիւ Եորքի Կանանց.— Խ. Պօյաճեան։

Ֆիչպուրկ.— Մ. Մելքիսեդեկեան։

Ուստրի Արանց.— Ս. Անտոնեան եւ Պ. Ջօպիեան։

Պոսթոնի Արանց.— Ռուբէն Պարմաքեան — երկու ձայն։

Պոսթոնի Կանանց.— Գ. Տէր Մարտիրոսեան։

Ֆրեզնոյի.— Ս. Ափալաքեան։

Քլիվլենտի Արանց.— Գ. Թոփալեան — երկու ձայն։

Ֆիլատելֆիոյ Արանց.— Գ. Տէր Պաղտասարեան։

Ֆիլատելֆիոյ Կանանց.— Գ. Տէր Պաղտասարեան։

Ս. Շամոն, Ֆրանսա.— Յակոբ Պօղազեան — երկու ձայն։

Ս. Լուիզ.— Մ. Խանձեան։

Լոս Անճըլէս.— Յ. Կիւլիւչեան — ձայն։

Գուպա.— Յովհաննէս Պարսամեան։

Տիթրոյիթ.— Կ. Կեղիւրեան եւ Նազարէթ Եազըճեան։

Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Ռուբէն Պարմաքեան՝ Ատենապետ եւ Գէորգ Թոփալեան՝ Ատենադպիր։

Այս ժողովի կարեւոր հարցերն են.—

Նոր Մալաթիա Աւանի շինութեան մասին կ՚որոշեն համագործակցիլ ուրիշ հայրենակցական միութեանց հետ:

Հայաստանէն Պրն. Յովհաննէս Խանձեան իր նամակներով կը տեղեկացնէր, որ մինակ Մալաթիացիներու կողմէ աւան մը շինելու ծախսերը եւ դժուարութիւնները նկատի ունենալով կը թելադրէ ուրիշ Հայրենակցականներու հետ շինել աւան մը եւ նկատելով, որ միայն Արաբկիրցիներն են որ դրական գործի սկսած են, հետեւաբար կ՚որոշեն այդ մասին խորհրդակցիլ Արաբկիրցիներուն հետ:

Կ՚որոշեն, Պրն. Խանձեանի Ամերիկա վերադառնալու պահուն անոր տեղ Ընկերութեանս ներկայացուցիչ նշանակել Հայաստան եղող Պրն. Մկրտիչ Ասլանեանը:

Ընկերութեան մնայուն քարտուղար մը ունենալու անհրաժեշտութիւնը նկատի ունենալով կ՚ընտրեն Ալեքսան Բէքէվեանը որպէս մնայուն քարտուղար շաբաթական քսան տոլար վճարումով:

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, որով յայտնի կ՚ըլլայ որ այդ շրջանին ընդհանուր մուտք եղած է, գանձի գումարով միասին 31,122,62 տոլար: Ելք եղած է 11,686,74 տոլար: Գանձը պատրաստ կը մնայ 19,433,88 տոլար:

Կեդրոնական Վարչութեան անդամ կ՚ընտրուին Խ. Պոնափարթեան, Գրիգոր Խանձեան, Յովհ. Աճեմեան, Խաչատուր Պօյաճեան, Ա. Ադմելեան, Ա. Միրանեան եւ Ա. Ասատուրեան:

Նորընտիր Կեդր. Վարչութեան դիւանը կը կազմուի այսպէս.—

| | |
|---|---|
| Յովհաննէս Աճեմեան | Ատենապետ |
| Խօսրով Պոնափարթեան | Ատենադպիր |
| Ա. Ադմելեան | Գանձապահ |

Նոր Մալաթիա, Նոր Արաբկիր եւ Նոր Սեբաստիա աւանները միացնելու մասին խորհրդակցութիւններ տեղի կ՚ունենան, բայց վերջ ի վերջոյ յաջողութիւն չ՚ունենար:

Հայաստանի Շիրակի շրջանին մէջ պատահած երկրաշարժէն վնասուածներուն որպէս եղբայրական աջակցութիւն, Ընկերութիւնը անմիջապէս հեռագրով կը ղրկէ Հազար տոլար Հայաստանի կառավարութեան:

Պրն. Յովհ. Խանձեան կը վերադառնայ եւ անոր տեղ կ՚անցնի Մկրտիչ Ասլանեան, որ հեռագրով կը տեղեկացնէ Նոր Մալաթիա Աւանի համար Տայմայի շրջանը հողամաս մը ապահոված ըլլալը եւ կ՚ուզէ Տասը Հազար Տոլարի գումար մը, նախնական աշխատանքներն սկսելու համար:

Մայիս 14, 1927-ին Հայաստանի Սոցիալիստ. Խորհրդային Կառավարութեան եւ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան ներկայացուցիչ քաղաքացի Մկրտիչ Ասլանեանի միջեւ կը կնքուի Նոր Մալաթիա Աւանի ատթիւ եղած համաձայնութիւնը, որու բնագիրը Ընկերութեանս մօտն է եւ որուն պատճէնն է հետեւեալը.—



Յովհաննէս Խանճեան



Մկրտիչ Ասլանեան

ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԱԼԱԹԻԱՅԻ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹՅԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉ, ՔԱՂԱՔԱՑԻ Մ. ԱՍԼԱՆՅԱՆԻՆ.

ԺՈՂԿՈՄԽՈՐՀԻՆ ԱՌԸՆԹԵՐ ԱՇԽԱՏԱՎՈՐԱԿԱՆ ՆԵՐԳԱՂԹԻ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ ՀԱՄԱՁԱՅՆ ՁԵՐ 31 ՄԱՐՏ 1927 Թ. No. 12 ԳՐՈՒԹՅԱՆ, ՄԱՅԻՍ 9Ի ՆԻՍՏՈՒՄ ՎՈՐՈՇԵՑ.— ՁԱՌԱՐԿԵԼ ՅԵՎ ՊԼԱՆՈՎ ՑՈՒՅՑ ՏՐՎԱԾ ՀՈՂԱՄԱՍԸ (ՍԱՀՄԱՆՆԵՐՆ ԵՆ ԱՐԵՎԵԼՔԻՑ, ԴԱԼՄԱՅԻ ՅԵՎ ՆՈՐԱԳՅՈՒՂԻ ԱՐԵՒՄՏՅԱՆ ՍԱՀՄԱՆԸ. ԱՐԵՎՄՈՒՏՔԻՑ ՓԱՐԱՔԱՐԻՑ ՈՇԱԿԱՆ ՏԱՆՈՂ ՍԱՅԼՈՒՂԻՆ. ՀԱՐԱՎԻՑ, ԵՋՄԻԱԾՆԱՅ ԽՃՈՒՂԻՆ ՅԵՎ ՀՅՈՒՍԻՍԻՑ 490 ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ ԲԱՐՁՐՈՒԹՅՈՒՆԸ ԸՆԴԱՄԵՆԸ ՄԻ ՀԱԶԱՐ ՅԵՐԵՔ ՀԱՐՅՈՒՐ ՄԻ (1,301) ԴԵՍՅԱՏԻՆ)ԱՄԲՈՂՋԱՊԵՍ ՀԱՏԿԱՑՆԵԼ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱՅԻՆ: ՊԱՅՄԱՆՈՎ ՎՈՐ,

Ա.— ԴԱԼՄԱՅԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՎՈՌՈԳՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԿԱՏԱՐՎԵՆ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱՅԻ ՀԱՇՎԻՆ:

Բ.— ՎԵՐԱԲՆԱԿՈՂ ՄԱԼԱԹԻԱՑԻՆԵՐԻՑ ԱՌԱՋԻՆ ՀԵՐԹԻՆ ՊԻՏԻ ԸՆԴՈՒՆԵԼ ՖՐԱՆՍԻԱՅԻՑ, ԱՊԱ ՍԻՐԻԱՅԻՑ, ՅԵՎ ՅԵՐՐՈՐԴ ՀԵՐԹԻՆ ՄԱԼԱԹԻԱՅԻՑ — ԹՅՈՒՐՔԻԱ:

Ժողկոմխորհին Առընթեր Աշխատավորական
Ներգաղթի Հանձնաժողովի փոխ Նախագահ
Ստորագրութիւն՝ Գ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Այս վորոշումը հաստատված է Ժողկոմխորհի
Կարգադրիչ (No. 15 Գ.) նիստում
Ժողկոմխորհի յեվ Տնտխորհի Գործերի
կառավարիչ
Ստորագրութիւն՝ Վ. ՄԱԼԽԱՍՅԱՆ

Վերաշինութեան Յանձնախումբը եւ Կեդրոնական Վարչութիւնը կ'ունենան բացառիկ Խորհրդակցական ժողով մը, ուր կը հաստատուին եւ կը վաւերացուին ցարդ եղած գործառնութիւնները եւ կարգադրութիւնները։ Նոր Մալաթիայի շինութեան համար կը յատկացուի 30,000 տոլարի գումար, որը գոյացնելու համար Վերաշինութեան Յանձնախումբը կը բանայ մասնաւոր քեմփէյն մը, հակառակ պարագային իրաւունք կը տրուի Կեդրոնական Վարչութեան, որ շէնքին վրայ մորթկէճը բարձրացնելով պէտք եղած գումարը հայթայթուի։

Տէր Կարապետ քահանայի պատրաստած «Տեղեկագրութիւն Մելիտինէի» ձեռագիրը, որ կը գտնուի Ս. Երուսաղէմի Մատենադարանին մէջ, զայն ձեռք ձգելու եւ տպագրելու համար դիմում կը կատարուի Երուսաղէմի Պատրիարքին։

Ամէն կողմէ օգնութեան նամակներ կը ստացուին եւ անոնց կարիքին համաձայն դրամական առաքումներ կ'ըլլան։

Կեդրոնական Վարչութեան համար ընտրուած մնայուն քարտուղար Ալեքսան Քէքէվեան կեդրոնին կը տեղեկացնէ որ իր անձնական զբաղումներուն բերումով չի կրնար ընդունիլ քարտուղարութեան գործը։ Կեդր. Վարչութիւնը կը հրաւիրէ Տօնապետ Տօնապետեանը՝ որպէս օգնական քարտուղար։

## ՔՍԱՆՉՈՐՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Կրթասիրաց Ընկերութեան Քսանչորրորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 3, 1927-ին, Պոսթոնի արուարձաններէն Սըմըրվիլի Քոլըմպիա սրահին մէջ։

Այս ժողովին կը մասնակցին 17 մասնաճիւղեր 26 ձայնով։

Կեդր. Վարչութիւն.— Խոսրով Պոնափարթեան։

Պոսթոնի Արանց.— Յովհաննէս Թայեան եւ Յակոբ Թաւաքալեան։

Պոսթոնի Կանանց.— Տիկ. Եաղկիւլ Պապիկեան եւ Տիկ. Ա. Տէր Մարտիրոսեան։

Նիւ Եորքի Արանց.— Մանուկ Թաշճեան եւ Արմենակ Սիրանեան։

Փրաւիտենս.— Ստեփան Մոթիեան։

Վալանս — Ֆրանսա.— Յակոբ Աւետիքեան — 2 ձայն — ձայն։

Ուստրի Արանց.— Նափոլէոն Մարգարեան եւ Սրապիոն Անտոնեան։

Ուստրի Կանանց.— Սրապիոն Անտոնեան։

Ֆիլատելֆիոյ Արանց.— Լեւոն Փափազեան։

Ֆիլատելֆիոյ Կանանց.— Լեւոն Փափազեան։

Ս. Լուիզ — Կրանիթ Սիթի.— Ռուբէն Պարմազեան, — ձայն։

Վալանս, — Ֆրանսա — Կանանց.— Ռուբէն Պարմազեան, — ձայն։

Հաւանա, Գուպա.— Մանուկ Թաշճեան, — ձայն։

Ֆիչպուրկ.— Գարեգին Տէր Մարտիրոսեան։



**Ամերիկեան Վ.որ Րիլեճի որբանոցին սան-սանուհիները 1919 Մայիսին**

Ս. Շամոյ, — Ֆրանսա — Արանից. — *Յակոբ Պօղոսեան՝ 2 ձայն*:
Ս. Շամոյ, — Ֆրանսա — Կանանց. — *Կարապետ Աւագեան*:
Ֆրենքլին. — *Ստեփան Ոսպիկեան*:
Քեմտըն. — *Գաբրիէլ Տէր Մարտիրոսեան*:

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Ս. Անտոնեան՝ Ատենապետ եւ Կարապետ Աւագեան՝ Ատենադպիր*:

*Ժողովներու սովորական գործողութենէն եւ հարցերու կարգադրութիւններէն ետք հոս մէջ կը բերենք քանի մը կարեւոր հարցեր եւ որոշումներ.*

*Հայկական դպրոցի փակման մասին կը տեղեկացուի որ առանձին դըպրոց մը պահելու համար պէտք եղած թիւով Մալաթիացի աշակերտներ չկան, եւ թէ ասիկա պատճառ եղած է խառնակութեանց եւ երկպառակութեանց: Առայս ժողովը կ'որոշէ առ այժմ դպրոցը գոց պահել եւ եղած աշակերտները ղրկել Զարաանճագցիներու դպրոցը մինչեւ նոր կարգադրութիւն:*

*Հայաստանէն վերադարձող Յովհաննէս Խանձեան իր առաքելութեան եւ կատարած գործառնութեանց մասին կու տայ գրաւոր զեկոյց մը: Պատգ. ժողովը կատարուած աշխատանքներուն համար իր շնորհակալութիւնը կը յայտնէ Յովհ. Խանձեանի:*

*Պատգ. ժողովը յանկայս կը յարգէ ազգային հերոս Զօր. Անդրանիկի*

յիշատակը։ Զօրավարն այդ օրերուն մահացած էր։

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, որմէ յայտնի կ՚ըլլայ որ այդ շրջանի ընդհանուր մուտքի գումարն է Երեսուն վեց հազար եւ չորս տոլար եւ քսաներեք սէնթ (36,004,23), ելք՝ (16,670,28) տասն եւ վեց հազար վեց հարիւր եօթանասուն տոլար քսան եւ ութը սէնթ։ Գանձը կը մնայ 19,333,95 տոլար (տասնեւինը հազար երեքհարիւր երեսուներեք տոլար իննսունհինգ սէնթ)։

Կեդրոնական Վարչութեան կազմին համար Նիւ Եորքի մասնաճիւղի պատրաստած եօթապատիկ ցանկէն ընտրութիւն տեղի ունենալով կ՚ընտրուին. Աստուր Ազմելեան, Խ. Պօնափարթեան, Խ. Պոյաճեան, Գ. Խանձեան, Մ. Թաչճեան, Յ. Աճեմեան եւ Մարգար Մարգարեան։

Նորընտիր Վարչութեան դիւանը կը կազմուի այսպէս.—

| | |
|---|---|
| Գրիգոր Խանձեան | Ատենապետ |
| Խ. Պօնափարթեան | Ատենադպիր |
| Ա. Ազմելեան | Գանձապահ |

Այս շրջանի Կեդրոնական Վարչութիւնը իր աշխատութիւնները կեդրոնացուցած է գլխաւորապէս Նոր Մալաթիա աւանի շինութեանց ոռթիւ պէտք եղած կարգադրութիւններով եւ խորհրդակցական ժողովներով։

Ամէն կողմէ նամակներ կը հասնին Նոր Մալաթիա երթալու համար եւ բնականաբար, նիւթական օժանդակութիւն կ՚ակնկալուի բոլորին կողմէ։

Ֆրանսայի մասնաճիւղերը լաւ կազմակերպուած են եւ յաճախ կը թղթակցին Կեդրոնին հետ։ Նոյնը կ՚ընեն Ամերիկայի եւ Գուպայի մասնաճիւղերը։

Նիւ Եորքի շէնքին վրայ Քսան Հազար տոլարի նոր մորթկէճ մը կ՚առնուի Նոր Մալաթիայի շինարարութեանց համար։

## ՔՍԱՆՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Քսանհինգերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 1, 1927–ին, Ֆիլատելֆիոյ մէջ։

Ժողովին կը մասնակցին քսաներկու մասնաճիւղեր 30 ձայնով։
Կեդր. Վարչութիւն.— Խ. Պօնափարթեան։
Պօսթօնի Արանց.— Կարապետ Աւագեան՝ երկու ձայն։
Պօսթօնի Կանանց.— Տիկին Նազելի Աւագեան՝ երկու ձայն։
Քլիվլենտի Արանց.— Յովհաննէս Թերզիպաշեան՝ երկու ձայն։
Քլիվլենտի Կանանց.— Եղիա Մարտիկեան՝ երկու ձայն։
Վալանսի Արանց.— Կարապետ Նաճարեան՝ երկու ձայն — ձայն։
Նիւ Եորքի Արանց.— Խ. Պոյաճեան եւ Ա. Սիրունեան։

Նիւ Եորքի կանանց.— *Տիկին Վարդանոյշ Փապուճեան։*

Ուստրի Արանց.— *Սարգիս Մանուշեան։*

Ուստրի կանանց.— *Լեւոն Փափազեան։*

Ֆիչպուրկ.— *Լեւոն Փափազեան — ձայն։*

Քեմտրըն.— *Գրիգոր Խանձեան։*

Տիթրոյիթ.— *Գրիգոր Խանձեան — ձայն։*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Գէորգ Տէր Պաղտասարեան։*

Ֆիլատելֆիոյ կանանց.— *Գէորգ Տէր Պաղտասարեան — ձայն։*

Սբ. Շամոյ.— *Յ. Թայեան եւ Մ. Ստեփանեան։*

Փրաւիտէնս.— *Յ. Թաւաղայեան — ձայն։*

Սբ. Լուիզ.— *Մանուկ Թաչճեան — ձայն։*

Հաւանա.— *Մ. Թաչճեան։*

Հալէպ.— *Տիկ. Վ. Փափուճեան։*

Պէյրութ.— *Եղիա Մարտիկեան։*

Պոլէն, Ֆրանսա.— *Խ. Պոյաճեան։*

Լիոն, Ֆրանսա.— *Ա. Սիրանեան։*

*Ֆրէնքլինի մասնաճիւղը կազմալուծուած վիճակի մէջ ըլլալով պատգամաւոր ղրկած չէր։*

*Մնայուն դիւանի անդամներ կ՚ընտրուին Ս. Մանուշեան՝ Ատենապետ եւ Կ. Նաճարեան՝ Ատենադպիր։*

*Կեդրոնական Վարչութեան եւ զանազան յանձնախումբերու զեկուցումէն ետք տրուած գլխաւոր որոշումներն են.—*

*Մալաթիոյ մէջ եղող հայրենակիցները Նոր Մալաթիա, Հայաստան փոխադրելու համար կարգադրութիւններ ընելու որոշումը կը տրուի, եւ այս ուղղութեամբ Մ. Ասլանեանէ եկած նամակէն կը տեսնուի որ այդ մասին նախապէս կարգադրութիւններ եղած են Մալաթիայէն Հայաստան երթալու համար։*

*Մալաթիոյ եւ Կրթասիրաց Ընկերութեան պատմութիւնը գրելու համար կրկին յանձնախումբեր կ՚ընտրուին, այս անգամ եօթը անձերէ, որոնք են.— Կ. Նաճարեան, Խ. Բեչիչեան, Ն. Սուքիասեան, Կ. Աւագեան, Յ. Թայեան, Ռ. Պարմաղեան եւ Ա. Ազմելեան։*

*Ֆրանսայի մէջ շրջանային յանձնախումբ մը կազմելու որոշում կը տրուի, նոյն շրջանակի կազմակերպչական գործերուն զարկ տալու համար։*

*Պատուոյ Բաժակի գրութիւնը կը հաստատուի եւ առաջին անգամ ըլլալով Պատուոյ Բաժակը կը տրուի Քլիվլէնտի Արանց եւ Կանանց մասնաճիւղերուն, ի պատիւ անոնց ցոյց տուած լաւագոյն գործունէութեանց եւ զոհողութեանց։*

*Գանձապահի տոմարները կը քննուին եւ կը վաւերացուին։ Այս շրջանի ընդհանուր մուտքը, անցեալ շրջանէն փոխանցուած գումարով,* 59,613.33 *տոլար, իսկ ելած է* 30,272.30 *տոլար։ Գանձը կը մնայ* 29,341.30 *տոլար։*

Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին.— Ա. Ազմելեան, Խօսրով Պօնափարթեան, Գրիգոր Խանձեան, Մանուկ Թաշճեան, Մարգար Մարգարեան, Տօնապետ Տօնապետեան եւ Խաչատուր Պօյաճեան։

Նոր դիւանը կը կազմուի հետեւեալ կերպով.—

| | |
|---|---|
| Խ. Պօյաճեան | Ատենապետ |
| Խ. Պօնափարթեան | Ատենադպիր |
| Ա. Ազմելեան | Գանձապահ |

Մալաթիայէն Պրն. Յակոբ Թիֆթիկճեան նամակով մը կը տեղեկացնէ թէ բաւական թիւով Մալաթիացի արհեստաւորներ կան, որոնք կ'ուզեն Նոր Մալաթիա մեկնիլ եւ թէ ի՞նչ միջոցներով կարելիութիւն կայ. ըստ այդ նամակին, Նոր Մալաթիա գրած են, բայց եկած պատասխանը գոհացուցիչ չէ եղած։

Մալաթիացիներէն 15 հոգի կը մեկնին՝ Նոր Մալաթիա, Հայաստան երթալու համար։ Կը հասնին Տրապիզոն եւ հոն կը մնան 2–3 ամիս, վիզայի դժուարութեան պատճառով։ Այս պարագան կը հաղորդուի Մ. Ասլանեանին, որ անմիջապէս կը մեկնի Թիֆլիս այդ մասին որոշ կարգադրութեանց համար։ Ասլանեան Թիֆլիսէն Մոսկուա կը մեկնի եւ անկէ կը գրէ Կեդրոնական Վարչութեան, թէ Տրապիզոն եղողներուն վիզայի հարցը կարգադրուած է եւ թէ մնացեալ 290 անձերու վիզային համար ալ աշխատանքի մէջ է եւ կը յուսայ այդ ալ շուտով կարգադրել։

Ապրիլ, 1929–ին Տրապիզոնէն 14 հոգիներ կը հասնին Նոր Մալաթիա։ Կարգադրութիւններ կ'ըլլան Յունաստանէն 10 արհեստաւորներ փոխադրել Նոր Մալաթիա։

Նոր Մալաթիա գնացողներուն եւ հոն եղողներուն գործ հայթայթելու համար նկատի կ'առնուին կօշիկի, գուլպայի եւ կամ հիւսուածեղէնի գործարան մը կառուցանելու մասին եղած թելադրութիւնները։

Նոր Մալաթիոյ մէջ կը կազմուի Շինարարական Յանձնախումբ մը հետեւեալ անձերէն.— Նախագահ Մ. Ասլանեան, անդամներ.— Գ. Կուրապեան, Մանուէլ Տէր Վահրամեան, Ահարոն Կալաճի Ասլանեան, Գալուստ Ծերունեան, Սարգիս Էմրիկեան, Եսթեր Նաճարեան, Խօսրով Ադըլեան, Արմենակ Տէրտէրեան։ Այս յանձնախումբը կը պատրաստէ իր գործունէութեան ծրագիրը, որ է.—

1.— Կիսատ մնացած տուները լրացնել,

2.— Ջուրի առուն նորոգել,

3.— Լրացնել արհեստանոցը,

4.— Կրթասիրացի դրամով փորուած հողերուն մէջ այգի տնկել,

5.— Լրացնել լիճը,

6.— Աւազան շինել ջուրը պահելու համար,

7.— Կրթասիրացի դրամով ցանուած ցորենը յատկացնել նոր ժամանող Մալաթիացիներուն։

Ասոնցմէ դուրս Յանձնախումբը կը քննէ Մ. Ասլանեանի հաշիւները եւ

*ճիշդ գտնելով կը վաւերացնէ եւ այդ պարագան կը հաղորդէ Կեդրոնական Վարչութեան։ Կը հրահանգուի, նաեւ, որ Մալաթիացին մեկնիլ ուզողներ նախապէս պէտք է Տրապիզոնի հիւպատոսէն տեղեկութիւն առնան իրենց վիզաներուն մասին եւ յետոյ ճամբայ ելլեն, դժուարութեան չհանդիպելու համար։*

## ՔՍԱՆՎԵՑԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Քսանվեցերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Օգոստոս 31, 1919–ին, Փրաւիտենսի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին 21 մասնաճիւղեր 27 ձայնով։*

Կեդր. Վարչութիւն. — *Խ. Պօնափարթեան։*

Տիթրոյիթի Արանց. — *Ա. Աւետիսեան — ձայն։*

Քլիվլենտի Արանց. — *Քերոբ Օտապաշեան։*

Քլիվլենտի Կանանց. — *Յովհաննէս Թերզիեաղուպեան։*

Պէյրութ. — *Յովհաննէս Թերզիեաղուպեան։*

Փրաւիտենս. — *Նշան Կանանեան։*

Լիոն, Ֆրանսա. — *Նշան Կանանեան — ձայն։*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Մ. Ստեփանեան։*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Մ. Ստեփանեան։*

Ֆրեսքլին. — *Նշան Ալաչայեան։*

Ռոմանս, Ֆրանսա. — *Ն. Ալաչայեան — ձայն։*

Երուսաղէմ. — *Սարգիս Մանուչեան — ձայն։*

Վալանս. — *Սարգիս Մանուչեան — ձայն։*

Պոսթոնի Արանց. — *Յակոբ Տողանեան եւ Յարութիւն Պորոյեան։*

Պոսթոնի Կանանց. — *Տիկ. Տ. Տողանեան եւ Տիկ. Հ. Պարմագեան։*

Նիւ Եորքի Արանց. — *Յ. Աճեմեան եւ Մ. Թաշճեան։*

Նիւ Եորքի Կանանց. — *Տիկ. Վ. Փափուճեան։*

Վալանսի Կանանց. — *Ն. Շահրիկեան — ձայն։*

Սթ. Լուիզ. — *Սահակ Ծիզմեճեան — ձայն։*

Լիոնի Կանանց. — *Մելքոն Պըլըքճեան — ձայն։*

Ուստրի Արանց. — *Ն. Մարգարեան եւ Յ. Պոնագեան։*

Քեմտըն. — *Յովհաննէս Թայեան։*

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Աւետիս Աւետիսեան՝ Ատենապետ, իսկ Տիկ. Վարդանոյշ Փափուճեան՝ Ատենադպրուհի։*

*Նոր Մալաթիոյ ներկայացուցիչ Մ. Ասլանեանի ընդարձակ տեղեկագիրը կը կարդացուի, ուրկէ կը յայտնուի որ ցարդ Նոր Մալաթիոյ մէջ կան 43 Մալաթիացիներ։ Ասլանեանի հաշիւները քննուած են Խորհր. Հայաստանի կառավարութեան կողմէ նշանակուած յատուկ հաշուեքննիչներու միջոցաւ, ուրկէ յայտնի կ'ըլլայ որ ցարդ ծախսուած է 107,957 ռուբլի. դրամ–*

ներուն ճիշդ եւ խղճմտօրէն գործածուած ըլլալը հաստատուած եւ վաւերացուած է։

Շինուած են 8 տուներ չորսական սենեակներով — մէկ խոհանոցով, մէկ պատշգամով եւ մէկ ներքնայարկով։ 14 տուներ երկուական սենեակներով — մէկ խոհանոցով, մէկ պատշգամով եւ մէկ ընդարձակ ներքնայարկով։

Լրացած են 8 հատ բանուորական սենեակներ եւ շուտով լրացուելու են արհեստանոցը եւ ներկատունը։ Նոր Մալաթիոյ Բնակարանները 300 բնակիչներու բաւարարութիւն տալու ի վիճակի են։

Տալմայի առուն Նոր Մալաթիայի ջուրին միացնելու աշխատանքները լծուած են եւ կը շեշտուի կօշիկի գործարանին մեքենաներու կարիքը։

Պատ. Ժողովը կը հրահանգէ նորընտիր Կեդրոնական Վարչութեան որ Պատ. Ժողովի կողմէ շնորհակալութեան նամակ մը գրուի Խորհր. Հայաստանի կառավարութեան Նոր Մալաթիոյ շինութեան եւ Մալաթիացի գաղթողներու ընծայուած աջակցութեան եւ հոգածութեան համար։

Պատուոյ Բաժակը կը տրուի Գլիվլենտի Կանանց Մասնաճիւղին։

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին։ Այդ տարեշըրջանին ընդհանուր մուտք եղած է 45,878,28 տոլար։ Ելք եղած է 28,114,75 տոլար. գանձը կը մնայ 17,763,53 տոլար։

Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին.— Ա. Ազմելեան, Մանուկ Թաշճեան, Մարգար Մարգարեան, Թորոս Պօնափարթեան, Տ. Տօնապետեան եւ Յովհ. Աճեմեան։

Նոր Վարչութիւնն իր դիւանը կը կազմէ.—

| | |
|---|---|
| Խաչատուր Պոյաճեան | Ատենապետ |
| Թորոս Պօնափարթեան | Ատենադպիր |
| Ա. Ազմելեան | Գանձապահ |

Հալէպի մէջ Ընկերութեանս գործերը եւ դրամական գործառնութիւնները ժամանակէ մը ի վեր կ'ըլլային Տէր Ստեփան Քհնյ. Ղազարեանի միջոցաւ։ Տէր Հայրը Կեդր. Վարչութեան հետ շարունակ յարաբերութեան մէջ էր եւ անոր թելադրանքներով կ'ընթանային կարեւոր նկատուած գործառնութիւնները։

1929-ի վերջերը Ամերիկայի մէջ տեղի ունեցաւ նմանը չտեսնուած տնտեսական տագնապը, որ տեւեց 8-էն 9 տարի։ Այնքան մեծ էր հարուածը, եւ այնքան յանկարծական, որ չվնասուող չմնաց։ Աշխատաւորութեան կրած տագնապն աննկարագրելի է. շատերու տուն-տեղը եւ խնայողութիւնները իսպառ ոչնչացան. պանքաներն իրարու ետեւէ իրենց դռները գոցեցին եւ այս պայմաններու բերումով Ընկերութեանս մասնաճիւղերը սկսան տկարանալ։

Սուրիայէն, ինչպէս նաեւ Երուսաղէմէն գաղթող Մալաթիացիներ կը հասնին Նոր Մալաթիա-Հայաստան։

# ՔՍԱՆԵՕԹՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Քսանեօթներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Օգոստոս 30, 1930–ին, Ասթորիա, Լոնկ Այլընտ, Նիւ Եորք:*

*Ժողովին կը մասնակցին 20 մասնաճիւղեր 29 ձայնով:*

Կեդր. Վարչութիւն.— *Խօսրով Պոնափարթեան:*

Ուստր.— *Պետրոս Զօպիեան եւ Խաչատուր Մանուչեան:*

Ֆրենքլին.— *Նշան Այաշայեան:*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Մանուէլ Ստեփանեան:*

Ֆիլատելֆիոյ Կանանց.— *Մանուէլ Ստեփանեան:*

Փրաւիտենս.— *Ա. Աւետիսեան:*

Պոսթոնի Արանց.— *Յ. Տողանեան եւ Գ. Տէր Մարտիրոսեան:*

Պոսթոնի Կանանց.— *Գրիգոր Փիլիպպոսեան:*

Նիւ Եորքի Արանց.— *Գրիգոր Խանձեան եւ Ս. Ոսպիկեան:*

Նիւ Եորքի Կանանց.— *Տիկ. Հ. Փիլիպպոսեան եւ Վ. Փափուճեան:*

Քլիվլենտի Արանց.— *Խ. Տէր Դաւիթեան:*

Քլիվլենտի Կանանց.— *Գէորգ Թաշճեան.*

Տիթրոյիթ.— *Մ. Մարգարեան — ձայն:*

Սենթ Լուիզ.— *Տիկ. Աղաւնի Տէր Մարտիրոսեան:*

Վալանսի Արանց.— *Արմենակ Ոսկերիչեան — ձայն:*

Վալանսի Կանանց.— *Յովհ. Աճեմեան — ձայն:*

Լիոն.— *Արմենակ Սիրանեան — ձայն:*

Սենթ Շամոյ.— *Պաղտասար Գարօղլանեան — ձայն:*

Պէյրութ.— *Տօնապետ Տօնապետեան — ձայն:*

Երուսաղէմ.— *Ս. Մանուչեան — ձայն:*

*Մնայուն դիւանի համար կ՚ընտրուին Ա. Աւետիսեան՝ Ատենապետ, իսկ Պետրոս Զօպիեան՝ Ատենադպիր:*

*Պատգ. Ժողովին կը ներկայացուին Մ. Ասլանեանի կողմէ ստացուած գումարներու եւ շինարարութեանց հաշիւները, իրենց բոլոր մանրամասնութիւններով:*

*Կը կարդացուի Նոր Մալաթիոյ համայնքին կողմէ Պատգ. Ժողովին ուղղեալ նամակը, որով Նոր Մալաթիոյ բնակիչները իրենց գումարած մէկ ժողովին կողմէ կը յայտնեն իրենց շնորհակալութիւնը եւ երախտագիտական զգացումները Կրթասիրաց Ընկերութեան, Նոր Մալաթիա Աւանի հիմնարկութեան եւ տրուած եղբայրական աջակցութեանց համար:*

*Ընկերութեան պատմութիւնը գրելու համար կրկին որոշումներ կը տրուին եւ յանձնախումբեր կ՚ընտրուին:*

*Նոր Սեբաստիա եւ Նոր Մալաթիա միասնաբար աշխատանք կը կատարեն ջուրը իրենց աւաններուն մէջ բերելու համար:*

*Պատուոյ Բաժակը կը տրուի Սենթ Լուիզի մասնաճիւղին:*

*Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին: Այս տարեշըր—*

ջանի ընդհանուր մուտքն է 34,349,13 տոլար, ընդհանուր ելք եղած է 28,162,80 տոլար, որով գանձը կը մնայ 6,186,33 տոլար:

Կեդրոնական Վարչութեան անդամ կ՚ընտրուին.— Ասատուր Ազմեյեան, Պաղտասար Գարօղլանեան, Խաչատուր Պոյաճեան, Խոսրով Պոնափարթեան, Տիկ. Վարդանոյշ Փափուճեան, Գրիգոր Խանճեան, Մ. Զուլալեան, Տօնապետ Տօնապետեան եւ Մարգար Մարգարեան:

Նոր Կեդրոնական Վարչութեան առաջին ժողովին մէջ Գրիգոր Խանճեան եւ Տիկ. Վ. Փափուճեան կը հրաժարին եւ անոնց տեղ կը հրաւիրուին առաւելագոյն քուէ շահողներ Մարգար Մարգարեան եւ Մարտիրոս Զուլալեան:

Նոր Վարչութեան դիւանը կը կազմուի այսպէս.—

| | |
|---|---|
| Խաչատուր Պոյաճեան | Ատենապետ |
| Խոսրով Պոնափարթեան | Ատենադպիր |
| Ասատուր Ազմեյեան | Գանձապահ |

Վիզաներու գործը կարգադրելու համար նամակներ կը գրուին պատկան մարմիններու: Մ. Ասլանեան կրկին Մոսկուա կ՚երթայ եւ կը տեղեկացնէ Կեդր. Վարչութեան, որ շատ անգամ վիզա ստացողներ ճամբայ չեն ելլեր եւ վիզա չունեցողներն են որ ճամբայ կ՚ելլեն, առանց սպասելու իրենց վիզային, որու հետեւանքով պատահած են կարգ մը անպատեհութիւններ:

Երեւանէն Հ. Օ. Կ.ի գրասենեակէն կը պատասխանուի, որ վիզաներու ձգձգման եւ անկանոնութեան գլխաւոր պատճառը քաղաքական աննպաստ կացութիւնն է:

1931-ի սկիզբները 312 անձերու վիզաները կ՚ապահովուին:

Նոր Մալաթիոյ Շինարարական Յանձնախումբը եւ նոր կազմուած ՅԱՌԱՋ արտելը միշտ յարաբերութեան մէջ են Կեդր. Վարչութեան հետ, ղրկելով իրենց գործունէութեան եւ հաշիւներու տեղեկագրերը:

Ընկերութեանս ներկայացուցիչ Մ. Ասլանեան իր հրաժարականը կու տայ եւ կը խնդրէ որ ուրիշ մէկը նշանակուի իր տեղը:

## ՔՍԱՆՈՒԹԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Կրթասիրաց Ընկերութեան Քսանութերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Հոկտ. 10, 1931-ին, Ուստրի մէջ:

Ժողովին կը մասնակցին 14 մասնաճիւղեր 19 ձայնով:

Կեդր. Վարչութիւն.— Խոսրով Պոնափարթեան:

Ուստր.— Ս. Մանուչեան եւ Գ. Տեմիրճեան:

Քլիվլենտի Արանց.— Յովհ. Ափալաքեան, 2 ձայնով:

Քլիվլենտի Կանանց.— Նափոլէոն Մարգարեան — ձայն:

Նիւ Եորքի Արանց.— Գէորգ Թերխանեան:

Նիւ Եորքի Կանանց.— Տիկ. Վ. Փափուճեան:

Ֆիլատելֆիա.— Գ. Տէր Պաղտասարեան:

Փրաւիտենս.— Ս. Տաղլեան:

Պոսթոնի Արանց.— Ս. Աւետիքեան եւ Գ. Տէր Մարտիրոսեան:

Պոսթոնի կանանց.— Տիկ. Գոհարիկ Թիւթիւնճեան եւ Տիկ. Ս. Տէր Մարտիրոսեան:

Վալանսի Արանց.— Մ. Տէր. Մկրտիչեան — ձայն:

Վալանսի կանանց.— Ս. Մանուչեան — ձայն:

Սր. Լուիզ.— Ն. Մարգարեան — ձայն:

Վիէն.— Ս. Անտոնեան — ձայն:

Ռոման.— Նշան Մերկիկեան — ձայն:

Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին.— Նափոլէոն Մարգարեան՝ Ատենապետ եւ Գէորգ Տէր Պաղտասարեան՝ Ատենադպիր:

Այս Պատգ. Ժողովը իր սովորական ժամանակէն մէկ ամիս վերջը գումարուած է, որովհետեւ Մ. Ասլանեան յատկապէս խնդրած է Պատգ. Ժողով չգումարել, մինչեւ որ իր հաշիւներու եւ այլ գործունէութեանց տեղեկագիրները ստացուին:

Նոր Մալաթիոյ համայնքը կը ղրկէ իր տեղեկագիրը, ուրկէ կը յայտնուի որ համայնքին կողմէ ընտրուած յանձնախումբը, յանձինս — Հ. Ժամկոչեան, Գ. Կուրապեան, Մ. Սեփեթճեանի եւ Ժողկոմխորհի կողմէ նշանակուած յանձնախումբի անդամները, յանձինս — քաղաքացիներ Գրիգոր Վարդանեան — Հ.Օ.Կ.ի քարտուղար — Գրիգոր Աթաբեկեան — Տնտեսութեանց գլխաւոր վարիչ եւ Պրոֆ. Յովհաննէս Յակոբեան — Հայաստանի Համալսարանէն — միասնաբար կը քննեն Նոր Մալաթիոյ հաշիւները եւ կը վաւերացնեն հետեւեալ կերպով.—

Հ. Ս. Խ. Հ. Ժողովրդական Կոմիսարներու կողմէ Նոր Մալաթիաւանի շինարարական գործերը եւ հաշիւները ստուգելու եւ քննելու համար նշանակուած քննիչ յանձնախումբը, նախագահութեամբ Գրիգոր Վարդանեանի եւ անդամակցութեամբ Գրիգոր Աթաբեկեանի ու Պրոֆ. Յովհաննէս Յակոբեանի եւ հաշուապահներ Արշակ Տէր Գրիգորեանի եւ Ալեքսանդր Զատըրճեանի կողմէ մանրակրկիտ քննութենէ եւ ստուգումներէ ետք, ինչպէս նաեւ Նոր Մալաթիոյ հասարակութեան կողմէ ընտրուած վերստուգիչ յանձնախումբի կողմէ ընդունուած բանաձեւը, «յայտարարում է.—

Ա.— Նոր Մալաթիոյ բոլոր հաշիւները, սկսած 1927 թուից մինչեւ 1931 Օգոստոս, կանոնաւոր են եւ ունին համապատասխան փաստաթղթեր:

Բ.— Որ շինարարութեան ղեկավար Մ. Ասլանեան բարեխղճօրէն կատարել է իրեն յանձնուած բոլոր պարտականութիւնները:

Գ.— Որ Նոր Մալաթիոյ կառուցումը կատարուած է խնայողութեամբ եւ պլանով, եւ ընդհանրապէս շինուած շէնքերը թողնում են լաւ տպաւորութիւն:

Քննիչ յանձնաժողովը որոշում է սոյն բանաձեւի պատճէնը ուղարկել Ամերիկայի Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Կեդրոնական Վարչու-

թեան, Մ. Ասլանեանի եւ Նոր Մալաթիոյ հասարակութեան կողմէ ընտրուած Շինարարութեան յանձնախումբի եւ Հ. Օ. Կ.ի Գլխաւոր վարչութեան:

Դեկտեմբեր 8, 1931 Նախագահ ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՆԵԱՆ
Երեւան Անդամներ ԳՐԻԳՈՐ ԱԹԱԲԵԿԵԱՆ եւ
ՊՐՈՖ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՅԱԿՈԲԵԱՆ»

*Պատգ. ժողովը կ'որոշէ դիւանին միջոցաւ իր շնորհակալութիւնները յայտնել ժողկոմխորհին եւ յանձնախումբի անդամներուն:*

*Ընկերութեան Ծրագիր—կանոնագրին մէջ փոփոխութիւններ մտցնելու համար կ'ընտրուի նոր մարմին մը:*

*Պատուոյ Բաժակը կը տրուի Քլիվլենտի մասնաճիւղին:*

*Զանգեզուրի երկրաշարժի աղետեալներուն եղբայրական օգնութիւն հասցնել կ'որոշուի, որու գործադրութիւնը կը թողուի Կեդր. Վարչութեան:*

*Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին: Այդ տարեշրջանին ընդհանուր մուտքն է 20,373,02 տոլար: Ելք եղած է 13,115,49 տոլար, գանձը կը մնայ 7,257,53 տոլար:*

*Կեդրոնական Վարչութեան անդամներ կ'ընտրուին.— Ասատուր Ազմելեան, Տօնապետ Տօնապետեան, Խաչատուր Պոյաճեան, Խօսրով Պօնափարթեան, Մարգար Մարգարեան, Մարտիրոս Զուլալեան, Յակոբ Ուրլեան:*

*Դիւանը կը կազմուի հետեւեալ կերպով.—*

| | |
|---|---|
| *Խաչատուր Պոյաճեան* | *Ատենապետ* |
| *Խօսրով Պօնափարթեան* | *Ատենադպիր* |
| *Յակոբ Ուրլեան* | *Գանձապահ* |

*Հոս կ'ուզենք յիշել որ բոլոր Կեդրոնական Վարչութիւններն ալ իրենց պաշտօնավարութեան ընթացքին ստացած եւ պատասխանած են հարիւրաւոր նամակներու, աշխարհի չորս կողմն եղող Մալաթիացիներէ, մասնաճիւղերէ եւ անդամներէ, այնպէս որ եթէ միայն մէկ տարուայ եղած գործառնութիւնները նոյնութեամբ գրուելու ըլլան, հարիւր էջնոց հատոր մը կը կազմեն:*

*Ասատուր Ազմելեան բանաւոր պատճառներով կը հրաժարի Կեդր. Վարչութեան անդամակցութենէն եւ անոր տեղ կը հրաւիրուի Պաղտասար Գարօղլանեան:*

*Ամերիկայի տնտեսական տագնապը հետզհետէ աւելի զգալի ըլլալով, Մալաթիացի հայրենակիցներէն շատեր թշուառ վիճակի կը մատնուին: Անոնց օգնելու համար կը գրուի մասնաճիւղերուն, որ ներքնապէս, առանց զգալի ընելու, օգնեն այդպիսի հայրենակիցներուն:*

*Տնտեսական սոյն տագնապը, սկսած է ծայր տալ Ֆրանսայի մեր հայրենակիցներուն մէջ եւ շատեր կ'որոշեն մեկնիլ Հայաստան:*

*Այս օրերուն կը մահանայ Ընկերութեանս վեթերան, անխոնջ աշխատող, նուիրուած հայրենակից եւ Կեդր. Վարչութեան Ատենապետ Խաչատուր Պոյաճեան: Կեդր. Վարչութիւնը եւ բոլոր մասնաճիւղերը իրենց խորազգած ցաւակցութիւնը եւ յարգանքները կը յայտնեն հանգուցեալի պարագաներուն:*

Խաչատուր Պոյաճեանի տեղ ատենապետ կը նշանակուի Մ. Մարգարեան:

## ՔՍԱՆԻՆՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Քսանիններորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 3, 1932–ին, Սըմըրվիլի Քոլոմպիա սրահին մէջ, Պոսթոն:

Ժողովին կը մասնակցին 22 մասնաճիւղեր, 33 պատգամաւորներ՝ 35 ձայնով:

Կեդր. Վարչութիւն.— Խոսրով Պօնափարթեան:
Նիւ Եօրքի Արանց.— Պ. Առաքելեան եւ Ա. Աւետիսեան:
Նիւ Եօրքի Կանանց.— Տօնապետ Տօնապետեան:
Պոսթոնի Կանանց.— Տիկ. Ա. Տէր Մարտիրոսեան եւ Տիկ. Գ. Թիւթիւնճեան:
Պոսթոնի Արանց.— Ա. Աւետիքեան եւ Խ. Եղիայեան:
Քլիվլենտի Արանց.— Յովհ. Թերզիեաղուպեան եւ Ա. Արփաճեան:
Քլիվլենտի Կանանց.— Յովհ. Թերզիեաղուպեան:
Ֆրենքլինի Արանց.— Ս. Ափալաքեան:
Ֆրենքլինի Կանանց.— Նշան Ալաչայեան:
Փրաւիտենս.— Արամ Աղազարեան եւ Ս. Տաղլեան:
Ուստրի Արանց.— Ս. Մանուշեան եւ Ն. Մարգարեան:
Ֆիչպուրկ.— Յարութիւն Տամպուրաճեան:
Տիթրոյիթ.— Սարգիս Մազմանեան — ձայն:
Ֆիլատելֆիոյ Արանց.— Ս. Շահրիկեան եւ Մ. Ստեփանեան:
Ֆիլատելֆիոյ Կանանց.— Տիկ. Ե. Մազմանեան եւ Տիկ. Մ. Տէր Պաղտասարեան:
Ս. Շամոյ.— Գէորգ Թերխանեան — ձայն:
Վալանս.— Խ. Մանուշեան եւ Ա. Մուրատեան — ձայն:
Ռոման.— Մարտիրոս Տեմիրճեան — ձայն:
Լիոն.— Ռուբէն Պարմազեան — ձայն:
Վիէն.— Ձայն գրկած ժողովին:
Պէյրութ.— Գ. Տէր Մարտիրոսեան:
Երուսաղէմ.— Տիկ. Հայկանոյշ Փիլիպպոսեան:

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Պատգ. Ժողովներուն մէջ ներկայ Քսանիններորդ Պատգ. Ժողովը իր նախընթացը չունեցող ժողով մըն է: Այսքան մասնաճիւղերու եւ պատգամաւորներու ներկայութիւնը ինքնին ցոյց կու տար արտակարգ երեւոյթի մը գոյութիւն ունենալը: Կարգ մը մասնաճիւղերու գոյութեան իրաւունքը խնդրոյ առարկայ կ'ըլլայ. Նմանապէս քանի մը պատգամաւորներու օրինականութիւնը: Պարագայ մը, որ երկար և խիստ վիճաբանութեան առարկայ եղած է այս ժողովին: Խնդրոյ կարգադրման համար կ'ընտրուի հինգ հոգիէ բաղկացած յանձնախումբ մը, որ պէտք եղած ճշդումներն ընելով արդիւնքը ներկայացնէ ժողովին: Յանձնախումբի անդամ կ'ընտրուին.— Գ. Թերխանեան, Ա. Աւետիքեան, Յ. Թերզիեաղուպեան, Ս.

Մանուչեան, Ա. Աւետիսեան:

Յանձնախումբի լման օր ու կէսուան աշխատանքներու զեկոյցէն յայտնի կ՚ըլլայ որ այս պայմաններուն մէջ անկարելի է ճշդումներ ընել եւ թէ այսպիսով կարելի չէ ժողով շարունակել: Առժամեայ դիւանի ատենապետ Ս. Ափալաքեան կը հրաժարի եւ Կեդր. Վարչութեան ներկայացուցիչ Խօսրով Պօնափարթեան կը վարէ ժողովը:

Մնայուն դիւանի անդամ կ՚ընտրուին Յովհաննէս Թերզիպաշեան՝ Ատենապետ եւ Նշան Ալաչայեան՝ Ատենադպիր:

Զորս օր տեւող այս Պատգ. Ժողովը որեւէ նոր կամ շինարար գործունէութիւն մը արձանագրած չէ իր տեղեկագրութեան մէջ:

Կարծես ժողովը երկու հակառակորդ խումբերու բաժնուած է, մին պաշտպան՝ Կեդր. Վարչութեան, միւսը՝ հակառակ:

Մնայուն դիւանը երբ կը տեսնէ թէ խաղաղ կերպով ժողովի ընթացքը անկարելի է, առաջարկի մը վրայ կ՚ընդունի հետեւեալ բանաձեւը.—

«Նկատի ունենալով որ ներկայ պայմաններու ներքեւ կարելի չէ Կեդր. Վարչութիւն մը ընտրել, Քսանիններորդ Պատգ. Ժողովը միաձայնութեամբ որոշեց որ Կեդրոնական Վարչութեան բոլոր գոյքերը յանձնուին Քլիվլենտի Արանց մասնաճիւղին: Այսպիսով Կեդր. Վարչութիւնը կը դադրի իր գործունէութիւններէն, համարատու մնալով իր նիւթական եւ բարոյական հաշուետուութեան յառաջիկայ Պատգ. Ժողովին: Իսկ Կեդր. Վարչութեան 1931–էն 1932ի հաշիւները, ինչպէս նաեւ 1918էն մինչեւ 1931ի հաշիւներուն վերաքննութիւնը պիտի կատարուի վկայեալ հաշուակալներով, Նիւ Ինկլընտի շրջանէն ընտրուած յանձնախումբի մը միջոցաւ, վերաքննելով նաեւ Մ. Ասլանեանի եւ արտասահման ղրկուած բոլոր հաշիւները մինչեւ յառաջիկայ Պատգ. Ժողով, որ պիտի գումարուի Քլիվլենտի մէջ»:

Հաշուեքննիչ յանձնախումբի անդամներ կ՚ընտրուին Ի. Տէր Յովհաննէսեան, Ռուբէն Պարմաքեան, Ալեքսան Քէքէվեան:

Առժամեայ Կեդր. Վարչութեան համար Քլիվլենտի մասնաճիւղի կողմէ ներկայացուած եռապատիկ ցանկէն կ՚ընտրուին հետեւեալները.—

Յովհաննէս Թերզիպաշեան, Խօսրով Ոսկերիչեան, Արմենակ Արփաճեան, Լեւոն Թերխանեան, Գէորգ Թօփալեան, Խաչատուր Արփաճեան եւ Գէորգ Ասլանեան:

Քսանեւութ եւ Քսանեւիններորդ պատգամաւորական ժողովներուն մէջ կ՚երեւի տարօրինակ հակասութիւն մը: Քսանութերորդ Պատգ. Ժողովին մէջ, ինչպէս տեսնուեցաւ, Հայաստանի պաշտօնական անձնաւորութեանց եւ Նոր Մալաթիոյ Շինարարական Յանձնախումբին կողմէ փաւերացուած տեղեկագիրը կարդացուելէ ետք դոհունակութեամբ ընդունուած էր եւ առ այդ գրուած գնահատանքի եւ շնորհակալութեան նամակներ:

Կեդր. Վարչութեանց գանձապահներու տոմարները, ամէն տարի, Պատգ. Ժողովներու կողմէ ընտրուած հաշուեքննիչ յանձնախումբերու կողմէ, քննուած, վաւերացուած եւ պատգամաւորներու կողմէ ստորագրուած է: Այժմ ի՞նչ էր պատճառը այս հակասութեանց:

*Այս մասին պիտի անդրադառնանք յետոյ:*

*Նորընտիր Կեդր. Վարչութիւնը իր դիւանը կ'ընտրէ.—*

*Յովհաննէս Թերզիպաշեան* — *Ատենապետ*
*Լեւոն Թերխանեան* — *Ատենադպիր*
*Արմենակ Արփաձեան* — *Գանձապահ*

*Նոր Կեդր. Վարչութեան ատենապետ եւ գանձապահը 10,000 տոլարի ապահովութեան տակ կ'առնուին:*

*Ընկերութեան գոյքերը եւ դրամը Նիւ Եորքէն կը փոխադրուին Քլիվլենտ:*

*Ֆիլատելֆիոյ արանց եւ կանանց մասնաճիւղերը երկուքի բաժնուած ըլլալով, Կեդր. Վարչութիւնը նախ կը ջանայ զանոնք միացնել, եւ երբ այդ անկարելի կ'ըլլայ, ստիպուած կ'ընդունուի չորս մասնաճիւղերու գոյութիւնը:*

*Նոր Կեդր. Վարչութիւնը իր առաջին շրջանին կ'ունենայ յիսուն վարչական ժողովներ եւ կը պատասխանուին հարիւրաւոր նամակներու: Նոր Մալաթիոյ շինարարական գործերը կը շարունակուին կանոնաւոր կերպով: Ֆրանսայէն, Պէյրութէն, Յունաստանէն եւ Մալաթիայէն հետզհետէ գաղթողներ կը տեղաւորուին Նոր Մալաթիոյ մէջ:*

## ԵՐԵՍՈՒՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեանս Երեսուներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ.* 3, 1933-*ին, Քլիվլենտի մէջ:*

*Ժողովին կը մասնակցին* 26 *մասնաճիւղեր* — 33 *պատգամաւոր* — **40** *ձայնով:*

Կեդր. վարչութիւն.— *Լեւոն Թերխանեան:*
Նիւ Եորքի Արանց.— *Գ. Թերխանեան եւ Գ. Երանեան:*
Քլիվլենտի Կանանց.— *Տիկին Հ. Թերխանեան եւ Տիկին Պէննէեան:*
Քլիվլենտի Արանց.— *Յ. Գարօղլանեան եւ Գ. Ասլանեան:*
Ուստրի Արանց.— *Մ. Մանուչեան եւ Խ. Մանուչեան:*
Ուստրի Կանանց.— *Մ. Մանուչեան:*
Պոսթոնի Արանց.— *Խորէն Եղիայեան — երկու ձայն:*
Պոսթոնի Կանանց.— *Տիկ. Գ. Թիւթիւնճեան եւ Տիկ. Կ. Աւագեան:*
Փրաւիտենսի Արանց.— *Ա. Ազգարեան եւ Լեւոն Մուրատեան:*
Փրաւիտենսի Կանանց.— *Ա. Աւետիսեան:*
Հէյվըրհիլ.— *Յովհաննէս Խանձեան:*
Ֆրենքլինի Արանց.— *Մ. Ափալաքեան:*
Ֆրենքլինի Կանանց.— *Մ. Ափալաքեան:*
Ֆիլատելֆիոյ Ա. Արանց.— *Մ. Ստեփանեան եւ Գ. Արփաձեան:*
Ֆիլատելֆիոյ Ա. Կանանց.— *Տիկ. Մ. Ստեփանեան:*
Ֆիլատելֆիոյ Բ. Արանց.— *Մ. Մազմանեան եւ Գ. Տ. Պաղտասարեան:*

Ֆիլատելֆիոյ Բ. կանանց. — *Տիկ. Ե. Մազմանեան եւ Լ. Փափազեան*:

Թոմանի Արանց. — *Յովհաննէս Ափալաքեան*:

Թոմանի Կանանց. — *Գր. Տէր Գէորգեան*:

Վալանսի Արանց. — *Գր. Երանեան եւ Ա. Երանեան*:

Վալանսի Կանանց. — *Գէորգ Երանեան — 2 ձայն*:

Պէյրութի Արանց. — *Գր. Տէր Դաւիթեան*:

Երուսաղէմ. — *Տիկ. Հ. Փիլիպպոսեան*:

Ֆիչպուրկ. — *Խորէն Տէր Դաւիթեան*:

Ֆրեզնոյ. — *Գրիգոր Կալոշեան*:

Վիէն. — *Տիկ. Եղիսաբէթ Ասլանեան*:

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Սարգիս Մանուչեան՝ Ատենապետ, իսկ Յովհաննէս Խանձեան՝ Ատենադպիր*:

*Այս Պատգ. Ժողովի գլխաւոր հարցն էր Քսանիններորդ Պատգ. Ժողովէն ընտրուած Հաշուեքննիչ Յանձնախումբի Զեկոյցը: Յանձնախումբը գրաւոր կերպով եւ ընդարձակ ու մանրամասնօրէն ներկայացուց իր տեղեկագիրը Պատգ. Ժողովին: Հաշուեքննիչ Յանձնախումբի զեկոյցը լսելէն ետք Պատգ. Ժողովը կու տայ հետեւեալ որոշումը. —*

«Երեսուներորդ Պատգ. Ժողովս լսելով Հաշուեքննիչ Յանձնախումբի խնամեալ զեկոյցը եւ տրուած բերանացի երկար բացատրութիւնները, կու գայ այն եզրակացութեան, որ Յանձնախումբը խղճմտօրէն կատարած է իրեն յանձնուած գործը կարելիութեան սահմանին մէջ, որուն համար իր գոհունակութիւնը եւ գնահատանքը կ'արտայայտէ անոնց կատարած աշխատանքներուն համար:

«Միեւնոյն ժամանակ կ'որոշէ որ նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը Յանձնախումբի զեկոյցը լրացնելէ ետք այն կէտերը, որոնք լրիւ եւ վերջնականապէս ճշդուած չեն, կցելով վկայեալ հաշուակալներու անգլերէն զեկոյցին, տպագրութեան տայ եւ ցրուէ բոլոր մասնաճիւղերուն, որպէսզի Կրթասիրացի անդամ-անդամուհիները լուսաբանուին լրիւ կերպով, եւ գոյութիւն ունեցող տարակարծութիւնները վերնան ու միտքերը հանդարտին»:

*Պատգ. Ժողովը մեծ գոհունակութեամբ կը լսէ Ֆրանսայի մասնաճիւղերու Շրջանային Ժողովի տեղեկագրութիւնը: Սոյն զեկոյցը, ինչպէս նաեւ ցոյց տրուած նիւթական հաշիւները, պարզօրէն կը ցոլացնէին անոնց հայրենասիրական բարձր ոգին եւ համախոհութիւնն ու ներդաշնակ գործունէութիւնը, որուն համար Պատգ. Ժողովը կը յայտնէ իր գնահատանքները:*

*Ներգաղթի գործը կանոնաւոր հիմերու վրայ դնելու համար մասնաւոր յանձնախումբ մը նշանակելը յարմար կը նկատուի: Այս մասին աչքի առջեւ ունենալով Ֆրանսայի շրջանին մէջ եղող բազմաթիւ հայրենակիցներու գոյութիւնը, կ'որոշէ որ այդ յանձնախումբը ընտրուի Ֆրանսայի շրջանէն, որու գործը պիտի ըլլայ շրջանի կազմակերպութիւն, միջաներու կարգադրութիւն, ներգաղթողներուն նիւթական եւ բարոյական աջակցութիւն, եւայլն:*

*Յանձնախումբը միեւնոյն ատեն պէտք է յաճախ տեղեակ պահէ Կեդր. Վարչութիւնը իրենց գործունէութեանց մասին։*

*Նոր Մալաթիոյ խմելու ջուրի խնդրոյն կարգադրութեան համար կ'որոշուի յարաբերութեան մտնել Սեբաստիոյ, ինչպէս նաեւ Թոմարզայի Հայրենակցական Միութեանց Կեդրոնական Վարչութիւններուն հետ՝ միասնաբար գործի լաւագոյն կերպով կարգադրման համար։*

*Կը կարդացուին հետեւեալ նամակները — Գէորգ Կարապետեանէ, Նոր Մալաթիայէն գրուած եւ ուսանողներ Ճլճլեանի, Քենտիրճեանի եւ Հայկազ Ժամկոչեանի կողմէ։*

*Կ'որոշուի Նիւ Եորքի շրջանին համար ունենալ Խնամակալական Մարմին երեք անդամներէ, Կեդրոնական Վարչութեան հսկողութեան տակ։*

*Ընկերութեան կանոնագրին մէջ ՆՊԱՏԱԿի մասին հիմնական փոփոխութիւն տեղի կ'ունենայ։ Նախապէս ընդունուած էր Մալաթիոյ մէջ աւելի բարձր վարժարան մը հիմնել։ Պատգ. Ժողովը նկատելով որ այլեւս Մալաթիոյ մէջ դպրոց կամ վարժարան հիմնելու նպատակը անգործնական է, եւ միեւնոյն ժամանակ Նոր Մալաթիա աւանի գոյութիւնը եւ Մալաթիացիներու հետզհետէ հոն փոխադրուիլը, կ'որոշուի որ Մալաթիա անունին տեղ ըլլայ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, այլ խօսքով վարժարանը հիմնել Նոր Մալաթիոյ մէջ։*

*Նոյնպէս նաեւ կը փոխուի ԿՏԱԿԸ, որով Ընկերութեան լուծումէն ետք Ընկերութեան ունեցած դրամն ու գոյքերը կը պատկանին Նոր Մալաթիոյ Համայնքին, տեղւոյն կրթական գործին յատկացուելու համար։*

*Կան նաեւ ուրիշ յաւելումներ, բայց վերեւի երկուքն էին կարեւորները։*

*Ընկերութեան հաշիւները կը քննուին ու կը վաւերացուին։ Կ'որոշուի նաեւ, որ յետ այսու, Պատգ. Ժողովէն առաջ, վկայեալ հաշուագէտներու կողմէ քննուին տոմարները եւ վաւերացուին, որով թէ՛ կը խնայուի Պատգ. Ժողովին ժամանակը եւ թէ աւելի կանոնաւոր հաշիւները կը պահուին տոմարակալական ձեւով։*

*Կ'որոշուի Կեդրոնը պահել Քլիվլենտի մէջ եւ առ այդ Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին հետեւեալները.—*

*Յովհաննէս Եաղուպեան, Լեւոն Թերխանեան, Գէորգ Թոփալեան, Խորէն Ոսկերիչեան, Գէորգ Ասլանեան, Յովհաննէս Ափալաքեան, Գրիգոր Երանեան։*

*Նոր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ այսպէս.—*

| | |
|---|---|
| *Յովհաննէս Եաղուպեան* | *Ատենապետ* |
| *Լեւոն Թերխանեան* | *Ատենադպիր* |
| *Խորէն Ոսկերիչեան* | *Գանձապահ* |

*Կեդրոնական Վարչութիւնը միշտ աւ յարաբերութեան մէջ էր Նոր Մալաթիոյ Համայնքին եւ Շինարարական Յանձնախումբին հետ, մանաւանդ ջուրի հարցով։*

*Այս տարուան Օգոստոսին կը մահանայ Ընկերութեան վեթերան եւ*

*անձնապէս անդամներէն Պրն. Յովհաննէս Աճեմեան: Կեդր. Վարչութիւնը եւ մասնաճիւղերը հանգուցեալի պարագաներուն կը յայտնեն իրենց ցաւակցութիւնն ու յարգանքները:*

## ԵՐԵՍՈՒՆՄԷԿԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Կրթասիրաց Երեսունմէկերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 1, 1934-ին, Փրաւիտենսի մէջ:*

*Ժողովին կը մասնակցին 26 մասնաճիւղեր 38 ձայնով:*

Կեդր. վարչութիւն. — *Լեւոն Թերխանեան:*

Քլիվլենտի Արանց. — *Վահան Տէր Դաւիթեան եւ Գ. Տէր Գէորգեան:*

Քլիվլենտի Կանանց. — *Կ. Թաշճեան եւ Ա. Գ. Աւետիսեան:*

Տիթրոյիթ. — *Հայկ Օրմանեան:*

Հէյվրհիլ. — *Լեւոն Գաւուքճեան:*

Փրաւիտենսի Արանց. — *Յովհաննէս Խարբուղլեան եւ Յարութիւն Աւետիսեան:*

Փրաւիտենսի Կանանց. — *Տիկ. Խ. Երկայնեան:*

Պէյրութ. — *Խաչատուր Մանուչեան:*

Վոքեկըն. — *Յովհաննէս Մարգարեան:*

Նիւ Եորքի Արանց. — *Պօղոս Առաքելեան:*

Նիւ Եորքի Կանանց. — *Տիկ. Մ. Տօնապետեան:*

Ուստրի Արանց. — *Ս. Մանուչեան եւ Աստուր Գալուստեան:*

Ուստրի Կանանց. — *Տիկ. Մ. Կեղիւրեան:*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Տիկ. Մ. Մագմանեան եւ Տիկ. Մ. Մոթիեան:*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Յարութիւն Փիլիպպոսեան եւ Յովհաննէս Նազարէթեան:*

Պոսթոնի Արանց. — *Ռուբէն Պարմաքեան:*

Պոսթոնի Կանանց. — *Տիկ. Ա. Պարմաքեան:*

Երուսաղէմ. — *Արամ Ադազարեան:*

Ֆիչպուրկ. — *Սարգիս Մանուչեան:*

Ռոմանի Արանց. — *Յովհաննէս Խանձեան:*

Ռոմանի Կանանց. — *Մ. Աւետիսեան:*

Վալանսի Արանց. — *Արմենակ Մուրատեան — 2 ձայն:*

Վալանսի Կանանց. — *Տիկ. Խօժէն Ջեքեմեան եւ Տիկ. Հ. Թերխանեան:*

Լիոնի Արանց. — *Նշան Կանանեան — 2 ձայն:*

Սթ. Շամոն. — *Լեւոն Մուրատեան — 2 ձայն:*

Պոլէն. — *Մելքոն Պլիքճեան:*

Վիէն. — *Սեդրակ Տազլեան:*

*Մնայուն դիւանը կը կազմուի այսպէս.—*

*Սարգիս Մանուչեան* — *Ատենապետ*

*Յովհաննէս Խանձեան* — *Ատենադպիր*

*Կ'որոշուի Ընկերութեան* Զարթըրին *մէջ արձանագրել Կեդրոնական Վարչութեան վայրի փոփոխումները եւ ամէն անգամ որ Կեդրոնը նոր վայր մը կը փոխադրուի, նոյն նահանգին կողմէ վաւերացնել Ընկերութեան անունը:*

*Կեդրոնական Վարչութեան զեկոյցէն յայտնի կ'ըլլայ որ Երեւանի մէջ Հ. Օ. Կ.ի զլխաւոր Վարիչ Գրիգոր Վարդանեանի նախագահութեամբ եւ Նոր Մալաթիոյ, Նոր Սեբաստիոյ, Նոր Կեսարիոյ, Նոր Տիգրանակերտի եւ Նոր Թոմարզայի ներկայացուցիչներով տեղի ունեցած է խորհրդակցական ժողով մը, ուր քննութեան առնուած է խմելու ջուրի խնդիրը եւ որոշում կայացած է միասնական ջանքերով զլուխ հանել աւաններու այս կենսական գործը, որու համար ընդհանուր ծախս նկատուած է* 16,000 *տոլար: Այս գումարէն Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան բաժին հանուած է ՀԻՆԳ ՀԱԶԱՐ ՏՈԼԱՐ:*

*Պատգ. Ժողովը սիրով կ'ընդունի իրեն բաժին հանուած գումարը եւ անոր վրայ կ'աւելցնէ նաեւ* Օրօ Թըրք *մը, պէտք եղած շինարարութեանց գործածուելու համար:*

*Ցրանայի շրջանի մասնաճիւղերու կողմէ Նոր Մալաթիոյ արտելին կը ղրկեն* 25,000 *ասեղներ:*

*Քսանիններորդ Պատգ. Ժողովին կողմէ ընտրուած Հաշուեքննիչ Յանձնախումբը ժողովին կը ներկայացնէ իր լիակատար տեղեկագիրը, ուրկէ յայտնի կ'ըլլայ որ Ընկերութեան հաշիւները ճիշդ են: Ասով յայտնի կ'ըլլայ որ ժամանակէ մը ի վեր Կեդրոնական Վարչութեանց եւ անհատ հայրենակիցներու հասցէին նետուած կամ վերագրուած գրութիւնները եւ խօսուածները բացարձակապէս վրան-բաց զրպարտութիւններ են:*

*Պատգ. Ժողովը նկատի ունենալով նախկին Կեդրոնական Վարչութեան գործօն եւ զոհաբերող անդամներէն Պրն. Ասատուր Ագմելեանի, Խոսրով Պոնափարթեանի, ինչպէս նաեւ նախկին ներկայացուցիչ Մկրտիչ Ասլանեանի անխղճօրէն քննադատուած ըլլալը կարգ մը հայրենակիցներու կողմէ, որոնք ուրիշ բան եղած չեն, այլ անհատական եւ թշնամական բնոյթ կրող խնդիրներ, կ'որոշէ հետեւեալ բանաձեւը:*

«Ժողովս խստիւ կը դատապարտէ այդ կարգի զրպարտութիւնները եւ անոնց հեղինակները եւ ի սրտէ գնահատելով Ագմելեանի, Պոնափարթեանի եւ Ասլանեանի Ընկերութեան մատուցած նիւթական եւ բարոյական զոհողութիւնները, կը ցանկայ որ անոնք անյիշաչար ոգւով դարձեալ շինարարական աշխատանքի լծուին Ընկերութեան կողքին:

«Ժողովս կը գնահատէ նաեւ. Հաշուեքննիչ Յանձնախումբի աշխատանքները եւ կը յայտնէ իր շնորհակալութիւնները Յանձնախումբի անդամներէն Ռուբէն Պարմագեանի եւ Ի. Տէր Յովհաննէսեանի:»

*Ընկերութեան* Զարթըրի *սրբագրութիւնը խնդրոյ առարկայ կ'ըլլայ նկատի ունենալով որ Ընկերութեան ընդունուած կամ գործածական անունը հետեւեալն է* Educational Society of Malatia *իսկ* Զարթըրին *մէջ արձանա-*

գրուած է Malatia Educational Society ։ Երեսունմէկերորդ Պատգ. Ժողովը կը հրահանգէ Կեդրոնական Վարչութիւնը, որ հարկ եղած օրինական փոփոխութիւնները կատարէ ։

Կ'որոշուի գրել Նոր Մալաթիոյ Շինարարական Յանձնախումբին որ իրենցմէ մէկը նշանակեն որպէս ներկայացուցիչ՝ կապ պահելու Կեդր. Վարչութեան հետ եւ լուսաբանելու Նոր Մալաթիոյ վերաբերեալ խնդիրները ։

Կ'որոշուի ՀԻՆԳ ՀԱԶԱՐ տոլարի նոր քոթա մը, ի նպաստ ՆԵՐԳԱՂԹԻ դէպի Նոր Մալաթիա եւ անոր յարակից նոր բնակարաններու շինութեան ։

Կ'որոշուի Կեդրոնը պահել Քլիվլենտ եւ եռապատիկ ցանկէն կ'ընտրուի նոր Կեդրոնական Վարչութիւնը, որուն անդամները կ'ըլլան.—

Լեւոն Թերխանեան, Գէորգ Ասլանեան, Խոսրով Ոսկերիչեան, Վահան Տէր Դաւիթեան, Յովհաննէս Եաղուպեան, Գրիգոր Տ. Գէորգեան եւ Գրիգոր Երանեան ։

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, ուրկէ յայտնի կ'ըլլայ որ այդ շրջանին Ընկերութեան Ընդհ. Մուտքն եղած է 16,018,75 տոլար ։ Ելք եղած է 13.753,72 տոլար ։ Գանձը կը մնայ 2,265,03 տոլար ։

Նորընտիր Կեդր. Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ այսպէս.—

| | |
|---|---|
| Վահան Տէր Դաւիթեան | Ատենապետ |
| Լեւոն Թերխանեան | Ատենադպիր |
| Խոսրով Ոսկերիչեան | Գանձապահ |

Նորընտիր Կեդր. Վարչութիւնը յարաբերութեան մէջ է Նոր Մալաթիոյ Շինարարական Մարմնոյ եւ մասնաճիւղերու հետ ։

Նոր Մալաթիոյ մէջ, Կառավարութեան կողմէ, կը հաստատուի Ոստիկայան մը, այս առթիւ Կեդրոնական Վարչութիւնը կը յայտնէ իր շնորհակալութիւնը Խորհր. Հայաստանի Կառավարութեան ։

Հայաստանի համալսարանին մէջ եղող երիտասարդ ուսանողներ, մասնաւոր նամակով մը, կը յայտնեն իրենց շնորհակալութիւնը, Ընկերութեան իրենց ընծայած օգնութեան համար ։

Կարգ մը մասնաճիւղերու մէջ կը ծագին անհամաձայնութիւններ եւ անհասկացողութիւններ, ի մասնաւորի Պոսթոնի եւ Ուստրի մէջ ։

Կեդրոնական Վարչութիւնը կը ջանայ զանոնք կարգի բերել՝ գրելով անոնց բացատրական նամակներ ։

## ԵՐԵՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Երեսուներկուերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Օգոս. 31, 1935–ին Ուստրի մէջ ։

Ժողովին կը մասնակցին 27 մասնաճիւղերու 35 պատգամաւորները 40 ձայներով ։

Կեդր. Վարչութիւն.— Լեւոն Թերխանեան ։

Ասթորի, Ն. Ե. — *Խ. Պոնափարթեան, Յակոբ Ուրլեան*։

Նիւ Եորքի կանանց. — *Տիկ. Մարգրիտ Տօնապետեան*։

Քլիվլենտի Արանց. — *Յովհաննէս Թերզիեադուպեան եւ Կարապետ Մի-նասեան*։

Քլիվլենտի կանանց. — *Տիկ. Խօժէն Զեքեմեան, Հայկուհի Թերխանեան*։

Ֆրեզնոյ. — *Գրիգոր Երանեան*։

Լոս Անճելըս. — *Գէորգ Ասլանեան*։

Վոքեկըն. — *Յովհաննէս Մարգարեան*։

Տիթրոյիթ. — *Աստուր Գալուստեան*։

Ուստրի Արանց. — *Ա. Գալուստեան եւ Նշան Մերկիկեան*։

Ուստրի կանանց. — *Տիկ. Մէյրի Մուրատեան*։

Փրաւիտենսի Արանց. — *Ս. Տաղլեան եւ Յարութիւն Աւետիսեան*։

Փրաւիտենսի կանանց. — *Տիկ. Վարդանուշ Կանանեան*։

Հէյվըրհիլ. — *Յովհաննէս Խանձեան*։

Ֆիչպուրկ. — *Յարութիւն Տամպուրաճեան*։

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Գրիգոր Տէյիրմէնճեան — 2 ձայն*։

Ֆիլատելֆիոյ կանանց. — *Տիկ. Մէյրի Մազմանեան — 2 ձայն*։

Ռոմա. — *Խօսրով Պոնափարթեան*։

Լիոնի Արանց. — *Ն. Կանանեան եւ Ս. Մանուչեան*։

Լիոնի կանանց. — *Ն. Կանանեան եւ Ս. Մանուչեան*։

Վալանսի Արանց. — *Արմենակ Մուրատեան*։

Վալանսի կանանց. — *Յարութիւն Որբերեան եւ Լեւոն Մուրատեան*։

Սթ. Շամոյ. — *Ռուբէն Պարմազեան*։

Վիէն. — *Սեդրակ Տաղլեան*։

Մարսէյլ. — *Աւետիս Աւետիսեան*։

Երուսաղէմ. — *Սարգիս Կեղիւրեան*։

Պէյրութ. — *Խաչատուր Մանուչեան*։

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին, Խօսրով Պոնափարթեան՝ Ատե-նապետ, Ռուբէն Պարմազեան՝ Ատենադպիր*։

*Այս ժողովին կը կարդացուին Նոր Մալաթիոյ Համայնքին կողմէ եւ Հ. Օ. Կ.ի Գլխաւոր Վարչութենէն եկած հեռագիրները, որոնք Ընկերու-թեանս Երեսուներկուերորդ Պատգ. Ժողովի գումարման առթիւ կը յայտնեն իրենց խնդակցութիւնները*։

*Կը կարդացուին նաեւ Ֆրանսայի Շրջանային Մարմնոյ գրաւոր ուղեր-ձը եւ իրենց գործունէութեան տեղեկագիրը, որոնք կ'ընդունուին մեծ գնա-հատանքով եւ ծափահարութեամբ*։

*Կարգ մը մասնաճիւղերու եւ անհատներու կողմէ եղած բողոքագրերը մասնաւոր յանձնախումբի մը կողմէ կը քննուին եւ անհատական բնոյթ եւ հա-կառակութեանց արդիւնք եղած ըլլալը ճշդուելով, անտես կ'առնուին։ Ա-մերիկայէն Նոր Մալաթիա ներկայացուցիչ մը ղրկելու անհրաժեշտութիւնը նկատի առնելով, կ'որոշուի որ ղրկուի մէկը, որուն գործը պիտի ըլլայ*

մասնաւորապէս Ներգաղթի եւ Նոր Մալաթիոյ շինարարութեան վերաբերեալ խնդիրներու կարգադրութիւնները, ինչպէս նաեւ աւելի մեծ թիւով Մալաթիացի ներգաղթողներու համար բնակութիւններ վարել Խորհ. Հայաստանի կառավարութեան հետ:

Ներկայացուցիչ կ'ընտրուի Պրն. Խոսրով Պոնափարթեան, իսկ Պրն. Պոնափարթեանի չկարենալ երթալու պարագային կ'ընտրուի Պրն. Յովհաննէս Սրադործեան, Ֆրանսայէն:

Պարբերաթերթ մը ունենալու հարցը խնդրոյ առարկայ կ'ըլլայ, սակայն նկատի առնելով առ այդ ըլլալիք ծախքերը, կը մերժուի:

Կեդրոնական Վարչութեան խորհուրդով եւ Ընկերութեան շահերը նկատի ունենալով, Պատգ. ժողովը կ'որոշէ որ Կեդր. Վարչութիւնը կրկին փոխադրուի Նիւ Եորք:

Պատուոյ Բաժակը կը տրուի Նիւ Եորքի Կանանց Մասնաճիւղին:

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, որով այդ շրջանի ընդհանուր մուտքն եղած է 13,314,63 տոլար, ընդհանուր ելքն եղած է 10,187,15 տոլար: Գանձը կը մնայ 3,127,48 տոլար:

Եռապատիկ ցանկի վրայ ընտրութիւն տեղի ունենալով Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին.—

Մարգար Մարգարեան, Սեդրակ Քիւփելեան, Տօնապետ Տօնապետեան, Յակոբ Ուրլեան, Մարտիրոս Ջուլալեան, Գէորգ Ճիվելեկեան եւ Սարգիս Տօնապետեան:

Նորընտիր Կեդր. Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.—

| | |
|---|---|
| Սարգիս Տօնապետեան | Ատենապետ |
| Յակոբ Ուրլեան | Ատենադպիր |
| Սեդրակ Քիւփելեան | Գանձապահ |

Պրն. Խ. Պոնափարթեան կը տեղեկացնէ որ անձնական պատճառներով պիտի չկարենայ Հայաստան երթալ որպէս Ընկերութեան ներկայացուցիչ:

Կեդր. Վարչութիւնը կը դիմէ Պրն. Յովհաննէս Սրադործեանի, Ֆրանսա:

Քլիվլենտի մէջ կարգ մը հայրենակիցներ իրարու քով գալով կը կազմեն Նիւպուրկի մասնաճիւղը: Կեդր. Վարչութիւնը կը թելադրէ որ այդ կարգի խնդիրներու ժամանակը չէ եւ լաւ է որ իրար հասկնան եւ միանան մէկ մասնաճիւղի մէջ եւ լծուին շինարար աշխատանքի:

Ֆրանսայի շրջանէն Մալաթիացի ներգաղթողներու համար բնակութիւններ կը վարուին Ներգաղթի Լիազօր քաղաքացի Գ. Թահմազեանի եւ մասնաւոր պատուիրակ քաղաքացի Դանուշ Շահվերտեանի հետ:

Պրն. Յովհաննէս Սրադործեան կ'ընդունի Նոր Մալաթիա երթալու հրաւէրը եւ կը պատրաստուի մեկնիլ:

Պրն. Սրադործեան կը հասնի Նոր Մալաթիա եւ հոն մէկ ամիս միայն

*մնալու* վիզա *ունեցած ըլլալով Դեկտ. 21-ին կը մեկնի Երեւանէն եւ Մոսկուայի վրայով Յունուար 6-ին կը հասնի Փարիզ:*

*Պրն. Սրապործեանի գործունէութեան ընդարձակ տեղեկագիրը դրքոյկով հրատարակուած եւ ղրկուած է բոլոր մասնաճիւղերուն եւ անհատ հայրենակիցներու, այնպէս որ ամէն ոք ծանօթ է անոր կատարած գործունէութեան:*

*Ֆրանսայէն 29 Մալաթիացի ընտանիքներ, ընդամէնը 95 անձինք, մեկնած են դէպի Նոր Մալաթիա:*

*Ֆրանսայի Գործադիր Յանձնախումբի տարած աշխատանքները իսկապէս գնահատելի են: Անոնց ջանքերով եւ զոհողութեամբ Նոր Մալաթիա ղրկուած են կարգ մը պէտք եղած մեքենաներ, հոգատար եղած են տեղւոյն վրայ եղողներու կարիքներուն եւ օժանդակած են Նոր Մալաթիա կամ Հայաստան գաղթող մեր հայրենակիցներուն:*

*1936 Յունիս 22-ին Նիւ Եորքի մէջ կը մահանայ Ընկերութեանս հիմնադիրներէն եւ անցնող 33 տարիներու ընթացքին անխոնջ աշխատող եւ զոհաբերող անդամ Ասատուր Ազմեյեան: Կեդր. Վարչութիւն, մասնաճիւղեր եւ անհատ հայրենակիցներ պատշաճ կերպով կը յարգեն հանգուցեալին յիշատակը. անոր յուղարկաւորութեան առթիւ փոխան ծաղկեպսակի նուիրատուութեանց գումարը, 300 տոլար, կը յատկացուի Նոր Մալաթիոյ շինարարութեան:*

## ԵՐԵՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեանս Երեսուներեքերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 5, 1936-ին, Ասթորիա, Լոնկ Այլընտ, Նիւ Եորք:*

*Ժողովին կը մասնակցին 22 մասնաճիւղեր 27 ձայնով:*

Կեդր. Վարչութիւն. — *Յակոբ Ուրլեան:*

Վալանսի Կանանց. — *Տիկ. Երանուհի Տօնապետեան:*

Վալանսի Արանց. — *Ս. Կեղիւրեան եւ Ա. Մուրատեան:*

Մարսէյլ. — *Գրիգոր Տէյիրմենճեան:*

Ռոման. — *Խոսրով Պոնափարթեան:*

Լիոնի Արանց. — *Յովհ. Նազարէթեան եւ Նազարէթ Քիւնտիպեկեան:*

Ֆիչպուրկ. — *Խաչատուր Մանուշեան:*

Ֆիլատելփիոյ Արանց. — *Գ. Տէր Պաղտասարեան եւ Ս. Տանտիկեան:*

Ֆիլատելփիոյ Կանանց. — *Տիկ. Մ. Մազմանեան եւ Տիկ. Մ. Մոթիեան:*

Փրաւիտենսի Արանց. — *Արամ Ազազարեան:*

Փրաւիտենսի Կանանց. — *Արամ Ազազարեան:*

Հէյվըրհիլ. — *Տիկ. Մարի Համալեան:*

Ուստրի Արանց. — *Նափոլէոն Մարգարեան:*

Ուստրի Կանանց. — *Սարգիս Մանուշեան:*

Մեծագոյն Նիւ Եորքի Արանց. — *Լութվիկ Տէր Յակոբեան:*

Մեծագոյն Նիւ Եորքի կանանց.— *Տիկ. Մարգրիտ Տօնապետեան*։

Վոքեկրն.— *Յարութիւն Փիլիպպոսեան*։

Քլիվլենտ.— *Յովհ. Եաղուպեան եւ Գէորգ Ասլանեան*։

Պոսթոն.— *Յարութիւն Որբերեան*։

Տիթրոյիթ.— *Խօսրով Պօնափարթեան*։

Քլիվլենտի կանանց.— *Գէորգ Ասլանեան*։

Ֆրեզնոյ.— *Մարտիրոս Ջուլալեան*։

Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Խօսրով Պօնափարթեան՝ Ատենապետ, իսկ Գէորգ Տէր Պաղտասարեան՝ Ատենադպիր։

Նոր Մալաթիոյ համայնքէն Պատգ. Ժողովին ուղղեալ շնորհաւորական եւ եղբայրական ողջոյնի հեռագիրը կը կարդացուի, որ կը ստեղծէ մեծ խանդավառութիւն։

Պատգ. Ժողովի կողմէ հեծագիրներ կը ղրկուին Երեւան Հայաստանի Ժողկոմխորհին եւ Ներգաղթի Կոմիտէի Նախագահութեան։

Կը կարդացուի Նոր Մալաթիայէն Մկրտիչ Ասլանեանի նամակը, որ տեղեկութիւններ տուած է կատարուելիք շինարարութեանց մասին։

Մալաթիայէն աւելի մեծ թիւով ներգաղթողներու համար որոշումներ կը տրուին եւ կարգադրութիւններ կ'ըլլան։

Կ'որոշուի Նոր Մալաթիոյ մէջ Ընկերութեանս միջոցներով շինուած տուները ծախել հոն եղող բնակիչներու եւ գոյացած դրամով նոր տուներ շինել, որու գործադրութիւնը տեղւոյն վրայ եղող Յանձնախումբին կը թողուի։

Հ. Օ. Կ.ի Գլխաւոր Վարչութեան կողմէ Փարիզի մէջ գումարուող Համագումարին մասնակցելու հրաւէրին ի պատասխան ժողովը կ'որոշէ լիազօրել Ֆրանսայի շրջանի Գործադիրը, որ Յովհաննէս Սրագործեանի գլխաւորութեամբ պատուիրակութիւն մը ներկայացնէ մեր Ընկերութեան կողմէ։

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան կողքին կրտսերաց լիկաներ կազմելու որոշում կը տրուի եւ կը թելադրուի որ մասնաճիւղեր հետամուտ ըլլան իրենց վայրերուն մէջ երիտասարդները կազմակերպելու։

Պատուոյ Բաժակը կը տրուի Նիւ Եորքի Կանանց Մասնաճիւղին։

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին։ Կը տեղեկացուի որ այս շրջանի ընդհանուր մուտքն է 11,971,90 տոլար, ընդհանուր ելքն է 10,079,87 տոլար, գանձը կը մնայ 1,892,03 տոլար։

Կեդրոնական Վարչութեան համար կ'որոշուի երկու խորհրդատուներ ունենալ Ֆիլատելֆիայէն։ Նոր շրջանի Կեդր. Վարչութեան անդամ կ'ընտրըուին.— Սեդրակ Քիւփելեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Խօսրով Որբերեան, Տօնապետ Տօնապետեան, Յովհաննէս Նազարէթեան, Լութվիկ Տէր Յակոբեան եւ Պօղոս Էմրիկեան։

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կ'ընտրէ.—

Խօսրով Որբերեան — Ատենապետ

Տօնապետ Տօնապետեան — Ատենադպիր

Լութվիկ Տէր Յակոբեան — Գանձապահ

*Սեդրակ Քիւփելեան կը հրաժարի եւ անոր տեղ կը հրաւիրուի յաջորդ տասւեւլագոյն քուէ ստացող Յակոբ Ուրլեան։*

*Նոր Մալաթիոյ մէջ կօշիկի գործարան մը հիմնելը առ այժմ անգործնական կը նկատուի եւ կ'որոշուի ոյժ տալ* թրիքոթաժի *(հիւսուածեղէնի) գործին։ Ատոր համար պէտք եղած մեքենաները գնելու եւ ղրկելու մասին կը հրահանգուի Ֆրանսայի Գործադիրին։*

*Այս ամբողջ տարուան ընթացքին Կեդրոնական Վարչութեան գլխաւոր գործը կ'ըլլայ Ֆրանսայէն մեքենաներ ղրկելու հարցը եւ չարունակական հեռագիրներով յարաբերութեան մէջ մտնեն Հ. Օ. Կ.ի Ֆրանսայի շրջանի Գործադիր եւ այլ պատկան մարմիններու հետ։*

*Քլիվլենտի մէջ երկու մասնաճիւղերը միացնելու աշխատանքները յառաջ կը տարուին եւ յետոյ յարմար կը սեպեն երկուքն ալ ճանչնալ որպէս օգնական մասնաճիւղ, նկատի ունենալով որ ժամանակը ինքը կը լուծէ շատ մը բարդ նկատուած խնդիրներ եւ ի վերջոյ կարելի կ'ըլլայ ունենալ նախկին մեծ եւ միացեալ Քլիվլենտի մասնաճիւղը։*

## ԵՐԵՍՈՒՆՉՈՐՐՈՐԴ ՊԱՏԱՄԱԻՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Կրթասիրաց Ընկերութեան Երեսունչորրորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 4, 1937-ին Ֆիլատելֆիոյ մէջ։*

*Ժողովին կը մասնակցին 23 մասնաճիւղեր 29 ձայներով։*

Կեդր. Վարչութիւն. — *Գէորգ Տէր Պաղտասարեան։*

Ուստր. — *Սիմոն Սիմոնեան։*

Տիթրոյիթ. — *Մուրատ Մուրատեան։*

Մարսէյլ. — *Գրիգոր Տէյիրմենճեան։*

Ֆիլատելֆիոյ կանանց. — *Տիկ. Մ. Մազմանեան եւ Տիկ. Եսթեր Մաժանեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Ս. Տանտիկեան եւ Պ. Ջօպիեան։*

Հէյվըրհիլ. — *Տիկ. Եսթեր Գաւուքճեան։*

Վիէնի Արանց. — *Գրիգոր Տէյիրմենճեան։*

Վիէնի կանանց. — *Տիկ. Մարիամ Պաղտասարեան։*

Քլիվլենտ-Նիւպըրկ. Արանց. — *Կարապետ Աճեմեան։*

Քլիվլենտ-Նիւպըրկ. Արանց. — *Քերոբ Օտապաշեան։*

Քլիվլենտ-Նիւպըրկ. կանանց. — *Յարութիւն Աթուլիկեան։*

Նիւ Եորքի կանանց. — *Յակոբ Ուրլեան։*

Նիւ Եորքի Արանց. — *Սեդրակ Քիւփելեան։*

Վոքեկըն. — *Յակոբ Ուրլեան։*

Լիոնի Արանց. — *Նազարէթ Քիւնտիպեկեան։*

Լիոնի կանանց. — *Տիկ. Մարիամ Տէր Պաղտասարեան։*

Ռոման. — *Տիկ. Մարիամ Նազարեթեան։*

Պէյրութ․— Տիկ․ Մարգրիտ Մոթիեան։
Փրաւիտենս․— Գէորգ Ճիւմելեկեան։
Կրտսերաց Լիքկ․ Քլիվլենտ․— Տիկ․ Հէլըն Օտապաշեան։
Երուսաղէմ․— Սարգիս Մանուշեան։
Վալանսի կաճանց․— Լեւոն Մուրատեան։

Մնայուն դիւանի անդամ կ՚ընտրուին Յարութիւն Փիլիպպոսեան՝ Ատենապետ, իսկ Պետրոս Զօպիեան՝ Ատենադպիր։

Այս Պատգ․ Ժողովին եկած հարցերը նախապէս խնդրոյ առարկայ եղած հարցեր են, որոնք վերստին մէջ բերուած եւ կրկին որոշումներ են առըուած, այնպէս որ նոր խնդիր դրեթէ չկայ, բացի Կրտսերաց Լիկային համար պատրաստուած կանոնագրի վաւերացումէն եւ Նոր Մալաթիա ներգաղթողներու համար եղած կարգադրութիւններէն։ Որոշուած է, որ որքան կարելի է մեծ թիւով ներգաղթողներու համար վիզայի եւ նիւթական օժանդակութեան համար պէտք եղած աշխատանքները տարուին ուր որ անկ է։

Պատուոյ բաժակը կը տրուի Տիթրոյիթի մասնաճիւղին։

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին։ Այս շրջանի ընդհանուր մուտքն է 12,497,97 տոլար, ընդհանուր ելքն է 10,309,68 տոլար։ Գանձը կը մնայ 2,188,29 տոլար պատրաստ դրամ։

Կեդրոնական Վարչութեան անդամ կ՚ընտրուին․— Նիւ Եորքէն — Խոսրով Որբերեան, Լութվիկ Տէր Յակոբեան, Սեդրակ Քիւփելեան եւ Պօղոս Էմրիկեան։ Ֆիլատելֆիայէն — Գէորգ Տէր Պաղտասարեան, Պետրոս Զօպիեան, Յովհաննէս Նազարէթեան։

Սեդրակ Քիւփելեան կը հրաժարի տկարութեան պատճառով եւ անոր տեղ կը հրաւիրուի յաջորդ առաւելագոյն քուէ ստացող Մարգար Մարգարեան։

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ այսպէս․—

| | |
|---|---|
| Խոսրով Որբերեան | Ատենապետ |
| Պետրոս Զօպիեան | Ատենադպիր |
| Լութվիկ Տէր Յակոբեան | Գանձապահ |

Պատգ․ Ժողովի որոշման համաձայն նորընտիր Կեդր․ Վարչութիւնը ընթացք կու տայ Նոր Մալաթիոյ հիմնարկութեան տասնամեայ տօնակատարութեան, որու համար կը պատրաստէ մասնաւոր ժապաւէններ եւայլն։

Ֆրանսայի շրջանի մասնաճիւղերուն մէջ յառաջ եկած խռովութիւնները հանդարտեցնելու եւ իրողութիւնները բացատրելու աշխատանքներ կը տանին։ Ֆրանսայի Գործադիրը իր քով եղած 586,35 տոլարը կը ղրկէ Կեդրոն։

Պէյրութի չէնքին եւ տեղական մասնաճիւղի գործերու կարգադրութեանց համար լիազօր ներկայացուցիչ կ՚ընտրուի Պրն․ Սարգիս Սաչաքլեան։

Նոր Մալաթիոյ համայնքին եւ Շինարարական Մարմնոյ հետ յարաբերութիւնները կը շարունակուին փոխադարձ նամակներով։

# ԵՐԵՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Երեսունհինգերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 2, 1938–ին, Տիթրոյիթի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին 15 մասնաճիւղեր 17 ձայներով։*

Կեդր. Վարչութիւն. — *Պետրոս Զօպեան.*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Սեդրակ Տանտիկեան — 2 ձայն։*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Տիկ. Սիրանոյշ Աղազարեան։*

Քլիվլենտ Նիւպըրկի Արանց. — *Յովհ. Ափալաքեան եւ Գր. Կալլոչեան։*

Քլիվլենտ Նիւպըրկի Կանանց. — *Տիկ. Ե. Ասլանեան եւ Ք. Օտապաշեան։*

Նիւ Եորքի Արանց. — *Յակոբ Ուըլեան։*

Նիւ Եորքի Կանանց. — *Յակոբ Ուըլեան։*

Տիթրոյիթի Արանց. — *Գրիգոր Խանձեան։*

Վոքեկըն. — *Մանուէլ Տէյիննեան։*

Փրաւիտենս. — *Հայկ Օրմանեան։*

Ռոման. — *Սենեքերիմ Զոլաքեան։*

Վալանս. — *Սեդրակ Քիւլխանճեան։*

Պէյրութ. — *Մուրատ Մուրատեան։*

Պէյրութի Կանանց. — *Տիկ. Գայիանէ Կոստիկեան։*

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Հայկ Օրմանեան՝ Ատենապետ, խսկ Յովհ. Ափալաքեան՝ Ատենադպիր։*

*Նոր Մալաթիա ներկայացուցիչ մը ղրկել կ'որոշուի։ Ներկայացուցիչի ընտրութիւնը եւ գործադրութիւնը կը թողուին Կեդր. Վարչութեան։*

*Պարբերաթերթի մը հրատարակութիւնը կազմակերպչական տեսակէտէ խիստ օգտակար նկատուելով, Պատգ. Ժողովը կը լիազօրէ նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը, որ մասնաւոր Յանձնախումբի մը միջոցաւ ուսումնասիրելով թերթի հրատարակման հետ կապ ունեցող խնդիրները, պատրաստէ մասնաւոր կանոնագիր մը պարբերաթերթի հրատարակման համար։*

*Պատուոյ Բաժակը կը տրուի Վոքեկընի պղտիկ, բայց գործօն մասնաճիւղին։*

*Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, որով այս տարեշրջանի ընդհանուր մուտք եղած է 11,392,10 տոլար, ընդհանուր ելք եղած է 7,539,67 տոլար։ Գանձը կը մնայ 3,752,43 տոլար պատրաստ դրամ։*

*Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին — Նիւ Եորքէն — Յակոբ Ուըլեան, Սեդրակ Քիւփելեան, Մարգար Մարգարեան, Լութվիկ Տէր Յակոբեան, Պօղոս Էմրիկեան։ Ֆիլատելֆիայէն — Պետրոս Զօպեան եւ Գ. Տէր Պաղտասարեան։*

*Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ այսպէս. —*

| | |
|---|---|
| *Մարգար Մարգարեան* | *Ատենապետ* |
| *Յակոբ Ուըլեան* | *Ատենադպիր* |
| *Սեդրակ Քիւփելեան* | *Գանձապահ* |

*Պօղոս Էմրիկեան բանաւոր պատճառով կը հրաժարի եւ անոր տեղ կը հրաւիրուի Տիկ. Վարդանոյշ Փափուճեան։*

*Թրիքոթաժի մեքենաները, որ ժամանակէ մը ի վեր գնուած ու վճարումն ալ եղած էր, կը հասնին Նոր Մալաթիա։*

*Կեդրոնական Վարչութիւնը կը հրատարակէ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ եռամսեայ պարբերաթերթը։ Առաջին թիւը լոյս կը տեսնէ Սեպտեմբեր 1, 1939–ին։*

*Նոր Մալաթիա ներկայացուցիչ դրկելու որոշումը առժամապէս կը յետաձգուի։*

*Տնտեսական ծանր դրութեան բերումով եւ հայրենակիցներու տեղէ տեղ փոփոխմանց պատճառներով կարգ մը մասնաճիւղեր անգործութեան մատնուած են, որոնց կազմակերպման համար ամէն ջանք եւ աշխատանք կը թափուի։*

## ԵՐԵՍՈՒՎԵՑԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Երեսունվեցերորդ Պատգ. ժողովը գումարուած է Սեպտեմբեր 3, 1939–ին, Ուստրի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին 18 մասնաճիւղերու 18 պատգամաւորները 25 ձայներով։*

Կեդր. Վարչութիւն.— *Յակոբ Ուրլեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Սեդրակ Տանտիկեան — 2 ձայն։*

Ֆիլատելֆիոյ Կանանց.— *Յ. Գ. Աւետիսեան։*

Քլիվլենտ–Նիւպըրկի Արանց.— *Յովհ. Ափալաքեան — 2 ձայն։*

Քլիվլենտ–Նիւպըրկի Կանանց.— *Յարութիւն Աւետիսեան։*

Նիւ Եորքի Արանց.— *Ա. Աւետիսեան։*

Նիւ Եորքի Կանանց.— *Ս. Ճիզմեճեան։*

Տիթրոյիթ.— *Ա. Աւետիսեան։*

Քլիվլենտ.— *Ս. Կեղիւրեան։*

Ուստըր.— *Գ. Տէր Պաղտասարեան։*

Փրաւիտենս.— *Սահակ Ճիզմեճեան։*

Պէյրութի Արանց.— *Մարտիրոս Տեմիրճեան։*

Պէյրութի Կանանց.— *Գարեգին Ճերահեան։*

*Ֆրանսայի շրջանի հինգ — 5 — մասնաճիւղեր 10 ձայնով կը մասնակցին, իրենց կողմէ ընտրուած պատգամաւորներով։ Բայց չէ յիշուած թէ ո՞ր մասնաճիւղի ձայնը ո՛վ կը ներկայացնէ, միայն գրուած է պատգամաւորներու անունները հետեւեալ կերպով.—*

| | |
|---|---|
| *Սարգիս Մանուշեան* | 2 ձայն |
| *Խաչատուր Մանուշեան* | 2 ձայն |
| *Արիս Օյմայեան* | 2 ձայն |
| *Լեւոն Մուրատեան* | 2 ձայն |
| *Նափոլէոն Մարգարեան* | 2 ձայն։ |

Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Աւետիս Աւետիսեան՝ Ատենապետ, իսկ Լեւոն Մուրատեան՝ Ատենադպիր։

Այս ժողովին մէջ կ'որոշուի Ընկերութեանս շէնքին վրայ եղած մորթ-կէճը վճարելու համար նոր ձեւ մը որդեգրել, որն է.—

«Նկատելով որ դրամատուները առ հարիւր երկու տոկոս միայն կը վը-ճարեն, եւ նկատելով որ Ընկերութիւնը առ հարիւր վեց տոկոս կը վճարէ, լաւագոյն կերպը մեր ունեւոր հայրենակիցներէն փոխառութիւն ընելով վը-ճարելն է, որու համար Ընկերութիւնս կ'երաշխաւորէ այս ձեւով փոխ առ-նուած գումարները։»

Համերաշխութեան հարցը վերջի քանի մը տարիներուն խնդրոյ առար-կայ եղած է եւ այս առթիւ որոշումներ տրուած են։ Այս ժողովն ալ նոյնպէս կոչ կ'ընէ բոլոր հայրենակիցներուն, որ մէկ կողմ դնեն բսի-բսաները — կիրք, ատելութիւն եւ կուսակցական խնդիրներ — եւ գան միանան Ընկերու-թեանս շարքերուն։

Ընկերային ծառայութեան հարցի մասին տեղի կ'ունենայ լայն խոր-հրդակցութիւն։ Ընկերային ծառայութիւն ընելով կը հասկցուի ապահովա-գրութիւն անդամներու եւ հայրենակիցներու. բայց նկատի ունենալով, որ այս կարգի ծանր հարց մը չէ կարելի լուծել կարճ ժամանակի մէջ, կ'որոշուի այս հարցը թողուլ Փրաւիտենսի մասնաճիւղին, որ լայնօրէն ուսումնասիրե-լով հարցը, մշակէ ծրագիր մը եւ ներկայացնէ յաջորդ Պատգ. Ժողովին։

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, որով յայտնի կ'ըլլայ որ այդ շրջանին ընդհանուր մուտք եղած է 11,591,84 տոլար, ընդհա-նուր ելք եղած է 8,789,68 տոլար։Գանձը կը մնայ 2,802,16 պատրաստ դրամ։

Կեդրոնական Վարչութեան համար ընտրութիւն տեղի ունենալով կ'ըն-տրուին Տիկ. Վարդանոյշ Փապուճեան, Մարգար Մարգարեան, Յակոբ Ուր-լեան, Սեդրակ Քիւփելեան, Խսրով Որբերեան, Լութվիկ Տէր Յակոբեան, Պօղոս Էմիրիկեան։

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.—

Մարգար Մարգարեան — Ատենապետ
Յակոբ Ուրլեան — Ատենադպիր
Սեդրակ Քիւփելեան — Գանձապահ

1939-ի Սեպտեմբերի սկիզբը սկսաւ Երկրորդ Համաշխարհային պա-տերազմը։ Ֆրանսայի շրջանի մեր մասնաճիւղերու անդամներու մեծամաս-նութիւնը զինուորական տարիքի մէջ եղած ըլլալով զինուորագրուած են Ֆրանսական բանակին եւ մնացեալներն ալ մատնուած են անստոյգ վիճակի։

Քաղաքական պայմաններու բերումով Ֆրանսայի մէջ եղող օտար կազ-մակերպութիւններ օրէնքով դադրած են գոյութիւն ունենալէ, որոնց կարգին նաեւ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան 10-էն աւելի մասնաճիւղերը։

Քլիվլենտի մէջ եղող երկու մասնաճիւղերը միացնելու եւ լուծուած կամ անգործութեան մատնուած մասնաճիւղերը վերակազմելու աշխատանք-ները եղած են Կեդր. Վարչութեան գործառնութիւնները։

## ԵՐԵՍՈՒՆԵՕԹՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Երեսունեօթներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Օգոստոս* 31, 1940–*ին, Փրաւիտենսի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին* 10 *մասնաճիւղերու* 11 *պատգամաւորները՝* 13 *ձայներով։*

Կեդր. Վարչութիւն.— *Տիկ. Վարդանոյշ Փապուճեան։*

Փրաւիտենս.— *Նշան Կանանեան։*

Ֆիչպուրկ.— *Նշան Կանանեան։*

Նիւպըրկ.— *Յ. Աւետիսեան եւ Սահակ Ճիզմեճեան։*

Նիւ Եորք.— *Գէորգ Ճիւվելեկեան։*

Ֆիլատելֆիա.— *Սեդրակ Տանտիկեան՝* 2 *ձայն։*

Նիւպըրկի կանանց.— *Տիկ. Եղիսաբէթ Մարտիկեան։*

Ուստր.— *Սարգիս Մանուչեան։*

Պէյրութի Արանց.— *Մկրտիչ Ճիզմեճեան։*

Պէյրութի կանանց.— *Նշան Տանտիկեան։*

Երուսաղէմ.— *Աւետիս Աւետիսեան։*

*Մնայուն դիւանը կը կազմեն Սարգիս Մանուչեան՝ Ատենապետ, իսկ Նշան Կանանեան՝ Ատենադպիր։*

*Այս ժողովին մէջ եկած հարցերը նորութիւն մը չեն ցուցներ։*

*Ընկերային ծառայութեան հարցի մասին որոշուած յանձնախումբը կը ներկայացնէ իր ծրագիրը, որու գործադրութեան վերջնական կարգադրութիւնները կը ձգուին Կեդր. Վարչութեան։*

Նոր Մալաթիա *պարբերաթերթի խմբագրական կազմի ընտրութիւնը եւ անոր հովանաւորութիւնը կը ձգուին Կեդր. Վարչութեան։*

*Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, որով այդ շրջանի ընդհանուր մուտք եղած է* 11,021,20 *տոլար, ընդհանուր ելք եղած է* 9,916,38 *տոլար։ Գանձը կը մնայ* 1,104,82 *տոլար պատրաստ դրամ։*

*Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին.—*

*Սեդրակ Քիւփելեան, Մարգար Մարգարեան, Յակոբ Ուըլեան, Տիկ. Վ. Փապուճեան, Տիկ. Մարիցա Զրթաֆեան, Մանուէլ Արունի, Լ. Տէր Յակոբեան։*

*Նորընտիր Կեդր. Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.—*

*Մարգար Մարգարեան* — *Ատենապետ*
*Յակոբ Ուըլեան* — *Ատենադպիր*
*Սեդրակ Քիւփելեան* — *Գանձապահ*

*Նիւ Եորքի մէջ կազմալուծուած Երիտասարդաց Միութեան գանձը եղած դրամի խնդիրը, որ ժամանակէ մը ի վեր խորհրդածութեան առարկայ էր, վերջապէս կարելի կ'ըլլայ երկու կողմերու համաձայնութեամբ կարգադրել։*

*Այս շրջանի Կեդրոնական Վարչութեան գործառնութիւնները կեդրոնացած են տեղական մասնաճիւղերու կազմակերպական աշխատանքներով։*

*Պատերազմի բերումով Ֆրանսայի շրջանի հետ ոեւէ յարաբերութիւն հաստատել կարելի չ'ըլլար։*

# ԵՐԵՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Երեսունութերորդ Պատգ. ժողովը գումարուած է Օգոստոս* 31, 1941–*ին, Քլիվլենտի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին* 12 *մասնաճիւղերու* 13 *պատգամաւորները* 14 *ձայներով։*

Կեդր. Վարչութիւն. — *Տիկ. Վ. Փափազեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Յովհաննէս Նազարեթեան։*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Սեդրակ Տանտիկեան։*

Նիւպըրկի Արանց. — *Արմենակ Արփաճեան։*

Նիւպըրկի Կանանց. — *Քերոբ Օտապաշեան։*

Նիւ Եօրքի Արանց. — *Մանուէլ Արունի։*

Նիւ Եօրքի Կանանց. — *Մանուէլ Արունի։*

Տիթրոյթ. — *Մուրատ Մուրատեան։*

Փրավիտենս. — *Յովհաննէս Ափալաքեան։*

Ուստր. — *Գրիգոր Խանձեան եւ Ս. Մարտիկեան։*

Ֆիչպուրկ. — *Յովհաննէս Տէյիրմենճեան։*

Պէյրութ. — *Յովհաննէս Թերզիեազուպեան։*

Երուսաղէմ. — *Աբրահամ Պեննէեան։*

*Անայուն դիւանի համար կ'ընտրուին Յովհաննէս Նազարեթեան՝ Ատենապետ, իսկ Մուրատ Մուրատեան՝ Ատենադպիր։*

*Այս ժամանակները սովորութիւն եղած էր Պատգ. Ժողովներու կողմէ ողջոյնի հեռագիրներ ղրկել Խորհրդային Հայաստանի կառավարութեան եւ Նոր Մալաթիոյ համայնքին. այնպէս որ կրկնութիւններէ խուսափելու համար զանց կ'ընենք յիշել ամէն ժողովի արձանագրութեան մէջ։*

*Պատերազմի բերումով Ֆրանսայի եւ Սուրիոյ կարօտ հայրենակիցներու օգնութեան համար կը բացուի* ԵՐԵՔ ՀԱԶԱՐ (3,000) *տոլարի ֆոնտ մը, որ կը բաժնուի մասնաճիւղերու վրայ, համաձայն իրենց կարողութեան եւ թիւին։*

*Քլիվլենտի եւ Նիւպըրկի մասնաճիւղերը կը միանան եւ ժողովին մէջ կը կազմուի Քլիվլենտի միացեալ մասնաճիւղի վարչութիւնը եօթ անդամներով։*

*Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, որով այդ շրջանի ընդհանուր մուտք եղած է* 9,542,10 *տոլար, ընդհանուր ելք եղած է* 7,3800,69 *տոլար։ Գանձը կը մնայ* 2,161,41 *տոլար պատրաստ դրամ։*

*Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին. —*

*Խաչում Պօնափարթեան, Տիկ. Վ. Փափազեան, Ս. Քիւփելեան,*

Մարգար Մարգարեան, Մանուէլ Արունի, Յակոբ Ուրլեան եւ Բենիամին Խաչատուրեան։

Խորէն Պօնափարթեան եւ Բենիամին Խաչատուրեան բանաւոր պատճառներով կը հրաժարին եւ անոնց տեղ կը հրաւիրուին Պօղոս Էմրիկեան եւ Յակոբ Առաքելեան։

Դիւանը կը կազմուի այսպէս.—

| | |
|---|---|
| Մարգար Մարգարեան | Ատենապետ |
| Տիկ. Վ. Փափուճեան | Ատենադպիր |
| Սեդրակ Քիւփելեան | Գանձապահ |

1941, Դեկտեմբեր 7-ին Ամերիկա կը մտնէ Երկրորդ Համաշխարհային Պատերազմին մէջ եւ կրկին միլիոնաւոր երիտասարդներ կը զինուորագրուին, որոնց կարգին նաեւ բազմաթիւ հայ երիտասարդներ։

## ԵՐԵՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Երեսունիններորդ Պատգամաւորական Ժողովը գումարուած է Սեպտ. 5, 1942-ին, Նիւ Եորքի մէջ։

Ժողովին կը մասնակցին 8 մասնաճիւղերու 12 պատգամաւորներ 12 ձայնով։

Կեդր. Վարչութիւն.— Տիկ. Վ. Փափուճեան։

Նիւ Եորք.— Խ. Պօնափարթեան եւ Տիկ. Սաթենիկ Էմրիկեան։

Ֆիլատելֆիա.— Գէորգ Տէր Պաղտասարեան եւ Սեդրակ Տանտիկեան։

Քլիվլենտ.— Յովհաննէս Ափարաքեան եւ Լ. Տէր Յակոբեան։

Փրաւիտենս.— Յարութիւն Աւետիսեան։

Ուստր.— Ներսէս Առաքելեան։

Տիթրոյիթ.— Զաքէոս Խաչատուրեան։

Պէյրութ.— Խորէն Որբերեան։

Երուսաղէմ.— Տիկ. Նարդուհի Մարգարեան։

Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Խ. Պօնափարթեան՝ Ատենապետ, իսկ Գէորգ Տէր Պաղտասարեան՝ Ատենադպիր։

Երկիրը պատերազմի ըլլալով, Պատգ. Ժողովը հեռագրով Նախագահ Ռուզվելթի կը յայտնէ իր յարգանքը, վստահութիւնը եւ պատերազմը շահելու լիակատար աջակցութիւնը։

Այդ օրերուն Ամերիկայի մէջ կազմուած էր Հայկական Յանձնախումբը, որու նպատակն էր օգնել Ռուսիոյ Րելիֆի դեզօրայքի եւ այլ կարիքներու համար։

Պատգ. Ժողովը կ'որոշէ տալ Երեք Հարիւր (300) տոլար Ամերիկահայոց Առաջնորդ Տ. Գարեգին Արքպ. Յովսէփեանի, այն նպատակին յատկացուելու համար։

Ամերիկայի պատերազմական ջանքերուն օգնելու համար կ'որոշուի

*գնել Երկու Հազար* (2,000) *տոլարի* պոնտեր: *Միեւնոյն ժամանակ կը թելադրուի, որ ամէն հայրենակից պարտականութիւն համարէ, իր կարողութեան չափով, գնելու այդ* պոնտերէն, *չարունակաբար*:

*Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, ուրկէ յայտնի կ'ըլլայ, որ այդ շրջանին ընդհ. մուտք եղած է* 11,777,11 *տոլար, ընդ. ելք եղած է* 7,721,14 *տոլար: Գանձը կը մնայ* 4,055,97 *տոլար պատրաստ դրամ*:

*Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին.—*

*Տիկ. Վ. Փապուճեան, Խ. Պօնափարթեան, Ս. Քիւփելեան, Մարգար Մարգարեան, Մանուէլ Արունի, Խ. Որբերեան, Յակոբ Ուրլեան եւ Պօղոս Էմրիկեան*:

*Նորընտիր Կեդր. Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.—*

| | |
|---|---|
| *Մարգար Մարգարեան* | *Ատենապետ* |
| *Տիկ. Վ. Փապուճեան* | *Ատենադպիր* |
| *Ս. Քիւփելեան* | *Գանձապահ* |

Սասունցի Դաւիթ*—ի հրասայլի հանգանակութեան մասնակցելու համար Տ. Գարեգին Արքեպիսկոպոսի կողմէ եղած կոչին Ընկերութիւնս կը մասնակցի Երեք Հարիւր* (300) *տոլարով*:

*Այս շրջանի Կեդրոնական Վարչութիւնը բացի մասնաճիւղերու հետ իր սովորական յարաբերութիւններէն եւ* Նոր Մալաթիա *թերթի հրատարակութեան աշխատանքներէն, պայմաններն ու պարագաները թոյլ տուած չեն ուրիշ գործառնութիւններ ընելու*:

## ՔԱՌԱՍՈՒՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Քառասուներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր* 5, 1943*–ին, Ուստրի մէջ*:

*Ժողովին կը մասնակցին* 8 *մասնաճիւղեր* 13 *ձայներով*::

Կեդր. Վարչութիւն.— *Տիկ. Վ. Փապուճեան*:

Նիւ Եորք.— *Յակոբ Ուրլեան եւ Զաքէոս Խաչատուրեան*:

Ֆիլատելֆիա.— *Պ. Զօպիեան եւ Գրիգոր Տէյիրմենճեան*:

Ուստր.— *Ներսէս Առաքելեան եւ Յովհաննէս Մարգարեան*:

Քլիվլենտ.— *Սեդրակ Տէր Պաղտասարեան եւ Գ. Ճիւվելեկեան*:

Փրաւիտենս.— *Ալեքսան Էհլիճանեան*:

Տիթրոյիթ.— *Սիմոն Սիմոնեան*:

Պէյրութ.— *Սեդրակ Տանտիկեան*:

Երուսաղէմ.— *Սարգիս Մանուչեան*:

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Պետրոս Զօպիեան՝ Ատենապետ, իսկ Յակոբ Ուրլեան՝ Ատենադպիր*:

*Այս ժողովը գլխաւորապէս կը զբաղի պատերազմի առիթով բոլալիք օգնութեան խնդիրներով եւ Կրթասիրաց Ընկերութեան Քառասնամեայ տօ—*

Նակատարութեանց որոշումներով։ Կրկին կ'որոշուի Կեդրոնական Վարչութեան կազմի երկու անդամները ընտրուին մօտակայ քաղաքներէն։

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, որով այդ շրջանի ընդհանուր մուտք եղած է 13,366,95 տոլար, ընդհանուր ելք եղած է 9,933,56 տոլար։ Գանձը կը մնայ 3,433,39 տոլար պատրաստ դրամ։

Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին հետեւեալները Նիւ Եորքէն.—

Խորէն Պոնափարթեան, Տիկ. Վ. Փապուճեան, Ս. Քիւփելեան, Յակոբ Ուրլեան, Խորէն Որբերեան։ Ֆիլատելֆիայէն կ'ընտրուին.— Գէորգ Տէր Պաղտասարեան, իսկ Փրաւիտենսէն ալ Աւետիս Աւետիսեան։

Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.—

Խորէն Որբերեան — Ատենապետ
Տիկ. Վ. Փապուճեան — Ատենադպիր
Ս. Քիւփելեան — Գանձապահ

Փետրուար 29, 1944–ին իր մահկանացուն կը կնքէ Ընկերութեանս բազմավաստակ վեթերան Մարգար Մարգարեան։ Կեդրոնական Վարչութիւնը, մասնաճիւղերը եւ հայրենակիցներ կը ողբան մեծ կորուստը եւ ծաղկեփունջերով եւ փոխան ծաղկեպսակի հանգանակութեամբ կը յարգեն հանգուցեալին յիշատակը։

Ազգային Խորհուրդի Տուփերու հանգանակութեանց եւ Բարեգործական Ընդհանուր Միութեան Քառորդ Միլիոն Տոլարի հանգանակութեանց կը մասնակցի Ընկերութիւնս Հարիւր Յիսունական (150) տոլարով։

Ժամանակէ մը ի վեր դադար առած Պոսթոնի մասնաճիւղը կը վերակազմուի եւ կը սկսի շինարար աշխատանքի։

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը կ'անդամակցի Ազգային Խորհուրդին։

## ՔԱՌԱՍՈՒՆՄԷԿԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Քառասունմէկերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Ֆիլատելֆիոյ մէջ, Սեպտ. 2, 1944–ին։

Ժողովին կը մասնակցին 9 մասնաճիւղեր 14 ձայներով։

Կեդր. Վարչութիւն.— Տիկ. Վ. Փապուճեան։

Քլիվլենտ.— Սեդրակ Պաղտասարեան եւ Յովհ. Սփարթեան։

Պոսթոն.— Ռուբէն Պարմաքեան։

Ուստր.— Ներսէս Առաքելեան։

Ֆիլատելֆիա.— Պ. Զօպեան եւ Տ. Տօնապետեան։

Նիւ Եորք.— Պօղոս Խմըրկեան — 2 ձայն։

Փրաւիտենս.— Յովհաննէս Խարբութլեան։

Տիթրոյիթ.— Ս. Տանտիկեան եւ Ն. Քիւնտիպեկեան։

Երուսաղէմ.—— Յարութիւն Փիլիպպոսեան։

Ժողովին միայն դիւանի անդամ կ'ընտրուին Յովհաննէս Ախալաքեան՝ Ատենապետ, իսկ Տօնապետ Տօնապետեան՝ Ատենադպիր:

Կրտսերաց Լիկաներ կազմելու խնդիրը կրկին սեղանի վրայ կը բերուի եւ կը վերահաստատուի նախորդ որոշումը, այսինքն թելադրել բոլոր մասնաճիւղերը որ իրենց տեղին վրայ երիտասարդներ կազմակերպելու աշխատանք կատարեն:

Պատերազմի աղէտեալներուն համար Հինգ Հազար (5,000) տոլարի քեմփէյն մը կը բացուի:

Պատուոյ բաժակը կը տրուի Բլիմֆիլտի մասնաճիւղին:

Ընկերութեան չէնքի մորթկէճը վճարելու համար կ'որոշուի, հինգ (5) տարուան ժամանակամիջոցին վճարելու պայմանով, պոնտեր հանել եւ ծախել հայրենակիցներու, տոկոսը խնայելու համար:

Նոր Մալաթիա պարբերաթերթի տպագրման եւ ճոխացման համար կ'որոշուի խմբագրական կազմ մը ընտրել, Կեդրոնական Վարչութեան հետ միասնաբար, այդ ուղղութեամբ պէտք եղած աշխատանքները կատարելու համար:

Խմբագրական կազմի համար կ'ընտրուին Տիկ. Վ. Փապուճեան, Տօնապետ Տօնապետեան եւ Ռուբէն Պարմագեան:

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, որով այդ շրջանի ընդհ. մուտք եղած է 16,519.94 տոլար, ընդհ. ելք եղած է 8,488,39 տոլար: Գանձին մէջ կը մնայ 8,031.55 տոլար պատրաստ դրամ:

Կեդրոնական Վարչութեան համար ընտրութիւն կատարուելով, կ'ընտրուին հետեւեալները.—

Ս. Քիւփէլեան, Յակոբ Ուրլեան, Տիկ. Վ. Փապուճեան, Խ. Որբերեան, Զաքէոս Խաչատուրեան, Լեւոն Փափազեան եւ Գէորգ Տէր Պաղտասարեան:

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կ'ընտրէ.—

| | |
|---|---|
| Խոսրով Որբերեան | Ատենապետ |
| Տիկ Վ. Փապուճեան | Ատենադպիր |
| Ս. Քիւփէլեան | Գանձապահ |

Ընկերութեան չէնքի մորթկէճին համար նոր պայմանագրութիւն մը կը կնքուի դրամատան հետ երեք (3) տարուան ժամանակով: Միեւնոյն ատեն պոնտերը հրապարակ հանելով կը ծախեն աւելի քան Ինն Հազար (9000) տոլարի պոնտ, որ անմիջապէս կը յատկացուի մորթկէճի վճարումին:

Պատերազմի պատճառով կարելի չըլլար սերտ կապ պահել արտասահմանի մասնաճիւղերուն եւ Նոր Մալաթիայ համայնքին հետ:

# ՔԱՌԱՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Կրթասիրաց Ընկերութեան Քառասուներկուերորդ Պատգ. Ժողովը տեղի կ'ունենայ Սեպտ. 1, 1945–ին, Սր. Յակոբ Եկեղեցւոյ սրահը, Ուոթըրթաունի մէջ։*

*Պատգ. ժողովին կը մասնակցին 11 մասնաճիւղերու պատգամաւորները 19 ձայներով։*

Կեդր. վարչութիւն. — *Գէորգ Տէր Պաղտասարեան։*

Նիւ Եորք. — *Մանուէլ Արունի։*

Ուստր. — *Ն. Մարգարեան եւ Տիկ. Աղապի Տոտաքեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Պ. Զօպիեան եւ Ս. Տանտիկեան։*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Տիկ. Մ. Մազմանեան եւ Տիկին Ն. Տանտիկեան։*

Ֆիլատելֆիոյ Կրտսերաց Լիկա. — *Օր. Մարի Տանտիկեան։*

Քլիվլենտ. — *Լեւոն Թերխանեան եւ Յ. Աթոլլիկեան։*

Պոսթոն. — *Ռուբէն Պարմաքեան եւ Յակոբ Տողանեան։*

Փրաւիտենս. — *Աւետիս Աւետիսեան։*

Երուսաղէմ. — *Ի. Տէր Յովհաննէսեան։*

Հալէպի Արանց. — *Տիկ. Հերմոն Պարմաքեան։*

Հալէպի Կանանց. — *Գոհարիկ Թիւթիւնճեան։*

Տիթրոյիթ. — *Նափոլէոն Պարմաքեան։*

Ծանօթութիւն. — *Ֆիլատելֆիոյ Արանց, Կանանց եւ Կրտսերաց Լիկայի նշանակուած պատգամաւորները — Պրնք. Զօպիեան, Տանտիկեան, Տիկք. Մազմանեան, Տանտիկեան եւ Օր. Տանտիկեան — որոնք ճամբայ ելած եւ մինչեւ Փրաւիտենս եկած էին, հոն կը տեղեկանան Նշան Տանտիկեանի յանկարծամահ ըլլալու տխուր լուրին եւ անմիջապէս կը վերադառնան Ֆիլատելֆիա։*

*Պատգ. ժողովն այս առթիւ հարկադրաբար կ'ընէ հետեւեալ կարգադրութիւնը.*

*Ֆիլատելֆիոյ Արանց մասնաճիւղի երկու ձայները կը յանձնէ Պրն. Լեւոն Փափազեանի, իսկ Կանանց մասնաճիւղի ձայնը Տիկ. Մ. Մազմանեանի։*

*Պատգ. ժողովի մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Ռուբէն Պարմաքեան՝ Ատենապետ, իսկ Ի. Տէր Յովհաննէսեան՝ Ատենադպիր։*

*Ընկերութեան շէնքի մորթկէճի ամբողջական վճարումին եւ պարտերու վաճառումին համար Պատգ. Ժողովը կ'ընտրէ Յանձնախումբ մը, որ Կեդր. Վարչութեան հետ խորհրդակցաբար պէտք եղած աշխատանքները պիտի կատարէ սպառելու համար պարտերը, որպէսզի կարելի ըլլայ շէնքի մորթկէճը վճարել ամբողջութեամբ։*

*Այս յանձնախումբին անդամ կ'ընտրուին Ս. Մանուշեան, Ա. Աւետիսեան եւ Նշան Կանանեան։*

*Նոր Մալաթիոյ Համայնքին կարիքներուն օգնելու համար միջոցներու*

մասին խորհրդակցութիւններ տեղի կ'ունենան, որովհետեւ պատերազմի բերումով ուղղակի յարաբերութիւն ունենալ կարելի չէ եղած, եւ նկատելով որ Էջմիածին Ամենայն Հայոց Կաթողիկոսի ընտրութեան համար Ամերիկայէն գացող պատգամաւորներէն մին էր մեր ծանօթ հայրենակից Պրն. Առաքել Եագըճեան, Քալիֆորնիայէն, եւ որ Կեդրոնական Վարչութիւնը լաւ խորհուրդը ունեցած է զինքը նշանակելով Ընկերութեանս լիազօրը, Պատ. Ժողովը յարմար կը նկատէ սպասել Պրն. Ա. Եագըճեանի վերդարձին եւ անոր ականատեսի տեղեկութեանց, որպէսզի անոր համեմատ ընթացք տայ պէտք եղած կարիքներուն:

Կ'որոշուի որ մեր Կեդրոնական Վարչութիւնը մաս կազմէ եւ իր լիակատար օժանդակութիւնը տայ յառաջիկային կազմուելիք Ներգաղթի Յանձնախումբին:

Տասը հազար (10,000) տոլարի նոր քեմփէյն մը կը բացուի:

Նոր Մալաթիա թերթի ուղղութեան համար, ժողովս կը նշէ որ «Նոր Մալաթիա թերթը քաղաքական հրատարակութիւն մը չէ, այլ սոսկ Մալաթիացիներով եւ Մալաթիացիներու կեանքով ու գործունէութեամբ հետաքրքիր, անոնց ուրախութեանց մասնակից եւ ցաւերուն ցաւակից եղող պարբերաթերթ մըն է եւ հետեւաբար անոր լեզուն եւ ուղղութիւնը պէտք է ըլլայ վայելուչ, հայրենասիրական եւ միեւնոյն ժամանակ դաստիարակիչ:»

Պատուոյ Բաժակը կրկին կը տրուի Քլիվլենտի մասնաճիւղին:

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին. որով այս շրջանի ընդհ. մուտք եղած է 30,027,95 տոլար, իսկ ընդհ. ելք եղած է 16,868,66 տոլար: Գանձը կը մնայ 13,159,29 տոլար:

Կեդրոնական Վարչութեան ընտրութիւն.— Կեդր. Վարչութիւնն իր զեկոյցով եւ Նիւ Եորքի մասնաճիւղի պատգամաւորները բերանացի տեղեկացուցին որ գործին յաջողութիւնը կը պահանջէ որ կեդրոնը փոխադրուի աւելի գործօն եւ յարմար վայր մը:

Արդէն, Ընկերութեանս հիմնարկութեան թուականէն ի վեր, այսինքն անցեալ 41 տարիներու ընթացքին, բացի միայն երկու տարիէն Կեդրոնական Վարչութեանց ծանր ու պատասխանատու գործը տարած են մեր Նիւ Եորքի հայրենակիցները, ի գին ծանր զոհողութեանց:

Անոնցմէ շատեր այսօր առ յաւէտ բաժնուած են մեզմէ՝ մեզի ձգելով սիրելի աւանդ մը, յանձին Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան:

Յարգա՛նք անոնց անմոռանալի յիշատակին:

Պատգ. Ժողովը խորապէս գնահատելով մեր Նիւեորքաբնակ հայրենակիցներու մատուցած այս ծանր եւ թանկագին ծառայութիւնները, կ'որոշէ զանոնք ազատել այդ ծանր լուծէն:

Այս մասին լուրջ խորհրդակցութիւններէ ետք, յարմարագոյն վայր կը նկատուի Ֆիլատելֆիան, միեւնոյն ժամանակ անոնց տալով երկու խորհրդականներ Նիւ Եորքէն:

Ֆիլատելֆիոյ պատգամաւորներուն կողմէ ներկայացուած եռապատիկ

ցանկէն կ'ընտրուին հետեւեալները.—

Պետրոս Զօպեան, Լեւոն Փափազեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Միսաք Մազմանեան, Տիկ. Մարիամ Մազմանեան։ Նիւ Եորքէն ընտրուած երկու խորհրդականներն են Յ. Ուլեան եւ Մ. Քիւփելեան։

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր գլուխը կը կազմէ.—

| | |
|---|---|
| Լեւոն Փափազեան | Ատենապետ |
| Գէորգ Տէր Պաղտասարեան | Ատենադպիր |
| Միսաք Մազմանեան | Գանձապահ |

Շէնքին խնամակալ կը նշանակուի Յակոբ Ուլեան։

Սեդրակ Քիւփելեան առողջական պատճառներով կը հրաժարի եւ անոր տեղ կը հրաւիրուի Նիւ Եորքէն Մ. Արունի։

---

Պրն. Առաքել Եագըճեան կը վերադառնայ Հայաստանէն եւ կ'այցելէ մասնաճիւղերը ու կու տայ լայն տեղեկութիւններ Հայաստանի, ի մասնաւորի Նոր Մալաթիոյ մասին, որու մանրամասնութիւնը լոյս տեսած է Նոր Մալաթիա թերթին մէջ։

Այս տեղեկութեանց վրայ հիմնուելով Կեդր. Վարչութիւնը Չորս (4) երկարաչափ կարի մեքենաներ կը գնէ Ինը Հարիւր Ութսուն (980) տոլարի եւ կը ղրկէ Նոր Մալաթիա։

Երկրորդ Համաշխարհային Պատերազմը վերջ կը գտնէ եւ Կեդր. Վարչութիւնը կը սկսի յարաբերութեան մէջ մտնել Ֆրանսայի շրջանակին հետ, այն տեղի հայրենակիցներուն ղրկելով Հարիւր Յիսուն (150) մեծ ծրար հագուստեղէն եւ նիւթական օգնութիւն։

Կեդր. Վարչութեան հրաւէրով տեղի կ'ունենայ խորհրդակցական ժողով մը եւ այդ ժողովին մէջ կը ծախսուի մօտաւորապէս Եօթ Հազար (7,000) տոլարի դրամ եւ յանձնախումբի ծախած դրամերու գումարին միացնելով Ընկերութեան Տան շէնքին մորթկէճն ամբողջութեամբ կը վճարուի։

Ֆրանսայի շրջանակը կը վերակազմուի եւ կ'ունենայ իր Շրջանային Պատգ. Ժողովը եւ այդ ժողովի անունով կոչեր եւ պատգամներ կը սկսին հրատարակել միասնականութեան անունով եւ այդ ուղղութեամբ յանձնախումբեր կը նշանակեն, նոյնիսկ Ամերիկայի մէջ, հակառակ պարագային, բաժանումի սպառնալիքներով, պարագայ մը, որ իրենց իրաւասութեան սահմանէն դուրս էր։

## ՔԱՌԱՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Քառասուներեքերորդ Պատգ. Ժողովի գումարումը տեղի ունեցած է Օգոստոս 31, 1946-ին Փրաւիտենսի մէջ։

Ժողովին կը մասնակցին 15 մասնաճիւղեր 24 ձայներով։

Կեդր. Վարչութիւն.— Գէորգ Տէր Պաղտասարեան։

Ֆիլատելֆիոյ Արանց.— Սեդրակ Տանտիկեան եւ Արամ Աշղարեան։

Ֆիլատելֆիոյ կանանց.— Տիկ. Նոյեմզար Մազմանեան եւ Սիրանոյշ Ալաղարեան։

Ֆիլատելֆիոյ Երիտասարդաց.— Յակոբ Տանտիկեան։

Ուստր.— Նափոլէոն Մարգարեան եւ Ներսէս Աւաքելեան։

Փրաւիտենս.— Գէորգ Ճիւմելեկեան։

Նիւ Եորք.— Զաքէոս Խաչատուրեան։

Գլիվլենտ.— Արամ Արամեան եւ Լեւոն Թերխանեան։

Տիթրոյիթ.— Յովհաննէս Խարբութլեան։

Պոսթըն.— Ի. Տէր Յովհաննէսեան եւ Ռուբէն Պարմաղեան։

Երուսաղէմ.— Մ. Էլիճանեան։

Պէյրութ.— Յարութիւն Աւետիսեան եւ Ս. Էլիճանեան։

Հալէպ.— Յարութիւն Աւետիսեան եւ Սահակ Ճիգմէճեան։

Հալէպի Արանց.— Նազարէթ Շահրիկեան եւ Լ. Մուրատեան։

Ֆրեզնօյ.— Նշան Կանանեան։

Լոս Անճելըս.— Խաչատուր Երկայնեան։

Պատ. Ժողովի մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Ռուբէն Պարմաղեան՝ Ատենապետ, իսկ Լեւոն Թերխանեան՝ Ատենադպիր։

Պատ. Ժողովը նկատի ունենալով Ֆրանսայի շրջանակի հակաօրինական ընթացքը, կը թելադրէ այդ շրջանակին որ համակերպին Ընկերութեան Պատ. Ժողովներու որոշմանց եւ կանոնագրութեան տրամադրութիւններուն։

Պոնտեր Ծախող Յանձնախումբը կը զեկուցանէ որ ցարդ ծախսած է մօտ Տասն եւ Վեց Հազար (16,000) տոլարի պոնտ եւ աւելի ծախելու կարիք չկայ։

Միջ-Հայրենակցական Միութիւնը կը կազմուի եւ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը մաս կը կազմէ այդ միութեան։

Ներգաղթի միջոցաւ մեծ թիւով հայրենակիցներ Հայաստան փոխադրելու համար կ'որոշուի Քսան Հազար (20,000) տոլարի քեմփէյն մը։

Միասնականութեան կամ միացումի բաղձանք յայտնող հայրենակիցներու գոհացում տալու համար Պատ. Ժողովը կ'որոշէ որ Հարազատ անունով գործողներ վերջ տան իրենց անջատ գոյութեան եւ իրենց նիւթական հաշիւները յանձնեն մայր ընկերութեան եւ միանան տեղական մասնաճիւղերուն։ Այս մասին որոշուեցաւ դիւանի կողմէ լոյս ընծայել մասնաւոր Կոչ-Հրաւէր մը։

Պատուոյ Բաժակը կը տրուի Ֆիլատելֆիոյ մասնաճիւղին։

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, որով այդ շրջանի ընդհ. մուտք եղած է 37,111,86 տոլար, իսկ ընդհ. ելք եղած է 32,979,98 տոլար։ Գանձը կը մնայ 4,131,88 տոլար։

Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին.—

Լեւոն Փափազեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Տիկ. Մարիամ Մազմանեան, Պետրոս Զօպեան, Միսաք Մազմանեան, Խոսրով Պօնափարթեան եւ Յակոբ Ուրլեան։ Վերջին երկուքը Նիւ Եորքէն։

Նոր Կեդրոնական Վարչութիւնը կը կազմէ իր դիւանը այսպէս.—

Լեւոն Փափազեան — Ատենապետ
Գէորգ Տէր Պաղտասարեան — Ատենադպիր
Միսաք Մազմանեան — Գանձապահ

Ներգաղթողներու համար կը ղրկուի Ութ Հազար (8,000) տոլար:

Միջ-Հայրենակցականի կողմէ կազմակերպուած ՎՐԱՆԻ քեմփէյնին կը տրուի Երկու Հազար (2,000) տոլար: Բարեգործական Միութեան բացած ՄԷԿ ՄԻԼԻՈՆ տոլարի հանգանակութեան տրուած է Երեք Հազար (3,000) տոլար:

Ֆրանսայի մէջ կը կազմուի Ութ (8) զօրաւոր մասնաճիւղեր, որոնք Ընկերութեան բացած Քսան Հազար տոլարի քեմփէյնին կը մասնակցին Երեք Հազար (3,000) տոլարով:

Ուտրի մէջ կը մահանայ մեր հայրենակիցներէն Պրն. Ստեփան Պէրպէրեան, որ իր ամբողջ ունեցածը 20,000 (Քսան Հազար տոլար) կը կտակէ Նոր Մալաթիոյ մէջ Կրթական շէնքի մը կառուցման՝ Բարեգործականի միջոցաւ:

Այս օրերուն Նիւ Եորքի մէջ կը գումարուի Համաշխարհային Հայկական Ընդհանուր Քանկրէսը: Կեդրոնական Վարչութիւնը Ընկերութեան անունով կը մասնակցի Քանկրէսին: Մասնաճիւղերէ ոմանք ալ կը ղրկեն իրենց առանձին ներկայացուցիչները:

## ՔԱՌԱՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ ՊԱՏԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Քառասունչորսերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Նիւ Եորքի մէջ, Օգոստոս 30, 1947-ին, Հօթէլ Էմփայրի Էմպսի Հոլին մէջ:

Ժողովին կը մասնակցին 21 մասնաճիւղեր 31 ձայներով:

Կեդր. Վարչութիւն.— Գէորգ Տէր Պաղտասարեան:
Քլիվլենտ.— Քերոբ Օտապաշեան եւ Յովհաննէս Թերզիեազուպեան:
Պոսթոն.— Ռուբէն Պարմազեան — 2 ձայն:
Ուստր.— Խաչատուր Մանուշեան — 2 ձայն:
Ֆիլատելֆիոյ Արանց.— Արամ Աղազարեան և Տօնապետ Տօնապետեան:
Ֆիլատելֆիոյ Կանանց.— Տիկ. Մաքրուհի Մազմանեան:
Ֆիլատելֆիոյ Կրտսերաց.— Օր. Մարի Տանտիկեան:
Փրաւիտենս.— Գէորգ Ծիւլէյէկեան:
Նիւ Եորք.— Յակոբ Ուրլեան:
Տիթրոյիթ.— Յովհ. Թերզիեազուպեան:
Ֆրեզնոյ.— Ստեփան Մազմանեան:
Վալանս.— Տիկ. Մարիամ Տէր Պաղտասարեան:
Ռոման.— Խօսրով Պոնափարթեան:
Պոլէն.— Քերոբ Օտապաշեան:

Լիոն․ — *Սեդրակ Տանտիկեան — 2 ձայն։*

Սէն Շամոն․ — *Վարդգէս Ժամկոչեան — 2 ձայն։*

Վիէն․ — *Տօնապետ Տօնապետեան։*

Մարսէյլ․ — *Գրիգոր Տէյիրմենճեան։*

Հալէպի Արանց․ — *Զաքէոս Խաչատուրեան եւ Յակոբ Ուրլեան։*

Հալէպի Կանանց․ — *Խոսրով Որբերեան — 2 ձայն։*

Պէյրութ․ — *Պօղոս Էմրիկեան — 2 ձայն։*

Երուսաղէմ․ — *Արամ Աղազարեան։*

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Ս. Մանուչեան՝ Ատենապետ, իսկ Տօնապետ Տօնապետեան՝ Ատենադպիր։*

*Պէյրութի մէջ եղող Ընկերութեան չէնքը ծախելու հարց կը բերուի եւ կ'որոշուի որ այդ չէնքը ծախուի միայն այն ժամանակ, երբ Պէյրութի հայրենակիցները Հայաստան գնացած են եւ այդ չէնքի կարիքն այլեւս չի զգացուիր։*

*Ընկերութեանս Նիւ Եորքի չէնքն ալ ծախելու հարց կը բերուի եւ ժողովը թեր ու դէմ կարծիքներու փոխանակութիւններէ ետք կ'ընտրէ յանձնախումբ մը, որ այս մասին քննութիւն մը կատարէ անշարժ կալուածքներու մասնագէտներու հետ, ճշդելու համար, թէ ծախե՞լը շահաւոր է թէ պահելը։ Ձեռք բերուած արդիւնքը տեղեկացնել յաջորդ Պատգ. ժողովին։*

*Ընկերութեանս պատմութիւնը գրելու համար կրկին որոշում կը տըրուի։*

*Միասնականութեան եւ Կրտսերաց Լիկաներ կազմելու հարցերը կրկին կ'արծարծուին եւ կը տրուին նոյնանման որոշումներ։*

*Գանձապահի հաշիւները քննելով կը վաւերացուին, որով այդ շըրջանի ընդհ. մուտքն եղած է* 19,458,51 *տոլար, իսկ ընդհ. ելքն եղած է* 13,126,57 *տոլար։ Գանձը կը մնայ* 6,336,94 *տոլար։*

*Կեդրոնական Վարչութեան անդամ կ'ընտրուին.—*

*Գէորգ Տէր Պաղտասարեան, Տիկ. Մարիամ Մազմանեան, Պետրոս Զօպիեան, Լեւոն Փափազեան, Սեդրակ Տանտիկեան, Խոսրով Պոնափարթեան եւ Յակոբ Ուրլեան։ Վերջին երկուքը Նիւ Եորքէն։*

*Նորընտիր Կեդր. Վարչութիւնը կը կազմէ իր դիւանը.—*

| | |
|---|---|
| *Պետրոս Զօպիեան* | *Ատենապետ* |
| *Գէորգ Տէր Պաղտասարեան* | *Ատենադպիր* |
| *Միսաք Մազմանեան* | *Գանձապահ* |

*Թերթի խմբագրական կազմին համար կը նշանակուին Յարութիւն Փիլիպպոսեան եւ Տօնապետ Տօնապետեան։*

1947 *Սեպտեմբեր* 6, *Շաբաթ օր, Ռուսական* Ռոսիա *հսկայ շոգենաւով Մարսէյլէն կը մեկնի Ֆրանսահայ Ներգաղթի առաջին կարաւանը իր հետ տանելով Երեք Հազար Հինգ Հարիւր* (3,500) *հայրենադարձներ, որոնցմէ* 17 *ընտանիք —* 79 *անդամներ — Մալաթիացիներ են։*

*Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Մարաշլըի մասնաճիւղի յայտնաբերած հողածութիւնը հայրենադարձներու ինչքերու փոխադրութեան եւ այլ մատուցած ծառայութիւնները խիստ գնահատելի են, որոնց մանրամասնութիւնները և նկարները իր տեղին դետեղուած են* Նոր Մալաթիա *թեր-թին մէջ։*

Ամերիկահայ Ներգաղթի կարաւանները. —

*Առաջին կարաւանը մեկնած է Նոյեմբեր 1, 1947-ին Ռոսիա նաւով, Նիւ Եորքէն, տանելով մօտաւորապէս 150 հայրենադարձներ։ Այս խումբին մէջ էր Յարութիւն Փիլիպպոսեան։*

*Երկրորդ կարաւանը մեկնած է Յունուար 21, 1949-ին, դարձեալ Նիւ Եորքէն, 162 հայրենադարձներով, որոնց մէջ էին մեր հայրենակիցներէն Նափոլէոն Թիֆթիկճեան, Կարապետ Աճեմեան, Վարդգէս Ժամկոչեան եւ Աստուր Նարընեան Քալիֆորնիայէն։*

*Պրն. Թիֆթիկճեան երեք օր միայն վայելած է իր Նոր Մալաթիան եւ վաղահաս մահը վրայ հասած է։*

# ՔԱՌԱՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեանս Քառասունհինգերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 5, 1948-ին, Մայր սրահին մէջ, Քլիվլէնտ։*

*Ժողովին կը մասնակցին 22 մասնաճիւղ 34 ձայնով։*

Կեդր. վարչութիւն. — *Գէորգ Տէր Պաղտասարեան։*

Ուստր. — *Սարգիս Մանուչեան — 2 ձայն։*

Սէն Շամոն. — *Յովհ. Թերզիպաշեան — 2 ձայն։*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Ստեփան Ալաչաջեան եւ Արամ Ադապարեան։*

Ֆիլատելֆիոյ կանանց. — *Տիկ. Արուսեակ Կոստիկեան։*

Քալիֆորնիոյ Կրտսերաց. — *Օր. Էլիզապէթ Գալէմքէրեան։*

Նիւ Եորք. — *Զաքէոս Խաչատուրեան։*

Պոսթոն. — *Լեւոն Փափազեան — 2 ձայն։*

Լիոն. — *Գէորգ Այլանեան։*

Քլիվլենտ. — *Արմենակ Արփաճեան եւ Յարէթ Այլանեան։*

Մարսէյլ. — *Խօսրով Ոսկերիչեան, — 2 ձայն։*

Տիթրոյիթ. — *Մուրատ Մուրատեան։*

Վիէն. — *Գրիգոր Երանեան։*

Փրաւիտենս. — *Միսաք Էլիճանեան։*

Ֆրեզնոյ. — *Պետրոս Թերխանեան։*

Պոլէն. — *Վարդգէս Ժամկոչեան։*

Լիոն. — *Սահակ Պէնէնեան։*

Ռոման. — *Յովհ. Ափալաքեան։*

Սէն Շամոնի կանանց. — *Տիկ. Եղիսաբէթ Մարտիկեան — 2 ձայն։*

Վալանս. — *Լեւոն Տէր Դաւիթեան — 2 ձայն։*

Հալէպ.— Գրիգոր Տէր Դաւիթեան — 2 ձայն:

Պէյրութ.— Տիկ. Նուարդ Տեմիրճեան:

Երուսաղէմ.— Պօղոս Ալյանեան:

Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Յովհ. Ախալաքեան՝ Ատենապետ, իսկ Լեւոն Թերխանեան՝ Ատենադպիր:

Անցեալ Պատգ. Ժողովին կազմէ չէնքին ծախել կամ չծախելը ճշդելու համար ընտրուած յանձնախումբի տուած զեկոյցը անբաւարար համարուելով, նոր յանձնախումբ մը կ'ընտրուի, որ ճշդէ Ընկերութեան չէնքի արժէքը եւ ատոր յարակից խնդիրներ եւ տայ իր զեկոյցը յաջորդ Պատգ. Ժողովին:

Այդ յանձնախումբին անդամ կ'ընտրուին Խորէն Պօնափարթեան, Նափոլէօն Կանանըպէկեան եւ Զաւէն Խաչատուրեան:

Ներգաղթողներու օգնութեան հարցը կը ձգուի Կեդրոնական Վարչութեան:

Մխանականութեան հարցը կրկին կը զբաղեցնէ այս ժողովն ալ:

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին. որով այդ շըր-ջանի ընդհ. մուտք եղած է 29,987,24 տոլար, իսկ ընդհ. ելք եղած 8,638,13 տոլար: Գանձը կը մնայ 21,349,11 տոլար:

Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին.—

Գ. Տէր Պալտասարեան, Պետրոս Զօպիեան, Միսաք Մազմանեան, Տօնապետ Տօնապետեան, Սեդրակ Տանտիկեան, Տիկ. Մարիամ Մազմանեան, Խ. Պօնափարթեան եւ Զ. Խաչատուրեան:

Նորընտիր Կեդրոնական Վարչութեան դիւանը կը կազմուի.—

Պետրոս Զօպիեան — Ատենապետ
Տօնապետ Տօնապետեան — Ատենադպիր
Միսաք Մազմանեան — Գանձապահ

Այս շրջանի Կեդրոնական Վարչութեան գործառնութիւնները կեդրոնացած են Ֆրանսայէն, Սուրիայէն եւ Ամերիկայէն մեկնող հայրենադարձներու գործերով, ինչպէս նաեւ տեղական մասնաճիւղերու եւ Ընկերութեան չէնքին վերաբերեալ խնդիրներով:

## ՔԱՌԱՍՈՒՆՎԵՑԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Ընկերութեան Քառասունվեցերորդ Պատգ. Ժողովը տեղի ունեցած է Սեպտ. 3, 1949-ին: Ռամկավար Ազատական Կուսակցութեան Ակումբի սրահը, Ուստրի մէջ:

Այս ժողովին կը մասնակցին 15 մասնաճիւղեր 24 ձայներով:

Կեդր. վարչութիւն.— Տօնապետ Տօնապետեան:

Ուստր. Ն. Մարգարեան, Արմենակ Մուրատեան:

Ֆիլատելֆիոյ Արանց.— Ստեփան Ալաչայեան եւ Գրիգոր Տէյիրմէնճեան:

Ֆիլատելֆիոյ Կանանց.— Տիկ. Մաքրուհի Մազմանեան:

Ֆիլատելֆիոյ կրտսերաց ․ — *Յակոբ Տանտիկեան*։

Պոսթըն ․ — *Ի․ Տէր Յովհաննէսեան եւ Լեւոն Փափազեան*։

Նիւ Եորք ․ — *Լուծվիկ Տէր Յակոբեան*։

Քլիվլենտ ․ — *Լեւոն Թերխանեան եւ Գրիգոր Քեփենեկեան*։

Փրաւիտենս ․ — *Խաչատուր Երկայնեան*։

Սէն Ճամոն ․ — *Միսաք Էլիճանեան — 2 ձայն*։

Լիոն ․ — *Ներսէս Առաքելեան եւ Գրիգոր Տեմիրճեան*։

Մարսէյլ ․ — *Նշան Կանանեան եւ Ներսէս Առաքելեան*։

Հալէպ ․ — *Սարգիս Մանուշեան — 2 ձայն*։

Վալանս ․ — *Խաչատուր Մանուշեան եւ Պետրոս Սահակեան*։

Ֆրեզնոյ ․ — *Յովհաննէս Մարգարեան*։

Տիթրոյիթ ․ — *Լեւոն Մուրատեան*։

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին Ի․ Տէր Յովհաննէսեան՝ Ատենապետ, իսկ Նշան Կանանեան՝ Ատենադպիր*։

*Մեր ծննդավայրին, Մալաթիոյ մէջ հայկական դպրոց եւ եկեղեցի մը վերաբանալու առաջարկը եղած է այս Պատգ․ Ժողովին ամենակարեւոր հարցը։ Մալաթիոյ մէջ եղող եօթը հարիւրի (700) մօտ Հայութիւնը անցեալ 35 տարիներու ընթացքին հայ դպրոց եւ եկեղեցի չէ ունեցած, եկեղեցական պաշտամունք բնաւ կատարուած չէ, այնպէս որ կնունք, պսակ եւ թաղում կը կատարուին առանց կրօնական արարողութեան։ Ժամանակ առ ժամանակ քահանայ մը այցելած է եւ առօրեայ դոհացած են*։

*Նոր սերունդը հայերէն գրել-կարդալու հնարաւորութիւն չէ ունեցած։ Տեղւոյն վեց (6) եկեղեցիները գրաւուած են կառավարութեան կողմէ եւ կը գործածուին զանազան նպատակներու համար*։

*Այս կացութեան դարման մը տանելու համար Պատգ․ Ժողովը միաձայնութեամբ կ'որոշէ, նմանապէս կը հրահանգէ Կեդրոնական Վարչութեան, որպէսզի պէտք եղած միջոցները գործածէ այս նպատակի յաջողութեան համար, առանց կանգ առնելու նիւթական զոհողութեանց առջեւ*։

*Պատգ․ Ժողովը կ'որոշէ որ Ընկերութեան չէնքի մորթկէճի վճարումին համար հրապարակ հանուած բոլոր պոնտերը վճարուին անյապաղ*։

*Այս առթիւ Պատգ․ Ժողովը կը յայտնէ իր խորազգած շնորհակալութիւնները բոլոր անոնց, որոնք սիրայօժար եւ առանց տոկոսի ակնկալութեան գնեցին Ընկերութեան անունով հրապարակ հանուած պոնտերը եւ թէ Ընկերութիւնը այժմ ի վիճակի է ետ առնելու եւ վճարելու այդ պոնտերը*։

*Նկատի ունենալով կարգ մը անախորժ պարագաներ, Պատգ․ Ժողովը կ'որոշէ որ յետ այսու Ընկերութեան արտասահմանի բոլոր գործառնութիւնները կատարուին տեղական մասնաճիւղերու վարչութեանց միջոցաւ փոխան ներկայացուցչի*։

*Կ'որոշուի, Ներգաղթի եւ այլ պէտքերու համար ղրկուելիք մեծաքանակ գումարները ընել Հայ Բարեգործականի եւ կամ այլ վստահելի մարմնոյ մը միջոցաւ*։

Շէնքի համար ընտրուած յանձնախումբի անդամներ — Խ. Պոնափարթեան, Զ. Խաչատուրեան գրաւոր զեկոյցով մը կը տեղեկացնեն ժողովին, որ Նիւ Եորքի շէնքը պահելը աւելի խելացիութիւն է քան ծախելու ոեւէ փորձ:

Միասնականութեան հարցը կրկին խնդրոյ առարկայ կ'ըլլայ եւ ժողովը այս հարցի նկատմամբ կ'ընդունի նախորդ ժողովներու կողմէ տրուած որոշումները:

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, ուրկէ յայտնի կ'ըլլայ որ այդ շրջանի ընդհ. մուտքն եղած է 26,533,82 տոլար, իսկ ընդհ. ելքն եղած է 10,598,39 տոլար: Գանձը կը մնայ 15,935,43 տոլար:

Կեդրոնական Վարչութեան համար կ'ընտրուին.—

Գէորգ Տէր Պաղտասարեան, Յակոբ Ուրլեան, Միսաք Մազմանեան, Ստեփան Ալաչայեան, Տօնապետ Տօնապետեան, Մարիամ Մազմանեան, Գրիգոր Կուչեան:

Նորընտիր Կեդրոնական Վարչութեան դիւանը կը կազմեն.—

| | |
|---|---|
| Գէորգ Տէր Պաղտասարեան | Ատենապետ |
| Յակոբ Ուրլեան | Ատենադպիր |
| Գրիգոր Կուչեան | Գանձապահ |

Այս շրջանի Կեդր. Վարչութեան գործունէութիւնը կը կեդրոնանայ մասնաւորապէս Մալաթիոյ մէջ դպրոց եւ եկեղեցի վերաբանալու խնդիրին, որու յաջողութեան համար կը դիմէ Պոլսոյ Ազգային Պատրիարքարանին, նկատի ունենալով որ ան միակ հեղինակաւոր պաշտօնական մարմինն է Թուրքիոյ մէջ:

Ազգային Պատրիարքարանը կը պատասխանէ գրուած մեր նամակներուն եւ նախնական աշխատանքները տանելու համար դրամի կարիքը կը շեշտէ:

Կեդրոնական Վարչութիւնն անմիջապէս Երեք Հարիւր (300) տոլար կը փութացնէ եւ իր պատրաստակամութիւնը կը յայտնէ յաւելեալ գումարներ եւս ղրկել նպատակին գործադրութեան համար:

Նամակներով բանակցութիւնները կը շարունակուին այս խնդրոյն առընչութեամբ, բայց եւ այնպէս ստացուած պատասխանները եղած են անորոշ, երկդիմի, որոնք դրական գործ մը ձեռք բերելու յոյս չեն ներշնչեր:

Մալաթիոյ մէջ կը կազմուի հոգաբարձութիւն մը, որ իր կարգին եւս կը դիմէ Պատրիարքարանին, որ իրենց համար հոգեւորական մը, քահանայ մը ղրկէ, յայտնելով որ իրենք ի վիճակի են յանձնառու ըլլալու նիւթական բոլոր ծախքերուն, թէ Պատրիարքարանն այս մասին մտահոգուելու ոեւէ պատճառ չունի. բայց եւ այնպէս քար լռութիւն Պատրիարքարանին կողմէ:

Պատճառները շատ պարզ են: Նախ, որ Թուրքիոյ նոր օրէնքներուն համաձայն նախկին կերպով Հայկական Դպրոցներ ունենալ կարելի չէր: Տեղացի աշակերտներ որպէս Թուրք պէտք է յաճախեն Թրքական դպրոց, եւ եթէ անկէ ետք ուրիշ դպրոցներու պէտք ըլլայ, անոնց գլխաւոր ուսուցիչները պէտք է Թուրք ուսուցիչներ ըլլան:

Իսկ եկեղեցիի մասին, ըստ օրինի, ամէն ազատութիւն կայ ոեւէ կրօնի համար, իր ուզած ձեւով պաշտամունք կատարելու։ Բայց այդ ազատութիւն բառը մենք շատ լաւ կը հասկնանք, որովհետեւ այդ ուրիշ բան չէ, եթէ ոչ եւրոպացիներու աչքին փոշի փչել եւ ցոյց տալ թէ Թուրքիա ռամկավարական երկիր է։

Ուրիշ կարեւոր պատճառ մըն ալ քահանաներու, իսկական հովիւներու պակասութիւնն էր։ Ո՞վ պիտի ուզէր արտասահմանի եւ կամ Պոլսոյ իր ազատութիւնները թողուլ եւ երթալ Մալաթիոյ նման ներքին գաւառ մը։ Ի՞նչ վստահութիւն կեանքի ապահովութեան։ Յետոյ, եթէ եկեղեցի ունենալու արտօնութիւն տրուի եւ քահանայ մըն ալ վստահութիւն ունենայ Մալաթիա երթալու, Թուրք կառավարութիւնն ստիպուած պիտի ըլլայ մթերանոցներու եւ այլ անբարոյականութեանց համար գործածուած եկեղեցիներէն մէկը յատկացնել իր օրինական տիրոջ։

Ինչ որ ալ եղած ըլլան իսկական պատճառները, Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը պատրաստակամ է ոեւէ նիւթական զոհողութեան առջեւ կանգ չառնել, մինչեւ որ այս խիստ կարեւոր պակասը լրացուի եւ Մալաթիոյ հայութիւնն ունենայ դէթ իր եկեղեցին։

Ուաշինկթընի կառավարութիւնը քննութեան կ'ենթարկէ ընկերութեան հաշիւները եւ գործունէութիւնները եւ կը հաստատէ որ Մալաթիոյ Կրթ. Ընկերութիւնը զուտ բարեսիրական ընկերութիւն մըն է։

## ՔԱՌԱՍՈՒՆԵՕԹՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Քառասունեօթներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 2, 1950-ին, Հայոց Առաքելական Եկեղեցւոյ Վարդանանց Սրահը, Ֆիլատելֆիոյ մէջ։*

*Պատգ. Ժողովին կը մասնակցին 14 մասնաճիւղեր 22 ձայներով։*

Կեդր. Վարչութիւն.— *Յակոբ Ուրլեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Ա. Աղազարեան եւ Ս. Տանտիկեան։*

Ֆիլատելֆիոյ Կանանց.— *Տիկ. Ն. Տատիկեան եւ Տիկ. Եսթեր Պէրպէրեան։*

Ֆիլատելֆիոյ Կրտսերաց.— *Օր. Մարի Տանտիկեան։*

Նիւ Եորք.— *Բենիամին Խաչատուրեան։*

Ուստր.— *Ներսէս Առաքելեան եւ Յովհ. Մարգարեան։*

Քլիվլենտ.— *Լեւոն Թերխանեան եւ Յովհ. Ափալաքեան։*

Պոսթոն.— *Ի Տէր Յովհաննէսեան։*

Փրաւիտենս.— *Ստեփան Ալաշայեան։*

Ֆրեզնոյ.— *Սարգիս Մանուչեան։*

Ռոման.— *Կարապետ Տանտիկեան։*

Պէյրութ.— *Տիկ. Վ. Փապուճեան։*

Տիթրոյիթ.— *Մուրատ Մուրատեան։*

Լինն. — Յակոբ Տանտիկեան:

Հալէպ. — Ս. Տանտիկեան եւ Բերոբ Սուքիասեան:

Միաձայն դիւանի համար կ՚ընտրուին Ի. Տէր Յովհաննէսեան՝ Ատենապետ, իսկ Յովհաննէս Ափալաքեան՝ Ատենադպիր:

Մալաթիոյ մէջ դպրոց եւ եկեղեցի ունենալու համար յարդ եղած աշխատանքները եւ անոնց տուած արդիւնքը նկատի առնելով, Պատգ. Ժողովը կ՚որոշէ այլեւս դրամ չղրկել, մինչեւ որ կատարելապէս վստահ ըլլանք, թէ եկեղեցին բացուած է եւ տեղին վրայ կազմուած է հոգաբարձութիւն մը:

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Պատգ. Ժողովներուն մէջ յաճախ հարց եղած է Ամերիկայի մէջ եղող Մալաթիացի ուսանողներու օժանդակութեան խնդիրը: Բայց եւ այնպէս ամէն անգամ ալ նկատի ունենալով, որ Ամերիկահայեր ամէն հնարաւորութիւն ունին իրենց զաւակները կամ գոլէճը լրացնելու եւ թէ առկա մեր կարողութենէն վեր եղող գործ մը նկատելով, մերժուած է: Բայց այս Պատգ. Ժողովը ընդունեցաւ այդ հարցը տարբեր տեսումով. այն է, օգնել Ամերիկահայ Դպրոցներու, որու համար կ՚որոշէ. — «Ամերիկայի մէջ հայեցի դաստիարակութիւնը քաջալերելու նախանձախնդրութենէն մղուած Ժողովը, որոշեց Ամերիկայի Ազգային Առաջնորդարանի հովանաւորութեան տակ գտնուող դպրոցներու տեսչութեան կամ ուսանողական խորհուրդներու օգնել 25–30 տոլար, ամէն հայ դպրոցի ամէն տարի շարունակաբար»:

Ամերիկաբնակ կարօտ հայրենակիցներու օգնելը մեր եղբայրական պարտականութիւնը համարելով կը լիազօրէ Կեդրոնական Վարչութիւնը որ այդպիսիներուն օգնէ կողմնակի եւ լռելեայն կերպով:

Սոյն Պատգ. Ժողովը աւելի օգտակար եւ նպատակայարմար կը նկատէ վերջ տալ արտասահմանի մէջ եղող Շրջանային Մարմիններու գոյութեան: Եւ կ՚որոշէ որ յետ այսու արտասահմանի մասնաճիւղերը իրենց յարաբերութիւնը եւ կապը պահեն Կեդրոնական Վարչութեան հետ ուղղակիօրէն, փոխանակ Շրջանային Մարմիններու միջոցաւ:

Կ՚որոշուի Ընկերութեան Տարեհաշիւները, հայերէն եւ անգլիերէն լեզուներով, հրատարակել Նոր Մալաթիա թերթին մէջ:

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, ուրկէ յայտնի կ՚ըլլայ որ այդ շրջանի ընդհ. մուտքն եղած է 29,453,53 տոլար եւ ընդհ. ելքն եղած է 18,958,50 տոլար: Գանձը կը մնայ 10,495,03 տոլար:

Կեդրոնական Վարչութեան անդամ կ՚ընտրուին. —

Պետրոս Ջօպիեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Յակոբ Ուրլեան, Միսաք Մազմանեան, Սեդրակ Տանտիկեան:

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ. —

| | |
|---|---|
| Միսաք Մազմանեան | Ատենապետ |
| Սեդրակ Տանտիկեան | Ատենադպիր |
| Յակոբ Ուրլեան | Գանձապահ |

*Նիւ Եորքի շրջանէն որպէս խորհրդականներ կ'ընտրուին Բենիամին Խաչատուրեան եւ Ջաքէոս Խաչատուրեան։*

*Այս տարուան Կեդրոնական Վարչութեան գործառնութեանց մասին կարեւոր բան մը արձանագրուած չէ, բացի մասնաճիւղերու հետ ունեցած սովորական յարաբերութիւններէն։*

## ՔԱՌԱՍՈՒՆՈՒԹԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Քառասունութերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ.* 1, 1951*–ին, Ուամկավար Ազատական Կուսակցութեան Ակումբին մէջ, Ուոթըրթաուն։*

*Ժողովին կը մասնակցին* 13 *մասնաճիւղեր* 18 *ձայներով։*

Կեդր. Վարչութիւն. — *Սեդրակ Տանտիկեան։*

Պոսթոն. — *Ռուբէն Պարմագեան։*

Ուսթր. — *Ս. Մանուչեան եւ Ն. Մարգարեան։*

Քլիվլենտ. — *Գէորգ Ասլանեան եւ Յովհաննէս Ափալաքեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Ս. Ալաչայեան եւ Գ. Տէյիրմենճեան։*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Տիկ. Մաքրուհի Մազմանեան։*

Նիւ Եորք. — *Խաչատուր Մանուչեան։*

Փրաւիտենս. — *Յարութիւն Աւետիսեան։*

Ֆրեզնոյ. — *Ի. Տէր Յովհաննէսեան։*

Լոս Անճելըս. — *Ստեփան Մանուչեան։*

Պէյրութ. — *Աւետիս Աւետիսեան։*

Հալէպ. — *Տիկ. Գոհարիկ Թիւթիւնճեան։*

Ռոման. — *Պետրոս Զօպիեան եւ Յ. Աւետիսեան։*

Լիոն. — *Մարտիրոս Տեմիրճեան եւ Լեւոն Փափազեան։*

*Մնայուն դիւանի համար կ'ընտրուին Սարգիս Մանուչեան՝ Ատենապետ, իսկ Ի. Տէր Յովհաննէսեան՝ Ատենադպիր։*

*Մալաթիոյ մէջ եկեղեցի մը ունենալու հարցը կրկին նկատողութեան կ'առնուի եւ կը հաստատուի նախորդ ժողովին մէջ տրուած որոշումը։*

*Ամերիկահայ դպրոցներու համար կը յատկացուի Երկու Հարիւր Յիսուն* (250) *տոլար։*

*Ընկերութեան գործօն անդամները պարգեւատրելու հարց կը ծագի եւ առ այդ կ'ընդունուի հետեւեալ բանաձեւը.—*

*«Անցեալ Քառասուն Ութ* (48) *տարիներէ ի վեր բազմաթիւ հայրենակիցներ այս Ընկերութեան համար անձնուիրաբար զոհած եւ աշխատած են առանց ոեւէ ակնկալութեան, սակայն, Ընկերութիւնս միշտ երախտապարտ զգացումով գնահատած է անոնց հայրենասիրական զոհողութիւնները եւ աշխատանքները եւ յետ այսու ալ կը շարունակէ գնահատել մեր աշխատող եւ զոհաբերող հայրենակիցներն ըստ արժանւոյն։»*

*Նոր Մալաթիոյ Համայնքին երկու բժշկական գործիքներ նուիրելու*

համար նկատի կ'առնուի վերջերս Քլիվլէնտի մէջ մահացած մեր երախտաւոր ընկերոջ, Կարապետ Մարտիկեանի մահուան առթիւ հանգանակուած Հինգ Հարիւր (500) տոլարի գումարը գործածել իր նպատակին, եթէ այդ մեքենաները Հայաստան ղրկելու հնարաւորութիւն ներկայանայ:

Ընկերութեան Յիսնամեակը.— Պատգ. ժողովը նկատի ունենալով որ կարճ ժամանակէն կը լրանան մեր Ընկերութեան բեղմնաւոր գործունէութեան ՅԻՍՈՒՆ (50) տարիները, անհրաժեշտ նկատեց այժմէն պատրաստուիլ արժանաւոր կերպով տօնելու համար Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Յիսնամեակը:

Այս նպատակին համար կ'ընտրէ յանձնախումբ մը որ նկատի ունենայ անցեալ Յիսուն (50) տարիներու ընթացքին տեղի ունեցած դէմքերն ու դէպքերը. Ընկերութեան հիմնադիրներու, մասնաճիւղերու եւ այլ կարեւոր գործունէութեանց համառօտ պատմութիւնը եւ զանոնք ամփոփելով հրատարակէ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ-ի բացառիկ թիւով մը:

Յանձնախումբի անդամ կ'ընտրուին Ի. Տէր Յովհաննէսեան, Պետրոս Զօլեան, Ռուբէն Պարմաղեան, Լեւոն Փափազեան եւ Սարգիս Մանուչեան:

Պատուոյ Բաժակը կը տրուի Ֆրեզնոյի մասնաճիւղին:

Գանձապահի տոմարները քննելով կը վաւերացուին, որով յայտնի կ'ըլլայ թէ այդ շրջանին ընդհանուր մուտք եղած է 31,832,02 տոլար եւ ընդհանուր ելք եղած է 12,612,92 տոլար: Գանձը կը մնայ 19,219,10 տոլար:

Կեդրոնական Վարչութեան համար անդամ կ'ընտրուին.—

Յակոբ Ուրլեան, Գ. Տէր Պաղտասարեան, Ս. Տանտիկեան, Միսաք Մազմանեան, Գրիգոր Կուչեան, Խոսրով Պոնափարթեան, Զ. Խաչատուրեան:

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ.—

Միսաք Մազմանեան — Ատենապետ
Սեդրակ Տանտիկեան — Ատենադպիր
Յակոբ Ուրլեան — Գանձապահ

Այս շրջանի Կեդրոնական Վարչութեան կարեւոր գործերէն մէկն է Տէր Կարապետ քահանայ Պէննէեանի ձեռագիր գրութեան խնդրոյն կարգադրութիւնը:

Տ. Կարապետ քհնյ. Պէննէեանի կողմէ գրուած Մալաթիոյ Պատմութեան ձեռագիրը, աւելի քան Երեսուն Ութ (38) տարիներէ ի վեր կը մնար Երուսաղէմի Մատենադարանին մէջ:

Վերջին 20 (քսան) տարիներու ընթացքին Պատգ. ժողովները շատ անգամներ որոշած են կերպով մը այդ ձեռագիրը աչքէ անցընել եւ անկէ ետք որոշել թէ պէ՞տք է տպագրել թէ ոչ. բայց եւ այնպէս եղած բոլոր դիմումները յաջողութիւն մը չեն ունեցած: Որովհետեւ, Երուսաղէմի Մատենադարանի օրէնքներուն համաձայն, ոեւէ ձեռագիր չէր կրնար դուրս տրուիլ եւ տպագրութեան գործն ալ ըլլալու էր Երուսաղէմի մէջ:

Կրթասիրաց Ընկերութիւնն ալ չէր կրնար այդպիսի որոշում մը տալ,

*առանց գլխնալու ձեռագրին ըովանդակութիւնը եւ անոր պատմական արժէքը։*

*Վերջապէս, Կեդրոնական Վարչութեան խնդրանօք Ամերիկահայոց Առաջնորդ Տ. Տիրան Արքեպս. Ներսոյեանի միջամտութեամբ եւ երաշխաւորութեամբ կը յաջողուի յիշեալ ձեռագիրը Ամերիկահայոց Առաջնորդարանը բերել տալ եւ Առաջնորդ Սրբազանի, Առաջնորդարանի Քարտուղարին եւ Ընկերութեանս Կեդրոնական Վարչութեան ներկայութեան խորհրդակցական ժողով մը տեղի կ'ունենայ Նիւ Եորքի մէջ եւ այդ ժողովին մէջ կը կարգադրուի խնդրոյ առարկայ ձեռագիրը։*

*Բովանդակութեան տեղեկանալէ ետք, որոշում կը տրուի մի քիչ փոփոխութիւններով եւ կարգ մը յաւելումներով լոյս ընծայել։*

## ՔԱՌԱՍՈՒՆԻՆՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Քառասունիններորդ Պատգ. ժողովը տեղի ունեցած է Օգոստոս 30, 1952–ին, Սր. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ սրահը, Նիւ Եորքի մէջ։*

*Ժողովին կը մասնակցին 12 մասնաճիւղեր 21 ձայներով։*

Կեդր. վարչութիւն. — *Սեդրակ Տանտիկեան։*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Յարութիւն Մումճեան եւ Ս. Ալաչայեան։*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Յարութիւն Մումճեան եւ Ս. Ալաչայեան։*

Նիւ Եորք. — *Լութվիկ Տէր Յակոբեան։*

Փրավիտենս. — *Յովհաննէս Խորրութեան։*

Ուստր. — *Մարտիրոս Տեմիրճեան — 2 ձայն։*

Պոսթոն. — *Ի. Տէր Յովհաննէսեան — 2 ձայն։*

Քլիվլենտ. — *Քերոբ Օտապաշեան — 2 ձայն։*

Լոս Անճելըս. — *Զաքէոս Խաչատուրեան։*

Ռոմանի. — *Ստեփան Մարգարեան եւ Պօղոս Էմիրիկեան։*

Լինն. — *Խ. Պոնափարթեան — 2 ձայն։*

Պէյրութ. — *Պետրոս Զօպեան — 2 ձայն։*

Հալէպ. — *Բենիամին Խաչատուրեան եւ Զաքէոս Խաչատուրեան։*

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին. —*

*Ի. Տէր Յովհաննէսեան՝ Ատենապետ, իսկ Յարութիւն Մումճեան՝ Ատենադպիր։*

*Ընկերութեան ունեցած կանխիկ դրամը օգտագործելու համար խորհրդակցութիւններ տեղի կ'ունենան եւ յարմար կը սեպուի Հինգ Հազար (5,000) տոլարի Ամերիկեան պոնտեր գնել։ Իսկ մնացած գումարին համար առաջարկ կ'ըլլայ գնել վստահելի ընկերութեանց բաժնեթղթեր, որու համար կ'ընտրուի յանձնախումբ մը այս կէտը հակելու, ճշդելու եւ ձեռք բերուած տեղեկութիւնները մանրամասնութեամբ ներկայացնելու յաջորդ Պատգ. ժողովին։*

Որոշուած յանձնախումբին անդամ կ՚ընտրուին.—

Խ. Պօնափարթեան, Բենիամին Խաչատուրեան եւ Պօղոս Խմրիկեան։

Ընկերութեան Նիւ Եորքի շէնքին վրայ փոփոխութիւններ մտցնելը ներկայիս անյարմար կը դատուի, նկատի ունենալով նիւթերու եւ աշխատավարձերու սղութիւնը։

Մալաթիոյ պատմութիւնը գրելու հարցը այս Պատգ. Ժողովի օրակարգին ամենակարեւորն էր։

Այս խնդիրը թէեւ նախապէս քանի մը Պատգ. Ժողովներու հարց եղած եւ որոշումներ ալ տրուած էին, բայց եւ այնպէս զանազան պատճառներով գործական քայլ մը առնուած չէր։

Տ. Կարապետ Քհնյ. Պեննէեանի ձեռագիրը Ամերիկա բերուելով ու կարգադրուելէ եւ զայն լոյս ընծայելու որոշում տրուելէ ետք, յարմար կը նկատուի այդ գրութիւնն ընդլայնել եւ անոր միացնել Մալաթիա քաղաքի անցեալ պատմութիւնը, ինչպէս նաեւ ատոր վրայ աւելցնել 1895–ի եւ 1915–ի տեղահանութեանց սրտաճմլիկ պատմութիւնները եւ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան պատմութեան հետ միասին լոյս ընծայել ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄԱԼԱԹԻՈՅ անունով գիրք մը։

Այս գործի յաջողութեան համար ընտրուեցաւ յանձնախումբ մը հետեւեալ անձերէն.—

Խօսրով Պօնափարթեան, Տիկ. Վարդանոյշ Փափուճեան եւ Բենիամին Խաչատուրեան։

Յաջորդ Պատգամաւորական Ժողովը կ՚որոշուի գումարել Քլիվլէնտի մէջ եւ այդ ժողովին մէջ բացուած համարել Ընկերութեանս Յիսնամեայ Տօնակատարութիւնը։

Գանձապահի տոմարները քննուելով կը վաւերացուին, ուրկէ յայտնի կ՚ըլլայ թէ այդ շրջանի ընդհ. մուտքն եղած է 32,957,96 տոլար, իսկ ընդհ. ելքն եղած է 7,343,40 տոլար։ Գանձը կը մնայ 25,614,56 տոլար։

Յաջորդ շրջանին համար Կեդրոնական Վարչութեան անդամ կ՚ընտրուին հետեւեալները.—

Միսաք Մազմանեան, Սեդրակ Տանտիկեան, Յակոբ Ուրլեան, Արամ Ալպարեան, Յարութիւն Մոմճեան եւ Գրիգոր Կուչեան։

Նորընտիր Կեդրոնական Վարչութիւնը իր դիւանը կը կազմէ հետեւեալ կերպով.—

| | |
|---|---|
| Միսաք Մազմանեան | Ատենապետ |
| Սեդրակ Տանտիկեան | Ատենադպիր |
| Գրիգոր Կուչեան | Գանձապահ |

Այս շրջանի Կեդրոնական Վարչութեան գլխաւոր աշխատանքները կ՚ըլլան Մալաթիոյ եւ Կրթասիրաց Ընկերութեան պատմութիւնները պատրաստող յանձնախումբերու հետ մշտական յարաբերութիւն, մղում տալ մասնաճիւղերու գործունէութեանց եւ գործադրել Պատգամաւորական Ժողովի որոշումները։

## ՅԻՍՈՒՆԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Ընկերութեան Յիսուներորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտ. 5, 1953, Շաբաթ օր,* Փոլիշ Ուիմընս *սրահին մէջ, 7526 Պրոտուէյ, Քլիվլենտ, Օհայօ:*

*Պատգ. Ժողովին կը մասնակցին 14 մասնաճիւղեր 22 պատգամաւորներով ներկայացնելով 23 ձայն:*

Կեդրոնական վարչութիւն. — *Սեդրակ Տանտիկեան:*

Ֆիլատելֆիոյ Արանց. — *Գէորգ Տէր Պաղտասարեան եւ Յարութիւն Մումճեան:*

Ֆիլատելֆիոյ Կանանց. — *Յարութիւն Մումճեան:*

Քլիվլենտ Արանց. — *Յովհաննէս Ափալաքեան եւ Գէորգ Ասլանեան:*

Պոսթոն. — *Խորայէլ Տէր Յովհաննէսեան և Տիկ. Գոհարիկ Թիւթիւնճեան:*

Փրաւիտենս. — *Յովհաննէս Խարբութլեան:*

Ուստր. — *Մարտիրոս Տեմիրճեան եւ Ներսէս Առաքելեան:*

Նիւ Եորք. — *Խոսրով Պոնափարթեան:*

Լոս Անճելըս. — *Կարապետ Ծերահեան:*

Ֆրեզնոյ. — *Լեւոն Թերխանեան:*

Պէյրութ. — *Պետրոս Զօպեան:*

Լիոն. — *Խոսրով Ոսկերիչեան:*

Ռոման. — *Բենիամին Խաչատուրեան եւ Տիկ. Արուսեակ Ծերահեան:*

Սենթ Շամոն. — *Մէրի Տէր Յովհաննէսեան եւ Գրիգոր Երանեան:*

Հալէպ. — *Սեդրակ Տէր Պաղտասարեան եւ Բեզոր Օտապաշեան:*

*Մնայուն դիւանի անդամ կ'ընտրուին. —*

*Խորայէլ Տէր Յովհաննէսեան՝ Ատենապետ, իսկ Յովհաննէս Ափալաքեան՝ Ատենադպիր:*

*Կրթասիրաց Ընկերութեան պատմութեան եւ Մալաթիոյ պատմութեան յանձնախումբերու կողմէն կը զեկուցանեն Ի. Տէր Յովհաննէսեան եւ Խոսրով Պոնափարթեան: Ասոնց զեկուցումներէն յայտնի կ'ըլլայ որ սկսուած գործը կ'ընթանայ լաւագոյն կերպով: Առ այդ Պատգ. Ժողովը ջերմապէս կը գնահատէ թափուած աշխատանքները:*

*Գանձապահի տոմարները քննուելով եղած հաշիւները ճիշդ, կանոնաւոր եւ խնայողական ըլլալը կը վաւերացուի եւ կը գնահատուի Պատգ. Ժողովէն:*

*Ընկերութեան համար նոր շէնք մը եւս գնելու հարցեր եկած են թէ՛ Ֆրանսայէն եւ թէ Ամերիկայի մասնաճիւղերէն: Պատգ. Ժողովը նկատի ունենալով ներկայ պայմանները եւ գիներու բարձրութիւնը, անյարմար կը գտնէ նոր յանձնառութեանց տակ մտնելը:*

*Կ'որոշուի գանձին մէջ եղած պատրաստ գումարով Ամերիկեան կառավարութեան* պոնտերէն *առնել, որպէս ապահով շահարկութիւն:*



Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Կեդրոնական Վարչութիւնը եւ Մալաթիոյ Պատմութեան Յանձնախումբը առաջին խորհրդակցական ժողովի առթիւ նկարուած.

Ձախէն աջ.— Միսաք Մազմանեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Տիկին Վարդանոյշ Փապուճեան, Խոսրով Մ. Պանափարթեան, Բենիամին Խաչատուրեան, Տիրան Արքեպս. Ներսոյեան, Պետրոս Պոնտացի, Յակոբ Ալբեան, Սեդրակ Գ. Հաճեթիկեան, Գրիգոր Կուշեան, Զաքէոս Խաչատուրեան։

Ժողովը նկատի ունենալով Պոլսոյ Պատրիարք Սրբազանի մասնաւոր դիմումը, Պոլսոյ մէջ վերջերս բացուած դպրեվանքին մէջ սաներ որդեգրելու հարցը, կու տայ հետեւեալ որոշումը.—

«Սան մը որդեգրել, պայմանաւ որ այդ սանն ըլլայ մալաթիացի եւ եկած ըլլայ ուղղակի Մալաթիայէն»։

Ժողովը նկատի կ՚ունենայ նաեւ Հալէպէն Յակոբ Գէորգեանի դիմումը բարձրագոյն դպրոց երթալու ծախքերուն մասին։

Ժողովը կ՚որոշէ հոգալ անոր ծախքերը, որ պիտի ուսանի Հալէպի Ամերիկեան գոլէճին մէջ։

Պատուոյ բաժակը կը տրուի Քլիվլենտի մասնաճիւղին։

Պատգ. այս ժողովի Ընկերութեան կազմութեան Յիսուներորդ Պատգ.




**Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Յիսնամեակի առթիւ պատուոյ սեղանը, Քլիվլենտ, 1953, Սեպտեմբերին։**

**ՁԱԽԷՆ ԱՋ.— Օր. Պերճուհի Դաւուտեան (Քլիվլենտէն), Յակոբ Ուրլեան (Ֆիլատելֆիայէն), Սեդրակ Գ. Տանտիկեան (Ֆիլատելֆիայէն), Պետրոս Զոպիեան (Պոսթընէն), Խրայէլ Տէր Յովհաննէսեան (Պոսթընէն), Գաբրիէլ Տէր Պաղտասարեան (Քլիվլենտէն), Լեւոն Թերխանեան (Քլիվլենտէն), Խոսրով Մ. Պոնափարթեան (Նիւ Եորքէն), Տիկին Արուսեակ Ճերահեան (Լոս Անճելըսէն), Գէորգ Արսլանեան (Քլիվլենտէն), Գէորգ Տէր Պաղտասարեան (Ֆիլատելֆիայէն), Յովհաննէս Ափալաքեան (Քլիվլենտէն)։**

*ԾԱՆՕԹ.— «Ողջոյն Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան ոսկի յոբելեանին» պատուոյ դրօշը թաւիշի վրայ ձեռագործուած եւ նուիրուած է Ֆիլատելֆիաբնակ Տիկին Մարիամ Տէր Պաղտասարեանի կողմէ։*

ժողովն ըլլալով շատ մը մասնաճիւղերէ, անհատ անդամներէ, զանազան կազմակերպութիւններէ եւ ծանօթ հայ անձնաւորութիւններէ ղրկուած էին շնորհաւորական հեռագիրներ:

Ամերիկահայ մամուլն ալ, շատ քիչ բացառութեամբ, գրած էր խմբագրականներ, առանձին յօդուածներ, որոնց համար այս Պատգ. Ժողովը կ՚որոշէ անոնց յայտնել մեր շնորհակալութիւններն ու գնահատանքները:

Յաջորդ Պատգ. Ժողովի վայր կ՚որոշուի Փրաւիտենս:

Պատգ. Ժողովը կ՚որոշէ Կեդրոնական Վարչութիւնը պահել Ֆիլատելֆիա: Այս որոշումով Ֆիլատելֆիոյ պատգամաւորներու ներկայացուցած եռապատիկ ցանկէն վրայէն, գաղտնի քուէով, Կեդրոնական Վարչութեան անդամ կ՚ընտրուին հետեւեալները.—

Սեդրակ Տանտիկեան, Գրիգոր Կուչեան, Յակոբ Ուրլեան, Միսաք Մազմանեան եւ Գէորգ Տէր Պաղտասարեան:

Երկու խորհրդականներ կ՚ընտրուին Նիւ Եորքէն, յանձին Խոսրով Պոնափարթեանի եւ Զաքէոս Խաչատուրեանի:

Ընկերութեան Յիսնամեակին առթիւ Քլիվլէնտի մասնաճիւղը սարքած էր աննախընթաց հանդէս–տօնակատարութիւն մը, որու նկարագրութիւնը լոյս տեսաւ նոյն տարւոյ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթի մէջ՝ գրուած Քլիվլէնտի գործօն եւ երիտասարդ ընկերներէն Գէորգ Ասլանեանի կողմէ:






## ՅԻՍՈՒՆՄԷԿԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ (*)

*Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Յիսունմէկերորդ Պատգ. Ժողովը գումարուած է Սեպտեմբեր 4, 1954, Շաբաթ օր Փրաւիտենսի Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ Ազգային սրահին մէջ,* 70 Ճեփըրսըն Սթրիթ: *Սոյն ժողովին կը մասնակցին 14 մասնաճիւղերու 21 պատգամաւորներ 22 ձայներով եւ հետեւեալ կերպով.—*

Կեդրոնական Վարչութիւն.— *Սեդրակ Տանտիկեան:*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Արամ Աղազարեան եւ Ստեփան Ալաչայեան:*

(*) *Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան 1954–8 շրջանի պատմութիւնը գրի առաւ Կեդրոնական Վարչութեան ատենադպիր Պրն. Սեդրակ Տանտիկեան։*

Ֆիլատելֆիոյ կաճաճց.— Արամ Աղազարեան։
Քլիվլենտի Արաճց.— Լեւոն Թերխանեան եւ Յովհ. Ախալազեան։
Պոսթոնի խառն.— Տիկ. Վարդուհի Կիրակոսեան, Պ. Զօպիեան։
Փրաւիտենս.— Սեդրակ Տայլեան։
Ուստր.— Նափոլէոն Մարգարեան եւ Ներսէս Առաքելեան։
Նիւ Եորք.— Խօսրով Պօնափարթեան։
Ֆրեզնոյ.— Գէորգ Տէր Պաղտասարեան։
Լոս Անճելըս.— Յովհաննէս Խարբութլեան։
Պէյրութ.— Յար. Աւետիսեան եւ Միսաք Էլիճանեան։
Լիոն.— Նշան Կանանեան եւ Խաչատուր Երկանեան։
Ռոման.— Իսրայէլ Տ. Յովհաննէսեան եւ Յակոբ Տ. Մուշեղեան։
Շիքակոյի.— Ալեքսան Էլիճանեան եւ Գէորգ Ճիւվելեկեան։
Հալէպ.— Զաքէոս Խաչատուրեան։

Յիշեալ ժողովին մնայուն դիւանի անդամներ կ'ընտրուին Պետրոս Զօպիեան՝ Ատենապետ, իսկ Լեւոն Թերխանեան՝ Ատենադպիր։

Ժողովը լսելով իր ընտրած զանազան յանձնախումբերու, Կեդրոնական Վարչութեան ներկայացուցիչ Սեդրակ Տանտիկեանի, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ-ի վարիչ Պետրոս Զօպիեանի, առաջինին գրաւոր եւ երկրորդին բերանացի ընդարձակ զեկոյցները, կը հաստատէ եւ գոհունակութեամբ ալ կ'արձանագրէ որ Ընկերութեան ելեւմտական հաշիւները կատարուած են վերջին ծայր մաքուր, խնայողական ու տնտեսական մեթոտով եւ որ Կեդրոնական Վարչութիւնը անշեղօրէն գործադրելով Նախորդ Համագումարի որոշումները, սերտ ու սիրալիր յարաբերութիւններ ունեցած ու մշակած է մասնաճիւղերու, ազգային եւ հասարակական մարմիններու հետ, ինչպէս նաեւ լոյս ընծայած է ճոխ ու բարոյալից բովանդակութեամբ Ընկերութեան պաշտօնական օրկանը եղող ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթին երեք թիւերը։

Մասնաճիւղերու ներկայացուցիչներու տուած զեկոյցներէն կը յայտնուի որ թէ' Միացեալ Նահանգներու եւ թէ արտասահմանի մէջ գտնուող մասնաճիւղերը, գրեթէ ամէն վայրերու մէջ փառահեղ կերպով ու վայելչօրէն, գեղարուեստական ճոխ յայտագրով տօնած են Ընկերութեան Յիսնամեակը։ Այս կապակցութեամբ ամերիկահայ մամուլը իր օրին խմբագրական սիւնակներով ու յօդուածներով գովեստի տողեր արձանագրած է այս օգտաշատ Ընկերութեան մատուցած ծառայութեանց համար։

Լոյս տեսնելիք ՄԱԼԱԹԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ աշխատասիրութեան վարիչ ատենապետ Պրն. Խօսրով Մ. Պօնափարթեանի զեկոյցէն յայտնի կ'ըլլայ, որ մինչեւ ցարդ կատարուած աշխատանքները տուած են իրենց գոհացուցիչ արդիւնքը։ Ան աւելցուցած է որ պէտք չէ այսքանով բաւականանալ եւ ներկաներէն խնդրած է իրենց վերադարձին անպայման աշխատանքի լծուելով ապահովեն բոլոր Մալաթիացիներու աջակցութիւնը։

Ծանօթ.— Պատմութեան Յանձնախումբի անդամներէն Բենիամին Խաչատուրեանի մահուան պատճառով, սոյն մարմնի կազմը ամբողջացնելու հա-

մար, ժողովը միաձայնութեամբ կ'ընտրէ Իսրայէլ Տէր Յովհաննէսեանը։

Յիսունմէկերորդ Համագումարի հարց–որոշումները համառօտ կերպով կարելի է պատկերացնել ստորեւ դրի առնուած տողերուն մէջ, այսպէս.—

Ընկերութեան եկամուտի Քսան տոկոսը գործածել Կրթական Նպատակներու համար։ Առաջարկը անգործնական գտնելով մերժուած է, որովհետեւ ժողովը հաստատած է որ արդէն առաջարկուած գումարէն աւելի, ամէն տարի սոյն նպատակին համար յատկացում մը կ'ըլլայ։

Նախորդ տարիներու նման որոշուած է ամերիկահայ դպրոցներուն յատկացուած 300 տոլարի գումարը ըստ առաջնոյն շարունակել։

Երխտասարդաց (կրտսեր) մասնաճիւղեր կազմելու հարցը, առանց որոշ լուծում գտնելու, պատգամաւորներ խոստում տուին, իրենց վերադարձին գոյն իրականութիւն մը դարձնելու համար ջանք չխնայել։

Պոլսոյ Իւսկիւտարի Դպրեվանքին մէջ ուսանողի 250 տոլար տարեթոշակը, Ամենապատիւ Պատրիարք Հօր առաջարկին վրայ, ժողովը կը բարձրացնէ 400 տոլարի։

Պէյրութի Ամերիկեան Համալսարանին մէջ ուսանելու համար ժողովը կ'որդեգրէ հալեպարնակ Աւետիս Զիլիեանը։ Նոյնպէս Համագումարը կ'որոշէ հողալ երկու ուշիմ եւ բարի վարք ունեցող աշակերտներու կրթաթոշակը, որոնք ցանկութիւն ունին կրօնականներ ըլլալու։

Համագումարը մասնաւոր խրախուսութիւն կու տայ Ֆրանսայի շրջանի իր բոլոր մասնաճիւղերուն, որ հաւաքաբար տեղւոյն վրայ կրթաթոշակ յատկացնեն այն բոլոր անկարող հայրենակիցներուն, որոնք իրենց ուշիմութեամբ եւ վարքով ամէն վստահութիւն կը ներշնչեն եւ կը լրացնեն լաւ ուսանող մը դառնալու պայմանները։

Համագումարը աչքի առջեւ ունենալով իր դանձին գումարը, նպատակայարմար եւ օգտակար կը նկատէ մաս մը եւս Ամերիկեան կառավարութեան պոնտերէն գնել։

Համերաշխութեան հարցի շուրջ թեր ու դէմ կարծիքներու փոխանակութենէն ետք ժողովը քուէարկեց հետեւեալ բանաձեւը.—

«Համերաշխութեան ցաւոտ հարցին մասին Յիսունմէկերորդ Պատգ. Ժողովը լսելով Ֆրանսաբնակ մեր հայրենակիցներէն Պ. Մանուէլ Կեզիւրեանը, ինչպէս նաեւ լսելով պատգամաւորներու արտայայտութիւնները, Համագումարը կը յայտարարէ որ Համերաշխութեան հարցը ինչպէս Սեբ. Շամոնի մասնաճիւղին, նոյնպէս ալ մեր փափաքն է։ Արդ կը մնայ Ընկերութեան շարքերէն դուրս մնացող անհատ եւ խմբակցական հայրենակիցներուն մէկ կողմ թողուլ իրենց անհատական եւ խմբակցական խեռը եւ Կրթասիրացի դրօշակին տակ լծուիլ շինարար աշխատանքի, յօգուտ Կրթասիրաց Ընկերութեան վսեմ նպատակներու իրագործման»։

ԾԱՆՕԹ.— Սոյն բանաձեւը ստորագրուած եւ ներկայացուած է հետեւեալ երեք հայրենակիցներուն կողմէ — Լեւոն Թէրխանեան, Մանուէլ Կեզիւրեան եւ Նշան Կանանեան։

Պատուոյ Դրօշ.— Համագումարը նկատի ունենալով Քլիվլենտի մասնաճիւղի կատարած նիւթական եւ բարոյական օգտաշատ գործունէութիւնները, միաձայնութեամբ կ'որոշէ Պատուոյ Դրօշը տալ Քլիվլենտի մասնաճիւղին:

Պատգամաւորական Ժողովի որոշումով Ընկերութեան Կեդրոնի վայրը կը մնայ անփոփոխ: Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի ներկայացուցած եռապատիկ ցանկի վրայէն գաղտնի քուէով կեդրոնի անդամ ընտրուեցան.—

Սեդրակ Տանտիկեան, Յակոբ Ուրլեան, Միսաք Մազմանեան, Գրիգոր Գուչեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Նիւ Եորքի մասնաճիւղէն խորհրդականներ ընտրուեցան Խ. Մ. Պօնափարթեան, Զաքէոս Խաչատուրեան:

Այս տարեշրջանին Ընկերութեան ընդհ. մուտքն է 18,476,60 տոլար, իսկ ընդհանուր ելքն է 9,979,91 տոլար: Գանձը կը մնայ 8,496,69 տոլար:

Ներկայ տարեշրջանին կարօտեալներուն և ուսանողներուն յատկացուած է Հազար Հինգ Հարիւր Ութսուն (1,580) տոլար, բաց առնելով ամերիկահայ դպրոցներու տրուած 300 տոլարը:

Կեդրոնն իր գլուխը կը կազմէ հետեւեալներէն.—

| | |
|---|---|
| Միսաք Մազմանեան | Ատենապետ |
| Սեդրակ Տանտիկեան | Ատենադպիր |
| Գրիգոր Գուչեան | Գանձապահ |

Պատգամաւորական Ժողովի աւարտումէն ետք տեղի ունեցաւ հանդիսաւոր ճաշկերոյթ մը ի պատիւ պատգամաւորներուն եւ օրուան հիւրերուն: Ճաշկերոյթը իր բազմամարդութեամբ, գեղարուեստական ճոխ յայտագրով եւ զանազան ուղերձներով կը ստեղծէ խանդավառ մթնոլորտ եւ յաւէտ յիշատակելի օր մը:

## ՅԻՍՈՒՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Յիսուներկուերորդ Պատգ. Ժողովը գումարուեցաւ 3 Սեպտեմբեր 1955ին, Շաբաթ օր Իտալական Քընթրի քլըպին մէջ, Կրեֆթըն Սթրիթ, Ուստր, Մես.:

Սոյն Պատգամաւորական Ժողովին կը մասնակցին 14 մասնաճիւղեր, 22 պատգամաւորներով:

Կեդր. Վարչութենէն.— Սեդրակ Տանտիկեան:

Լոս Անճելըսի Մ. Ճիւղէն.— Միհրան Ոսկերիչեան:

Հալէպ.— Զաքէոս Խաչատուրեան եւ Պետրոս Սահակեան:

Պէյրութ.— Ներսէս Առաքելեան եւ Խաչատուր Մանուչեան:

Փրավիտենս.— Նշան Կանանեան:

Քլիվլենտ.— Խոսրով Ոսկերիչեան եւ Պօղոս Արսլանեան:

Պոսթոն.— Տիկ. Վարդուհի Կիրակոսեան եւ Պետրոս Զոպիեան:

Ուստր.— Ստեփան Պաղտասարեան եւ Նափոլէոն Մարգարեան:

Ֆրեզնոյ.— Սարգիս Թերխանեան:

Շիքակոյ.— Տիկ. Գոհարիկ Թիւթիւնճեան և Սրապիոն Խարբութլեան:

Ֆիլատելֆիոյ Արանց. — Կարապետ Տանտիկեան և Արամ Աղազարեան։
Նիւ Եորք. — Խորէն Մ. Պոնափարթեան։
Ռոման. — Սարգիս Թիւթիւնճեան։
Ֆիլատելֆիոյ կանանց. — Լեւոն Փափազեան։

Մնայուն դիւանի անդամ ընտրուեցան Խորէն Մ. Պոնափարթեան՝ Ատենապետ, իսկ Տիկ. Վարդուհի Կիրակոսեան՝ Ատենադպրուհի։

Ցիսուներկուերորդ Համագումարը լսելով հաշուեքննիչ, յարաբերական թուղթերը քննող յանձնախումբերու զեկոյցներն ու Կեդրոնական Վարչութեան Ատենադպրի ընդարձակ ու խնամով պատրաստած տեղեկագիրը, միաձայնութեամբ գնահատեց Կեդրոնական Վարչութեան կատարած միամեայ եռանդուն աշխատանքը, ի մասնաւորի իր կազմի քարտուղար Սեդրակ Տանտիկեանը եւ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթի վարիչ Պետրոս Զոպեանը, որոնք լաւագոյնս կատարած են իրենց ուսերուն վրայ ծանրացող պատասխանատու պարտականութիւնները։ Պրն. Զոպեան անտեսելով աչքէն ու ձախէն Ընկերութեան հասցէին նետուած տգեղ զրպարտութիւններն ու պարսաւանքները, պարբերաթերթը պահած է իր կոչման բարձրութեան եւ Հայրենակցականի վայել դիրքի վրայ։

Պատմութեան Յանձնախումբի ատենապետ Խորէն Մ. Պոնափարթեան իր ընդարձակ զեկոյցով ժողովը իրազեկ պահեց Պատմագիրքին մէջ լոյս տեսնելիք նիւթերու եւ անոնց դասաւորման շուրջ։

Պրն. Իսրայէլ Տէր Յովհաննէսեան պայմաններու բերումով թէեւ չէր կրցած ժողովին ներկայ գտնուիլ, սակայն Կեդրոնական Վարչութեան ղրկած իր տեղեկագրէն կը յայտնուէր որ ինք Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Ցիսուն Տարուան պատմութիւնը (բաղկացած 117 էջերէ) լրացուցած եւ դրած է Յանձնախումբի տրամադրութեան ներքեւ։

Համագումարը իր գնահատանքը կ'արձանագրէ յիշեալին կատարած ծանր ու պատասխանատու աշխատանքին համար։

Մասնաճիւղերու ներկայացուցիչներուն տուած առանձինն տեղեկագիրներէն կը հաստատուի որ ամէն մէկ մասնաճիւղ կատարած է գոհացուցիչ աշխատանք, Ընկերութեան հետապնդած նպատակներու իրագործման եւ վարկը բարձր պահելու տեսակէտէն։

Ցիսուներկուերորդ Համագումարի նկատառութեան յանձնուած հարցերն ու որոշումները հետեւեալներն են.—

Երուսաղէմի Նուիրակ Հոգշ. Տ. Կիւրեղ Վրդ. Գաբիկեանի Երուսաղէմի դպրեվանքին մէջ ուսանող մը որդեգրելու առաջարկ-խնդրագրին առնչութեամբ, ժողովը կ'որոշէ որդեգրել ուսանող մը, եթէ բնիկ Մալաթիացի ուսանող մը գտնուի եւ պատրաստակամութիւն յայտնէ։

Համագումարը Կեդր. Վարչութեան տուած տեղեկագրէն իրազեկ եղաւ որ նոյն օրերուն Հայ Երուսաղէմի համար եղած հանգանակութեան Կեդրոնական Վարչութիւնը մասնակցած է 500 տոլարի գումարով մը եւ այդ կապակցութեամբ Երուսաղէմի Պատրիարքութեան Տեղապահութենէն ստա-

ցած է օրհնագիր մը, որ լոյս տեսած է ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթին մէջ.

Ժողովը նկատի ունենալով պէյրութարնակ երիտասարդ նկարիչ Յարութիւն Թորոսեանի հասցէին զանազան հաստատութիւններու կողմէ եղած գնահատական արտայայտութիւնները, որոշեց յիշեալը ղրկել Փարիզի Նկարչական Համալսարանը, շարունակելու համար իր ուսումը:

Ժողովը նկատի առնելով Լիոնի մասնաճիւղի ունեցած պատրաստ դրամը, կը խնդրէ յիշեալ մասնաճիւղէն որ տեղւոյն վրայ հոգայ յիշեալ նկարիչին կրթական ծախսերը, որ երկու տարուան շրջանին համար նախատեսուած է 1,500 տոլար:

Ընկերութեան շէնքը աւելի շահաւէտ դարձնելու համար զայն արդիականացնելու առաջարկը կը մերժուի ժողովին կողմէ, նկատի ունենալով ժամանակն ու վերջին ծայր ծախսալից ըլլալու պարագան:

Համագումարը այս շրջանին համար եւս կ'որոշէ մաս մը Ամերիկեան պոնտեր գնել թէ' Ամերիկեան կառավարութեան օգնած ըլլալու եւ թէ գանձին մէջ գտնուած դրամը օգտագործելու կրկնակ նպատակներէն առաջնորդուած:

Ընկերութեան կրթական հիմնական նպատակին աւելի զարկ տալու համար ժողովը որոշեց Կեդրոնական Վարչութեան միջոցաւ հրաւէր կարդալ ու անոնց ծախսերը հոգալու պատրաստակամութիւն յայտնել մալաթիացի բոլոր երիտասարդներուն, որոնք թէ' արժանիք ունին եւ թէ բարձրագոյն ուսում ստանալու ցանկութիւն ունենալով հանդերձ ուսանող դառնալու պայմանները կը լրացնեն:

Պատգ. Ժողովը Յիսուներեքերորդ համագումարի վայր որոշեց Ֆիլատելֆիան:

Ժողովը նկատի առնելով Փրաւիտենսի նման փոքր մասնաճիւղի մը կատարած աշխատանքներն ու զոհողութիւնները, որոշեց Պատուոյ դրօշը տալ յիշեալ մասնաճիւղին, ընդհանուր միաձայնութեամբ:

Ժողովը յառաջիկայ տարեշրջանին համար որոշեց Կեդրոնը պահել Ֆիլատելֆիոյ մէջ: Սոյն մասնաճիւղի կողմէ ներկայացուած եռապատիկ ցանկէն, գաղտնի քուէարկութեամբ Կեդրոնի անդամ ընտրուեցան Սեդրակ Տանտիկեան, Գրիգոր Գուչեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Արամ Աղազարեան, Միսաք Մազմանեան: Խորհրդատուներ ընտրուեցան Նիւ Եորքէն Խոսրով Մ. Պոնափարթեան եւ Զաքէոս Խաչատուրեան:

Կեդրոնական Վարչութիւնն իր դիւանը կազմեց հետեւեալներէ.—

| | |
|---|---|
| Միսաք Մազմանեան | Ատենապետ |
| Սեդրակ Տանտիկեան | Ատենադպիր |
| Գրիգոր Գուչեան | Գանձապահ |

Համաձայն ընդունուած սովորութեան, որ տարիներէ ի վեր կը գործադրուի, Համագումարի փակումէն ետք տեղւոյն մասնաճիւղին կողմէ սարքուեցաւ հանդիսաւոր պատուոյ սեղան մը: Ներկայ եղաւ հոծ բազմութիւն մը: Պատգամաւորներու կողմէ եղան կարճ ուղերձներ, որ խոր տպաւորութիւն թողուցին ներկաներուն վրայ եւ ստեղծեցին խանդավառ մթնոլորտ մը:

# ՅԻՍՈՒՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

*Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Յիսուներեքերորդ Պատգամաւորական ժողովը տեղի ունեցաւ Սեպտեմբեր* 1, 1956, *Շաբաթ օր, Հայ Առաքելական Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ Վարդանանց սրահին մէջ,* Մարշըլ եւ Սըսգահաննա *փողոցներու անկիւնը, Ֆիլատելֆիա:*

*Սոյն Պատգ. Ժողովին կը մասնակցէին* 16 *մասնաճիւղեր* 20 *պատգամաւորներով եւ* 25 *ձայնով:*

Կեդրոնական վարչութենէն.— *Սեդրակ Տանտիկեան:*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Յակոբ Ուրլեան եւ Նազարէթ Պէկեան:*

Պոսթոն.— *Տիկ. Վարդուհի Կիրակոսեան եւ Պետրոս Զոպեան:*

Փրաւիտենս.— *Յովհաննէս Խարբուդլեան:*

Ֆիլատելֆիոյ Կանանց.— *Տիկ. Արշալոյս Մելքիսեդեկեան:*

Քլիվլենտ.— *Լեւոն Թերխանեան եւ Յովհաննէս Ափալաքեան:*

Լինն.— *Առաքել Եաղըճեան եւ Արամ Աղազարեան:*

Հալէպ.— *Զաքէոս Խաչատուրեան եւ Պօղոս Շիւրելեան:*

Ֆրեզնոյ.— *Իսրայէլ Տէր Յովհաննէսեան:*

Նիւ Եորք.— *Խոսրով Մ. Պօնափարթեան:*

Շիքակոյ.— *Տիկ. Վարդանոյշ Փապուճեան եւ Միհրան Ոսկերիչեան:*

Լոս Անճելըս.— *Գէորգ Տէր Պաղտասարեան:*

Մարսէյլ.— *Տիկ. Հեղինէ Ազմելեան:*

Վիէն.— *Տիկ. Տիրուհի Կոստիկեան:*

*Պատգ. Ժողովի մնայուն դիւանի անդամներ ընտրուեցան Լեւոն Թերխանեան՝ Ատենապետ, Յովհաննէս Ափալաքեան՝ Ատենադպիր:*

*Ժողովին կողմէ ընտրուած զանազան յանձնախումբերու կողմէ բերուած զրաւոր տեղեկագիրներէն եւ բերանացի զեկոյցներէն յայտնի եղաւ որ Կեդր. Վարչութիւնը այս շրջանին եւս իր ուսերուն վրայ ծանրացող խիստ պատասխանատու պարտականութիւնները լաւագոյնս կատարած ու արդիւնաւոր շրջան մը բոլորած է: Այս շրջանին Կեդր. Վարչութիւնը իր սովորական ղարձած թղթակցութիւններէն զատ, յարաբերութիւններ մշակած է Ամերիկահայ Արեւելեան Թեմի առաջնորդ Տ. Մամբրէ Սրբազան Գալֆայեանի, Պոլսոյ Պատրիարք Ամենապատիւ Տ. Գարեգին Արքեպս. Խաչատուրեանի, Հայ Բարեգործական Ընդհանուր Միութեան եւ այլ հաստատութիւններու հետ:*

*Նոյնպէս իր հաշուետոմարներն ու արձանագրութեան տետրակները եղած են ճշգրիտ, խնամուած ու մաքուր: Նախորդ տարիներու նման հրատարակած է ճոխ բովանդակութեամբ եւ հոս ու հոն ցրուած հայրենակիցներու կեանքը պատկերացնող եւ ցոլացնող ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթը, որու պատասխանատուութիւնն ու ղեկավարութիւնը յանձնուած է թերթին վարիչ Պետրոս Զոպեանի:*

*Պատմութեան գիրքի յանձնախումբի ատենապետ Խ. Մ. Պօնափարթեա–*

նի տուած դրաւոր զեկոյցէն յայտնի եղաւ, որ թէեւ քիչ մը դանդաղ ու դժուար, բայց շնորհիւ թափուած աշխատանքներուն կարելի եղած է ձեռք ձգել կարգ մը անհրաժեշտ նկատուած անձերու կենսագրութիւններն ու նըկարները:

Այս Համագումարին բացառաբար ներկայ էին երկու պատուական հայրենակիցներ — Գերշ. Տ. Յովսէփ Ծ. Վ. Խանձեան եւ Առաքել Եաղըճեան: Առաջինը յունահայ կաթոլիկ համայնքի հովիւ, իր Միացեալ Նահանգներ այցելութեան առիթով, իսկ երկրորդը դէպի Մերձաւոր Արեւելք կատարած իր ուղեւորութեան առիթով: Խանձեան Սրբազան երկար ժամեր ունկնդրելէ ետք, իր մեկնումի պահուն ներշնչող ուղերձով մը փառաբանեց Մալաթիացիներու հայրենասիրական ոգին, թուեց հայ մշակոյթի տարածման ու պահպանման համար Ընկերութեանս մատուցած ծառայութիւնները, թափած ջանքերն ու ըրած զոհողութիւնները: Նոյնպէս գնահատանքով արտայայտուեցաւ ժողովականներու կողմէ ցուցաբերուած վերջին ծայր կարգապահութեան ու իրարու հանդէպ ունեցած սիրոյն, ինչպէս նաեւ ներկաներու կողմէ ժողովին ներկայացուցած իմաստուն եւ գործնական խորհուրդներու մասին: Յետոյ օրհնելով Համագումարն ու ժողովականները գոհ տպաւորութեամբ եւ խանդավառ տրամադրութեամբ լեցուած ժողովի յաջողութեան մաղթանքներ ընելով մեկնեցաւ ժողովասրահէն, խոր տպաւորութիւն ձգելով ներկաներուն վրայ:

Պրն. Առաքել Եաղըճեան Քալիֆորնիա հաստատուած ըլլալուն հետեւանքով թէեւ չէ կրցած Ընկերութեանս տարեկան համագումարներուն ներկայ ըլլալ, սակայն իր բարոյական եւ նիւթական զոհողութեամբ եւ կազմակերպչական աշխատանքով միշտ ալ օգտակար հանդիսացած է: Ան իր Մերձաւոր Արեւելք կատարած երեք ամսուան ուղեւորութենէն վերադարձին հանդիպած ու մօտէն հետաքրքրուած է Կրթասիրացի արտասահմանեան, նամանաւանդ Ֆրանսայի շրջանի մասնաճիւղերու կեանքով ու գործունէութեամբ:

Պրն. Եաղըճեան Մերձաւոր Արեւելքի իր ուղեւորութենէն ետք կը վերադառնայ Քալիֆորնիա, ուր հաստատուած է երկար տարիներ: Երբ կը մօտենան Համագումարի օրերը, ան երեք հազար մղոն ճամբայ կտրելով ներկայ եղաւ Յիսուներեքերորդ Համագումարին թէ՛ ներկայացնելու Լիոնի մասնաճիւղին ձայնը եւ թէ ժողովականները մասնակից դարձնելու իր տպաւորութիւններուն:

Անոր տուած տեղեկութիւններէն յայտնի եղաւ որ արտասահմանի մասնաճիւղերը ընդհանրապէս եւ Լիոնի մասնաճիւղը մասնաւորապէս, հանդէպ Ընկերութեան ունին խոր հաւատք եւ վառ սէր մը: Լիոնի մասնաճիւղն առանձնապէս, իր օրինակելի եւ մեղուաջան գործունէութեամբ կը վայելէ ամբողջ Ֆրանսահայութեան սէրն ու յարգանքը:

Համագումարը երկարատեւ ծափերով իր գնահատանքը կը յայտնէ Եա-

ջըմեանի կատարած աշխատանքներուն եւ ըրած զոհողութիւններուն համար։

Հարցեր ու որոշումներ.

ԷՋՄԻԱԾՆԻ ՏՊԱՐԱՆ.—1955 Թուականին Տ.Տ. Վազգէն Ա. Կաթողիկոսի ընտրութեան առիթով ամերիկահայ պատգամաւորները իրենց վերադարձին կը կազմակերպեն մարմին մը, Էջմիածինը նոր ու արդիական տպարանով մը օժտելու համար եւ կը սկսին Հարիւր Յիսուն Հազար (150,000) տոլարի արշաւին։

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնս յիշեալ Յանձնախումբէն ստացած ըլլալով դիմումնագիր մը, զայն ներկայացուց համագումարի նկատառման։

Կրթասիրացի Յիսուներեքերորդ Համագումարը նկատի առնելով ըսկըսուած ձեռնարկի կարեւորութիւնն ու անհրաժեշտութիւնը, յիշեալ արշաւի յաջողութեան համար որոշեց մասնակցիլ Հինգ Հազար (5,000) տոլարով։ Մալաթիայ Կրթասիրաց Ընկերութիւնն առաջինը եղաւ ստանալով Վեհափառ Հայրապետի առաջին օրհնագիրը։

ԿԱՆՈՆԱԳՐԻ ՓՈՓՈԽՈՒԹԻՒՆ.— Համագումարը անհրաժեշտ նկատեց Ընկերութեան կանոնագրի կարգ մը յօդուածները բարեփոխել։ Նշանակեց երեք հոգիէ յանձնախումբ մը, յանձինս Առաքել Եազըճեանի, Իսրայէլ Տ. Յովհաննէսեանի եւ Խոսրով Պոնափարթեանի։ Յանձնախումբը կանոնագրի փոփոխութեան հարցը իր բոլոր կողմերով ուսումնասիրելէ ետք, արդիւնքը պիտի ներկայացնէ Յիսունչորսերորդ համագումարին առ ի տնօրինութիւն։

ՎՃԱՐՈՒՄ.— Համագումարը որոշեց հոգալ ճանապարհածախսերը բոլոր անոնց, որոնք հայրենադարձի ցանկութեան հետ ունին անցագիր, սակայն նիւթական դժուարութեան առջեւ կը գտնուին։

ԵՐԵՍՆԱՄԵԱԿ.— Յիսունչորսերորդ Համագումարը որոշեց շքեղօրէն տօնել Ընկերութեանս գործունէութեան փառապսակը հանդիսացող ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ հիմնադրութեան 30ամեակը։

Տօնակատարութեան պաշտօնական բացման պատիւը կը շնորհուի Յիսունչորսերորդ Պատգ. Ժողովին, որ պիտի գումարուի Պոսթոնի մէջ։ Նոյնպէս 30ամեակի առթիւ ժողովը որոշեց լոյս ընծայել ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթի բացառիկ թիւ մը։

ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՀԱՐՑ.— Սուրիա բնակող Սարգիս Ղազարեան, որդին Տէր Ստեփան քհնյ. Ղազարեանի, նամակով մը փափաք յայտնած էր ուսանելու Էջմիածնի Ճեմարանին մէջ եւ ըլլալու կրօնական մը։ Ժողովը պատրաստակամութիւն յայտնեց հոգալու իր ամբողջ ծախսերը երբ ենթական պատրաստ ըլլայ գործնական քայլեր առնելու։

Համագումարը նկատի առաւ Պրազիլիայէն ղրկուած խնդրագիր մը՝ պատանի Յարութիւն Քեչիշեանի կողմէ (որդին Երուանդի եւ Թոռնիկը ամենուն ծանօթ Տք. Միքայէլ Քեչիշեանի) բժշկութիւն ուսանելու համար։ Ժողովը որոշեց մինչեւ յիշեալի ուսարման շրջանը անոր ծախսերը հոգալ, իբր Կրթասիրացի սան։

Ժողովը որոշեց եւ յանձնարարեց Կեդրոնական Վարչութեան որ անխտիր քաջալերէ մասնագիտական դասընթացքներու հետեւող բոլոր ուսանողներու խնդրագրերը եւ հնարաւորութեան սահմանին մէջ զանոնք իրականութիւն մը դարձնելու համար գործնական քայլեր առնէ:

Ժողովը որոշեց Պոլսոյ Դպրեվանքի տարեկան 400 տոլարի յատկացումը շարունակել:

ԴՐՕՇԻ ՆՈՒԻՐՈՒՄ.— Պատուոյ դրօշը տրուեցաւ Լիոնի մասնաճիւղին, նկատի ունենալով անոր նիւթական եւ բարոյական զոհողութիւնները եւ օրինակելի մասնաճիւղ մը ըլլալու հանգամանքը: Այս մասնաճիւղը ներկայ տարեշրջանին ոչ միայն հոգացած է տեղւոյն կարօտեալները, ապա նաեւ վճարած է Փարիզի մէջ ուսանող նկարիչ Յարութիւն Թորոսեանի կրթաթոշակը:

Յաջորդ Պատգ. Ժողովի վայր որոշուեցաւ Պոսթոն: Ինչպէս յիշուեցաւ, հոն տեղի պիտի ունենայ Ընկերութեանս գործունէութեանց փառապսակը հանդիսանայ ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ հիմնարկութեան տօնակատարութեան պաշտօնականացումը:

Կեդրոնական Վայր որոշուեցաւ Ֆիլատելֆիա: Ժողովին ներկայացուած եռապատիկ ցանկին վրայ գաղտնի քուէարկութեամբ Կեդրոնական Վարչութեան անդամ ընտրուեցան.—

Սեդրակ Տանտիկեան, Միսաք Մադմանեան, Գրիգոր Գուչեան, Յակոբ Թըրլեան, Գէորգ Պաղտասարեան: Նիւ Եորքէն խորհրդականներ ընտրուեցան Խոսրով Մ. Պոնափարթեան եւ Զաքէոս Խաչատուրեան:

Վերջացող տարեշրջանին ուսանողներու և կարօտեալներու եղած յատկացումներու գումարը եղած էր 1,860 տոլար: Յիշեալ գումարին մաս չեն կազմեր Լիոնի Մասնաճիւղի Հազար տոլարը եւ ամերիկահայ դպրոցներու յատկացուած 300 տոլարը:

Այս տարեշրջանին ընդհ. մուտք եղած է 14,305,12 տոլար, իսկ ընդհ. ելք եղած է 10,806,64 տոլար: Գանձը կը մնայ 3,498,48 տոլար պատրաստ գումար:

Կեդրոնը իր դիւանը կազմեց հետեւեալ ձեւով.—

| | |
|---|---|
| Միսաք Մադմանեան | Ատենապետ |
| Սեդրակ Տանտիկեան | Ատենադպիր |
| Գրիգոր Գուչեան | Գանձապահ |

Ժողովը իր աշխատանքները լրացնելէ եւ պաշտօնական փակումը կատարելէ ետք, նոյն սրահին մէջ ներկայ եղաւ տեղւոյն մասնաճիւղին կազմէ պատրաստուած ճաշկերոյթին ի պատիւ պատգամաւորներուն և ներկայ եղող հիւրերուն:

Խանդավառ մթնոլորտի մը մէջ եղած ինքնաբուխ նուէրներէն գոյացաւ մօտաւորապէս ԻՆՆ Հարիւր տոլար:

# ՅԻՍՈՒՆՉՈՐՍԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ




**Նոր Մալաթիոյ հիմնարկութեան Երեսնամեակի տարիւ տօնակատարութեան պաշտօնական բանքեթը, Յիսունչորսերորդ Համագումարին, Պոսթընի մասնաճիւղի ջանքերով, 1957, Սեպտեմբերին:**

**Օրուան պատուոյ սեղանը (Ձախէն աջ).—**
**(Ոտքի) Նաթոլէոն Մարգարեան (Ուստըրէն), Յովհաննէս Ափալաճեան (Քլիվլենտէն), Տիկին Վարդուհի Սիրակոսեան (Պոսթընէն), Լեւոն Թերխանեան (Քլիվլընտէն), Սեդրակ Գ. Տանտիկեան (Ֆիլատելֆիայէն), Պետրոս Զօպիեան (Պոսթընէն), Երուանդ Աղանաճեան (Քլիվլընտէն, օրուան գլխաւոր խօսողը), Տիկին Վարդանոյշ Փափազեան (Նիւ Եորքէն), Գէորգ Տէր Պողոսեան (Ֆիլատելֆիայէն), Մուշեղ Ասեմեան (ներկայացուցիչ Համախարբերդցիներու Միութեան), Սմբատ Թագւորեան (ներկայացուցիչ Չմշկածագի Միութեան), Գէորգ Գալուստեան (ներկայացուցիչ Արաբկիրի Միութեան):**

*Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Յիսունչորսերորդ Պատգամաւորական ժողովը, համաձայն նախորդ գերագոյն ժողովի որոշման, գումարուեցաւ Օգոստոս* 31, 1957-*ին, Շաբաթ օր, Ս. Յակոբ Հայաստանեայց եկեղեցւոյ սրահին մէջ, Ուոթըրթաուն, Մես.:*

*Սոյն Պատգամաւորական ժողովին կը մասնակցէին* 16 *մասնաճիւղեր* 29 *պատգամաւորներ* 30 *ձայներով:*

Կեդր. վարչութիւն.— *Սեդրակ Տանտիկեան:*

Փրաւիտենս.— *Լեւոն Մուրատեան:*

Ուստր.— *Ստեփան Պաղտասարեան եւ Արմենակ Մուրատեան:*

Պոսթըն.— *Տիկ. Վարդուհի Կիրակոսեան եւ Պետրոս Ջոպեան:*

Ֆիլատելֆիոյ Կանանց.— *Գէորգ Տ. Պաղտասարեան և Արամ Աղազարեան:*

Ֆիլատելֆիոյ Արանց.— *Գէորգ Տ. Պաղտասարեան եւ Արամ Աղազար-նոյշ Ապաղարեան:*

Քլիվլենտ.— *Յովհաննէս Ափալաքեան եւ Լեւոն Թերխանեան:*

Շիքակօ.— *Արամ Տէր Մուշեղեան — 2 ձայն:*

Ֆրեզնօ.— *Լեւոն Փափազեան:*

Լոս Անճելըս.— *Ստեփան Մանուշեան:*

Նիւ Եորք.— *Տիկ. Վարդանոյշ Փապուճեան:*

Ռոման (Ֆրանսա).— *Մուրատ Մուրատեան եւ Նշան Կանանեան:*

Լիոն. (Ֆրանսա).— *Խաչատուր Մանուշեան եւ Յովհ. Խարբութլեան:*

Լիոն Երիտ. (Ֆրանսա).— *Տիկ Մարի Տէր Յովհաննէսեան:*

Վիէն (Ֆրանսա).— *Միհրան Ոսկիեան եւ Միսաք Արսլանեան:*

Մարսէյլ (Ֆրանսա).— *Տիկ. Եսթեր Աւետիսեան եւ Գոհարիկ Թիւթիւնճեան:*

Հալէպ (Սուրիա).— *Տիկ. Վիքթորիա Պարմաքեան եւ Նափոլէոն Պարմաքեան:*

Պէյրութ (Լիբանան).— *Ներսէս Առաքելեան և Սարգիս Թիւթիւնճեան:*

*Համագումարի մնայուն դիւանի անդամներ ընտրուեցան Յովհաննէս Ափալաքեան՝ Ատենապետ, իսկ Լեւոն Թերխանեան՝ Ատենադպիր:*

*Համագումարէն ընտրուած զանազան յանձնախումբերու եւ մասնաճիւղերու ներկայացուցիչներուն տուած զեկոյցներէն եւ Կեդրոնական Վարչութեան քարտուղարութեան ընդարձակ տեղեկագրէն յայտնի եղաւ, որ շնորհիւ Կեդրոնական Վարչութեան բծախնդիր աչալրջութեան ու աշխոյժ գործունէութեան, Ընկերութիւնը բոլորած է բեղմնաւոր շրջան մը: Իր ըրած յատկացումները թէ՛ ուսանողներու եւ թէ կարօտեալներու կատարուած են առանց թերացումի, իսկ իր յարաբերական կապը իր կազմին հետ առնչութիւն ունեցող բոլոր մարմիններուն եւ անհատներուն հետ եղած է առանց յապաղումի եւ սիրալիր:*

*Նոյն տարեշրջանին Կեդրոնական Վարչութիւնը մասնաւորապէս ջանադիր եղած է սերտ կապ հաստատել ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ բնակող հայրենակիցներուն հետ, նպատակ ունենալով մօտէն ծանօթանալու ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ համայնապատկերի ընդհանուր ծալքերուն: Շնորհիւ թափուած ջանքերուն, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱՅԷՆ ստացուած են կարգ մը ընտանիքներու եւ հաստատութիւններու նկարներ եւ զանոնք պատկերացնող բացատրական տողեր, որոնք առեննին լոյս տեսան ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթին մէջ: Կեդր. Վարչութիւնը նոյնպէս հետաքրքրութիւն ցոյց տուած եւ հետապնդումներ կատարած է մօտէն ծանօթանալու իր որդեգրած սաներու նկատմամբ:*

*ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթի վարիչ Պետրոս Ջոպեան իր զեկոյ-*

ցով Համագումարի ուշադրութեան յանձնեց տպագրական ծախսերու ահարկու բարձրացումը, տարենուէրները գանձելու անհրաժեշտութիւնը, աշխատակիցներու եւ թղթակիցներու ոմանց ցոյց տուած անտարբերութեան վերացման դարմանումը, որոնք անհրաժեշտ են թերթը իր օրին եւ առանց յապաղումի լոյս ընծայելու համար։

Ներկայ տարին զուգադիպած ըլլալով ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ հիմնարկութեան 30ամեակին, նախորդ Համագումարի որոշման համաձայն, հրատարակուած է սովորական թիւերու կրկնապատիկ ծաւալով ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ բացառիկ թիւ մը։ Բացի Մալաթիացիներէ, բացառիկ այս թիւին իրենց աշխատակցութիւնը բերած են ամերիկահայ յայտնի գրողներ և բանաստեղծներ։ Իսկ ամերիկահայ բարեկամ մամուլը, առանց բացառութեան, նուիրած է խմբագրականներ եւ հիւրընկալած յօդուածներ։ Բացառիկի կողքը խիստ ճաշակաւոր, բովանդակութիւնը ճոխ, իսկ նկարները որ երեւցան բացառիկին մէջ, կը յայտնաբերեն ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ տնտեսական, կրթական եւ ճարտարարուեստական յառաջդիմութիւնները ցոլացնող անհաւատալի ըլլալու աստիճան գործ մը։ Շնորհիւ այս հանգամանքին, սովորականէն քանի մը հարիւր աւելի օրինակներն իսկ չեն կրցած բաւարարութիւն տալ եղած պահանջներուն։

Պատմագիրքի Յանձնախումբը յայտնեց որ եթէ անակնկալ դժուարութեանց չհանդիպի, պիտի կարողանայ տարուան մը ընթացքին զայն իրականութիւն դարձնել։



**Կարգ մը Մալաթիացիներ Նոր Մալաթիոյ մէջ (Հայաստան)**



Նոր Մալաթիոյ Ալ. Միասնիկեանի անուան գուլպայ եւ կոստաժային Ֆաբրիկայի ընդհանուր տեսքը



Նոր Մալաթիոյ Ալ. Միասնիկեանի անուան գուլպայ-տրիկոտաժային Ֆաբրիկայի բաժանմունքներէն մէկը

*Յիսունչորսերորդ Համագումարը ներկայացուած հարցերուն մասին առաւ հետեւեալ որոշումները.*

*1.— Համագումարը պարտականութիւն կը դնէ Կեդր. Վարչութեան վրայ որ ջանադիր ըլլայ աւելի սերտացնել ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ համայնքին հետ արդէն գոյութիւն ունեցած մշակութային կապերը։*

*2.— Համագումարը նկատի ունենալով Ընկերութեանս առաջնորդներէն Նիւեորքաբնակ Պ. Յուսուփ Մ. Պօնափարթեանի 30 երկար տարիներու բեղմնաւոր ծառայութիւններն ու բացառիկ զոհողութիւնները, միաձայնութեամբ որոշեց, որպէս յարգանքի ցոյց մը, հանդիսաւորապէս տօնել անոր ամբասիր ծառայութեան 30ամեակը եւ առ այդ կը հրահանգէ իր բոլոր մասնաճիւղերուն որ պարտն ու պատշաճը տնօրինեն գործադրելու այս որոշումը։*

*3.— Ընկերութեանս սեփականութիւնը եղող Նիւ Եորքի շէնքին համար տեղեկացուեցաւ որ 90,000 տոլարի առաջարկ եղած է գնելու համար։*

*Ժողովականները կարծիքներու փոխանակութիւն ունեցան եւ որոշուեցաւ դիմումը մերժել։*

*4.— Կրթական Հիմնադրամի առնչութեամբ, Համագումարը աւելի օգտակար եւ գործնական կը նկատէ ներկայացուած ծրագիրը եղածին պէս բազմագրելով ղրկել բոլոր մասնաճիւղերուն, առ ի խոր ուսումնասիրութիւն, վերջնական եզրակացութեան ու որոշման յանգելու համար։*

*5.— Ժողովը նկատի ունենալով օգնութեան համար իրեն ներկայացուած խնդրագրերը, միաձայնութեամբ որոշեց Պէյրութի մէջ Վահան Թէքէեանի անուան նոր կառուցուելիք դպրոցին մէջ Ընկերութեան անունով դասարանի մը ծախսերը հոգալ եւ առ այդ կը նուիրէ Հազար տոլար։*

*Նոյնպէս 500 տոլար ալ կը նուիրէ Պէյրութի Սահակեան եւ Հալէպի Կիլիկեան վարժարաններուն։*

*Ժողովը նկատի ունեցաւ երեք նոր ուսանողներու խնդրագրերն ու զանոնք հաստատող տեղւոյն մասնաճիւղերու եւ կրթական հաստատութիւններու յանձնարարականները։ Իր այս լայն ծանօթութիւններէն եւ ուսումնասիրութենէն ետք, որոշեց երեքն ալ որդեգրել որպէս Կրթասիրացի սաներ եւ հոգալ անոնց ծախսերը։ Այս երեք սաներն են.—* Օր. Մարի Գազանճեան *Հալէպէն, որ պիտի ուսանի Պէյրութի Ամերիկեան համալսարանին մէջ, երկու տարի։* Օր. Բոլէթ Յովակիմեան, *Մարսէյլէն, իսկ* Օր. Մարի Գարաօղլանեան, *Վիէնէն, որ պիտի ուսանի Փարիզի Դպրոցասիրացի վարժարանին մէջ։*

*6.— Պատուոյ Դրօշը, առ ի գնահատութիւն եւ վարձատրութիւն, կրկին տրուեցաւ Լիոնի մասնաճիւղին, իր ունեցած արդիւնաշատ եւ փայլուն գործունէութեան համար։*

*Համագումարը իր մասնաւոր գնահատանքը կը յայտնէ Կեդր. Վարչութեան կազմին եւ պաշտօնաթերթի վարիչ Պետրոս Զօպեանի։ Առաջինին այս գնահատանքը կը տրուի Ընկերութեան գործերը լաւագոյնս ղեկավարած ըլլալուն, իսկ երկրորդին, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ աւանի 30ամեակը խորհրդանշող*



Նոր Մալաթիոյ Ալ. Միասնիկեանի անուան զուլպայ տրիկոտաժային ֆաբրիկայի տնօրէն Անտոն Մազմանեանը իր առանձնասենեակին մէջ



Կարի բաժանմունքի վարիչ Լեւոն Կիւրեղեանը

ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ բացառիկի մը նման ներկայանալի եւ Ընկերութեանս եւ Մալաթիացիներու պատիւ բերող թիւ մը լոյս ընծայելուն համար:

7.— Յաջորդ համագումարի վայր որոշուեցաւ Քլիվլենտ:

8.— Կեդրոնը կրկին Ֆիլատելֆիա մնալու որոշում տրուեցաւ: Ներկայացուած եռապատիկ ցանկին վրայ գաղտնի քուէարկութիւն կատարուելով Կեդր. Վարչութեան անդամ ընտրուեցան.—

Սեդրակ Տանտիկեան, Գրիգոր Գուչեան, Միսաք Մազմանեան, Գէորգ Տէր Պալտասարեան, Յակոբ Ուրլեան: Խորհրդականներ ընտրուեցան Տիկ. Վարդանոյշ Փափուճեան եւ Խորէն Մ. Պոնափարթեան, Նիւ Եորքէն:

9.— Համաձայն տրուած տեղեկագրին, ներկայ տարեշրջանին ուսանողներու յատկացում եղած էր 1,230 տոլար:

Տարեշրջանի ընդհ. մուտք եղած էր 16,373,07 տոլար, իսկ ընդհ. ելք եղած էր 15,552,24 տոլար: Գանձը կը մնար 820,83 տոլար պատրաստ դրամ:

Յիսունչորսերորդ Համագումարի դիւանը մասնաճիւղի կողմէ եղած աննման հիւրասիրութեան եւ ժողովի ընթացքին ներկայացուցիչներու յայտնաբերած հայրենասիրական բարձր ոգիին համար գնահատանքի խօսքերով համագումարը պաշտօնապէս փակուած յայտարարեց, որմէ ետք նոյն սրահին մէջ տեղի ունեցաւ ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ հիմնադրութեան 30ամեակի տօնակատարութեան պաշտօնական բացումը:

Այս տօնակատարութիւնն իր բազմամարդութեամբ, նիւթական եւ բարոյական արդիւնքով, գեղարուեստական ճոխ յայտագրով եւ քոյր հայրենակցականներու ներկայացուցիչներու ներկայութեամբ եղաւ նախընթաց չունեցող հաւաքոյթ մը: Օրուան գլխաւոր խօսողն եղաւ Հայաստանէն նոր վերադարձած Պրն. Երուանդ Աղաճանեան, իսկ տօնակատարութեան հանդէսին նախագահեց Ընկերութեանս անխոնջ մշակներէն Պրն. Պետրոս Զօպիեանը:

Կեդրոնական Վարչութիւնն իր դիւանը կազմեց հետեւեալ կերպով.—

| | |
|---|---|
| Միսաք Մազմանեան | Ատենապետ |
| Սեդրակ Տանտիկեան | Ատենադպիր |
| Գրիգոր Գուչեան | Գանձապահ |

## ՅԻՍՈՒՆՀԻՆԳԵՐՈՐԴ ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎ

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Յիսունհինգերորդ պատգամաւորական ժողովը, համաձայն նախորդ գերագոյն ժողովի որոշման, տեղի ունեցաւ 1958, Օգոստոս 30-ին, Շաբաթ օր, 1009 Մայլըս Էվընիւ, Քլիվլենտ, Օհայօ:

Պատգ. ժողովին կը մասնակցէին 17 մասնաճիւղերու 28 պատգամաւորները, 30 ձայներով եւ հետեւեալ կերպով.—

Կեդրոնական վարչութենէն.— Սեդրակ Գ. Տանտիկեան:

Քլիվլենտ.— Լեւոն Թերխանեան եւ Գէորգ Արսլանեան:



Նոր Մալաթիոյ Ստալինի անուան ֆաբրիկայի գործող բաժանմունքը



Գաբրիէլ Թիմբիկնեան (աջին) եւ խառատ Նիւլպէնկ Թորոսեան աշխատանքի պահուն

Ֆիլատելֆիոյ Արանց․— *Գէորգ Տ․ Պաղտասարեան եւ Արամ Աղաղար-եան։*

Ֆիլատելֆիոյ Կանանց․— *Տիկ․ Մաքրուհի Մազմանեան։*

Շիքակոյ․— *Մաքրուհի Տ․ Մուշեղեան եւ Արամ Տ․ Մուշեղեան։*

Փրաւիտենս․— *Յովհաննէս Խարբութլեան։*

Լիոն (Ֆրանսա)․— *Յովհաննէս Ափալաքեան եւ Գրիգոր Երանեան։*

Վիէն (Ֆրանսա)․— *Սարգիս Գալուստեան։*

Ս․ Շամոն (Ֆրանսա)․— *Մուրատ Մուրատեան եւ Միսաք Արսլանեան։*

Ռոման (Ֆրանսա)․— *Յարութիւն Աթոլիկեան եւ Մելքոն Պըլըղճեան։*

Պոսթոն․— *Տիկ․ Լուսաբեր Փափազեան եւ Լեւոն Փափազեան։*

Լոս Անճելըս․— *Տիկ․ Ա․ Տինկիլեան։*

Նիւ Եորք․— *Զաքէոս Խաչատուրեան։*

Հալէպ (Սուրիա)․— *Սահակ Պեննէեան եւ Միհրան Ոսկերիչեան։*

Պէյրութ (Լիբանան)․— *Խաչատուր Տ․ Պաղտասարեան եւ Տիկ․ Մ․ Գալաճեան։*

Ֆրեզնոյ․— *Մանուէլ Մինասեան։*

Ուստր․— *Խաչատուր Մանուշեան եւ Խոսրով Ոսկերիչեան։*

*Համագումարի մնայուն դիւանի անդամներ ընտրուեցան Գէորգ Արսլանեան՝ Ատենապետ, իսկ Յովհաննէս Ափալաքեան՝ Ատենադպիր։*

*Սոյն Համագումարէն ընտրուող զանազան յանձնախումբերու եւ մասնաճիւղերու տուած զեկոյցներէն, ինչպէս նաեւ Կեդրոնական Վարչութեան քարտուղարի ընդարձակ տեղեկագիրէն յայտնի եղաւ որ շնորհիւ Կեդր․ Վարչութեան անսպառ կորովին եւ ջանադրութեանց, Ընկերութիւնն այս տարի եւս բոլորած էր արդիւնաւոր շրջան մը։ Կեդր․ Վարչութեան կողմէ եղած յատկացումները, ըլլան անոնք ուսանողներու թէ կարօտեալներու, կատարուած են առանց թերացումի եւ առանց խտրութեան։ Իսկ իր յարաբերութիւնները իրեն հետ կապ ունեցող բոլոր մարմիններուն ու անհատներուն հետ եղած են առանց յապաղումի եւ սիրալիր։*

*Այս տարեշրջանին Կեդր․ Վարչութիւնը մասնաւորապէս հետամուտ եղած եւ ճիգ խնայած չէ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ բնակող հայրենակիցներուն հետ իր յարաբերութեան կապը աւելի սերտացնելու։*

*Համագումարը խրախուսանք դառնալով թափուած ջանքերուն եւ ձեռք բերուած փայլուն արդիւնքին, կ'արձանագրէ իր գոհունակութիւնն ու գնահատանքը։*

*Յիսունհինգերորդ Համագումարի տուած որոշումները հետեւեալներն են․—*

*Ա․— ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթի հաւաքածոն կորուստէ փրկելու մտածումէն առաջնորդուած, Համագումարը որոշեց պարբերաթերթի 20 տարիներու լրիւ հաւաքածոն կազմել տալով ղրկել Երեւանի Ալ․ Միասնիկեանի անուան հանրային գրադարանը։*

*Բ․— Համագումարը նկատի ունենալով տարուէ տարի բարձրացող-*



Նոր Մալաթիոյ միջնակարգ դպրոցը



Նոր Մալաթիոյ մանկապարտէզին բաժանմունքն մը

ուսման համար Ընկերութեանս դիմում ընողներու թիւի զգալիօրէն բարձրացումը, եւ որպէսզի Ընկերութիւնս յետ այսու կարենայ եւ հնարաւորութիւն ունենայ ուսման կարօտ եւ սակայն նիւթական դժուարութեանց հանդէպ գտնուողներուն եւս օգտակար հանդիսանալ, Ժողովը որոշեց փոխատուութեան ձեւին տակ բարձրագոյն ուսման հետեւող եւ նիւթական դժուարութեանց առջեւ գտնուող ուսանողներուն օգնել: Այսինքն, Կեդրոնական Վարչութեան կողմէ պատրաստուած խոստմնագրերը ստորագրելէ, տեղւոյն մասնաճիւղերու եւ կամ արժանահաւատ մարմիններու կողմէ հաստատուելէ ետք, պահանջուած օգնութեան ընթացք տալ: Իրենց ուսման կամ մասնագիտութեանը շրջանը լրացնող ուսանողներու վրայ բարոյական պարտականութիւն կը դրուի, իրենց հաշուոյն տրուած վճարումները մաս առ մաս վերադարձնել Ընկերութեանս:

ԾԱՆՕԹ.— Այս պարտաւորիչ պայմաններէն զերծ կը մնան անոնք, որոնք կ՚ուսանին Երեւանի Պետական Համալսարանին մէջ:

Գ.— Յիսունհինգերորդ Համագումարը նկատի ունեցաւ Լիբանանի եւ Սուրիոյ ազգային վարժարաններու ոչ մխիթարական պայմանները եւ առ այդ Թէքէեան, Սահակեան եւ Կիլիկեան վարժարաններու օգնութեան համար քուէարկեց Եօթ Հարիւր Յիսուն (750) տոլար, իւրաքանչիւրին 250 տոլար:

Դ.— Պատգ. Ժողովը որոշեց նաեւ Ընկերութեանս կողմէ տարիներէ ի վեր Ամերիկահայ Ազգային Առաջնորդարանի հովանաւորութեան տակ գտնուող հայ դպրոցներուն եղած յատկացումները շարունակել ըստ առաջնոյն:

Ե.— ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ պարբերաթերթի հրատարակման Քսանամեակը նկատի ունենալով, Ժողովը որոշեց այդ առթիւ լոյս ընծայել բացառիկ թիւ մը:

Զ.— Համագումարը իր ունեցած չորս բարձրագոյն ուսում ստացողներու թիւին վրայ որոշեց աւելցնել երեք նոր ուսանողներ եւս, յանձինս Պրնք. Միսաք Տէր Պետրոսեանի (Երուսաղէմէն), քիմիագիտութեան ճիւղին հետեւելու, Ռուբէն Քիւլխանճեանի (Հալէպէն), դեղագործութիւն ուսանելու եւ Աւետիս Շահրիկեանի, առեւտրական ճիւղին:

Է.— Կրթական Հիմնադրամին համար երկու տարի առաջ կազմուած յանձնախումբի ներկայացուցած ծրագիրը նկատի առաւ Ժողովը եւ այդ ծրագրի որոշ մասերը անգործնական եւ անբաւարար համարեց: Ժողովը նկատի ունենալով նաեւ որ յիշեալ յանձնախումբի երկու անդամները յաւիտենապէս բաժնուած են մեզմէ, անոնց տեղ նշանակեց երկու հոգի, յանձինս Գէորգ Տ. Պաղտասարեանի եւ Լեւոն Թերխանեանի:

Ը.— Կրթասիրացի պատմութիւնը անգլերէնով հրատարակելու առաջարկը մերժուեցաւ, ներկայ օրերուն զայն կանխահաս նկատելով:

Թ.— Թէեւ նախապէս որոշուած էր Կրթասիրացի 50 տարիներու պատմութիւնը լոյս ընծայել, որ մաս կազմած պիտի ըլլար ՀԻՆ ՄԱԼԱԹԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, եւ սակայն զանազան արգելքներով անոր հրատարակութիւնն յապաղած ըլլալուն, Ժողովը որոշեց վերջին ՀԻՆԳ տարիներու պատմութիւնը

եւս պատրաստելով, փոխան ՅԻՍՈՒՆԻ, լոյս ընծայել 55 տարիներու պատմութիւնը, որուն գործադրութիւնը եւ պատրաստութիւնը ձգուեցաւ Կեդր. Վարչութեան:

Ժ.— Համագումարը որոշեց եւ իրաւունք տուաւ Կեդրոնական Վարչութեան որ երբ Նիւ Եորքի մէջ եղող Ընկերութեանս շէնքը գնողներ ըլլան, շէնքին վերջնական գինն է Հարիւր Քսանհինգ Հազար (125,000) տոլար:

ԾԱՆՕԹ.— Յիսունհինգերորդ Համագումարէն ետք վերոյիշեալ գումարը տուողներ եղած են, սակայն այդ շրջանին կալուածներու արժէքները օր ըստ օրէ բարձրանալուն համար, Կեդրոնական Վարչութիւնը շէնքը աւելի բարձր գնով ծախելու մտադրութեամբ սպասողական դիրքի մէջ գտնուած է:

ԺԱ.— Համագումարը նկատի ունենալով Ամենայն Հայոց Հայրապետ Նորին Սուրբ Օծութիւն Տ. Տ. Վազգէն Ա.ի գահակալութեան երրորդ եւ ծննդեան յիսուներորդ կրկնակ տարեդարձները, որոշեց Էջմիածնի մէջ կատարուելիք տօնախմբութեան օրերուն հեռագրով զայն շնորհաւորել:

ԺԲ.— Ներկայ Համագումարը որոշեց եւ իրաւունք տուաւ Կեդրոնական Վարչութեան, որ երբ առիթը ներկայանայ, յարմար անձնաւորութիւն մը ղրկէ ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ, որ ան տեղւոյն վրայ ծանօթանալով ընդհանուր վերելքին, մանրակրկիտ ուսումնասիրութիւն մը կատարելով, իր վերադարձին կրած տպաւորութիւններուն եւ ուսումնասիրութեանց արդիւնքին մասնակից դարձնէ իր հայրենակիցները, որոնք աւանի հիմնադրութեան օրերուն հոգեւին նուիրուած, զոհած եւ իրենց կարելին ըրած են: Նոյնպէս տեղւոյն վրայ հետամուտ ըլլալ, թէ յետ այսու ի՞նչպէս եւ ինչո՞վ կրնանք սատարել ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ վերելքին:

ԺԳ.— Համագումարը գնահատելով Պոսթընի մասնաճիւղի տարուան մը շրջանին նիւթական ու բարոյական գետնի վրայ կատարած փայլուն աշխատանքներն ու ձեռք բերած արդիւնքները, նամանաւանդ ՆՈՐ ՄԱԼԱԹԻՈՅ հիմնադրութեան 30ամեակի տօնակատարութիւնը արտակարգ եւ աննախընթաց յաջողութիւն դարձուցած ըլլալուն, Ժողովը միաձայնութեամբ, առ ի գնահատութիւն, Ընկերութեան Պատուոյ Դրօշը տուաւ Պոսթընի մասնաճիւղին:

ԺԴ.— Համագումարը իր ջերմ զգացումներով գնահատեց Կեդրոնական Վարչութեան կազմը ու պարբերաթերթի վարիչ Պետրոս Զօպեանը, որոնք իրենց վստահուած պարտականութիւնները լիովին եւ բծախնդրութեամբ կատարած էին:

ԺԵ.— Ժողովը յաջորդ Պատգ. Ժողովի վայր որոշեց Փրաւիտենս:

ԺԶ.— Որոշուեցաւ Կեդրոնական Վարչութեան կազմը կրկին պահել Ֆիլատելֆիոյ մէջ: Ներկայացուած եռապատիկ ցանկին վրայէն Կեդրոնական Վարչութեան անդամներ ընտրուեցան.—

Գ. Տէր Պաղտասարեան, Սեդրակ Տանտիկեան, Գրիգոր Գուչեան, Միսաք Մազմանեան, Յակոբ Ուրլեան: Նիւ Եորքէն Կեդրոնի խորհրդականներ — Խօսրով Մ. Պոնափարթեան եւ Զաքէոս Խաչատուրեան:

Ներկայացուած հաշուեկշիռէն յայտնուեցաւ որ Ընկերութիւնը ներկայ տարեշրջանին ուսանողներու եւ կարօտեալներու յատկացուցած է 3,735,00 տոլար։

Ներկայ տարեշրջանին ընդհ. մուտք եղած է 16,606,95 տոլար, իսկ ընդհ. ելք եղած է 13,775,77 տոլար։ Գանձը կը մնայ 2,831,18 տոլար պատրաստ դրամ։

Կեդրոնական Վարչութեան տարեհաշիւներէն համագումարը տեղեկացաւ որ մինչեւ ներկայ ժողովի թուականը Ընկերութեանս ունեցած շարժական հարստութիւնը, Ամերիկեան Կառավարութեան խնայողական պոնտերով միասին, կը հասնի Քառասուն Վեց Հազար Հինգ Հարիւր Երեսուն Ինը տոլար 41 սէնթի (46,539,41)։

Համագումարի օրուան դիւանին կողմէ Քլիվլենտի մասնաճիւղին կողմէ ընծայուած հիւրասիրութեան համար գնահատական եւ շնորհակալական խօսքեր է ետք, ժողովը պաշտօնապէս փակուած յայտարարուեցաւ։

Փակումէն ետք տեղւոյն մասնաճիւղին կողմէ, ի պատիւ պատգամաւորներուն եւ հիւրերուն սարքուած էր հանդիսաւոր ճաշկերոյթ մը, ուր ընտեղծուեցաւ մտերմիկ ու հայրենասիրական խանդավառ մթնոլորտ մը։

Այս հաւաքոյթին ներկայ էին հեռաւոր Քալիֆորնիայէն, նոյնիսկ Ֆրանսայէն եկող հայրենակիցներ։ Հաւաքոյթն իր բազմամարդութեամբ, բարոյական եւ նիւթական յաջողութեամբ եղաւ անգերազանցելի եւ նախընթաց չունեցող ձեռնարկ մը, ուր եղած սրտաբուխ նուէրներու գումարը հասաւ Հազար Երկու Հարիւր տոլարի։

Կեդրոնն իր դիւանը ներկայացուց.—

| | |
|---|---|
| Միսաք Մազմանեան | Ատենապետ |
| Սեդրակ Գ. Տանտիկեան | Ատենադպիր |
| Գրիգոր Գուչեան | Գանձապահ |



Արթին Աղա Գույումճի Փիլոյեան



Սարգիս Կիզիրեան

# ՀԱՇՈՒԵՏՈՒՈՒԹԻՒՆ

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը, սկսեալ 1904 Յունուար 4-էն մինչեւ 1952 Օգոստոս 31, ունեցած է հետեւեալ մուտքն ու ելքը.

ՄՈՒՏՔ.— Ընկերութեան մուտքը գոյացած է հետեւեալ աղբիւրներէն.—

1.— Մասնաճիւղերէն,
2.— Նուիրատուութիւններէն,
3.— Հոպոքընի տան վարձքերէն,
4.— Հոպոքընի տան ծախուած գումարէն,
5.— Նիւ Եորքի շէնքի վարձքերէն:

Մասնաճիւղեր.—

Իւրաքանչիւր քաղաքի մէջ եղող Արանց եւ Կանանց մասնաճիւղերու հաշիւները միացուցած ենք: Իսկ այն տեղերը, ուր երիտասարդաց լիկաներ եղած են, անոնց հաշիւներն ալ աւելցուած են տեղական մասնաճիւղի հաշիւներուն վրայ, այնպէս որ երբ մասնաճիւղը կ'ըսենք, կը հասկնանք նոյն քաղաքին մէջ եղող արանց, կանանց եւ երիտասարդաց լիկայի անունով Կեդրոնական Վարչութեան ղրկուած ընդհանուր գումարը:

Մասնաճիւղերէ մուտք, 1904-էն 1952

| | |
|---|---|
| Նիւ Եորք | 20,170,00 |
| Ֆիլատելֆիա | 30,235,00 |
| Ուստր | 17,583,00 |
| Քլիվլենտ | 32,160,00 |
| Պոսթըն | 13,554,00 |
| Փրաւիտենս | 5,954,00 |
| Ֆրէնքլին | 3,816,00 |
| Վոքեկըն | 2,885,00 |
| Լովըլ | 3,444,00 |
| Ֆիչպուրկ | 924,00 |
| Նիւպրիփորթ | 845,00 |
| Նորթ Աթըլպորոյ | 495,00 |
| Տիթրոյիթ | 7,403,00 |
| Ս. Լուիզ եւ Կրանիթ Սիթի | 1,505,00 |
| Ճիքակոյ | 729,00 |
| Քուպա | 725,00 |
| Լարենս | 196,00 |
| Պրաքթըն | 513,00 |

| | |
|---|---|
| *Քեմտըն* | 731,00 |
| *Ֆրեզնոյ* | 2,797,00 |
| *Լոս Անճելըս* | 990,00 |
| *Նիւ Պրիթէյն* | 255,00 |
| *Երուսաղէմ* | 250,00 |
| *Սթ. Շամոն* | 1,134,00 |
| *Վալանս* | 1,481,00 |
| *Վիէն* | 122,00 |
| *Պոլէն* | 85,00 |
| *Ռոման* | 214,00 |
| *Լիոն* | 607,00 |
| *Պէյրութ* | 112,00 |
| *Մարսէյլ* | 85,00 |
| *Ֆրանսայի Գործադիր* | 1,236,00 |

*Մասնաճիւղերէ ստացուած ընդհանուր գումար* 153,235,00 *տոլար*:

Նուիրատուութիւններ. —

*Նուիրատուութեանց ցանկին մէջ զետեղած ենք անհատական անուններով եղած նուէրները, հարսանեկան եւ փոխան ծաղկեպսակներու առիթներով եղած հանգանակութիւններէ գոյացած գումարները, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթին համար եղած նուէրները, եւայլն*:

*Այս առթիւ ստացուած ընդհ. գումարն է* 20,382,00 *տոլար*:

Հոպոքընի Տունը. —

*Հոպոքընի Տունը, ինչպէս տեսանք պատմութեան ընթացքին, գնուած է 1906–ի վերջերը 12 հազար տոլարի: Սկզբնական շրջանին ամսական հազիւ 63 տոլարի եկամուտ մը ունէր: Տան վրայ եղած* Մորթկէյճներուն *պատճառով կարելի չէր ծախքերը հաւասարակշռել: Շատ անգամ մէկ կամ միւս յարկը պարապ կը մնար, որ աւելի կը դժուարացնէր կացութիւնը: 1916ին, վերջապէս Ընկերութիւնը կրցաւ այդ շէնքին պարտքը վճարել ամբողջութեամբ, ուրկէ ետք շէնքը եղաւ բաւական արդիւնաբեր կալուած մը, երբ սկսանք գանձել ամսական 130 տոլարի վարձք*:

1906 *Դեկտեմբեր ամսէն մինչեւ 1923 Փետրուար Հոպոքընի շէնքին ընդհ. եկամուտն եղած է 12,866,00 տոլար: 1923 Փետրուար 28–ին շէնքը ծախուած է 14,543,00 տոլարի*:

Նիւ Եորքի Շէնքը. —

*Այս շէնքը գնուած է Յուլիս 10, 1922–ին Յիսուն Երեք Հազար* (53,000,000) *տոլարի*:

| | |
|---|---|
| *Գնման ժամանակ վճարում եղած է* | 25,000 *տոլար* |
| *Առաջին Մորթկէյճ կամ պարտք մնալով* | 28,000 *տոլար* |
| *1923–էն մինչեւ 1927 վճարուած է* | 5,000 *տոլար* |
| *Որով պարտք մնացած է* | 23,000 *տոլար* |
| *1927 Հոկտ. 14–ին Մորթկէյճի յաւելում* | 22,000 *տոլար* |

| | |
|---|---|
| *Որով շէնքին պարտքը բարձրացած է* | 45,000 *տոլար* |
| 1932 *Օգոստոսին վճարուած է* | 5,000 *տոլար* |
| 1933–*ի հաշուեքննութեան ժամանակ պարտք* | 40,000 *տոլար* |

1933–*էն մինչեւ* 1943 *Ընկերութիւնն սկսաւ տակաւ առ տակաւ վճարումներ ընել: Իսկ* 1943–*ին Քառասունմէկերորդ Պատգ. Ժողովին որոշումով Ընկերութիւնը հրապարակ կը հանէ, շէնքին վճարումին համար, առանց տոկոսի* պօնտեր, *եւ երկու տարուան ընթացքին հայրենակիցներ կը գնեն աւելի քան* 16,000 *տոլարի* պօնտ, *որուն շնորհիւ* 1946–*ին Ընկերութեան շէնքին պարտքը ամբողջութեամբ կը վճարուի եւ շէնքը կը դառնայ Ընկերութեան սեփականութիւնը:*

*Յուլիս* 10, 1923–*էն մինչեւ* 1952 *Օգոստոս, Նիւ Եորքի շէնքին ընդհանուր մուտքը եղած է* 261,345 *տոլար, որով Կրթասիրաց Ընկերութեան ամբողջական մուտքը կը ներկայանայ հետեւեալ կերպով.*

ՄՈՒՏՔ

| | | |
|---|---|---|
| *Մասնաճիւղերէ* | 143,235,00 | *տոլար* |
| *Զանազան նուէրներէ* | 20,383,00 | *տոլար* |
| *Հոպոքընի շէնքի վարձքերէն* | 12,866,00 | *տոլար* |
| *Հոպոքընի շէնքը ծախուեցաւ* | 14,543,00 | *տոլար* |
| *Նիւ Եորքի շէնքի վարձքերէն* | 261,345,00 | *տոլար* |
| *ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄՈՒՏՔ* | 462,371,00 | *տոլար* |

ԵԼՔ

| | | |
|---|---|---|
| *Նիւ Եորքի շէնքին ընդհանուր ծախք եղած է* | 186,396,45 | *տոլար* |
| *Նոր Մալաթիոյ շինարարութեան համար* | 81,530,95 | *տոլար* |
| *Կարօտեալներու եւ ուսանողներու համար* | 47,702,35 | *տոլար* |
| *Նոր Մալաթիա թերթի եւ դիւանական ծախք* | 32,193,94 | *տոլար* |
| *Ներգաղթի համար* | 15,837,31 | *տոլար* |
| *Հոպոքընի շէնքին ընդհանուր ծախս* | 8,096,00 | *տոլար* |
| *Հոպոքընի շէնքին վճարած* | 12,000,00 | *տոլար* |
| *Նիւ Եորքի շէնքին վճարած* | 53,000,00 | *տոլար* |
| *ԸՆԴՀԱՆՈՒՐ ԵԼՔ* | 436,757,00 | *տոլար* |
| 1904–1952 *ընդհանուր մուտք* | 462,371,00 | *տոլար* |
| 1904–1952 *ընդհանուր ելք* | 436,757,00 | *տոլար* |
| 1952, *Օգոստոս* 31, *պատրաստ գումար* | 25,614,00 | *տոլար* |
| | (49–*րդ Պատգ. Ժողով*) | |
| 1953, *Սեպտ.* 5–*ին Ընկերութեան* 50–*րդ Պատգ. Ժողովին, մէկ տարուան ելեւմուտքէն զուտ շահ մնացած է* | 2,042,32 | *տոլար* |

1953, *Սեպտ.* 5, *Ընկ. ընդհ. գանձը* 27,656,32 *տոլար պատրաստ գումար:*

*Նիւ Եորքի շէնքին ծախքերուն մաս կը կազմեն, տոկոսի, թէքսի, ջուրի, ածուխի, նորոգութեանց, հողատարի, խնամակալի, փաստաբանական եւ ապահովագրութեան վերաբերեալ ծախքեր:*

Այս հաշիւին մաս կը կազմեն նաեւ շէնքին դէմ բացուած դատին առթիւ եղած ծախքերը եւ վճարուած տուգանքը, որոնց համար վճարուած է 10,387,00 տոլար:

Եթէ այս ծախսը հանենք, շէնքին համար ծախսած կ՚ըլլանք 176,009,05 տոլար. որով կ՚ունենանք.

| | | |
|---|---|---|
| Մուտք | 261,345,00 | տոլար |
| Ելք | 176,009,00 | տոլար |
| Զուտ շահ | 85,336,00 | տոլար |

Այս հաշիւներէն յայտնի կ՚ըլլայ որ 1922–էն 1953, երեսուն տարիներու ընթացքին, հակառակ եղած բոլոր ծախքերուն, ծանր մորթկէյճներու համար վճարուած տոկոսներուն, Նիւ Եորքի շէնքէն զուտ շահ ունեցած ենք 85,336 տոլար: Իսկ այժմ որ պարտք չունինք եւ համեմատաբար ծախքերը պակսած են, եւ վարձքերն ալ բարձրացած են, շէնքը ընկերութեան համար առաւելապէս վստահելի եւ շահաւէտ կալուածք մըն է, որուն եկամուտէն կարելի է հոգալ արտասահմանի եւ տեղական ուսանողներու եւ կարօտ հայրենակիցներու կարիքները:

Հոպոքընի Շէնք

| | | |
|---|---|---|
| Հոպոքընի տան վարձքերէն գանձուած է | 12,866,00 | տոլար |
| Հոպոքընի շէնքը ծախուած է | 14,543,00 | տոլար |
| Ընդհանուր մուտք | 27,409,00 | տոլար |
| Շէնքը գնուած է | 12,000,00 | տոլար |
| Շէնքին համար ծախսուած | 8,096,00 | տոլար |
| Ընդհանուր ելք | 20,096,00 | տոլար |
| 1906–էն 1923, 17 տարուան մէջ Ընկերութիւնը շահած է | 7,313,00 | տոլար |

Նոր Մալաթիոյ շինարարութեան հաշուին մաս կը կազմեն ղրկուած դրամները եւ մեքենաներու վճարուած գումարները: Այս հաշուէն դուրս է Ֆրանսայի շրջանի կողմէն ղրկուած մեքենաներն ու գործիքները, որոնք կեդրոնի հաշիւներուն մէջ անցած չեն:

Կարօտեալներու եւ ուսանողներու հաշիւին մէջ են Հալէպ, Պէյրութ, Ատանա, Կիպրոս, Պաղտատ, Եգիպտոս, Պոլիս եւ ամէն ուր որ օգնութեան կոչ եղած է, որոնց պատասխանուած է: Այս հաշիւին անցուած են նաեւ արտասահմանի եւ Ամերիկայի մէջ ուսանողութեան յատկացուած գումարները:

Դիւանական ծախքերուն մէջ են Կեդրոնական Վարչութեան դիւանական ծախքերը, շրջաբերականներու եւ Պատգամաւորական Ժողովներու արձանագրութեանց տպագրական ծախքերը, քարտուղարութեան, գրասենեակի, ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթի հրատարակութեան, խմբագրի, փաստաբանական, ապահովագրութեան եւ այլ ծախքերը:

Ներգաղթողներու ծախքերը բնականաբար եղած են Նոր Մալաթիա կամ Հայաստան ներգաղթող մեր կարօտ հայրենակիցներու ճանապարհածախքերը եւ օգնութիւնները:

# «ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ» ՊԱՐԲԵՐԱԹԵՐԹԸ

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան գործունէութեան եւ զարգացման աւելի զարկ տալու, մասնաճիւղերու եւ անհատ հայրենակիցներու միջեւ յարաբերութիւնները սերտացնելու եւ զիրար տեղեակ պահելու կրկնակ նպատակներով, Ընկերութեան Երեսունհինգերորդ Պատգ. Ժողովը կ՚որոշէ հրատարակել եռամսեայ պարբերաթերթ մը ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ անունով, որու սկզբնական աշխատանքներուն համար կ՚ընտրէ մասնաւոր յանձնախումբ մը, ուսումնասիրելու համար թերթի հրատարակման վերաբերեալ խնդիրները եւ պայմանները՝ Կեդր. Վարչութեան հետ գործակցաբար:

ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱյի առաջին թիւը լոյս կը տեսնէ 1939–ի Սեպտեմբերին: Թերթի խմբագրութեան եւ յարակից աշխատանքները կը վարէ Կեդրոնական Վարչութիւնը իր կազմին միջոցաւ եւ կամ իր կողմէ ընտրուած մարմնոյ մը կողմէ: 1939–էն 1945 թերթի խմբագրական աշխատանքները վարած են Տիկ. Վարդանոյշ Փափուճեան եւ Յակոբ Ուրլեան, որոնք մեծ համբերութեամբ եւ ջանասիրութեամբ տարած են թերթի սկզբնական շրջանի ծանր աշխատանքները եւ արժանի են ամէն գնահատանքի:

1945–ին Ընկերութեան Կեդրոնական Վարչութեան կազմը կը փոխադրուի Ֆիլատելֆիա:

Նորընտիր Կեդր. Վարչութեան կողմէ խմբագրական գործը կը յանձնուի Պրնք. Տօնապետ Տօնապետեանի եւ Պետրոս Զօպիեանի, որոնք միասնաբար կը տանին գործը: Գործի բերումով Պետրոս Զօպիեանի քաղաքէն մեկնելուն պատճառով, գործը իր բոլոր ծանրութեամբ, կը մնայ Տօնապետեանի ուսերուն վրայ, որ մօտաւորապէս երեք տարի կը կատարէ աշխատանքը խղճմտօրէն եւ ամէն գնահատանքի արժանի է:

1950–ին Տօնապետեան իր տկարութեան պատճառով կը հրաժարի եւ գործը կրկին կը յանձնուի Պետրոս Զօպիեանի, որ մինչեւ այսօր նուիրումով եւ ջանասիրութեամբ կը տանի իրեն յանձնուած ծանր, բայց սիրելի գործը, առաջնորդուած հայրենասիրական ոգիէն: Առ այդ կը յայտնենք մեր շնորհակալութիւններն ու գնահատանքները:

Թերթը իր մասնաւոր աշխատակիցները չունի, բայց մասնաճիւղերու թղթակիցներ եւ անհատ հայրենակիցներ յաճախ կ՚աշխատակցին օգտակար եւ մասնաճիւղերու վերաբերեալ գրութիւններով:

Ընկերութեան սան–սանուհիներուն կողմէ գրուած գրութիւնները կը կարդացուին մեծ հաճոյքով եւ գոհունակութեամբ:

Մեր փորձառու եւ տարէց հայրենակիցներու կողմէ գրուած կան շատ մը գրութիւններ, որոնք պատմական նշանակութիւն ունին մեր ծննդավայր Մալաթիոյ եւ բոլոր Մալաթիացիներու մասին: Ասոնք բոլորը կը պահուին ամենայն զգուշութեամբ որպէս արժէքաւոր գրութիւններ ապագայ պատմագրին համար:

ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթը 40էն 50 էջերով, պատկերազարդ եւ բովանդակութեամբ լեցուն, փնտռուած ու գնահատուած պարբերաթերթ մըն է:

Ընկերութեան Յիսնամեակին առթիւ լոյս տեսած է 155 էջերով պատկերազարդ բացառիկը, իր տեսակին մէջ եզակի եւ Մալաթիացիներուն պատիւ բերող հրատարակութիւն մըն էր: ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱյի այս բացառիկին մէջ զետեղուած են գրեթէ բոլոր մասնաճիւղերու եւ անհատ հայրենակիցներու հին թէ նոր նկարները, որոնք ապագայ պատմութեան մաս կը կազմեն եւ մոռացումէ ու կորուստէ կը փրկուին:

ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթի հրատարակութեան ծախքերը եւ պահանջուած ծանր աշխատանքները խսկայէս կը թեթեւնան, երբ նկատի կ'ունենանք անոր մատուցած ծառայութիւնները եւ օգտակարութիւնները Մալաթիացիներու եւ Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան· կը մաղթենք երկար եւ յարատեւ կեանք ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթի եւ աւելի ոյժ ու կորով անոր խմբագիրներուն եւ աշխատակիցներուն:



Յովհաննէս Սրապօղեան



Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան պատմութեան հետ անհրաժեշտ է նաեւ ունենալ մասնաճիւղերու պատմութիւնը, որովհետեւ մասնաճիւղերն են Ընկերութեան զօրութեան եւ գործունէութեան հիմքը եւ զոհողութեան ու աշխատանքի աղբիւրը, առանց որոնց չէր կարելի գոյութիւն ունենալ այն ինչ որ այսօր ունինք, այսինքն իրապէս արժէք ներկայացնող ՄԱԼԱԹԻՈՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ։

Ընկերութեան պատմութիւնը գրելու ժամանակ նկատի ունեցանք յիշատակել ընկերութեան գործունէութեան հետ կապ ունեցող հայրենակիցներու, պատգամաւորական ժողովներու մասնակցող պատգամաւորներու, Կեդրոնական Վարչութեանց, յանձնախումբերու եւ այլ գործօն անդամներու անունները, որպէսզի այդ միջոցաւ մաս կազմեն պատմութեան եւ չմոռցուին, առ ի յարգանս անոնց տարիներու ընթացքին մատուցած ծառայութեանց եւ զոհողութեանց։

Այս նպատակաւ է, որ Ընկերութեան պատմութիւնը գրուած է ամէն տարի առանձին գլուխներու տակ եւ գործօն անձանց անուններով։

Մեր նպատակն էր նաեւ նոյն ձեւով գրել մասնաճիւղերու պատմութիւնն ալ, յիշատակելու համար մասնաճիւղերու մէջ գործող անձերու անունները, բայց կը ցաւինք ըսելու որ կարգ մը բանաւոր պատճառներով այդ ընել կարելի չեղաւ։

Յամենայն դէպս, պիտի ջանանք գրել իւրաքանչիւր մասնաճիւղի համառօտ պատմութիւնը, անոնց կցելով նոյն վայրին մէջ մահացող մեր հայրենակիցներուն անունները։ Այդ անունները մեզի համար նուիրական են եւ բարոյական պարտականութիւն ունինք հաւաքել այդ անունները եւ զետեղել զանոնք այս պատմութեան մէջ, որպէս մնայուն յուշարձան։

Ամէն ջանք թափած ենք որ ոեւէ անուն չմոռցուի եւ ըրած ենք ամէն ինչ որ կարելի է։ Իսկ եթէ պատահի որ մոռցուած անուններ երեւան ելլեն, զանոնք յետոյ կը հրատարակենք Ընկերութեան ՆՈՐ ՄԱԼԱԹԻԱ թերթով։

Մասնաճիւղերու եւ անհատ հայրենակիցներու ջանքերով հաւաքուած անուններու թիւը ցոյց կու տայ որ անցեալ 25 տարիներու ընթացքին ամերիկարնակ Մալաթիացիներուն կէսէն աւելին արդէն յաւիտենականութեան անցած են։

Կեանքի անյեղլի օրէնքով, ժամանակի ընթացքին, հին սերունդի մնացորդներն ալ իրենց կեանքի վախճանը պիտի գտնեն։ Առ այդ պարտականութիւն կը դնենք որ ողջ մնացողները, ժամանակ առ ժամանակ, հաւաքեն այդ անունները, որպէսզի թէ՛ արձանագրուին և թէ չկորսուին կամ մոռցուին։

*Բոլոր Մալաթիացիներն ալ իրենց կարողութեան համաձայն զոհած եւ աշխատած են այս Ընկերութեան նպատակներուն համար եւ արժանի են յիշատակութեան։ Հետեւաբար, եթէ մէկու մը անունը յիշուած չէ յաջորդական արձանագրութեանց մէջ, ատիկա չի նշանակեր թէ ան իր բաժինը չէ բերած Ընկերութեան նպատակներուն։*

# ՆԻՒ ԵՈՐՔԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

*Նիւ Եորք աշխարհի ամենամեծ քաղաքն է եւ Միացեալ Նահանգաց դուռը եւ վաճառականութեանց կեդրոնը։*

*1860-էն ի վեր վաճառականութեամբ զբաղուող Հայեր եկած են Նիւ Եորք։ Իսկ 1888էն ետք մեծ թիւով Հայեր եկած եւ հաստատուած են Նիւ Եորք եւ մօտակայ վայրերուն մէջ եւ կազմած են հայ գաղութներ։ Անոնց մէջ եղած են բաւական թիւով Մալաթիացիներ, որոնց մասին գրած ենք այս պատմութեան սկզբնական շրջանի մասին մէջ։*

*Բայց որո՞նք եղած են Նիւ Եորք եկող առաջին Մալաթիացիները։ Այս մասին ոեւէ արձանագրութիւն չունինք։ Այնպէս կ՚երեւի, սակայն, որ շատ*



**Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Նիւ Եորքի մասնաճիւղը, 1955-ին։**
**Ա. կարգ, ձախէն աջ.— Նուարդ Խաչատուրեան, Զեփիւռ Որբերեան, Վարդանոյշ Փապուճեան, Վարդուհի Մարգարեան, Սաթենիկ Էմրիկեան։**
**Բ. կարգ, ձախէն աջ.— Խոսրով Որբերեան, Լուդվիկ Տէր Յակոբեան, Խոսրով Մ. Պոնափարթեան, Զաքէոս Խաչատուրեան, Ստեփան Մարգարեան.**

քիչ ժամանակի տարբերութեամբ, եկած են եւ անոնցմէ շատեր ժամանակ մը մնալէ եւ դրամ շինելէ ետք երկիր վերադարձած են: Մնացողները հաստատուած են Նիւ Եորք կամ այլ վայրեր:

Այդ ժամանակները աշխատաւորները միայն կերպով քաղաք մը չէին մնար: Յաճախ քաղաքէ քաղաք կը փոխադրուէին գործ գտնելու բերումով— «աշխատաւորը հայրենիք չունի» ասացուածքին համաձայն: Գործաւորը հոն էր, ուր իրեն համար աւելի նպաստաւոր պայմաններ եւ աւելի լաւ վճարում կար: Նիւ Եորք ամէն կարգի պատեհութիւններու քաղաքն է:

Մեր Մալաթիացի հայրենակիցները, սկզբնական շրջանին, բնական բան է, որ ամէն տեսակ գործի լծուած են, մասնաւորապէս մետաքսի եւ գորգի գործարաններուն մէջ: Տակաւ առ տակաւ անոնցմէ շատեր ունեցած են իրենց առանձին գործերը, ըլլալով արհեստաւոր կամ մանր առեւտրականներ:

Նիւ Եորքի Մալաթիացիներուն դափնեպսակը կամ գլուխ գործոցը, ինչպէս կ՚ըսեն, իրենց հիմնած Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնն է: Խնդիրը միայն հիմնելը չէ, այլ այդ հիմնուածը պահելը, արժեքաւորելը եւ տեղ մը հասցնելն է:

Ամէն անոնք որ տեղեակ են մեր Ընկերութեան կազմութեան նախնական շրջանի անցուդարձերուն, գիտեն թէ ինչպիսի՛ դժուարութիւններ դիմագրաւած են, ի՛նչ զոհողութիւններ ըրած են եւ ո՛րքան կամքի տոկունութիւն ցոյց տուած են Նիւ Եորքի մեր հայրենակիցները, առանց որուն կարելի պիտի չըլլար գրել Ընկերութեան պատմութիւնը, ինչպէս որ է: Արդէն այս պատմութեան նախաշրջանի պատմութիւնը պէտք է ըսել թէ Նիւ Եորքի մասնաճիւղի պատմութիւնն է:

Նիւ Եորքի մասնաճիւղն աւելի քան քառասուն տարի Ընկերութեան կեդրոնական Վարչութեանց ծանր ու պատասխանատու գործը կամովին եւ ձրիաբար տարած է: Քառասուն տարի բարեմիտ թէ չարամիտ քննադատութեանց եւ յարձակումներուն դիմագրաւած է միշտ, նկատի ունենալով Ընկերութեան շահը: Ընկերութեան հաշիւները, տոմարները մաքուր եւ նոյնութեամբ պահած են. եւ այս բոլորին հետ երբ նկատի կ՚ունենանք անոնց կարողութեան սահմանը եւ կատարած գործերը, անվերապահ կերպով կրնանք ըսել, թէ Նիւ Եորքի հայրենակիցները իրենց բաժին պարտականութիւնը լի ու լի կատարած են: Պատի՛ւ իրենց:

Ժամանակի ընթացքին, սակայն, այդ գործօն հայրենակիցներէն շատեր անդարձ բաժնուեցան այս աշխարհէն: Նիւ Եորքի երբեմնի զօրաւոր մասնաճիւղը սկսած էր նօսրանալ եւ տկարանալ, որու հետեւանքով, Ընկերութեան Քառասունմէկերորդ Պատգամաւորական Ժողովը, գումարուած Ուոթըրթաունի մէջ, Սեպտ. 1, 1945ին, նկատի ունենալով յիշեալ պարագաները, Նիւ Եորքի մասնաճիւղի պատգամաւորներուն եւ Կեդր. Վարչութեան խնդրանքին ընդառաջելով, կ՚որոշէ այս ծանր լուծէն ազատել Նիւ Եորքի մասնաճիւղը եւ կեդրոնը կը փոխադրէ Ֆիլատելֆիա:

Նիւ Եորքի մասնաճիւղն իր կողքին ունեցած է կանանց զօրաւոր մաս—

*նաճիւղ մը, որ իր գործունէութեամբ մեծապէս սատարած է արանց մասնաճիւղին եւ Ընկերութեանս:*

Նիւ Եօրքի Մասնաճիւղէն մահացած Մալաթիացիներու անուանացանկը

Յակոբ Թաշճեան
Մկրտիչ Մութաֆեան
Աւետիս Գըրպըյըքեան
Աւետիս Ասլանեան
Գրիգոր Մարգարեան
Սարգիս Մուրատեան
Մուշեղ Պեքմեզեան
Կարապետ Տամպուրաճեան
Կարապետ Ագմէլեան
Միսաք Շաթաֆեան
Մանուկ Ջըրթաֆեան
Մարտիրոս Գարօղլանեան
Մանուէլ Էրքեկեան
Համբարձում Ստեփանեան
Մարգար Մարգարեան
Խաչատուր Խաչատուրեան
Ղազար Հայկազ Պետրոսեան
Պետրոս Գարուսուզեան
Հայկ Ագմէլեան
Յովհաննէս Ոսկերիչեան
Սենեքերիմ Մարգարեան
Տիկ. Մ. Թերխանեան
Մանուկ Տելիքեշիշեան
Յովհաննէս Քեփենեկեան
Գէորգ Բազտրեան
Արսէն Պօնափարթեան
Գրիգոր Ստեփանեան
Տիկ. Ադամանդ Ս. Ժամկոչեան
Բենիամին Խաչատուրեան
Տքթ. Յովհաննէս Խաչատուրեան
Սեդրակ Քիւփելեան
Արամ Թաշճեան
Սարգիս Գըրպըյըքեան
Խսրով Սարաֆեան
Մանուկ Ասլանեան
Աւետիս Մարգարեան
Պետրոս Գալուստեան
Արմենակ Սիրանեան
Մանուկ Թաշճեան
Լեւոն Գարուսուզեան
Յակոբ Մազմանեան
Մանուկ Տամպուրաճեան
Յակոբ Առաքելեան
Կարապետ Թիւթիւնճեան
Արփս Տամպուրաճեան
Տիգրան Խաչատուրեան
Նազարէթ Որբերեան
Սարգիս Գարուսուզեան
Աստուր Թերզիեաղուպեան
Մանուկ Աճեմեան
Սարգիս Թաշճեան
Ստեփան Ձերահեան
Աւետիս Սուքիասեան
Տոքթ. Ա. Եազուպեան
Յակոբ Շահրիկեան
Տիկ. Գ. Ստեփանեան
Պօղոս Պիպէրեան
Յակոբ Տէր Թադէոսեան
Տիկ. Գայիանէ Քիւփելեան
Տիկ. Վիքթորիա Պօնափարթեան
Մարգար Թաշճեան
Յակոբ Սարաֆեան
Եղիա Գըրպըյըքեան
Յովհաննէս Ընտրիկեան
Սեդրակ Կոստիկեան
Տիկ. Պ. Գալուստեան
Ստեփան Ոսկերիչեան
Յովհաննէս Թաշճեան
Արգար Ոսկերիչեան
Մկրտիչ Որբերեան
Ծերուն Գարօղլանեան
Գրիգոր Խանձեան
Յարութիւն Եազմաճեան
Յակոբ Մարգարեան
Խաչատուր Պոյաճեան
Պօղոսում Վօիկեան

Յովհաննէս Աճեմեան
Ասատուր Ազմելեան
Յարութիւն Շաթաֆեան
Նափոլէոն Կիւրեղեան
Դաւիթ Զորզոփեան
Կանան Քեչիշեան
Սերոբ Գարախղեան

Գէորգ Կուրղլեան
Տիկ. Վերոնիքա Սրապեան
Նշան Շահրիկեան
Յարութիւն Սիմաւոնեան
Պօղոս Էմրիկեան
Նափոլէոն Պաճաքսուզեան

# ՖԻԼԱՏԵԼՖԻՈՅ ՄԱՍՆԱՃԻՒՂ

Ֆիլատելֆիա Ամերիկայի երրորդ մեծ քաղաքն է եւ ունի ճարտարարուեստի ու զանազան արտադրութեանց հսկայ գործարաններ եւ հաստատութիւններ: Այս հանգամանքով Ֆիլատելֆիան եղած է աշխատաւորական կեդրոն մը, ուր ութսունական թուականներէն սկսեալ գոյութիւն ունեցած է Հայ գաղութ մը, մէջն ունենալով բաւական թիւով Մալաթիացիներ:

Հոս ալ պատմութիւնը միեւնոյնն է: Այսինքն, թէ ո՛վ կամ որո՛նք եղած են այն Մալաթիացիները, որոնք առաջին անգամ հաստատուած են Ֆիլատելֆիա եւ կամ ինչո՞ւ:

Հին օրերուն սովորութիւն եղած էր որ եթէ ոեւէ մէկը հարկադրուած ուրիշ քաղաք մը երթար եւ եթէ այդ քաղաքի գործի պայմաններն աւելի լաւ ըլլային, միւսները կը հետեւէին անոր: Բայց թէ որո՞նք եղած են Ֆիլատելֆիա գացողները, ոեւէ արձանագրութիւն մը չունինք: Բայց այդ քաղաքին մէջ եղող եւ մահացողներու ցանկէն կարելի է որոշ գաղափար մը կազմել:

Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի կազմութեան պարագաներուն մասին ար-

---

(Էջ 1449-ի խմբանկարի հայրենակիցներուն անունները)

**Ա. կարգ, ձախէն աջ.— Արամ Աղազարեան, Սեդրակ Գ. Տանտիկեան Ստեփան Ալաճայեան, Կարապետ Տանտիկեան, Սարգիս Մազմանեան:**

**Բ. կարգ, ձախէն աջ.— Ճորճ Մոբիեան, Մերկիանոս Սանդրեան, Միսաք Մազմանեան, Տօնապետ Տօնապետեան, Քերոբ Սուքիասեան, Յակոբ Ուրլեան, Գէորգ Տէր Պաղտասարեան, Յովհաննէս Ժարժաբեան, Քերոբ Մոբիեան, Նազարէթ Պեկեան եւ թոռնիկը, Յակոբ Կոստիկեան, Աբրահամ Արոյանեան:**

**Գ. կարգ, ձախէն աջ.— Ճան Զեքեմեան (Քլիվլենտէն), Արամ Աղազարեան կրտսեր, Նափոլէոն Քեչեճեան, Խորէն Առաքելեան, Գրիգոր Տէյիրմենճեան, Զաքէոս Խաչատուրեան (Նիւ Եորքէն), Գառնիկ Պէրպէրեան (փեսայ), Վահան Սահակեան, Տիգրան Բարունակեան (Արաբկիրցի), Գէորգ Օխուրեան, Ճան Պեկեան, Աւետիս Բարունակեան (Արաբկիրցի):**

**Դ. կարգ, ձախէն աջ.— Նշանիկ Կուշեան, Ճան Արոյանեան, փոքրիկն Կշիկեան, Պերճ Կուշեան, Կարապետ Կուշեան, Պարգեւ Ջուլոյեան (փեսայ), Ստեփան Մազմանեան, Երուանդ Արփանեան, Յարութիւն Մումնեան, Գառնիկ Գէորգեան (Կոռունկ), Ահարոն Յովնանեան, Գրիգոր Կուշեան, Ճորճ Մազմանեան:**

**Ե. կարգ, ձախէն աջ.— Ճորճ Կշիկեան (փեսայ), Ճորճ Նազարեթեան, Ճան Կուշեան, Աբրահամ Ուրլեան, Գեղամ Սիսեան, Կիրակոս Մումնեան, Սուրէն Կուշեան:**



Ֆիլատելֆիոյ ԱՐԱՆՑ մասնաճիւղի խմբանկարը (անունները տեսնել էջ 1448)

*ղէն երկար-բարակ գրած ենք: Յիշած ենք նաեւ մասնաճիւղը կազմողներու եւ սկզբնական շրջանին Ֆիլատելֆիա եղող հայրենակիցներու անունները: Կըրկնութենէ խուսափելու համար զանց կ'ընենք կրկին գրելը:*

*Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնն առաջին անգամ ո՞ւր հիմնուած է, Ֆիլատելֆիա՞ թէ Նիւ Եորք: Այս հարցը երկար ժամանակ խնդրոյ առարկայ եղած է եւ նոյնիսկ վէճերու պատճառ դարձած: Մինչեւ այսօր ալ մտածողներ կան որ Ֆիլատելֆիան եղած է նախաձեռնողը եւ Ընկերութիւնն առաջին հիմնողը: Բայց անոնք իրենց այդ թէզը պաշտպանող կամ փաստող արձանագրութիւն մը կամ հիմք մը չունին: Մինչդեռ ընդհակառակը, 1904 Յունուար 3 կամ 4ի արձանագրութիւնները, ինչպէս նաեւ միւս մասնաճիւղերու վկայութիւնները կը հաստատեն, որ Ընկերութիւնը պաշտօնապէս հիմնուած է Նիւ Եորքի մէջ: Եւ այդ մասին արդէն ընդարձակ կերպով գրուած է:*

*1890-էն սկսեալ ամերիկահայ կեանքը, ազգասիրական եւ հայրենասիրական տեսակէտէ, եռուզեռի մէջ էր: Ամէն տեղ հրապարակային ժողովներ կը սարքուէին զանազան կազմակերպութեանց եւ հայրենակցական միութեանց կողմէ: Այս կազմակերպութիւններու եւ միութիւններու գործունէութիւնները հրահրած էին Ամերիկահայութիւնը: Ամէն ոք գործի լծուած էր օգնելու համար իր ծննդավայրի կրթական մակարդակի բարձրացման:*

*Այս եռուզեռին մէջ, բնական է, Մալաթիացին չէր կրնար բացառութիւն կազմել: Այդ օրերու Մալաթիացիներու գլխաւոր կեդրոնավայրերն էին Նիւ Եորք, Ուստր եւ Ֆիլատելֆիա: Եթէ Նիւ Եորքի մէջ ընկերութիւն մը*

---

*(Էջ 1451-ի խմբանկարի Հայրենակիցներու անունները)*

**Ա. կարգ, ձախէն աջ.— Փոքրիկն Ուրլեան, փոքրիկն Սարաֆեան, Մազմանեան երկուորեակներ:**

**Բ. կարգ, ձախէն աջ.— Հայկուհի Օխուրեան, Երանուհի Տօնապետեան, Եղիսա Ժամժարեան, Նարդուհի Թերզեան, Տիրուհի Կոստիկեան, Հռիփսիմէ Կոստիկեան, Մարիամ Տէյիրմենճեան, Վարդուհի Ժամժարեան, Եսթեր Պէրպէրեան, Մարիամ Տէր Պօղոսարեան, Արշալոյս Նազարեթեան, Նազիկ Սանդրեան:**

**Գ. կարգ, ձախէն աջ.— Պէտրոս Տէյիրմենճեան, Ա. Խանճեան, Ճուհար Մուսեան, Եղիսաբէթ Թերզեան, Մարուհի Մազմանեան, Նոյեմզար Մազմանեան, Սիրանոյշ Աղազարեան, Ովսաննա Արսլանեան, Մարիամ Մազմանեան, Ռեբեկա Թօվմանեան, Օր. Գոհարիկ Նազարեթեան, Ճ. Նազարեթեան, Վերժին Տանտիկեան, Մերի Սերայտարեան, Սաթենիկ Պեկեան:**

**Դ. կարգ, ձախէն աջ.— Կ. Մուսեան, Օր. Ալիս Արսլանեան, Օր. Մարիա Տանտիկեան, Թագուհի Զուլալեան, Գայիանէ Կուշեան, Արուսեակ Կոստիկեան, Մարգրիտ Քեշիշեան, Վարդանոյշ Տանտիկեան, Եղիզաբէթ Սարաֆեան, Սաթենիկ Պեկեանի քոյրիկը, Մարգրիտ Մօքիեան:**

**Ե. կարգ, ձախէն աջ.— Եղիզաբէթ Արսլանեան, Մարգրիտ Կշիկեան եւ իր փոքրիկը, Օր. Մելինէ Տօնապետեան, անծանօթ մը, Օր. Թերզեան, Օր. Վ. Սիսեան, Օր. Ս. Թերզեան, Օր. Գոհարիկ Տանտիկեան, Օր. Եսթեր Կոստիկեան, Օր. Մերի Կոստիկեան, Օր. Մ. Սանդրեան, Ա. Ուրլեան, Մէյ Արփանեան եւ իր փոքրիկը, Օր. Պեքի Սանդրեան, Մ. Սանդրեան, Օր. Մերի Մօքիեան, Սիրվարդ Ալաջաջեան:**



Ֆիլատելֆիոյ մասնաճիւղի ԿԱՆԱՆՑ բաժնի խմբանկարը (անունները տես էջ 1450)

կազմելու համար փափաք եւ կամեցողութիւն կար, կար նաեւ Ուստրի եւ Ֆիլատելֆիոյ մէջ եւ տարակոյս չունինք, որ Ֆիլատելֆիոյ հայրենակիցները միեւնոյն հայրենասիրական ոգիով գործի լծուած եւ աշխատանքներ յառաջ տարած են: Բայց յայտնի է որ Նիւ Եորքի հայրենակիցները գիրենք կանխած են, հոդ չէ թէ միայն մէկ ամիսով:

Ֆիլատելֆիոյ մասնաճիւղը Ընկերութեան սիւներէն մէկն է, իր կազմութեան օրէն (1904) մինչեւ այսօր գործի վրայ է եւ գոհողութեան ու աշխատանքի տեսակէտէն առաջնակարգ դիրք կը գրաւէ: Ֆիլատելֆիան է որ 1945–էն ի վեր Ընկերութեանս Կեդրոնական Վարչութեան պատասխանատու եւ ծանր գործն առած է իր ուսերուն վրայ եւ գովելի ջանասիրութեամբ ու նախանձախնդրութեամբ յառաջ կը տանի սկսուած գործը:

Ֆիլատելֆիոյ մասնաճիւղն իր կողքին ունի նաեւ մեծ ու գործօն կանանց մասնաճիւղ մը, որ մինչեւ այսօր դեռ կանգուն է եւ մեծապէս կ'օժանդակէ տեղւոյն արանց մասնաճիւղին, մասնաւոր ձեռնարկներով կը գոյացնեն նկատելի գումար մը, ամէն տարի, ի նպաստ Ընկերութեան:

Ֆիլատելֆիոյ մօտիկ Քեմտըն քաղաքին մէջ ալ առանձին մասնաճիւղ մը կազմուած է եւ քանի մը տարի որոշ գործունէութիւն ցոյց տալէ ետք դադրած է առանձին մասնաճիւղ ըլլալէ եւ մնացած անդամները միացած են Ֆիլատելֆիոյ մասնաճիւղին:

Քեմտընի մէջ մահացող Մալաթիացի հայրենակիցներու անունները դրուած են Ֆիլատելֆիոյ մէջ մահացող հայրենակիցներու անուանացանկին հետ:

Ֆիլատելֆիոյ մէջ մահացող Մալաթիացիներու անունները

Դանիէլ Դանիէլեան
Համբարձում Թաւաքալեան
Յարութիւն Սուքիասեան
Նազարէթ Տօնապետեան
Պօղոս Ազարեան
Հայկ Տ. Պաղտասարեան
Յովհաննէս Տ. Մուշեղեան
Խաչատուր Կիրակոսեան
Միսաք Կոստիկեան
Ստեփան Միրեքեան
Սերոբ Եսայեան
Դիկին Սանիոսեան
Յակոբ Տէր Մուշեղեան
Մկրտիչ Պաղտասարեան
Դաւիթ Տէր Մուշեղեան
Գէորգ Եսայեան
Ստեփան Կեղիւրեան
Գրիգոր Կիւրեղեան

Թիւթէլ Թիւթէլեան
Գրիգոր Գարօղլանեան
Ստեփան Գարօղլանեան
Պաղտասար Ալաչայեան
Նշան Տանտիկեան
Համբարձում Տ. Մուշեղեան
Սարգիս Եսայեան
Աննա Կեղիւրեան
Սահակ Յովհաննէսեան
Գրիգոր Գաբուսուզեան
Սարգիս Մազմանեան
Ստեփան Միրեքեան
Նազարէթ Նազարէթեան
Նշան Ստեփանեան
Սերոբ Սուքիասեան
Հռիփսիմէ Շիւրելեան
Սարգիս Թերխանեան
Սուրէն Թիւթէլեան

Յակոբ Օպողեան
Կարապետ Յովհաննէսեան
Հռիփսիմէ Փիլիպպոսեան
Սանդր Սանդրեան
Գէորգ Շերեան
Յ. Սուքիասեան
Գէորգ Թաշճեան
Զարուհի Մազմանեան
Պ. Մաքոքճեան
Յարութիւն Պէրպէրեան
Սարգիս Գայաճանեան
Համբարձում Ստեփանեան
Գրիգոր Տէյիրմենճեան
Պետրոս Շիւրելեան
Կարապետ Ջորղոփեան
Մանուկ Թերզեան
Մուշեղ Ջոնտոյեան
Պետրոս Ազարիկեան
Յովհաննէս Քեչիշեան
Օր. Հելըն Եսայեան
Խաչատուր Քեչիշեան
Մարիամ Մըսըրլեան
Տիկ. Ս. Միրեքեան
Վարդեր Տ. Յակոբեան
Մանուշակ Ստեփանեան
Նազարէթ Սուքիասեան
Յովհաննէս Թաշճեան
Նազուկ Թերխանեան
Մելքոն Ոսկիկեան
Սեդրակ Օտապաշեան
Սերոբ Օխուրեան
Մկրտիչ Սահակեան
Սրապիոն Սանդրեան
Սանդր Սանդրեան
Յակոբ Կիրակոսեան
Սարգիս Գոճապաշեան
Կատար Նազարէթեան
Գէորգ Օխուրեան

Մկրտիչ Պիպէրեան
Գրիգոր Նաճարեան
Յովհաննէս Շահրիկեան
Աստուր Ժարժաթեան
Ստեփան Խարբութլեան
Նազարէթ Մանուշեան
Քերոբ Էմէնեան
Գէորգ Օյմայեան
Նափոլէոն Քեչիշեան
Նշան Մարտիկեան
Արմենակ Մըսըրլեան
Յովհաննէս Նազարէթեան
Սերոբ Տ. Յակոբեան
Գրիգոր Միրեքեան
Աւետիս Սուքիասեան
Ստեփան Թերխանեան
Սենեքերիմ Թիւթելեան
Իւղաբեր Ոսկիկեան
Տիկ. Ս. Օտապաշեան
Յակոբ Օխուրեան
Ս. Սանդրեան
Գրիգոր Սանիոսեան
Ստեփ. Գարաօղլանեան
Մարտիրոս Կոստիկեան
Բերկրուհի Պէկեան
Հեղինէ Քեչիշեան
Մայր Թերզեան
Հռիփսիմէ Սիսեան
Մայր Ուլահաճեան
Մանուէլ Ազարիկեան
Մայր Տէյիրմենճեան
Կանան Խարբուդլեան
Մարիամ Յովհաննէսեան
Տիկ. Գ. Թերխանեան
Յակոբ Գըզըրեան
Նահապետ Կոստիկեան
Տիկ. Աստղիկ Ժարժաթեան

Ադլանթիք Սիթիի մէջ մահացողներ

Կարապետ Մումճեան
Թորոս Մումճեան

Գէորգ Մումճեան
Յովհաննէս Ջօպիեան

# ՈՒՍՏՐԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

Ամերիկահայ գաղութի պատմութեան մէջ Ուստր կը գրաւէ եզակի տեղ մը։

Ուստր, բաղդատմամբ ուրիշ քաղաքներու թէեւ փոքր քաղաք է, սակայն մեր ընաշխարհի հայութեան համար ամբողջ Ամերիկան էր։ Պատճառն այն էր որ սկզբնական շրջանին կար այն համոզումը, թէ հայը որ Ուստր եկած չէր, Ամերիկա եկած չէր ըլլար։

Ուստր Ամերիկահայութեան կեդրոնը եւ անոր մայրաքաղաքը կը նը-



Ուստրի Մասնաճիւղի Ս.Դ.Հ.Կ. բաժինը

Ա. կարգ, ձախէն աջ. — Պետրոս Սահակեան, Մարտիրոս Տէմիրճեան, Սարգիս Թերխանեան, Նշան Միրազեան, Կարապետ Նաճիկեան, Գարեգին Ճերահեան։

Բ. կարգ, ձախէն աջ. — Խաչատուր Մանուշեան, Միհրան Յովսէփեան, Նափոլէոն Մարգարեան, Արմենակ Մուրատեան, Կարապետ Տատեան, Յովհաննէս Մարգարեան, Ներսէս Սռաֆեան։



Ուստրի մասնաճիւղի Կ.Ն.Ն.Ա.Ն.Ց բաժինը

Ա. կարգ, ձախէն աջ.— Պ. Սահակեան, Խ. Մանուշեան, Տիկ. Պօյաճեան, Ս. Թէրխանեան, Ն. Միրաքեան, Ն. Մարգարեան։

Բ. կարգ, ձախէն աջ.— Ս. Մարգարեան, Դ. Ճերահեան, Ա. Մուրատեան, Ն. Եռամնեան, Դ. Մուրատեան, Կ. Տատաեան, Օր. Պօյաճեան։

կատուէր ։ Ամերիկեան միսիոնարութեան գործունէութեանց մօտէն ծանօթ և գործօն անձնաւորութիւններէն Մր. Ուօշպըրն եւ Մր. Մօէ, երկու ալ նիւ ամերիկացի գործարանատէրներ, ժամանակէ մը ի վեր շահագրգռուած ըլլալով Հայութեան վիճակով, մանաւոր կերպով քաջալերած են Հայութեան դէպի Ամերիկա ներգաղթը եւ իրենց գործարաններուն դռները լայն բացած

են նորէկ հայ աշխատաւորութեան առջեւ, առանց նկատի ունենալու անոնց կարգ մը թերութիւններն ու անյարմարութիւնները։ Այս է եղած պատճառը որ ամէն կողմէ Ամերիկա եկող հայ գործաւորը իր միակ Ամերիկան — Ուստր եկած է, աշխատած ու ժամանակի ընթացքին սկսած է վարժուիլ տեղական պայմաններուն, լեզուին, գործարանային կեանքին, ապրելակերպին եւ այլ տեղային սովորութեանց, կենցաղին եւ անկէ վերջ մեկնած են զանազան քաղաքներ եւ հոն հաստատուած կամ երկիր վերադարձած։

Ուստր եղած է հայ զանազան կրթական, բարեսիրական, եկեղեցական եւ քաղաքական կազմակերպութեանց գոյառութեան վայրը եւ անոնց կեդրոնավայրը։

Հոն կազմուած են սկզբնական շրջանի հայրենակցական միութիւնները, որոնց միջոցաւ հայ պանդուխտը օժանդակած է իր ծննդավայրի կրթական եւ եկեղեցական կարիքներուն։

Քաղաքական կազմակերպութեանց կողմէ խօսուած հայրենաշունչ ատենախօսութիւնները, ազգային երգերը առաջին անգամ լսուած են Ուստրի Հայ Բեմէն։ Գրադարան առաջին անգամ հոս հաստատուած է, ինչպէս նաեւ հայ դերասանական խումբի կազմութիւնը։

Ուստր եղած է նաեւ հայ եկեղեցւոյ կեդրոնը։Հոն հիմնուած է առաջին Հայաստանեայց եկեղեցին, Ս. Փրկիչ Եկեղեցի անունով։ Հոն հաստատուած է ամերիկահայ առաջին առաջնորդարանը, 1890–ին։

Ուստրի հայ աշխատաւոր գաղութը հայրենասիրութեան, աշխատանքի եւ զոհողութեան առջեւ կանգ առած չէ եւ այս անսպառ կորովին եւ կատարած զոհողութեան համար է որ Հայեր կրցած են կուրծք տալ զանազան դժուարութեանց եւ իրենց մէջ վառ պահած են հայկական ոգին, նեցուկ ըլլալով նորեկներուն, ջանալով զանոնք հեռու պահել օտարացումի վտանգներէն։

Որո՞նք եղած են առաջին անգամ Ուստր եկող Մալաթիացիները, այս մասին որոշ տեղեկութիւն մը չունինք։ Բայց վստահաբար կրնանք ըսել թէ 1888–ին և անկէ ժամանակ մը վերջ Ամերիկա եկող մալաթիացի աշխատաւորներ, շատ քիչ բացառութեամբ, նախապէս Ուստր եկած եւ նոյն քաղաքի նշանաւոր ՈՒԱՅՐ ՄԻԼԸ (երկաթի թել) գործած եւ անոր տաժանագին աշխատանքին տոկացած են։

Ուստրի մեր հայրենակիցները երկար տարիներ իրարու հետ, իրարու մօտ ապրած են եղբայրական սիրով։ Օգնած են իրարու, մանաւանդ երկրէն նոր եկող հայրենակիցներուն ամէն կարգի, նիւթական թէ բարոյական, աջակցութիւն ընծայած են։ Բնաւ թոյլ չեն տուած որ որեւէ հայրենակից նեղութեան մէջ մնայ. նոյնիսկ դրամական փոխատուութիւն ըրած են նորեկ հայրենակիցներուն որ երկիր իրենց ծնողաց մաս մը դրամ ղրկեն, անոնց ցոյց տալու համար, թէ ամէն ինչ լաւ է, իրենք առողջ են, գործ ունին, նիւթական նեղութեան մէջ չեն եւ թէ ի վիճակի են, նոյնիսկ երկիր դրամ ղրկելու։

Ժամանակ մը Ուստրի Մալաթիացիներու թիւը այնքան շատցաւ որ ստիպուած եղան ունենալ երկու ճաշարան եւ սրճարան, մէկը ՄԱՐՔԷԹ եւ միւսը ԹԱՄԸՍ փողոցներուն վրայ:

Ճաշարանի եւ սրճարանի գոյութիւնն անհրաժեշտ էր, որովհետեւ այդ ժամանակներուն Մալաթիացիներուն 99 առ հարիւրը ամուրիներ էին եւ ուրիշ կերպ կարելի չէր:

Առաւօտեան ժամը 7-էն մինչեւ իրիկուան ժամը 6 չարաչար գործելէ ետք խաղաղ սրտով տաք կերակուր մը ուտել եւ քանի մը ժամ իրարու քով հաւաքուիլ, իրարմէ փոխադարձ տեղեկութիւններ ունենալ, իրարու մօտ ըլլալ եւ քանի մը ժամ հանգիստ ընելու լաւագոյն միջոցը այդ հաւաքավայրերը — ճաշարանն ու սրճարաններն էին:

Ուստրի մեր մալաթիացի հայրենակիցները անտարբեր չէին մնացած նաեւ իրենց ծննդավայրին, Մալաթիոյ կրթական եւ եկեղեցական հաստատութեանց օժանդակելու գործին մէջ:

1892 թուականներուն Ուստրի Մալաթիացիները կազմած են ԾԻԱԾԱՆ ՄԵԼԻՏԻՆԷԻ անունով ընկերութիւն մը, որուն նպատակը եղած է Մալաթիոյ մէջ հիմնել բարձրագոյն վարժարան մը եւ հոգալ անոր ծախքերը:

Ժամանակ մը շարունակելէ եւ մաս մը դրամ գոյացնելէ ետք իրենց գործունէութիւնը վերջացուցած են. մանրամասնութիւնը զանց կ'ընենք մեր նպատակէն դուրս գտնելով զանոնք:

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան մասնաճիւղը կը կազմուի 1904ի վերջերը, Ընկերութեան Նիւ Եորքի մէջ կազմուելէն քանի մը ամիս ետք: Ուստրցիները մասամբ կազմ ու պատրաստ եղած ըլլալով, երբ նորակազմ Ընկերութեան Նիւ Եորքի ներկայացուցիչները Ուստր կու գան, անմիջապէս կը կազմեն Ուստրի մասնաճիւղը: Ուստրի նորակազմ մասնաճիւղը մեծկակ գումարով մը կ'օժանդակէ Ընկերութեան եւ կը խոստանայ իր լիակատար օժանդակութիւնը:

Այդ օրէն մինչեւ այսօր Ուստրի մասնաճիւղը կը շարունակէ իր գործունէութիւնը, նկատելի նիւթական զոհողութիւններով միասին:

Ուստրի մասնաճիւղը իր կողքին ունէր նաեւ Կանանց մասնաճիւղ մը, որ երկար տարիներ շարունակած է իր գոյութիւնը օգտակար եւ չինիչ գործունէութեամբ:

Ուստրի մէջ մահացող Մալաթիացիներ

| | |
|---|---|
| Յարութիւն Թադէոսեան | Տիկ. Ծուհար Պոյաճեան |
| Ստեփան Սահակեան | Խորէն Մանուչեան |
| Յարութիւն Կեզիրեան | Հայկանոյշ Մանուչեան |
| Թորոս Թաշճեան | Տիկ. Եսթեր Նանիկեան |
| Գրիգոր Քէշիշեան | Տիկ. Հեղինէ Կեզիրեան |
| Աբրահամ Դաւիթեան | Սերոբ Մարգարեան |
| Սարգիս Ջեքեմեան | Ասատուր Գալուստեան |
| Մայր Շահրիկեան | Գէորգ Պոնազեան |

Ստեփան Պէրպէրեան
Գրիգոր Աճեմեան
Պօղոս Թերխանեան
Համբարձում Ճերահեան
Պաղտասար Պաղտասարեան
Սաթենիկ Կեզիւրեան
Տիկ. Վարդեր Գասպարեան
Սիմոն Սիմոնեան
Ովսաննա Պեննէեան
Մկրտիչ Թերխանեան
Մայր Սառա Կոփարեան
Յակոբ Պունճուքեան
Սարգիս Թիւթելեան
Մարտիրոս Պոյաճեան
Համբարձում Պոյաճեան
Կարապետ Նանիկեան
Կարապետ Փափազեան
Կարապետ Թաչճեան
Պօղոս Պոյաճեան
Տիկ. Մարիցա Սահակեան
Մայր Մուղալ Մանուչեան
Նազարէթ Նանիկեան
Մանասէ Նանիկեան
Լեւոն Կեզիւրեան
Սենեքերիմ Սահակեան
Յովհաննէս Մանուչեան
Թորոս Մարգարեան
Աւետիս Պզզիկեան
Նշան Մերկիկեան
Օր. Սահակեան
Մկրտիչ Դաւիթեան
Սամուէլ Թերխանեան
Յարութիւն Յովհաննէսեան
Թադէոս Գարօղլանեան
Իսկենտէր Անանեան
Տիկ. Մարթա Մուրատեան
Յովհաննէս Մարգարեան
Գէորգ Տարաքճեան
Յակոբ Մարգարեան
Ծերուն Գարօղլանեան
Մանուկ Տ. Գէորգեան
Մելքիսէթ Մուրատեան
Կանան Նանիկեան
Ստեփան Աւետիսեան
Թորոս Նազարէթեան
Յովհաննէս Պոյաճեան
Յակոբ Տ. Պաղտասարեան
Ասլան Մարտիրոսեան
Եղիսաբէթ Տեմիրճեան
Յարութիւն Կեզիւրեան
Կարապետ Կեզիւրեան
Պօղոս Սահակեան
Գրիգոր Պոնագեան
Մելքոն Մկրտիչեան
Գէորգ Թերզիեաղուպեան
Տիկ. Կիւլխատան Օյմայեան
Մանուկ Եազըճեան
Պօղոս Երկայնեան
Խոսրով Մուրատեան
Յակոբ Շահրիկեան
Տիկ. Պատասխան Դաւիթեան
Կարապետ Պէննէեան
Մկրտիչ Տ. Մկրտիչեան
Ռափայէլ Տ. Պաղտասարեան
Յովհաննէս Դաւիթեան

## ՔԼԻՎԼԵՆՏԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

Քլիվլենտ բաղդատմամբ նոր քաղաք մըն է, որ զարմանալի արագութեամբ մեծցած է եւ այսօր Ամերիկայի հինգերորդ կամ վեցերորդ մեծ քաղաքն է եւ տարուէ տարի նոյն արագութեամբ կը մեծնայ: Գործարանային եւ ճարտարարուեստի մեծ կեդրոն է զանազան արտադրութեանց գործարաններով, որոնցմէ գլխաւորն է Ամերիկեան Պողպատի Ընկերութիւնը:

*Քլիվլէնտ Ամերիկայի Հայոց Մալաթիան է, որովհետեւ Քլիվլէնտի Հայութիւնը սկսած է Մալաթիացիներով եւ այժմ ալ Մալաթիացիութիւնը կը կազմէ գաղութի Հայութեան մեծամասնութիւնը:*

1908*–ին Ուստրի մէջ եղող համբաւաւոր Ամերիկեան Պողպատի Ընկերութիւնը (Ուայր Միլ) Քլիվլէնտի մէջ ճիւղ մը կը հաստատէ եւ այդ առթիւ Ուստրէն քանի մը վարժ գործաւորներ կը փոխադրէ Քլիվլէնտ: Անոնցմէ մին կ'ըլլայ մեր մալաթիացի հայրենակից Գաբրիէլ Տէր Պաղտասարեան եւ քիչ յետոյ Յակոբ Կեճէեան եւ կարճ ժամանակէն հայրենակիցներու թիւը երթալով կ'աւելնայ Քլիվլէնտի մէջ:*

71*–րդ եւ Պրոտուէյի փողոցին վրայ եղող իրենց տունը Քլիվլէնտի Հայերուն կեդրոնատեղին եւ հաւաքավայրն էր երկար ժամանակ:*

1909, *Յուլիս* 1*–ին Կիրակի օր մը կը կազմուի Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութեան Քլիվլէնտի մասնաճիւղը:*

*Մասնաճիւղի անդրանիկ վարչութեան անդամներ կ'ընտրուին հետեւեալ հայրենակիցները.*

| | |
|---|---|
| *Յովհաննէս Թերզիեաղուպեան* | *Ատենապետ* |
| *Տիգրան Մուրատեան* | *Բ. Ատենապետ* |
| *Ռուբէն Կեզիրեան* | *Ատենադպիր* |
| *Կարապետ Թերզիեաղուպեան* | *Բ. Ատենադպիր* |
| *Քերոբ Օտապաշեան* | *Գանձապահ* |
| *Յովհաննէս Թերխանեան* | *Հաւաքիչ* |
| *Սեդրակ Տէր Պաղտասարեան* | *Խորհրդական* |

*Քլիվլէնտի մասնաճիւղին կազմութիւնը եւ Քլիվլէնտի հայրենակիցներու լիառատ նիւթական զոհողութիւնները մեծապէս օգնեցին Ընկերութեան ամենադժուարին օրերուն: Ընկերութեան Հոպոքընի շէնքը կորուստէ փըրկողներէն մին եղաւ Քլիվլէնտի մասնաճիւղը՝ ճիշդ ժամանակին իր ղրկած* **500** *տոլարով:*

*Ընկերութեան Քսանիններորդ Պատգ. Ժողովը կ'որոշէ կեդրոնը փոխադրել ուրիշ վայր մը: Եւ այդ յարմարագոյն վայր կը նկատուի Քլիվլէնտը: Մասնաճիւղի անդամներու հետատես, յարատեւ եւ շինարար երեք տարուան գործունէութեան շնորհիւ կը վերակազմուին լուծուած մասնաճիւղեր, թուլցած մասնաճիւղերը նոր կեանք եւ եռանդ կը ստանան ու կը կազմուին նոր մասնաճիւղեր:*

*Այս շրջանին Ընկերութիւնը ունէր Երեսուն* (30) *մասնաճիւղ:*

*Քլիվլէնտի մասնաճիւղը իր կողքին ունէր նաեւ գործօն կանանց մասնաճիւղ մը, որ տեւեց* 1926*–էն մինչեւ* 1940*–ը: Կանանց մասնաճիւղի նուիրեալ ընկերուհիներ մեծապէս օգնեցին եւ օժանդակեցին Արանց մասնաճիւղի այնքան բեղուն գործունէութեան:*

*Քլիվլէնտ Ամերիկահայ Մալաթիացիներու ամենամեծ գաղութն է: Ատեն մը անոնց թիւը հասած էր* 350*–ի. այժմ* 320 *կը հաշուուի,* 117 *ընտանիքներով:*

*Քլիվլենտ եղած է մեր ընկերութեան սիւնը, իր նիւթական զոհողութեամբ եւ գործունէութեամբ: Քլիվլենտ գացող մը ինքզինք հին Մալաթիոյ մէջ կը զգայ: Ստեղծած են հայրենասիրական տաքուկ մթնոլորտ, հիւրասէր են եւ ընկերական, եւ զոհողութեան առջեւ կանգ չառնող: Քլիվլենտի մեր հայրենակիցներուն մէջ օտարացումի նշոյլ մը իսկ գոյութիւն չունի: Տեղւոյն մէջ ծնող երիտասարդներն իսկ կամաց-կամաց կը մտնեն Ընկերութեան շարքերուն մէջ եւ կը ստանձնեն կարեւոր գործեր եւ կը փարժուին վաղուան գործը շարունակելու համար:*

*Քլիվլենտի մասնաճիւղին Ընկերութեան Յիսնամեակին առթիւ սարքած տօնակատարութիւնը՝ եւ հոն հաւաքուած Երեք Հազար Հինգ Հարիւր (3,500) Տոլարը ցայտուն ապացոյցն է անոնց հայրենասիրութեան եւ զոհողութեան ոգիին:*

Քլիվլենտի մէջ մահացող Մալաթիացիներ (1908—1954)

*Սարգիս Էմինեան*
*Գրիգոր Քեչիչեան*
*Առաքել Գարօղլանեան*
*Աբրահամ Պեննէեան*
*Յովհաննէս Թերզիպաշեան*
*Տիկ. Էլմաս Թիւթեւեան*
*Կարապետ Մարտիկեան*
*Եղիա Գալուստեան*
*Ծերուն Դաւիթեան*
*Յակոբ Քեչիչեան*
*Գրիգոր Գարօղլանեան*
*Տիկ. Մարիամ Կանանեան*
*Ստեփան Էլիճանեան*
*Սարգիս Թաշճեան*
*Յարութիւն Տատայեան*
*Մկրտիչ Գալուստեան*
*Ալեքսան Էմինեան*

*Սարգիս Քեչիչեան*
*Յակոբ Գարօղլանեան*
*Մանուէլ Եաղուպեան*
*Յովհաննէս Աթօլիկեան*
*Մարիամ Տ. Մելքիսեթեան*
*Նազարէթ Տ. Մելքիսեթեան*
*Գրիգոր Մալաճիկեան*
*Գրիգոր Տ. Գէորգեան*
*Տիկ. Յ. Քեչիչեան*
*Գրիգոր Ամուճէեան*
*Մանուէլ Ուրլեան*
*Կանան Քեչիչեան*
*Խոսրով Խրիկեան*
*. . . . Սիսեան*
*Մարիամ Թերխանեան*
*Յովհաննէս Էմինեան*
*Յովհաննէս Թայեան*

---

(*Էջ 1461-ի խմբանկարի հայրենակիցներուն անունները*)

**Ա. կարգ, ձախէն աջ.— Խոսրով Ոսկերիչեան, Յովհաննէս Ափտալեան, Գէորգ Արսլանեան, Լեւոն Թերխանեան, Սեդրակ Յ. Պաղտասարեան, Պօղոս Արսլանեան, Գրիգոր Երանեան:**

**Բ. կարգ, ձախէն աջ.— Միսաք Արսլանեան, Սուրէն Թերխանեան, Միսաք Ե. Արսլանեան, Սարգիս Արսլանեան, Խաչատուր Պաղտասարեան, Գրիգոր Տ. Դաւիթեան, Նարազա Մուրադեան, Յովհաննէս Թերխանեան, Եղիա Սփալաճեան, Թամր Բախսարեան:**

**Գ. կարգ, ձախէն աջ.— Նազարէթ Թերխանեան, Միսաք Սէօվնէեան, Մանուէլ Մինասեան, Սահակ Պեննէեան, Պօղոս Օտապաշեան, Միքայէլ Պաղտասարեան, Յաբէթ Գարօղլանեան, Յարութիւն Աթօլիկեան, Գրիգոր Քեփինեկեան:**



Քլիվլէնտի մասնաճիւղի խմբանկարը (անունները կարգով էջ 1460)

Աբրահամ Պաճաքսուզեան
Տիկ. Մարգրիտ Եաղուպեան
Յովհ. Տ. Մելքիսեթեան
Մարտիրոս Մարտիկեան
Սենեքերիմ Մարտիկեան
Կարապետ Կեզիւրեան
Յարութիւն Գարօղլանեան
Յարութիւն Գիւլխանեան
Կարապետ Տ. Պաղտասարեան
Ստեփան Ուրլեան
Խաչատուր Օտապաշեան
Ստեփան Լիւլեճեան
Յարութիւն Արփաճեան
Տիկ. Գոհար Գարօղլանեան
Ստեփան Պարսամեան
Յովհաննէս Առաքելեան
Դաւիթ Տ. Դաւիթեան
Տիկ. Թագուհի Տ. Դաւիթեան
Աբգար Երանեան
Եղիսաբէթ Տ. Պաղտասարեան
Միքայէլ Ասլանեան

Տիկ. Անթառամ Ափալաքեան
Կարապետ Ազատիկեան
Կարապետ Ա. Թերխանեան
Խաչատուր Պըլըքեան
Կարապետ Մըլլոյեան
Խաչատուր (որդի) Օտապաշեան
Նազարէթ Ասլանեան
Սեդրակ Տ. Պաղտասարեան
Տիկ. Մարիամ Տ. Գէորգեան
Սարգիս Մինասեան
Աւետիս Պոյաճեան
Պարոյր Տ. Դաւիթեան
Ստեփան Տ. Դաւիթեան
Սաթենիկ Տ. Պաղտասարեան
Յակոբ Ասլանեան
Արմենակ Ասլանեան
Ստեփան Նարըեան
Գէորգ Թերխանեան
Արմենակ Արփաճեան
Տիկ. Խ. Պըլըքեան
Միսաք Մելքիսեդեկեան

---

(Էջ 1463-ի խմբանկարի հայրենակիցներուն անունները)

Ա. կարգ, ձախէն աջ.— Արմէն Գ. Արսլանեան, Միքայէլ Լ. Թերխանեան, Մելքոն Լ. Թերխանեան, Թեքս Ե. Ափալաքեան, Նետ Ե. Ափալաքեան, Սուզըն Խ. Ոսկերիչեան:

Բ. կարգ, ձախէն աջ.— Յաբէթ Գարօղլանեան, Սահակ Պենճէեան, Արմենուհի Պենճէեան, Իսկուհի Պենճէեան, Եղիսաբէթ Գարօղլանեան, Հայկուհի Մարգարեան (Ֆրանսայէն), Գրիգոր Երանեան, Եղիսաբէթ Ոսկերիչեան, Ռոզ Երանեան, Յովհաննէս Թերխանեան, Մանուէլ Մինասեան:

Գ. կարգ, ձախէն աջ.— Յովհաննէս Ափալաքեան, Նուարդ Ափալաքեան, Գէորգ Արսլանեան, Վարդանոյշ Բախսարեան, Լուսաբեր Թերխանեան, Նուարդ Թերխանեան, Լեւոն Թերխանեան, Ծաքէ Թերխանեան, Մերի Ափալաքեան, Վերժին Գ. Արսլանեան, Էլմա Քէօլէգալիբեան, Նազելի Արսլանեան, Մարիամ Տ. Պաղտասարեան, Սաթենիկ Տ. Դաւիթեան, Տիրուհի Արսլանեան, Հռիփսիմէ Արսլանեան, Մերի Ոսկերիչեան, Մանուշակ Պաղտասարեան:

Դ. կարգ, ձախէն աջ.— Կարապետ Միրաքեան, Միքայէլ Տ. Պաղտասարեան, Պօղոս Օտապաշեան, Համազասպ Գ. Արսլանեան, Ազատուհի Արփաճեան, Մինաս Նէօվենեան, Յարութիւն Արզիկեան, Գրիգոր Քեփենեկեան, Սարգիս Արսլանեան, Գրիգոր Տ. Դաւիթեան, Սուրէն Թերխանեան, Սեդրակ Տ. Պաղտասարեան, Թամ Բախսարեան, Պօղոս Արսլանեան, Միսաք Արսլանեան, Եղիա Ափալաքեան, Խաչատուր Պաղտասարեան, Միսաք Յ. Արսլանեան:

Ե. կարգ, ձախէն աջ.— Թորոս Գ. Արսլանեան, Թամ Ս. Տէր Պաղտասարեան, Խօսրով Ոսկերիչեան եւ իր փոքրիկը, Նազարէթ Թերխանեան:

Կարապետ Ջեքմեան
Քերոբ Օտապաշեան
Յովհ. Տ. Պաղտասարեան
Օր. Եղիսաբէթ Թոփալեան
Թիւթիւն Թիւթելեան
Յովհ. Տ. Գէորգեան
Հանի Սարգիս Տ. Դաւիթեան
Գաբրիէլ Տ. Պաղտասարեան
Գէորգ Բաղսարեան
Տիկ. Յ. Ասլանեան

Ռափայէլ Արփաճեան
Տիկ. Թագուհի Կըլիկեան
Պետրոս Թերխանեան
Յակոբ Ջուլալեան
Նափոլէոն Մուրատեան
Սերոբ Տ. Պաղտասարեան
Օր. Մարի Տ. Մելքիսեդեկեան
Գաբրիէլ Տ. Պաղտասարեան
Համբարձում Թիւթելեան

Թոլիտոյի մէջ մեռած է Տիկին Օլիմպիա Մկրտիչ Թիւթելեան:

# ՊՈՍԹՈՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂ

Պոսթոնը Ամերիկայի Աթէնքը նկատուած է, ուրիշ խօսքով կամ բացատրութեամբ ուսման եւ գիտութեան վառարանը եւ կեդրոնը:

Սկզբնական շրջանի ուսման եւ զանազան մասնագիտութեանց հետամուտ եղող Հայեր Պոսթոն եկած են եւ իրենց ուսումը լրացնելէ ետք վերադարձած են երկիր կամ այլ վայրեր մեկնած եւ հաստատուած են:

Այս նպատակով ալ Ամերիկա եկող առաջին Մալաթիացիները — Միսաք Եագուպեան, Տք. Մինաս Մ. Կիրակոսեան, Գամալիէլ Եագուպեան եւ Գարեգին Կիրակոսեան — եկած են Պոսթոն:

1895-ի կոտորածէն առաջ Պոսթոն եկած է նաեւ Գրիգոր Ուսումեան, իսկ 1900-ի ժամանակները Տողանեան ընտանիքը, Յարութիւն Եագուպեան և յետոյ Վերապատուելի Մարտիրոս Կիրակոսեան եւ ուրիշներ:

Պոսթոն ըսելով պէտք է հասկնանք Մեծագոյն Պոսթոնը, որ աւելի քան քսան արուարձաններ ունի, որոնք իրարու կցուած են եւ միասնաբար կը կոչուին Մեծագոյն Պոսթոն: Արուարձանները կը պահեն իրենց ուրոյն անունները, քաղաքային սահմանները եւ կառավարութիւնները:

Մալաթիացիները հաստատուած են հետեւեալ քաղաքներուն եւ արուարձաններուն մէջ — Պոսթոն, Ուոթըրթաուն, Քեմպրիճ, Սըմըրվիլ, Պրուքլայն, Ջըլսի, Արլինկթըն եւ Լին:

Պոսթոն քաղաքը գործարանային քաղաք մը ըլլալէ աւելի առեւտրական կեդրոն մը եղած է ու Նիւ Ինկլենտի, այսինքն շրջակայ վեց նահանգներու դուռը եւ առեւտրական կեդրոնը:

Տարիներ առաջ Ամերիկայի կօշիկի արտադրութեան մեծագոյն մասը, Պոսթոնի շրջակայքը եղող քաղաքները կ'արտադրէին: Այդ քաղաքներուն մէջ կ'աշխատէին բաւական մեծ թիւով Հայեր, որոնց մէջ կային նկատելի թիւով Մալաթիացիներ: Ժամանակի ընթացքին, սակայն կօշիկի գործարաններէն ոմանք փոխադրուեցան այլ վայրեր եւ փոխադրուողներուն տեղը սկսան նոր գործարաններ:

1920-ի ժամանակները Մեծագոյն Պոսթոնի մէջ կային մօտաւորապէս

150–ի չափ Մալաթիացիներ, որոնց մեծագոյն մասը ունէին իրենց առանձին գործերը, ի մասնաւորի արեւելեան գորգի, ոսկերչութեան, հագուստեղէն մաքրելու եւ այլ զանազան արհեստաւորներ եւ խանութպաններ:

Մալաթիոյ Կրթասիրաց Ընկերութիւնը կազմուած է 1916–ի ժամանակները, 50–է աւելի անդամներով: Պոսթոնի մասնաճիւղը Ընկերութեան զօրաւոր եւ մնայուն մասնաճիւղերէն մին եղած է եւ իր գործունէութեամբ եւ զոհողութեամբ արժեցուցած է իր գոյութիւնը:

1935–ի ժամանակները, տնտեսական ծանր տագնապին բերումով եւ մաս մը անդամներու քաղաքէն մեկնելուն եւ այլ պարագաներ, ժամանակ մը տկարացուցին եւ գրեթէ անգործութեան մատնեցին մասնաճիւղը: Բայց ժամանակ մը վերջ կրկին վերսկսան գործունէութեան:

Պոսթոնի մէջ կար նաեւ զօրաւոր Կանանց մասնաճիւղ մը, որ երկար ատեն պահեց իր առանձին գոյութիւնը եւ ունեցաւ արդիւնաւոր գործունէութիւն, բարոյական թէ նիւթական տեսակէտէ: Ժամանակի ընթացքին, սակայն, աշխատող ձեռքեր սկսան պակսիլ. ծերութիւն, մահ եւ տեղափոխութիւն տկարացուցին թէ՛ Արանց եւ թէ Կանանց մասնաճիւղերը: Ներկայիս երկու մասնաճիւղեր միանալով կազմած են խառն մասնաճիւղ մը, եւ սիրով ու իրարհասկացողութեամբ կը շարունակեն պահել Ընկերութիւնը:

Պոսթոնի խառն մասնաճիւղը որդեգրած է լաւ սովորութիւն մը. ամիսը մէկ երեկոյ թղթախաղի անունով կը հաւաքուին անդամի մը տունը: Քիչ մը թուղթ կը խաղան, յետոյ տունին կողմէ կը հիւրասիրուին, Ընկերութեան վերաբերեալ գործերը կը կարգադրեն եւ կը ցրուին: Այս կերպը պատեհութիւն կը ստեղծէ որ ընկեր եւ ընկերուհիներ, գէթ ամիսն անգամ մը, իրարու քով գան եւ Ընկերութենէն չհեռանան: Վերջերս Պոսթոնի այս օրինակը սկսած է տեղ գտնել նաեւ մեր միւս մասնաճիւղերուն մէջ, ինչ որ քաջալերական է:

## Մեծագոյն Պոսթոնի մէջ մահացող Մալաթիացիներ

### Պոսթոն

Յովհաննէս Որբերեան
Յակոբ Ավուչարեան
Տօնապետ Անսուրլեան
Գրիգոր Մարգարեան
Յակոբ Մարգարեան
Աւետիս Գաբրիէլեան
Ասատուր Գարայեան
Համբարձում Աննայեան
Յարութիւն Որբերեան
Միսաք Սապանճեան
Գրիգոր Թիւթելեան
Նազարէթ Մարգարեան
Գրիգոր Մարգարեան
Ահարոն Մարգարեան
Մարտիրոս Սաչաքլեան
Գէորգ Առվանեան
Մարտիրոս Ավուչարեան
Մանուէլ Նարընեան
Տիկ. Մանուշակ Թիւթելեան
Տիկ. Հնազանդ Մարգարեան
Յովհաննէս Գաբրիէլեան
Խոսրով Պոնճուքլեան
Նշան Ռեհենեան
Պօղոս Պռնազեան

